ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

# ԱԳԱԹԱՆԳԵՂԱՅ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Քննական բնագիրը
Գ. ՏԵՐ-ՄԿՐՏՉՅԱՆԻ և Ս. ԿԱՆԱՅԱՆՑԻ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ — 1983

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Աշխարհաբար թարգմանությունը և
ծանոթագրությունները
ԱՐԱՄ ՏԵՐ-ՂԵՎՈՆԴՅԱՆԻ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ — 1983

ԳՄԴ 84.21
Ա 17

Հրատարակության է պատրաստել բանաս. գիտ. դոկտոր
Գ. Գ. ԱՆԱՆՅԱՆԸ

«Ուսանողի գրադարան» մատենաշարի
խմբագրական հանձնաժողով

ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ Ս. Ա. (նախագահ), ԱՂԱՅԱՆ Է. Բ.,
ԱՆԱՆՅԱՆ Գ. Գ., ԹԱՄՐԱԶՅԱՆ Հ. Ս., ՂԱԶԱՐՅԱՆ Հ. Մ.,
ՄԿՐՏՉՅԱՆ Լ. Մ.

Ագաթանգեղոս.
Ա 17 *Հայոց պատմություն/Քննական բնագիրը Գ. Տեր-Մկրտչյանի և Ս. Կանայանցի; Աշխարհաբար թարգմ. և ծանոթագր. Ա. Ն. Տեր-Ղևոնդյանի.— Եր.: Երևանի համալս. հրատ., 1983.—700 էջ.—(Ուսանողի գ-րան/Երևանի պետ. համալս.)*

*Հինգերորդ դարի հայ մատենագրության առաջին ներկայացուցիչներից մեկի՝ Ագաթանգեղոսի «Հայոց պատմությունը» անգնահատելի աղբյուր է Հայաստանի և հարևան երկրների քաղաքական ու սոցիալ-տնտեսական կյանքն ուսումնասիրելու համար։ Այն միաժամանակ գրական հուշարձան է, որ նշանակալիորեն նպաստել է հայ պատմագրության ու գրականության զարգացմանը։ Ներկա հրատարակությունը աշխարհաբար առաջին ամբողջական թարգմանությունն է։*

Ա $\frac{4702080000-16}{704(02)-83}$ 36—83

ԳՄԴ 84.21
Ар 1

АГАТАНГЕЛОС

**ИСТОРИЯ АРМЕНИИ**

(на армянском языке)
Издательство Ереванского университета
Ереван—1983





Էջ Ագաթանգեղոսի «Հայոց պատմության»-ից
*(Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարան, № 1195 պատառիկ, Թ—Ժ դար)*

# ՅԱՌԱՋԱԲԱՆ
# ԱԳԱԹԱՆԳԵՂԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

*1 Իղձք բաղձացեալք ցանկալեացն զկամս նաւելոցն ի նաւահանգիստն հասուցանել՝ խնդութիւն է խաղաղութեամբ. վասն զի ի մէջ ընդոստուցեալ ալեացն որ ընդդէմ դառնան, մրրկածին օդովքն ի մարտ պատրաստին, ընչաքաղցիցն և օգտածարաւեացն ժամ եղեալ բազմաց, միաբան սանձեալ թիակօքն զերիվարս տախտակագործացն բևեռակապ երկաթագործացն՝ զմիմեանս քաջալերելով. կասկած երկիւղի սրտիւք ի կապոյտ դաշտին ձիարձակ լինին, անքայլ գնացիւք անընթաց ոտիւք թռուցեալ ի վերայ ծովուն մկանանց ջուրցն ալեացն կուտակելոց. ուր բարկացայտ ալիքն լեռնաձև կուտակին, մէտ ի մէտ խոնարհին, ըստ աղեգէտն պատմողին մարմնաքնար Դաւթեան երգոյն, թէ «Ելանեն լեռնանան, և իջանեն դաշտանան». ուր ուրեմն ապրեալք ի ծփանացն՝ արշաւանս դնեն յիւրաքանչիւր գաւառս. զայս վէպ պատմեն մերձաւոր սիրելեաց—զանցս եղելոյ աշխատութեան ուղւոյն ճանապարհաց, զելևէջս տարաբեր անդադարն սահանաց, գրաւական եղեալ զանձինս շահաւորն օգտութեան և կէտ՝ զմահ մրցանաց յաղթութեան. ընդ մեծանալ վաճառացն փոխանակեն զինքեանս. զի թէպէտ և տեսանիցեն զբռնութիւն սաստկութեան հողմակոծեալ ալեացն տատանելոց, որ յերփն երփն զերանգուն շրջշրջեն ըստ սաստկութեան ծփանացն, դիզադէզ յեղեղուկ փրփրացեալ զմիմեանց կարգեալ զկնի տողիցն, և յափնածիր յաւազադիր սահմանս բարձրացելոցն ընդդէմ՝ հասեալ ի ցամաքակէտն ծիծաղեսցին։*

*2 Իսկ ի մէջ ըմբռնելոցն խորոցն անդնդոցն լցեալ խռովացեալ խոխոջելովն ահափետ արարեալ զօրհասն գուշակեն. զի թէպէտ և զինքեանս շարժունս տեսանիցեն ի վերայ յաղթ ջուրցն բազմութեան, սասանելոցն սարսափելոցն, սակայն զկարողելն առաջի ածեալ ընդ միտ՝ ջանան դիմագրաւեալք ընդ խռովութիւն ահագին ծովուն, զի թերևս դարձեալք օգտութեամբ զկիւտս իւրեանց խնդու-*



# ԱՌԱՋԱԲԱՆ
# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ*

*1 Նավարկողների* բուռն և բաղձալի իղձն է խաղաղությամբ հասնել նավահանգիստ։ Ահա թե ինչո՛ւ ընչաքաղց և օգտածարավ մարդիկ ընդոստ ալիքների վրա և մրրկածին օդին ընդդեմ մարտի են պատրաստվում. նրանց ի մի հավաքված բազմությունը, միացյալ ուժերով, թիավարում է փայտաշեն և երկաթե բևեռներով ամրացված սրընթաց նավերը. քաջալերելով միմյանց, սրտերը լի կասկածով ու երկյուղով, ձիարձակ արշավում են կապույտ դաշտում, անքայլ երթով և չընթացող ոտքերով թռչում են ծովի կուտակադեզ ալիքների ու ջրերի հորձանքների վրա։ Ուր բարկացայտ ալիքները կուտակվում են լեռնաձև, խոնարհվում ելևէջներով, ըստ քանքարավոր քնարահար Դավթի երգի՝ «Ելնում են՝ լեռնանում և իջնում են— դաշտանում»։ Ապա ծփանքներից ազատվելով յուրաքանչյուրն շտապում է իր գավառը։ Մերձավոր սիրելիներին պատմում են այս զրույցը՝ ճանապարհին պատահած տաժանակիր անցքերը, անհանգիստ ալիքների հոսանքի վրա փոփոխական ելևէջները, թե ինչպես շահութաբեր օգտի համար վտանգի ենթարկվելով և մահվան դեմ մաքառելով իրենց անձերը գրավ են դնում ի սեր բարեհաջող վաճառականության։ Քանզի թեպետ տեսնում են հողմակոծ տատանվող ալիքների ահեղ սաստկությունը, որոնք ըստ ծփանքի ուժգնության երփներանգ գույներ են ստանում, փոփոխական կարգով ու փրփրադեզ հաջորդում են իրար, ավազով շրջագծված ափը դիմելով՝ [նավարկողները] հրճվում են, որ ցամաք են հասել։*

*2 Իսկ նրանք, որ ընդերքից խոխոջացող խոր անդունդի դիմաց ահաբեկված օրհասական վախճան են կանխատեսում, թեպետև տեսնում են, որ շարժվում են ահարկու, սարսափելի, բազմածուփ ջրերի վրա, այնուամենայնիվ հիշելով իրենց հաջողությունը՝ ջանում են դիմագրավել ահավոր ծովի ալեկոծությունը, որպեսզի թերևս հարստությամբ վերադառնալով՝ յուրաքանչյուրը խըն-*

թեամբ ցուցանիցեն առ իւրաքանչիւր ընտանիս, և զպարծանս վաստակոյն՝ իւրեանց դրացեացն. զի ուր հարկ է զաղքատութեան անուն յանձանց թօթափել, և զառաւելեալ ընտանեական թափեալ ի գրաւահարկ իշխանացն բռնութենէ, և յիւրեանց շահիցն բերելոց հաճել զպարտս վտանգին՝ ի լծոյ ծառայութեան թագաւորացն ազատացեալ դատարկասցին։ Եւ լաւութիւն առ ընկերս, և անուն առատ և բարգաւաճանք առ թշնամիս, և ուրախութիւն առ իւրեանց սիրողս։

3 Վասն այսորիկ ընդ անհնարին պատերազմ մարտնչին ի մէջ բարձրացելոց ջրեղէն լերանց և ի մէջ խոնարհելոց ծովային ձորոցն, ջանան զապրուստ անձանց փրկութեան գտանել, զի ի շրջանացն շփոթեալ ուռուցիկ փոթորկացն բքացելոց զերծանել և յանքոյթ նաւահանգիստն հասանել կարասցեն. զի արդարև իսկ շատ այնք են, որ ոչ առ ագահութեան զանձինս ի մահ դնեն, այլ առ չգոյութեան աղքատութեան կարօտութեան լնուին տնանկութեան՝ շտապեալք առ վտանգի անկեալք տարակուսանաց վասն դհարկսն հաճելոյ, թերևս գլխոյ փրկանս գտանել, ի պարտուց զանձինս թափել կարասցեն. փոխ ևս ի պարտուցն ի վերայ առեալ, թերևս երկպատիկ օգտութեան ելս աղագս գտանել կարասցեն. միանգամայն զպարտատուսն հաճել, և անձանց ևս միանգամայն օգուտ շահի աւելագոյն առանալ։

4 Զի բազումք այն են, որ առ այսպիսի աղէտս տարակուսանաց ի վաճառականութեան արուեստս տուայտանօք անկանել յօժարեն։ Իսկ են բազումք, որ զիւրեանց առատութիւն եդեալ՝ աշխարհի օգուտ գործեն, զարդարեալ զթագաւորս ի գիտ ծանրագին մարգարտին, և զանազան ակամբք պատուականօք և կերպասու յերանգ երանգս գունոցն։ Նա և զաղքատս մեծացուցանեն՝ զփոքր ինչ ընդ յարգանօք արկեալ, և զաշխարհ պաճեն նոր և չքնաղ գիտիւք։ Նոքա և զկարօտս լցուցանեն մեծամեծ շահիւք օգտութեամբ. նոքա և զփափագելի մարդկան զպէտսն պատրաստեն. նոքա և զարմանեն զանձինս բազմաց. նոքա և զտունս բժշկաց լցուցանեն ազգի ազգի անուշահոտ խնկովք, դեղովք օգտակարութեան. նոքա և զտենչալի բժշկութեան արմատոց օգտակարութեան բերեալ զպտուղս՝ զպիտողսն լցուցանեն. նոքա և զարդ քաղաքաց, նոքա և մեծութիւն գաւառաց. նոքա և համարակարք երկայն ճանապարհաց. նոքա և ուղեգնացք աշխարհի. նոքա և ճաշակիչք օտարութեան. նոքա և զամե-



դությամբ իր ընտանիքին ցույց տա ձեռք բերածը, իսկ դրացիներին՝ պարծանքի արժանի վաստակը։ Կամենում են, ուր հարկն է, իրենց վրայից թոթափել աղքատ անունը և իրենց տառապյալ մերձավորներին ազատել գրավով հարկ պահանջող իշխանների բռնությունից. իրենց բերած շահույթից վճարում են նրանց պարտքերը, որպեսզի թագավորների հարկատվության լծից ազատվելով՝ թեթևանան։ Այսպիսով նրանք բարություն են անում ընկերներին, պատվավոր ու հարգալի անուն վաստակում թշնամիների մոտ և ուրախություն պատճառում իրենց սիրողներին։

3 Սրա համար դաժան պայքարով մարտնչում են բարձրացող ջրեղեն լեռների ու իջնող ծովային ձորերի մեջ, ջանում են իրենց անձերի փրկության միջոց գտնել, որպեսզի ազատվելով խռովահույզ ծանր բքախառն փոթորիկների պտույտներից՝ կարողանան հասնել խաղաղ նավահանգիստ։ Քանզի արդարև շատ են այնպիսիները, որոնք ոչ թե ագահությունից են մահվան [վտանգի] ենթարկում իրենց, այլ աղքատության, կարիքի և հետին տնանկության պատճառով չեն տատանվում վտանգի առջև, շտապում են իրենց պարտականությունը կատարել, թերևս կարողանան գլուխները փրկել և պարտքերից իրենց ազատել։ Պարտքերի տակ ընկած լինելով, երազում են, որ թերևս կարողանան երկպատիկ օգուտ քաղելու ելքը գտնել, միաժամանակ գոհացնելով պարտատեններին, իսկ իրենց համար էլ առավելագույն շահ ապահովել։

4 Քանզի շատը նրանք են, որ այսպիսի սարսափելի աղետների դեպքում հոժարում են չարչարանքներով վաճառականական գործի մեջ մտնել։ Շատերն էլ կան, որոնք իրենց հարստությունը երկրի օգտին են գործածում, թագավորներին զարդարում են ծանրագին մարգարիտներով, զանազան պատվական քարերով և երփներանգ գունագեղ կերպասներով։ Նաև բարձրացնում են աղքատներին, փոքր ինչ հարգանքի արժանացնելով և երկիրը զարդարում են նոր ու չքնաղ բարիքներով։ Նրանք բավարարում են կարիքները՝ մեծամեծ օգուտներ տալով, կարիքավոր մարդկանց պիտքերն են հոգում, շատերին սնում են։ Նրանք բժիշկների տները լցնում են տեսակ-տեսակ անուշահոտ խնկերով, օգտակար դեղերով, բժշկական տենչալի օգտակար արմատներ բերելով, կարիքավորներին գոհացնում են։ Քաղաքների զարդ են նրանք և գավառների հզորություն, երկար ճանապարհների չափարարներ են, աշխարհի ճամփորդներ և օտարության ճաշակողներ։ Նրանք ամենքին խնդաց-

նեսին խնդացուցանեն. նոքա և ոյժ բաղմաց, նոքա և կարողութիւն աշխարհի. նոքա և զմերկս զգեցուցանեն, նոքա և զքաղցեալս յագեցուցանեն, նոքա և զծարաւիս արբուցանեն. նոքա և մթերեն իսկ զգանձս ընչեղաց։

5 Զի թէպէտ և ի բռնութենէ են հարկեալք, սակայն ուսան առ վշտին հնարաւորութեամբ զանձինս ապրեցուցանել, և այլոց օգուտ մարթեն լինել։ Ապա և նոյն իսկ սովորակն իմաստութիւնն քաղցրեաց նոցա. ընդելակի հանապազորդեալք երթևեկն տարաբերեալ վաճառօքն՝ զփոքր մասունս յարգել, ի հազարս և ի բիւրս բազմացուցանելով։ Վասն այսորիկ իսկ ընդ ծաղկացեալ ալիսն բազմութեան համատարած ծովուն ընդխառնեալք շահատակիցեն, ոչ ըստ անձանց կամաց, այլ ըստ վարիչ օդոյն վարելոյ, բռնավարեալք ի վերայ յորձանացն յաճախատարած լայնացելոցն դանդաչիցեն վասն օգուտն գտանելոյ. զանձինս ի մէջ մահու և կենաց եդեալ՝ անձամբ զանձինս խորոցն մատնեն, կա՛մ մահու կամ կենաց, և մի յերկուց գտեալ՝ անձանց համարին։

6 Սոյն օրինակ տեսանեմք հարկ վտանգի հասեալ ստիպեալ զմեզ, առաւել ի հարկէ նաւեալք ի վերայ իմաստութեան ծովուն. զի ոչ ոք է ամենևին այն ի մարդկանէ, որ կարող իցէ զայսպիսի ջան վաստակոց քրտնալից աշխատութեամբ անձամբ անձին մատուցանել, եթէ ոչ իշխանութեան հրամանի հասեալ՝ ստիպեալ զայս առնել տալ տագնապիցէ. և ո՞վ այն իցէ կարող, որ զխորս անդնդոց ծովուն քննել խրոխտիցի. այլ շահս օգտութեան վաճառացն երկայն ճանապարհօքն անձանց և եթ կամին մատուցանել։ Սոյն օրինակ և մեք ոչ յանդգնութեամբ տղայաբար բարուք ինչ ի ներքս անկանել անմտաբար հոսեցաք, այլ ակամայ ընթացեալ ըստ հրամանացն ի բռնութենէ հարկապահանջ իշխանացն՝ դիմեալ նաւեցաք ի մատենայած ծովուս պատմութեան։

7 Վասն զի ստիպեաց զաղքատիմաստ խանութս մեր հրաման թագաւորաց, և ի մէնջ հարկ պահանջեալ զանցեալ իրացն եղելոց գիրս մատենագրել՝ յայտնական պատմութիւնք, որ առ մեօք գործեցան։ Սակայն մեծ և բազում ջան եղեալ թողուլ այնոցիկ որ յետ մեր գայցեն՝ զկարգս գրուցաց դարուց ի դարս յիշատակել. զի ոչ եթէ կամօք ինչ յօժարեցաք հաւանել առնել զայս, այլ իբրև ոչ կարի ինչ ընդդէմ մարթացեալ դառնալ արքայատուր հրամանացն, որչափ յուժի կայր՝ մարթացեալ ըստ հրամանացն պատմեսցուք։ Ու մեր զայս ջան յանձին կալեալ, անկեալ ի վաճառականութիւն



նում են և շատերին ուժ տալիս, իսկ աշխարհին՝ կարողություն, մերկերին հագցնում են, քաղցածներին հագեցնում, ծարավներին արբեցնում են և հարուստների համար գանձեր հավաքում։

5 Թեպետև նրանք բռնությամբ են հարկի տակ ընկած, սակայն սովոր են վշտին դիմանալով իրենց անձերը փրկել և այլոց ևս օգտակար կարող են լինել։ Այնուհետև հենց նույն սովորական իմաստությունը հաճելի դարձավ նրանց համար։ Երթևեկողները սովորաբար ճանապարհորդելով և վաճառականությամբ շրջելով, փոքր գործեր անելով՝ հազարապատիկ ու բյուրապատիկ են դարձնում։ Ահա թե ինչու խոյանալով համատարած ծովի հուզված բազմաթիվ ալիքների մեջ՝ գրոհում են ոչ թե իրենց կամքով, այլ փչող քամու (վարգիչ օդի)* հոսանքով, բռնի քշվելով լայնատարած հորձանքի վրա տարուբերվում են օգուտ գտնելու համար. իրենց անձերը մահու և կենաց մեջ են դնում, անձամբ խորքերի [վտանգներին] են մատնվում, ընտրություն են կատարում մահու և կենաց միջև և երկուսից մեկն է նրանց բաժին ընկնում։

6 Նույն այս ձևով տեսնում ենք, որ նման մի հարկադրանք մեզ էլ հասնելով առավել ստիպում է նավարկել իմաստության ծովի վրա, քանզի մարդկանցից ոչ ոք չի կարող ամենևին հանձն առնել նման քրտնաջան աշխատանք, եթե հասած իշխանական հրամանը՝ ստիպելով այս բանը շուտափույթ անել չտա։ Եվ ո՞վ կարող է խրոխտանալ ծովի անդունդի խորքերը քննելու, այլ [մարդիկ] պարզապես երկար ճանապարհորդությունների մեջ վաճառքի անձնական շահն են միայն կամենում ձեռք բերել։ Սույն օրինակով և մենք ոչ թե հանդգնությամբ, երեխայաբար և անմտորեն առաջ նետվեցինք, այլ ակամա ընթանալով, ըստ հարկադրող իշխանների բռնի հրամանների, նավարկեցինք պատմության մատյանների այս ծովի վրա։

7 Քանզի թագավորական հրամանը հարկ դրեց մեր մտավոր աղքատ գանձարանի վրա, պահանջելով մեզանից՝ անցած դեպքերի նկարագրությունը տալ և մատենագրել մեզանում կատարված հայտնի պատմությունները։ Սակայն չափազանց ջանք ենք թափել մեր հետնորդներին թողնելու դեպքերի շարքի դար առ դար հիշատակումը։ Ոչ թե մեր կամքով հոժարեցինք, հանձն առանք այն գործը կատարել, այլ չկարողանալով ընդդիմանալ արքայատուր հրամաններին, պատմելու ենք ըստ [այդ] հրամանների, որչափ մեր ուժն է ներում։ Հանձն առնելով այդ աշխատանքը՝ սկսենք խոսքի

բանից, առեալ զա՛հ երկիւղի, և տուեալ զգեղեցկագիր յարմարումն պատմութեան։ Վասն զի ի խնդիր եղեալ և խուզիւք ի մէջ բերեալ զդարգս դարգս պատմութեան՝ զմարմնաւորացն մատենագրութիւն՝ ըստ կարգի պատմութեան, ըստ օրինին, ըստ ժամանակին, ըստ իրացն եղելոցն, ըստ հրամանացն ի վաճառ մատուցուք։

8 Իսկ զհոգևորացն առաքինութիւն աստուածասէր սիրողացն մեծութիւն իբրև զմարգարիտն պատուական, զբոլորաձևն, զլուսաւորն, զչքնաղագիւտն, որ ոչ ունի գեղութիւն բաժանման իւրոյ ճաճանչաւոր լուսոյն, այլ լիութեամբ զարդ անձին վայելուչ զթագս թագաւորացն զարդարեսցէ. և կամ ականք պատուականք ի Հնդկային աշխարհէն, որ ի վայելչութիւն զարդու ի խոյր պսակի զարդարիցեն զթագաւորս։ Իսկ արդեօք այս զի՞րդ կամ ո՞րպէս գտանիցի ումեք վայրապար, եթէ ոչ ի մեծագնաց թանգարացն, որք և մեծն աշխատանօք, երկայնուղւոյ ճանապարհաց զթոշակսն բաւեցուցին, և մեծաջանք եղեալ ի գտանել՝ զթագաւորս զարդարեցին։ Իսկ սոցա ճաճանչ լուսոյս, զոր մեր ի վաճառ իջուցեալ, ոչ միայն ի զարդ զգլխոյ թագաւորին բովանդակի առ ի տես այլոցն, այլ և զամենեսեան զարդարէ, զամենեսեան լուսաւորէ, զամենեսեան լցուցանէ, ամենեցուն բաւէ, զամենեսեան մխիթարէ, զամենեսեան բժշկէ։ Զթագաւորս շքեղացուցանէ ի նմանութիւն արտախոյրն պսակի ի վերջաւորն փողփողելոյ. նա և զաղքատս լցուցանէ, թօթափէ բարձրացուցանէ յաղքեաց և հաւասար իշխանաց կացուցանէ. նա և պսակումն աշխարհաց օրհնութեամբ լցուցեալ, պսակ բոլորեալ տարւոյ քաղցրութեամբ։

9 Նոքա և զկարօտս լցուցանեն երկնաւոր առատութեամբ. նոքա և աշխատութեան կարօտելոցն հանգիստ պատրաստեն. նոքա դարման անկարօտ լի ամենայն բարեօք. նոքա կարեն տալ բժշկութիւն առանց դեղոց խնկոց արմատոց. նոքա կարեն շինութիւն շնորհել քաղաքաց մարդասիրութեամբ Տեառն իւրեանց. նոքա կարեն մեծացուցանել զաշխարհ աղօթիւք նահատակութեան իւրեանց. նոքա կարեն ցուցանել զելս երկնաւոր ճանապարհացն առ Աստուած վերանալոյ. նոքա են ուղևորք արքայութեանն ճանապարհացն Աստուծոյ. նոքա են որ չարչարեալք վասն Տեառն իւրեանց մեռան, և ի կենդանութիւն փոխեցան, և զանուն և զօգուտ պտղոց իւրեանց քաջութեան յաշխարհի թողին։ Նոքա կեանք և փրկութիւն այնոցիկ որ մեղօքն են աղքատացեալ. նոքա են մեծութեան գանձ ծածկեալ յերկրի երկնաւոր արքային. նոքա հաւատովք իւրեանց խնդացուցանեն և



վաճառականությունը*, երկյուղածությամբ տանք պատմության գեղեցիկ շարադրանքը։ Ուստի կատարված դեպքերը և մահկանացուների մատենագրությունը քննելով, մանրակրկիտ զննելով՝ մեկ առ մեկ, ըստ պատմության կարգի, օրենքի, ժամանակի և մեր ստացած հրամանների շարադրենք։

8 Իսկ հոգևոր արժեքների վեհությունը, որ աստվածասերների համար մեծություն է, նման է թանկագին մարգարիտի, նույն բոլորակաձև, լուսավոր, հազվագյուտ, որը չունի բիծ կամ արատ իր ճաճանչավոր փայլի մեջ, այլ առատորեն զարդարում է թագավորների վայելուչ թագերը և կամ Հնդկաց աշխարհից բերված թանկագին քարերի [նման], որոնք վայելուչ զարդով, խույրով ու պսակով զարդարում են թագավորին։ Իսկ արդյոք այս բոլորը ինչպե՞ս կարող է ուրիշ մեկի կողմից հեշտորեն գտնվել, եթե ոչ երկայն ուղիներ անցնող վաճառականների կողմից, որոնք մեծ չարչարանքով երկար ճանապարհներում բավականաչափ պաշար օգտագործելով, մեծ ջանքերով գտնում են դրանք և զարդարում թագավորներին։ Իսկ սրանց լույսի ճաճանչը, որ մենք վաճառքի ենք հանում, ոչ միայն թագավորի գլուխն է զարդարում, ի տես այլոց, այլև ամենքին է զարդարում, լուսավորում, ճոխացնում, ամենքին է գոհացնում, մխիթարում, բժշկում, թագավորներին շքեղացնում է փողփողուն վերջավորությամբ արտախույր պսակի նման, աղքատներին ճոխացնում է, թոթափում, բարձրացնում աղբակույտից և հավասարեցնում իշխաններին, ինչպես նաև երկրները լցնում է օրհնությամբ, իսկ տարին բոլոր՝ քաղցրությամբ։

9 Սրանք նաև կարիքներն են բավարարում երկնային առատությամբ, չարչարվածներին հանգիստ են բերում, առատ դարման են տալիս լի ամենայն բարիքներով, նրանք կարող են բժըշկություն տալ առանց դեղերի, խունկերի, արմատների, շենություն կարող են շնորհել քաղաքներին իրենց Տիրոջ մարդասիրությամբ, մեծացնել երկիրը՝ իրենց նահատակության աղոթքներով և ցույց տալ երկնային ճանապարհների ելքը՝ առ Աստված բարձրանալու համար։ Ուղեցույց են Աստծո արքայության ճանապարհների։ Նրանք են, որ իրենց Տիրոջ համար չարչարված մեռան, անմահացան և իրենց անունն ու խիզախության պտուղները աշխարհին թողեցին։ Կյանք են նրանք ու փրկություն նրանց համար, որոնք մեղքերով են աղքատացած, նրանք երկնավոր արքայի մեծության գանձ են՝ երկրում ծածկված, իրենց հավատքով խնդացնում են և ուրա-

արտաք առնեն զայնոսիկ, ոյք յԱստուծոյ մեծացեալ գանձեն. նոքա զմերկս զգեցուցանեն, և զայնոսիկ, որք մեղօքն են մերկացեալ ըստ նմանութեանն Ադամայ՝ լուսաւոր պատմուճանօք զգեցուցանեն. նոքա և զքաղցեալս յագեցուցանեն, որք անգիտութեան մեղօքն իցեն սովեալք. նոքա և զծարաւիս արբուցանեն առաքինութեան բաժակաւն. նոքա և զգանձն երկնաւոր յաւելուն տան այնոցիկ որ առաւելագոյն ունիցին. զի «Որ ունիցին՝ տացի նմա և յաւելցի». և առ ամենեսին բանան զդրունս գթոյ մարգասիրին Քրիստոսի։ Վասն այսորիկ իսկ սիրեցին զՏէրն իւրեանց, և սիրեցան ի նմանէ, և բարեխօսութեամբն լցուցանեն զամենայն կարօտս։

10 Այսպիսի մարգարիտ ոչ միայն ոգւոց, այլ և մարմնոց զարդ և պայծառութիւն է. շինութիւն աշխարհի՝ յԱստուծոյ նոցա բարեխօսութեամբ է շնորհեալ. զի գութ աստուածութեանն ի նոսա իջեալ՝ ողորմութիւն և քաւութիւն շնորհէ աշխարհի. զի վասն այսորիկ իսկ նաւեալք ընդ մէջ մրրկեալ աշխարհակլիր մեղացն վտանգեցան, պատերազմեալք ճգնութեամբ ընդդէմ ալեացն, ի վերայ խորոցն սահեցան, հասանել ի նաւահանգիստն խաղաղութեան երկնաւոր նաւապետին։ Մատուցին պսակ պարծանաց լուսաւոր Թագաւորին, զերծեալք ի բքոյ ամբարշտութեան, հասեալք ի քաղաքն, պատրաստեալք անանց ուրախութեան և առլցեալք մարգարտովն պատուականաւ, և հոգևոր լուսոյ ակամբք պսակեալք. որք և վաճառեցին զկեանս իւրեանց մատնելեացն ի տանջանս, և մեծացան յանանցն մեծութիւն, որք և բարձեալ ունին զշինութիւն աշխարհի կանգուն, անվթար, անշարժ, հաստատեալ ի նաւս հաւատոց իւրեանց։

11 Իսկ այսպիսի վաճառաց ո՞յր ուրուք արդեօք զի՞նչ գին բաւիցէ. այո՛ այո՛, և կարի քաջ. միայն յօժարութիւն կամաց սրտին՝ սիրով մատուցանել զլսելիս, հաւատովք ձգտեալ զականջս՝ ամեն պատգամաց, և անդէն ի կամս սրտին հասեալ գեղեցկագոյն իբրև զպատուական մարգարիտն ծանրագին ընդ յօժարութեանն զարդ ականջաց՝ գինդ եղեալ կախեսցի. միայն զգլուխդ խոնարհեցո՛, և անդէն հոգևորական պսակն ի վերայ գլխոյդ դնի, և առաւել քան զականս պատուականս զարդարեսցէ զքեզ։ Միայն յօժարեաց ի կոչումն արքայականս, և անդէն քաղցրութեան անուշութիւն խորտիկացն ի քիմս քո պատրաստեսցի. միայն ծարաւի՛ լեր սիրոյն, և անդէն աղբիւր կենդանութեան զերաշտութիւն ծարաւոյն պասքելոյն յագե-



խացնում այնպիսիներին, որոնք Աստծով ճոխացած գանձում են։ Նրանք հագցնում են մերկերին և նրանց, որ Ադամի նման մեղքերով մերկացած են, լուսավոր պատմուճաններով զգեստավորում են, հագեցնում են քաղցածներին, որոնք անգիտության մեղքերի պատճառով սովյալ են, ծարավներին արբեցնում են առաքինության բաժակով և երկնային գանձը տալիս են նրանց, որոնք առավելագույնն ունեն, քանզի «ով որ ունի, կտրվի նրան և կավելացվի»։ Նրանք մարդասեր Քրիստոսի գթության դռները բաց են անում ամենքի համար։ Հենց սրա համար էլ սիրեցին իրենց Տիրոջը ու սիրվեցին նրանից և բարեխոսությամբ բավարարում են բոլոր կարիքները։

10 Այսպիսի մարգարիտը ոչ միայն հոգիների, այլև մարմինների զարդ ու պայծառություն է։ Նման մարդկանց բարեխոսությամբ է, որ Աստված աշխարհին շինություն է պարգևում, քանզի աստվածային գութը նրանց վրա իջնելով ողորմություն և քավություն է շնորհում աշխարհին։ Ահա թե ինչու աշխարհիկ մեղքերի մրրկահույզ ծովի վրա նավարկողները իրենց վտանգեցին՝ համբերությամբ պատերազմելով ալիքների դեմ, սահեցին [ծովի] խորությունների վրա, հասնելու համար երկնային նավապետի խաղաղության նավահանգիստը։ Ազատվելով դաժան բքից և հասնելով քաղաք՝ նրանք պարծանքի պսակ մատուցեցին լուսավոր Թագավորին, պատրաստվելով հավիտենական ուրախության, թանկագին մարգարիտով առլեցուն և պսակված հոգևոր լույսի թանկարժեք քարերով։ Նրանք իրենց կյանքը վաճառքի հանեցին իրենց տանջանքի մատնողների համար, մեծացան անանց հարստությամբ և աշխարհի շինությունը կանգուն, անվթար ու անշարժ են պահում իրենց հավատքի նավերի վրա։

11 Իսկ այսպիսի վաճառքին ո՞վ արդյոք ի՞նչ գին կարող է տալ. այո՛, այո՛, չափազանց լավ. միայն [պետք է] հոժար կամքով, սիրով լսելիքը տրամադրել, հավատքով սրել ականջները, որպես պատգամների ընդունարան, և իսկույն պատվական ծանրագին մարգարիտը, սրտի [բարի] կամքով, զարդ կդառնա, որպես ականջից կախված գինդ։ Միայն խոնարհիր գլուխդ, և հոգևոր պսակը անմիջապես կդրվի գլխիդ ու դա կզարդարի քեզ առավել, քան թանկագին քարերը։ Միայն համաձայնվիր արքայական կոչմանը և այն ժամանակ խորտիկների քաղցր անուշությունը քո քիմքը կպատրաստի։ Միայն ծարավ եղիր սիրո, և իսկույն կենդանության

*ցուցէ զքեզ. միայն լուա՛ զքեզ յաղտոյ, և անդէն անթառամ և լուսաւոր զգեստուն առաւելագոյն ևս քան զանուշահոտ շուշան ծաղիկն զքեզ զգեցուցանէ։*

*12 Արդ՝ ջան յանձին կալեալ մտանել ի պատմագիր մատենիցս խորութիւն, ցուցանել այնոցիկ, ոյք իմաստութեամբ կամիցին ունկընդիր լինել օգտակար պատմութեանս։ Արդ՝ հրաման հասեալ առ իս ումն Ագաթանգեղոս, որ ի քաղաքէ ի մեծն Հռովմայ, և վարժեալ հայրենի արուեստիւ, Հռոմայերէն և Յունարէն ուսեալ դպրութիւն, և ոչ կարի ինչ անտեղեակ լեալ ձեռնարկութեան նշանագրայ. և ի վերայ այսոցիկ հասեալ ի դուռն Արշակունւոյ, յամս քաջի և առաքինւոյն, ուժեղ և պատերազմողն Տրդատայ, որ քան զամենայն նախնիսն քաջ եղեալ՝ զանցոյց արութեամբք, որ ըմպշամարտ սկայազօր քաջութիւնս գործեաց ի մարտս պատերազմաց։ Ոչ զիւր ինչ քաջութիւն՝ սուտ հրամայեաց մեզ վիպասանել, և ոչ զքմազարդ բանից ինչ առասպելս աւելի քան զարժանն ընթանալ. այլ իբր որ եղեալք վասն յեղանակաց յեղափոխ ժամանակաց, մարտամբոխ պատերազմաց, սուրակոխ բազմահեղ արեանց կոտորածոյ, անհուն զօրաց շփոթելոց, գերութեան աշխարհաց, աւերածոյ գաւառաց, քանդելոյ քաղաքաց, մատնելոյ աւանաց, հարկանելոյ բազմութեան մարդկան վասն քաջութեան քինախնդիր վրիժուց։*

*13 Արդ՝ հասեալ առ իս հրաման ի մեծ արքայէն Տրդատայ՝ կարգել ինձ ի ձեռնարկութենէ նշանագիր ժամանակագրացն՝ պատմել նախ զհայրենեացն գործս քաջութեան քաջին Խոսրովու, և որ ինչ գործք գործեալք քաջութեան մարտից պատերազմացն, ընդ շրջշրջումն տէրութեանն փոխելոյ ընդ կոյս հարկանելոյ, և ազգաց խռովելոյ. և կամ վասն մահուանն քաջին Խոսրովու, թէ ուստի՛ և կամ զիա՛րդ և կամ ո՛րպէս, և կամ զի՛նչ անցք անցին. և կամ վասն հօրամոյն քաջութեանն Տրդատայ, և որ ինչ գործ գործեաց յամս յաւուրս իւրոց ժամանակաց. և կամ վասն սիրելեաց վկայիցն Աստուծոյ, թէ ո՛րպէս և կամ զիա՛րդ եկեալ, իբրև լուսաւորք ծագեցին, փարատել զմէգ խաւարի ի Հայաստան աշխարհէս. կամ ո՛րպէս զանձինս իւրեանց փոխանակեցին ընդ Աստուծոյ ճշմարտութեանն. և կամ ո՛րպէս գթացեալ Աստուծոյ՝ այց արար Հայոց աշխարհիս, ի ձեռն առ միոջ եցոյց զսքանչելիս մեծամեծս, որ համբերութեամբ բազում և ազգի ազգի փորձութեանց և կապանաւոր վշտաց մենա-*



*աղբյուրը կհագեցնի քո տոչորուն ծարավի երաշտը։ Միայն մաքրիր քեզ աղտից, և իսկույն անթառամ ու լուսավոր զգեստը կզարդարի քեզ, առավել քան անուշահոտ շուշան ծաղիկը։*

*12 Արդ՝ ջանք հանձն առնելով մտնել պատմության մատյանների խորության մեջ, խոսքը կուղղեմ նրանց, որ կամենում են իմաստությամբ ունկնդիր լինել օգտակար պատմությանս։ Արդ՝ հրաման է հասել ինձ՝ Ագաթանգեղոսիս, որ մեծ Հռոմ քաղաքից եմ, կրթված հայրենի գիտությամբ, սովորել եմ լատիներենն (հռոմայերեն) ու հունարենը, ուսանել դպրությունը և ոչ խիստ անտեղյակ [մնացել] նշանագրերի արվեստին։ Սրա հետ մեկտեղ եկել եմ Արշակունու արքունիք, քաջ և առաքինի, ուժեղ և պատերազմող Տրդատի տարիներին, որը բոլոր նախնիներից կորովի լինելով՝ արիությամբ գերազանցել է նրանց, եղել է ըմբշամարտիկ և պատերազմների մեջ հսկային վայել քաջություններ է գործել։ Մեզ հրամայեց ոչ իր քաջագործությունները սուտ վիպասանել և ոչ էլ արժանիքներից ավելի քմազարդ առասպելները չափազանցել, այլ շարադրել եղած դեպքերը՝ [տալով նկարագրությունը] հարափոփոխ ժամանակների հանգամանքների, մարտամբոխ պատերազմների, սրակոխ կոտորածների բազմահեղ արյան, իրար բախվող անթիվ զորքերի, երկրների [ժողովուրդների] գերության, գավառների ավերածության, քաղաքների կործանման, ավանների ավերման, մարդկային բազմությունը կոտորելու՝ քինախնդիր վրիժառության քաջության համար։*

*13 Արդ՝ ինձ հրաման է հասել Տրդատ մեծ արքայից՝ կարգով գրի առնել ժամանակների դեպքերը, պատմելով նախ քաջ Խոսրովի հայրենական պատերազմների ժամանակ կատարած քաջությունները, տերության մեջ տեղի ունեցած փոփոխությունները, ամեն կողմ ուղղված հարձակումները, ազգերի խռովությունը, քաջ Խոսրովի մահը, թե որտեղից, ինչու կամ ինչպես այդ պատահեց և կամ ինչ անցուդարձ կատարվեց. ազնվահայր Տրդատի քաջության մասին, իր թագավորության ժամանակ արած գործերը։ Եվ Աստծու սիրելի նահատակների մասին, թե ինչպես կամ ինչու եկան, ծագեցին իբրև լուսատուներ՝ փարատելու համար մեգը մեր Հայաստան աշխարհից, թե ինչպես իրենց անձերը նվիրաբերեցին Աստծու ճշմարտությանը, կամ ինչպես Աստված գթալով այցելեց մեր Հայոց աշխարհը, մեծամեծ հրաշքներ ցույց տվեց մի մարդու ձեռքով, որը համբերությամբ և հաղթությամբ տարավ բազում ու տե-*



2—1461

կուի մենամարտիկ երկպատական բռնութեան յԱրտաշատ քաղաքի վասն Քրիստոսի յաղթութեամբ տարեալ, որոյ զվկայ անուն ժառանգեալ, որ ի մահ հասեալ մտեալ, և կամօքն Աստուծոյ այսրէն դարձեալ՝ ի վերակացութիւն դառնայր յերկիրս Հայոց։ Սա մտեալ ի դրունս մահու՝ դարձեալ անտի կամօքն Աստուծոյ, վարդապետութեանն Քրիստոսի պատգամաւոր գտեալ, յետ Աստուծոյ սքանչելագործ պատուհասին մարդասիրութեան։ Իսկ բարեացապարտն Տրդատ յանկարծակամ՝ կենացն ասպնջական ցանկալի ամենեցուն լինէր, որ աշխարհածննունդ հայրենեացն որդի գտանէր շնորհօքն Աստուծոյ, և յաւիտենական կենացն մերձաւոր լինէր։

14 Եւ արդ՝ քանզի ըստ օրինակի գրելոցս առ ի մէնջ՝ ոչ եթէ ի հին համբաւուց տեղեկացեալք մատենագրել զայս կարգաւ, այլ որոց մեզէն իսկ եղեալ ականատես կերպարանաց և առընթերակաց հոգևորական գործոցն, և լուսաւոր շնորհապատում վարդապետութեանն, ըստ աւետարանական հրամանացն, և կամ որպէս լուսաւոր վարդապետութիւնն գեր ի վերոյ ամենեցուն շնորհօքն Աստուծոյ յարգեցաւ։ Զոր առեալ թագաւորին՝ զամենեսեան աստուածակարգ լծոյն հնազանդեցուցանէր. մանաւանդ թէ ոչ նա, այլ կամք մեծազօրին Քրիստոսի։ Եւ կամ ո՛րպէս զմեհեանսն ի ձեռս առեալ՝ կործանեալ աւերեցին, և սուրբ հիմունք եկեղեցեաց կանգնէին. կամ ո՛րպէս զնոյն ինքն աշխարհի հովիւ կացուցեալ՝ վայելէին ի նորուն վարդապետութեանն. և կամ ո՛րպէս դարձաւ Տրդատ անդրէն յաշխարհն Յունաց յամս աստուածասէրն Կոստանդեայ, թագաւորի կացելոյ Յունաց և Հռովմայեցւոց աշխարհին, և կամ ո՛րպէս ուխտ եդեալ, հաստատեալ զնա յաստուածպաշտութիւն՝ դարձեալ լինէր անտի մեծաւ պարգևօք և բազում փառօք, և կամ ո՛րպէս զբազում տեղիս՝ Աստուծոյ նուիրեալ Տրդատ մատուցանէր։ Զայս ամենայն մի ըստ միոջէ ոճով պատմեսցուք, Վարդապետութեամբ սրբոյն, որ արժանի եղև ի մեծ յեպիսկոպոսական աթոռն հասանել, և զհայրապետական անուն ժառանգեաց, մեծամարտն առաքինութեամբ, թէ ուստի՛, յորո՛ց կամ ո՛ ոք էր, կամ յորմէ՛ ազգէ, որ զայս արժանի եղև գործել աստուածատուր շնորհօքն առեալովք։

15 Արդ՝ հեծից ի մտաց երիվարն, և յարմարեցից զասպարէզն հանճարոյ. ուղղեցից զնպատակն խորհրդոյ, և թափ տաց ուժի բազկօքս և ձգեցից ի կորովս գրչի մատանցս, և լեզուաւ զխորհուր-



ակ-տեսակ փորձություններ և կաշկանդող վշտի մեջ Արտաշատ քաղաքում մենամարտիկ եղավ երկպատիկ բռնության դեմ, հանուն Քրիստոսի հաջողությամբ դիմացավ և նահատակի անուն ժառանգեց։ Հասավ մինչև մահ և Աստծու կամքով ետ դառնալով այնտեղից մեր Հայոց երկրում վերակացու* դարձավ։ Մտավ մահվան դուռը, ապա Աստծու կամքով վերադարձավ, դառնալով Քրիստոսի վարդապետության պատգամավորը, Աստծու մարդասիրական հրաշագործ պատժից հետո։ Իսկ երախտավոր Տրդատը, կամովին դժվարին կյանք ընտրելով՝ ամենքին ցանկալի դարձավ, Աստծու շնորհներով իր բնաշխարհիկ հայրենիքի որդին եղավ և հավիտենական կյանքին մերձավոր դարձավ։

14 Արդ, մեր այս գրված օրինակի մեջ, ոչ թե հին ավանդություններից տեղեկանալով այս [բոլորը] կարգով մատենագրել ենք, այլ մենք ինքներս ականատես ենք եղել անձնավորություններին և նրանց՝ հոգևոր գործերին և լուսավոր շնորհապատում վարդապետությանը, ավետարանական հրամանների համաձայն, և թե ինչպես լուսավոր վարդապետությունը, Աստծու շնորհիվ, բոլորից վեր դասվեց։ Այս աստվածակարգ լծին հնազանդեցրեց թագավորը իր ամբողջ [ժողովրդին], մանավանդ ոչ թե նա էր [այդ անում], այլ մեծազոր Քրիստոսի կամքը։ [Նկարագրենք] թե ինչպես մեհյաններին տիրելով՝ հիմնահատակ կործանեցին և եկեղեցու սուրբ հիմքերը կանգնեցրին։ Կամ ինչպես իրեն (Գրիգորին) երկրի հովիվ նշանակելով՝ վայելեցին նրա վարդապետությունը։ Թե ինչպես Տրդատը կրկին գնաց Հունաց աշխարհը աստվածասեր Կոստանդիանոսի ժամանակ, որը Հունաց և Հռոմայեցոց երկրի թագավորն էր, ուխտ դրեց նրա հետ հաստատ մնալու աստվածապաշտության մեջ և այնտեղից վերադարձավ մեծ պարգևներով, բազում փառքով և շատ վայրեր Տրդատը նվիրեց Աստծո [պաշտամունքին]։ Այս ամենը մեկ առ մեկ, կարգով կպատմենք, նաև Վարդապետությամբ սրբի, որն արժանի եղավ հասնելու եպիսկոպոսական մեծ աթոռին, ժառանգեց հայրապետական անունը և առաքինության մեծ մարտիկը եղավ։ [Կպատմենք], թե որտեղի՛ց էր, որոնցի՛ց, ո՛վ կամ ո՛ր տոհմից էր նա, որ արժանի եղավ աստվածատուր շնորհքով այս բոլորը գործելու։

15 Արդ, կհեծնեմ մտքի երիվարը և կանցնեմ հանճարի ասպարեզը, կուղղեմ մտքի նպատակը։ Թափ կտամ բազուկներիս ուժին ու կորովի մատներովս կսեղմեմ գրիչը, լեզվովս կարտահայ-

դըս յուզեցից, և շրթունքս ի շշնչել իմաստունս կարասցեն, և կարգել հաստատական, յեղեղուկ հոլովել զանխու պատմութեան բանիցս, զի կամակարագոյնս նաւիցեմք զալեօք ժամանակագրական ծովուս. պատմել յազգ յայլ ժողովրդին ստացելոյ, որք օրհնեսցեն զտէր, որք յետ այսր անցեալ ժամանակաց գալոցն իցեն, որք հարցեալ զհայրենական մատեանսն՝ պատմեսցի նոցա, և զծրագիր կարգեալս՝ և ասասցի նոցա։

16 Ընթերցեալ զԹորգոմայ ազգիս, զՀայաստան աշխարհիս զաստուածապարգև աւետեացն աւետարանին քարոզելոյ բանին կենաց, թէ ո՛րպէս կամ զիա՛րդ ընկալան, և ո՛րպիսի արամբ, կամ ո՛ ոք ուստեք, որ զայս նորոգատուր զառաքելաբար շնորհս յանձին ցուցանելով՝ այնպիսի աստուածեղէն շնորհօք երևեցաւ։ Եւ վասն նորին լուսաւոր վարդապետութեանն և հրեշտակակրօն վարուցն առաքինութեան և կարգացն, ազնուական համբերութեանցն շնորհալից մեծազօր նահատակին, որ և խոստովանող Քրիստոսի գտեալ և վկայ ճշմարտութեան, և կամ ո՛րպէս յայնմհետէ շինութիւն և խաղաղութիւն, լիութիւն և պտղաբերութիւն և բժշկութիւն աղօթիւք նորա շնորհեցաւ յԱստուծոյ։ Եւ թէ զիա՛րդ նորուն աստուածսիրութեամբ և Քրիստոսի զօրութեամբ նմա տուելով՝ անկան փշրեցան ունայնութեան պաշտամունքն, և աստուածպաշտութիւն տարածեցաւ ընդ ամենայն երկիրս Հայոց։ Եւ կամ ո՛րպէս շինեցան եկեղեցիք ի Հայաստան աշխարհիս, և քակեցան ունայնութեան պաշտամունքն, այն որ ի սովորական մոլորութենէ նախնեացն՝ ընդվայրակոչկոճ, գրթախաղաց քարանցն և փայտիցն յիմարութիւնքն էին, և ուրուապաշտ թմբրութիւնքն անզգայութեանց. իբրև արբեալք անմրտութեամբքն, պակուցեալք շռայլութեամբքն մեղաց, դիւցախելառ մրրովն գնային ի մէջ ծովացեալ մեղացն չարութեան։ Որ կամօքն Քրիստոսի քարոզ գտեալ արդարուսոյց՝ ամենեցուն Հայաստան աշխարհիս, չկապել ընդ գարշապարս մեղաց ի ծովանման յաշխարհիս յայսմիկ։ Այլ ի հողմախաղաղ յանքոյթ նաւահանգիստն հասեալ աստուածահօրն շինութեան, կենաց մշտնջենականաց անդ պատրաստեաց օթևանս նոցա։

17 Իսկ իմ անցեալ սահեալ շրջեալ ի վերայ յորձանախոր, լայնանիստ, յարաճօճ, անդնդապտոյտ, սարսռասէր, անհանգիստ, արշաւասոյր, օդավար, ջրակուտակ յուզակ ալեացն, սրավարացն մոլեգնելոցն, ձգտեալ ի կղզիս քաղաքացն և յաշխարհս հեռաբնակս,



տեմ մաքերս, և թող իմ շուրթերը կարողանան իմաստուն խոսքեր շշնջալ։ Հաստատորեն կարգավորելով կպտտեցնեմ, կդարձնեմ խոսքերի պատմության անիվը, որպեսզի տիրաբար նավեմ ժամանակագրության ծովի ալիքների վրա։ Կպատմեմ այս բաներն ստացող մարդկանց և մեր ժամանակներից հետո եկող ազգերին, որոնք օրհնելու են տիրոջը, և հայրենի մատյանները պրպտելիս թող այս ամենը պատմվի նրանց և հաղորդվի կարգավորված ծրագիրը։

16 Ընթեռնելով Ավետարանի աստվածապարգև ավետիսները և կենաց խոսքը մեր Թորգոմյան ազգին և մեր Հայաստան աշխարհում քարոզելու [գրվածքը]*, թե ինչպես կամ ինչպիսի մարդու կողմից ընդունվեց այն և կամ ո՛վ էր նա, որ այս նորոգատուր առաքելական շնորհները իր վրա վերցնելով երևան եկավ այսպիսի աստվածեղեն շնորհքով, [կպատմենք] նրա լուսավոր վարդապետության և հրեշտակակրոն առաքինի վարք ու բարքի, ազնվական համբերության մասին այն շնորհալի մեծազոր նահատակի, որը Քրիստոսի խոստովանողը եղավ և ճշմարտության վկան։ Թե ինչպես դրանից հետո նրա աղոթքներով շենություն ու խաղաղություն, լիություն, պտղաբերություն ու բժշկություն շնորհեց Աստված։ Եվ թե ինչպես նրա աստվածասիրության և Քրիստոսի պարգևած զորության շնորհիվ ընկավ փշրվեց ունայնության պաշտամունքը և աստվածպաշտությունը տարածվեց ամբողջ մեր Հայոց երկրում։ Կամ թե ինչպես եկեղեցիներ շինվեցին մեր Հայաստան աշխարհում և ջնջվեցին սնոտի պաշտամունքները, որոնք նախնիների սովորական մոլորության հետևանքով իզուր ընդունված և մոլորեցուցիչ, կեղծ քարերի ու փայտերի հիմարություններն էին և անզգայության կռապաշտ թմրությունը։ Այս բոլորը անմրտություններով արբեցած, մեղքերի շռայլությամբ զարհուրած, դիվահար մրուրով ընթանում էին չար ու ծովացած մեղքերի մեջ։ Իսկ [Ս. Գրիգոր] Քրիստոսի կամքով արդարուսույց քարոզ կարգաց մեր ամբողջ Հայաստան աշխարհին, որ չկապվեն մեղքերի գարշապարին* այս ծովանման աշխարհում, այլ հասցնելով աստվածահոր շինության հողմախաղաղ անդորր նավահանգիստը՝ նրանց այնտեղ մշտնջենական կյանքի օթևաններ պատրաստեց։

17 Իսկ ես անցնելով, սահելով, պտտվելով, հորձանախոր, լայնանիստ, հարաճոճ, անդնդապտույտ, սարսռասեր, անհանգիստ, արշավասույր, հողմավար, ջրակուտակ, խռովահույզ և մոլեգնած սրընթաց ալիքների վրա ձգտել եմ հասնել կղզիներ, քաղաքներ և

*գտեալ լցեալ մեծաբեռն խատաբեռունս, ինչ ինչ պատուական և արգոյ, ի զարդ և յօգուտ՝ եկեալ հասուցաք ի կայս հանգստեան ձերոյ օգտութեան. փութացեալ բացցուք զթանգարական վաճառս խանթից. վաճառեսցուք լսելեաց զգիտս աշխատութեան մերոյ, առնուլ զունկնդրութիւն և տալ զպատմութիւն։ Մանաւանդ վասն քոյոյդ հրամանի, քա՛ջ արանց Տրդատ արքայ Հայոց մեծաց, բերեալ զշահ վաճառին աշխարհի շինութիւն՝ քեզ ի գանձ յաւելցուք ի մերոյ ծովալաստակ նաւաստեացս։*

*Հեռաբնակ երկրներ՝ գտնելով, լցնելով մեծաբեռ ծանր ապրանքներ, թանկագին ու հարգի իրեր, որպես զարդ և օգուտ, ու եկել ապահով տեղ եմ հասցրել ձեր օգտի համար։ Փութանք բացել մեր վաճառականական խանութների առևտուրը՝ վաճառենք ունկնդիրներին մեր աշխատանքի արդյունքները՝ ստանալով նրանց ունկընդրությունը և տալով մեր այս պատմությունը։ Մանավանդ քո հրամանի համար, ով քաջ այր՝ Մեծ Հայքի Տրդատ արքա, բերելով մեր առևտրի շահը ի նպաստ երկրի շենացմանը՝ ավելացնենք քո գանձը մեր՝ նավաստիներիս ծովի վաստակով։*

# ԱԳԱԹԱՆԳԵՂԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՎԱՐՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

*18 Ա. Ընդ նուազել ժամանակաց թագաւորութեանն Պարթևաց, ի բառնալ տէրութեանն յԱրտաւանայ որդւոյ Վաղարշու, ի սպանանել զնա Արտաշրի որդւոյ Սասանայ,— որ էր նախարար ումն ի Ստահր գաւառէ, որ եկեալ միաբանեաց զզօրս Պարսից, որք լքին խոտեցին մերժեցին անարգեցին զտէրութիւնն Պարթևաց, և հաճեցան հաւանութեամբ ընտրել զտէրութիւնն Արտաշրի որդւոյ Սասանայ,— արդ իբրև լուաւ մահուն հասանելոյ զգուժս այսորիկ առ Խոսրով թագաւորն Հայոց,— որ էր երկրորդ տէրութեանն Պարսից, զի որ Հայոց թագաւոր էր՝ նա էր երկրորդ Պարսից տէրութեանն,— արդ՝ թէպէտ և վաղու լուեալ զբօթն՝ ոչ ինչ ժամանեաց հասանել յամբովկ գործոյն պատերազմի իրացն պատրաստութեան։ Յետ այսորիկ դարձեալ լինէր յիրացն եղելոց մեծաւ տրտմութեամբ, զի ոչ եհաս ինչ նմա գործել գործ. ի մեծ ի տրտմութենէն և յիրացն վճարելոյ դարձեալ անցեալ եկեալ լինէր յաշխարհ իւր։*

*19 Արդ՝ ի միւս ևս ի գլուխ տարւոյն սկսանէր Խոսրով թագաւորն Հայոց գունդ կազմել և զօր բովանդակել, գումարել զզօրս Աղուանից և Վրաց, և բանալ զդրունս Ալանաց և զՃորայ պահակին, հանել զզօրս Հոնաց, ասպատակ դնել ի կողմանս Պարսից, արշաւել ի կողմանս Ասորեստանի, մինչև ի դրունս Տիզբոնի։ Աւար առեալ զերկիրն ամենայն՝ յապականութիւն դարձուցանէր զշինանիստ քաղաքացն և աւանացն ցանկալեաց. զշէն երկիրն ամենայն թափուր և աւերակ թողոյր. ջնջել ի միջոյ ի բաց կորուսանել, խլել քակել, հիմն ի վեր ջանայր առնել, համարէր բառնալ զօրէնս տէրութեանն Պարսից։ Ուխտ եդեալ միանգամայն՝ վրէժ խնդրել մեծաւ քինութեամբ զանկանելն իւրեանց ի տէրութենէն. սպառ սպուռ ջանայր զվրէժ խնդրել, մեծաւ քինու նախանձաբեկ լինելով. մեծամեծս փքայր՝ ի բազմութիւն զօրացն ապաստան եղեալ, և ի քաջութիւն զօրացն յուսացեալ։ Վաղվաղակի ի թիկունս հասանէին մեծաւ բազմութեամբ ժիր և քաջ առն և ձիոյ և բուռն կազմութեամբ Աղուանք,*



# ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

## ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻ ՎԱՐՔԸ ԵՎ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

*18 Ա. Երբ Պարթևների թագավորությունն իր վախճանին հասավ*, վերացվեց Վաղարշի որդու՝ Արտավանի տերությունը և նա սպանվեց Սասանի որդի Արտաշիրի ձեռքով։ Սա մի նախարար էր Ստահր* գավառից, որ գալով միավորեց պարսից զորքերը, որոնք լքեցին, հեռացան, մերժեցին ու անարգեցին պարթևների տերությունը և հաճույքով նախընտրեցին Սասանի որդի Արտաշիրի իշխանությունը։ Արդ, երբ այս մահվան գույժը հասավ Հայոց Խոսրով թագավորին, որը Պարսից տերության մեջ երկրորդն էր, քանզի նա, ով Հայոց թագավոր էր՝ Պարսից տերության մեջ երկրորդ [անձն] էր,— թեպետև նա վաղուց էր բոթը լսել, [այնուհանդերձ] ոչինչ կարողացավ անել պատերազմի պատրաստության գործը ավարտելու համար։ Դրանից հետո նա դարձյալ պատահած դեպքերի համար մեծ տրտմության մեջ էր, քանզի որևէ գործ չկարողացավ անել։ [Ուստի] կատարվածի համար մեծապես տրտմելով նորից անցավ, եկավ իր երկիրը։*

*19 Արդ՝ մյուս տարեմուտին Հայոց թագավոր Խոսրովը սկսեց բանակ կազմել և զորք գումարել։ Հավաքեց աղվանից ու վրաց զորքերը և բացեց Ալանաց* ու Ճորա Պահակի դռները*, դուրս բերեց հոների* զորքը, ասպատակ սփռեց Պարսից երկիրը և արշավեց Ասորեստանի կողմերը մինչև Տիզբոնի (Տիսբոն) դռները։ Ավարելով ամբողջ երկիրը՝ ավերեց շեն քաղաքներն ու բարեկարգ ավանները, ամբողջ շեն երկիրը թափուր ու ավերակ թողեց՝ [ջանալով] մեջտեղից ջնջել կորցնել, քանդել ու հիմնահատակ անել և վերացնել Պարսից տերությունն ու կարգերը։ Միաժամանակ ուխտ դրեց մեծ քինախնդրությամբ վրեժ լուծել իրենց տոհմը իշխանությունից զրկելու համար։ Ջանում էր վրեժը լիովին լուծել, որովհետև մեծ քեն ուներ և ոխակալությունից վառվում էր։ Խիստ սպառնում էր՝ ապավինելով իր զորքի բազմությանը և հույսը դնելով նրա քաջության վրա։ Շտապույթ օգնության հասան աղ-*

Լփինք և Ճիղպք, Կասպք և այլ ևս որ ի սմին կողմանց, զի զվրէժ արեանն Արտաւանայ խնդրեսցեն։

20 Զի թէպէտ և էր ինքն ի մեծի տրտմութեան վասն բնութեան եղբայրութեան ազգատոհմին, զի հնազանդեցան և ի ծառայութիւն մտին համբարձելոյ թագաւորութեան Ստահրացւոյն, և ընդ նմին միամտեցան. զի թէպէտ և էր Խոսրովու և դեսպան արարեալ, զի իւրեանց տոհմայինքն ի թիկունս եկեսցեն և նոցա ընդդէմ կայցեն ընդ նորա թագաւորութեանն, անտի սմա ձեռն տուեալ ի կողմանց Քուշանաց, և յայնմ մարզէ և յիւրեանց ի բուն աշխարհէն և ի քաջ ազգաց և ի մարտիկ զօրացն զի ի թիկունս հասցեն. սակայն տոհմքն և ազգապետքն և նախարարքն և նահապետքն Պարթևաց ոչ լինէին ունկնդիր. զի միամտեալ և հաւանեալ և նուաճեալ էին ի տէրութիւնն Արտաշրի, քան ընդ տէրութիւն իւրեանց ազգատոհմին և եղբայրութեանն։

21 Սակայն առեալ Խոսրովու զբազմութիւն զօրաց իւրոց, և որ ուստեք ուստեք եկեալ հասեալ էին ի թիկունս օգնականութեան նիզակակիցք գործոյն պատերազմի։ Իսկ իբրև ետես թագաւորն Պարսից զայն ամբոխ բազմութեան գնդի, զի մեծաւ ուժով դիմեալ եկեալ հասեալ էին ի վերայ նորա՝ ել և նա ընդ առաջ նոցա ի պատրաստութիւն պատերազմի։ Բայց սակայն ոչ կարաց ունել զդէմ նորա, փախստեայ լինէր առաջի նոցա. զհետ մտեալ կոտորէին զամենայն զօրսն Պարսից, և դաշտացն և ճանապարհացն ցիր դիաթաւալ կացուցանէին և չարախտալատ վատնէին և անհնարին հարուածս ի վերայ հասուցանէին։ Եւ թագաւորն Հայոց դառնայր ի մեծ կոտորածէն մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ և ցնծալից ուրախութեամբ ի կողմանսն Հայոց յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, մեծաւ ուրախութեամբ և բարի անուամբ և բազում աւարաւ։

22 Ապա հրաման տայր ընդ կողմանս կողմանս դեսպանս արձակել, հրովարտակս առնել, յեօթն բագինս մեհենիցն ուխտաւոր լինել պատկերաց կռոց դիցն պաշտամանն։ Սպիտակ ցլուք և սպիտակ նոխազօք, սպիտակ ձիովք և սպիտակ ջորւովք, ոսկեղէն և արծաթեղէն զարդուք, ի վերջաւորս փողփողեալս, նշանակապ պալարակապ մետաքսիւքն և ոսկովք պսակօք և արծաթի զոհարանօք, յանօթս ցանկալիս ականբք պատուականօք, ոսկով և արծաթով, ի հանդերձս պայծառս և ի զարդս գեղեցիկս, զիւր ազգին Արշակունեաց զհայրենեացն պաշտամանց տեղիսն մեծարէր։ Նա և հինգերորդ ևս



վանները, լփինները, ճիղբերը և կասպերը* ժիր ու քաջ այրուձիու մեծ բազմությամբ և ուժեղ պատրաստությամբ, ինչպես նաև ուրիշներ այն կողմերից, որպեսզի Արտավանի արյան վրեժը լուծեն։

20 Քանզի թեպետ ինքը մեծ տրտմության մեջ էր իր հարազատ տոհմի, ազգակիցների համար, որոնք Ստահրացու հզորացող թագավորությանն էին հնազանդվել ու նրա իշխանության տակ մտել՝ համակերպվելով նրան, և, թեև Խոսրովը դեսպան էր ուղարկել իր տոհմակիցներին, որ իրեն օգնության գան, դեմ կանգնեն նրա թագավորությանը և քուշանների* կողմերից ու իրենց բուն երկրից օգնության ձեռք մեկնեն քաջ ցեղերն ու ռազմիկ զորքերը՝ թիկունք լինելու, այնուամենայնիվ պարթևական տոհմերը, ազգապետները, նախարարներն ու նահապետները չանսացին նրան, որովհետև համաձայնվել, համակերպվել և հնազանդվել էին Արտաշիրի տերությանը՝ փոխանակ իրենց ազգատոհմի տերությունը և եղբայրակցությունը [նախընտրելու]։

21 Սակայն Խոսրովը առավ իր զորքի բազմությունը և նրանց, որ այլևայլ տեղերից օգնության էին հասել պատերազմի գործում նիզակակից լինելու։ Իսկ երբ Պարսից թագավորը տեսավ հավաքված զորքի այդ բազմությունը, որ մեծ ուժով եկել հասել էր իր դեմ, ինքը ևս նրանց դեմ ելավ պատերազմի պատրաստությամբ։ Բայց չկարողացավ դիմադրել և փախավ նրանց առջևից, իսկ [նրանք] հետապնդելով՝ կոտորեցին Պարսից ամբողջ զորքը և դաշտերի ու ճանապարհների վրա դիաթավալ սփռելով ու դաժանաբար կոտորելով՝ նրանց ահավոր հարվածներ հասցրեցին։ Հայոց թագավորը կոտորածից մեծ հաղթությամբ, բազում ավարով և ցնծալի ուրախությամբ վերադարձավ Հայոց կողմերը, Այրարատ գավառը, Վաղարշապատ քաղաքը՝ անհուն ուրախությամբ, բարի անվամբ և մեծ ավարով։

22 Ապա հրաման տվեց բոլոր կողմերը պատվիրակներ ուղարկել, հրովարտակներ հղել՝ հրամայելով յոթ մեհյանների բագիններին ուխտի գնալ, պաշտամունք կատարել աստվածների կուռքերին։ Իր Արշակունի տոհմի հայրենական պաշտամունքի վայրերը մեծարեց՝ նվիրաբերելով սպիտակ ցուլեր ու նոխազներ, ճերմակ ձիեր ու ջորիներ, ոսկեղեն ու արծաթեղեն զարդեր՝ փողփողուն ծոպերով, պսակներով ու շարաններով զարդարուն մետաքսե զգեստներ, ոսկի պսակներ ու արծաթե զոհարաններ, թանկագին քարերով լի գեղեցիկ անոթներ, ոսկի ու արծաթ, պայծառագույն հանդերձներ

հանէր յամենայն մեծամեծ աւարացն ածելոց, և մեծամեծ պարգևս քրմացն շնորհէր։ Իսկ զօրացն որ զիւրեանն էին՝ ետ պարգևս և արձակեաց յիւրմէ։

23 Բ. Իսկ ի գալուստ ամին միւսոյ զօր բազում կուտէր յոյժ, գումարտակ առնէր, զնոյն զօր կոչէր, և ևս բազում քան զնոյն ասպատակ սփռեալ զկողմամբքն Ասորեստանի. մանաւանդ զի և զօրք Տաճկաց ի թիկունս եկեալ էին. աւար առեալ զերկիրն ամենայն՝ քաջութեամբ դառնային յիւրաքանչիւր տեղիս։ Եւ ամս մետասան ստէպ ստէպ զայս օրինակ աւար առեալ՝ աւերէին զամենայն երկիր սահմանացն, որ ընդ Պարսից թագաւորութեամբն և ընդ իշխանութեամբն էր։

24 Իսկ իբրև զայն ամենայն չարիս ետես թագաւորն Պարսից, որ եկին հասին ի վերայ նորա՝ նեղեցաւ, տառապեցաւ, տագնապեցաւ, տարակուսեցաւ, վարանէր յանձն իւր. առ ինքն կոչէր զամենայն թագաւորս և զկուսակալս և զնախարարս և զզօրավարս և զպետս և զիշխանս իւրոյ տէրութեանն. ի խորհուրդ մտանէին. աղաչէր զամենեսեան՝ հնարս ինչ մարթել խնդրել գտանել. ազգի ազգի պարգևս խոստանայր. թերևս ոք միայն գտցի, ասէ, որ զվրիժուց հատուցումն խնդրել մարթասցէ. յերկրորդական գահ իւրոյ տէրութեանն մատուցանել խոստանայր, թէ միայն նախանձու մեծի ձեռն արկեալ հատուսցէ ոք. բայց միայն աթոռովս ես ի վեր եղէց քան զնա, եթէ կարի յանարգաց ոք իցէ կամ ի պատուականաց. ազգի ազգի պատիւս և պարգևս և վարձուց հատուցմունս շնորհել խոստանայր։

25 Արդ՝ ոմն ի միջոյ խորհրդեանն գլխաւոր նահապետ էր Պարթևաց տէրութեանն, որոյ անուն էր Անակ. յոտն կացեալ, ի մէջ անցեալ՝ յիւրմէ ազգէն իբրև ի թշնամւոյ վերայ խոստանայր վրէժ խնդրել։

26 Խօսել սկսաւ ընդ նմա և ասէ. «Եթէ միայն զայդ նախանձ խնդրեսցես միամտութեամբ՝ զբնութիւնն պարթևական, զձեր սեփական Պալհաւն ի ձեզ դարձուցից, և քեզ թագ եդեալ փառաւորեցից, և երևելի և փառաւոր ի թագաւորութեանս իմում արարից, և երկրորդ ինձ կոչեցից»։

27 Պատասխանի ետ Պարթևն և ասէ. «Զմնացորդս ազգի իմոյ կեցուսցես դու. այլ ես և եղբայր իմ հարազատ այսօր հրաժարիմք ի քէն»։

28 Յայնմ ժամանակի հանդերձեցաւ կազմեցաւ Պարթևն եղբարբն



և գեղեցիկ զարդեր։ Մեկ հինգերորդ բաժին հանեց բերված հարուստ ավարից և մեծ պարգևներ շնորհեց քրմերին, իսկ իր հետ եղած զորքին ընծաներ տվեց ու արձակեց։

23 Բ. Իսկ երբ եկավ մյուս տարին, չափազանց շատ զորք կուտակեց, գնդեր կազմեց, նույն զորքը կանչեց, այն զորքից էլ ավելի, ասպատակ սփռեց Ասորեստանի կողմերը, մանավանդ որ տաճկաց (արաբների) զորքը օգնության էր եկել, և ավարելով ամբողջ երկիրը՝ յուրաքանչյուրը քաջությամբ դարձավ իր տեղը։ Այսպես տասնմեկ տարի շարունակաբար ավարի մատնելով ավերեցին այն բոլոր երկրները, որոնք Պարսից թագավորության իշխանության ներքո էին։

24 Իսկ երբ Պարսից թագավորը տեսավ այս բոլոր չարիքները, որ նրա վրա հասան, նեղվեց, տառապեց, շփոթվեց, տարակուսեց, ինքն իր մեջ մոլորվեց։ Իր մոտ կանչեց տերության բոլոր թագավորներին, կուսակալներին, նախարարներին, զորավարներին, պետերին ու իշխաններին և խորհրդի նստեցին։ Աղաչում էր ամենքին, որևէ հնար փնտրել գտնել. տեսակ-տեսակ պարգևներ էր խոստանում։ «Թերևս գտնվի մեկը, ասում էր նա, որ կարողանա վրեժը լուծել»։ Խոստանում էր շնորհել իր տերության երկրորդ գահը, եթե միայն որևէ մեկը կարողանար իր մեծ վրեժը լուծել։ «Միայն աթոռով ես վեր կլինեմ նրանից [ասում էր], թեկուզ շատ անարգ մարդկանցից լինի, կամ թե պատվականներից»։ Խոստանում էր ամեն տեսակ պատիվներ, պարգևներ և վարձի հատուցում շնորհել։

25 Արդ՝ այս խորհրդի մեջ ոտքի ելավ Պարթևաց տերության մի գլխավոր նահապետ, որի անունն էր Անակ, մեջտեղ գալով խոստացավ վրեժ առնել իր ազգակիցներից իբրև թշնամիներից։

26 Սկսեց նրա հետ խոսել [արքան] և ասաց. «Եթե միայն հավատարմաբար այդ վրեժը լուծես, ձեր պարթևական հայրենի իշխանությունը և պահլավական սեփական տիրույթները ձեզ կվերադարձնեմ, թագավորական թագ դնելով՝ կփառավորեմ քեզ, երևելի ու փառավոր կդարձնեմ իմ թագավորության մեջ, և իմ երկրորդը կլինես»։

27 Պատասխան տվեց Պարթևն ու ասաց. «Իմ ազգատոհմի մնացորդներին եթե ապրեցնես, ես և հարազատ եղբայրս այսօրվանից քեզ հրաժեշտ կտանք»։

28 Այն ժամանակ Պարթևն իր եղբոր հետ պատրաստվեց

իւրով հանդերձ, ընտանեօք կանամբք և որդւովք և ամենայն աղխիւ իւրեանց. չու արարեալ յուղի անկեալ, դէտ ակն կալեալ ճանապարհացն՝ ելեալ երթայր հատուածի պատճառաւ ի կողմանս Հայոց, իբրև թէ ապստամբեալ իցէ յարքայէն Պարսից։ Եկեալ յանդիման եղև թագաւորին Խոսրովու յՈւտի գաւառի, ի Խաղխաղ քաղաքի, ի ձմերոցս արքայութեանն Հայոց։

29 Իբրև ետես թագաւորն Հայոց՝ ցնծացեալ ել ընդ առաջ նորա և մեծաւ խնդութեամբ ընկալաւ զնա. մանաւանդ իբրև կեղծաւորութեամբ և դաւով սկսաւ խօսել ընդ նմա և զիւրոյ գալոյն հաւատարմութիւն ցուցանել։ «Վասն այնորիկ եկի ես առ քեզ, ասէ, զի հասարակ զհասարակաց վրէժ խնդրել մարթասցուք։

30 Արդ՝ իբրև ետես թագաւորն զայրն, զի դիմեալ եկեալ էր առ նա ամենայն ընտանեօքն հանդերձ, և մտերմութեամբ հաւատաց ի նա. յայնժամ տայր նմա պատիւ ըստ օրինաց թագաւորաց, և հանէր նստուցանէր զնա յերկրորդ աթոռ թագաւորութեանն. և զամենայն ժամանակս ձմերայնոյն ուրախութեամբ զաւուրս ցրտաշունչ հողմաշունչ սառնամանեացն անցուցանէին։

31 Իսկ իբրև եկին հասին աւուրք ջերոտ հարաւահողմն գարուն դրանցն բանալոյ՝ համբարձաւ թագաւորն ի կողմանցն յայնցանէ. եկին իջին յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք. և մինչդեռ ուրախութեամբ հանգուցեալ էին, ի միտ արկեալ թագաւորին՝ գումարտակ առնէր՝ անդրէն արշաւել ի կողմանս Պարսից։

32 Իբրև զայն լսէր Պարթևն՝ զերդումն ուխտին յիշէր որ ընդ Պարսից արքային ուխտեալ էր։ Նա և զխոստմունսն յիշէր զպարգևացն, և ի բուն աշխարհն փափագէր որ Պալհաւն կոչէր, և վատ խորհուրդ ի միտ արկանէր. առնոյր զթագաւորն մեկուսի նա և եղբայր իւր հարազատ՝ իբրև ի պատճառս ինչ զբօսանաց, իբրև խորհուրդ ինչ խորհել ընդ նմա. և զսուսերսն պողովատիկս թերաքամեալս ունէին. յանկարծ յեղակարծումն ժամանակի զէնս վերացուցեալ՝ զթագաւորն դիաթաւալ կացուցեալ յերկիր կործանէին։ Անդուստ ուստեմն իրազգած եղեալ իրացն որ եղեն՝ գոյժ աղաղակի ամբոխին թանձրանայր. մինչ այս մինչ այն՝ նոքա հեծեալ յիւրաքանչիւր երիվարս փախստական լինէին։

33 Իսկ իբրև զայն գիտացին նախարարք հայակոյտ զօրացն՝ գունդ գունդ հատանէին, զկնի լինէին. ոմանք ընդ ցամաքն աճապարեալ, հասանել ի խելս կամրջացն առ դրունս Արտաշատ քաղաքի։ Զի գետն Երասխ յարուցեալ գայր լի դարիւ և դարիւ, սառնա-



հանդերձ ընտանյոք, կանանցով, որդիներով, ամբողջ ունեցվածքով շարժվեցին, ճանապարհ ընկան և, զննելով ճանապարհները, ելան, գաղթելու պատրվակով գնացին Հայաստանի կողմերը, իբրև թե ապստամբվել էին Պարսից արքայի դեմ։ Եկան հանդիպեցին Խոսրով թագավորին Ուտիք գավառի Խաղխաղ քաղաքում՝ Հայոց թագավորության ձմեռանոցում։

29 Հայոց թագավորը երբ տեսավ, ցնծությամբ ընդառաջ ելավ ու մեծ խնդությամբ ընդունեց նրան, մանավանդ, երբ սա կեղծավորությամբ ու դավով սկսեց խոսել նրա հետ և իր գալու հավատարմությունը ցույց տալ։ «Այն բանի համար եմ քեզ մոտ եկել,— ասաց նա,— որ կարողանանք միատեղ ընդհանուրի վրեժը լուծել»։

30 Արդ՝ երբ թագավորը տեսավ այս մարդուն, որ եկել էր իր մոտ ամբողջ ընտանիքով, վստահորեն հավատաց նրան։ Այնժամ նրան պատիվ տվեց ըստ թագավորական օրենքների, հանեց նստեցրեց իր թագավորության երկրորդ աթոռին և ձմեռվա ամբողջ ընթացքում՝ ցրտաշունչ, հողմաշունչ սառնամանիքի օրերը, ուրախությամբ անցկացրին։

31 Իսկ երբ հասան ջերմ օրերը, հարավահողմ գարնան դռները բացվելու ժամանակը, հեռացավ թագավորը այդ կողմերից։ Եկան իջան Այրարատ գավառը, Վաղարշապատ քաղաքը։ Եվ մինչդեռ ուրախությամբ հանգստանում էին, թագավորը մտադրվելով զորք կազմեց՝ նորից Պարսից կողմերը արշավելու նպատակով։

32 Երբ Պարթևն այս լսեց, հիշեց այն երդումը, որ տվել էր Պարսից արքային։ Հիշեց նաև պարգևների խոստումները և փափագեց իր բնիկ աշխարհը տեսնել, որը Պահլավ էր կոչվում, չար միտք հղացավ. իր հարազատ եղբոր հետ թագավորին մեկուսի մի կողմ տանելով՝ իբր թե զբոսանքի կամ նրա հետ խորհուրդ անելու նպատակով, և պողպատե սուսերները կես մերկացրած պահելով՝ հանկարծ անսպասելիորեն զենքերը բարձրացրին և թագավորին դիաթավալ անելով՝ գետին տապալեցին։ Իսկույն եղած իրողությանը իրազեկ դառնալով՝ ամբոխը աղաղակով գույժ բարձրացրեց. մինչ այս, մինչ այն՝ նրանցից յուրաքանչյուրը իր երիվարը նստելով փախուստի դիմեց։

33 Հայակույտ զորքի մեծամեծները, երբ այս իմացան, գունդ գունդ բաժանվեցին ու հետապնդեցին։ Ոմանք ցամաքով աճապարեցին հասնելու Արտաշատ քաղաքի դռների մոտակա կամուրջի գլուխը։ Երասխ գետը հորդացած գալիս էր ափեափ լցուն, սառ-

հալ, ջրակուտակ, ծիւնասոյզ, ծիւնախաղաղ բազմութեամբն յաւուրս իւրոյ պղտորութեանն։ Կէսքն անցեալ ընդ կամուրջն Վաղարշապատ քաղաքի, զոր և կամուրջ Մեծամօրի կոչեն՝ աճապարէին հասանել յառաջ մի ի խելս կամրջին Արտաշատու։ Ի կիրճս ճանապարհացն արգելին զնոսա, ի մէջ արարեալ զնոսա՝ ի Տափերական կամրջացն գէտավէժ առնէին զնոսա։ Եւ ինքեանք անդրէն դարձեալ՝ վայիւք, ճչովք և ողբովք, և ամենայն երկիրն ժողովեալ զթագաւորն աշխարէին։

34 Եւ մինչ դեռ ջերմ ոգիքն ի ծոցոյն չև էին թափեալ, և շունչ վախճանին չև էր հասեալ՝ հրաման տայր զազգատոհմն սատակել։ Յայնժամ սկսան սատակել և կոտորել. մինչև ոչ թողին յերիտասարդաց մինչև յայն՝ որ բնաւ զաջ և զձախ ոչ գիտէր. նաև զիգական տոհմն մաշէին ի սուր սուսերի իւրեանց։ Բայց միայն երկուս մանկունս փոքրկունս յորդւոցն Պարթևին պրծեալ ոմն ապրեցուցանէր ի ձեռն դայեկաց ուրումն. զմին ի կողմանս Պարսից, և զմին ի կողմանս Յունաց առեալ փախչէին։

35 Գ. Եւ եղև իբրև լուաւ զայս ամենայն թագաւորն Պարսից՝ զուարճանայր, զուարթանայր, տօն մեծ ուրախութեան առնէր զօրն զայն, և բազում ուխտ ատրուշանացն կատարէր։ Զօրաժողով լինէր, խաղայր գնայր, ասպատակ սփռէր զկողմամբք Հայաստան աշխարհին. զխօսուն և զանասուն, զծեր և զտղայ, զերիտասարդ և զմանուկ առ հասարակ խաղացուցանէր ի գերութիւն։

36 Անդ ոմն պրծեալ ապրեցուցանէր ի հինէ անտի որդւոցն Խոսրովու թագաւորին Հայոց՝ մանկիկ մի փոքրիկ, անուն Տրդատ. առեալ դայեկացն փախուցեալ ի դուռն կայսեր ի կողմանս Յունաց։ Եւ զերկիրն Հայոց այնուհետև եկեալ արքային Պարսից յիւր անուն զտեղիսն անուանէր. և զզօրսն Յունաց փախստական արարեալ հալածական տանէին մինչև ի սահմանս Յունաց։ Վիհս փոսացուցեալ՝ սահմանս հաստատէին, և տեղւոյն անուն եդեալ Դրունս Փոսից, առ տեղեաւն որում Սոյզն կոչէին։ Եւ զայլ մարդիկ երկրին խաղացոյց, և զաշխարհն յինքն գրաւեաց։

37 Արդ՝ երթեալ, սնեալ և ուսեալ Տրդատէս առ կոմսի ումեմն Լիկիանէս անուն կոչեցելոյ։ Իսկ որդի Պարթևին որ ի կողմանս Յունաց գաղթեաց՝ սնանէր և ուսանէր ի Կեսարիայ Կապադովկացւոց քաղաքին. և մերձաւորեալ զնա սնոյց դայեկօք երկիւղիւն Քրիստոսի. և ուսեալ ևս զքրիստոսական դպրութեան հանգամանս, ընտանի եղեալ գրոց Աստուծոյ, և մերձեալ յերկիւղ Տեառն, որոյ անուն ճա-



նահալ, ջրակուտակ, ձյունախառն, ելման ջրերով իր վարարման շրջանում։ Նրանց մի մասն անցավ Վաղարշապատ քաղաքի կամուրջով, որը կոչվում է նաև Մեծամորի կամուրջ։ Աճապարում էին որքան կարելի է շուտ հասնել Արտաշատի կամուրջի գլուխը։ Ճանապարհների կիրճերում կանգնեցրին նրանց և շրջապատելով Տափերական կամուրջի մոտ գետավեժ արեցին։ Իսկ իրենք այնտեղից դարձան վայով, ճիչով ու ողբով, և ամբողջ երկիրը հավաքված թագավորին էր սգում։

34 Եվ քանի դեռ ջերմ շունչը նրա կրծքից չէր հեռացել, և չէր հասել վախճանը, [թագավորը] հրաման տվեց ոչնչացնել նրանց ազգատոհմը։ Այնժամ սկսեցին սպանել ու կոտորել, մինչև իսկ չթողեցին մանուկներից այնպիսին, որը բնավ աջն ու ձախը չգիտեր։ Նաև տոհմի իգական մասը սրի քաշեցին։ Միայն Պարթևի որդիներից երկու փոքրիկ մանուկների՝ մի մարդ [երեխաներից] մեկի դայակների միջոցով փրկեց, որոնցից մեկին փախցրեցին Պարսից կողմերը, իսկ մյուսին՝ Հունաց։

35 Գ. Երբ Պարսից թագավորը այս ամենը լսեց՝ զվարճացավ, զվարթացավ, այն օրը ուրախության մեծ տոն արեց և ատրուշաններին շատ զոհ մատուցեց։ Զորք հավաքեց, շարժվեց գնաց ասպատակ սփռեց Հայաստանի կողմերը, խոսունն ու անասունը, ծերն ու տղան, երիտասարդն ու մանուկը ընդհանրապես գերի տարավ։

36 Այդ ժամանակ մի մարդ, ավազակից ազատելով, փրկում է Հայոց Խոսրով թագավորի որդիներից Տրդատ անունով մի փոքրիկ մանկան, [որին] դայակները առնելով փախցրին կայսեր արքունիքը, Հունաց կողմերը։ Իսկ Պարսից արքան, գալով այնուհետև Հայաստան, իր անվամբ կոչեց այդ վայրերը և հունաց զորքը փախուստի մատնելով՝ հալածեց մինչև հունաց սահմանները։ Փոսեր փորելով սահմաններ հաստատեց և տեղի անունը դրեց Փոսից դըրունք* այն վայրերում, որոնք կոչվում էին Սույզն։ Մնացած բնակիչներին տեղահանեց և երկրին տիրացավ։

37 Արդ, Տրդատը գնաց Լիկիանես անունով մի կոմսի մոտ դաստիարակություն և ուսում ստացավ, իսկ Պարթևի որդին, որը հունաց կողմերն էր տարվել, մեծացավ և ուսում ստացավ Կապադովկիայի Կեսարիա քաղաքում։ [Մի ոմն] տեր կանգնելով՝ դայակների միջոցով նրան դաստիարակեց Քրիստոսի երկյուղով և նա ուսանելով քրիստոնեական դպրության հանգամանքները՝ ընտելացավ Աստվածաշնչին, ճանաչեց Տիրոջ երկյուղը. Նրա անունն էր



3—1461

*նաչէր Գրիգորիոս։ Իբրև տեղեկացաւ ի դայեկացն հայրենի գործոցն որ եղեալն էին՝ ել և գնաց առ Տրդատիոս ըստ հեշտ պաշտաման։ Եւ թաքուցանէր զանձն, և զայն ինչ ի վեր ոչ հանէր, թէ ո՛յր, կամ ուստի՛, կամ ո՛րպէս, կամ զիա՛րդ. զանձն ի ծառայութիւն տուեալ ի հնազանդութեան պաշտէր առաջի նորա։*

*38 Ընդ ժամանակս ընդ այնոսիկ իշխանն Յունաց ի հալածել կայր զեկեղեցի Աստուծոյ։ Իսկ իբրև զգացեալ Տրդատիոս վասն Գրիգորի, թէ Քրիստոսական պաշտամանն հաղորդ է՝ սկսեալ այնուհետև պատուհասակոծ առնէր զնա, և ազգի ազգի արհաւիրս արկանէր ի վերայ նորա. բազում անգամ ի բանդս և ի կապանս տանջանօք նեղէր զնա՝ թողուլ ի բաց լինել նմա յերկրպագութենէն Քրիստոսի, և ի հնազանդութիւն դառնալ նմա դիցն սնոտեաց և պղծութեանն պաշտաման։*

*39 Դ. Յաւուրս ժամանակացն այնոցիկ զօրաժողով լինէր իշխանն Գթաց, և բազում գունդս զօրաց ժողովեալ՝ գայր տալ մարտ պատերազմի ընդ իշխանին Յունաց։ Պատգամս յղէր օրինակաւ այսուիկ, եթէ «Ընդէ՞ր բնաւ ելանեմք խառնամխի ի պատերազմ՝ սպառել զզօրս մեր, և վտանգ և տագնապ միանգամայն աշխարհի հասուցանեմք. ես աւասիկ ախոյեան ելանեմ քեզ ի մերոց զօրաց աստի, և դու ինձ ի յունականաց այտի. հասցուք եկեսցուք ի մարտի տեղի. եթէ ես զքեզ յաղթահարեցից՝ Յոյնք ինձ հնազանդեսցին ի ծառայութիւն. և թէ դու ինձ յաղթեսցես՝ մեր կեանքս քեզ նուաճեսցին և հնազանդեսցին. և առանց արեան և կոտորածոյ լիցի շինութիւն կողմանցս երկոցունց»։*

*40 Եւ իբրև զայն ամենայն լուաւ թագաւորն Յունաց՝ երկեաւ. քանզի օրինօք կազմութեամբ, գունդ առ գունդ ճակատել ոչ առնուին յանձն, և ըստ պատգամին պատշաճի ոչ կարէր ունել յանձին, քանզի տկար էր յոսկերաց զօրութեամբ. սրտաթափ եղեալ զարհուրեցաւ, քանզի ոչ գիտէր, զի՛նչ տացէ բանիցն պատասխանի։*

*41 Յայնմ ժամանակի հրաման տայր թագաւորն՝ հրովարտակս և դեսպանս առնել առ իշխանս և զօրս զօրութեան իւրոյ, զի ուր և իցեն՝ առ նա հասանիցեն վաղվաղակի։ Յայնմ ժամանակի իշխանք և զօրք և նախարարք առ նա հասանէին վաղվաղակի։ Առեալ և Լիկիանէ զբուն գունդն որ ընդ իւրով ձեռամբն էր՝ փութայր հասանէր ի տեղի պատերազմին՝ յանդիման լինել թագաւորին, և Տրդատէս ընդ նմա։*

*42 Եւ մինչ դեռ գային գունդք զօրացն՝ դէպ եղև նոցա գալ մտա-*



*Գրիգոր (Գրիգորիոս)։ Երբ դայակներից տեղեկացավ իր հոր կատարած գործերը, ելավ ու գնաց Տրդատին (Տրդատիոս) կամավոր ծառայելու։ Թաքցրեց իր անձը և ոչինչ չէր հայտնում, թե ում համար, կամ որտեղից, կամ ինչպես էր [հայտնվել], և իր անձը ծառայության տալով հնազանդությամբ սպասարկում էր նրան։*

*38 Այդ ժամանակներում Հունաց իշխանը* հալածում էր Աստուծո եկեղեցին։ Իսկ երբ Տրդատը զգաց, թե Գրիգորը հաղորդակից է քրիստոնեական պաշտամունքին, այնուհետև սկսեց պատուհասել և տեսակ-տեսակ արհավիրքներ էր պատճառում նրան։ Շատ անգամ բանտերով, կապանքներով ու տանջանքներով նեղում էր, որպեսզի թողնի Քրիստոսի երկրպագությունը և ենթարկվի սնոտի աստվածներին ու պղծության պաշտամունքին։*

*39 Դ. Այդ օրերում գոթերի* իշխանը զորաժողով արեց և բազում զորք կուտակելով եկավ պատերազմելու Հունաց իշխանի դեմ։ Այսօրինակ պատգամ հղեց թե «Ինչո՞ւ ենք անմտորեն ելնում պատերազմի, մեր զորքը սպառում և միաժամանակ երկրին վտանգ ու տագնապ հասցնում։ Ահավասիկ ես քո դեմ եմ դուրս գալիս իբրև ախոյան մեր զորքի միջից և դու էլ իմ դեմ՝ հունական կողմից։ Գնանք—հասնենք մարտի վայրը և եթե ես քեզ հաղթեմ, հույներն ինձ կհնազանդվեն, իսկ եթե դու ինձ հաղթես, մեր կյանքը քեզ կպատկանի ու կհնազանդվենք քեզ և առանց արյան ու կոտորածի երկու կողմերի համար էլ խաղաղություն կլինի»։*

*40 Երբ Հունաց թագավորը այս ամենը լսեց՝ վախեցավ, որովհետև չէր կարող հանձն առնել օրինավոր պատրաստությամբ գունդ առ գունդ ճակատել և ոչ էլ կարող էր սույն պատգամի պահանջին համաձայնել, քանի որ տկար ոսկորներ ուներ և ահաբեկվելով զարհուրեց ու չգիտեր ինչ պատասխան տալ այդ խոսքերին։*

*41 Այն ժամանակ թագավորը հրաման տվեց հրովարտակներ ու պատվիրակներ ուղարկել իր տերության իշխաններին ու զորքին, որպեսզի ուր էլ լինեն, շուտափույթ իրեն հասնեն։ Իշխանները, զորքն ու նախարարները շտապով նրա մոտ եկան։ Առավ նաև Լիկիանեսն* իր ձեռքի տակ եղած բուն գունդը և փութաց հասնել պատերազմի վայրը, ներկայանալու թագավորին, և Տրդատն (Տըրդատես) էլ նրա հետ էր։*

*42 Երբ զորագնդերը գալիս էին, այնպես եղավ, որ եկան ու մտան մի նեղ տեղ, այգեստանի առուների մեջ, շտեմարանի հրապարակում, քաղաքի դռների մոտ, որովհետև կեսգիշերվա ժամն*

նել ի նեղագոյն տեղի մի, յառուամէջս այգեստանւոյն, ի փողոցամէջս համբարոցացն, առ դրունս քաղաքին. քանզի զդրունս քաղաքին աղխեալ էր, զի ժամ էր հասարակ գիշերոյ։ Իբրև ոչ գտաւ խար երիվարաց զօրուն բազմութեան ղարման կերակրոյ մինչև ի մէջգիշեր՝ հայեցեալ տեսանէին ի զուարափակ քաղաքորմի միոջ, զի խոտահամբար մթերեալ էր. և ոչ ոք կարաց ձգել զձեռն իւր վասն որմոյն բարձրութեանն։ Յայնժամ Տրդատէս ելեալ և իջեալ՝ հոսէր ընկենոյր բարդս բարդս ի մէջ զօրացն մինչ ի լիութիւն բաւականի։ Նա և զհամբարապանսն իսկ և բազումս ի շանց յայսկոյս որմոյն ընկենոյր ի մէջ զօրացն, և ինքն անդրէն ելեալ իջանէր։

43 Զայն ամենայն ոյժ պնդութեան տեսեալ Լիկիանէս զարմացաւ։ Իսկ իբրև այգն զառաւօտն մերկացաւ՝ դրունք քաղաքին բացան, և զօրքն ամենայն առ հասարակ ի ներքս մտանէին. և Լիկիանէս յանդիման լինէր թագաւորին, և ամենայն մեծամեծքն և սպարապետքն և զօրագլուխքն և իշխանքն։

44 Ապա կաց պատմեաց թագաւորն իշխանացն զամենայն պատգամս թագաւորին Գթաց։ Յայնժամ խօսել սկսաւ Լիկիանէս ընդ արքային և ասէ. «Մի՛ ինչ զարհուրեսցի սիրտ տեառն իմոյ. զի գոյ աստ այր մի ի դրան քում, զի իրքդ այդ նովաւ վճարին. Տրդատէս անուն նորա, ի տոհմէ թագաւորին Հայոց աշխարհին»։ Եւ կաց պատմեաց զերեկորին զգործս քաջութեան նորա։ Յայնժամ հրաման ետ, և ածին զՏրդատիոս յանդիման թագաւորին. և պատմեաց նմա կարգաւ զամենայն։ Յայնժամ ժամ ետուն կազմութեան մարտի՝ առ ի ժամ վաղուի ղմիմեանս տեսանել պատերազմաւ։

45 Իսկ ի միւսում աւուրն ընդ այգն ընդ առաւօտն հրամայեաց արկանել ծիրանիս. և զարդարեցին զՏրդատիոս ի զարդ կայսերական, արկեալ զնովաւ զնշան թագաւորութեանն. և ոչ ոք գիտէր վասն նորա. հրաման ել ամենեցուն, թէ ինքն իսկ կայսրն իցէ։ Եւ նորա առեալ զգունդն զօրաց բազմութեան՝ ի ձայն փողոյ տագնապաւ յառաջ մատուցանէր մինչև յանդիման թշնամեացն։ Իբրև յանդիման եղեն միմեանց կայսերակերպն և թագաւորն՝ մտրակ ի կուշտ արարեալ երիվարացն ի միմեանս հասանէին. անդ յաղթահարէր կայսերակերպն զթագաւորն. ձերբակալ արարեալ՝ ածեալ յանդիման առաջի կայսերն կացուցանէր։

46 Յայնժամ մեծացոյց յոյժ թագաւորն զՏրդատիոս, և մեծամեծ պարգևս ետ նմա. թագ կապեաց ի գլուխ նորա և ծիրանեօք զարդարեալ մեծացոյց զնա, և կայսերակերպն զարդու շքեղացուցեալ



էր, և քաղաքի դռները փակ էին։ Երբ զորքի բազմության երիվարներին անասնակեր չոր խոտ չգտնվեց մինչև կես գիշեր, նայեցին ու տեսան, որ քաղաքի պարսպից ներս անասունների բակում խոտի դեզեր էին մթերված, և ոչ ոք չկարողացավ իր ձեռքը հասցնել պարսպին՝ բարձրության պատճառով։ Այնժամ Տրդատը ելավ և իջնելով [խոտը] դեզ-դեզ նետեց զորքերի մեջ, մինչև որ բավարարվեցին։ Իսկ վերակացուներին և բազմաթիվ շներից շատերին պարսպից այս կողմ զորքերի մեջ նետեց ու ինքն այնտեղից ելնելով իջավ։

43 Տեսնելով այսպիսի մեծ ուժ, Լիկիանեսը զարմացավ, իսկ երբ առավոտը լուսացավ, քաղաքի դռները բացվեցին, և ամբողջ զորքը ներս մտավ։ Լիկիանեսն ու բոլոր մեծամեծները, սպարապետները, զորագլուխներն ու իշխանները ներկայացան թագավորին։

44 Ապա թագավորը պատմեց իշխաններին գոթերի թագավորի բոլոր պատգամները։ Այդ ժամանակ Լիկիանեսը սկսեց խոսել արքայի հետ և ասաց. «Թող իմ տիրոջ սիրտը բոլորովին չզարհուրի, քանզի այստեղ քո պալատում մի մարդ կա, որի միջոցով այս գործը գլուխ կգա։ Նրա անունը Տրդատ է՝ Հայոց աշխարհի թագավորական տոհմից»։ Եվ պատմեց նրա երեկոյան գործած քաջագործությունները։ Այնժամ հրաման տվեց, և Տրդատին բերեցին թագավորի առջև, ու նա կարգով պատմեց ամեն ինչ։ Ապա մարտի պատրաստության ժամ որոշեցին, առավոտյան պատերազմով իրար դեմ ելնելու։

45 Իսկ մյուս օրը առավոտյան հրամայեց (կայսրը) ծիրանի պատմուճանը Տրդատի վրա նետել, և զարդարեցին կայսերական զարդով, գցելով նրա վրա թագավորական նշանը, և ոչ ոք չգիտեր նրա մասին։ Հրաման ելավ ամենքին, թե սա ինքն իսկ կայսրն է։ Եվ առնելով զորքերի համակ բազմությունը, փողի ձայնով արագ մոտեցավ, մինչև որ կանգնեց թշնամիներին դեմ հանդիման։ Երբ միմյանց դիմաց կանգնեցին կայսերակերպն ու (գոթերի) թագավորը՝ երիվարներին մտրակելով իրար հասան։ Այնտեղ կայսերակերպը հաղթեց թագավորին և բռնելով նրան բերեց կանգնեցրեց կայսեր առջև։

46 Այն ժամանակ թագավորը հույժ բարձրացրեց Տրդատին և մեծամեծ պարգևներ տվեց նրան, թագ դրեց գլխին և ծիրանի պատմուճաններով զարդարելով՝ պատվեց նրան։ Կայսերական զարդով

*մեծարեաց զնա. և գումարեաց ի ձեռս նորա զօրս բազումս յօգնականութիւն նմա, և արձակեաց յիւրական աշխարհն Հայոց։*

*47 Եւ յետ մարտին յաղթութեան քաջութեանցն զոր արար՝ դարձեալ լինէր ի կողմանցն Յունաց Տրդատ արքայ Հայոց մեծաց։ Խաղաց գնաց թագաւորն ի կողմանս Հայոց, և եկն եգիտ անդ զօրս բազումս Պարսից, զի զաշխարհն յինքեանս գրաւեալ էին ի ծառայութիւն. զբազումս կոտորէր, և զբազումս փախստականս արարեալ ի կողմանս Պարսից արկանէր. և զհայրենեացն տէրութիւն յինքն նուաճեաց, և զօրացաւ ի վերայ սահմանաց նորա։*

*48 Ե. Յառաջին ամին Տրդատայ արքայութեանն Հայոց մեծաց, խաղացին եկին հասին յԵկեղեաց գաւառ, ի գեւղն Երիզայ, ի մեհեանն Անահտական, զի անդ զոհս մատուսցեն. և իբրև կատարեցին զգործն անարժանութեան՝ իջին բանակեցան առ ափն գետոյն զոր Գայլն կոչեն։*

*49 Իբրև եկն եմուտ ի խորան անդր և յընթրիս բազմեցաւ, և իբրև ընդ գինիս մտին՝ հրաման ետ թագաւորն Գրիգորի, զի պսակս և թաւ ոստս ծառոց նուէրս տարցի բագնին Անահտական պատկերին։ Այլ նա ոչ առնոյր յանձն պաշտօնատար լինել դիցն երկրպագութեան։*

*50 Յայնժամ խօսել սկսաւ թագաւորն ընդ Գրիգորի և ասէ. «Այր մի օտարական և անաշխարհիկ՝ եկիր յարեցար ի մեզ, և զիա՞րդ իշխես պաշտել զԱստուածն զայն, զոր ես ոչ պաշտեմ»։ Եւ առ այն օր պահել հրամայեաց։ Եւ ի վաղիւ անդր հրաման ետ, և ածին զԳրիգորիոս առաջի թագաւորին։*

*51 Խօսել սկսաւ թագաւորն ընդ Գրիգորի և ասէ. «Այսչափ ամք են, զի տեսի ես զքեզ, և յամենայն զօրութենէ քումմէ ծառայեցեր դու ինձ միամտութեամբ. և ես գոհ էի զվաստակոց քոց և ունէի ի մտի կեցուցանել զքեզ. ընդէ՞ր ոչ առնես զկամս իմ»։*

*52 Ետ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Հրամայեալ է յԱստուծոյ, զի «Ծառայք հնազանդ լիցին մարմնաւոր տերանց», որպէս օրէն է, որպէս և դուդ իսկ վկայեցեր ինձ, զի ծառայեցի քեզ յամենայն զօրութենէ իմմէ։ Այլ զԱստուծոյ զպատիւն և զպաշտօն ոչ ումեք վայել է տալ. զի նա միայն է արարիչ երկնից և հրեշտակաց, որ փառաւորիչք են մեծութեան նորա, և երկրի և մարդկան, որ ի նմա-*



*շքեղացնելով մեծարեց և օգնական բազում զորք հանձնելով՝ ուղարկեց նրան սեփական Հայոց աշխարհը։*

*47 Հաղթական մարտում քաջություններ գործելուց հետո Մեծ Հայքի Տրդատ* արքան վերադարձավ Հունաց կողմերից։ Թագավորը շարժվեց եկավ Հայոց կողմերը և հասնելով գտավ այնտեղ Պարսից մեծաքանակ զորք, որ երկիրը գրավել էր, հպատակեցրել։ Շատերին կոտորեց և շատերին փախստական դարձնելով՝ Պարսից կողմերը քշեց, իսկ հայրենի տերությունը նվաճեց ու զորացավ նրա սահմանների վրա։*

*48 Ե. Մեծ Հայքի արքա Տրդատի առաջին տարում շարժվեցին եկան, հասան Եկեղյաց գավառը, Երիզա գյուղը*, Անահիտի մեհյանը, որպեսզի այնտեղ զոհեր մատուցեն։ Երբ անարժան գործը կատարեցին, իջան, տեղավորվեցին այն գետի ափին, որը Գայլ* է կոչվում։*

*49 Թագավորը եկավ մտավ վրանը, ընթրիքի բազմեց. երբ գինովցան, թագավորը հրաման տվեց Գրիգորին, որ պսակներ ու ծառերի թավ ճյուղեր նվիրաբերի Անահիտի արձանի բագինին։ Սակայն նա հանձն չառավ աստվածների երկրպագության պաշտամունքը կատարել։*

*50 Այն ժամանակ թագավորն սկսեց խոսել Գրիգորի հետ ու ասաց. «Մի օտարական ու անծանոթ մարդ էիր*, եկար մեզ միացար և ինչպե՞ս ես համարձակվում պաշտել այն Աստծուն, որին ես չեմ պաշտում»։ Եվ հրամայեց այդ օրը նրան հսկողության տակ առնել։ Մյուս օրը առավոտյան թագավորը հրաման տվեց, և Գրիգորին բերեցին իր առջև։*

*51 Թագավորն սկսեց խոսել Գրիգորի հետ և ասաց. «Այսքան տարի ես քեզ ճանաչել եմ, և դու քո ամբողջ էությամբ հավատարմորեն ծառայել ես ինձ, և ես գոհ էի քո աշխատանքից ու մտադիր էի ապրեցնել (վարձատրել) քեզ։ Ինչո՞ւ չես կատարում իմ կամքը»։*

*52 Պատասխան տվեց Գրիգորը և ասաց. «Աստված հրամայել է, որ «ծառաները հնազանդ լինեն մարմնավոր տերերին», ինչպես որ վայել է, և ինչպես դու ինքդ վկայեցիր, որ ծառայել եմ քեզ իմ ամբողջ էությամբ։ Իսկ Աստուծո պատիվն ու պաշտամունքը չի կարելի որևէ մեկին տալ. քանզի միայն Նա է արարիչը երկնքի ու հրեշտակների, որոնք Նրա մեծության փառավորիչներն են, և երկրի ու մարդկանց, որոնք Նրա ձեռքով են ստեղծված և որոնց պարտ-*

նէ են ստեղծեալ. որոց պարտ է պաշտել զնա և առնել զկամս նորա. և այլ ամենայն որ է ի նոսա, որ ի ծովու և ի ցամաքի»։

53 Արքայ ասէ. «Գիտացի՛ր, զի ապախտ արարեր զվաստակսն զոր ինձն վաստակեցեր, որում ես եմ վկայ։ Արդ՝ փոխանակ կենացն զոր պարտ էր առնել քեզ՝ յաճախեմ քեզ նեղութիւնս, և փոխանակ պատուին՝ անարգանս. և փոխանակ բարձ տալոյ և յառաջ ձգելոյ՝ բանդ և կապանս, և մահ՝ որ հատանէ զլոյս կենաց մարդկան, եթէ ոչ առնուցուս յանձն զիցն պաշտօն մատուցանել, մանաւանդ այսմ մեծի Անահտայ տիկնոջս, որ է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ, զոր և թագաւորք ամենայն պատուեն, մանաւանդ թագաւորն Յունաց. որ է մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեան, և ծնունդ է մեծին արին Արամազդայ»։

54 Ասէ Գրիգորիոս. «Ես քեզ միամտութեամբ վաստակեցի. ինձէն երբեք զիմ վաստակս ապախտ ոչ արարից. զի և գրեալ է յԱստուծոյ, եթէ «Ծառայեսցեն մարմնաւոր տերանց». զի այնմ տէր է հատուցանող բարեաց. զի ոչ ինչ ակն ի քէն ունէի եթէ հատուսցես ինձ, այլ յԱրարչէն, որոյ են ստացուածք իւր, երևելի և աներևոյթ արարածք ամենայն։

55 «Այլ վասն որոյ ասեսն, թէ նեղութիւն յաճախեմ քեզ փոխանակ կենաց՝ հանելով զիս յայսց կենաց ահա յաճախես ինձ զպատրաստեալ ուրախութիւնն Քրիստոսի. այն որոյ տէրութիւնն յաւիտենից է, և արքայութիւնն ոչ անցանէ, և բարիքն ոչ պակասեն։ Եւ փոխանակ պատուին որ ասես անարգանս՝ շնորհես ինձ զպատիւն հրեշտակաց, փառաւորչաց Արարչին իւրեանց ցնծութեամբ։

56 «Եւ որ ասեսդ, թէ փոխանակ բարձ տալոյ և յառաջ ձգելոյ ի բանտ և ի կապանս արկանեմ՝ երանի է ինձ, զի առից յանձն զօրինակ կապանաց Տեառն իմոյ. և ընդ նմին ուրախ եղէց և ցնծացայց յաւուր գալստեան նորա։ Եւ մերժելով ի քոց բազմականացդ՝ ահա արկանես ինձ բազմականս առ հօրն հաւատոյ Աբրահամու, և ընդ արդարսն ամենայն, որ ուրախ լինելոց են յարքայութեանն Աստուծոյ։

57 «Եւ որ սպառնաս ինձ մահու՝ ահա խառնես զիս ի գունդն Քրիստոսի, ուր են ամենայն կոչեցեալքն, հարքն և արդարք, և մարգարէքն և առաքեալքն, մարտիրոսքն և ամենայն ընտրեալքն։



քըն է պաշտել նրան ու կամքը կատարել, ինչպես նաև այն ամենի, որոնք ապրում են դրանց վրա թե ծովում, թե ցամաքում»։

53 Ասաց արքան. «Իմացած եղիր, ի չիք դարձրիր այն վաստակը, որ ինձ մոտ ես վաստակել, և որին ես վկա եմ։ Արդ՝ այն կյանքի փոխարեն, որ դու պետք է վայելեիր, բազմաթիվ նեղություններ եմ տալու քեզ, պատվի փոխարեն՝ անարգանք, փոխանակ բարձ տալու և առաջ տանելու՝ բանտ ու կապանք և մահ կըտամ, որը մարդկային կյանքի հույսը կկտրի, եթե հանձն չառնես աստվածներին պաշտամունք մատուցել։ Մանավանդ այս մեծ Անահիտ տիկնոջը, որը մեր ազգի փառքն է ու կենսատուն, որին բոլոր թագավորներն են պաշտում, մանավանդ Հունաց թագավորը։ Նա է բոլոր զգաստությունների մայրը, բարերարը ամբողջ մարդկային բնության և դուստրը՝ մեծ, քաջ Արամազդի։

54 Գրիգորը ասաց. «Ես քեզ հավատարմությամբ ծառայեցի և երբեք իմ վաստակը ի դերև չեմ հանի, քանզի գրված է Աստծու կողմից, «Թող ծառայեն մարմնավոր տերերին», քանզի նա է բարիքներ հատուցող Տերը. ես ոչինչ չէի ակնկալում քեզնից, որ ինձ հատուցես, այլ՝ Արարչից, որին իբրև սեփականություն պատկանում են բոլոր տեսանելի ու աներևույթ արարածները»։

55 Իսկ որ ասում ես, թե նեղություն կտաս փոխանակ կյանքի [ապա] դու, հանելով այս կյանքից՝ ինձ համար կավելացնես Քրիստոսի պատրաստած ուրախությունը, որի իշխանությունը հավիտյան է, արքայությունը՝ անանց և բարիքները՝ անպակաս։ Եվ այս, որ ասում ես, թե փոխանակ պատվի՝ անարգանք [կտաս], ինձ հրեշտակների պատիվը կշնորհես, որոնք ցնծությամբ իրենց Արարչին են փառավորում։

56 Ասում ես, թե փոխանակ բարձ տալու և առաջ տանելու, բանտ ու կապանք կտաս։ Երանի ինձ, այսպիսով իմ Տիրոջ կապանքների օրինակը ինձ վրա կունենամ և նրա հետ ուրախ կլինեմ ու կցնծամ նրա գալստյան օրը։ Մերժելով ինձ քո սեղանակիցը դառնալ, ահա սեղանակից կդարձնես հավատքի հոր՝ Աբրահամին և բոլոր արդարներին, որոնք ուրախ են լինելու Աստծո արքայության մեջ։

57 Իսկ որ սպառնում ես մահով, ապա խառնում ես ինձ Քրիստոսի գնդին, ուր բոլոր հրավիրվածներն են՝ հայրերն ու արդարները, մարգարեներն ու առաքյալները, նահատակները և ամենայն ընտրյալները։

58 «Այլ որ ասեսդ, եթէ մահուամբ զլոյս հատանեմ կենաց՝ որպէս քո լոյսդ հատեալ է, և ամենայն աստուածապաշտաց և աստուածասիրաց լոյսն զօրացեալ է։ Իսկ որ միանգամ են իբրև զքեզդ, որ պաշտէք զկուռս համերս և անշունչս, ձեռագործս մարդկան՝ արդարև իսկ էք յուսահատք ի ճշմարիտ կենաց անտի Աստուծոյ։

59 «Այլ զոր դուդ կոչես մեծ Անահիտ տիկին՝ լեալ իցեն արդեօք մարդիկ ոք յայնժամ երբեմն ժամանակի։ Քանզի դիցապաշտ կախարդութեամբ զմարդիկն որ յայնժամն էին, ցնորիւք կերպս ի կերպս լինելով դիւացն՝ հաւանեցուցին մեհեանս շինել և պատկերս կանգնել և երկիր պագանել։ Որ ոչ իսկ են, ո՛չ չար և ոչ բարի ումեք ինչ կարեն առնել․ ո՛չ պատուել կարեն զպաշտօնեայս իւրեանց, և ոչ անարգել զթշնամանադիրս իւրեանց, զոր դուքն ցնորեալ պաշտէք յափշութիւն մտաց ձերոց։ Եւ փոխանակ Աստուծոյ, յորոյ ի բարիսդ վայելէք՝ պաշտէք զփայտեղէնսդ և զքարեղէնսդ և զոսկեղէնսդ և զարծաթեղէնսդ, զոր Աստուծոյ կարգեալ է ի սպաս և ի պէտս և ի փառաւորութիւն մարդկան։

60 «Իսկ ինձ լիցի ամենայն հնազանդութեամբ և ամենայն միամտութեամբ և երկիւղիւ պաշտել զԱստուած արարիչ և զՈրդին հաստիչ և զՀոգին կազմիչ արարածոց, որ արար զամենայն, և եղծանել կարէ, և դարձեալ նորոգէ ողորմութեամբ իւրով։ Այլ մեր կեանքս չեն յուսահատութեամբ․ զի պաշտեմք զկենդանին, որ կարող է կենդանութիւն տալ մեզ, յորժամ և կամի․ զի թէպէտ և մեռանիմք՝ կենդանի եմք։ Զի որպէս որդին Աստուծոյ մեռաւ և եկեաց՝ և մեզ եցոյց օրինակ կենդանութեան յարութեամբն իւրով․ զի որ մեռանիմքս վասն նորա՝ լինելոց եմք կենդանիք, յորժամ յայտնեսցի թագաւորութիւն Արարչին առ արարածս իւր, յորժամ խնդրեսցէ զվրէժ ամբարշտութեան, անաչառ դատաստանաւն ստուգութեամբ պահանջեալ յամենեցունց առ հասարակ»։

61 Արքայ ասէ․ «Որ ասացերդ, թէ ի քէն ակն ոչ ունէի և ոչ պիտի իսկ՝ ես գիտեմ զի մահ խնդրես դու և անդէն ի գերեզմանի զհատուցումն քեզ, ուր են իսկ առաջինքն որ մեռանն․ վաղվաղակի յղեմ զքեզ՝ ուր կամիսն երթալ։ Կամ ո՞վ այն Քրիստոսն իցէ․ ցո՛յց ինձ, զի գիտացից․ ո՞ այն ոք իցէ հատուցանող վաստակոցն քոց, զոր կոչես դու արարիչ․ միթէ նա՞ ոք իցէ շահապետ գերեզմանաց, որում



58 Ասում ես՝ թե մահվամբ կկտրես իմ կյանքի հույսը, ինչպես որ քո հույսն է կտրված, ապա [իմացիր որ] բոլոր աստվածապաշտների ու աստվածասերների հույսը զորավոր է։ Իսկ նրանք, որ քեզ նման են և պաշտում են համր ու անշունչ և մարդկանց ձեռքով կերտված կուռքեր, արդարև հուսահատ են Աստծու ճշմարիտ կյանքից։

59 Այլ, որ դու կոչում ես մեծ Տիկին Անահիտ՝ գուցե եղել է այդպիսի մեկը երբեմնի ժամանակներում։ Քանզի դիցապաշտ կախարդությամբ և դևերի տեսակ-տեսակ ցնորքներով համոզել են այն ժամանակվա մարդկանց, որ մեհյաններ շինեն, կուռքեր կանգնեցնեն և երկրպագեն։ Նրանք ոչինչ են, ոչ չար, ոչ բարի գործ կարող են անել, ոչ կարող են իրենց պաշտողներին պատվել, ոչ էլ թշնամիներին անարգել, որոնց և դուք ցնորյալ պաշտում եք ձեր մտքերի ապուշության պատճառով։ Եվ փոխանակ Աստծու, որի բարիքներն եք վայելում, պաշտում եք փայտեղենն ու քարեղենը, ոսկեղենն ու արծաթեղենը, որ Աստված է կարգել մարդկանց ծառայության, պետքերի ու փառավորության համար։

60 «Իսկ ինձ ցանկալի է ամենայն հնազանդությամբ և հավատարմությամբ ու երկյուղով պաշտել արարիչ Աստծուն, հաստիչ Որդուն և արարածներն ստեղծող Հոգուն, որն ստեղծել է ամեն ինչ, կարող է եղծանել և դարձյալ նորոգել իր ողորմությամբ։ Եվ մենք չենք հուսահատվում, քանզի պաշտում ենք կենդանի Աստծուն, որը կարող է մեզ կենդանություն տալ, երբ որ կամենա, թեպետև մեռնենք, կենդանի ենք։ Որովհետև ինչպես Աստծու որդին մեռավ և ապրեց ու իր հարությամբ մեզ կենդանության օրինակ ցույց տըվեց, որ եթե մեռնենք նրա համար, կենդանի ենք մնալու, երբ Արարչի թագավորությունը հայտնվի իր արարածներին, երբ ամբարշտության պատիժը տրվի, անաչառ դատաստանով ստուգությամբ բոլորից առհասարակ պահանջվի»։

61 Ասաց արքան․ «Երբ ասում ես, թե քեզնից ակնկալություն չունեի և ոչ էլ պիտի ունենամ, ապա ես գիտեմ, որ դու մահ ես ցանկանում և գերեզմանում իսկույն [կգտնես] հատուցումը, ուր կան այն առաջինները, որոնք մեռան։ Շուտափույթ քեզ այնտեղ կուղարկեմ, ուր կամենում ես երթալ։ Իսկ թե ո՞վ է այն Քրիստոսը, ցույց տուր ինձ, որ գիտենամ, ո՞վ է այդ քո վաստակների հատուցողը, որին դու արարիչ ես կոչում։ Մի՞թե նա գերեզմանների վե-

դուն ցանկաս հասանել, կամ թանդակալ կապանաց քոց նա՞ իցէ արձակիչ։

62 «Եւ ո՞ւր իցեն արդեօք անպակաս ուրախութիւնքն զոր ասես, և կամ զի՞նչ գալուստն իցէ, ոչ գիտեմ. կամ զի՞նչ հրեշտակք իցեն, զոր ասես, կամ զի՞նչ յոյսն ձեր իցէ և մեր յուսահատութիւնն. ա՛ղէ, դու ասա՛ ինձ զայս ամենայն մեղմով։ Այլ ոչ թողից քեզ զանարգանս դիցն զոր թշնամանեցեր զնոսա. զի ասացեր, բա՛ս, մարդիկ են, և ի մահկանացու բնութիւն իջուցեր զնոսա. և անհնարին թշնամանս զոր եդեր դիցն և կամ մեզ իսկ թագաւորացս. զի ասացեր, եթէ խելագարք են թագաւորք որ պաշտեն զնոսա»։

63 Գրիգորիոս ասէ. «Քրիստոս է որդի Աստուծոյ, յորոյ ի ձեռն արար նա զաշխարհս և կազմեաց. դատիչ կենդանեաց և մեռելոց, տէր և հատուցանող բարերարացն բարիս և չարարարացն չարիս միանգամայն։

64 «Նա, որպէս ասացեր իսկ դու, արդարև շահապետ է գերեզմանաց և պահապան. զի իբրև մեռաւ նա կամօքն իւրովք և եմուտ ի գերեզման, որ պահէ զոսկերս ամենայն մարդկան, և յարութեամբն իւրով եցոյց և յայտնի արար զյարութիւն մեռելոց. զի ինքն իսկ է յարութիւն և կեանք, և յարուցիչ և նորոգիչ ամենայն մարմնոց. և պահէ զշունչս մարդկան կենդանիս։ Վասն զի նա ինքն է կենդանութիւն, զի նորոգեսցէ զշունչս մարդկան՝ զգեցեալ նովին մարմնով. և ապա յայտնի արասցէ ըստ իւրաքանչիւր վաստակոցն զիւրաքանչիւր հատուցմունս. զի նա արձակեսցէ զկապեալս ի տանէ կապանաց կռապաշտութեան, որ կապեալ են ի մեղս, և խզեսցէ զշղթայս անօրէնութեան՝ որ են իբրև զքեզդ։ Իսկ յաղագս կապանաց, զոր դուդ սպառնաս՝ սովոր է յայտնել զողորմութեան զշնորհս և փրկել զյուսացեալս իւր։

65 «Եւ անպակաս ուրախութիւնքն այն են, յորժամ զիւր սիրեցեալսն և զկոչեցեալսն և զհրաւիրեալսն և զպատուիրանապահսն անմահացուսցէ յիւր աստուածութիւնն, և զմեղաւորսն անմահացուսցէ ի տանջանսն յաւիտենից։ Եւ գալուստն այն է, յորժամ գայցէ առնել զայս ամենայն։ Եւ հրեշտակքն այն են, որ սպասաւորքն են նորա մեծութեանն և աստուածութեանն, մշտնջենաւոր արքայութեանն։

66 «Իսկ մեր յոյսն այսմ ակն կալեալ սպասէ. և ձեր յուսա-



րակացու է, որին դու ցանկանում ես հասնել և կամ քո բանտի կապանքների արձակիչը նա՞ է լինելու։

62 Ո՞ւր են արդյոք քո ասած անպակաս ուրախությունները, և կամ այդ ի՞նչ գալուստ է, որ ես չգիտեմ, կամ այդ ի՞նչ հրեշտակներ են, որ ասում ես, կամ թե ի՞նչ է ձեր հույսը և մեր հուսահատությունը։ Հապա դու ասա ինձ այս ամենը հանգիստ։ Սակայն թույլ չեմ տա անարգել աստվածներին, որոնց դու հայհոյեցիր՝ ասելով, թե սոսկ մարդիկ են և նրանց իջեցրիր մահկանացու էակի աստիճանի։ Սաստիկ անարգանք հասցրիր աստվածներին և կամ մեզ իսկ թագավորներիս՝ ասելով, թե խելագարներ են թագավորները, որ պաշտում են նրանց»։

63 Ասաց Գրիգորը. «Քրիստոսը Աստծու որդին է, որի ձեռքով նա ստեղծեց և կազմեց աշխարհը։ Նա կենդանիների և մեռյալների դատողն է, տերն ու բարերարներին բարիքներով հատուցողը, իսկ չարագործներին՝ միանգամայն չարիքներով։

64 Նա, ինչպես դու ինքդ ասացիր, արդարև գերեզմանների վերակացու է ու պահապան, քանզի իր կամքով մեռավ ու մտավ գերեզման և նա է պահում բոլոր մարդկանց ոսկորները։ Իր հարությամբ ապացուցեց և ցույց տվեց մեռելների հարությունը, քանզի ինքն իսկ հարություն է և կյանք, կենդանացնող է և բոլոր մարմինների նորոգիչ։ Կենդանի է պահում մարդկային շունչը, վասնզի ինքը կենդանություն է։ Նորոգելու է մարդկային շունչը՝ հագնելով նրա մարմինը և ապա հայտնի է դարձնելու յուրաքանչյուրի հատուցումը ըստ նրա վաստակի։ Նա արձակելու է կռապաշտության կապանքներից նրանց, որ կապված են մեղքերին, և խզելու է անօրինության շղթան նրանց, որ քեզ նման են։ Իսկ այն կապանքները, որոնցով դու սպառնում ես, ապա նա սովոր է դրանցից փրկել իրեն հուսացողներին՝ ցուցաբերելով իր ողորմածության շնորհը։

65 Անպակաս ուրախություններն այն են, որ իր սիրեցյալներին ու կոչեցյալներին, հրավիրյալներին ու պատվիրանապահներին անմահացնելու է իր աստվածությամբ, իսկ մեղավորներին կանմահացնի հավիտենական տանջանքներով։ Նրա գալուստն այն է լինելու, որ գալու է այս ամենը կատարելու, իսկ հրեշտակները նրա մեծության, աստվածության ու մշտնջենավոր արքայության սպասավորներն են։

66 Մեր հույսը դրա ակնկալությամբ սպասելն է, իսկ դուք

հատութիւն այն է, զի ոչ ճանաչէք զԱրարիչն ձեր, որ պահանջէ ի ձէնջ վասն այնորիկ, զի ոչ ելէք ի խնդիր տեառն Արարչին ձերոյ, և ոչ ծանեայք զնա։ Արդարև իսկ իբրև զձիս եղէք կամ իբրև զջորիս, զի ոչ գոյ ի նոսա իմաստութիւն, և քան զեզն և զէշ ևս պակասամտագոյն գտայք, զի ոչ ծանեայք զձեր հաստիչն. որ ի ժամանակի իւրում ի սանձս և ի դանդանաւանդս ճմլեսցէ զկզակս ձեր, որ առ նա դուք ոչ մարթայցէք մերձենալ։

67 «Այլ զոր ասացերն, թէ զիցն թշնամանս եդիր, զի՞նչ ինչ արդեօք իցէ նոցա այն թշնամանք՝ որ երբեք և պատուելոյն ուրուք զնոսա ոչ զգան. զի ի ձեռաց մարդկան են ստեղծեալք, և ի խելացնոր կարծեաց յերազոց իցեն հաստեալք և եղեալք։ Քանզի յանդրիագործ պատկերաց առաջին մարդկանն հրապուրեցան գործել զայն, յոր և անդէն իսկ մոլորեցան, կուրացեալք ի լուսոյ Արարչին։ Իսկ որ զնոսայն պաշտեն՝ յիրաւի են իբրև զանասունս. զի «Բերան է նոցա, և ոչ խօսին. աչս ունին, և ոչ տեսանեն. ականջս ունին, և ոչ լսեն. ունչս ունին, և ոչ հոտոտին. ձեռս ունին, և ոչ շօշափեն. ոտս ունին, և ոչ գնան, և ոչ գոյ շունչ ի բերանս նոցա։ Նման նոցա եղիցին որք արարին զնոսա, և ամենեքեան ոյք յուսացեալ են ի նոսա»։

68 Զ. Խօսել սկսաւ Թագաւորն և ասէ. «Քանի՞ցս անգամ տուեալ է քեզ խրատ և պատուէր, զի մի՛ երկրորդեսցես առաջի իմ զհատուածս բանիցդ առասպելաց, զոր յօդեալ և ուսեալդ ես, զոր ոչդ վայել է քեզ խօսել. վասն որոյ ես խնայեցի ի քեզ՝ իբրև ի վաստակաւոր, զի նկևսցես ի կարգ ուղղութեան՝ պաշտել զդիսն։ Զորոց դու առեալ զնոցա պատիւն՝ ումպէտ կարդաս արարիչ. և որ են իսկ ճշմարտիւ արարիչ՝ թշնամանես, և զմեծն Անահիտ, որով կեայ և զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց. և ընդ նմին և զմեծն և զարին Արամազդ, զարարիչն երկնի և երկրի. ընդ նմին և զայլ աստուածսն կոչեցեր անշշունչս և անմռունչս. և ի մեզ ևս ձգտեցար դնել թշնամանս, համարձակեցար ասել ձիս և ջորիս։ Եւ քանզի զամենայն թշնամանս յաճախեցեր, մինչ իշխեցեր ևս մեզ ասել անասունս՝ արդ ես արկից զքեզ ի տանջանս և եդից դանդանաւանդ ի կզակս քո. զի գիտասցես եթէ ի սին բանից քոց, զոր յաճախեցեր առաջի իմ ասել՝ վաղվաղակի եղեն քեզ արդիւնքն։ Եւ այս, ասէ, մեծ է ինձ, որ խօսե-



հուսահատ եք, քանզի չեք ճանաչում ձեր Արարչին, որը ձեզանից վրեժ կլուծի նրա համար, որ չեք փնտրել ձեր տեր Արարչին և չեք ճանաչել նրան։ Արդարև նման եք ձիերին ու ջորիներին, որովհետև նրանք չունեն իմաստություն և նույնիսկ մտքով եզից ու էշից էլ պակասամիտ գտնվեցիք, քանի որ չճանաչեցիք ձեր ստեղծողին, որը երբ ժամանակը գա, սանձով կճմլի ձեր կզակները այն բանի համար, որ չկարողացաք մերձենալ նրան։

67 Իսկ որ ասում ես, թե աստվածներին անարգեցի, ի՞նչ նշանակություն ունի նրանց համար անարգանքը, քանի որ երբեք իրենց ցույց տրված պատիվը չեն զգում, որպես մարդկանց ձեռքով պատրաստված և նրանց խելացնոր երազներից ստեղծված ու գոյացած։ Քանզի առաջին մարդկանց կերտած արձաններով հրապուրվեցին և իրենք կերտեցին, որով հենց այն ժամանակ էլ մոլորվեցին՝ զրկվելով Արարչի լույսից։ Իսկ որոնք որ նրանց պաշտում են, հիրավի նման են անասունների, քանի որ [կուռքերը] «Բերան ունեն և չեն խոսում, աչքեր ունեն և չեն տեսնում, ականջներ ունեն և չեն լսում, քթեր ունեն և չեն հոտոտում, ձեռքեր ունեն և չեն շոշափում, ոտքեր ունեն և չեն քայլում, և շունչ չկա նրանց բերաններում։ Նրանց նման կլինեն նրանք, որ ստեղծել են և հույս են դրել նրանց վրա»։

68 Զ. Թագավորն սկսեց խոսել ու ասաց. «Քանիցս քեզ խրատ ու պատվեր եմ տվել որ իմ առջև չկրկնես քո առասպելանման խոսքերը, որ դու հարմարեցրել ու սովորել ես, և որ վայել չէ քեզ խոսել։ Այդ պատճառով ես քեզ խնայեցի որպես վաստակավորի, որպեսզի ուղիղ կարգի գաս՝ պաշտելով աստվածներին։ Դու նրանց պատիվ զլանալով՝ սուտ արարիչ ես համարում, և որոնք որ ճշմարիտ արարիչներ են, անարգում ես։ Նաև մեծ Անահիտին, որով ապրում է և կենդանություն ունի մեր Հայոց երկիրը, ինչպես նաև մեծ և արի Արամազդին, երկնքի և երկրի արարչին, նրանց հետ և մյուս աստվածներին անշշունչ և անմռունչ կոչեցիր։ Մեզ ևս ձգտեցիր անարգել՝ համարձակվելով ձիեր ու ջորիներ անվանել։ Եվ քանի որ բոլորին նախատեցիր, նույնիսկ համարձակվելով մեզ ևս անասուն անվանել, արդ ես քեզ տանջանքներ կտամ և սանձ կդնեմ քո կզակին, որ իմանաս, թե սին խոսքերը, որ իմ առջև հաճախ կրկնեցիր, անմիջապես իրենց արդյունքը տվեցին։ Եվ այս քեզ համար մեծ պատիվ է, ասում է [Թագավորը], որ խոսեցի

ցայս ընդ քեզ և մեծարանս եդի քեզ, և դու ետուր ինձ պատասխանի իբրև ընկերի»։

69 Եւ ետ կապել զնա ձեռս յետս, և արկանել գայլ ի բերան նորա. և ետ կախել շառաշեղս աղի ի վերայ ողին նորա, և տալ գելոցս կրծից նորա, և արկանել առասանս ի կապս կրծից գելարանացն, կապել և համբառնալ ի բարձրաւանդակ տանիս ապարանից որմոյն մենքենայիւք։ Եւ կայր պրկեալ կապեալ այնպէս զաւուրս եօթն։ Եւ յետ եօթն աւուրն ետ հրաման, և լուծին զնա ի չարաչար և ի դառն կապանացն, և ածին կացուցին առաջի նորա։

70 Սկսաւ հարցանել ցնա, թէ «Զիա՞րդ կարացեր ժուժալ, տոկալ, տևել, մնալ և հասանել մինչև ցայսօր։ Եւ կամ առե՞ր զչափ, թէ արդարև իբրև զէշ և իբրև զջորի այնպէս բռանձնեալ բեռինս պահեցեր և հոեղակալ կացեր դու բեռամբն հանդերձ։ Վասն զի իշխեցեր դու թշնամանել զդիսն թէ անշարժ են՝ վասն այսորիկ հատուցին քեզ զայսպիսի պատուհաս։ Իսկ արդ՝ եթէ ոչ առցես դու յանձն պաշտօն տանել դիցն, և յաճախեսցես դու ի նոյնպիսի թըշնամանս աստուածոցն՝ և այլ ևս չարք չարագոյն անցք անցանիցեն ընդ քեզ»։

71 Գրիգորիոս ասէ. «Վասն դիցն թէ ասես, զոր կոչես դու աստուածս՝ ստոյգ իսկ են հաստուածք. վասն զի հաստեալք են ի մարդկանէ, և եղեալք պատկերք ի ձեռաց ճարտարի. ոմն փայտեալք են և ոմն քարեալք. ոմն են պղնձիք և ոմն են արծաթիք և ոմն ոսկիք. ոչ խօսեալ նոցա երբեք և ոչ իմացեալ և ոչ զմտաւ ինչ ածեալ, ոչ վասն քո և ոչ վասն իմ։ Եւ դու ինքնին իսկ քեզէն վկայես ինձ, թէ ոչ երբէք ասացեալ է նոցա ցքեզ զայդ վասն իմոյ տանջելոյս ի քէն. և կամ բնաւ արդեօք իմացա՞ն քարինք անմռունչք զցաւս մարդկան։

72 «Այլ վասն որոյ կապեցեր ինձ աղ, զի կոտեցայց ես կապանօք՝ յուսամ ես ի Տէրն իմ, որոյ են ստացուածք իւր երկինք և երկիր, և յՈրդին համագործ և ի Հոգին բարեխօս, զի համեմեսցեն զանմահութիւնս իմ ստուգութեամբ աղիւն ճշմարտութեան որ ոչ անցանէ։ Եւ ինձ տացէ զամենահեշտ լուծն խոնարհութեան թեթևութեան պարգևացն, որ ոչ անցանէ յաւիտեանս յաւիտենից. որ բարձրացուցանէ զխոնարհս իւրով մարդասիրութեամբն յայն յանսպառ և յանվախճան հատուցմունսն, յանկէտ և յանժամանակ, յանթիւ յաւուրն ընտրութեան դարին մտելոյ եօթներորդին, իբրև հանգուցանէ զամենայն վաստակաւորս իւր և պարգևեսցէ իւրով մեծութեամբն։



քեզ հետ և մեծարեցի քեզ, իսկ դու ինձ պատասխան տվեցիր իբրև ընկերոջ»։

69 Նրա ձեռքերը ետևը կապել տվեց, իսկ բերանին բերանակապ դնել տվեց, նրա մեջքի վրա աղի մեծ կտոր կախել տվեց, կրծքին գելարան կապեցին և գելարանի կապերից պարաններ գցելով կապեցին ու մեքենաներով ապարանքի տանիքի բարձր տեղից կախեցին։ Այսպես պրկված, կապված մնաց յոթ օր։ Յոթ օրից հետո [թագավորը] հրաման տվեց և արձակեցին չարաչար ու դառն կապանքներից և բերեցին կանգնեցրին նրա առջև։

70 Սկսեց հարցնել նրան. «Ինչպե՞ս կարողացար դիմանալ, տոկալ, մնալ և մինչև այսօր հասնել։ Արդյոք զգացի՞ր չափը, թե արդարև էշի և ջորու նման շալակած բեռները պահեցիր և անշարժ մնացիր բեռան հետ մեկտեղ։ Քանի որ համարձակվեցիր աստվածներին անարգել [ասելով] թե անշարժ են, դրա համար էլ հատուցեցին քեզ այսպիսի պատուհաս։ Իսկ արդ՝ եթե հանձն չառնես աստվածներին պաշտամունք մատուցել և դարձյալ նման անարգանքներ կրկնես, առավել ևս չար փորձանքներ կանցնեն քո գլխով»։

71 Ասաց Գրիգորը. «[Հեթանոս] Աստվածների մասին, որ ասում ես, թե աստվածներ են, դրանք իրականում ստեղծված են, որովհետև մարդկանց կողմից են պատրաստված և ճարտար ձեռքերով սարքված արձաններ են, մի քանիսը փայտե են, ուրիշները՝ քարե, պղնձե, արծաթե, կամ ոսկե։ Նրանք երբեք չեն խոսում, չեն տրամաբանում և չեն էլ մտածում ոչ քո և ոչ իմ մասին։ Դու ինքդ իսկ վկայում ես ինձ, թե իմ կրած տանջանքները երբեք էլ նրանց կողմից չեն թելադրված քեզ, որ կատարես։ Եվ կամ արդյոք երբևիցե իմացե՞լ են անխոս քարերը մարդկային ցավերի մասին։

72. Բայց երբ ինձ վրա աղ ես կապել, որպեսզի կապանքներով չարչարվեմ, իմացիր, որ իմ հույսը իմ Տերն է, որի սեփականությունն են երկինքն ու երկիրը, նաև նրա գործակից Որդին և վերջապես բարեխոս Հոգին, որոնք կհամեմեն իմ անմահությունը ճշմարտության աղի ստուգությամբ, որը չի անցնում։ Եվ [Տերը] կտա ինձ խոնարհ, թեթև պարգևների ամենահաճելի լուծը, որը հավիտյանս հավիտենից չի անցնում։ Նա բարձրացնում է խոնարհներին իր մարդասիրությամբ, մինչև անսպառ և անվախճան հատուցումը, անվերջ ու անժամանակ և յոթերորդ դարաշրջանը մանելու

73 «Իսկ որ պաշտեն զկուռս քարեղէնս՝ ասէ մարգարէն վասն նոցա, թէ «Իջցեն որպէս զվէմս ի ջուրս բազումս»։ Իսկ որ զփայտակերտ քանդակեալսն պաշտեն՝ այսպէս ասէ վասն նոցա, թէ «Հուր վառեցաւ ի վերայ ամենայն փայտի ագարակի, և այրեսցէ զմեղաւորս, և մի՛ շիջցի»։ Իսկ որ պաշտեն զարծաթեղէնս և զոսկեղէնս՝ այսպէս ասէ. «Արծաթ նոցա և ոսկի նոցա մի՛ կարասցէ փրկել զնոսա յաւուր բարկութեան Տեառն», որ կարողն է կախել նոցա բեռինս ծանրութեան և ամենայն դիմադարձաց և մեղաւորաց, որ իբրև զքեզդ իցեն ամբարիշտք»։

74 Է. Եւ յետ այսորիկ հրամայեաց կախել զնա գլխիվայր զմիոյ ոտանէն. զի մինչ դեռ կայցէ գլխիվայր՝ ծխեսցեն ի ներքոյ նորա աղբ, և արբցէ զան սաստիկ բոց դալարովք։ Եւ տանջեցին զնա տասն այր՝ ըստ հրամանի թագաւորին. և կայր նա կախեալ այնպէս աւուրս եօթն։

75 Արդ՝ մինչ դեռ կայր նա կախեալ՝ սկսաւ խօսել ի կախաղանին այսպէս. «Գոհանամ զքէն, Տէր, որ արժանի արարեր զանարժանութիւնս իմ քոյոյ պարգևիդ. զի ի սկզբանէ իսկ սիրեցեր զստեղծուածս ձեռաց քոց, և ետուր զփափկութիւն անաշխատ հանգստեան դրախտին վայելչութեան. անմահս, անցաւս, անանց կենաց վիճակացն ուրախութեան պատրաստեցեր՝ եթէ կացեալ էաք ի պատուիրանին, զոր եդեր ի ծառոյն չճաշակելոյ. զի ասացեր, թէ «Մի՛ ուտիցէք յայդմ ծառոյ, զոր պատուիրեցի չուտել ի դմանէ». իբրև ոչ թէ ծառն անուանեալ կենաց՝ կարէր տալ կենդանութիւն առանց քոյոյ բանիդ հրամանի կամացդ բարերարութեան, որ է կամք քո և բանդ և բարերարութիւնդ՝ միածին Որդիդ, ծնունդ աստուածութեան քո. և Հոգիդ սուրբ, որ ի քէն բղխէ լնու զամենայն տիեզերս, որ է ընդ քեզ և ընդ միածնիդ յէութեանդ քում։

76 «Զի եթէ կացեալ էաք ի պատուիրանիդ քում, Տէր, և պահեալ էր զպատուիրանս, զոր եդեր վասն լաւութեան հանդիսի փորձութեան մերոյ՝ շնորհեալ լինէր քո մեզ զկեանս անցաւս, անաշխատս, անբիծս, անհոգս, անտրտումս, առանց ծերանալոյ։ Եւ յետ սերելոյն և բազմանալոյն, որ պատուիրեցեր կեալ մարմնաւորապէս, անամօթ փառօքն զգեցեալ իբրև հանդերձիւ ի դրախտին քում, յոր եդեր զմեզ, և յետ այնորիկ, որպէս յետ սրբութեան ամուսնութեան և որդի ծնանելոյ Ենովքայ, վերացուցեր զնա ի կարգս հրեշտակաց յուրախութեան վիճակն անմահութեան. արդ՝ եթէ կացեալ էաք ի պատուիրանիդ ի քում հրամանի՝ ցուցեր դու մեզ օրինակ



անորոշ նախասահմանված օրերը, երբ իր բոլոր հոգնածներին կըհանգստացնի և պարգևներ կտա իր մեծությամբ։

73 Իսկ ովքեր քարեղեն կուռքեր են պաշտում, նրանց մասին մարգարեն ասում է. «Քարերի նման կիջնեն խորունկ ջրերի մեջ», և ովքեր փայտակերտ քանդակներ են պաշտում, այսպես է ասում նրանց մասին, թե «Հուր վառվեց ագարակի բոլոր ծառերի վրա, որը կայրի մեղավորներին և չի հանգչի», իսկ ովքեր արծաթեղեն և ոսկեղեն են պաշտում, այսպես է ասում. «Նրանց արծաթն ու ոսկին չեն կարողանա փրկել նրանց Տիրոջ բարկության օրը»։ Տերը կարող է ծանրության բեռներ կախել նրանց և բոլոր ընդդիմացողների ու մեղավորների վրա, որոնք քեզ նման ամբարիշտներ են»։

74 Է. Սրանից հետո հրամայեց մեկ ոտքից գլխիվայր կախել նրան և կախված վիճակում տակից աղբ ծխել ու դալար ճիպոտներով սաստիկ գանակոծել։ Տասը մարդ տանջեցին նրան, ըստ թագավորի հրամանի, և այնպես յոթ օր կախված մնաց։

75 Արդ՝ մինչդեռ նա կախված էր կախաղանի վրա, այսպես սկսեց խոսել. «Գոհանամ քեզանից, Տեր, որ ինձ՝ անարժանիս, արժանի դարձրիր քո պարգևին, քանզի սկզբից իսկ սիրեցիր քո ձեռքի ստեղծածներին և շնորհեցիր վայելչության դրախտի հանգստյան անտանջանք զվարճությունը։ Անմահ, անհոգ, հավերժական կյանքի ուրախ վիճակը պատրաստեցիր, եթե հաստատ մնայինք ծառից չճաշակելու պատվիրանին. ասացիր, թե «չուտեք այդ ծառից, որից պատվիրեցի չուտել»։ Քանզի կենաց ծառ կոչվածը չէր կարող կենդանություն տալ առանց քո բարերար կամքի հրամանի, որը քո կամքն է, խոսքը և բարերարությունը և միածին Որդիդ՝ քո աստվածության ծնունդը. և Սուրբ Հոգին, քեզանից բխելով լցնում է ամբողջ տիեզերքը և քեզ հետ է քո Միածնի հետ քո էության մեջ։

76 Եվ եթե քո պատվիրանի վրա հաստատ մնայինք, Տեր, և պահեինք այն պատվիրանները, որ դրել էիր մեր առաքինի լինելը փորձելու համար, մեզ կշնորհեիր անցավ, անչարչար, անբիծ, անհոգ, անտրտում և առանց ծերության կյանք։ Սերնդագործելուց և բազմանալուց հետո, որը պատվիրեցիր մարմնավոր կյանքի համար, ոչ ամոթալի փառքը հագնելով որպես հանդերձ քո դրախտում, որտեղ դրեցիր մեզ և դրանից հետո, ինչպես Ենովքին՝ ամուսնական սրբությունից ու որդի ծնելուց հետո նրան բարձրացրիր հրեշտակների կարգը, անմահության ուրախ վիճակին։ Արդ՝ եթե մենք հաստատ մնայինք քո պատվիրանին, մեզ ևս ցույց կը-

զԵնովք, զի և զմեզ յետ ի դրախտին վայելից և յետ երկրաւոր կարգացս՝ յանմահութիւն փոխեալ լինէր քո զմեզ իբրև զԵնովք ի կարգս հրեշտակաց. և միահաղոյն ածեալ լինէր զարքայութիւն քո, զոր պատրաստեցեր կանխաւ ի փառս մեր՝ մինչ չև էր աշխարհ. զի «Զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և ի սիրտ մարդոյ ոչ անկաւ՝ պատրաստեցեր դու սիրելեաց քոց յառաջագոյն», զոր տացես դու, Տէր, այնոցիկ, որ սիրեցին զօր երևելոյ գալստեան Միածնիդ քո։

77 «Իսկ արդ՝ իբրև ետես թշնամին զմեզ պատուեալս ի մարդասիրութենէ կամարար կամաց քոց՝ նախանձեալ ընդ պատիւ թագի պարծանաց մերոց, պատուին քո որ տուաւ ի քէն, զի ասացեր, եթէ «Ի նմանութիւն պատկերի կերպարանաց իմոց արարի ես զմարդն, և կացուցի զնա տէր ամենայնի». որ առ նախանձ թշնամւոյն բանսարկուի՝ հրապոյրք ցոփացուցիչք մտին յաշխարհ, և արկին զմարդիկ ի կենաց և ի հանգստեանց, զոր դու առ քում բարերարութեանդ շնորհեցեր մարդկան, որ կորուսին զայն։

78 «Իսկ իբրև գթացաւ աստուածութիւնդ քո առ մարդկութիւն տկարութեանս մերոյ, վասն յաճախ ողորմութեանդ քո՝ ոչ թողեր ի ձեռանէ վասն բարերարութեանդ քո. ի ներել երկայնմտութեանդ քո առաքեցեր զսուրբ զմարգարէսն յերկիր և զսիրելիս քո, որ եղեն լուսաւորք յերկրի, ի խաւարչտական միջոյ ազգացն հեթանոսաց. որ և յանմիտ և յանօրէն մարդկանէն ատեցեալք հալածեցան. որք յայտնեցին զքո խորհուրդս լուսաւորութեանդ, և քարոզեցին զկամս քո և զգալուստ Որդւոյդ քո յաշխարհ, որ գալոցն էր և բառնալոց զկարիս յանցուցելոց պատուհասի մեղաց մարդկութեան։

79 «Որք վասն զայս քարոզելոյ յաշխարհի չարչարանօք մեռան, տանջանօք և պէսպէս փորձութեանց խռովութեամբք, զառնութեան ճաշակօքն կեցին յաշխարհի, վասն զքեզ քարոզելոյն առ նեղիչս իւրեանց. և նեղիչք և թշնամիքն՝ նոքա տկարացան և անկան։ Վասն որոյ ընդ յարուցեալ ի վերայ իմ պատերազմիս ոչ երկիցէ սիրտ իմ. և ընդ յարուցեալ ի վերայ իմ ճակատամարտի՝ ի քեզ եմ յուսացեալ. որ ի վախճան ժամանակացն յայտնեցեր զխորհուրդս կամաց քոց, զոր յառաջագոյն պատմեցեր ազգացն առաջնոց սիրելի Որդւովդ քոյ առ նոսա, ի ձեռն սրբոց քոց մարգարէից, զոր ի քէն առաքեցեր գալ ծնանել ի կուսէն սրբոյ։ Զի զոր օրինակ ի ձեռն կուսին առաջնոյ Եւայի մահ եմուտ յաշխարհ՝ սոյն օրինակ և ի ձեռն այսր կուսի կեանք մտցեն յաշխարհ։ Զի զոր օրինակ ի ձեռն



տայիր Ենովքին իբրև օրինակ, որպեսզի երկնային վայելքից ու երկրավոր կարգերից հետո մեզ էլ Ենովքի նման հրեշտակների կարգը փոխեիր և միանգամից տանեիր քո արքայությունը, որը պատրաստեցիր կանխավ մեր փառքի համար, քանի դեռ չկար աշխարհը։ Քանզի «այն ինչ աչքը չէր տեսել և ականջը չէր լսել, և մարդու սիրտը չէր զգացել, առաջվանից պատրաստեցիր քո սիրելիների համար» և որը կտաս դու, Տեր, նրանց, որ սիրեցին քո Միածնի գալստյան օրը։

77 Արդ՝ երբ տեսավ թշնամին, որ մենք մեծարված ենք քո կամարար մարդասիրությամբ, նախանձեց մեր փառքի թագի պատվին՝ քո պատվին, որ դու տվեցիր՝ ասելով, թե «իմ կերպարանքի նմանությամբ ստեղծեցի մարդուն և նրան ամեն ինչի տեր դարձրի»։ Քանզի բանսարկու թշնամու նախանձի պատճառով ցոփացուցիչ հրապույրները աշխարհ մտան և մարդկանց զրկեցին կյանքից ու հանգստից, որ դու քո բարերարությամբ շնորհեցիր մարդկանց, իսկ նրանք կորցրեցին այն։

78 Իսկ երբ քո աստվածությունը գթաց մեր մարդկային տկարությանը, մեզ չզրկեցիր քո բարերարությունից՝ շնորհիվ քո անսպառ ողորմածության։ Ներող երկայնամտությամբ երկիր ուղարկեցիր սուրբ մարգարեներին, իսկ քո սիրելիներին, որոնք երկրի լուսավորիչներ եղան, առաքեցիր հեթանոս ազգերի խավարի մեջ, և անմիտ ու անօրեն մարդկանց կողմից ատելի դառնալով՝ հալածվեցին։ Նրանք հայտնեցին քո լուսավոր խորհուրդները և քարոզեցին քո կամքը և քո Որդու գալուստը աշխարհ, որը գալու էր հանցագործ մարդկանց մեղքերի պատիժներն ու տառապանքները իր վրա կրելու։

79 Նրանք այս բանը աշխարհում քարոզելու համար չարչարանքներով մեռան, տանջանքներով և պեսպես խռովահույզ փորձություններով ու դառնություն ճաշակելով ապրեցին աշխարհում իրենց չարչարողների մոտ քո ուսմունքը քարոզելու պատճառով, իսկ նեղողներն ու թշնամիները տկարացան ու ընկան։ Դրա համար իմ դեմ հարուցած պատերազմի մեջ իմ սիրտը չի վախենում և իմ դեմ մղված ճակատամարտում քեզ եմ հուսացել։ Ժամանակների վերջում հայտնեցիր քո կամքը, որ նախապես պատմել էիր առաջին ազգերին քո սուրբ մարգարեների և քո սիրելի Որդու միջոցով, որին քո կողմից ուղարկեցիր, որպեսզի դա և ծնվի սուրբ կույսից։ Ինչպես, օրինակ, առաջին կույս Եվայի միջոցով մահը աշխարհ

ծննդեան Եւայի՝ Կահելի անէծք և քրտունք և աշխատութիւնք և երերմունք և տատանմունք մտին յաշխարհ՝ սոյն օրինակ և ծնանելով Որդւոյ քոյ ի կուսէն հանգիստք և կեանք և օրհնութիւնք մտցեն յաշխարհ։

80 «Որ առաքեցեր զմիածին Որդիդ քո յաշխարհ, լոյս ի լուսոյ, կեանք ի կենաց, որ եկն զգենուլ զմեր նմանութիւնս մարմնոյ ի կուսէ անտի, զի զմեզ անդրէն առ աստուածութիւնն յարեսցէ իւրով նմանութեամբն, որ իբրև զմեզն եղև։ Ծնաւ ի կուսէն մարմնով և մարդացաւ և մարմնացաւ իբրև զմեզ, այլ կայ և մնայ ի փառս աստուածութեան իւրոյ. և ոչ ընկալաւ փոփոխումն յաստուածութենէ իւրմէ. այն նոյն է՝ որ էրն և է և կայ և մնայ յաւիտեան ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյն։ Այլ զի սիրեաց զմարդիկ՝ վասն այնորիկ եղև իբրև զմեզ, զի զմեզ ածցէ յառաւելութիւն շնորհօք աստուածութեան իւրոյ, որ են կամք ծնողին իւրոյ. և կատարեաց զկամս նորա. որ զսուրբս իւրով փառաւորեաց համբերութեամբն, ի կրել իւրում զանարգութիւն վշտաց մահու տանջանաց, մահուամբն և թաղմամբն հանդերձ. որ վասն զի սիրեցին մարդիկ պաշտել զպատկերս մարդադէմս փայտագործս ճարտարագործս հիւսանց՝ եղև ինքն պատկեր մարդկան, զի զպատկերագործսն և զպատկերասէրսն և զպատկերապաշտսն յիւր պատկեր աստուածութեանն հնազանդեցուսցէ։

81 «Եւ վասն զի սովոր էին մարդիկ երկիր պագանել անշունչ պատկերաց մեռելոց՝ եղև ինքն մեռեալ պատկեր ի վերայ խաչին. և մեռաւ և անշնչացաւ, զի ընդելականաւն զնոսա արագ արագ հնազանդեցուսցէ իւրում պատկերին. իբրև զկարթ երևեցուցեալ զխաչն, և զմարմին իւր առնէր կերակուր տիեզերաց. զի այնու որսասցէ յարքունական սեղանն, մշտնջենաւոր արքայութեանն աստուածութեանն իւրոյ։

82 «Եւ փոխանակ զդրօշելոց փայտիցն՝ զխաչ իւր կանգնեաց ի մէջ տիեզերաց, զի որ սովորն իցեն երկիր պագանել փայտի՝ սովորականաւ ընդելականաւն հաւանեսցին երկիր պագանել խաչին փայտի և որ ի վերայ նորա պատկերն և մարդադէմն իցէ։ Զի ի վերայ խաչին ասէր այսպէս, զոր նշանակեալ մարգարէին յերեսաց տեառըն ասէ, թէ «Եղէ ես որպէս զխուլ՝ որ ոչ լսէ, և իբրև զհամր՝ զի ոչ բանայ զբերան իւր»։ Զի դու, Տէր, ասէիր մարգարէին յառաջ, մինչ չև էր հասեալ ժամ կրելոյ որդւոյ քոյ Յիսուսի զայս ամենայն համբերութիւնս, թէ «Արարից զքեզ համր, և կապեցից զլեզու քո ի քիմս



մտավ, ապա նույնպես և այս կույսի շնորհիվ կյանքը մտավ աշխարհ։ Ինչպես Եվայի կողմից Կայենի (Կահել) ծննդյան շնորհիվ աշխարհ մտան անեծք ու քրտինք, չարչարանք, դող ու տատանմունք, նույնպես և կույսից քո Որդու ծննդյամբ աշխարհ կմտնեն երանություն, կյանք ու օրհնություն։

80 Դու աշխարհ ուղարկեցիր քո Միածին Որդուն՝ լույսի լույսը, կյանքի կյանքը, որ եկավ մեր մարմնի նմանությունը առնելու կույսից, որպեսզի մեզ հետ ունեցած նմանությամբ մեզ կրկին աստվածությանը միացնի։ Մարմնով ծնվեց կույսից և մարդացավ ու մարմնացավ մեզ նման, և կա ու կմնա ի փառս իր աստվածության։ Իր աստվածությունը փոփոխում չկրեց, այլ նույնն է, ինչպիսին որ էր, է և կա ու կմնա հավիտյան Հոր և սուրբ Հոգու հետ։ Քանզի սիրեց մարդկանց և այդ պատճառով եղավ մեզ նման, որպեսզի իր աստվածության շնորհովը մեզ առավելության հասցնի, որը նրա ծնողի կամքն է։ Եվ նա կատարեց նրա կամքը, իր համբերությամբ փառավորեց սրբերին՝ կրելով մահվան տանջանքների վշտալի անարգանքը, մահվամբ ու թաղումով հանդերձ։ Քանի որ մարդիկ սիրեցին պաշտել հյուսների՝ մարդադեմ, փայտագործ, ճարտարագործ արձանները, ուստի ինքն էլ մարդու պատկեր ստացավ, որպեսզի պատկերագործներին, պատկերասերներին և պատկերապաշտներին իր աստվածային պատկերին հնազանդեցնի։

81 Եվ որովհետև մարդիկ սովոր էին մեռյալների անշունչ արձաններին երկրպագել, ինքն էլ մեռյալ արձան դարձավ խաչի վրա։ Մեռավ ու անշնչացավ, որպեսզի սովորական դարձածի միջոցով արագորեն հնազանդեցնի իր պատկերին իբրև կարթ ցույց տալով խաչը և իր մարմինը դարձնելով աշխարհի կերակուր դրա միջոցով նրանց որսալու իր աստվածության մշտնջենավոր արքայության արքունական սեղանի համար։

82 Քանդակված փայտերի փոխարեն նա իր խաչը կանգնեցրեց ամբողջ աշխարհի մեջ, որպեսզի փայտի երկրպագելուն վարժվածները սովորական դարձածի միջոցով համաձայնվեին երկրպագել փայտե խաչին և նրա վրա եղած մարդադեմ պատկերին։ Քանզի խաչի վրա այսպես էր ասում, որը իմաստավորելով մարգարեն ասում է. «Ես եղա խուլի նման, որը չի լսում, համրի նման, որն իր բերանը չի բացում»։ Քանզի դու, Տեր, երբ դեռ չէր հասել քո որդու՝ Հիսուսի այս ամեն տառապանքները կրելու ժամը, նախապես ասել էիր մարգարեի միջոցով, թե «քեզ կդարձնեմ համր, և

քո. և եղիցիր դու իբրև զայր մի, որոյ ոչ գուցեն բանք յանդիմանութեան ի բերան իւրում»։

83 «Քանզի սիրեցին մարդիկ զանխօս կուռս պատկերաց դիցն սնոտեաց՝ վասն այսորիկ և որդին Աստուծոյ մարմնովն պատկեր եղեալ մարդոյ, ի նմանութիւն մարդկան պատկերաց, ելեալ ի բարձրաւանդակ խաչն, իբրև ի վերայ բարձր դիտակի նլեալ՝ ցուցանէր զանբարբառ մեռելութիւնն առ արարածս. վասն որոյ տեսին զնա ի վերայ բարձուն տիեզերք, ցնծացան և երկիր պագին և հնազանդեցան։

84 «Եւ վասն զի սովոր էին մարդիկ ուրախ լինել ի մեհեանս կռոցն զոհիւքն, զոր անմռնչոցն մատուցանէին՝ վասն այնորիկ և դու կոչեցեր ի զենումն Որդւոյ քոյ զտիեզերս և ասացեր. «Զպարարակ իմ զենեալ է, զճաշ իմ պատրաստեալ է». և բազմացուցեր զուրախութիւն ի խաչելոյ Որդւոյ քոյ. և յագեցուցեր զամենայն տիեզերս ի կենդանարար մարմնոյն, որ էն կերակուր և կենդանութիւն բաւական ամենայն երկրպագուաց քոց ընդ ամենայն տիեզերս։ Իսկ որ ոչն կամեցան գալ ի կոչունս հարսանեաց հոգևոր սեղանոյն՝ պատրաստեցեր զնոսա տանջանացն յաւիտենից, յանմահ սատակումն յանանց դատաստանացն, և զքաղաքս նոցա շինեցեր պատրաստեցեր ի մէջ հրոյն տանջանացն պատրաստելոց բարկութեան։

85 «Եւ քանզի ուտէին և ըմպէին մարդիկ զարիւն զոհից անասնոց դիցապաշտութեան՝ վասն այսորիկ եհեղ զարիւնն իւր ի վերայ փայտին. զի փայտն ընդ դրօշեալ փայտիցն, և ինքն ընդ մարդադէմ պատկերացն պղծութեան, և արիւնն իւր ընդ նուագացն ուրախութեան արեանցն, որով և նորոգումն մարմնոց դալարութեան մարդկան։ Զի եկն գնեաց զմեզ արեամբն իւրով ի ստրկութենէ ծառայութեան աստուածութեամբն իւրով, և ազատեաց ի ծառայութենէ չարութեան մեղացն. զի մեք եմք գինք արեան Որդւոյ քոյ, փրկեալք և ազատեալք արեամբ և մարմնով նորա. զի ոչ եմք անձանց տեարք՝ եթէ ըստ կամս դիւրութեան անձանց մերոց գնասցուք, և կամ ըստ կամաց ամենայն մահկանացու մարդկան, թէպէտ և իցեն մեր տեարք մարմնապէս։ Սակայն պարտ է պատուել զնոսա, որչափ ի քէն է հրամայեալ, և ոչ զքեզ ընդ ահի մահկանացու մարդկան փոխանակել. զի նոքա զմարմին և եթ կարող են չարչարել, իսկ Որդիդ միածին, տէր մեր Յիսուս Քրիստոս, կարող է արկանել ի տանջանսն



չկապեմ քո լեզուն քո քիմքին և կդառնաս մի մարդու նման, որի բերանում հանդիմանության խոսք չկա»։

83 Քանզի մարդիկ սիրեցին սնոտի աստվածների պատկերների անխոս կուռքերը, այդ պատճառով էլ Աստծու որդին իր մարմնով մարդու կերպարանք առավ՝ մարդկային պատկերի նմանությամբ և ելնելով բարձրադիր խաչի վրա, որպես բարձր դիտակետի, ցույց տվեց [մարդկային] արարածներին՝ անբարբառ մեռելությունը, ուստի տեսնելով նրան տիեզերքի բարձունքի վրա՝ ցնծացին, երկրպագեցին ու հնազանդվեցին։

84 Եվ քանի որ մարդիկ սովոր էին անխոս կուռքերի մեհյաններում ուրախանալ՝ զոհեր մատուցելով, դրա համար էլ քո Որդու զոհաբերման ժամանակ դու կոչեցիր տիեզերքը ասելով. «Իմ պարարտ կենդանին մորթված է, և իմ ճաշը պատրաստ է» ու բազմացրիր ուրախությունը քո խաչված Որդու համար և հագեցրիր ամբողջ տիեզերքը կենարար մարմնով, որը բավական կերակուր ու կենդանություն է քո բոլոր երկրպագուներին ամբողջ տիեզերքում։ Իսկ նրանք, որ չկամեցան հոգևոր սեղանի հարսանիքի հրավերքին գալ, նրանց պատրաստեցիր հավիտենական տանջանքներին, անանց դատաստանի անվերջանալի չարաչար մահվանը և նրանց քաղաքները շինեցիր, պատրաստեցիր գալիք բարկության տանջալի կրակների մեջ։

85 Եվ քանի որ մարդիկ ուտում և խմում էին դիցապաշտության զոհաբերվող անասունների արյունը, դրա համար նա իր արյունը թափեց փայտի վրա, քանզի փայտ [դնելով] քանդակված փայտերի փոխարեն, իսկ իր անձը՝ մարդադեմ պիղծ արձանների դիմաց և իր արյունը՝ արյունների ուրախ նվագների փոխարեն, դրանով իսկ նորոգում է նա մարդկային մարմնի դալարությունը։ Եկավ նա իր արյամբ փրկեց մեզ ստրկությունից և իր աստվածությամբ ազատեց չար մեղքերի ծառայությունից։ Քանզի մենք ենք քո Որդու արյան գինը, նրա արյամբ ու մարմնով փրկվածներս ու ազատվածներս։ Մենք չենք մեր անձի տերերը, եթե ըստ մեր անձերի հաճելի կամքով ընթանանք և կամ ամեն մահկանացու մարդկանց կամքով, թեպետ և նրանք մեր մարմնական տերերը լինեն։ Այնուամենայնիվ պարտավոր ենք նրանց պատվել, ինչպես դու էլ ես հրամայում. սակայն չպետք է քեզնից հրաժարվել մահկանացու մարդկանց ահի դիմաց, քանզի նրանք կարող են միայն մարմինը չարչարել, իսկ միածին Որդիդ, Տեր մեր Հիսուս Քրիստոսը, կարող

յաւիտենից հասարակ, ոգւով և մարմնով հանդերձ, ի հուրն անշէջ և յորդն անմահ։

86 «Այլ, Տէր, տո՛ւր ինձ զօրութիւն համբերութեան նեղութեանց վտանգիս իմոյ, և ողորմեա՛ց ինձ իբրև ի վերայ աւազակին, որ ընդ քեզ էր կցորդ չարչարանաց խաչի քոյ. և արա՛ առ իս զգութ մարդասէր շնորհաց քոց, որով կեայ ամենայն երկիր առ հասարակ, արդարք և մեղաւորք, վասն ներելոյ քաղցրութեան քոյ. «Զի ծագես զարեգակն քո ի վերայ չարաց և բարեաց, և ածես զանձրև ի վերայ արդարոց և մեղաւորաց». զի պահես զբարկութիւն քո, և ցուցանես զողորմութիւն քո առ ամենայն մարդիկ առ հասարակ։

87 «Տո՛ւր ինձ, Տէր, շնորհս համբերութեան դառն տանջանացս՝ որով կտտեն զիս. զի և ես արժանի եղէց պահել զաւանդութիւն լուսաւորութեան հաւատոցս, զոր ետուր ինձ՝ ճանաչել զքեզ և առնել զկամս քո։ Զի մի՛ ամաչեսցեն յուսացեալքն ի քեզ, որոց միանգամ պարծեցեալ են ի միածին Որդիդ քո ի Տէր մեր Յիսուս Քրիստոս, որ ի քէնդ առաքեցաւ. զոր դու առաքեցեր ի մահ վասն մեղաց մերոց, զի առցէ զմեղս մեր յանձն իւր, և վասն յանցանաց մերոց պատժեսցի, և առցէ զմեղսն յանձն իւր, և ընդ նմին տարցի զպատուհասն յանցանաց մերոց յանձն իւր չարչարանօք խաչին, կատարեսցէ և տացէ շնորհս պարգևաց՝ իւրոց հաւատացելոցն։

88 «Եւ արդ՝ Տէր բարերար, որ ասացեր, եթէ «Ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչ ի վախճան աշխարհի»՝ մի՛ թողուր զմեզ ի ձեռանէ քումմէ, այլ զօրացո՛ զմեզ ի կամս քո, զի համբերել կարասցուք պատերազմիս՝ վասն մեծի անուանդ քոյ. զի յայտնի լիցի պարծանք հաւատոցս մերոց ծառայից քոց ի տէրութիւն աստուածութեան քոյ. զի և այս յայտնի լիցի, եթէ ոչ կարէ ոք ի թշնամեաց յաղթել յուսացելոց քոց, որք անձանց են թշնամիք։

89 «Այլ, Տէր, խառնեա՛ զմեզ ի թիւ արդարոց քոց վասն մարդասիրութեան քոյ, որ ոչ թողեր զմեզ ընդ վայր ի մեղս հարցն մերոց և ի մոխրապաշտութեան նախնեաց մերոց և յանօրէնութիւնս առաջնոցն մերոց։ Եւ ետուր ճանաչել զբնութիւն արարչութեանդ աստուածութեանդ քոյ, զի մի՛ կորիցուք յունայնութեան հեթանոսութեան։ Այլ գթացար յարարածս քո, զի մի՛ եկեսցէ ի վերայ մեր ի սպառ բարկութիւն քո, և մի՛ վախճանեսցէ զմեզ սրտմտութիւն քո և մի՛ յուզեսցի ցասումն քո առ արարածս քո։

90 «Եւ արդ՝ տո՛ւր, Տէր, զօրութիւն պատերազմել ի վերայ ճըշ-



է գցել հավիտենական տանջանքների մեջ, հոգով և մարմնով հանդերձ, անշեջ կրակի և անմահ որդերի մեջ։

86 Տո՛ւր ինձ, Տեր, զորություն, համբերելու իմ փորձության ցավերի նեղությանը և ողորմիր ինձ, ինչպես ողորմեցիր այն ավազակին, որը քեզ հետ մասնակից էր քո խաչի չարչարանքներին, և ցույց տուր քո մարդասեր շնորհների գութը, որով ապրում է ամբողջ երկիրն առհասարակ՝ արդարները և մեղավորները՝ շնորհիվ քո քաղցր ներողամտության։ «Քանզի քո արեգակը ծագեցնում ես թե չարերի, թե բարիների վրա և անձրև ես տեղում արդարների ու մեղավորների վրա» և պահելով քո բարկությունը ցույց ես տալիս քո ողորմածությունը բոլոր մարդկանց առհասարակ։

87 Շնորհներ տուր ինձ, Տեր, համբերելու այս դառն տանջանքներին, որոնցով կտտում են ինձ, որպեսզի ես էլ արժանի լինեմ լուսավոր հավատքիս ավանդությունը պահելու, որ տվել ես ինձ քեզ ճանաչելու և քո կամքը կատարելու համար։ Քանզի չեն ամաչի քեզ հուսացողները, որոնք մի անգամ պարծեցել են քո միածին Որդով՝ մեր Տեր Հիսուս Քրիստոսով, որին դու առաքեցիր։ Դու Նրան մահվան ուղարկեցիր մեր մեղքերի համար, որպեսզի հանձն առնի մեր հանցանքները ու պատժվի մեր մեղքերի համար, խաչի չարչարանքներով իր անձի վրա կրի մեր հանցանքների պատիժը և պարգևների շնորհը տա իր հավատացյալներին։

88 Արդ՝ Տեր բարերար, որ ասացիր, թե «Ես ձեզ հետ եմ ամեն օր մինչև աշխարհի վախճանը» բաց մի թողնի մեզ քո ձեռքից, այլ զորացրու մեզ քո կամքով, որպեսզի կարողանանք համբերել հանուն քո մեծ անվան [մղած] պատերազմին և հայտնի լինի մեր՝ քո ծառաների, հավատքի փառքը քո աստվածային տերության մեջ։ Որպեսզի այս էլ հայտնի լինի, որ քեզ հուսացողներին ոչ ոք չի կարող հաղթել թշնամիներից, որոնք իրենց են թշնամի։

89 Այլ, Տեր, խառնիր մեզ քո արդարների թվին հանուն քո մարդասիրության, որով մեզ չթողեցիր զուր տեղը մեր հայրերի մեղքերի, մեր նախնիների մոխրապաշտության և մեր առաջինների անօրինության մեջ, ճանաչել տվիր քո աստվածության արարչագործ էությունը, որ չկորչենք ունայն հեթանոսության մեջ։ Այլ գթացիր քո արարածներին, որ քո բարկությունը իսպառ մեզ վրա չգա, քո զայրույթը մեզ չմեռցնի, և քո ցասումը քո արարածների դեմ չգրգռվի։

90 Արդ՝ զորություն տուր, Տեր, պատերազմելու ու մեռնելու

մարտութեան անուանդ քոյ և մեռանել, և դարձեալ նորոգել փառօք միւսանգամ, յորժամ դարձեալ առաքեսցես առ մեզ զՀաստուցմանց զիւրաքանչիւր կշռիչ, զՏէր մեր Յիսուս Քրիստոս. զի կացցուք և մեք զուարթ երեսօք առաջի նորա, և առցուք զպսակն յաղթութեան ընդ սիրելիս քո. զի դու միայն կալոց և մնալոց ես յաւիտեան, և ամենայն տարրական անցաւոր արարածք բանիւ քով մաշեսցին. բայց դու միայն ես յաւիտեանս, և ամփոփես զմարդիկ իբրև զցօրեան ի շտեմարանս ի ժամանակի իւրեանց, և դարձեալ միւսանգամ նորոգես։ Բուսուցանես յերկրէ զոսկերս մարդկան, դալարացուցանես, նորափետուր զարդարես իբրև զարծուիս զսիրելիս քո։

91 «Տէր տունջեան և Հաստիչ խաւարի, արարիչ լուսոյ, քո է տիւ և քո է գիշեր, որ կարգեցեր լուսաւորս ի պէտս՝ առաջնորդս արարածոց քոց, որ են յերկրի քում. որ արարեր զերկուս լուսաւորս առ ի պէտս շրջմանց տարեաց, ամսոց, ժամանակաց, առ ի բոլորել զժամանակս չափովք աւուրց՝ որ են յաշխարհի. զմին՝ իշխանական տունջեան, որ ունի զօրինակ Միածնիդ քոյ, զանշէջ և զանսպառ, զաննուազ և զանխափան լուսոյդ, որ յայտնելոց է իւրոց արդարոց ի Հանդերձեալ աշխարհին, ուր ո՛չ աւուրք և ոչ գիշերք, ո՛չ շաբաթք և ոչ ամիսք, և ո՛չ ամք և ոչ ժամք և ոչ ժամանակք, և ո՛չ շրջմունք տարեաց և ոչ շրջանք ժամանակաց. բայց միայն Տէր է, և անուն նորա միայն։ Որ առնես զՀատուցումն ուրախութեան քոյոց երկրպագուաց բարեօքն, որոց ոչ գոյ փոփոխումն բարեացն, և ոչ Հանումն պարգևացն տուելոց։

92 «Իսկ զնացք իշխանականին գիշերոյ, որ ունի քոյով կամօք զՄիածնիդ քո զօրինակ՝ զնորոգումն յարութեան յանձին բարձեալ բերէ, ցուցանել նշանակել ամենայն երկրաւորաց զքաջալերութիւն ամենայն մեռելոց յարութեան։ Յարևմտից մինչև յարևելս երթայ ի մանկութիւն. դարձեալ յարևմուտս կամօք քովք ծերացեալ Հասանէ. պատի, թաղի, գուշակ թաղելոց յարութեան մեռելոց, մխիթարութիւն քաջալերութեան առ արարածս մատուցանէ, զգալուստ Որդւոյդ նշանակէ յերկնից և զնորոգումն տիեզերաց ակնարկէ, զՀաշումն մաշմանն մեղաւորաց ուսուցանէ, զծագել արդարոցն յարքայութեանն ի գալստեան, դարձեալ զպաՀանջումն Հնացելոց ի մեզս՝ ցուցանէ։ Նա և գուշակէ մաշականն զյաւիտենականնէդ, անցականն զանանցէդ, Հնականն զնորոգչէդ իւրմէ. որ կամօք քովք փոփոխի ի կերպարանս՝



քո անվախճան Ճշմարտության Համար և մյուս անգամ փառքով վերածնվելու, երբ դարձյալ առաքես մեր յուրաքանչյուրի Հատուցման կշռիչին՝ մեր տեր Հիսուս Քրիստոսին, որ մենք էլ զվարթ երեսով կանգնենք նրա առջև և քո սիրելիների Հետ Հաղթության պսակն առնենք, քանզի միայն դու ես մնալու Հավիտյան, իսկ բոլոր նյութական անցավոր արարածները մաշվելու են քո խոսքով։ Դու ես միայն Հավիտենական և մարդկանց իրենց ժամանակին ցորենի նման ամփոփում ես շտեմարանում և դարձյալ նորոգում։ Դու երկրից բուսցնում ես մարդկանց ոսկորները, դալարեցնում և արծիվների նման նորափետուր զարդարում քո սիրելիներին։

91 Տեր ցերեկվա և խավարի ստեղծիչ, լույսի արարիչ, քոնն է ցերեկը և քոնն է գիշերը, որ լուսավորներ կարգեցիր կարիքների Համար, որպես առաջնորդներ քո արարածներին, որոնք ապրում են քո երկրում։ Դու ստեղծեցիր երկու լուսատուներ տարիների, ամիսների, ժամանակների շրջանների Համար, աշխարհում եղող օրերի չափերով ժամանակները բոլորելու Համար։ Մեկը օրվա իշխանն է և նմանությունն ունի քո Միածնի անշեջ, անսպառ, աննվազ ու անխափան լույսին, որ Հայտնվելու է իր արդարներին Հանդերձյալ աշխարՀում, ուր չկան ոչ օրեր, ոչ գիշերներ, ոչ շաբաթներ, ոչ ամիսներ, ոչ տարիներ, ոչ ժամ և ոչ ժամանակ, ոչ տարիների և ոչ ժամանակի շրջաններ, բայց կա միայն Տերը և միայն նրա անունը։ Դու բարիքներով ես ուրախության Հատուցում տալիս քո երկրպագուներին, որոնց բարիքները չեն փոփոխվում, և ոչ էլ խլվում են տրված պարգևները։

92 Իսկ գիշերային իշխանի երթը, որ քո կամքով Միածնի նմանությունն ունի, իր մեջ մարմնավորում է Հարության վերածնունդը, ցույց տալու, Հաստատելու բոլոր երկրավորներին Հարության Հույսը։ Մանկության ժամանակ գնում է արևմուտքից մինչև արևելք և կրկին ծերացած արևմուտք Հասնում քո կամքով. պատանքվում, թաղվում է՝ որպես գուշակ թաղված մեռելների Հարության և քաջալերական մխիթարություն է մատուցում արարածներին, նշում քո Որդու գալուստը երկնքից, իմացնում տիեզերքի նորոգումը, ուսուցանում մեղավորների մաշումը, ոչնչացումը, գալստյան օրը արդարների Հարությունը արքայության մեջ և ցույց տալիս մեզքերի մեջ մնացածներից կրկին Հաշիվ պաՀանջելը։ Նա գուշակում է ոչնչացողի [տարրերությունը] Հավիտենականից, անցավորինը՝ Հավերժականից, Հնացածինը՝ իր նորոգչից։ Նա քո կամ-

որպէս կամք քո հրամայեցին լինել. մինչև բարձցին առակք լինելոցն, զոր եդեր պատրաստեցեր յօր կատարման խոստմանց քոց, յորժամ առնիցես ամենեցուն հատուցումն ի ձեռն Միածնիդ և Հոգւոյդ սրբոյ. զի քո է, և քեզ վայելէն փառք յաւիտեան և յաւիտեանս։

93 «Տէր ամենակալ, որ պսակես զյուսացեալս ի քեզ և կատարես զկամս երկիւղածաց քոց, արժանի արա զիս, Տէր, զի պահեցից զյոյսն իմ որ ի քեզ, և զերկիւղն զմեծ՝ զոր ածելոց ես առ դիմադարձ ամբարշտեալսն ի քէն, և ինձ տո՛ւր համբերութիւն կատարել զընթացս իմ նեղութեամբս՝ յոր կամս։ Բժիշկ ցաւոց մերոց, ողջացուցիչ բեկելոց, անդորրիչ նեղելոց և արձակիչ կապելոց, մխիթարիչ սգաւորաց, յոյս անյուսից, խռովելոց հանգիստ, աշխատելոց նաւահանգիստ, որ նայիս սիրով յարարածս քո և կերակրես զամենեսեան քաղցրութեամբ քով. տո՛ւր ինձ, Տէր, առնուլ պսակ ընդ այնոսիկ, զորս արժանիս արարեր մեռանել վասն անուան քոյ, որոց փառաւորեալ են մահք իւրեանց առաջի քո. զի և ես արժանի եղէց վերանալ ընդ առաջ Որդւոյ քո՛յ սիրելոյ, յորժամ յափշտակեսցէ զանձկացեալսն իւր ի ճառագայթ լուսոյ իւրոյ, դատել ճշմարտութեամբ, զամենայն տիեզերս հրով բարկութեամբ իւրով։

94 «Այլ այժմիկ, Տէր, զօրացո՛ զծառայս քո վասն անուան քոյ, զի յաղթեսցուք զօրութեանց թշնամւոյն. և բա՛րձ և փարատեա՛ զմէգ չարութեան կռապաշտութեան հեթանոսութեան քաղցրութեամբ սիրով քով առ արարածս քո. որ եդեր զանձն քո ի վերայ խաշանց քոց, մի՛ թողուր զհօտ քո, զի ածցես յուղղութիւն. որ դու միայն կարող ես թողուլ զմեղս, և քաւել զյանցանս և զանօրէնութիւնս քոյոց արարածոց, զի զքեզ միայն պաշտեսցեն և զկամս քո արասցեն, և լիցին փառաւորիչք աստուածութեանդ քոյ. և ապրեսցին ի դատաստանացդ քոց, և վայելեսցեն յանճառ բարիս քո. զի ամենեքին արժանի լիցին առանց ամօթոյ և պատկառանաց կալ առաջի մեծութեանդ քոյ. զի և զգործ տգիտութեան սոցա անմեղութիւն համարեսցիս։

95 «Եւ զի սովոր ես յարգել յոչնչէ, զանինչսն յինչ ածել, և յոչնչէ ի լինելութիւն արարածոց. որ ոչ թողեր զազգս մարդկան ի կամս անձանց ղինչպիտութեան իւրեանց. այլ գթացար առաքեցեր զմիածին Որդիդ քո, որ եկն դարձոյց զարարածս յաստուածութիւն



քով փոխում է իր կերպարանքը, ինչպես որ դու հրամայել ես, մինչև որ վերանան եղածների օրինակները, որ դու պատրաստեցիր քո խոստումների կատարման օրվա համար, երբ բոլորին հատուցես քո Միածնի և քո սուրբ Հոգու ձեռքով, քանզի քոնն է և քեզ է վայել փառքը հավիտյան և հավիտյանս։

93 Տեր ամենակալ, որ պսակում ես քեզ հուսացողներին և կատարում քեզանից վախեցողների կամքը, ինձ էլ արժանի արա, Տեր, որ պահեմ քեզ վրա ունեցած հույսս և այն մեծ երկյուղը, որ պատճառելու ես քեզ դիմադարձ եղող ամբարիշտներին և տուր ինձ համբերություն ավարտելու իմ ընթացքը այս նեղությունների մեջ, որտեղ գտնվում եմ։ Ով մեր ցավերի բժիշկ, սրտաբեկների կազդուրիչ, նեղյալների անդորրիչ, կապվածների արձակիչ, սգավորների մխիթարիչ, անհույսների հույս, խռովյալների հանգիստ, հոգնածների նավահանգիստ, որ սիրով ես նայում քո արարածներին և ամենքին կերակրում քո քաղցրությամբ։ [Հնարավորություն] տուր ինձ, Տեր, պսակ ընդունելու նրանց հետ, որոնց դու արժանի դարձրիր քո անվան համար մեռնելու և որոնց մահը փառավորված է քո առջև, որպեսզի ես ևս արժանի լինեմ բարձրանալու քո սիրելի Որդու առջև, երբ հափշտակի սիրելիներին իր լույսի ճառագայթներում և իր բարկության հրով ճշմարտությամբ դատի տիեզերքն ամենայն։

94 Բայց այժմ զորացրո՛ւ, Տեր, քո ծառաներին, քո անվան սիրուն, որ հաղթենք թշնամու զորությանը, և քո արարածների հանդեպ ունեցած քաղցր սիրով վերացրու ու փարատիր կռապաշտ հեթանոսության չար մեգը։ Դո՛ւ, որ անձդ դրեցիր քո ոչխարների համար, մի լքիր քո հոտը, որպեսզի ուղղություն տաս նրան։ Քանզի միայն դու կարող ես ներել մեր մեղքերը և քավել քո արարածների հանցանքներն ու անօրինությունները, որ միայն քեզ պաշտեն, քո կամքը կատարեն և լինեն քո աստվածության փառավորիչները, ապրեն ըստ քո դատաստանի և վայելեն քո անճառ բարիքները, որպեսզի առանց ամոթի ու քաշվելու ամենքը արժանի լինեն կանգնելու քո մեծության առջև, իսկ սրանց անգետ գործը անմեղություն համարես։

95 Եվ որովհետև սովոր ես ոչնչից հարմարեցնել, անարժեքից արժեք դուրս բերել և ոչնչությունից արարածներ ստեղծել, չթողեցիր մարդկային ազգը իր կամքի քմահաճույքին, այլ գթալով նրան՝ ուղարկեցիր քո միածին Որդուն, որը եկավ արարածներին

քո, և հրամայեաց քարոզել Աւետարանին ընդ ամենայն տիեզերս: Այն զի քո միայն է փառաւորութիւն, և քեզ իսկ վայել է երկրպագութիւն յամենայն արարածոց. զի դու միայն ես փառաց և պատուոյ արժանի: Արդ՝ գթա յարարածս քո, քոյով բարերարութեամբ շնորհօքդ և առ երկիրս Հայոց աշխարհիս, զի և սոքա ծանիցեն զքեզ և զմիածին Որդի քո, զՏէր մեր Յիսուս Քրիստոս, որ ի քէնդ առաքեցաւ առ մեզ, և զգեցաւ զմարմին մարդկութեան մերոյ, և նկարեաց և տպաւորեաց զանձն իւր ի ստեղծուածս ձեռաց իւրոց, զի զգեցցի զմարմին մարդկեղէն, և ազգականաւն մերձեցուսցէ զմարդիկ առ քեզ: Քանզի ոչ հանդարտէին մարդիկ տեսանել զերեսս քո և ապրել. վասն այնորիկ եղև նա ի նմանութիւն մարդկան, զի զմարդիկ արժանիս արասցէ աստուածութեանն իւրում. զի ազգակից մարմնովն որ ի մէնջ տեսեալ զաստուածութիւնն Որդւոյն՝ յարգեսցուք բարերարութեամբ Հօր, և ընդ նմին ընկալցուք զշնորհս բարերարութեան Հոգւոյդ սրբոյ որ ի քէն. զի և շնորհեսցին պատգամք Աւետարանի քոյ այսմ աշխարհի. զի և սոքա ծանիցեն զքեզ և զերախտիս բարերարութեանդ շնորհի քոյ, որ առ ամենեսին է:

96 «Այլ որ առատանաստ ամենեցուն՝ տո՛ւր մեզ, զի լիցուք վկայք աստուածութեանդ քոյ, չարչարել վասն անուան քոյ, և մեռանել վասն ճշմարտութեան քոյ, և նորոգել միւսանգամ ի գալստեան քոյ. զի դու եկիր և մեռար ի վերայ արարածոց քոց, և խառնեցեր զմահկանացու բնութիւնս մեր յանմահութիւն քո: Վասն այսորիկ և մեք մինչև ի մահ լիցուք վկայք կենդանութեան քոյ, զի խառնեսցուք ի թիւ վկայից քոց. զի այլ զի՞նչ ինչ արդեօք կարիցեմք առնել դարձուածս փոխարէն բարեացն որ ի քէն՝ եթէ ոչ տացուք զանձինս մեր փոխանակ պատուիրանաց քոց, ի հաճութիւն կամաց քոց. զի լիցուք ժառանգորդք արքայութեան քում ընդ այնոսիկ որ հաճոյ եղեն առաջի քո. զի մատուսցուք զանձինս մեր պատարագ աստուածութեան քում. զի կորուսցուք զանձինս, և դարձեալ գտցուք զնա յաւուր յարութեան. կացցուք ընդ աջմէ քումմէ զանմեղութիւն զգեցեալ ընդ գառինս աջակողմեան դասուն, կամարարաց քոց, յուրախութիւն սրբոց քոց, որ սիրեցին զաստուածութիւն քո և զմիածին Որդիդ, զՏէր մեր Յիսուս Քրիստոս. որ եղև գառն ճշմարիտ և մատոյց զանձն իւր քեզ պատարագ վասն մեղաց ամենայն աշխարհի, զի լիցի հաճեցուցիչ և բարեխօս ընդ արարիչդ և ընդ արարածս: Իսկ որ յայս հաճութիւն ընթացեալ մերձեցան՝ պատրաստեաց նոցա օթևանս յար-



դարձրինց դեպի քո աստվածությունը և հրամայեց Ավետարանը քարոզել ամբողջ աշխարհին: Միայն քեզ է վայել փառավորությունը և հենց քեզ պետք է երկրպագեն բոլոր արարածները, քանզի միայն դու ես փառքի ու պատվի արժանի: Արդ՝ քո բարերար շնորհներով գթա քո արարածներին և մեր Հայոց աշխարհի գավառներին, որպեսզի սրանք ևս ճանաչեն քեզ և քո միածին Որդուն, մեր Տեր Հիսուս Քրիստոսին, որը մեզ ուղարկվեց քո կողմից, առավ մեր մարդկային մարմինը և պատկերեց ու նմանեցրեց իր անձը իր իսկ ձեռքով ստեղծածներին, որպեսզի մարդկային մարմինը ստանալով՝ այդ նմանությամբ մարդկանց քեզ մոտեցնի: Քանզի մարդիկ ի վիճակի չէին նայելու քո երեսին ու ապրելու, այդ պատճառով նա մարդկանց նմանություն ունեցավ, որ մարդկանց իր աստվածությամբ արժանի դարձնի, որպեսզի Որդու աստվածությունը տեսնելով՝ մեզ նման մարմնի մեջ հարգենք նրան Հոր բարերարությամբ, ու նրանից ստանանք քեզանից բխած սուրբ Հոգու բարերար շնորհները: Որ քո Ավետարանի պատգամները շնորհվեն այս երկրին, որ սրանք ևս ճանաչեն քեզ և քո՝ ամենքի նկատմամբ ունեցած բարերար շնորհի երախտիքը:

96 Բայց որ ամենքի հետ առատաձեռն ես, մեզ ևս քո աստվածությանը վկա դարձրու, որ չարչարվենք քո անվան համար և մեռնենք հանուն քո ճշմարտության և հարություն առնելու քո կրկին գալստյան ժամանակ: Քանզի դու եկար և մեռար քո արարածների համար և մեր մահկանացու էությունը խառնեցիր քո անմահությանը: Դրա համար և մենք մինչև մահ քո կենդանության վկաները կլինենք, որ խառնվենք քո մարտիրոսների թվին և արդյոք ուրիշ ի՞նչ կարող ենք անել քո բարիքների փոխարեն, եթե ոչ մեր անձերը տալ քո պատվիրանների դիմաց, քո կամքին հաճելի լինելու համար, որպեսզի քո արքայության ժառանգորդները լինենք նրանց հետ, որոնք քեզ հաճո եղան, մեր անձերը պատարագ մատուցենք քո աստվածությանը, կորցնենք մեր անձերը և հարության օրը դարձյալ գտնենք, անմեղություն հագած կանգնենք քո աջ կողմում, աջակողմյան դասի գառների հետ, որոնք քո կամքին հնազանդ են՝ ուրախություն պատճառելով քո սրբերին, որոնք սիրեցին քո աստվածությունը և միածին Որդուդ՝ մեր Տեր Հիսուս Քրիստոսին: Նա ճշմարիտ գառն եղավ և իր անձը քեզ պատարագ մատուցեց համայն աշխարհի մեղքերի համար, որ լինի հաճեցուցիչ ու բարեխոս արարչիդ ու արարածների միջև: Իր աստվածային արքա-



5—1461

քայութեան աստուածութեանն իւրոյ։ Իսկ որք ոչն կամեցան մտանել ի հաճութիւն հնազանդութեան գալստեան նորա՝ յաւիտենից տանջանս խոստացաւ։

97 «Եւ արդ՝ Տէր բարերար, որ եկիր և խոնարհեցար և առեր զկերպարանս մարդկան, և ետուր զանձն քո ամենայն համբերութեան, և ոչ դարձուցեր զանձն քո յանարգանաց ընդ երեսս թքանելոյ, և մատուցեր հարկանելեաց զծնօտ քո, քացախ և լեղի դառնութեան վասն մեր արբեր, քաղցրացո՛ զսիրտ ամենայն մարդկան ի պաշտօն քո, զի հնազանդեսցին ընդ ամենահեշտ լծով քով և ապրեսցին ի յաւիտենից տանջանացն. զի լցաւ իսկ երկիր աստուածպաշտութեամբ քով. և որ մնացեալքս են՝ զի և սոքա մի՛ վրիպեսցին ի ճշմարտութեան ճանապարհաց քոց, և հրաւիրեսցին յարքայութեան սեղանդ և վայելեսցեն ի համբերութենէ քումմէ։ Որ վասն ամենեցուն եկիր ի սպանումն իբրև զգառն, և ուրախ արարեր ի մարմին քո, զոր ետուր ի փրկութիւն ամենեցուն, և զուղխս փափկութեան քոյ ետուր ըմպել, զարիւն քո, վասն կենաց ամենայն աշխարհի, գթա՛, զի յիշեսցեն և դարձցին և եկեսցեն առ քեզ ամենայն ծագք երկրի, և երկիր պագցեն առաջի քո ամենեքեան, որք իջանեն ի հող. զի կարող ես միւսանգամ կանգնել, կենդանացուցանել և առնել արժանիս մարդասիրութեան քոյ. զի քո իսկ արեամբ են փրկեալք և ազատեալք յիշխանութենէ խաւարի։ Արդ՝ ծանիցեն զքեզ՝ յորոց վերայ մեռար դու. զի քո իսկ են ծառայք և քեզ լիցին երկրպագուք. զի մի՛ եկեսցէ ի վերայ մարդկան բարկութիւն սրտմտութեան քոյ։

98 «Արա՛ զմեզ որդիս լուսոյ և որդիս տունջեան, զի փառաւորեսցի անուն քո ի վերայ ամենայն տիեզերաց. զի դու ես փառաւորեալ ի մշտնջենաւոր արքայութեանդ, որ եսդ յէութեանդ, յիսկութեանդ, յինքնութեանդ։ Որ ետուր օրինակ չարչարանաց քոյովդ չարչարանօք խոնարհութեամբ՝ քոյոց սիրելեաց, և ցուցեր զհալածանս քոյով հալածելովդ, և ցուցեր զտանջանս քոց սրբոց՝ ի քո մտանել ի տանջանս կափահարութեանդ։ Իսկ մեք հողեղէնքս բնաւ իսկ զի՞նչ բերիցեմք ի համար զմեր նեղութիւնս չարչարանաց. զի դու, Տէր, խոնարհեցար և առեր յանձն զամենայն, և բարձեր զվիշտս և զչարչարանս ամենայն տիեզերաց։ Արդ՝ զօրացո՛ զիս, Տէր, ի ժուժկալութիւն սնդութեան նեղութեանս՝ ուր կամս. զի յերկարեսցի իմս պարծել ի նեղութիւնս տանջանաց. զի համարեցայց և ես



յության օծյաններ պատրաստեց նրանց, որ մերձեցան՝ ընթանալով քո կամքով, իսկ որոնք չկամեցան մտնել նրա գալստյան հնազանդության հաճության մեջ, նրանց հավիտենական տանջանք խոստացավ։

97 Արդ՝ Տեր բարերար, որ եկար խոնարհվեցիր և մարդկային կերպարանք ստացար, քո անձը ամեն տեսակ չարչարանքի ենթարկեցիր և չհրաժարվեցիր երեսիդ թքելու անարգանքից, քո ծնոտը մոտեցրիր խփողներին, մեզ համար քացախ և դառն լեղի խմեցիր. քաղցրացրու բոլոր մարդկանց սրտերը քեզ երկրպագելու, որպեսզի հնազանդվեն քո ամենաքաղցր լծին և հավիտյան տանջանքներից ազատվեն։ Քանզի աշխարհը լցվեց քո աստվածապաշտությամբ, իսկ այս մնացյալներն էլ գոնե չվրիպեն քո ճշմարիտ ճանապարհներից, հրավիրվեն արքայության սեղանիդ և քո համբերությունը վայելեն։ Իբրև գառ եկար զոհվելու ամենքի համար և ուրախացրիր քո մարմնով, որը տվիր ամենքին փրկելու համար՝ որպես հաճույքի աղբյուր քո արյունը տվեցիր ըմպելու ամբողջ աշխարհի կենդանության համար։ Գթա, որպեսզի հիշեն, դառնան և քեզ մոտ գան երկրի բոլոր ծագերից, քեզ երկրպագեն բոլորը, որոնք հող են իջնելու, և դու կարող ես կրկին կանգնեցնել, կենդանացնել և քո մարդասիրությանը արժանի դարձնել, որովհետև [այդպիսիք] քո իսկական արյամբ են փրկված և ազատված խավարի իշխանությունից։ Արդ, թող ճանաչեն քեզ նրանք, որոնց համար մեռար դու, քանի որ դրանք իսկ քո ծառաներն են և քեզ են երկրպագելու, որպեսզի քո սաստիկ բարկությունը մարդկանց վրա չգա։

98 Դարձրու մեզ լույսի և ցերեկի որդիներ, որ քո անունը փառավորվի ամբողջ աշխարհի վրա, քանզի դու քո էությամբ, իսկությամբ և ինքնությամբ փառավորված ես քո մշտնջենավոր արքայության մեջ։ Քո չարչարանքներով խոնարհաբար չարչարանքի օրինակ տվեցիր քո սիրելիներին և հալածանքի օրինակ՝ ինքդ հալածվելով, քո սրբերին ցույց տվեցիր, թե ինչ է տանջանքը՝ բռնցքահարության տանջանքի ենթարկվելով։ Իսկ մենք՝ հողեղեններս, ինչպե՞ս թվենք մեր չարչարանքների նեղությունները, քանզի դու, Տեր, խոնարհվեցիր և ամեն ինչ հանձն առար, ամբողջ աշխարհի վիշտն ու չարչարանքը տարար։ Արդ՝ զորացրու ինձ, Տեր, տոկալու, դիմանալու այն նեղություններին, որոնց մեջ ես գտնվում եմ, որ ինչքան կարելի է երկար պարծենամ տանջալի նեղություններով

ընդ սիրելիս քո յաւուրն, յորում հատուցանիցես զանպատում բարիսդ, որ կայ պահի յուսացելոց քոց որ յաւիտենից»։

99 Ը. Եւ մինչդեռ կայր նա կախեալ այնպէս՝ խօսեցաւ զայս ամենայն. և գրեցին ատենակալ դպիրքն նշանագրացն. զի առ ոչինչ համարեալ զկախաղանն, և ոչ զբրածեծ զանին գրեաց ինչ զվիշտս. զի ջարդեալ էր զամենայն մարմինսն յօշորածեծն առնելոյ։ Եւ այլ ևս բազում քան զայս խօսեցաւ՝ մինչդեռ կայր կախեալ գլխիվայր, և գրեցին և մատուցին զայն առաջի թագաւորին. քանզի էր կախեալ զեօթն օր զմիոյ ոտանէն։ Եւ յետ այսորիկ ետ հրաման, և իջուցին զնա անտի։

100 Սկսաւ խօսել ընդ նմա թագաւորն Հայոց Տրդատ և ասէ. «Զի՞նչ ունիս, և կամ զի՞նչ եդեր ի մտի, լինե՞լ կցորդ կենաց իմոց, որպէս աշխատեցարն ընդ իս ի մանկութենէ վաստակովք, եթէ մեռանել տարապարտուց, ի տարապարտ խորհուրդս ընդունայնութեան մտացդ՝ ուր կասդ իսկ»։ Նա պատասխանի ետ և ասէ. «Փութամ ես ելանել ի մարմնոյս, և առնուլ զկեանսն յաւիտենից. այլ տո՛ւր հրաման վասն իմ որպէս և կամիս, զի՛նչ մահ և հրամայես ի վերայ իմ»։

101 Ետ պատասխանի արքայ և ասէ. «Ոչ տամ զայդ պարգև՝ եթէ լիցի քեզ վախճան մահու երագ երագ և հանգչել ի տանջանաց, զոր կոչես դու կեանս յաւիտենից. այլ կտտել զքեզ յերկար, զի ոչ լիցի հնար քեզ երագ մեռանել, այլ տանջել զքեզ յերկար և պահանջել ի-քէն զանարգանս դիցն և զյամառութիւնդ քո, որ ոչ կամեցար պաշտել զնոսա»։

102 Եւ ետ հրաման բերել կոճեղս փայտից, և առնել ըստ ոլոքի խոտոցաց ոտից նորա. և դնել և պնդել ուժգին առատկօք, մինչև իջանէր արիւնն ընդ ծայրս ոտից մատանց նորա. և ասէ. «Գիտիցե՞ս կամ զգայցե՞ս ինչ արդեօք զցաւսդ»։ Նա պատասխանի ետ և ասէ. «Տուաւ ինձ զօրութիւն, քանզի խնդրեցի ես յԱրարչէն արարածոց, որ է ճարտարապետ և Արարիչ ամենայնի՝ որ երևի և որ ոչն երևի»։ Եւ հրամայեաց, և լուծին զնա յայնմանէ։

103 Եւ ետ հրաման բերել բևեռս երկաթիս և վարել ընդ ներբանս ոտից նորա. և առեալ զձեռանէ նորա աստի և անտի՝ ընթացուցանէին զնա յայս կոյս և յայն կոյս. և արիւնն հոսէր իջանէր յոտից անտի, և ոռոգանէր զերկիրն սաստիկ յոյժ։ Եւ դարձեալ ասէ ցնա. «Ա՞յդ են աներևոյթ արարածք Աստուծոյն քո, զոր դուն տեսանես»։



և ես էլ հավասարվեմ քո սիրելիներին այն օրը, երբ հատուցես քո անպատում բարիքներով, որ պահվում է քեզ հուսացողներին հավիտենականության մեջ»։

99 Ը. Այս ամենը խոսեց այնպես կախված դրությամբ, և գրեցին նշանագրերի ատենակալ դպիրները, քանզի առ ոչինչ էր համարում կախաղանը և բրածեծ լինելու տանջանքը, թեպետ ամբողջ մարմինը ջարդված էր ծեծվելուց։ Դեռ սրանից ավելին էլ խոսեց՝ գլխիվայր կախված վիճակում, և գրեցին ու մատուցեցին այն թագավորին, քանզի յոթ օր կախված էր մեկ ոտքից։ Դրանից հետո հրաման տվեց, և նրան այնտեղից իջեցրին։

100 Հայոց թագավոր Տրդատը սկսեց խոսել նրա հետ և ասաց. «Ի՞նչ [նպատակ] ունես և կամ ի՞նչ ես մտադիր, իմ կյանքի ընկերակից լինե՞լ, ինչպես որ մանկությունից ինձ հետ հոգնեցիր, թե՞ իզուր տեղը մեռնել քո դատարկ մտքերի, ունայն խորհուրդների համար, որ հիմա էլ ունես»։ Նա պատասխան տվեց և ասաց. «Ես ձգտում եմ ելնել մարմնիցս և հավիտենական կյանք առնել, բայց դու հրաման տուր իմ մասին, որպես և կկամենաս, ինչ մահ էլ որ կառաջարկես ինձ համար»։

101 Արքան պատասխան տվեց՝ ասելով. «Չեմ տա այդ պարգևը, եթե քո մահվան վախճանը արագ է գալու և հանգստանալու ես տանջանքներից, որ դու հավիտենից կյանք ես կոչում, այլ երկար տանջելու եմ քեզ, որ չկարողանաս արագ մեռնել, և տանջելու եմ երկար ու չեմ ներելու աստվածներին տված քո անարգանքը և քո համառությունը, որ չկամեցար պաշտել նրանց»։

102 Հրամայեց բերել փայտի կոճղեր և դնել ըստ ոտքի սրունքների ոսկորների և բարակ պարաններով ուժգին պրկել, մինչև որ արյունը նրա ոտքի մատների ծայրից ցայտեր, և ասաց. «Գիտե՞ս, կամ արդյոք զգո՞ւմ ես որևէ ցավ»։ Նա պատասխանեց ու ասաց. «Ինձ զորություն է տրված, քանզի խնդրել եմ արարածների Արարչից, որը ճարտարապետն է և արարիչը ամեն բանի՝ երևացողի և աներևույթի»։ Հրամայեց և դրանից արձակեցին նրան։

103 Հրաման տվեց բերել երկաթե բևեռներ, գամել ոտքի ներբաններին և այս ու այն կողմից բռնելով նրա ձեռքերից քայլեցնել այս կողմ և այն կողմ։ Արյունը հոսում էր իջնում նրա ոտքերից և հույժ առատորեն ոռոգում գետինը։ Դարձյալ ասաց նրան. «Ա՞յդ են քո Աստծու աներևույթ գործերը, որ դու տեսնում ես»։

104 Ասաց նա. «Ճիշտ ասացիր, թե այս են իմ Աստծու անե-

104 Նա ասէ. «Բարիոք ասացեր, եթէ այս իցեն աներևոյթ արարածք Աստուծոյն իմոյ. վասն զի «Սերմանի տկարութեամբ՝ և յառնէ զօրութեամբ. սերմանի անարգութեամբ՝ և յառնէ փառօք»։ Զի «Լալով լան՝ որք տանիցին զսերմանիս իւրեանց», այսինքն են վիշտ և չարչարանք, որ հասանեն մեզ որ վասն աստուածպաշտութեանն են. այլ յորժամ որայն ի հունձս եկեալ մատուցէ զատոքութեանն բերրի զպտուղ սերմանողացն՝ ընդ նմին և զցնծութիւն բերկրութեան ուրախութեանց ամենայնի բերէ»։

105 Ասէ թագաւորն. «Բախեցէ՛ք զաման լալոյ արտասուացն. թող եկեսցէ դմա ուրախութիւն»։ Եւ հանին նմա կռուփս ի գլուխն, հարկանելով զնա անհնարին։ Սկսաւ հարցանել զնա և ասէ. «Ա՞յդ է ուրախութիւնն»։ Եւ նա ասէ. «Այո՛ այս է. զի թէ ոչ քրտնեսցի մշակն ի տապ խորշակի ջերմոյն արեգակնակէզ լինելով՝ ոչ ըմբռնէ զարդիւնս շայեկանս ուրախութեան պտղոցն ձմերայնւոյն հանգըստեան»։ Եւ տա պատասխանի արքայ և ասէ. «Դու աստէն իսկ աշխատեա՛ց ի մշակութիւն տանջանացդ, յորում կասդ»։

106 Եւ ետ հրաման բերել աղ և բորակ և բարկ քացախ, և ընկենուլ զնա յորսայս, և դնել զգլուխ նորա ի հիւսանց մամուլս և դնել փող եղեգան ի քիթս նորա, և արկանել զայն ընդ քիթս նորա։

107 Եւ յետ այսորիկ ետ հրաման, և բերին պարկս օդենիս մեծամեծս և լցին զայն մոխրով հնոցի. և արարին թուլագոյն, զի մի՛ կարի լի իցէ, վասն տուրևառ շնչոյն, զի հարկանելով ընդ խելսն վտանգեսցէ զնա։ Եւ ագուցին զայն ի գլուխ նորա, և կապեցին զբերան պարկին ի փողս նորա. և կաց նովաւ աւուրս վեց։ Եւ յետ այսորիկ ետ հրաման, և ածին առաջի թագաւորին, և ի բաց հանին զպարկն ի գլխոյն։

108 Սկսաւ խօսել թագաւորն և ասէ. «Ուստի՞ գաս. թերևս յարքայութենէ անտի գայցես զոր ասէիր»։ Եւ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Այո՛, ի՛սկ յարքայութենէ զոր ասէի՝ անտի գամ. վասն զի արժանի արար զիս Աստուած զայս ամենայն կրել յանձին վասն անուան իւրոյ։ Արդարև իսկ կայ մնայ ինձ արքայութիւնն որ ոչ անցանէ. փոխանակ մոխրոյն՝ անթառամ ծաղիկքն, և փոխանակ քացախոյն՝ անսպառ ուրախութիւնքն»։

109 Թ. Եւ սաստկացեալ թագաւորին՝ ետ պնդել զոտս նորա ի հրապոյրս տկաց, և կախել զնա գլխիվայր. և ետ դնել ձագար ի նստոյ տեղւոջ նորա, և արկանել ջուր տկաւ յորովայն նորա։ Եւ ետ հրաման, և իջուցին յայնմանէ. և սկսաւ հարցանել զնա և ասէ. «Առ-



րևույթ գործերը, որովհետև «տկարությամբ է սերմանվում և զորությամբ ելնում, անարգությամբ է սերմանվում և փառքով հարություն առնում»։ Քանզի «լալով են գնում նրանք, որ իրենց ցանելու սերմն են տանում», այսինքն դրանք վշտեր են և չարչարանքներ, որ հասնում են մեզ աստվածպաշտության պատճառով։ Սակայն երբ ցորենի խուրձը հնձի ժամանակ սերմանողներին մատուցի պարարտ, բերրի պտուղը, նրա հետ և ուրախալի, բերկրալի ցնծություն է բերում ամենքին»։

105 Թագավորն ասաց. «Խփեցեք աչքերին*, և թող նրան ուրախություն լինի»։ Բռնցքահարեցին, սաստիկ ծեծեցին նրան։ Սկըսեց հարցնել նրան և ասաց. «Ա՞յդ է ուրախությունը»։ Նա ասաց. «Այո, այս է, որովհետև եթե մշակը չքրտնի սաստիկ շոգին՝ արևահար լինելով, ձմեռային հանգստյան օգտավետ ուրախության պտղաբեր արդյունքը չի հասկանա»։ Արքան պատասխանեց և ասաց. «Դու հենց այստեղ չարչարվիր քո տանջանքների ծառայությամբ, որի մեջ գտնվում ես»։

106 Հրամայեց բերել աղ, բորակ ու թունդ քացախ և նրան գցել երեսն ի վեր, գլուխը հյուսնի մամուլի մեջ պրկել, քթին եղեգի խողովակ դնել և դրանք քթի մեջ լցնել։

107 Դրանից հետո հրամայեց և բերեցին կաշվե մեծամեծ պարկեր, լցրին հնոցի մոխրով և մի քիչ թույլ թողեցին, որ լրիվ չլցվի ու շունչ առնելու հնարավորություն լինի և ներս անցնելով ուղեղին՝ չարչարի նրան։ Այն նրա գլխին հագցրին, պարկի բերանը վզին կապեցին և վեց օր նրանով մնաց։ Սրանից հետո թագավորը հրաման տվեց, ու բերին իր առջև և պարկը գլխից հանեցին։

108 Թագավորը սկսեց խոսել և ասաց. «Որտեղի՞ց ես գալիս, թերևս այն արքայությունից, որի մասին ասում էիր»։ Գրիգորը պատասխան տվեց ու ասաց. «Այո, հենց արքայությունից, որի մասին ասում էի, այնտեղից եմ գալիս, քանզի աստված ինձ արժանի արեց այս ամենը իմ անձի վրա կրելու իր անվան համար։ Արդարև ինձ համար կա այն արքայությունը, որն անանցանելի է, [ուր] մոխրի փոխարեն անթառամ ծաղիկներ [կան] և քացախի փոխարեն՝ անսպառ ուրախություններ»։

109 Թ. Թագավորը զայրացած հրամայեց նրա ոտքերը կապել տիկերի փոկերին, գլխիվայր կախել, ձագար դնել նրա նստատեղին և տիկով ջուր լցնել նրա որովայնը։ Ապա հրաման տվեց, և իջեցրին այդտեղից, ու սկսեց հարցնել նրան՝ ասելով. «Կկատարե՞ս

*նե՞ս զկամս իմ, թէ ոչ պաշտես զդիսն, որ են ամենայն երկրի կեանք և շինութիւն»։*

*110 Ետ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Ես տեառն Աստուծոյ իմոյ երկիր պագանեմ, զի նա է արարիչ և կեանք և շինութիւն. և զՈրդին հաստիչ և համազօր և համագործ, և զՀոգի նորին, որ ելից իմաստութեամբ զամենայն տիեզերս։ Այլ զկուռս կռեալս, կոփեալս, քերեալս և արարեալս՝ ոչ կալայ երբեք առ աստուածս, և մի՛ լիցի այլ ունել՝ մինչև իցէ շունչ իմ ի մարմնի իմում»։ Ետ պատասխանի թագաւորն և ասէ. «Փոխանակ զի իշխեաց ասել կռեալս և քերեալս դիցն՝ պահանջեսցի դա ընդ այդորիկ»։*

*111 Եւ ետ հրաման քերել զկողս նորա երկաթի քերչօք, մինչև ոռոգան վայրքն ամենայն յարենէ նորա։ Եւ սկսաւ ասել ցնա. «Արդ արասցե՞ս զկամս իմ, Գրիգորիոս, որ յայդպիսի տանջանս մատնեցար»։ Ասէ ցնա. «Ինձ լիցի պահել զուխտ աստուածպաշտութեան, զոր ուսայ ի մանկութենէ իմմէ, որ կարողն է փրկել զիս յամենայն նեղութենէ, և զքեզ արկանել ի տանջանս՝ որ ոչ ճանաչես զնա, և դարձեալ զայլս ես զարհուրեցուցանել կամիս և քակել ի պաշտմանէ սիրոյ նորա»։ Ետ պատասխանի թագաւորն և ասէ. «Ո՞ւր է Աստուած քո, որ փրկէն զքեզ ի ձեռաց իմոց, և կամ դատի, որպէս ասացեր, դատաստանօք իւրովք»։*

*112 Եւ ետ հրաման, և բերին տատասկ երկաթի բազում սակառեօք, և արկին ի վերայ գետնի թանձր. և մերկացուցին զԳրիգորիոս, և արկին ի վերայ տատասկին մերկ. և ծակոտեալ լինէին մարմինք նորա առ հասարակ. և քարշեցին և թաղեցին զնա ի տատասկին. և շրջշրջէին զնա անդէն, մինչև առ հասարակ ծակոտեցան մանրիկ մարմինք նորա, մինչ զի ոչ մնաց ի նմա տեղի ողջ։*

*113 Եւ ի միւսում աւուրն ածին զնա առաջի նորա։ Սկսաւ հարցանել զնա և ասէ. «Զարմացեալ զարմացեալ եմ, և կարի քաջ. զիա՛րդ կեաս դու կենդանի. և ոչ ինչ գրեցեր դու զցաւսդ, և խօսիս ևս. զի արժան էր, թէ վաղուց էիր դու վախճանեալ ի տանջանաց այտի»։*

*114 Ետ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Ոչ է իմ ժուժկալութիւն տոկալոյդ՝ իմով զօրութեամբ, այլ ուժով շնորհի Տեառն իմոյ, և իմոյ յօժարութեան կամացս, որ խնդրեցի ի նմանէ, զի և դու զփորձ առցես զծառայիս Աստուծոյ. զի գիտասցես, թէ ոչ ոք կարէ մեկնել զյուսացեալս ի նա ի սիրոյ նորա։ Զի նա տայ ոյժ և զօրութիւն համ-*



*իմ կամքը, թե՞ չես պաշտի աստվածներին, որոնք ամբողջ երկրի կյանքն են ու հիմքը»։*

*110 Պատասխանեց Գրիգորն ու ասաց. «Ես կերկրպագեմ իմ տեր Աստծուն, քանզի նա է արարիչը, կյանքն ու հիմքը և Որդուն, որն ստեղծող է համազոր ու համագործ և նրա Հոգին, որն իմաստությամբ լցրեց ամբողջ աշխարհը։ Իսկ կռած, կոփած, փորագրած ու ձեռագործ կուռքերը երբեք աստվածներ չեմ համարել և այլ կերպ չեմ անի, քանի դեռ շունչ կա իմ մարմնի մեջ»։ Պատասխան տվեց թագավորն՝ ասելով. «Քանի որ համարձակվեցիր աստվածներին կռած ու քանդակված կոչել, պետք է փոխարենը [հաշիվ] պահանջենք»։*

*111 Հրամայեց նրա կողերը քերել երկաթե քերիչներով, մինչև որ նրա արյունով ամեն կողմ ոռոգվեց։ Սկսեց ասել նրան. «Արդ՝ Գրիգոր, որ այդպիսի տանջանքների մատնվեցիր, կկատարե՞ս իմ կամքը»։ Ասաց նրան. «Ես պետք է պահեմ աստվածապաշտության ուխտը, որն իմ մանկությունից եմ սովորել, և նա կարող է ինձ փրկել ամեն մի նեղությունից, իսկ քեզ կնետի տանջանքների մեջ, քանի որ չես ճանաչում նրան և դեռ, ուրիշներին ես զարհուրեցնելով, կամենում ես հեռացնել նրա սիրո պաշտումից»։ Թագավորը պատասխանեց. «Ո՞ւր է քո Աստվածը, որը քեզ փրկի իմ ձեռքից և կամ դատի, որպես ասացիր, իր դատաստանով»։*

*112 Հրաման տվեց և բերին երկաթե տատասկ բազում սակառներով ու խիտ փռեցին գետնին, մերկացրին Գրիգորին և մերկ գցեցին տատասկի վրա։ Նրա մարմինը ծակոտվեց ամբողջովին, քաշեցին ու թաղեցին տատասկների մեջ և նրան այնտեղ շրջշրջեցին, մինչև որ ծակծկվեցին նրա մարմնի բոլոր մասերը ու նրա վրա ողջ տեղ չմնաց.*

*113 Մյուս օրը նրան բերեցին [թագավորի] առջև։ Սկսեց հարցնել ու ասել. «Զարմանալով զարմանում եմ և խիստ շատ, թե ինչպե՞ս ես դու կենդանի մնում։ Ոչնչի տեղ դրեցիր ցավերդ և դեռ խոսում ես էլ, քանզի պետք է որ դու վաղուց վախճանված լինեիր այդ տանջանքներից»։*

*114 Պատասխանեց Գրիգորը ու ասաց. «Իմ տոկալն ու դիմացկունությունը իմ զորությամբ չեն, այլ իմ Տիրոջ շնորհի ուժով և իմ կամքի հոժարությամբ, որ խնդրեցի նրանից, որպեսզի դու էլ փորձության ենթարկելով Աստծու ծառայիս, գիտենաս, թե ոչ ոք չի կարող նրան հուսացողներին վանել նրա սիրուց։ Քանզի նա*

բերութեան՝ համբերել նեղութեանց և փորձութեանց. զի ամաչեսցեն անօրէնք յունայնութեան իւրեանց և յամբարշտութեան և յապստամբութեան իւրեանց, որ իբրև զքեզդ իցեն, և կացցեն ամօթով յաւուրն այցելութեան և յանդիմանութեան»։

115 Ժ. Եւ ետ հրաման արկանել կապիճս երկաթիս ի ծունկս նորա, և վարել ուռունս ստուարս, և բառնալ ի կախաղան՝ մինչև յօշեսցին ծունկք նորա անդէն։ Եւ կաց կախեալ այնպէս զերիս աւուրս։

116 Եւ յաւուրն չորրորդի հրաման ետ թագաւորն, և իջուցին զնա ի կախաղանէն, և ածին կացուցին զնա առաջի նորա։ Խօսել սկսաւ թագաւորն և ասէ. «Տե՛ս դու, Գրիգորիոս, զի ոչ փրկեաց զքեզ սնոտի յոյսն քո, յոր յուսայիր դու. չեհան զքեզ ի ձեռաց իմոց»։

117 Նա պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Տե՛ս դու, զի սնոտի են յոյսքն քո, և ոչ կարացին հաւանեցուցանել և ոչ երկեցուցանել զիս. զի զոր դուն պաշտես՝ սնոտի է, և ամենայն գործ մոլորութեան քոյ։ Այլ տե՛ս դու, զի ո՛չ ի տանջանաց քոց երկեայ ինչ ես, և ոչ զսաստ ահի քոյ համարեցայ ինչ. այլ զօրութեամբ Տեառն իմոյ մարտեալ ընդ թշնամւոյն՝ որ ի ծածուկն քև պատերազմի ընդ ճշմարտութեան, և մատնեցի զմարմինս իմ ի կիզումն տանջանաց. զի եթէ վաղ եթէ անագան՝ սակայն քակտի հնացեալ մարմինն. զի եկեսցէ ճարտարապետն, գտեալ զորդիս մարդկան՝ միւսանգամ զնոյն հնացեալն անդրէն նորոգեսցէ։ Զի զորոց զոգիսն գտանէ ի պարկեշտութեան, ի զգաստութեան, ի սրբութեան, ի քաղցրութեան, ի հեզութեան, յաստուածպաշտութեան կեցեալ՝ նորոգէ, զարդարէ, կեցուցանէ զնոյն ոգիս նովին մարմնով։ Իսկ զորս գտանէ յանօրէնութեան և յամբարշտութեան, յաստուածատեցութեան, ի կռապաշտութեան կեցեալ՝ թէպէտ և բուսանել բուսանին մարմինք նոցա առ ժամանակ մի՝ այլ զնոսին նովին ոգւով և նովին մարմնով արկանէ ի գեհեն, յանշէջ հուրն, յաւիտենից տանջանս, մանաւանդ զայնոսիկ, որ իբրև զքեզդ են ի կռապաշտութեան»։

118 Իսկ իբրև լուաւ զայն թագաւորն՝ բարկացաւ ընդ բանսն և ասէ. «Ինձ ոչ է փոյթ զայնմանէ, թէ նորոգեսցէ՞ զքեզ Աստուածն քո թէ ոչ. ինձ ոչ է պէտ զայնմանէ։ Այլ զի ասացեր, եթէ զքեզ յանշէջ հուրն արկանէ՝ ես զքեզ աստէն իսկ այրեցից շիջանուտ հրով. տեսցուք, քո Աստուածն զի՞ արասցէ»։

119 Եւ ետ հրաման երկաթի պուտամբք հալել կապար, և մինչդեռ ջերմ էր՝ իբրև զջուր հոսել արկանել զմարմնով նորա։ Եւ այ-



ուժ և համբերատար զորություն է տալիս նեղություններին ու փորձություններին դիմանալու, որ քեզ նման անօրեններն ամաչեն իրենց ունայնության, ամբարշտության և անհնազանդության համար ու ամոթով մնան այցելության ու հանդիմանության օրը»։

115 Ժ. Եվ հրաման տվեց նրա ծնկներին երկաթե կապիճներ հագցնել, մեծ կռաններով հարվածել և կախաղան բարձրացնել, մինչև որ նրա ծնկները հոշոտվեն։ Այսպես կախված մնաց երեք օր։

116 Չորրորդ օրը* թագավորը հրաման տվեց, և նրան իջեցրին կախաղանից ու բերեցին կանգնեցրին իր առջև։ Թագավորն սկսեց խոսել ու ասաց. «Տես դու, Գրիգոր, որ քեզ չփրկեց քո սնոտի հույսը, որ դու ակնկալում էիր, և քեզ չազատեց իմ ձեռքից»։

117 Պատասխանեց Գրիգորը ասելով. «Դու տես, որ սնոտի են քո հույսերը, քանի որ ոչ կարողացան ինձ համոզել, ոչ էլ վախեցնել։ Այն որ դու ես պաշտում, սնոտի է այնպես, ինչպես ե՛ն քո բոլոր մոլոր գործերը»։ Բայց տես, թե ինչպես քո տված տանջանքներից բոլորովին չվախեցա և քո ահավոր սաստը առ ոչինչ համարեցի, այլ իմ Տիրոջ զորությամբ մարտնչելով թշնամու դեմ, որը ծածուկ քո միջոցով պատերազմում է ընդդեմ ճշմարտության, իմ մարմինը մատնեցի տանջալի կիզման, քանզի վաղ թե ուշ հնացած մարմինը քայքայվելու է, որպեսզի գա ճարտարապետը և գտնելով մարդկանց որդիներին նույն հնացածը կրկին նորոգի։ Եվ նրանց, որոնց հոգիները գտնի պարկեշտության, զգաստության, սրբության, քաղցրության, հեզության, աստվածապաշտության մեջ՝ կնորոգի, կզարդարի և կյանք կտա այդ հոգիներին նույն մարմնի մեջ, իսկ որոնց որ գտնի անօրենության, ամբարշտության, աստվածատեցության և կռապաշտության մեջ, թեպետև միաժամանակ նրանց մարմինը աճի, այլ նրանց նույն հոգով ու մարմնով կնետի գեհեն, անշեջ հրի, հավիտենական տանջանքների մեջ, մանավանդ այնպիսիներին, որոնք քեզ նման կռապաշտության մեջ են»։

118 Իսկ երբ թագավորն այս լսեց, բարկացավ այս խոսքերի վրա և ասաց. «Իմ փույթը չէ, թե քո Աստվածը քեզ կվերակենդանացնի, թե ոչ, ինձ այդ պետք էլ չէ։ Բայց որ ասացիր, թե ինձ անշեջ հուրը կնետի, ես քեզ այստեղ իսկ կայրեմ մարող հրով. տեսնենք ինչ կանի քո Աստվածը»։

119 Հրաման տվեց երկաթե պուտուկների մեջ կապար հալեցնել և մինչդեռ տաք վիճակում էր՝ ջրի նման թափել նրա մարմնին։ Այրեցին նրա մարմինն ամբողջովին և չմեռավ, այլ մեծ

*րեցին զմարմինս նորա առ հասարակ, և ոչ մեռաւ. այլ կայր մեծաւ ուժով, և զինչ հարցանէին՝ վաղվաղակի տայր պատասխանի։*

*120 Եւ զարմացեալ թագաւորն ընդ ժուժկալութիւն համբերութեանն կարի անհնարին և ընդ տոկալ նորա՝ և ասէ, թէ «Զիա՞րդ կայ ի քեզ շունչդ յայդչափ ժամանակաց, և ի չարաչար տանջանացդ, որով զքեզն կոտեցի»։ Ետ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Ո՞չ վաղ իսկ ասացի քեզ, եթէ զի տացես դու զփորձ համբերութեան ծառայիս Աստուծոյ. զի տայ զօրութիւն յամօթ առնել զայնոսիկ, որ առանց նորա իցեն և մարտնչիցին ընդդէմ նորա իբրև զքեզդ։ Զի այսպէս ասէ. «Ոչ թողից զձեզ, և ոչ ընդ վայր հարից»։ Արդ՝ այս է պահպանութիւն նորա առ արարածս իւր և առ սիրելիս իւր, զի պահեսցէ զնոսա ի հաւատս իւրեանց որ ի նա, մինչև հատուցէ նոցա ի գալստեան իւրում»։*

*121 ԺԱ. Եւ մինչդեռ խորհէր Տրդատիոս խօսել և այլ ողոքով ընդ նմա, և յղել պատգամ և խոստանալ կեանս և պատիւս, որում ոչ ինչ էր լսելոց,—«Եթէ այնմ ես ոչ լսիցէ՝ ասէ, և այլ ես յաւելից, և ի տոկ կոտեցից».—յառաջ մատուցեալ ոմն ի նախարարացն, որում անուն էր Տաճատ, փեսայ Արտաւանայ սպարապետի արքայի՝ սկսաւ խօսել և տալ տեղեկութիւն և ասել այսպէս վասն նորա, թէ «Վասն զի չէ պարտ կենաց՝ վասն այնորիկ ոչ կամի կեալ և զլոյս տեսանել։ Զի այսքան ժամանակք են, որ առ մեզ բնակեալ է, և ոչ գիտէաք զսա. այլ դա է որդի Անակայ մահապարտի, որ սպան զհայր քո Խոսրով, և արար խաւար Հայոց աշխարհիս և ի կորուստ մատնեաց զայս աշխարհ և ի գերութիւն. արդ՝ չէ պարտ կեալ դմա, զի որդի վրիժապարտի է դա»։*

*122 Եւ յետ այսչափ հարցից և տանջանաց, գանից և բանտից, գեղարանաց և կախաղանաց, դառն նեղութեանց և ամենայն կրտտանաց, որով կոտեցին զնա, բազում համբերութեամբ յանձն իւր տարեալ վասն անուան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. այդ՝ իբրև այնմ ևս հասանէր թագաւորն ի վերայ իրացն, եթէ արդարև որդի Անակայ Պարթևի է, որ սպան զԽոսրով հայր նորա՝ հրաման տայր կապել ոտիւք և կապել ձեռօք և կապել պարանոցաւ խաղացուցանել զնա յԱյրարատ գաւառ, և տալ զնա ի դղեակ բերդին Արտաշատ քաղաքի, և իջուցանել ի վիրապն ներքին, որ անհնարին էր խորութեամբ, մինչև անդէն մեռցի։ Եւ եղև նա յայնմ վիրապի ամս երեքտասան։ Եւ ինքն իսկ թագաւորն խաղայր գնայր ի ձմերոց*



*ուժով մնում էր և ինչ որ հարցնում էին, անմիջապես պատասխան էր տալիս։*

*120 Զարմացավ թագավորը նրա սաստիկ համբերության, դիմացկունության ու տոկունության վրա և ասաց. «Ինչպե՞ս դեռ շունչ ունես այսքան ժամանակ և չարաչար տանջանքների մեջ, որոնցով քեզ խոշտանգեցի»։ Գրիգորը պատասխան տվեց՝ ասելով. «Չէ՞ որ նախապես ասել էի քեզ, թե կտեսնես Աստծու ծառայիս համբերության օրինակը, քանզի նա զորություն է տալիս, որպեսզի ամոթով մնան նրանք, որ նրանից հեռու են և քեզ նման մարտընչում են նրա դեմ։ Այսպես է նա ասում. «Ձեզ չեմ թողնի և ոչ էլ վայր կգցեմ»։ Արդ՝ այս է նրա պահպանությունն իր արարածներին և սիրելիներին, որոնց նա պահում է իր հանդեպ ունեցած հավատքի մեջ, մինչև որ հատուցի նրանց իր գալստյան ժամանակ»։*

*121 ԺԱ. Մինչդեռ Տրդատը խորհում էր այլ սիրաշահությամբ խոսել նրա հետ, և կյանք ու պատիվ խոստանալ, որոնց նա չէր էլ լսելու. «Եթե այս խոսքերին էլ չլսի, ասում էր, դեռ ավելին կանեմ և կչարչարեմ»։ Ապա նրան մոտեցավ նախարարներից մեկը, որի անունը Տաճատ էր՝ արքայի սպարապետ Արտավանի փեսան։ Սկըսեց խոսել ու տեղեկություն տալ և այսպես ասաց նրա մասին. «Որովհետև սա արժանի չէ ապրելու, դրա համար էլ չի կամենում ապրել և լույսը տեսնել, քանզի այսքան ժամանակ է, որ մեզ մոտ բնակվում է և չէինք ճանաչում նրան։ Բայց դա որդին է մահապարտ Անակի, որն սպանեց քո հորը՝ Խոսրովին և խավար բերեց մեր Հայոց աշխարհին, կորստի ու գերության մատնեց այս երկիրը։ Արդ՝ դա արժանի չէ ապրելու, քանի որ վրիժապարտի որդի է»։*

*122 Այսչափ հարցերից ու տանջանքներից, գանահարություններից ու բանտերից, գելարաններից ու կախաղաններից, դառն նեղություններից և ամեն խոշտանգումներից հետո, որոնք նա մեծ համբերությամբ հանձն առավ տեր մեր Հիսուս Քրիստոսի անվան համար, երբ թագավորը այս էլ իմացավ, թե իսկապես դա որդին է Անակ Պարթևի, որն սպանել էր նրա հորը՝ Խոսրովին, հրաման տվեց կապել ոտքերը, ձեռքերն ու պարանոցը, և տարան նրան Այրարատ գավառը, հանձնեցին Արտաշատ քաղաքի բերդի դղյակը և իջեցրին ներքին վիրապը, որի խորությունից դուրս գալ անհնարին էր, որպեսզի իսկույն մեռներ։ Այդ վիրապում նա մնաց տասներեք* տարի։ Իսկ թագավորը շարժվեց գնաց ձմեռանոց՝ Այրա-*

*յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, ի Հայոց աշխարհ յարևելս։*

*123 Իսկ թագաւորն Տրդատ զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեանն աւերէր քանդէր զերկիրն Պարսից թագաւորութեանն և զաշխարհն Ասորեստանի, աւերէր և հարկանէր ի հարուածս անհնարինս։ Վասն այսորիկ պատշաճեցան բանքս այս ի բանս կարգի առակաց, թէ «Իբրև ըսէգն Տրդատ, որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց, և ցամաքեցոյց իսկ ի սիգալն իւրում զյորձանս ծովուց»։ Վասն զի սէգ իսկ էր առ հանդերձս և այլ ուժով պնդութեան, հարստութեամբ, բուռն ոսկերօք և յաղթ մարմնով, քաջ և պատերազմող անհնարին, բարձր և լայն հասակաւ. որ զամենայն ժամանակս կենաց իւրոց պատերազմեալ և առնէր մարտիցն յաղթութիւն։ Մեծ անուն պարծանաց քաջութեան անձին ստանայր, և զհռչակապ շքեղութիւն յաղթութեան ընդ ամենայն աշխարհ կացուցանէր. հարկանէր ի հարուածս զթշնամիսն, և խնդրէր զքէնս վրիժուց իւրոց հայրենեացն. առնոյր աւար բազում ի կողմանցն Ասորւոց, և թափէր կապուտ սաստիկ անհնարին ի նոցանէն։ Արկանէր ի սուր զզօրս Պարսից, և թափէր կողոպուտ անհնարին. լինէր առաջնորդ առն և ձիոյ զօրացն Յունաց, և մատնէր նոցա զբանակս նոցա. հանէր զզօրս Հոնաց սաստիկ յոյժ, և գերէր զկողմանս Պարսից։*

*124 Եւ զայն ամս երեքտասան, որ եղև Գրիգորիոս ի բերդին բանդին և ի խոր վիրապին, կին ոմն այրի, որ էր ի բերդին յայնմիկ, հրաման առեալ յարհաւրաց՝ զի աւուրն նկանակ մի արարեալ պատրաստական ընկենուլ ի ներքս ի խոր վիրապն. և այնու կերակրեալ լինէր նա ի հրամանէն Աստուծոյ զայն ամս որ եղև նա անդ։ Իսկ յայն վիրապ, ուր ընկեցին զնա՝ պահեալ լինէր նա կենդանի շնորհիւ Տեառն իւրոյ։ Իսկ այլ մարդիկ, որ միանգամ իջուցեալ էր անդր՝ ամենեքեան մեռեալ էին վասն դժնդակ չարաշունչ դառնութեան տեղւոյն, վասն կարակում տղմին, օձախառն բնակութեան և խորութեանն։ Վասն չարագործաց իսկ էր շինեալ զայն տեղի և ի սպանումն մահապարտացն ամենայն Հայոց։*

*125 ԺԲ. Եւ յետ այսորիկ հրաման ետ Տրդատ արքայ՝ հրովարտակ առնել ընդ ամենայն աշխարհս իշխանութեան իւրոյ, հրաման հանեալ օրինակ ղայս.*

*126 «Տրդատ արքայ Հայոց մեծաց, առ մեծամեծս և առ իշխանս և առ նախարարս և առ գործակալս և առ այլ մարդիկդ, որ ընդ իմով իշխանութեամբ էք, յաւանս, ի շէնս, ի գեօղս, յագարակս, առ*



*քատ գավառը, Վաղարշապատ քաղաքը, Հայոց աշխարհի արևելքում։*

*123 Իսկ Տրդատ թագավորը իր թագավորության ամբողջ ժամանակ ավերում էր, քանդում Պարսից թագավորության երկիրն ու Ասորեստանը, ավերում էր և ուժեղ հարվածներ հասցնում։ Դրա համար էր, որ պատշաճեցին առակաց կարգի այն խոսքերը, թե «Ինչպես սեգ Տրդատը, որն իր համարձակությամբ ավերեց գետերի թմբերը և իր հանդգնությամբ ցամաքեցրեց ծովերի հորձանքը»։ Վասնզի իրոք սեգ էր հանդերձանքով և մեծ ուժով, զորությամբ, ամուր ոսկորներով և հաղթ մարմնով, քաջ էր և կատաղի պատերազմող, բարձր ու լայն հասակով։ Իր կյանքի բոլոր տարիներին նա պատերազմել էր և մարտերում հաղթություն ձեռք բերել։ Քաջության փառքի մեծ անուն ստացավ և հռչակապ, փառավոր հաղթանակներ տարավ ամբողջ երկրում, թշնամիներին հարվածեց՝ ցանկալով իր հայրերի վրեժը լուծել։ Ասորիքի կողմերից շատ ավար առավ և անխնա կողոպտեց նրանց։ Սրով կոտորեց պարսից զորքը և հսկայական կողոպուտ վերցրեց, առաջնորդեց հունաց այրուձին և նրանց ձեռքը տվեց թշնամիների բանակները, հոների զորքերը հանեց և գերեց պարսից գավառները։*

*124 Այն տասներեք տարիներում, որ Գրիգորը մնաց բանտի բերդում և խոր վիրապում, մի այրի կին, որ այդ բերդում էր, երազում հրաման ստացավ, որ օրական մի նկանակ պատրաստելով՝ խոր վիրապից վայր գցեր։ Այսպիսով՝ Աստծու հրամանով նա կերակրվեց այնտեղ մնացած տարիներին։ Սույն վիրապում, ուր նետել էին նրան, կենդանի մնաց շնորհիվ իր Տիրոջ, իսկ այլ մարդիկ, որոնք մի անգամ այնտեղ իջեցված էին, բոլորը մեռել էին՝ դժնդակ, հեղձուցիչ, անտանելի տեղի, թանձր տիղմի, օձախառն և խորունկ լինելու պատճառով։ Հենց չարագործների համար էր շինված այս տեղը և ամբողջ Հայաստանի մահապարտների սպանության համար հատկացված։*

*125 ԺԲ. Սրանից հետո հրաման տվեց Տրդատ արքան հրովարտակ տանել իր իշխանության բոլոր երկրները հետևյալ օրինակով՝*

*126 Մեծ Հայքի Տրդատ արքայից՝ մեծամեծներին, իշխաններին, նախարարներին, գործակալներին և այլ մարդկանց, որոնք իմ իշխանության ներքո են գտնվում՝ ավաններում, շեներում, գյու-*

*ազատս և առ շինականս, միանգամայն իսկ առ ամենեսեան, ողջոյն։*

*127 «Ողջոյն հասեալ և շինութիւն դիցն օգնականութեամբ, լիութիւն պարարտութեան յարոյն Արամազդայ, խնամակալութիւն յԱնահիտ տիկնոջէ, և քաջութիւն հասցէ ձեզ ի քաջէն Վահագնէ ամենայն Հայոց աշխարհիս. իմաստութիւն Յունաց հասցէ դաստակերտիդ կայսերաց, և ի մեր դիւցախառն Պարթևաց հասցէ այցելութիւն, ի փառաց թագաւորաց և ի քաջ նախնեաց։*

*128 «Ամենայն ոք գիտասցէ ի մերոց հրամանացս որ առ ձեզ», զի վասն ձեր շինութեան եմք հոգացեալք. զի յորժամ էաք մեք ի Յունաց աշխարհին՝ անդ տեսանէաք զհոգաբարձութիւն թագաւորացն, ի հոգալ ընդ շինութիւն իւրեանց աշխարհին, ի պատուել զբագինս դիցն աստուածոց շինուածովք և սպանդիւք զոհիցն, և երևելի պատարագացն ընծայիւք, և գունակ գունակ նուիրօքն և ի պտղոցն՝ յամենայնէ զամենայն նոցա մատուցանելով, և ջերմեռանդն եռալ զեռալ պաշտամանն, շքեղացուցանելով և զարդուքն զարդարելով և զերևելի զհոյակապ զանեղծ դիսն մեծարելով։ Եւ զայն ևս տեսանէաք ի նոցանէ՝ ի նոցունց դից անտի՝ զխաղաղասէր շինութիւն մարդաշատութեան, հոծ բազմամբոխ լիութեամբ պարարտութեամբ՝ նոցա զայն փոխադարձ փոխարինացն շինութիւն շնորհեալ, ամենալրիւք բարութեամբ մեծացեալք խաղաղացեալք ի բարիսն վայելէին։*

*129 «Վասն որոյ պատուէր տուեալ, ահաբեկ արարեալ թագաւորաց աշխարհին՝ զմարդիկն զարհուրեցուցանէին վասն պաշտաման դիցն յոլովելոյ. մի՛ գուցէ թէ խառնաղանջ բազմամբոխ խաժամուժ մարդիկ առ տգիտութեան ինչ արհամարհիցեն. կամ եթէ ոք յանկարծ առ փոխելութեան իշխեսցէ արհամարհել զպաշտօն դիցն՝ հրաման ելեալ զօրացեալ ի թագաւորաց, զի խլեսցեն բրեսցեն իշխանքն որ իցեն յիւրաքանչիւր գործակալութեան, զի շինութիւն աշխարհի ի դիցն բազմասցի։ Զի գուցէ թէ յանկարծ ոք զդիսն անգոսնեսցէ՝ վնաս մեծ ի ցասմանէ դիցն յուզեսցի. այնպիսիքն զանձինս կորուսանեն, և աշխարհի մեծ ոճիրս վնասուց ի նոցանէն ընդոստուցանեն. վասն այսորիկ իսկ և ետուն զհրամանս սաստից այնպիսեացն՝ պատուհաս մահու՝ թագաւորքն Յունաց յիւրեանց աշխարհին։*

*130 «Արդ՝ և մեք հրաման շինութեան կամեցեալ ձեզ, հոգա-*



*ղերում ու ագարակներում, ազատներին ու շինականներին՝ ողջույն՝ բոլորին միաժամանակ։*

*127 Թող ողջույն և խաղաղություն հասնի աստվածների օգնականությամբ, պարարտ լիություն՝ արի Արամազդից, խնամակալություն՝ Անահիտ տիկնոջից, քաջություն ամենայն Հայոց աշխարհիս՝ քաջն Վահագնից։ Թող Հունաց իմաստությունը հասնի կայսերական դաստակերտիդ և հոգատարություն լինի մեր դիցախառն պարթևներից, թագավորների փառքից և քաջ նախնիներից։*

*128 Ամեն ոք թող գիտենա ձեզ ուղարկած մեր հրամաններից, որ հոգացող ենք ձեր շենության համար, քանզի երբ մենք Հունաց աշխարհում էինք, այնտեղ տեսանք թագավորների հոգացողությունը իրենց երկրի շենության նկատմամբ, աստվածների բագինները պատվելը՝ շինվածքներով ու զոհեր մատուցելով, երևելի զոհաբերություններով, տեսակ-տեսակ նվերներով ու ընծաներով, ամեն ինչից ընտիրը նրանց մատուցելով, [տեսանք] պաշտամունքի մեջ ջերմեռանդությունը շքեղացնելով ու զարդարելով և երևելի, հոյակապ, անեղծ աստվածներին մեծարելով։ Այն ևս տեսանք, որ նրանց աստվածների շնորհիվ բազմամբոխ, հոծ, խաղաղ, մարդաշատ շենություն կա՝ առատ լիությամբ, [քանզի] աստվածներն իրենց կողմից փոխադարձելով խաղաղություն են շնորհում, [ուստի] ամենալի բարությամբ մեծարված խաղաղորեն վայելում էին բարիքները։*

*129 Այս բանի համար թագավորները պատվիրելով ահաբեկել՝ մարդկանց վախեցնում են, որ շատացնեն աստվածների պաշտամունքը, և չլինի թե խառնիճաղանջ, բազմամբոխ, խաժամուժ մարդիկ իրենց տգիտությամբ արհամարհեն, կամ թե որևէ մեկը հանկարծ խելագարությամբ համարձակվի արհամարհել, աստվածների պաշտամունքը։ Թագավորների կողմից խիստ հրաման է տրված, որ իշխանները՝ յուրաքանչյուրն իր գործակալության մեջ, [դրանց] արմատախիլ անեն, որպեսզի աստվածների շնորհիվ շենությունը ավելանա, և եթե հանկարծ որևէ մեկը աստվածներին արհամարհի, աստվածների ցասումից մեծ վնաս հասնի նրան։ Այդպիսիք իրենց անձերը կորցնում են և մեծ պատուհաս են հասցընում իրենց երկրին։ Ահա թե ինչու Հունաց թագավորները իրենց երկրում սաստիկ հրաման են տվել՝ այդպիսիներին մահ սպառնալով։*

*130. Արդ՝ մենք ևս կամեցանք շենություն ապահովելու հրա-*



6—1461

ցեալ զի և ձեզ ամենալրիւքն ամենաբարիքն ի դիցն բազմասցին. զի ի ձէնջ՝ պաշտօն նոցա և փառաւորութիւն, և ի նոցանէ՝ շինութիւն, լիութիւն և խաղաղութիւն. զի որպէս ամենայն տանուտէր ընդ տան իւրոյ և ընդ ընտանեաց հոգայ՝ սոյնպէս և մեք հոգամք ընդ մեր Հայոց աշխարհիս շինութեան։

131 «Արդ՝ ամենայն նախարարք մեծամեծք և ազատք և գործակալք և սիրելիք մեր թագաւորաց, և շինականք, բնակք և ձեռատունկք և ձեռասունք մեր Արշակունեաց, զոր յանձանձեալդ և սնուցեալդ է, անխայեալդ և յառաջեալդ, վասն մեր օգտի հասարակաց հոգացեալ, զի զդիսն պատուեսջիք։ Արդ՝ եթէ յանկարծ ոք թէ գտցի, որ զդիսն անպատուեսցէ, և գտցեն զայնպիսին՝ կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք և կապեալ պարանոցաւ ի դուռն արքունի ածցեն. և տուն և կեանք և արարք և ստացուածք և գանձք՝ այն ամենայն այնոցիկ լիցի, որ զայնպիսիսն ի մէջ ածցեն։ Ողջ լերուք ի դիցն օգնականութենէ դուք ամենեքին և ի մեր թագաւորաց՝ որ ընդ այս հրաման կամիք, և ի շինութեան բնակեսջիք ամենեքեան, զի մեք գլխովին իսկ ողջ եմք»։

132 Իսկ զամենայն ամս ժամանակաց իւրոց թագաւորն Տրդատ գոռացեալ ընդ Պարսից տէրութեանն՝ խնդրէր դէքնս վրիժուց մարտիւք պատերազմաց։ Իսկ ի լնուլ ամացն, որ եղև Գրիգորիոս ի վիրապին, իբրև ամս երեքտասան, և էր մարտ սաստիկ խստութեան Տրդատայ ընդ Պարսից թագաւորին՝ զամենայն աւուրս կենաց իւրոց։

133 Իսկ միւս ևս այլ հրովարտակ հրամայեաց գրել ընդ աշխարհս և ընդ գաւառս իշխանութեանն իւրոյ՝ օրինակաւս այսուիկ.

134 «Տրդատիոս Հայոց մեծաց արքայ. առ աշխարհս և առ գաւառս, առ նախարարս և առ զօրս և առ շինականս և առ ամենեսին ողջոյն. ողջ լիջիք, և մեք մեզէն իսկ ողջ եմք։

135 «Դուք ինքնին գիտէք, զիա՛րդ ի բնէ ի նախնեացն իսկ յաղթութիւն խաղաղութեան բազում էր շնորհեալ մեզ դիցն օգնականութեամբ, և կամ թէ ո՛րպէս զամենայն ազգս նուաճեալ էր, և ի հնազանդութեան ունէաք։ Իսկ յորժամ զդիսն ոչ մարթացաք հաճել պաշտամամբն, զկամս նոցա քաղցրացուցանել ընդ մեզ՝ հանին մերժեցին ի ցասմանն իւրեանց զմեզ ի մեծ տէրութենէն։ Մանաւանդ վասն աղանդին քրիստոնէից պատուիրեալ ձեզ, զի հազար և բիւր դէպ է եթէ գտցի ոք, զի նոքա անհնարին լինին խափան դիցն պաշտամանն, զայնպիսիսն թէ գտցեն և վաղվաղակի ի մէջ ածցեն՝ յար-



ման տալ, որ ձեզ ևս աստվածներից ամեն տեսակ առատություն և բարիք հասնի, որ դուք երկրպագեք նրանց ու փառավորեք, իսկ նրանք ձեզ շնորհեն շենություն, լիություն ու խաղաղություն, և ինչպես ամեն տանուտեր հոգ կտանի իր տանն ու ընտանիքին, նույնպես և մենք կհոգանք մեր Հայոց աշխարհի շենության համար։

131 Ուստի և բոլորդ՝ նախարարներ, մեծամեծներ, ազատներ, գործակալներ և մեր թագավորության սիրելիներ, շինականներ, բնիկներ և մեր Արշակունյաց տան ձեռքի տակ սնված ու դաստիարակվածներ, որոնց փայփայել ու սնուցել ենք, խնայել ու առաջնորդել, հոգալով մեր ընդհանուր օգտի մասին, [հրամայում ենք], որ պատվեք աստվածներին։ Արդ՝ եթե հանկարծ գտնվի որևէ մեկը, որ աստվածներին անպատվի և այդպիսին հայտնաբերեն, ոտքերը, ձեռքերն ու պարանոցը կապած պետք է նրան բերեն արքունի դուռը, իսկ նրա տունը, կյանքը, ինչքը, ստացվածքն ու գանձերը ամենը թող լինեն նրանց, որ այդպիսիններին հայտնաբերում են։ Ողջ եղեք բոլորդ օգնականությամբ աստվածների և մեր թագավորներիս, որոնց հրամանը կատարում եք և թող բոլորդ բնակվեք շենության մեջ, քանզի մենք ինքներս իսկ ողջ ենք»։

132 Իր իշխանության բոլոր տարիներում Տրդատ թագավորը սպառնալով պարսից տերությանը՝ կամենում էր վրեժ լուծել պատերազմներով։ Իսկ այն տարիների ընթացքում, երբ Գրիգորը վիրապում էր՝ գրեթե տասներեք տարի, Տրդատը սաստիկ մարտ էր մղում պարսից թագավորի դեմ իր կյանքի բոլոր օրերում։

133 Մի այլ հրովարտակ ևս հրամայեց գրել իր իշխանության տակ եղած երկրներին ու գավառներին սույն օրինակով.

134 «Մեծ Հայքի Տրդատ արքայից՝ երկրներին, գավառներին, նախարարներին, զորքերին, շինականներին* և ամենքին ողջույն։ Ողջ եղեք, իսկ մենք ինքներս իսկ ողջ ենք։

135 Դուք ինքներդ գիտեք, թե ինչպես աստվածների օգնականությամբ սկզբից՝ մեր նախնիների օրերից, բազում հաղթություն, խաղաղություն էր շնորհված և կամ թե ինչպես բոլոր ազգերը նվաճված և մեզ հնազանդ էին։ Սակայն երբ չկարողացանք աստվածներին պաշտամունքով հաճեցնել, նրանց կամքը մեր նկատմամբ քաղցրացնել, ցասումով մերժեցին մեզ, զրկեցին մեծ տերությունից։ Մանավանդ քրիստոնյա աղանդի մասին պատվիրում եմ ձեզ, որ եթե գտնվի այնպիսին, որ հազար և բյուր դեպքից մեկ անգամ խափանարար լինի աստվածների պաշտամունքին, այդպի-

քունուստ պարգևք և պատիւք նոցա լիցին շնորհեալ որ զնոսայն յայտնեսցեն։ Ապա թէ ոք չյայտնեսցէ զայնպիսին, կամ թագուսցէ, և գտցի՝ այսպիսին ընդ մահապարտս համարեալ լիցի, և ի հրապարակ արքունի եկեալ մեռցի, և տուն նորա յարքունիս երթիցէ։

136 «Արդ՝ զոր օրինակ ես ոչ խնայեցի յիմ վաստակաւոր Գրիգորիոս, յիմ սիրելին, որ վասն դորին իսկ իրաց չարաչար և սաստիկ տանջանօք տանջեցի, և յետ այնորիկ եսու զնա ընկենուլ ի խոր վիրապն յանհնարին, զի անդէն իսկ միանգամայն օձից լիցի կերակուր. զի և ոչ զմեծ վաստակն նորա համարեցայ ինչ՝ առ սիրով և առ ահիւ դիցն, զի և ձեզ ահ լիցի այս և երկիւղ ի մահուանէն. այլ զի կեցջիք ընդ հովանեաւ դիցն և ի մէնջ բարիս մարթասջիք գտանել։ Ողջ լերուք, և մեք մեզէն ողջ եմք»։

137 ԺԳ. Եւ եղև ընդ ժամանակսն ընդ այնոսիկ խնդրեաց իւր կին կայսրն Դիոկղետիանոս. և այնուհետև ընդ ամենայն կողմանս տէրութեան իւրոյ արձակեալք շրջէին պատկերագործք նմանահանք ճշգրտագործք. դեղատախտակ պայծառակշիռ հասակաչափ զգեղ երեսացն և զմրազարդ յօնիցն ի տախտակսն համանմանս դեղովքն պաճուճէին, զի յայտ յանդիման ցուցցեն առաջի ակնահաճոյ կամաց թագաւորին։

138 Յայնմ ժամանակի եկեալ գտանէին ի քաղաքին Հռոմայեցւոց արգելավանս մի կուսանաց՝ միանձնական լեռնական, ընդակերս, զգաստացեալս, պարկեշտականս, սրբամատոյց կանայս քրիստոսական հաւատոյ, որ զցայգ և զցերեկ և յամենայն ժամանակի փառաւորութեամբ և օրհնութեամբ զկատարեալ աղօթսն իւրեանց առ Աստուած առաքել ի բարձունս արժանի լինէին։ Որոյ անուն էր գլխաւորին Գայիանէ, և սան նորին՝ ի դստերաց ուրումն յաստուածապաշտ և ի թագակալ տոհմէ, զի անուն էր նորա Հռիփսիմէ։

139 Եւ իբրև եկին հասին՝ բռնութեամբ մտեալ ի սուրբ կայեանս առաքինեացն, տեսեալ զպարկեշտագեղն Հռիփսիմէ, զարմացեալ սխրացեալ ընդ սքանչելատեսիկն տեսիլ՝ ի նկարապաճոյճ ի տախտակսն յօրինէին, և առ թագաւորն հասուցանէին։

140 Եւ իբրև ետես թագաւորն զգեղապանծ վայելչութիւն պատկերակերպ նկարագրին Հռիփսիմեայ, մոլեգնական ցանկութեամբ տափողաց զեղխեալ. զի անկարգ ցանկութիւն յիմարութեանն մոլութեան ստիպէր, ժամ տուեալ ուրախութեան հարսանեաց՝ ճեպով



ախն եթե գտնվի, [պետք է] շուտափույթ հայտնաբերվի, և արքունիքից պարգևներ ու պատիվներ շնորհվի հայտնաբերողին։ Իսկ եթե որևէ մեկը չհայտնի կամ թաքցնի այդպիսին, և ապա գտնվի, մահապարտ կհամարվի, արքունի հրապարակը բերվելով կսպանվի, և նրա տունը արքունիքին կտրվի։

136 Արդ՝ ինչպես որ ես չխնայեցի իմ վաստակավոր Գրիգորին՝ իմ սիրելիին, որին հենց նման պատճառներով չարաչար ու սաստիկ տանջանքներով տանջեցի և դրանից հետո նրան անմատչելի խոր վիրապ նետել տվեցի, որպեսզի իսկույն օձերին կերակուր դառնա, նույնիսկ նրա մեծ վաստակը նկատի չունեցա ի սեր աստվածների ու նրանց ահու, ապա թող ձեզ էլ ահ լինի և մահվանից երկյուղ, ուստի մնացեք աստվածների հովանավորության տակ և մեզանից բարին կգտնեք։ Ողջ եղեք, իսկ մենք ինքներս ողջ ենք»։

137 ԺԳ. Այդ ժամանակներում պատահեց, որ Դիոկղետիանոս կայսրը կամեցավ իր համար կին առնել, և այնուհետև իր տերության բոլոր կողմերը սկսեցին շրջել նմանահան ճարտար նկարիչներ, և դեմքի գեղեցկությունը, մրազարդ հոնքերը ճշգրտորեն, հասակին հարմար, համապատասխան ներկերով նկարում էին տախտակների վրա, որպեսզի դեմ դիմաց ցույց տան թագավորին՝ ի հաճույս նրա։

138 Այդ ժամանակ գալով Հռոմ քաղաքը, գտան կույսերի մի արգելավանք, որոնք լեռներում մեկուսացած, բուսակեր, ժուժկալ, պարկեշտ և սրբանվեր կանայք էին, քրիստոնեական հավատքով լի, որոնք գիշեր ու ցերեկ և ամեն ժամանակ փառավորությամբ ու օրհնությամբ իրենց աղոթքը արժանավորապես դեպի վեր առ Աստված էին առաքում։ Նրանց գլխավորի անունն էր Գայանե, որն ուներ մի սան՝ աստվածապաշտ մարդու դուստրերից՝ թագավորական տոհմից, որի անունն էր Հռիփսիմե*։

139 Երբ եկան հասան, բռնությամբ մտան առաքինի կանանց սուրբ կայանը, տեսնելով պարկեշտագեղ Հռիփսիմեին, սքանչելի տեսիլքով ապշած, զարմացած՝ նկարը տախտակի վրա նկարեցին և թագավորին հասցրեցին։

140 Երբ թագավորը տեսավ Հռիփսիմեի կերպարանքի նկարի հիասքանչ վայելչությունը, կատաղի ցանկության տոփանքով լցվեց, քանզի հիմար, մոլեգին, անկարգ ցանկությունը ստիպում էր. [և նա] հարսանիքի ուրախության ժամ որոշելով տագնապով

տագնապաւ փութայր զուրախութիւնս հարսանեացն կատարել։ Յայնմ ժամանակի տագնապափոյթ սփիւռ դեսպանս արձակեալ, պատուիրակս հանեալ ընդ աշխարհս ամենայն, զի ամենեքեան օժտաբեր ընծայատար լիցին մեծի հարսանեացն, և բազում ուրախութեամբ գալ կատարել առ հասարակ ամենեցուն զօրէնս արքայական փեսային՝ ըստ օրինացն թագաւորաց։

141 Իսկ իբրև տեսին առաջինիքն զգաղտաձիգ նետս թշնամւոյն, որ ի ծածուկն սովոր էր ձգել ի սուրբսն քրիստոսասէրսն, աման չարի գտեալ զթագաւորն. որպէս ի դրախտի անդ զօձն անդրուվար արարեալ. առ ի պատուիրանն մոռանալոյ, մտեալ յանզգամ յունկն կնոջն առաջնոյ. սոյնպէս և աստ զթագաւորն անօրէն իբրև զվահանակ երեսաց գտեալ՝ նովաւ մարտուցեալ ընդ աստուածաշէն եկեղեցիս։

142 Իսկ զթագաւորն հպարտացուցեալ ամբարհաւաճեցուցանէր որոգայթադիր թշնամին՝ ի գրգռել յարուցանել հալածանս ի վերայ եկեղեցեաց Աստուծոյ, խելացնորեցուցեալ զնա առ ի տալ պագանել երկիր ուրուականաց մեռելոտեաց, ոսկեղէն և արծաթեղէն, փայտեղէն և քարեղէն պղնձագործ պատկերաց դիցն սնոտեաց, և պղծութեանն պաշտաման։ Ուս եղեալ համբառնայր հարկանել ընդ վիմին հաստատնոյ, ընդ հաւատոցն եկեղեցւոյ. վիմին ինչ ոչ ստնանել կարացեալ՝ ինքն առ վիմին խորտակեցաւ։ Սակայն յամբարհաւաճութիւն մոլեգնութեանն վստահացեալ՝ բազում և անչափ էր այն, որ ի նմանէ անցանէր ընդ եկեղեցիս Աստուծոյ։

143 Իսկ երանելին պարկեշտասէրն Գայիանէ, սրբասնելովն Հռիփսիմեաւ հանդերձ և այլ ընկերօքն իւրեանց, յիշեալ զուխտն սրբութեան, զօրինաւոր կրօնիցն զգաստութեան սրբութիւնն յոր մտեալ էին՝ ողբային յանձինս իւրեանց վասն նկարացոյց հրամանին, առ ի նկատել զպատկերս նոցա պիղծ և անօրէն թագաւորին. ճգնութեամբ մատուցեալ յաղօթս՝ խնդրել ի բազումողորմ Տեառնէն օգնականութիւն՝ փրկել զնոսա ի փորձութենէն, որ հասեալ էր ի վերայ նոցա։ Եւ յաղաչելն իւրեանց այսպէս ասէին.

144 «Տէր տերանց, Աստուած աստուածոց, Աստուած յաւիտենական, Աստուած երկնից, Աստուած անճառ լուսոյ, որ հաստատեցեր զամենայն բանիւ քով. որ արարեր զերկինս և զերկիր և զամենայն զարդ նոցա. որ ստեղծեր զմարդն հող յերկրէ և իմաստուն կացուցեր և բազմացուցեր զնա ի վերայ երկրի, և օգնական եղեր նոցա ի դարս իւրաքանչիւր՝ որ յուսացան ի քեզ։



շտապեց հարսանեկան ուրախությունն անել։ Այդ ժամանակ շուտափույթ դեսպաններ ու պատվիրակներ ուղարկեց բոլոր երկրները, որ ամենքը օժիտներ ու ընծաներ բերեին մեծ հարսանիքին և բազում ուրախությամբ ամենքը առհասարակ գային արքայական փեսայի կարգը կատարելու ըստ թագավորական օրենքների։

141 Երբ առաքինի [կույսերը] տեսան թշնամու գաղտնաձիգ նետերը, որով սովոր էր քրիստոսասեր սրբերին ծածուկ հարվածել, [հասկացան որ] թագավորը չարի գործիք է դարձել։ Ինչպես այնտեղ դրախտում օձին միջոց դարձնելով, պատվիրանը մոռացնել տալու համար, [սատանան] մտավ առաջին կնոջ անզգամ ականջը, նույնպես և այստեղ անօրեն թագավորին դիմակ դարձնելով՝ նրա միջոցով մարտնչում էր աստվածաշեն եկեղեցիների դեմ։

142 Իսկ որոգայթադիր թշնամին թագավորին հպարտացնելով, ամբարտավանացնելով, գրգռում էր նրան հալածանք հարուցելու Աստծու եկեղեցիների դեմ, խելացնորեցնելով նրան, ստիպելով երկրպագել մեռելոտի ուրվականներին, սնոտի աստվածների ոսկեղեն ու արծաթեղեն, փայտեղեն ու քարեղեն և պղնձակերտ արձաններին ու պիղծ պաշտամունք կատարել։ Ամբարտավանորեն բարձրանում էր՝ եկեղեցու հավատքի հաստատուն վեմը հարվածելու, [սակայն] վեմին ոչինչ չկարողանալով անել, ինքը վեմի վրա խորտակվեց։ Այնուհետև մոլեգին ամբարտավանությանն ապավինելով բազում և անչափ վնասներ էր հասցնում Աստծու եկեղեցիներին։

143 Բայց երանելի, պարկեշտասեր Գայանեն սրբանյալ Հռիփսիմեի և իրենց այլ ընկերների հետ, հիշելով սուրբ ուխտը, իրենց ընտրած օրինավոր կրոնի զգաստության սրբությունը, ողբում էին իրենց անձերը նկարացույց հրամանի պատճառով, քանի որ պիղծ և անօրեն թագավորը տեսնելու էր իրենց պատկերները։ Ճգնությամբ աղոթք մատուցեցին՝ օգնություն խնդրելով բազումողորմ Տիրոջից փրկելու այն փորձությունից, որ հասել էր իրենց։ Եվ աղաչանքի մեջ այսպես էին ասում նրանք.

144 «Տեր տերանց, Աստված աստվածոց, հավիտենական Աստված, Աստված երկնքի, Աստված անճառ լույսի, որ ամեն ինչը հաստատեցիր քո խոսքերով, ստեղծեցիր երկինքն ու երկիրը և նրանց բոլոր զարդերը, մարդը կերտեցիր երկրի հողից ու իմաստուն դարձրիր, բազմացրիր նրան երկրի վրա և բոլոր դարերում օգնական եղար նրանց, որ քեզ հուսացին։

145 «Արդ՝ օգնեա՛ և մեզ, Տէր, ի պատերազմիս որ նեղէս զմեզ, զի յաղթեսցուք որոգայթից նենգութեանց սատանայի, և անուն քո, Տէր, փառաւոր լիցի, և եղջիւր եկեղեցւոյ քոյ բարձրացեալ լիցի. զի և մեք արժանի լիցուք հասանել յօթեւանս արքայութեան պատուիրանապահաց քոց։ Եւ մի՛ լիցի պակասութիւն ձիթոյ ի լապտերաց մերոց. և մի՛ շիջցին ճրագունք հաւատոց ուխտի սրբութեան մերոյ. և մի՛ հասցէ տխրական մթացուցիչն գիշերոյ կորստեան ի վերայ լուսաւոր ճանապարհաց մերոց. և մի՛ գայթակղեսցին ոտք մեր ի լուսագնաց շաւղաց քոց. և մի՛ կուրասցին բիբք տեսանելեաց մերոց ի զուարթարար ճառագայթից ճշմարտութեան քոյ. և մի՛ յափշտակեսցէ թռչունն մահացան զսերմանիսն բուսոյն կենաց, զոր սերմանեաց ի մեզ միածին Որդին քո, տէր մեր Յիսուս Քրիստոս. և մի՛ տարցի զզգաստութիւն սուրբ հօտի քոյ գազանն ապստամբ. և մի՛ յաղթահարեսցէ զգառինս հօտի քոյ գայլն ապականիչ. և մի՛ վարատեսցէ թշնամին ուխտիս մերոյ զոչխարս առաքելական եկեղեցւոյ քոյ սրբոյ։

146 «Տէր Աստուած մեր, որ առաքեցեր զմիածին Որդին քո, որ եկն և ելից զամենայն տիեզերս Հոգւով իմաստութեամբ քով, զի զամենեսեան յԻսրայէլ անուն աստուածատեսս գրեսցէ։ Եւ մեք լուաք զի ասաց, «Թէպէտ և հալածեսցեն զձեզ քաղաքէ ի քաղաք՝ ոչ կարասջիք սպառել զքաղաքս Իսրայէլի, մինչև ի դարձ գալստեան իմոյ այսրէն»։

147 «Արդ խնայեա՛, Տէր, յանձինս մեր, որ ապաւինեցաք յանուն քո սուրբ, զի մի՛ խառնակեսցուք ընդ անարգութիւն պղծութեան հեթանոսաց. և մի՛ տար զզգաստութիւն սրբութեան մերոյ բողանոց անօրէն շանազգեաց լկտութեան նոցա, և մի՛ զկուսութեան մարգարիտ հաւատոց մերոց՝ ի շաւիղս խոզագնաց ամբարշտութեան նոցա։ Եւ մի՛ շարժեսցէ ուղխ անյագ ջուրց բազմութեանց մոլորահողմն խաբէութեան զրահեղեղն սասանութեան զհիմունս սուրբ եկեղեցւոյ քոյ, որ բազմապատիկ վիմօքն արդարովք շինեցաւ ի վերայ վիմին հաստատնոյ, որոյ գլուխ անկեանն կատարման եղև Տէր մեր Յիսուս Քրիստոս ի ձեռն մարմնանալոյն, մահուամբ խաչին, հեղմամբ արեանն, յարութեամբն և յերկինս վերանալոյն, նստելովն յաջմէ աստուածութեան քոյ, ուր էրն յառաջ։

148 «Արդ նայեա՛ց, Տէր, յերկնից ի սրբութենէ քումմէ, զի մի՛ լիցուք մեք իբրև զայն տունն, որ ի վերայ աւազոյն շինեալ էր, զոր դրդուեցին խռովութիւնք նեղութեանց պէսպէս փորձութեանց. այլ հաստատեա՛ զմեզ ճշմարտութեամբ Աւետարանին խաղաղութեան,



145 Արդ՝ մեզ ևս օգնիր, Տեր, այն պատերազմի մեջ, որով դու նեղում ես մեզ, որպեսզի հաղթենք սատանայի նենգությունների որոգայթներին և թող փառավոր լինի քո անունը, Տեր, և քո եկեղեցու զորությունը բարձրանա, որ մենք ևս արժանի լինենք քո պատվիրանապահների արքայության օթևանները հասնելու։ Թող մեր լապտերների մեջ ձեթի պակասություն չլինի և մեր սուրբ ուխտի հավատքի ճրագները չհանգչեն։ Մեր լուսավոր ճանապարհների վրա թող չհասնի կորստյան գիշերվա տխուր մթացուցիչը, մեր ոտքերը չշեղվեն քո լուսագնաց շավիղներից և մեր աչքերի բիբերը չկուրանան քո ճշմարտության զվարթարար ճառագայթներից։ Թող մահատարած թռչունը չհափշտակի կենաց բույսի սերմերը, որ մեր մեջ սերմանել է քո միածին Որդին, տեր մեր Հիսուս Քրիստոսը, ապստամբ գազանը չխլի քո սուրբ հոտի զգաստությունը, ապականիչ գայլը չհաղթի քո հոտի գառներին, և թող մեր ուխտի թշնամին չցրի քո առաքելության սուրբ եկեղեցու ոչխարներին։

146 Տեր Աստված մեր, որ առաքեցիր քո միածին Որդուն, որ եկավ և ամբողջ աշխարհը լցրեց քո իմաստուն Հոգով, որպեսզի ամենքին Իսրայելում աստվածատես դարձնի։ Մենք լսեցինք, որ նա ասել է. «Թեպետ հալածեն ձեզ քաղաքից քաղաք, դուք փախչելով չեք սպառի Իսրայելի քաղաքները մինչև իմ վերստին գալուստը»։

147 Արդ՝ խնայիր, Տեր, մեր անձերին, որ ապավինեցինք քո սուրբ անվանը, որպեսզի չխայտառակվենք հեթանոսների պղծության անարգանքով և մեր սուրբ զգաստությունը մի հանձնիր նրանց վավաշոտ, անօրեն ու շնաբարո լկտիությանը և մեր հավատքի կուսության մարգարիտը նրանց անբարշտության խոզագնաց շավիղներին մի տուր։ Թող մոլորահողմ խաբեության և պղտոր ու վարար ջրերի անհագ հորձանուտը չշարժի քո սուրբ եկեղեցու հիմքերը, որոնք բազմապատիկ արդար վիմերով շինվել են այն հաստատուն քարի վրա, որի ավարտման անկյան գլուխը եղավ մեր Տեր Հիսուս Քրիստոսը իր մարմնանալով, խաչի վրա մահվամբ, արյունը թափելով, հարությամբ և երկինք վերանալով ու նստելով քո աստվածության աջ կողմը, ուր կար առաջ։

148 Արդ՝ Տեր, նայիր երկնքից՝ քո սրբությունից, որպեսզի չլինենք ավազի վրա շինված այն տան նման, որը խարխլեցին պես-պես փորձությունների նեղիչ խռովությունները, այլ հաստատիր մեզ խաղաղության Ավետարանի ճշմարտությամբ և առաջնորդիր մեզ ըստ քո կամքի։ Արժանի արա լույսի հարսանիքի գի-

և առաջնորդեա՛ մեզ ըստ կամաց քոց, և արժանիս արա զմեզ գիշերոյն լուսոյ հարսանեաց. յորում զգիշերն իբրև զտիւ լուսաւոր առնիցես ի ծագել ճառագայթից յերեսաց փառաց քոց, և ապրեցո՛ զմեզ ի ներքոյ թևոց քոց, և մեք հասցուք ի նաւահանգիստ կամաց քոց։ Եւ տո՛ւր մեզ, զի արբցուք զբաժակ նահատակութեան, զի առցուք զփոխարէն պսակն յաւուր արդար դատաստանին ի յայտնութեան փառաց քոց»։

149 Եւ յետ այսորիկ սուրբն Գայիանէ սանականաւն Հռիփսիմեաւ և պարկեշտաժողով ընկերօքն հանդերձ՝ դէմ եդեալ տարադէմ գնացեալ փախստեայ լինէին, զի զանձինս իւրեանց սրբութեամբ պահեսցեն յայսմիկ հողաթաւալ, մեղսաթաթաւ, մեղանչական, անօրէն ի դիւական խառնից մարդկան. զի առաւելութեան յուսոյն կենդանութեան և լուսոյն յարութեան արժանի լինիցին հասանել, ընդ առաքելական սահմանօքն ապրեալ յանվախճան ի հանդերձեալ դատաստանաց անտի, և յաջակողմն գահուն մտեալ՝ խոստացելոց բարեացն հասանել, անթառամ պսակօքն զարդարեալ՝ ընդ հնգեկան կամարարսն կուսանաց, գործովքն բարութեան լուսաւորեալք ի հանգիստ նորոգական վայելչութեան դրախտին, ընդ աստուածական փեսային ի բազմաժողովս արդարոցն, ի բազմականս Աբրահամու անպակաս ուրախութեանցն լինել ժառանգորդ։ Որպէս և Տէրն յԱւետարանի անդ ասաց, եթէ «Որ թողցէ զբնակութիւն իւր վասն անուան իմոյ՝ ի միւսանգամ գալստեան իմում զկեանս յաւիտենականս ժառանգեցուցից նմա»։ Իբրև ոչ ի ժամանակեան մահուանէս փախուցեալք, այլ յանհնարին մոլեկան անօրէն ցանկութեանցն ճողոպրեալք։ Իբրև ոչ զի զմարմինս իւրեանց ի տանջանաց երկրակրաց ի զրպարտութենէս ապրեցուցեն, այլ զի զոգիսն իւրեանց սրբութեամբ առանց աղտեղութեան պահել մարթասցեն յանօրէն գիճութեան պղծութեան աղտեղութեան խառնից մարդկան անօրէն կրոնից. այլ զի զանձինս իւրեանց բանդից և կապանաց և պ՛ատժոց, մահու և անհնարին նեղութեանց վասն անուան Տեառն պատրաստեալ, զի արդարութեան պսակին արժանի լինիցին հասանել։ Վասն այսորիկ թողեալ զերկիր ծննդեան իւրեանց, զինչս և զստացուածս և զմերձաւոր զազգակիցս և զտոհմականս վասն աստուածական հրամանին, զանձինս իւրեանց հրեշտակական զուարթական կարգօք լուսաւորեալ վարուցն քաջութեամբք, զի զԱստուած տեսանել կարասցեն։

150 Յայնմ ժամանակի գային հասանէին յերկիրն Հայոց, յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, զոր և Նորաքաղաքն կո-



շերին, երբ գիշերը ցերեկվա նման լուսավոր կդարձնես քո փառքի ճառագայթների ծագման ժամանակ։ Ապրեցրու մեզ քո թևերի տակ, և մենք կհասնենք քո կամքի նավահանգիստը։ Տուր մեզ հնարավորություն նահատակության բաժակը խմելու, որպեսզի փոխարենը առնենք պսակը արդար դատաստանի օրը, երբ քո փառքը հայտնվի»։

149 Սրանից հետո սուրբ Գայանեն Հռիփսիմե սանով ու մյուս պարկեշտ ընկերներով հանդերձ գնացին, հեռացան՝ փախուստ տալով, որպեսզի իրենց անձերը սրբությամբ պահպանեն հողաթավալ, մեղսաթաթավ, մեղանչական, անօրեն ու դիվական մարդկանց խառնակությունից և արժանի լինեն հույսի կենդանության և լույսի հարության լիությանը հասնելու, առաքելական սահմաններով անվախճան ապրելու հանդերձյալ դատաստանի ժամանակ և գահի աջ կողմը մտնելով խոստացյալ բարիքներին հասնելու։ Անթառամ պսակներով զարդարված հինգ աստվածահաճո կույսերի հետ, բարի գործերով լուսավորված դրախտի նորոգ վայելչության հանգստությամբ աստվածային փեսայի հետ արդարների բազմաժողովին Աբրահամի սեղանակիցների անպակաս ուրախություններին լինել ժառանգորդ։ Ինչպես և Տերը Ավետարանի մեջ ասաց. «Ո՞վ իր բնակությունը թողնի իմ անվան համար, իմ մյուս անգամ գալստյան ժամանակ նրան հավիտենական կյանքի ժառանգորդ կդարձնեմ»։ Նրանք ոչ թե սոսկ ժամանակավոր մահվանից էին փախչում, այլ անտանելի կատաղի և անօրեն ցանկություններից էին ճողոպրում։ Ոչ թե [ուզում էին] սոսկ իրենց մարմինները երկրայինների տանջանքներից, զրպարտությունից ազատել, այլ իրենց հոգիները սրբությամբ, առանց աղտեղության պահել անօրեն կրոնի մարդկանց անառակ, պիղծ ու աղտեղի խառնակությունից։ Իրենց անձերը պատրաստել էին բանտի կապանքների ու պատիժների, մահվան և սաստիկ նեղությունների, Տիրոջ անվան համար սահմանված, որպեսզի արժանի լինեն արդարության պսակին հասնելու։ Այս պատճառով, ի սեր աստվածային հրամանի, թողել էին իրենց ծննդավայրը, ինչքն ու ունեցվածքը, մերձավոր ազգականներին ու տոհմակիցներին և իրենց անձերը հրեշտակային զվարթ կարգով լուսավորել էին առաքինի վարքով, որպեսզի կարողանան տեսնել Աստծուն։

150 Այն ժամանակ նրանք եկան-հասան Հայոց երկիրը, Այրարատ գավառը, Վաղարշապատ քաղաքը, որը նաև Նորաքաղաք է

չեն, ի Նիստս Թագաւորացն Հայոց։ Այնուհետև եկեալ մտանէին ի հնձանայարկս այգեստանւոյն, որ կան շինեալ ի հիւսիսոյ յարևելից կուսէ. և կերակրէին ընչիւք իւրեանց ի վաճառաց քաղաքին. և ոչ ինչ այլ ինչ գոյր թոշակ ընդ նոսա զոր ունէին, բայց մի ոմն ի նոցանէ ունէր արուեստ ապակագործութեան՝ առնել ուլունս ապակեղէնս, և տալ գինս ընդ կերակրոյ աւուրն պարենի ռոճկի։

151 ԺԴ. Յայնմ ժամանակի ոչ սակաւ ինչ խռովութիւն լինէր ի մէջ Յունաց աշխարհին. ի կողմանս կողմանս յուզախնդիրք ելանէին, դեսպանս արձակէին, թերևս ուրեք գտանել կարասցեն։ Յայնմ ժամանակի գայր հասանէր դեսպան առ Տրդատ արքայ Հայոց մեծաց, և յանդիման լինէր թագաւորին ի Վաղարշապատ քաղաքի։ Եւ իբրև մատոյց զհրովարտակն՝ առ ի ձեռանէ նորա խնդալով։ Եւ էր պատճէն հրովարտակին օրինակ զայս.

152 «Ինքնակալ կայսր Դիոկղետիանոս, առ սիրելի եղբայր աթոռակից մեր Տրդատ, ողջոյն։

153 «Գիտութիւն լիցի եղբայրութեանդ քում նիզակակցի մերում վասն չարեացս, որ անցանենն ընդ մեզ հանապազ ի մոլար աղանդէս քրիստոնէից. զի յամենայնի դարովեալ լինի տէրութիւնս մեր յուխտէ նոցա, և արհամարհեալ լինի արքայութիւնս մեր ի նոցանէ. և ինչ համեստութիւն ոչ գոյ ի նոսա։ Զի ինքեանք զմեռեալ ոմն զխաչեալ պաշտեն, և փայտի երկիր պագանեն, և զոսկերս սպանելոցն պաշտեն, որ զիւրեանց մահն, որ վասն Աստուծոյն իւրեանց է՝ փառս և պատիւս համարին։ Եւ ի մերոց արդար օրինացս դատապարտեալ լինին. վասն զի և զմեր զնախնիսն, զառաջին հարսն զթագաւորսն, դառնացուցեալս ձանձրացուցին. զի մեր սուրքս բթեցան, և նոքա ոչ զարհուրեցան ի մեռանելոյ։ Զի ինքեանք զհետ Հրէի ուրումն խաչելոյ մոլորեալ են, և զթագաւորս անպատուել ուսուցանեն, և գլխովին իսկ զպատկերս դիցն զաստուածոց անարգել ուսուցանեն։

154 «Նա և զլուսաւորացդ զօրութիւն, զարեգական և զլուսնի աստեղօքդ հանդերձ՝ առ ոչինչ համարին, նա և արարած առնեն այնր խաչելոյ։ Եւ գլխովին զպատկերս դիցն աստուածոցն անարգել ուսուցանեն. և զաշխարհս ամենայն փոխեցին ի պաշտամանէ դիցն. մինչև զի և զկանայս անգամ յարանց և զարս ի կանանց կենդանւոյն մեկնեալս հեռացուցանեն։ Թէպէտ և ազգի ազգի պատուհաս տանջանաց ի վերայ եդաք՝ առաւել ևս տոչորեալ յորդագոյնս տարածեցաւ աղանդ նոցա։ Թէպէտ և բիւրապատիկ ինչ արհաւիրս սաստից



կոչվում, Հայոց թագավորների նստավայրը։ Այնուհետև եկան-մըտան այգեստանների հնձանները, որոնք շինված էին հյուսիս-արևելյան կողմում։ Սնվում էին իրենց ունեցվածքը քաղաքում վաճառելով, չունեին իրենց հետ ապրուստի միջոցներ, միայն թե նրանցից մեկը գիտեր ապակեգործության արհեստը, ապակյա ուլունքներ էր պատրաստում և իրենց օրական ապրուստի ու պարենի դրամն էին ճարում։

151 ԺԴ. Այդ ժամանակ սակավ խռովություն չբարձրացավ Հունաց աշխարհում. ամեն կողմերում լարված որոնում էին, սուրհանդակներ ուղարկում, որ թերևս կարողանան նրանց գտնել։ Դեսպան եկավ Մեծ Հայքի Տրդատ արքայի մոտ և ներկայացավ նրան Վաղարշապատ քաղաքում։ Երբ հրովարտակը մատուցեց նրան, սա վերցրեց այն ուրախությամբ։ Հրովարտակի պատճենն այս էր։

152 «Ինքնակալ կայսր Դիոկղետիանոսը մեր սիրելի եղբայր և աթոռակից Տրդատին, ողջույն։

153 Թող ի գիտություն լինի քո եղբայրությանը և մեր նիզակակցին այն չարիքների մասին, որ ամեն օր հասնում են մեզ քրիստոնյաների խաբեբա աղանդից, քանզի ամեն բանում անարգվում է մեր տերությունը նրանց ուխտի կողմից, մեր թագավորությունը արհամարհվում է նրանցից և ոչ մի համեստություն չկա նրանց մեջ։ Մի ոմն խաչյալ մեռյալի են պաշտում, փայտին երկրպագում, սպանվածների ոսկորները հարգում և իրենց աստծու սիրուն մահը փառք ու պատիվ են համարում։ Մեր արդար օրենքներով դատապարտվում են, որովհետև մեր նախնիներին՝ առաջին թագավոր հայրերին, դառնացնելով ձանձրացրին։ Մեր սրերը բթացան, իսկ նրանք չզարհուրեցին մեռնելուց, քանզի մոլորված են՝ ոմն խաչյալ հրեայի հետևելով։ Ուսուցանում են թագավորներին անպատվել, իսկ բուն աստվածների կուռքերը՝ անարգել։

154 Նաև լուսավորների՝ արեգակի ու լուսնի զորությունը աստղերով հանդերձ արհամարհում են և համարում են նույնիսկ այդ խաչյալի ստեղծածը։ Աստվածների կուռքերը անարգել սովորեցրին և ամբողջ աշխարհը նրանց պաշտամունքից հեռացրին, մինչև անգամ կանանց տղամարդկանցից և տղամարդկանց կանանցից ողջ-ողջ հեռացնում են։ Թեպետև տեսակ-տեսակ տանջանքներ տվեցինք նրանց, առավել ևս բորբոքվեց ու տարածվեց նրանց աղանդը և թեպետ բյուրապատիկ սաստիկ արհավիրքների

արկաք ի վերայ նոցա՝ ի հեղումն արեան նոցա առաւել ևս բղխեաց յորդեաց աղանդ նոցա։

155 «Դէպ եղև տեսանել ինձ յաղանդոյ ուսման նոցա օրիորդ մի կոյս և գեղեցիկ, և կամեցայ առնուլ զնա ինձ կնութեան. սակայն և զայն իշխեցին խորամանգել յինէն։ Եւ ոչ իբրև ի թագաւոր ցանկութեամբ փափաքեցին յիս. և ոչ ի սաստից սպառնալեաց իմոց երկեան ինչ նոքա. այլ առաւել ևս վասն աղանդոյն իւրեանց՝ աղտեղի և պիղծ և գարշ համարեցան զիս, և սնուցիչ նորին դայեկաւն ի կողմանս ձերոյ տէրութեանդ փախուցեալս յուղարկեցին։

156 «Արդ՝ փոյթ լիցի քեզ, եղբայր մեր, զի ուր և իցեն զկողմամբքդ զայդոքիւք՝ զհետս նոցա գտանել մարթասցես. և որ ընդ նմայն իցեն դայեկաւն հանդերձ՝ վրիժուց մահու արժանի արասցես. և զհրապուրեալն զչքնաղագեղն ինձ ի սոյն այսրէն յուղարկեսցես. ապա թէ հաճոյ թուեսցի քեզ տեսիլ գեղոյ նորա՝ այդրէն առ քեզ պահեսցես, զի ոչ երբէք գտաւ նման նմա ի մէջ Յունաց աշխարհիս։ Ողջ լեր դիցն պաշտամամբ ամենայն պատուով»։

157 ԺԵ. Եւ եղև իբրև ընթերցան զթուղթն հրամանաց հրովարտակին այնորիկ՝ հրաման տայր թագաւորն մեծաւ սաստկութեամբ պատուիրանաւ, զի զամենայն տեղիս իշխանութեան իւրոյ քննայոյզ խուզիւ փութով խնդրեսցեն։ Վաղվաղակի դեսպանս արձակէր ընդ կողմանս կողմանս, զի ուր և գտցեն՝ ի մէջ ածցեն վաղվաղակի. և որ գտցէ զնոսա՝ մեծամեծ պարգևս հաստուցանել խոստանայր։

158 Մինչդեռ յայն յոյզ քննութեան էին յաշխարհին սահմանացն Հայոց՝ սուրբ վկայքն այնոքիկ եկեալ ղօղեալ էին յարքայական կայանին, ի նմին թագաւորականին ի Վաղարշապատ քաղաքի։ Եւ յետ սակաւ ինչ աւուրցն այնոցիկ վաղվաղակի ի մէջ եկեալ խուզիւք իրքն յայտնէին։

159 Այլ ոչ իսկ էր պարտ թագչել ճշմարտութեանն և վկայիցն առաքինութեան, և ոչ լուսոյ ճրագի ընդ գրուանաւ ծածկել, և ոչ ի ներքոյ ստուերաց կաթեղրացն աներևոյթ լինել. այլ ի վերայ աշտանակացն ոսկւոց զարդարելոց, և ոսկովք ճրագարանօք զիւղն պարարտութեան անուշութեան, զարդարութեան հաւատոցն՝ վառեալ զլոյսն համապայծառ. որպէս և ինքեանք իսկ յառաջին աղօթս իւրեանց աղաչէին. որպէս և Տէրն իսկ ասէր առ իւր սիրելիսն, թէ «Տեսցեն զգործ ձեր բարիս, և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս է»։



ենթարկեցինք նրանց, սակայն նրանց արյան հեղումից առավել ևս ծաղկեց ու բազմացավ նրանց աղանդը։

155 Պատահեց, որ տեսա նրանց ուսմունքի աղանդից մի գեղեցիկ կույս օրիորդի և կամեցա նրան կնության առնել, սակայն հանդգնեցին նրան ևս ինձանից խորամանկորեն հեռացնել։ Նրանք ոչ ցանկությամբ փափագեցին ինձ իբրև թագավորի, ոչ էլ իմ սաստիկ սպառնալիքներից որևէ վախ ունեցան, այլ իրենց աղանդի պատճառով ավելի ևս աղտեղի, պիղծ ու գարշելի համարեցին ինձ և սնուցիչ դայակի հետ նրան թաքուն ուղարկեցին ձեր տերության կողմերը։

156 Արդ՝ փութաջան եղիր, եղբայր մեր, որպեսզի ուր էլ լինեն այդ կողմերում, կարողանաս նրանց հետքը գտնել և նրա հետ եղածներին դայակով հանդերձ վրիժառությամբ մահվան արժանացնես, իսկ խաբված չքնաղագեղ կույսին այստեղ ինձ ուղարկես։ Իսկ եթե նրա գեղեցկությունը քեզ հաճո թվա, այդտեղ մոտդ կպահես, քանզի նրա նմանը երբեք չգտնվեց մեր Հունաց աշխարհում։ Ողջ եղիր աստվածների պաշտամունքով ամենայն պատվով»։

157 ԺԵ. Երբ ընթերցեցին սույն հրովարտակի թուղթը, արքան խիստ հրաման տվեց՝ պատվիրելով, որ իր իշխանության բոլոր վայրերը մանրակրկիտ խուզարկումով փութաջան որոնեն։ Շուտափույթ սուրհանդակներ ուղարկեց տարբեր կողմեր, որպեսզի ուր էլ գտնեն, անմիջապես մեջտեղ բերեն, իսկ ով որ գտնի նրանց, խոստանում էր մեծամեծ պարգևներով հատուցել։

158 Մինչդեռ Հայոց աշխարհի սահմաններում քննության իրարանցման մեջ էին, այն սուրբ վկաները եկան թաքնվեցին արքայական նստավայրի մոտ, նույն թագավորական Վաղարշապատ քաղաքում։ Այն օրերից քիչ անց շուտով որոնումներով մեջտեղ բերվելով հայտնի դարձան։

159 Սակայն ճշմարտությունը և առաքինության նահատակները երբեք չէին կարող թաքնված մնալ, և ոչ լույսի ճրագը [կարող է] ամանի տակ ծածկվել, ոչ էլ նստարանի ստվերի ներքո աներևույթ դառնալ, այլ ոսկով զարդարված աշտանակների վրա և պարարտ անուշահոտ յուղերով լի ոսկե կանթեղները, որպես արդարության հավատքի նշան, պետք է վառվեն և համապայծառ լույս [տան]։ Որպես և հենց իրենք իրենց առաջին աղոթքների մեջ աղաչում էին, ինչպես և Տերն էր ասել իր սիրելիներին, թե «Տեսնեն ձեր բարի գործերը և փառաբանեն ձեր Հորը, որ երկնքում է»։

160 Տեսանե՞ս զի վասն գործոց բարութեան ճշմարիտ Որդին Աստուծոյ ոչ գարշի տալ զիւր ժառանգութիւն իւրոց սիրելեացն ծառայիցն։ Որ ինքն բնութեամբ Որդի է՝ անվեհեր մատուցանէ զիւր պատուիրանապահսն յիւր բնութիւնն. բայց միայն թէ ոք իցէ, որ պահիցէ զբանս նորա՝ իբրև զմարգարիտ պատուական գտեալ խնդութեամբ, գնեալ և զգուշացեալ լինի նմա՝ առեալ զնշան պատուին, զպսակն թագաւորութեան և յարքայականն մատուցանի։ Որպէս պատուականութիւն լուսոյս այսորիկ երևեալ առաջի հեթանոսաց Հայաստան աշխարհիս ակամայ, իսկ փառաւորութիւնն առ աստուածութիւնն հնչիւք լցին զտիեզերս։

161 Արդ՝ գտեալ լինէին նոքա ի հնձանս շինուածոցն։ Քանզի իբրև եկին հասին հրամանք հրովարտակացն ի մեծ թագաւորէն Յունաց առ Տրդատ արքայն Հայոց Մեծաց՝ ոչ սակաւ ինչ խռովութիւն եղև ի մէջ աշխարհին Հայոց. զի պահէին զամենայն անցս ճանապարհաց պողոտայիցն և զամենայն գաւառացն. ի կողմանս կողմանս յուզախնդիրք ելեալ քննէին։ Իսկ ուրումն տեսեալ՝ պատմեաց զնոցանէ։

162 Իսկ իբրև իրքն հռչակեցան զնոցանէն՝ ապա աւուրս երկուս ապարափակ արարեալ՝ տուեալ պահել զնոսա անդէն ուր գտինն լեգէոն հետևակ զօրուն. ապա յետ երկուց աւուրցն համբաւն հռչակեալ պարկեշտութեան զանազան գեղեցկութեանն Հռիփսիմեայ ի մէջ բազմամբոխ հրապարակացն լինէր. ամենայն այր առ այր և մարդ առ մարդ զարմացումն յաճախէր։

163 Իսկ ի տես գեղոյ նորա կուտեալ յեղեալ զեղեալ խուռն կաճառացն կուտակէր. նա և նախարարք և մեծամեծք աւագանւոյն ընթացեալք ի տեսանել՝ զմիմեամբք ելանէին։ Նա և ապստակոյտն, խառնաճաղանճ ամբոխին հանդերձ, զիմիեամբք դիզանէին ի միմեանց վերայ, առ պակշոտ յիմարութեան ցոփութեան բարոյիցն, այլանդակ մտացն զեղխութեան գիճութեանն հեթանոսաբար սովորութեանցն։

164 Իսկ երանելիքն իբրև գիտացին զանմիտ և զշղուաբարոյ մարդկանն զյոռութիւն, կականաբարձ արտասուալից, զձեռս լի աղօթիւք յերկինս համբառնային, խնդրել զփրկութիւն յամենազօր յամենակալ Տեառնէն, որ յառաջին նուագին ապրեցոյց զնոսա յանօրէն պղծութենէն չարութեան ղազրութեան հեթանոսացն. զի նոյն տացէ նոցա զմարտին յաղթութիւն, զհաւատոցն լուսաւորու-



160 Տեսնո՞ւմ ես, թե ինչպես բարի գործերի դիմաց Աստծու ճշմարիտ որդին չի խորշում իր ժառանգությունը տալ սիրելի ծառաներին։ Ինքը, որ էությամբ Որդի է, անվեհեր մոտեցնում է պատվիրանապահներին իր էությանը, միայն թե մարդ այնպիսին լինի, որ նրա խոսքերը պահի, որպես թե խնդությամբ թանկագին մարգարիտ գտած լինի, գնի ու զուրգուրանքով պահի այն և առնելով պատվի նշանը, թագավորական պսակը՝ արքայականին մերձենա։ Ահա որպես այս լույսի պատվականություն երևաց մեր Հայաստան աշխարհի հեթանոսների առջև՝ ակամա, իսկ աստվածության ուղղված փառաբանության հնչյունները լցրին տիեզերքը։

161 Արդ՝ նրանք գտնվում էին շենքերի հնձաններում, և երբ հունաց մեծ թագավորի հրովարտակը հասավ Մեծ Հայքի արքա Տրդատին, պակաս խռովություն չեղավ Հայոց աշխարհում, քանզի պահպանում էին պողոտաների և բոլոր գավառների ամեն անցքերը տարբեր կողմեր ելնելով իրարանցման մեջ փնտրում էին։ Իսկ մեկը, տեսնելով, պատմեց նրանց մասին։

162 Երբ նրանց մասին իրողությունը հայտնի դարձավ, ապա երկու օր վահանափակ շրջապատեցին նրանց՝ հետևակ զորքի մի լեգեոնի հանձնարարելով պահել նրանց այնտեղ, ուր գտնվում էին։ Ապա երկու օր անց* Հռիփսիմեի պարկեշտության ու չքնաղ գեղեցկության համբավը հռչակվելով բազմամբոխ հրապարակներում տարածվեց, և ամեն մարդ մյուսին իր զարմանքն էր հայտնում։

163 Իսկ նրա գեղեցկությունը տեսնելու համար խուռներամ բազմությունը կուտակված-դիզված հավաքվեց, նաև նախարարներն ու ավագանու մեծամեծները նրան տեսության գալով՝ իրար վրա էին թափվում։ Ազնվական մարդիկ խառնիճաղանջ ամբոխի հետ մեկտեղ դիզվում էին միմյանց վրա իրենց վավաշոտ, հիմար, ցոփ բարքերի, այլանդակ մտքերի, զեխ, անառակ հեթանոսական սովորությունների պատճառով։

164 Իսկ երանելիները, երբ իմացան անմիտ ու վայրենաբարո մարդկանց անպետքությունը, ողբաձայն արտասուքով, ձեռքները աղոթքով լի երկինք բարձրացրին՝ փրկություն խնդրելու ամենազոր, ամենակալ Տիրոջից, որն առաջին անգամին փրկեց նրանց չար, զազրելի հեթանոսների անօրեն պղծությունից, որպեսզի այս մարտում նույնպես նրանց հաղթություն տա և հավատքի լուսավորություն։ Երեսները ծածկելով ընկել էին գետնին և պառկել՝ ա-



7—1461

թիւն. և զերեսս իւրեանց պատեալ՝ անկեալ դնէին յերկիր, յամօթոյ լկտեացն տեսողաց, որ ժողովեալն էին ի տեսանել։

165 Եւ ապա յետ այսորիկ զարմացուցեալ զթագաւորն բազում տեսողացն, որ մտերիմքն էին որ եկեալն էին ի տեսիլ գեղոյ նորա, և պատմեալ առաջի թագաւորին։ Իսկ ի միւսում աւուրն ընդ այգն ընդ առաւօտն, և ևս վաղագոյն, հրաման ելեալ ի թագաւորէ անտի, զի զերանելին Հռիփսիմէ տանել յարքունիս, և զսուրբն Գայիանէ անդէն պահել պարկեշտաժողով ընկերօքն հանդերձ։

166 Եւ անդէն յարքունուստ վաղվաղակի ոսկիապատ գահաւորակս սպասաւորօք հանդերձ հասուցանէին առ դուրս հնձանին, ուր էին վանք նոցա արտաքոյ քաղաքին։ Նա և հանդերձս ազնիւս գեղեցիկս փափուկս պայծառս, և զարդարանս երևելիս մատուցանէին նմա յարքունուստ, զի զարդարեսցի, և շքով և պատուով մտցէ ի քաղաքն և յանդիման լիցի թագաւորին. քանզի չև էր տեսեալ զնա՝ խորհեցաւ կին առնել զնա, վասն այնորիկ որ պատմեցինն զնմանէ վասն վայելչութեան գեղոյ նորա։

167 Արդ՝ իբրև ետես սուրբն Գայիանէ՝ խօսել սկսաւ առ սանն իւր և ասէ այսպէս. «Յիշեա՛, որդեակ իմ, զի թողեր լքեր զմեծապատիւ շքեղաշուք ոսկիակուռ զաթոռն քո հայրենի, զծիրանեաց թագաւորութեանն, և ցանկացար անանց ճառագայթարձակ լուսոյ թագաւորութեանն Քրիստոսի, որ է արարիչ և կեցուցիչ և նորոգիչ, և խոստացեալ պահէ զանպատում բարիսն իւրոցն յուսացելոց։ Եւ դու, որդեակ, անարգեցեր զանցաւորս քոյոյ բնութեանն զծիրանիսն. արդ՝ զիա՞րդ արդեօք տացես դու զզգաստութիւն սրբութեանդ քոյ կերակուր շանց յայամիկ ի բարբարոս յաշխարհի։ Քա՛ւ քեզ, որդեակ, եթէ լինիցի այդ այդպէս. այլ ընկալցի զմեզ քև հանդերձ այն՝ որ առաջնորդեաց մեզ ի մանկութենէ մերմէ մինչև յօրս յայս և ի ժամս յայս, յորում այժմիկ հասեալ կամք»։

168 Արդ՝ իբրև ետես սուրբն Հռիփսիմէ զայն ամենայն ամբոխս շարաց, և զոր լուաւն ի դայեկէն իւրմէ՝ վառեցաւ իբրև զինու Հոգւոյն զօրութեամբ Տեառն իւրոյ. զի զգեցեալ էր զհաւատս մանկութեան տիոցն իբրև սպառազէն զրահիւք. ճչեաց մեծաձայն ուժով և տարածեաց զբազուկս իւր ի նմանութիւն խաչին, և սկսաւ ասել մեծաձայն այսպէս.

169 «Տէր Աստուած ամենակալ, որ հաստատեցեր զարարածս քո ի ձեռն Որդւոյ քոյ միածնի և սիրելւոյ, և կազմեցեր յօրինուածս երևելի և աներևոյթ արարածոց ի ձեռն Հոգւոյդ սրբոյ. դու ես որ



մաշելով լկտի ականատեսներից, որոնք հավաքվել էին դիտելու իրենց։

165 Ապա դրանից հետո թագավորին զարմացրին բազում մտերիմ ականատեսները, որոնք եկել էին Նրա գեղեցկությունը տեսնելու և պատմելու թագավորին։ Մյուս օրը առավոտյան այգաբացին և նույնիսկ ավելի վաղ հրաման եկավ թագավորից, որ երանելի Հռիփսիմեին արքունիք տանեն, իսկ սուրբ Գայանեին այնտեղ պահեն՝ պարկեշտ ընկերներով հանդերձ։

166 Իսկույն արքունիքից շուտափույթ ոսկեպատ գահավորակներ հասցրին, սպասավորներով հանդերձ, հնձանի դուռը, քաղաքից դուրս, ուր նրանց կացարանն (վանքն) էր։ Նաև ազնիվ, գեղեցիկ, փափուկ ու պայծառ հանդերձներ և երևելի զարդարանքներ մատուցեցին նրան արքունիքից, որպեսզի զարդարվի և շուքով ու պատվով քաղաք մտնի ու ներկայանա թագավորին, քանզի [սա] թեև չէր տեսել նրան, սակայն ըստ այն բոլորի, որ պատմել էին Նրա վայելուչ գեղեցկության մասին, մտածեց կնության առնել։

167 Արդ՝ սուրբ Գայանեն երբ տեսավ, սկսեց խոսել իր սանի հետ և այսպես ասաց. «Հիշիր, որդյակ իմ, որ թողեցիր, լքեցիր քո հայրենի մեծապատիվ, շքեղաշուք, ոսկեկուռ գահը, թագավորական ծիրանիները և ձգտեցիր Քրիստոսի թագավորության անանց ճառագայթարձակ լույսին, որն արարիչ է, կեցուցիչ ու վերակենդանացնող և իրեն հուսացածներին խոստացած անպատում բարիքները պահում է։ Եվ դու, որդյակ, որ անարգեցիր քո անցավոր կյանքի ծիրանին, արդ, ինչպե՞ս արդյոք քո զգաստության սրբությունը կերակուր կտաս շներին՝ այս բարբարոս երկրում։ Քավ լիցի, որդյակ, եթե այդ այդպես լինի, այլ թող ընդունի մեզ՝ քեզնով հանդերձ, նա, որ մեզ մեր մանկությունից առաջնորդել է մինչև այս օրն ու այս ժամը, որին այժմ հասել ենք»։

168 Սուրբ Հռիփսիմեն երբ տեսավ չարերի այս ամբողջ ամբոխը և ինչ որ լսեց իր դայակից, զինավառվեց հոգու զենքով, իր տիրոջ զորությամբ, քանզի մանուկ հասակից զգեստավորվել էր հավատքով՝ որպես սպառազեն զրահներով։ Մեծաձայն ուժով ճչաց և, խաչի նման տարածելով իր բազուկները՝ սկսեց այսպես ասել բարձրաձայն.

169 «Տեր Աստված ամենակալ, որ ստեղծեցիր քո արարածներին սիրելի ու միածին Որդու ձեռքով և երևելի ու աներևույթ արարածների հորինվածքներ կազմեցիր սուրբ Հոգու միջոցով։ Դու

յոչնչէ զամենայն չէութիւն յօրինեցեր, և քոյով հրամանաւ վարին ամենայն զօրութիւնք երևելիք և աներևոյթք, որ են յերկինս և յերկրի, ի ծովու և ի ցամաքի։ Քանզի դու ես, տէր, որ ետուր յողող ջուրց զանօրէն պղծալից մարդիկ ութերորդ դարուն, և փրկեցեր զսիրելին քո զՆոյ, որ պահեաց զհրաման բանի քոյ, և ապրեցուցեր խաչանման փայտիւն ի ջուրցն հեղեղէ։ Որ յայնժամ օրինակաւ խաչին արարեր զփրկութիւն՝ և այժմ արա՛ ճշմարտութեամբ խաչիդ քոյ, յոր ելեր և հեղեր զարիւն քո ի բժշկութիւն ցաւոց մերոց։

170 «Որ պահեցեր զԱբրահամ ի մէջ ամբարիշտ ազգացն Քանանացւոց. որ յամօթոյ նախատանաց պղծութենէ մահու ապրեցուցեր զաղախին քո զՍառա. որ գթացար յԻսահակ ծառայ քո, և պահեցեր զաղախին քո զԸրեփիկա յանօրէն Փղշտացւոց անտի, մի՛ թողուր զմեզ ի ձեռաց վասն սրբոյ անուանդ քոյ. որ ուսուցեր, վարդապետեցեր և ետուր զբանս քո ի բերան մեր, զի այնու ապրել մարթասցուք յորոգայթից թշնամւոյն, և ասես. «Անուն իմ ի վերայ ձեր կոչեցեալ է», և «Դուք տաճար էք աստուածութեան իմոյ». և ասես, եթէ «Զանուն իմ սուրբ առնիջիք ի սիրտս ձեր». և եդեր բանս ի մտի՝ խնդրել ի քէն և ասել, «Սուրբ եղիցի անուն քո» ի վերայ մեր՝ զոր խնդրեմք ի քէն. և ահա ժողովեալք չարք բազումք պղծել զանուն սուրբ քո որ ի վերայ մեր է, և զտաճար անուանդ քոյ. զի թէպէտ և մեք տկար և անարժան եմք՝ սակայն դու, տէր, պահեա՛ զանձինս մեր յանարժան խայտառականաց։

171 «Մարդասէր և քաղցր, որ արկեր զմեզ յայս փորձութիւն, տո՛ւր մեզ յաղթել քոյով զօրութեամբդ, զի քո է յաղթութիւն, և յաղթեսցէ քո անունդ՝ պահել զմեզ յուսով զգաստութեամբ. զի այսու մտցուք ի թիւ վիճակաց արդարոց քոց. զի և առցուք զվարձս վաստակոց, զոր տացես այնոցիկ, և հատուցես իւրաքանչիւր այնոցիկ, որ կացեալ իցեն յահի քում և պահեալ իցեն զհրամանս քո։

172 «Որ ապրեցուցեր զՆոյ ի ջուրցն հեղեղէ՝ ապրեցո՛ և զմեզ յանօրէնութեանցս հեղեղէ որ շուրջ պատեալ է զմեօք։ Զի եթէ զգազանս զանասունս ապրեցուցեր ի տապանին, ո՞րչափ ևս խնայեսցես ի քո պատկերս, որ զքեզ փառաւորեմք։ Իսկ եթէ ի սողունս և ի թռչունս խնայեցեր, ո՞րչափ ևս խնայեսցես ի մեզ, զոր անուանեցեր տաճար կամաց քոց»։



ես, որ ոչնչից ամեն ինչին էություն տվեցիր և քո հրամանով են վարվում երևելի և աներևույթ բոլոր զորությունները երկնքում ու երկրի վրա, ծովի մեջ ու ցամաքում։ Քանզի դու ես, Տեր, որ ջրով հեղեղեցիր ութերորդ դարաշրջանի* անօրեն պղծալից մարդկանց և փրկեցիր քո սիրելի Նոյին, որ քո հրաման խոսքը պահեց, և խաչանման փայտով փրկեցիր ջրհեղեղից։ Եթե այնժամ խաչի օրինակով փրկություն տվեցիր, ապա այժմ էլ արա նույնը ճշմարտությամբ քո խաչի, որի վրա բարձրացար և թափեցիր քո արյունը ի բժշկություն մեր ցավերի։

170 [Դու] որ պահպանեցիր Աբրահամին քանանացիների ամբարիշտ ազգերի մեջ, փրկեցիր քո աղախին Սառային մահվան պղծության նախատինքի ամոթից, գթացիր քո Իսահակ ծառային և պահպանեցիր քո աղախին Ռեբեկկային (Ըրեփիկա) անօրեն փղշտացիներից, հանուն քո սուրբ անվան մեզ ևս մի լքիր։ Սովորեցրիր մեզ, վարդապետեցիր և քո խոսքը դրեցիր մեր բերանները, որպեսզի դրանով կարողանանք փրկվել թշնամու որոգայթից, և ասացիր. «Իմ անունը ձեզ վրա է կոչված» և «Դուք տաճար եք իմ աստվածության» և կամ թե «Իմ անունը սուրբ պահեցեք ձեր սրտերում» և դրիր քո խոսքը մեր մտքում խնդրելու քեզանից և ասելու. «Սուրբ լինի քո անունը» մեզ վրա, որ խնդրում ենք քեզանից։ Եվ ահա բազում չարագործներ հավաքված են պղծելու քո սուրբ անունը, որ մեզ վրա է և քո անվան տաճարը։ Զի թեպետ և մենք տկար ու անարժան ենք, սակայն դու, Տեր, պահիր մեր անձերը անվայել խայտառակությունից։

171 Մարդասեր և քաղցր, որ մեզ նետեցիր այս փորձության մեջ, քո զորությամբ օգնիր մեզ հաղթելու, քանզի քոնն է հաղթությունը և քո անունը կհաղթի մեզ պահելով զգաստության հույսով։ Սրանով մենք կմտնենք քո արդարների խմբերի թվի մեջ և կառնենք վաստակների վարձը, որ տալու ես և հատուցելու յուրաքանչյուրին, որը քո երկյուղի մեջ է մնում և պահպանում քո հրամանները։

172 Դու, որ փրկեցիր Նոյին ջրհեղեղից, փրկիր և մեզ շրջապատող անօրինության հեղեղից, քանզի եթե գազաններին ու անասուններին ապրեցրիր տապանում, առավել ևս կխնայես քո պատկերը [կրողներին], որոնք քեզ են փառավորում և եթե սողուններին ու թռչուններին խնայեցիր, որչափ ևս կխնայես մեզ, որ անվանեցիր քո կամքի տաճարը»։

*173 ԺԶ. Արդ՝ իբրև այս այսպէս եղև՝ ժողով ամբոխին ի վերայ կուտէր բազմութիւն մարդկան, և էին բազում սպասաւորք արքունի, որ եկեալ էին զնմանէն՝ տանել յարքունիս, և նախարարքն և մեծամեծք աւագանւոյն, որ եկեալ էին շքադիրք՝ պատիւ առնել նմա և երթալ ընդ նմա յարքունիս. զի տարցին զնա կնութեան թագաւորին Տրդատայ և Հայոց տիկնութեան։*

*174 Իսկ նոքա արտասուագոչ ողորմ ողորմ զձեռս համբարձեալ յերկինս՝ խնդրէին ի կամարար Տեառնէն՝ ապրեցուցանել զնոսա յանօրէն յանարժան հարսանեացն պղծութենէն։ Զգոչիւն բարձեալ լալով մեծաձայն ճչէին և ասէին. «Քա՛ւ լիցի մեզ, թէ պատրեսցեն զմեզ մեծութիւնք, կամ խաղսեսցեն զմեզ փափկութիւնք, կամ հրապուրեսցեն զմեզ թագաւորութիւնք, կամ նեղեսցեն զմեզ հալածանք, կամ վտանգեսցեն զմեզ տանջանք հարուածոց, թէպէտ և բիւր ազգի ազգի տանջիցէք զմեզ. կամ երկիցո՞ւք մեք արդեօք յահագին մահուանէն, զոր ածելոց էք դուք ի վերայ մեր։ Քա՛ւ լիցի մեզ, թէ փոխանակեսցուք զանցաւոր կեանս ընդ յաւիտենական կենացն որ ոչն անցանէ. քա՛ւ լիցի մեզ, թէ ուրասցուք զէն Աստուած զամենահաստիչն, որոյ տէրութիւնն յէութենէ հաստատեալ՝ անփոփոխ են բարիքն ամենայն և ոչ անցանեն։ Այլ ո՛չ խորութիւնք և ոչ բարձրութիւնք, ո՛չ վիշտք և ոչ չարչարանք, ո՛չ կապանք և ոչ տանջանք, ո՛չ հուր, ո՛չ ջուր և ոչ սուր, ո՛չ զրօսանք և ոչ պատրանք, ո՛չ մեծութիւնք և ոչ աղքատութիւնք, ո՛չ այն աշխարհ և ոչ այս աշխարհս, ո՛չ կեանք և ոչ մահ՝ ոչ ոք կարէ մեկնել զմեզ ի սիրոյն Քրիստոսի։ Զի նմա նուիրեցաք զկուսութիւնս մեր, զի նմա աւանդեցաք զսրբութիւնս մեր, զի նմա մնամք և սիրոյ նորա ցանկացեալ սպասեմք, մինչև կացցուք առաջի փառաց գովութեան նորա առանց ամօթոյ և պատկառանաց»։*

*175 Եւ արդ՝ եղեւ որոտումն յերկնից սաստիկ անհնարին, զի ահաբեկեալ զամենայն ամբոխն, և ձայն՝ զի ասէր առ նոսա, թէ «Զօրացարո՛ւք, պինդ կացէք, քաջալերեցարո՛ւք, զի ես ընդ ձեզ եմ, և պահեցի զձեզ յամենայն ճանապարհս ձեր, և ածի զձեզ պահեալս անարատութեամբ, և հասուցի զձեզ մինչև ի տեղիս յայս, զի և աստ փառաւորեսցի անուն իմ առաջի հեթանոսաց կողմանց հիւսիսականաց։ Մանաւանդ դու,* Հռիփսիմէ, *ըստ անուանդ քում արդարև ըն***կեցեալ** *եղեր Գայիանեաւդ և քոյովք սիրելեօքդ ի մահուանէ ի կեանս. և մի՛ երկնչիք, այլ եկեսջիք ի տեղի յայն՝ զոր ես և հայր իմ*



*173 ԺԶ. Արդ՝ երբ այս բոլորը եղավ, ամբոխի բազմությունը ավելի կուտակվեց։ Շատերը արքունի սպասավորներ էին, որոնք եկել էին նրան արքունիք տանելու և նախարարներ ու ավագանու մեծամեծներ, որոնք եկել էին նրան շքադիր պատիվ տալու և հետը արքունիք երթալու, որպեսզի տանեն նրան Տրդատ թագավորին կնության և Հայոց տիկնության համար։*

*174 Իսկ նրանք արտասվագոչ, ձեռքերը ողորմագին երկինք բարձրացնելով խնդրում էին կամարար Տիրոջից փրկել իրենց անօրեն, անարժան հարսանիքի պղծությունից։ Բարձր աղաղակով մեծաձայն ճչում էին և ասում. «Քավ լիցի մեզ, եթե հարստությունը մեզ խաբի, կամ հաճույքը մեզ գայթակղեցնի, թագավորությունները մեզ հրապուրեն, հալածանքը մեզ նեղի, և կամ հարվածների տանջանքը փորձության ենթարկի, թեպետև բյուր տեսակի տանջեք մեզ։ Կամ արդյոք կվախենա՞նք ահավոր մահվանից, որ դուք բերելու եք մեզ։ Քավ լիցի մեզ, թե անցավոր կյանքը փոխանակենք հավիտենականի հետ, որն անանց է, քավ լիցի, թե ուրանանք է-ին, Աստծուն՝ ամենաստեղծիչին, որի տերությունը էությունից է հաստատված, բոլոր բարիքներն անփոփոխ են և ոչ անցողիկ։ Բայց ոչ խորությունները և ոչ բարձրությունները, ոչ վշտերը և ոչ չարչարանքը, ոչ կապանքը և ոչ տանջանքը, ոչ հուրը, ոչ ջուրը և ոչ սուրը, ոչ զվարճությունը և ոչ պատրանքը, ոչ հարստությունները և ոչ աղքատությունը, ոչ այն աշխարհը և ոչ էլ այս աշխարհը, ոչ կյանքը և ոչ էլ մահը, ոչ ոք չի կարող մեզ հեռացնել Քրիստոսի սիրուց, քանզի նրան նվիրեցինք մեր կուսությունը, նրան ավանդեցինք մեր սրբությունները, նրան ենք մնում և նրա սիրուն ձգտելով սպասում, մինչև որ կանգնենք նրա գովության փառքի առջև, առանց ամոթի ու վախի»։*

*175 Եվ սաստիկ որոտում եղավ երկնքում, ամբողջ ամբոխը ահաբեկվեց, և մի ձայն լսվեց, որ ասում էր նրանց, թե «Զորացեք, պինդ կացեք, քաջալերվեցեք, քանզի ես ձեզ հետ եմ, պահեցի ձեզ ամեն ճանապարհներում, անարատ վիճակում ձեզ բերի հասցրի մինչև այս տեղերը, որպեսզի այստեղ ևս փառավորվի իմ անունը հյուսիսային կողմերի հեթանոսների առջև։ Մանավանդ, դու,* **Հռիփսիմե**, *արդարև, ըստ քո անվանը, մահվանից դեպի կյանք նետվեցիր* (ընկեցեալ) Գայանեի ու քո սիրելիների հետ։ Մի վախենաք, այլ կգաք այն տեղը, որ ես ու իմ հայրը պատրաստել ենք,*

պատրաստեցաք ձեզ, զանքնին ուրախութեան տեղին, ձեզ և որ միանգամ իբրև զձեզդ իցեն»։

176 Եւ այնպէս յերկար որոտացեալ, մինչև թմբրեալ լինէին մարդիկն յահէ անտի. և բազմաց ընդոստուցեալ, անգուշեալ բազում երիվարք հեծելոց յահէ անտի՝ զբազումս ընկեցեալ և զբազումս առաթուր հարեալ սատակէին։ Եւ մարդկանն իսկ ընդ միմեանս ամբոխեալ՝ ընդ կուտակելն բազումք զբազումս կոխեալ սատակէին. և բազմաց լինէր կոտորած, և ձայն աղաղակի և վայոյ, և անհնարին չարիք և արհաւիրք ի վերայ մարդկանն հասանէին. և բազումք մեռան, և բազմաց արիւնն հեղեալ զերկիրն ոռոգանէր։ Արդ՝ իբրև այս շփոթ ամբոխի եղև ի նոցանէն ի մէջ կուտակելոցն մարդկան բազմութեան՝ ոմանք ի մեծամեծ սպասաւորացն արքունի անդէն ընթացան պատմել թագաւորին զամենայն բանս նոցա. քանզի դիպեցան անդ նշանագիրք, որ գրեցին զամենայն բանս, և ընթերցան առաջի թագաւորին։

177 Եւ ասէ թագաւորն. «Փոխանակ զի ոչ կամեցաւ գալ պատուով շքեղութեամբ կամօք՝ բռնաբար ածցեն մինչև յապարանսս և մուծցեն զնա ի սենեակն արքունի»։

178 Արդ՝ առեալ զսուրբն Հռիփսիմէ սպասաւորացն բռնաբար, մերթ վերամբարձ, մերթ ի քարշ. և նա աղաղակէր և ասէր. «Տէր Յիսուս Քրիստոս, օգնեա՛ ինձ». և ամենայն ամբոխն զկնի նորա փողեալ՝ թնդէր երկիրն ի բազմութենէ անտի։ Արդ՝ ածին մուծին զնա մինչև յապարանս թագաւորին, ի սենեակն արքունի։ Իսկ իբրև արգելին զնա ի սենեակն՝ սկսաւ խնդրել ի Տեառնէ և ասէ.

179 «Տէր զօրութեանց, դու ես Աստուած ճշմարիտ։ Դու ես, որ հերձեր զծովն Կարմիր, և անցուցեր զքո ժողովուրդն։ Դու ես, որ զամուլ վէմն դարձուցեր ի ծննդականութիւն ջուրցն վտակաց, և արբուցեր զժողովուրդն ծարաւեալ։ Դու ես, որ իջուցեր զծառայն քո զՅովնան յանդունդս խորոց ծովուն, և ետուր առնուլ զչափ քոյոյ զօրութեանդ, և արտաքսեցեր զնա ի դուրս քան զմարդկային բնութիւնս. և միւսանգամ այսրէն առանց ապականութեան ածեր ողջանդամ և կացուցեր ի կենդանութեան, զի և մազ մի անգամ ոչ շարժեալ լինէր ի վարսից նորա։ Դու ես Աստուած ճշմարիտ, որ և զԴանիէլ, կուր արկեալ գազանաց՝ ապրեցուցեր յահագին ժանեացն, և կացուցեր զզրպարտեալն առաջի նեղչացն փառաւորութեամբ։ Դու և զերիս մանկունսն, որ արկեալ յայրել վասն զքեզ պաշտելոյն՝ ողջ և անարատ ի հրոյն պահեցեր. զի փառաւորեսցեն զքեզ՝ որք տեսին



ուրախության անքննելի տեղը՝ ձեզ և նրանց համար, որոնք մի անգամ ձեզ նման կլինեն»։

176 Այնպես երկար որոտաց, մինչև որ մարդիկ նրա ահից թմրեցին։ Շատերը տեղից վեր ցատկեցին, հեծյալների բազմաթիվ երիվարներ ահից աքացի տալով շատերին գետին տապալեցին և այլոց ոտքի տակ կոխոտելով սպանեցին։ Իրար վրա դիզված բազմությունից շատերը իրար տրորելով սպանեցին, և մեծ կոտորած եղավ։ Աղաղակի ու վայնասունի ձայներ լսվեցին, սաստիկ չարիք ու արհավիրք հասավ մարդկանց և շատերը մեռան ու շատերի արյունը թափվելով՝ հողը ոռոգեց։ Արդ՝ երբ այս խառնաշփոթությունը եղավ, կուտակված մարդկանց բազմության մեջ, արքունի մեծամեծ սպասավորներից ոմանք գնացին պատմելու թագավորին այս ամենը, որովհետև այնտեղ գտնվեցին գրագիրներ, որոնք գրեցին ամեն ինչ և ընթերցեցին թագավորի առջև։

177 Ասաց թագավորն. «Քանի որ չկամեցավ գալ իր կամքով՝ պատվով, շքեղությամբ, թող բռնի բերեն մինչև ապարանք և նրան մտցնեն արքունի սենյակը»։

178 Արդ՝ սպասավորները բռնի տարան սուրբ Հռիփսիմեին՝ մերթ բարձրացրած, մերթ քարշ տալով, իսկ նա աղաղակում էր և ասում. «Տեր Հիսուս Քրիստոս, օգնիր ինձ»։ Ամբողջ ամբոխը նրա ետևից փող էր հնչեցնում, և այդ բազմությունից երկիրը թնդում էր։ Տարան, մտցրեցին թագավորի ապարանքը, իսկ երբ արգելափակեցին նրան սենյակում, սկսեց խնդրել Տիրոջից և ասել.

179 «Տեր զորության, դու ես ճշմարիտ Աստվածը։ Դու ես, որ պատռեցիր Կարմիր ծովը և անցկացրիր քո ժողովրդին։ Դու ես, որ ամուլ քարից ջրի վտակներ բխեցրիր և խմեցրիր քո ծարավ ժողովրդին։ Դու ես, որ իջեցրիր քո ծառային՝ Հովնանին, ծովի խոր անդունդները; ճանաչել տվիր քո զորության չափը՝ արտաքսելով նրան մարդկային էությունից և մյուս անգամ կրկին առանց ապականության ողջանդամ դուրս բերիր և կենդանություն տվիր, այնպես որ նրա վարսից մի մազ անգամ չէր խախտվել։ Դու ես ճշմարիտ Աստվածը, որ Դանիելին, գազաններին որպես կերակուր նետելուց հետո՝ փրկեցիր ահավոր ժանիքներից և փառավորությամբ ապրեցրիր զրպարտյալին նեղիչների առջև։ Դու փրկեցիր նաև երեք մանուկներին, որոնց քեզ պաշտելու համար գցել էին այրելու, և ողջ ու անարատ պահպանեցիր հրի մեջ, որպեսզի քո հրաշքները տեսնողները փառաբանեն քեզ։ Դու խոստաճարակ դարձ-

զաքանչելիս քո։ Դու ետուր խոտաճարակ լինել խիստ և անօրէն թագաւորին Բաբելացւոց, զի ոչ իմացաւ փառաւորել զքեզ ի վերայ սքանչելեացն քոց զոր ցուցեր նմա. փոխեալ զնա ի կերպարանս անասնոց և ընդ գազանս անապատի եդեր զբնակութիւն նորա, և ընդ ցիռս վայրի զարօտ նորա։ Դու և զաղախին քո Շուշան կրկին ապրեցուցեր, յերկուց մահուց փրկեալ, և խայտառակամահ սատակեցեր զանօրէն թշնամիսն, և պսակ պարծանաց արդարութեան յուսացելոյն քոյ շնորհեցեր և կանգնեցեր։ «Դու նոյն ինքն ես, և ամք քո ոչ անցանեն»։ «Դու, տէր, զփառս քո այլում ոչ տաս»։ Դու ես որ փառաւորեալդ ես ի վերայ ամենայն տիեզերաց. մի՛ պղծեսցեն զանուն սուրբ քո հեթանոսք։ Դու կարող ես փրկել զիս ի պղծութենէս յայսմանէ. զի վախճանեցայց սրբութեամբ մեռանել վասն անուանդ քոյ մեծի»։

180 ԺԷ. Արդ՝ մինչդեռ սուրբն Հռիփսիմէ զայս ամենայն աղօթս առ Աստուած մատուցանէր՝ եկն եմուտ թագաւորն Տրդատ ի ներքս ի սենեակն՝ ուր էրն զնա արգելեալ։ Արդ՝ իբրև եկն եմուտ նա ի ներքս՝ առ հասարակ մարդիկն, ոմանք արտաքոյ ապարանիցն, կէսքն ի փողոցս ի ներքսագոյնսն, առ հասարակ երգս առեալ բարբառեցան կայթիւք վազելով, ցոյց բարձեալ մարդկանն. կէսքն ի բերդամիջին, և կէսք զքաղաքամէջն լցին խնճոյիւք. առ հասարակ համարէին հարսանեացն զպարսն պարել և զկաքաւսն յորդորել։ Իսկ տէր Աստուած նայեցաւ յիւր սիրելին Հռիփսիմէ՝ ապրեցուցանել զնա, զի մի՛ կորիցէ աւանդն որ պահեալ զգուշացեալ էր, և լուաւ աղօթից նորա՝ զօրացուցանել զնա իբրև զՅայէլն և իբրև զԴեբովրայն. ետ զօրութիւն նմա, զի ապրեսցի ի ստամբակ բռնութենէ անօրէնութեանն։

181 Արդ՝ մտեալ թագաւորն՝ բուռն հարկանէր զնմանէն, կատարել զկամս ցանկութեանն։ Իսկ նա զօրացեալ լինէր ի Հոգւոյն սրբոյ. գազանաբար ոգորեալ, առնաբար մարտնչէր. իբրև յերից ժամուց սկսեալ մարտնչել մինչև ի տասն ժամն՝ պարտեալ լինէր զթագաւորն իսկ զայն, որ անհնարին համարեալ ուժով. որ մինչ ի Յունաց աշխարհին էր՝ բազում ոյժ պնդութեան ոսկերաց ցուցեալ էր, զարմացուցեալ զամենեսեան. և ի թագաւորութեանն իսկ, իբրև ի հայրենի բնութիւնն դարձեալ էր՝ բազում գործս արութեան քաջութեան և անդ ցուցեալ. և որ այնպէս հռչակեալ էր ամենայնիւ՝ արդ յաղջկանէ միոջէ պարտեալ վատթարանայր կամօք և զօրութեամբն Քրիստոսի։

182 Արդ՝ իբրև պարտեցաւ, վաստակեցաւ և լքաւ՝ ել նա արտաքս, և ետ ածել զերանելին Գայիանէ, և արկանել խառան ի պա-



րեցիր բաբելացիների խիստ, անօրեն թագավորին, որը չկարողացավ փառավորել քեզ այն հրաշքների համար, որ ցույց տվիր նրան։ Անասունի կերպարանք տվիր նրան, անապատի գազանների հետ բնակեցրիր և վայրի ցիռերի հետ նշանակեցիր նրա արոտավայրը։ Դու կրկին ապրեցրիր քո աղախին Շուշանին*, երկու մահերից փրկելով, խայտառակամահ սատկեցրիր անօրեն թշնամիներին և արդար փառքի պսակ շնորհեցիր ու կանգնեցրիր քեզ հուսացողներին։ «Դու նույն ինքդ կաս, և քո տարիները չեն անցնի»։ «Դու, Տեր, քո փառքը ուրիշներին չես տա»։ Դու ես, որ փառավորյալ ես ամբողջ տիեզերքի մեջ, և թող հեթանոսները չպղծեն քո սուրբ անունը։ Դու կարող ես ինձ փրկել այս պղծությունից, որպեսզի կարողանամ սրբությամբ վախճանվել քո մեծ անվան համար»։

180 ԺԷ. Արդ՝ մինչդեռ սուրբ Հռիփսիմեն այս ամեն աղոթքները Աստծուն էր մատուցում, եկավ Տրդատ թագավորը մտավ սենյակից ներս, ուր նրան արգելափակել էին։ Երբ նա մտավ, բոլոր մարդիկ, ոմանք ապարանքից դուրս, իսկ մի մասը փողոցներում, սկսեցին միասին երգել պարելով, վեր-վեր թռչելով, վազելով։ Կեսը բերդի մեջ, մյուս կեսը քաղաքում լցվեցին խնջույքի, առհասարակ պատրաստվում էին հարսանեկան պարեր պարելու և կաքավելու։ Իսկ տեր Աստված ուշադրություն դարձրեց իր սիրելի Հռիփսիմեին՝ փրկելու նրան, որպեսզի չկորչի այն ավանդը, որ զգուշությամբ պահել էր, և լսեց նրա աղոթքը՝ զորացնելու Հայելի և Դեբովրայի* նման, զորություն տվեց նրան, որպեսզի դիմանա անօրինության դաժան բռնությանը։

181 Արդ՝ ներս մտավ թագավորը և փորձեց բռնի միջոցներով ստիպել նրան իր ցանկությունը կատարել. իսկ նա սուրբ Հոգով զորացել էր, գազանաբար ոգորելով, առնաբար մարտնչում էր։ Գրեթե ժամը երեքից մինչև տասը մաքառելով, թագավորը, որ շատ ուժեղ էր համարված, պարտվեց նրանից։ Մինչդեռ նա Հունաց աշխարհում մեծ ուժի բազում օրինակներ էր ցույց տվել ու բոլորին զարմացրել և իր թագավորության մեջ էլ, երբ վերադարձել էր հայրենիք, բազում քաջագործություններ էր կատարել։ Նա, որ այնպես ամեն ինչով հռչակված էր, այժմ մի աղջկանից պարտվեց, հաղթվեց Քրիստոսի կամքով ու զորությամբ։

182 Երբ պարտվեց, հոգնեց ու թուլացավ, դուրս եկավ ու բերել տվեց երանելի Գայանեին և վիզը պարան գցելով բերել տվեց

բանից նորա, և ածել ունել զնա առ դուրս սենեկին. և ինքն անդրէն ի ներքս մտանէր. և եդ բանս ի բերան սպասաւորացն, զի ստիպեսցեն զանհրապոյրն Գայիանէ՝ ասել ի դրաց անտի ի ներքս ի սենեակն առ Հռիփսիմէ, թէ արա՛ զկամս դորա, և կեա՛ց դու և մեք։

183 Իսկ նա յանձին կալեալ խօսել ընդ սանուն իւրում, և մատուցեալ ասէ ի դրաց անտի ի ներքս ի սենեակն առ Հռիփսիմէ. «Որդեակ, պահեսցէ՛ զքեզ Քրիստոս ի պղծութենէդ և լիցի քեզ զօրաւիգն. բա՛ւ քեզ, որդեակ, եթէ լիցի քեզ ելանել ի ժառանգութենէ անտի կենացն Աստուծոյ, և ժառանգել քեզ զանցաւորս, որ ոչ ինչ իսկ է, այսօր է, և վաղիւն կորնչի»։

184 Իբրև իմացան, թէ զո՛ր խրատ յաճախեաց մատուցանել՝ բերեալ քարինս՝ հարկանէին զբերանն, մինչև թափել ատամանցն. և ստիպէին ասել նմա, զի արասցէ զկամս թագաւորին։

185 Նա ևս քան զևս պնդէր և ասէր. «Քաջալերեա՛ց, պինդ կաց, և այժմ տեսանես զՔրիստոս, առ որ անձկացեալն ես։ Յուշ լիցի քեզ, որդեակ, հոգեխառն սնունդն, որով զքեզ սնուցի։ Յուշ լիցի քեզ աստուածեղէն խրատն, որով զքեզ պարապեցի։ Յուշ լիցին հալածանքն իմ և քո ի միասին։ Յուշ լիցի քեզ և բաժակ մահուն, զոր ի միասին եմք ըմպելոց։ Յուշ լիցի քեզ և յարութիւն ամենայն տիեզերաց։ Յուշ լիցի քեզ և մեծատանն յանդիմանութիւն։ Յուշ լիցի քեզ այրումն յաւիտենական գեհենին տանջանաց։ Յուշ լիցի քեզ անապական պարգևքն արդարոց, զոր և մեզն է պատրաստեալ։ Յուշ լիցի քեզ աստուածեղէն բարբառն երկնաւոր, զոր լուար իսկ դու քեզէն քոյովք ականջօք յայսմ աւուր. որ քաջալերեաց և զօրացոյց զքեզ մեօք հանդերձ՝ նոյն և արժանիս արասցէ պսակին և հանգստեանն զոր խոստացաւ. և զօրացուսցէ զքեզ մեօք հանդերձ, զի լիցուք բնակիչք Աստուծոյ լուսեղէն յարկացն յաւիտենականաց բնակութեան։

186 «Այլ տէր մեր և թագաւոր մեր և Աստուած մեր, որ վասն մեր խոնարհեցաւ յանարգութիւն, մի՛ թողցէ զմեզ անարգս, զի զօրութեանց նորա ցանկացաք. փրկիչն աշխարհաց օգնեսցէ մեզ, որ ոչ եթող ընդ վայր զմեզ կցուացեալս իւր, և արժանիս համարեցաւ իւրոց բանիցն՝ քաջալերութիւն տալոյ։ Զի նա անարգամեծար տէր է, և նա ինքնին պահեսցէ զմեզ զաղախնեայս իւր յամենայն մեղաց. որպէս և այսօր իսկ լուաք, զի էր պահեալ զմեզ ամենազօր աջոյն, և պահեսցէ զմեզ մինչև յաւիտեան. բայց միայն ի սիրոյ նորա մի՛ մեկնեսցուք։ Այլ զարթուսցէ զզօրութիւնս իւր, և եկեսցէ կե-



նրան սենյակի դուռը, ուր ինքը ներս մտավ։ Եվ սպասավորներին պատվիրեց, որ ստիպեն չհրապուրվող Գայանեին դրսից ասել սենյակում գտնվող Հռիփսիմեին, թե կատարիր դրա կամքը, որ ապրենք՝ դու և մենք։

183 Իսկ նա հանձն առնելով խոսել իր սանի հետ՝ մոտեցավ դռանը և խոսեց ներսում գտնվող Հռիփսիմեի հետ. «Որդյակ, թող Քրիստոսը քեզ պղծությունից պահի և զորավիգ լինի. քավ լիցի, որդյակ, եթե Աստծո կենաց ժառանգությունից դուրս գաս ժառանգելու համար անցավոր աշխարհը, որը ոչինչ է, այսօր կա և վաղը կկորչի»։

184 Երբ իմացան, թե ինչպիսի խրատ շտապեց տալ, քարեր բերելով խփեցին բերնին, մինչև որ ատամները թափվեցին, և ստիպում էին նրան թագավորի կամքը կատարել։

185 Իսկ նա ավելի ու ավելի էր պնդում՝ ասելով. «Քաջալերվիր, ամուր կաց, քանզի այժմ կտեսնես Քրիստոսին, որին փափագել ես։ Հիշիր, որդյակ հոգեխառն սնունդը, որով քեզ սնեցի, հիշիր աստվածային խրատը, որով քեզ դաստիարակեցի։ Հիշիր իմ ու քո միասին կրած հալածանքը և մահվան բաժակը, որը միասին պետք է ըմպենք։ Հիշիր նաև ամբողջ տիեզերքի հարությունը և մեծատան հանդիմանությունը։ Հիշիր տանջանքների գեհենի հավիտենական այրումը. և արդարների անապական պարգևները, որոնք մեզ համար են պատրաստված։ Հիշիր աստվածեղեն երկնային խոսքը, որ այսօր իսկ դու ինքդ լսեցիր քո ականջներով, որը քաջալերեց ու զորացրեց քեզ մեզնով հանդերձ և արժանի է դարձնելու իր խոստացած պսակին ու հանգստյանը, զորացնելու է քեզ մեզնով հանդերձ, որպեսզի աստվածային հավիտենական բնակության լուսեղեն հարկերի բնակիչներ դառնանք։

186 Այլ մեր Տերը, մեր թագավորը և մեր Աստվածը, որը մեզ համար խոնարհվեց դեպի անարգություն, մեզ անարգ չի թողնի, քանզի ապավինեցինք նրա զորություններին։ Աշխարհի փրկիչը կօգնի մեզ, որը չթողեց մեզ՝ իրեն հուսացածներիս, որ վայր ընկնենք, և արժանի համարեց իր խոսքերով քաջալերելու։ Նա անարգվածներին մեծարող տեր է և ինքը զերծ կպահի մեզ՝ իր աղախիններին, բոլոր մեղքերից։ Ինչպես այսօր հենց լսեցինք, որ Նրա ամենազոր աջը պահպանեց մեզ և կպահի մինչև հավիտյան, միայն թե նրա սիրուց չհեռանանք։ Նա կարթնացնի իր զորությունները և կգա մեզ ապրեցնելու, ու մենք Տիրոջ անվանը կդիմենք։ Իր երեսը

ցուսցէ զմեզ, և մեք զանուն Տեառն կարդասցուք. երևեցուսցէ զերեսս իւր ի մեզ, և կեցցուք. զի նա է Աստուած փրկիչ մեր. վասն նորա համբերեսցուք զօրհանապազ։

187 «Յո՛ւշ լիցի քեզ Տէրն, որ վասն զմեզ բարձրացուցանելոյ խոնարհեցաւ, և հեղ զարիւն իւր ի վերայ խաչին. վասն կենաց մերոց և փրկութեան մերոյ ի մահ վիրաւորեցաւ։ Դի՛ր զնա ի մտի քում, և կարդա՛ սրտիւ քով զնա. ահա հասեալ է քեզ յօգնականութիւն, և զօրացուսցէ զբազուկս քո, որպէս զմանկանն Դաւթի ի վերայ արջոցն և առիւծուցն, որ իբրև զուլս այծեաց ճեղքեալ բեկանէր։ Նա և որ զանարի հսկայն ջարդեաց ի ձեռն ծառայի իւրոյ Դաւթի՝ նոյն խորտակեսցէ զչարութիւն անօրէնութեան դորա առաջի քո։

188 «Դուստր մարգարէութեան հաւատոցն Դաւթի և սնեալ յարդարութեան ի վերայ բազկաց իմոց. առաջի սուրբ և փառաւորեալ սեղանոյն Աստուծոյ սնար դու աղախին Քրիստոսի. այն որ այսօր իսկ յայտնութեամբ՝ գթութեամբ և մարդասիրութեամբ իւրով յայտնեցաւ մեզ, որ իմաստութեամբն խնդրեցաք զնա՝ նոյն տացէ քեզ մեօք հանդերձ առանց ամօթոյ տեսանել զնա դէմ յանդիման»։

189 Արդ՝ զայս ամենայն խօսեցաւ սուրբն Գայիանէ ի բարբառ Հռոմայեցւոց ընդ իւրում սանուն ի դրաց սենեկին, մինչդեռ թագաւորն ոգորէր ընդ սրբոյն Հռիփսիմեայ։ Բայց գոյին անդ ոմանք ի սպասաւորացն արքունի, որ լսէին զայն ամենայն ի բարբառ Հռոմայեցւոց։

190 Եւ արդ՝ իբրև լուան զայն ամենայն, զոր խօսեցաւն Գայիանէ ընդ սանուն իւրում՝ ի բաց առին զնա ի դրաց անտի։ Զի թէպէտ և բազում անգամ հարին զնա, և ծեծեցին քարամբք զերեսս նորա, և թափեցին զատամունս նորա, և ջարդեցին զմսուր բերանոյ լնդաց նորա՝ սակայն ոչ շրջեաց զբանս իւր՝ խօսել ընդ աղջկանն այլ ինչ. այլ զոր սկիզբն արարեալ էր բանիցն իւրոց՝ առաջնոց՝ զնոյն յաճախեալ բազմացուցանէր։

191 Իսկ նա մարտեաւ ևս ընդ նմա ի տասն ժամէ աւուրն մինչև ի պահ մի գիշերոյն, պարտեաց զթագաւորն։ Եւ զօրացեալ լինէր աղջիկն ի Հոգւոյն սրբոյ. հարեալ վանեալ պարտեալ, վաստակաբեկ առնելով զթագաւորն՝ մեղկեալ ընկենոյր։ Մերկ կողոպուտ ևս ի հանդերձից զթագաւորն կացուցանէր, և զպատմուճանն պատառեալ և զնշան թագին ցրուեալ կողոպտեալ՝ ամօթալից թողոյր։ Զի թէ-



մեզ ցույց կտա, և մենք կապրենք, որովհետև նա է մեր փրկիչ Աստվածը, և նրա համար համբերեցինք շարունակ։

187 Հիշիր Տիրոջը, որ մեզ բարձրացնելու համար խոնարհվեց և իր արյունը թափեց խաչի վրա, մեր կյանքի ու մեր փրկության համար մահվան մատնվեց։ Պահիր նրան քո մտքում և սրտովդ նրան օգնության կանչիր։ Ահա քեզ օգնության են հասել և կզորացնեն քո բազուկները, ինչպես Դավիթ պատանուն զորացրին արջերի ու առյուծների դիմաց, որոնց նա այծի ուլերի նման պատառոտեց, բզկտեց։ Նա որ վիթխարի հսկային ջարդեց իր ծառայի՝ Դավթի ձեռքով, նույն ինքը կխորտակի սրա անօրեն չարությունը քո առջև։

188 Ով Դավթի հավատքի մարգարեության դուստր և սնված արդարությամբ իմ բազուկների վրա՝ Աստծու սուրբ ու փառավորյալ սեղանի առջև դաստիարակվեցիր դու, ով աղախին Քրիստոսի, որն այսօր իսկ իր հայտնությամբ, գթությամբ ու մարդասիրությամբ մեզ հայտնվեց, և որին իմաստությամբ խնդրեցինք, նույն ինքը քեզ, մեզնով հանդերձ, առանց ամոթի դեմ հանդիման նրան տեսնել կտա»։

189 Արդ՝ այս ամենը խոսեց սուրբ Գայանեն հռոմայեցիների լեզվով իր սանի հետ սենյակի դռնից, մինչդեռ թագավորը պայքարում էր սուրբ Հռիփսիմեի հետ։ Բայց կային այնտեղ ոմանք արքունի սպասավորներից, որոնք լսում էին այս ամենը հռոմայեցիների լեզվով։

190 Երբ լսեցին այն բոլորը, որ Գայանեն ասաց իր սանին, հեռացրին այդ դռան մոտից։ Թեպետ շատ անգամ գանահարեցին նրան ու երեսները ծեծեցին քարերով, ատամները թափեցին ու ջարդեցին նրա ատամնահիմերը, սակայն նա չփոխեց իր խոսքերը և աղջկան այլ բան չասաց, այլ սկզբում ասած առաջին խոսքերը նույնությամբ կրկնում էր։

191 Իսկ սա, մարտնչելով նրա հետ օրվա ժամը տասից մինչև գիշերվա առաջին ժամը, հաղթեց թագավորին։ Սուրբ հոգով հզորացած աղջիկը ուժեղ հարվածներով պարտության մատնեց, վաստակաբեկ արեց թագավորին, որը թուլացած վայր ընկավ։ Թագավորին մերկացրեց իր հանդերձներից՝ պատմուճանը պատառ-պատառ եղած, թագի նշանը իրենից ընկած, խլված, ամոթալի վիճակում թողեց։ Թեպետ իր զգեստն էլ բզիկ-բզիկ պատառոտված, և

*պէտ և զիւր զգեստիկն քՃքՃեալ պատառատուն ի Նմանէն ի դուրս բերէր՝ սակայն յաղթող պահէր զանձն իւր սրբութեամբ։*

*192 Եւ բացեալ զդուրս տանն բռնաբար՝ ի դուրս ելանէր, հերձեալ զամբոխ մարդկանն. և ոչ ուրուք կարացեալ յաղթահարել զնա։ Եւ ընթացեալ ընդ քաղաքամէջսն՝ ելանէր ընդ արևելս կոյս, ընդ Արեգ դուռն քաղաքին։ Երթեալ առ հնձանօքն, ուր էինն իսկ յառաջ վանք իւրեանց՝ ձայն ուետեաց մատուցանէր ընկերացն. և ինքն անցանէր հարուստ մի ի քաղաքէն ի կողմն մի հիւսիսոյ, ի տեղի մի յարևելս կոյս, ի սարաւանդակ ի բարձրաւանդակ յաւազին տեղի մի, մօտ ի բուն պողոտայն, որ երթայր յԱրտաշատ քաղաք։*

*193 Իբրև եհաս յայն տեղի՝ ծունր եդեալ կայր յաղօթս և ասէր. «Տէր ամենայնի, ո՞ կարիցէ հատուցանել քեզ փոխանակ բարեացն, որ ի քէն շնորհեցաւ մեզ. զի պահեցեր զլոյս մեր հաստատուն որ ի քեզ էր. և ապրեցուցեր զմեզ ի պղծալից ժանեաց գազանին որ ապականէին զմեզ։ Այլ զի՞նչ ևս կայցէ ի մեզ կար՝ փոխարէնս հատուցանել քեզ. բայց անձինք մեր լիցին փոխանակ փրկութեան քում. զի դու ինքն արժանիս արարեր զմեզ արբանեկութեան, կրել զանուանդ քո, որով ապրեցուցեր զմեզ. զի բայց ի քէն, Տէր, զայլ ոչ ոք գիտեմք, և զանուն քո անուանեմք զօր հանապազ։*

*194 «Այլ մեզ լաւ է մեռանել ի սրբութեան քում, քան թէ ձգիցեմք զձեռս մեր յաստուածս օտարս, որ չիցեն իսկ. այլ ոչ ինչ իսկ են ամենայն պաշտամունք հեթանոսաց. զի դու ես արարիչ, և ամենայն ի քէն է և Որդւովդ քո միածնաւ, առանց որոյ եղև և ոչինչ, և «Հոգիդ քո բարի առաջնորդեսցէ մեզ յերկիր ուղիղ», որ տանի զմեզ ի բարութիւնսն յաւիտենականսն յերկրաւորսն։*

*195 «Որոյ յանդիման լինելոց եմք առաջի Միածնիդ քոյ. զի առանց ամօթոյ կայցեմք ի կողմն աջակողմանն, յորժամ առաքեսցես զդա «ի պատրաստ լուսոյ բնակութենէդ հայել յամենայն բնակիչս երկրի»։ Որ ստեղծ իսկ զսիրտս որդւոց մարդկան, որ ի միտ առնու զամենայն գործս նոցա։ Զի և մեք ի ժողովրդենէ քումմէ եմք և ի խաշնէ արօտի քոյ. մտցուք ի յարկսդ, զոր պատրաստեցեր սիրելեաց քոց։ Փութամք, Տէր, զի ելցուք ի մարմնոյս, զի խառնեսցուք ի գունդ միածնի Որդւոյդ քոյ սիրելւոյ, և ի թիւ այնոցիկ, որ սիրեցին զօր երևելոյ գալստեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Ի պղծութենէս և եթ ապրեսցուք. այլ եթէ եկեսցեն տանջանք ի վերայ մեր վասն անուան քոյ՝ պատրաստ եմք։ Զի ոչ զրկես դու զմեզ. զի դու, Տէր, ինքնին վկայես ինձ, զի վարուց երկրակեաց կենացս ես*



*դուրս էր բերված նրա կողմից, սակայն ինքը հաղթող պահեց իր անձը սրբությամբ։*

*192 Ուժով բաց անելով տան դռները, դուրս եկավ, ճեղքեց մարդկանց ամբոխը, և ոչ ոք կարողացավ հաղթահարել նրան։ Ընթանալով քաղաքի մեջ, ելավ քաղաքի արևելյան կողմը Արեգ դռնով։ Գնալով հնձանի մոտ, ուր առաջ իրենց կացարանն էր, ընկերներին ավետիք տվեց ու ինքն անցավ գնաց քաղաքից հեռու հյուսիսային կողմի արևելք ընկած մի վայր, մի ավազուտ սարավանդ բարձրավանդակ, մոտիկ բուն պողոտային, որը տանում էր Արտաշատ քաղաքը։*

*193 Երբ այնտեղ հասավ, ծունր դրեց, սկսեց աղոթել և ասել. «Տեր ամենայնի, ո՞վ կարող է քեզ հատուցել մեզ շնորհած քո բարիքների դիմաց, քանզի դու հաստատուն պահեցիր քո նկատմամբ ունեցած մեր հույսը և ազատեցիր մեզ գազանի պիղծ ժանիքներից, որն ապականում էր մեզ։ Բայց մենք էլ ինչ կարող ենք փոխարենը հատուցել, եթե ոչ մեր անձերը քո փրկության փոխարեն, քանզի դու ինքդ արժանի արեցիր մեզ քո ծառայությանը, քո անունը կրելու, որով ապրեցրիր մեզ, քանի որ բացի քեզանից, Տեր, ուրիշ ոչ ոքի չենք ճանաչում և քո անունն ենք արտասանում շարունակ։*

*194 Բայց լավ է, որ մենք մեռնենք քո սրբության մեջ, քան թե մեր ձեռքերը մեկնենք օտար աստվածներին, որոնք չեն էլ եղել, և հեթանոսների ամբողջ պաշտամունքն էլ ոչինչ է։ Դու ես արարիչը, և ամեն ինչ քեզանից է ու քո միածին Որդով, առանց որի ոչինչ չի եղել, և «քո բարի հոգին թող առաջնորդի մեզ դեպի ուղիղ երկիր», որը կտանի մեզ երկնավոր հավիտենական բարիքներին։*

*195 Ներկայանալու ենք քո Միածնի առջև, որպեսզի առանց ամոթի կանգնենք աջ կողմում, երբ ուղարկես նրան «լուսո բնակության վայրերից նայելու երկրի բոլոր բնակիչներին։ Նա ստեղծեց մարդկանց սրտերը և նրանց բոլոր գործերին ուշադիր է, քանզի մենք էլ քո ժողովրդից ենք, քո արոտի հոտից և կմտնենք քո սիրելիների համար պատրաստված հարկերի մեջ։ Փութանք, Տեր, դուրս ելնել այս մարմնից, խառնվելու քո սիրելի միածին Որդու գնդին և նրանց թվին, որոնք սիրեցին մեր տեր Հիսուս Քրիստոսի գալստյան օրը։ Ազատիր մեզ այս պղծությունից, իսկ եթե տանջանքներ տրվեն մեզ, քո անվան համար, պատրաստ ենք։ Դու մեզ չես զրկի, որովհետև դու, Տեր, ինքդ վկայում ես ինձ համար, որ երկրավոր կյանքից ոչինչ եմ ցանկացել իմ մանկությունից. քանի*

ինչ ոչ ցանկացայ ի մանկութենէ իմմէ. վասն զի նայեցայ և հաւատացի բանի քում զոր ասացեր, թէ «Վա՛յ իցէ ձեզ, յորժամ բարի ասիցեն զձէնջ մարդիկ». այլ «Երանի է ձեզ, յորժամ նախատիցեն զձեզ և հալածիցեն, և ասիցեն զամենայն բան չար սուտ զձէնջ վասն իմ. ցնծացէ՛ք և ուրախ լերուք»։

196 «Արդարև իսկ, Տէր, ցնծացաք և ուրախ եղաք ընդ այս պատերազմ որ եհաս մեզ, մարտնչել սիրով քով. զի յաղթեաց յաղթող զօրութիւնդ քո, և ետ մեզ յաղթել։ Ուրախ եղաք ընդ այս փոխանակ աւուրցս, որ խոնարհ արարին զմեզ, և ամացս, յորս տեսաք զչարչարանս։ Հայեա՛ց, Տէր, ի ժառանգութիւն քո և ի գործս ձեռաց քոց, և առաջնորդեա՛ մեզ ի վերին քաղաքդ քո Երուսաղէմ որ ի բարձունսդ է, ուր ժողովելոցդ ես զամենայն արդարս, զսուրբս և զսիրելիս անուան քոյ. եղիցի լոյս տեառն Աստուծոյ ի վերայ մեր»։

197 ԺԸ. Եւ մինչդեռ երանելին սուրբն Հռիփսիմէ խօսէր զայս ամենայն՝ անդէն ի նմին գիշերի եկին հասին վաղվաղակի ի տեղի անդր իշխանք թագաւորին, և դահճապետն դահճօքն հանդերձ ընդ նոսա, և ջահք լուցեալք առաջի նոցա։ Եւ մատեան վաղվաղակի, կապեցին զնա ձեռս յետս, և խնդրէին զի հատցեն զլեզուն։ Իսկ նա իւրովի կամօք բացեալ զբերանն՝ հանեալ մատուցանէր զլեզուն։

198 Եւ անդէն զհանդերձիկն պատառատուն որ զնովաւն էր՝ ի բաց զերծուին ի նմանէ. և հարեալ չորս ցիցս ի գետինն, երկուս ոտիցն և երկուս ձեռացն՝ և պրկեցին զնա. և մատուցին զկանթեղսն ցմեծ ժամս. այրէին և խորովէին զմարմինս նորա հրով կանթեղացն։ Եւ քարինս վարեցին ընդ գոգս նորա և ի վայր վայթեցին զաղիս նորա. և մինչդեռ կայր կենդանի՝ փորեցին զաչս երանելւոյն։ Ապա անդամ անդամ յօշէին զնա և ասէին, եթէ «Ամենեքեան որ իշխեսցեն անգոսնել և անարգել զհրամանս թագաւորաց՝ ըստ դմին օրինակի կորիցեն»։

199 Իսկ էին և այլ սուրբք, արք և կանայք, որ ընդ նոսա եկեալ էին, աւելի քան զեօթանասուն մարդ. այլ որ ի ժամուն անդ հասին ի տեղին յայն ի նոցանէն, որ խնդրէին ամփոփել և թաղել զմարմինս նոցա, յորոց վերայ սուր եդեալ կոտորեցին իբրև երեսուն և երկու ոգիս։

200 Որոց ասացեալ և նոցա զայս. «Սիրեցաք զքեզ, Տէր, զի լուիցես զձայն աղօթից մերոց. խոնարհեցուցեր զունկն քո բարերար, և մեք կարդացաք առ քեզ։ Քեզ փառք, որ ոչ զրկեցեր զմեր անարժանութիւնս ի քոց բարեացդ, մարդասէր. որ պահեցեր զմեզ



որ նայեցի ու հավատացի քո ասած խոսքին, թե «Վայ ձեզ, երբ մարդիկ բարի ասեն ձեր մասին», այլ «Երանի ձեզ, երբ նախատեն ձեզ, հալածեն և ամեն չար բան սուտ տեղը ասեն ձեր մասին իմ պատճառով. ցնծացեք և ուրախ եղեք»։

196 Արդարև իսկ, Տեր, ցնծացինք և ուրախ եղանք այս պատերազմի համար, որ վիճակվեց մեզ, մարտնչելու քո սիրով, քանզի հաղթեց քո ամենահաղթ զորությունը և մեզ էլ հաղթել տվեց։ Ուրախ եղանք այն օրերի փոխարեն, որ խոնարհեցրին մեզ և այն տարիների փոխարեն, երբ չարչարանքներ տեսանք։ Նայիր, Տեր, քո ժառանգությանը ու քո ձեռքի գործերին և առաջնորդիր մեզ քո վերին քաղաքը, քո Երուսաղեմը, որը բարձունքիդ վրա է, ուր հավաքելու ես բոլոր արդարներին, սրբերին և քո անունը սիրողներին։ Թող տեր Աստծու լույսը մեզ վրա լինի»։

197 ԺԸ. Մինչդեռ երանելի սուրբ Հռիփսիմեն խոսում էր այս ամենը, ահա նույն գիշերը շուտափույթ այնտեղ հասան թագավորի իշխանները, դահճապետը դահիճների հետ մեկտեղ և վառված ջահերը առջևները պահած։ Մոտեցան իսկույն, ձեռքերը ետևը կապեցին և ուզում էին լեզուն կտրել, իսկ նա իր կամքով բացեց բերանը և, լեզուն հանելով՝ մեկնեց։

198 Ապա նրա վրայի պատառոտուն հանդերձները հանեցին ու գետնին չորս ցից խփելով՝ երկուսը ոտքերից, երկուսը ձեռքերից կապելով՝ պրկեցին նրան։ Մոտեցրին կանթեղները և ժամերով այրեցին ու խորովեցին նրա մարմինը կանթեղների հրով։ Նրա գոգը քարեր լցրին, աղիքները վայր թափեցին և մինչդեռ նա կենդանի էր, երանելու աչքերը փորեցին։ Ապա մաս-մաս հոշոտեցին նրան՝ ասելով. «Ամեն ոք որ կհամարձակվի արհամարհել ու անարգել թագավորների հրամանները, նրա նման կկորչի»։

199 Իսկ կային և այլ սրբեր՝ այրեր ու կանայք, որոնք եկել էին նրանց հետ, ավելի քան յոթանասուն մարդ։ Նրանցից ոմանք այդ ժամին այնտեղ հասան՝ կամենալով հավաքել ու թաղել նրա մարմնի մասերը, սակայն նրանց սրի քաշելով կոտորեցին, մոտ երեսուներկու հոգի։

200 Նրանք այս էին ասում. «Սիրեցինք քեզ, Տեր, քանզի լսում ես մեր աղոթքի ձայնը, խոնարհեցրել ես քո բարերար ականջը, և մենք քեզ ենք ուղղում մեր ձայնը։ Փառք քեզ, որ չզրկեցիր մեր անարժանությունը քո բարիքներից, ով մարդասեր, որ պահեցիր մեզ աչքի բիբի նման, և քո թևերի հովանու տակ ազատվե-

ֆբրև զքեզ ական, և ի հովանի թևոց քոց ապրեցաք յանօրէնութեանցս բազմութենէ. և ահա մեռանիմք վասն փառաւորեալ անուանդ քոյ»։ Եւ զայս միաբան ասացեալ՝ առ հասարակ սպառեցան։

201 Եւ մի ումն որ անդէն ի ներքս սպանիւն ի հնձանի անդ, ուր էին վանք նոցա. որ այսպէս ասէր ի ժամ հրաժարելոյն իւրոյ. «Գոհանամ զքէն, Տէր բարերար, զի և զիս ոչ զրկեցեր. զի ես հիւանդ էի, և ոչ կարացի ընթանալ և զհետ ընկերացն ժամանել, սակայն դու, Տէր մարդասէր և քաղցր, ընկա՛լ և խառնեա՛ և զիմ ոգիս ի գունդ քոյ սուրբ վկայիցն, ընկերացն իմոց և քերցն, առ քո աղախինն և մայրն մեր և գլուխ Գայիանէ, և զքեզ սիրիչ և որդեակ մեր Հռիփսիմէ»։ Եւ սա այսու օրինակաւ խօսեալ՝ փոխեցաւ։ Եւ քարշեալ ի բաց ընկեցին զմարմինս նոցա՝ առ ի կեր լինել շանց քաղաքին և գազանաց երկրի և թռչնոց երկնից։

202 ԺԹ. Իսկ թագաւորին թողեալ զիւր ամօթն կորանաց, որ պարտ էր նմա ամաչել, որ այնչափ անուանի եղեալ՝ քաջութեամբ առաւելոյր ի մարտս պատերազմացն. նաև և յՈղիմպիադսն Յունաց հսկայազօր երևեալ, բազում գործս արութեան և անդ ցուցեալ, և ոչ սակաւ մղեալ պատերազմունս յայնկոյս Եփրատ գետոյ ի կողմանս Տաճկաց. ուր և կարեվէր խոցեալ՝ ելանէր երիվարաւն ի պատերազմէն. իսկ նորա առեալ զերիվարն, և զասպազէն նորին և զիւր զառնազէնն առեալ կապեալ ի թիկունսն՝ ի վերայ մկանանցն ի լող անցանէր ընդ գետն Եփրատ. արդ՝ որ այնչափ հզօր զօրաւորն էր և բուռն ոսկերօք՝ յաղջկանէ միոջէ յաղթահարեալ լինէր կամօքն Աստուծոյ։ Եւ զայն ոչ էր եդեալ ի մտի զամօթն նախատանացն, այլ ի տեսիլ սիրոյ նորա ցնդեալ՝ տրտմեալ ընդ մահ աղջկանն, տխրացեալ ագայր։

203 «Տեսէ՛ք, ասէ, զկախարդասար աղանդ ազգիդ քրիստոնէից. զիա՛րդ կորուսանեն զանձինս բազումս մարդկան, հանեալ յաստուածոցն պաշտամանէ. յերկրաւոր վայելից կենացս խափանեն, և ի մահուանէ ոչ դողան. մանաւանդ վասն սքանչելոյն Հռիփսիմեայ, որոյ ոչ գոյր համեմատ յերկրի ի ծնունդս կանանց։ Վասն զի սիրտ հատեալ զհետ անհնարին և անմոռաց՝ ի մտացս չանկանի, մինչ կենդանի եմ ես, Տրդատ արքայ։ Զի զՅունաց աշխարհն և զՀոռոմոց քաջ գիտեմ, և զմեր Պարթևաց կողմանսն, վասն զի բնութիւն իսկ է



ցինք բազմության անօրենություններից։ Մեռնում ենք ահա քո փառավորյալ անվան համար»։ Այս բանը միաբերան ասելով ամենքը կոտորվեցին։

201 Նրանցից մեկին հնձանի ներսում սպանեցին, ուր նրանց կացարանն էր. նա այսպես էր ասում կյանքից հրաժարվելու ժամին. «Գոհանամ քեզանից, Տեր բարերար, որ ինձ էլ չզրկեցիր, քանզի ես հիվանդ էի և չկարողացա քայլել ու իմ ընկերների հետ ժամանել։ Սակայն դու, Տեր մարդասեր և քաղցր, իմ հոգին ես ընդունիր ու խառնիր քո սուրբ վկաների գնդին, իմ ընկերներին ու քույրերին, քո աղախին և մեր մայր Գայանե գլխավորին և քեզ սիրող ու մեր որդյակ Հռիփսիմեի մոտ»։ Այսպես խոսելով նա վախճանվեց։ Նրանց բոլորի մարմինները քաշելով դուրս գցեցին, որպեսզի կեր դառնան քաղաքի շներին, երկրի գազաններին ու երկնքի թռչուններին։

202 ԺԹ. Իսկ թագավորը մոռացել էր նվաստացումը, որի համար պետք է ամաչեր, քանզի այնքան անվանի լինելով քաջությամբ գերազանցել էր պատերազմներում, հունաց ոլիմպիական [խաղերում], հսկայի զորությամբ ասպարեզ գալով, բազում քաջագործություններ էր ցույց տվել։ Ոչ սակավ պատերազմներ էր մղել Եփրատ գետի այն ափին, արաբների (Տաճկաց) կողմերում, ուր և խիստ խոցված երիվարով դուրս էր եկել պատերազմից։ Այնուհետև նա վերցնելով երիվարը, ասպազենն ու զենքերը և կապելով մեջքին, ալիքների վրա լողալով՝ անցել էր Եփրատ գետը։ Արդ՝ նա որ այնչափ հզոր էր և ամրակազմ, Աստծու կամքով մի աղջկանից պարտվեց։ Սակայն նա չէր մտածում ամոթալի անպատվությունների մասին, այլ նրա գեղեցկությունը տեսնելու ցանկությամբ վառված, տրտմել էր աղջկա մահվան համար և տխուր սգում էր։

203 «Տեսեք, ասում էր, թե ինչպես քրիստոնյաների կախարդական աղանդը մարդկային բազմաթիվ կյանքեր է խլում՝ նրանց հեռացնելով աստվածների պաշտամունքից։ Երկրավոր կյանքի վայելքները արգելում են և մահվանից չեն դողում։ Մանավանդ սքանչելի Հռիփսիմեի համար [եմ ասում], որ կանանցից ծնվածների մեջ աշխարհում իր նմանը չուներ։ Վասնզի սիրտս նրա հետ է, և նա ամենևին իմ մտքից դուրս չի գա, քանի կենդանի եմ ես՝ Տրդատ արքաս։ Ես քաջ գիտեմ հույների և հռոմայեցիների (Հոռոմոց) երկրները ու մեր պարթևների կողմերը, որը մեր բնիկ երկիրն է, Ասորես-

մեր, և զԱսորեստան և զՏաճկաստան և զԱտրպատականս։ Եւ զի՞ մի ըստ միոջէ թուեմ. զի բազում տեղիք այն են, որ իմ խաղաղութեամբ է հասեալ, և բազումք այն են, որ մարտիւ պատերազմաւ առարի ապստամբեալս։ Ոչ ուրեք տեսեալ է նման նմանութիւն այսր գեղոյ, զոր էր կորուսեալ այս կախարդացն. զի այսպէս զօրացան կախարդինքն, մինչև ինձ յաղթեցին»։

204 Իսկ ի վաղիւ անդր մատուցեալ՝ առնոյր հրաման դահճապետն վասն սրբոյն Գայիանեայ սպանմանն։ Իսկ նա իբրև լուաւ՝ առ սէրն յեղեալ զեղեալ յիմարեալ ապշեալ և ոչ յիշեալ վասն մահուանն սրբոյն Հռիփսիմեայ՝ համարեցաւ եթէ կենդանի իցէ։ Մեծ աւագութեան, բարձի և պատուոյ պարգևս խոստանայր՝ եթէ յանկարծ ոք հնարեսցէ պատրել հաճել զմիտս աղջկանն՝ գալ առ նա։ Իսկ նա ասէ, թէ «Այնպէս կորիցեն ամենայն թշնամիք քո, արքայ, և որ զաստուածրս անարգենն և զհրամանս ձեր թագաւորաց. այլ կայ կախարդն այն, որ ապականեալ կորոյս զքնաղագեղն, և երկու ևս ընկերք նորուն»։

205 Իբրև լուաւ, թէ մնաց սուրբն Հռիփսիմէ՝ դարձեալ ի նոյն տրտմութիւն ընկլաւ, և իջեալ նստէր ի վերայ գետնոյ, և լայր և ի սուգ մտանէր։ Դարձեալ հրաման տայր վասն առաքինւոյն Գայիանեայ, թէ նախ զլեզուն ընդ ծործորակն հանել, և ապա սպանանել. վասն զի իշխեաց վնասակար խրատուն իւրով կորուսանել զայնպիսին, որ զդիցն գեղեցկութիւն ունէր ի մէջ մարդկան։ Իսկ զորին խրատդ անշնորհ առնել զդիսն իշխեաց, որոց նմայն զայն շնորհեալ էր գեղեցկութիւն. վասն այնորիկ զնա կտտամահ սպանցեն։

206 Արդ՝ ելեալ դահճապետն պարծելով՝ չարամահ առնել զնա, և ետ հանել զնոսա շղթայիւք ի քաղաքէն ընդ դուռն հարաւոյ, ընդ կողմն պողոտային որ հանէր ի Մեծամօրի կամուրջն, ի տեղին յայն, ուր սովոր էին սպանանել զամենայն մահապարտս, ի ճախճախուտ տեղի մի, մօտ ի պարկէն փոսին որ շուրջ զայր զքաղաքաւն։ Եւ վարեցին չորս չորս ցիցս միում միում ի նոցանէն։

207 Եւ մինչդեռ կազմէին զայն՝ սկսաւ ասել սուրբն Գայիանէ ընկերօքն հանդերձ այսպէս. «Գոհանամք զքէն, Տէր, որ արժանի արարեր զմեզ մեռանել վասն մեծի անուանդ քո, և յարգեցեր զհո-



տանը, արաբների* երկիրը (Տաճկաստան) և Ատրպատականը։ Եվ ինչու մեկ առ մեկ թվեմ, քանզի բազում են այն վայրերը, որտեղ ես հասել եմ խաղաղությամբ և բազում են այն երկրները, որոնք պատերազմելով ապստամբել և ավարել եմ։ Սակայն ոչ մի տեղ չեմ տեսել նմանությունը այսպիսի գեղեցկության, որը կորցրեցին այդ կախարդները։ Քանզի այնպես զորացան կախարդանքները, մինչև որ ինձ ևս հաղթեցին»։

204 Վաղ առավոտյան նրա մոտ եկավ դահճապետը՝ հրաման առնելու սուրբ Գայանեի սպանման համար։ Իսկ նա երբ լսեց, սիրո պատճառով հուզված, հիմարացած և ապշած լինելով, չհիշեց սուրբ Հռիփսիմեի մահը, կարծելով թե կենդանի է։ Մեծ ավագության, բարձի ու պատվի պարգևներ էր խոստանում, եթե հանկարծ որևէ մեկը կարողանար հնար գտնել աղջկան համոզելու՝ գալ իր մոտ։ Բայց նա ասաց նրան. «Այդպես կկորչեն քո բոլոր թշնամիները, արքա, և որոնք աստվածներին և ձեր թագավորների հրամանները կանարգեն։ Սակայն դեռ կա այն կախարդը, որն ապականելով կորցրեց չքնաղագեղ [աղջկան], ինչպես նաև կան նրա երկու ընկերները»։

205 Երբ լսեց, թե մեռած է սուրբ Հռիփսիմեն, դարձյալ նույն տրտմության մեջ խորասուզվեց և, իջնելով գահից, նստեց գետնի վրա, լալիս էր ու սգում։ Դարձյալ հրաման տվեց առաքինի Գայանեի մասին, թե նախ լեզուն ծոծրակից հանել, և ապա սպանել նրան, քանի որ համարձակվել էր իր վնասակար խրատներով կորստյան մատնել այնպիսի կույսին, որն աստվածների գեղեցկությունն ուներ մարդկանց մեջ։ Իսկ նա սրա խրատների պատճառով համարձակվեց անշնորհակալ լինել աստվածներին, որոնք նրան գեղեցկություն էին շնորհել։ Այս բանի համար անհրաժեշտ համարեց նրան տանջամահ անել։

206 Արդ՝ ելավ դահճապետը նրան տանջամահ անելու. շղթայակապ հանել տվեց քաղաքից, հարավային դռան մոտ, այն ճանապարհի կողմը, որը տանում էր դեպի Մեծամորի կամուրջը, ուր ըստ սովորության սպանում էին բոլոր մահապարտներին, մի ճախճախուտ վայրում քաղաքի շուրջը պտտվող խրամ փոսի մոտ։ Նրանցից ամեն մեկի համար չորսական ցից տնկեցին։

207 Եվ մինչդեռ պատրաստում էին այս, սուրբ Գայանեն սկսեց այսպես խոսել իր ընկերների հետ միասին. «Գոհանում ենք քեզանից, Տեր, որ մեզ արժանի դարձրեցիր քո մեծ անվան համար

*ղեղէն բնութիւնս մեր, զի լիցուք արժանի աստուածութեանդ քում. և հաղորդեցեր զիս մահուան սրբոց քոց վկայիցն, Հռիփսիմեայ և ընկերացն։ Եւ արդ՝ փութամ և անձկացեալ եմ հասանել նոցա որ զքեզն սիրեցին, և ուրախ եմ, զի ժամանեցից զկնի դստերն իմոյ և որդեկին իմոյ Հռիփսիմեայ և քերցն իմոց և ընկերացն։ Արդ՝ յիշեա՛ զմեզ, Տէր, որ «վասն անուան քոյ մեռանիմք զօրհանապազ. համարեցաք իբրև զոչխար ի սպանումն». «արի՛ և մի՛ մերժեր զմեզ վասն անուան քոյ». և դու տո՛ւր մեզ զյաղթութիւնդ քո, և չարն գործակցօքն հանդերձ նկուն լիցի յահէ փառաց քոց»։*

*208 Եւ յետ այսորիկ մատեան և պատառեցին զհանդերձս նոցա յանդամոց նոցա, և պրկեցին զնոսա մի մի ի չորս չորս ցիցս։ Եւ ծակեցին զմորթսն ի պճղունս նոցա և եդին փողս և փչելով այնպէս կենդանւոյն մորթեցին զսուրբսն երեսին, ի ներքուստ ի վեր մինչև ի ստինսն, և ծակեալ զծործորականն՝ և զլեզուսն ընդ այն հանէին։ Եւ վարեցին ևս քարինս ընդ գոգս նոցա, և ցրուեալ զաղիս նոցա յորովայնիցն ընդ գոգս նոցա. և քանզի դեռ ևս կային կենդանի՝ և ապա բարձին զգլուխս նոցա սրով։*

*209 Արդ՝ որք միանգամ եկեալ էին ընդ նոսա անտուստ ի Հռոմոց աշխարհէն, որ միանգամ միաբանք եկին հասին յերկիր Հայաստան աշխարհիս՝ աւելի էին քան զեօթանասուն մարդ։ Իսկ որ սպանան ընդ սուրբ տիկնայսն, ընդ Գայիանեայ և ընդ Հռիփսիմեայ, նոքիմբք հանդերձ որ թուեցան ի թիւ վկայելոցն՝ ընդ ամենայն սպանեալսն երեսուն և եօթն մարդ։*

*210 Արդ՝ ի քսան և ի վեց ամսոյն հոռի կատարեցաւ սուրբն Հռիփսիմէ դասուն սրբով, երեսուն և երեք նահատակակից ընկերօքն հանդերձ և ի քսան և եօթն ամսոյն հոռի՝ սուրբն Գայիանէ երկու իւրովք ընկերօքն, որք ընդ նմա պատերազմեալք պսակեցան և առին զպսակն յաղթութեան։*

*211 Ի. Արդ՝ աւուրս վեց ի խոր տխրութեան և յանհնարին տրտմութեան կացեալ թագաւորն առ անձուկ սիրոյ գեղոյն Հռիփսիմեայ. ապա յետ այսորիկ ժամ տուեալ որսոյ՝ ամենայն զօրաց ածել կուտել զպառականն, խուճապական սփռեալ, երագագ տուեալ, թակարդ ձգեալ, կամեցեալ որս առնել, երթեալ ի դաշտն Փառական Շեմակաց։*

*212 Այն ինչ ի կառս ելեալ կամէր թագաւորն ըստ քաղաքն ելանել՝ անդէն վաղվաղակի պատուհաս ի Տեառնէ ի վերայ հասանէր. և հարեալ զթագաւորն այսոյն պղծութեան՝ ի կառացն ի վայր կործա-*



*մեռնելու, հարգեցիր մեր հողեղեն էությունը, որպեսզի արժանի լինենք քո աստվածությանը, և ինձ էլ մասնակից դարձրիր քո սուրբ նահատակների՝ Հռիփսիմեի ու նրա ընկերների մահվանը։ Արդ՝ շտապում և փափագում եմ հասնել նրանց, որոնք քեզ սիրեցին, և ուրախ եմ, որ կհասնեմ իմ դուստր ու որդյակ Հռիփսիմեի ու իմ քույրերի և ընկերների ետևից։ Հիշիր, Տեր, որ «քո անվան համար մեռնում ենք ամեն օր, իբրև ոչխար, որ մորթվելու է տարվում»։ «Զարթնիր և մեզ ևս մի մերժիր հանուն քո անվան»։ Տուր մեզ քո հաղթությունը, իսկ չարը իր գործակիցներով հանդերձ կընկճվի քո փառքի ահից»։*

*208 Սրանից հետո մոտեցան ու պատառոտեցին նրանց հանդերձները և պրկեցին նրանց՝ յուրաքանչյուրին չորս ցցի վրա։ Ծակեցին մորթերը, ոտքերի կողմից խողովակներ դրեցին և այնպես փչելով ողջ-ողջ մորթազերծ արեցին, երեք սրբերին էլ ներքևից վեր մինչև ստինքները, ապա ծոծրակները ծակելով, լեզուները այնտեղից դուրս քաշեցին։ Քարեր լցրին նրանց գոգերը և նրանց աղիքները որովայններից ցրելով հանեցին գոգները, և որովհետև դեռ կենդանի էին, ուստի սրով կտրեցին նրանց գլուխները։*

*209 Արդ՝ ամենը որ նրանց հետ միաժամանակ եկել էին հռոմայեցիների երկրից և բոլորը միասին հասել մեր Հայաստան աշխարհը, ավելի քան յոթանասուն հոգի էին։ Իսկ որոնք սպանվեցին սուրբ տիկնանց՝ Գայանեի և Հռիփսիմեի հետ, նրանց հետ մեկտեղ, որ հիշվեցին նահատակվածների թվում, ընդամենը երեսունյոթ, մարդ էին։*

*210 Նահատակվեց սուրբ Հռիփսիմեն սրբերի դասով մեկտեղ Հոռի* ամսի քսանվեցին երեսուներեք նահատակակից ընկերներով։ Իսկ Հոռի ամսի քսանյոթին սուրբ Գայանեն իր երկու ընկերներով, որոնք նրա հետ մարտնչեցին, պսակներ ընդունեցին և առան հաղթության թագը։*

*211 Ի. Արդ՝ վեց օր խոր տխրության և անտանելի տրտմության մեջ էր թագավորը, Հռիփսիմեի գեղեցկության նկատմամբ ունեցած տենչալի սիրո պատճառով։ Այնուհետև, որսի ժամ որոշեց, բոլոր զորքերին հրամայեց հավաքել բերել որսի զենքերը, տագնապ գցել, որսի ցանցեր պատրաստել, թակարդներ լարել. կամենում էր որս անել Փառական Շեմակաց* դաշտում։*

*212 Մինչդեռ կառքի վրա նստած թագավորը քաղաքից դուրս էր եկել, իսկույն նրա վրա տիրոջ պատուհասը հասավ, և պիղծ*

նէր։ Եւ անդէն մոլեգնել սկսաւ, և խրովի ուտել զիւր մարմինն. նա և ըստ նմանութեանն Նաբուգոդոնոսորայ արքային Բաբելացւոց, ելեալ ըստ մարդկային բնութիւնս արտաքս՝ ի նմանութիւն վայրենի խոզաց, իբրև զնոսա ընդ նոսա ի մէջ նոցա երթեալ բնակէր։ Եւ այնուհետև մտեալ յեղէգն, խոտաճարակ լեալ անհնարին անզգայութեամբ, մերկ զանձն ընդ դաշտսն կոծելով։ Զի թէպէտ կամեցան արգելուլ անդէն ի քաղաքին՝ ոչ կարացին. մի՝ վասն բնական ուժոյն, և մի՝ վասն զի էր և ոյժն դիւաց որ ի նմայն հարեալ էին։

213 Նա և ամենայն մարդիկն որ ի քաղաքին էին՝ նոյն օրինակ դիւաբախք մոլեգնէին. և անհնարին կործանումն ի վերայ աշխարհին հասանէր։ Եւ ամենայն ընտանիք թագաւորին, ծառայք և սպասաւորք առ հասարակ, հարուածովք հարեալք լինէին. և անհնարին սուգ վասն հարուածոցն լինէր։

214 Յայնմ ժամանակի տեսիլ երևեալ յԱստուծոյ ի վերայ քեռ թագաւորին, որոյ անուն էր Խոսրովիդուխտ։ Արդ՝ եկեալ խօսէր ընդ մարդկանն, պատմէր զտեսիլն և ասէր. «Տեսիլ երեւեցաւ ինձ յայսմ գիշերի. այր մի ի նմանութիւն լուսոյ եկեալ՝ պատմեաց ինձ, եթէ «Ոչ այլ ինչ գոյ բժշկութիւն հարուածոցդ, որ եկին հասին ի վերայ ձեր՝ եթէ ոչ յղեսջիք դուք ի քաղաքն յԱրտաշատ, ածել անտի զկապեալն Գրիգորիոս. նա եկեալ ուսուսցէ ձեզ դեղ ցաւոցդ բժշկութեանն»։

215 Արդ՝ իբրև լուան մարդիկն՝ սկսան ծիծաղել զբանիւքն զոր ասաց. սկսան խօսել ընդ նմա և ասեն. «Եւ դո՛ւ, ուրեմն մոլեգնեցար. դև ուրեմն հարաւ ի քեզ։ Զիա՞րդ է, զի այս հնգետասան ամ է, զի ընկեցին զնա յանհնարին խոր վիրապն, և դու ասես եթէ կենդանի է. արդ և ոսկերոտին իսկ ո՞ւր իցեն. զի նոյն օրին, իբրև իջուցին զնա անդր՝ յօձիցն իսկ տեսլենէն նոյնժամայն սատակեալ իցէ»։

216 Իսկ կրկնեաց դարձեալ ևս կնոջն զնոյն տեսիլ, և հնգկնեաց սպառնալեօք, զի եթէ ոչ պատմեսցէ ստէպ ստէպ՝ մեծամեծ տանջանս ընկալցի, և հարուածք մարդկան և թագաւորին ևս քան զևս սաստկասցին մահու և պէսպէս տանջանօք։ Եւ մտեալ անդրէն Խոսրովիդուխտն՝ մեծաւ երկիւղիւ և զգուշութեամբ ասաց զբանսն հրեշտակին։

217 Իսկ նոքա վաղվաղակի յղէին անդր նախարար զոմն աւագ, որոյ անուն Օտայ կոչէր։ Եւ գնաց նա ի քաղաքն Արտաշատ՝ հանել զնա ի խոր բանդէ վիրապին։ Արդ՝ իբրև եկն եհաս Օ-



դեր խփելով թագավորին կառքից վայր տապալեց։ Անմիջապես սկսեց մոլեգնել ու ինքն իրեն ուտել և բաբելացիների Նաբուգոդոնոսոր արքայի նման մարդկային բնույթից դուրս գալով՝ վայրենի խոզերի կերպարանքով, իբրև նրանցից մեկը գնաց նրանց մեջ բընակվելու։ Այնուհետև մտնելով եղեգնուտը խոտաճարակ դարձավ, սաստիկ անզգայությամբ դաշտերում կոծելով իր մերկ մարմինը։ Թեպետև կամեցան նրան արգելափակել քաղաքում, չկարողացան. նախ բնական ուժի պատճառով և ապա չդիմանալով նրա մեջ մըտած դիվական ուժին*։

213 Նաև քաղաքի բոլոր մարդիկ նույնօրինակ դիվահար եղած մոլեգնում էին, ու սաստիկ կործանում հասավ երկրին։ Թագավորի բոլոր մերձավորները, ծառաներն ու սպասավորները առհասարակ հարվածներ կրեցին ու ահավոր սուգի մեջ էին պատուհասի պատճառով։

214 Այն ժամանակ Աստծուց տեսիլ երևաց թագավորի քրոջը, որի անունն էր Խոսրովիդուխտ։ Արդ՝ եկավ պատմեց մարդկանց իր տեսիլքը՝ ասելով. «Ինձ տեսիլք երևաց այս գիշեր. մի մարդ լույսի նմանությամբ եկավ պատմեց ինձ, թե ձեզ վրա հասած հարվածներից բժշկություն չի լինի, եթե [մարդ] չուղարկեք Արտաշատ քաղաքը՝ այնտեղից բերելու կալյալ Գրիգորին։ Նա գալով կսովորեցնի ձեզ ցավերից բուժվելու դեղը»։

215 Երբ մարդիկ լսեցին, սկսեցին ծիծաղել նրա խոսքերի վրա։ Խոսեցին նրա հետ ու ասացին. «Ուրեմն դու էլ մոլեգնեցիր, և դիվահար եղար։ Ինչպե՞ս է, որ ահա տասնհինգ տարի նրան գցել են սոսկալի խոր վիրապը, և դու ասում ես, թե կենդանի է։ Որտե՞ղ են նրա ոսկորները, նույն օրն իսկ, երբ նրան այնտեղ իջեցրին, օձերի հենց տեսքից նույն ժամին մեռած կլինի»։

216 Սակայն նույն տեսիլքը դարձյալ երևաց կնոջը հինգ անգամ և սպառնալիքով կրկնեց, որ եթե տեսիլքը շուտ-շուտ չպատմի, մեծամեծ տանջանքներ կկրի, և մարդկանց ու թագավորի հարվածները առավել ևս կսաստկանան մահվամբ ու պեսպես տանջանքներով։ Այդ ժամանակ Խոսրովիդուխտը գնաց և մեծ երկյուղով ու զգուշությամբ պատմեց հրեշտակի խոսքերը։

217 Իսկ նրանք շտապով այնտեղ ուղարկեցին մի ավագ նախարարի, որի անունն էր Օտա։ Նա գնաց Արտաշատ քաղաքը նրան վիրապի խոր բանտից հանելու։ Երբ Օտան եկավ հասավ Ար-

տայն ի քաղաքն յԱրտաշատ՝ ընդ առաջ նլանէին նմա քաղաքացիքն՝ հարցանել ղպատճառս գալոյն։ Եւ նա ասէ ցնոսա, թէ «Վասն կապելոյն Գրիգորի եկեալ եմ, տանել զնա»։ Իսկ նոքա զարմացեալ առհասարակ ասէին. «Ո՞ գիտէ թէ կայցէ. զի բազում ամք են, զի ընկեցին զնա անդր»։ Իսկ նա պատմեաց զիրս տեսլեանն և զգործն զինչ եղեն իսկ։

218 Եւ եկին բերին կարս պարանաց երկայնս և ստուարս, և կցեցին իջուցին ի ներքս։ Աղաղակեաց Օտայ նախարարն ի ձայն մեծ և ասէ. «Գրիգորիոս, եթէ կայցես ուրեք՝ ե՛կ ի դուրս. զի տէր Աստուածն քո, զոր պաշտէիրն դու՝ նա հրամայեաց հանել զքեզ այտի»։ Եւ անդէն յոտն կացեալ՝ վաղվաղակի շարժեաց զպարանն, և բուռն հարեալ ունէր։

219 Իսկ սոցա գիտացեալ՝ ձգեալ հանին զնա ի վեր, և տեսին զի թխացեալ էր մարմին նորա իբրև զածուղ սևացեալ. և անդէն հանդերձս մատուցեալ զգեցուցին նմա, և խնդութեամբ առին գնացին յԱրտաշատ քաղաքէ, տանել ի Վաղարշապատ քաղաք։ Յայնմ ժամանակի առ վտանգի տարակուսի ցաւոցն՝ ելեալ թագաւորն յերամէ խոզիցն՝ դիւին առեալ ածէր ընդ առաջ նորա մերկ խայտառակ։ Եւ նախարարքն արտաքոյ քաղաքին սպասէին նոցա։

220 Արդ՝ իբրև տեսանէին զնոսա ի բացէ, զի գային Գրիգորիոս Օտայիւն հանդերձ, և այլ բազում մարդիկ, որ գային ընդ նոսա յԱրտաշատ քաղաքէ՝ ընդ առաջ խաղացեալ, մոլեգնելով և ուտելով զմարմինս իւրեանց՝ դիւահարէին և փրփրէին առաջի նորա։

221 Իսկ նա վաղվաղակի ծունր եդեալ յաղօթս կայր, և նոքա անդրէն ի զգաստութիւն դառնային։ Եւ նա անդէն հրամայեաց, զի արկցեն զանձամբք իւրեանց հանդերձս և ծածկեսցեն զամօթ իւրեանց։ Եւ մատուցեալ թագաւորն և նախարարքն՝ բուռն հարեալ ունէին զոտից սրբոյն Գրիգորի և ասէին. «Խնդրեմք ի քէն, թող մեզ զյանցումն մեր, զոր մեք ընդ քեզ արարաք»։

222 Իսկ նա մատուցեալ կանգնեաց զնոսա ի գետնոյ անտի և ասէ. «Ես մարդ եմ իբրև զձեզ, և մարմին ունիմ իբրև զձերդ. բայց դուք ծանիջի՛ք զձեր արարիչն, որոյ զերկինս և զերկիր արարեալ է, զարեգակն և զլուսին և զաստեղս, զծով և զցամաք. և նա կարող է զձեզ բժշկել»։

223 Իսկ անդէն սկսաւ հարցանել Գրիգորիոս, թէ ո՛ւր եդեալ են մարմինք վկայիցն Աստուծոյ։ Իսկ նոքա ասեն, թէ «Զորո՞ց վկա-



տաշատ քաղաքը, քաղաքացիք նրան ընդառաջ ելան՝ գալու պատճառը հարցնելու։ Ասաց նրանց, թե «կապյալ Գրիգորին տանելու համար եմ եկել» Նրանք զարմացած առհասարակ ասացին. «ո՞վ գիտե՝ ո՞ղջ է, քանզի ահա շատ տարիներ են, որ նրան այնտեղ են գցել»։ Իսկ նա պատմեց տեսիլքի դեպքերը և ամեն ինչ, որ եղել էր։

218 Եվ եկան բերեցին երկայն ու հաստ պարաններ ու իրար կապելով իջեցրին ներքև։ Մեծ ձայնով աղաղակեց Օտա նախարարը ու ասաց. «Գրիգոր, ուր որ ես, դուրս եկ, քանզի քո տեր Աստվածը, որին պաշտում էիր, հրամայեց հանել քեզ այդտեղից»։ Սա անմիջապես ոտքի կանգնեց, իսկույն շարժեց պարանը ու ամուր բռնեց։

219 Իսկ սրանք, իմանալով, քաշեցին, վեր հանեցին նրան և տեսան, որ նրա մարմինը թխացել էր, ածուխի նման սևացել։ Իսկույն հանդերձներ մատուցելով հագցրին նրան և խնդությամբ Արտաշատ քաղաքից առան-գնացին Վաղարշապատ քաղաքը։ Այն ժամանակ սարսափելի տագնապալի ցավերից թագավորը դևի կողմից տարվելով՝ ելավ խոզերի երամից ու գնաց նրան ընդառաջ մերկ խայտառակ [վիճակում]։ Իսկ նախարարները քաղաքից դուրս նրանց էին սպասում։

220 Երբ հեռվից տեսան նրանց՝ Գրիգորին Օտայի հետ մեկտեղ և այլ բազմաթիվ մարդկանց, որոնք նրանց հետ գալիս էին Արտաշատ քաղաքից, ընդառաջ շարժվելով, մոլեգնելով և իրենց ուտելով դիվահարում էին ու փրփրում նրա առջև։

221 Իսկ նա անմիջապես ծունկի գալով աղոթեց, և նրանք իսկույն զգաստացան։ Ապա հրամայեց հանդերձներ դցել նրանց վրա, որ ծածկեն իրենց ամոթը։ Թագավորն ու նախարարները մոտենալով բռնել էին սուրբ Գրիգորի ոտքերից ու ասում էին. «Խնդրում ենք քեզանից՝ ներիր մեր հանցանքները, որ մենք քո նկատմամբ գործել ենք»։

222 Իսկ նա մոտենալով գետնից բարձրացրեց նրանց ու ասաց. «Ես մարդ եմ ձեզ նման և ձեզ նման մարմին ունեմ, իսկ դուք պետք է ճանաչեք ձեր Արարչին, որն ստեղծել է երկինքն ու երկիրը, արեգակը, լուսինն ու աստղերը, ծովն ու ցամաքը և նա կարող է ձեզ բժշկել»։

223 Գրիգորը այնուհետև սկսեց հարցնել, թե ուր են դրված Աստծու վկաների մարմինները։ Իսկ նրանք ասացին. «Ո՞ր վկա-

յից ասես»։ Եւ նա ասէ. «Որ վասն Աստուծոյն մեռան ի ձէնջ»։ Իսկ նոցա ցուցեալ նմա զտեղիսն։ Իսկ նա ընթացեալ ժողովել և ամփոփել զմարմինս նոցա ի սպանման տեղեացն, զի կային անդէն։ Եւ տեսին զի զօրութեանն Աստուծոյ պահեալ էր զմարմինս նոցա. զի այն ինն տիւ էր և ինն գիշեր, զի արտաքոյ ընկեցեալ կային մարմինք նոցա, զի ոչ գազանի էր մատուցեալ և ոչ շան, քանզի անդէն շուրջ զքաղաքաւն էին, մօտ ի քաղաքն. և ոչ հաւու վնասեալ ևս էր նոցա. և ոչ հոտեալ էին մարմինք նոցա։

224 Իսկ նոքա բերին հանդերձս սուրբս պատանաց. բայց երանելին Գրիգորիոս ոչ արժանի համարէր զպատանսն բերեալս թագաւորին, կամ զայլոց մարդկանն. այլ իւրաքանչիւր պատառոտուն հանդերձիւն պատէր զսուրբսն. «Առ անգամ մի, ասէ, մինչև լիջիք դուք արժանի պատել զմարմինս նոցա»։ Եւ ամփոփեաց, առ գնաց ի հնձանն, ուր վանքն իսկ լեալ էին նոցա. և իւր իսկ վանս անդէն կալեալ՝ օթեվանս առնէր։ Եւ երանելին Գրիգորիոս զցայգն ամենայն առ Աստուած աղօթս մատուցանէր վասն նոցա փրկութեան, և խնդրուածս առնէր, զի դարձցին և ապաշխարութեան հնարս գտանել մարթասցեն։

225 Եւ ի վաղիւ անդր թագաւորն և նախարարքն և մեծամեծ աւագանին խառնաղանճ ամբոխիւն բազմութեամբ եկեալ ի ծունր իջեալ առաջի սրբոյն Գրիգորի և առաջի սուրբ ոսկերաց վկայիցն Աստուծոյ՝ խնդրէին և ասէին. «Թո՛ղ մեզ զամենայն յանցումն չարեացն, զոր մեք ընդ քեզ արարաք. և խնդրեա՛ դու վասն մեր յԱստուծոյ քումմէ, զի մի՛ կորիցուք»։

226 ԻԱ. Իսկ կապեալն Գրիգորիոս անդէն խօսել սկսաւ և ասէ. «Որ ասէքդ, թէ «Աստուած քո»՝ Աստուած է և Արարիչ, ամենազօր կամայական բարերարութեամբն յանուստեք յաննիւթոյ զնիւթական արարածս գոյացոյց. նոյն ինքն էական զօրութեամբն յանտեղեաց, յանվայր յոչնչէ իմեքէ հրամայեաց հաստատել երկրի. որ զամենայն ինչ արար՝ Աստուածն ամենակալ, ամենարարն, ամենատէրն։ Զնա ծանիրուք, զի բժշկեսցին ձեր ցաւքդ յանցանաց ի պատուհասէ այտի։ Որ վասն իւրոյ մարդասէր ողորմութեանն խրատեաց զձեզ, ըստ բանի աստուածական Իմաստութեանն, որպէս ասաց իսկ, թէ «Զոր սիրէ Տէր՝ խրատէ. գանալից առնէ զորդի՝ զոր յանկն առնու»։ Իսկ նա բարերարութեամբ իւրով կոչէ զձեզ յորդեգրութիւն։



ների մասին ես ասում», ասաց նա. «Որոնք Աստծու համար մեռան ձեր ձեռքով», և նրանք ցույց տվին նրան այդ տեղերը։ Իսկ նա գնաց, հավաքեց ու ամփոփեց նրանց մարմինները սպանման տեղերում, որովհետև դեռ այնտեղ էին։ Տեսան, որ Աստծու զորությամբ նրանց մարմինները պահպանվել էին, թեպետ ինը օր ու ինը գիշեր նրանց մարմինները դրսում ընկած էին։ Ոչ գազան էր նրանց մոտեցել և ոչ էլ շուն, թեև քաղաքի շրջակայքում էին, մոտիկ վայրում։ Ոչ թռչուն էր վնասել նրանց և ոչ էլ հոտել էին նրանց մարմինները։

224 Իսկ նրանք պատանքի շատ հանդերձներ բերեցին, բայց երանելի Գրիգորը արժանի չհամարեց թագավորի կամ ուրիշների բերած պատանքները, այլ պատեց սրբերին՝ յուրաքանչյուրին իր պատառոտուն հանդերձով՝ ասելով. «Առայժմ [այսպես] մինչև որ դուք արժանի լինեք պատել նրանց մարմինները»։ Եվ հավաքեց առավ գնաց հնձանը, ուր նրանց կացարանն էր եղել և իր իսկ կայանը այնտեղ հիմնելով՝ օթևան դարձրեց։ Երանելի Գրիգորը ամբողջ գիշերը աղոթում էր Աստծուն նրանց փրկության համար և խնդրում էր, որ դարձի գան և կարողանան ապաշխարության հնար գտնել։

225 Հետևյալ օրը թագավորը, նախարարներն ու մեծամեծ ավագանին, խառնիճաղանջ ամբոխի բազմությամբ, եկան և ծունկի իջնելով սուրբ Գրիգորի ու Աստծու նահատակների սուրբ ոսկորների առջև՝ խնդրում էին և ասում. «Ներիր մեր բոլոր չար հանցանքները, որ քո նկատմամբ գործել ենք, և մեզ համար խնդրիր քո Աստծուց, որ չկորչենք»։

226 ԻԱ. Իսկ կապյալ Գրիգորը իսկույն սկսեց խոսել ու ասել. «Դուք ասում եք, թե «քո Աստվածը» Աստված ու արարիչ է. նա ամենազոր սրտաբուխ բարերարությամբ անիմանալի ու աննյութական բանից գոյացրեց նյութական արարածները։ Նույն ինքը աստվածեղեն զորությամբ անտեղ, անվայր, ոչինչ բանից հրամայեց հաստատել երկիրը։ Ամեն ինչ ստեղծեց նա՝ ամենակալ, ամենաստեղծ ու ամենատեր Աստվածը։ Նրան ճանաչեցեք, որպեսզի ձեր հանցանքների ցավերը բուժվեն այդ պատուհասից։ Նա իր մարդասեր ողորմությամբ խրատեց ձեզ ըստ աստվածային իմաստության խոսքի, ինչպես ասաց իսկ, թե «Տերը ում սիրում է, [նրան] խրատում է, ծեծում է այն որդուն, որին հավանում է»։ Իսկ նա իր բարերարությամբ ձեզ կոչ է անում որդեգրվել նրան։

227 «Իսկ ճշմարիտ Որդին Աստուծոյ ոչ ամօթ համարի զայնոսիկ իւր եղբարս անուանել, որք դարձցին յերկրպագութիւն Հօր: Եւ Հոգին սուրբ շնորհեսցէ ձեզ զառհաւատչեայ սիրոյն իւրոյ, զուարճացուցանել զսիրտս ձեր յուրախութիւն որ ոչն անցանէ. բայց միայն եթէ դարձջիք և ըստ կամաց նորա գնասջիք, տացէ ձեզ զանմահութիւն կենաց:

228 «Այլ զի կոչեցէք «Աստուած քո»՝ բարիոք ասացէք. քանզի որք ճանաչեն զնա՝ նա նոցա Աստուած է: Իսկ որք ոչն ճանաչեն, թէպէտ և են նորա արարածք՝ օտար են ի խնամոց և ի սիրոյ մարդասիրութենէ անտի նորա. իսկ երկիւղածք նորա մերձ են առ նա, և այցելութիւն նորա շուրջ է զնոքօք, և պահէ զնոսա:

229 «Իսկ թերևս ասիցես դու, թէ ո՞ւր պահէ զերկիւղածս իւր. զի որ ի ձեռս մեր անկան՝ չարչարեցան և մեռան, և մեք ըստ կամաց մերոց դատեցաք զնոսա: Տե՛ս զի կամեցաւ Աստուած զհանգիստ մահու մարդկան, և ի միւսանգամ գալստեան փառացն երևեցուցանէ՝ տալ զբարիսն սիրելեաց իւրոց և այնոցիկ որ ճանաչենն և առնեն զկամս նորա:

230 «Այլ տե՛ս դու զայս, թէ զիա՛րդ զօրութեամբ աստուածութեան իւրոյ պահեաց հաստատուն զսուրբ վկայսն սիրելիսն, և ոչ նեղութիւնք բազումք երկմտեցուցին զմի ոք ի նոցանէն: Եւ ապրեցոյց զսուրբ զերանելին Հռիփսիմէ ընկերօքն հանդերձ ի ձերոյ պղծութենէ և յանօրէնութենէ:

231 «Արդ՝ պատրանք մեքենայից թշնամւոյն, որ ի սկզբանէ իսկ խաբեցին պատրեցին զմարդիկ և կորստական ճանապարհացն ուղևորս հաստատեցին: Եւ կամ զիմ իսկ զանարժանութիւնս, զի ո՛րպէս բարերարութեամբն իւրով արժանի արար պատրաստել զիս՝ չարչարել վասն անուան իւրոյ մեծի. և ետ ինձ համբերել, զի հասուսցէ զիս ի վիճակսն երկնաւորս, որպէս ասաց իսկ մեծ առաքեալն Պաւղոս, զոր հասցէ ձեզ ճանաչել, և ի նմին իսկ և ի նորուն բանս վայելել մարդասիրութեամբն Քրիստոսի, թէ «Օրհնեալ է այն, որ արժանիս արար զմեզ՝ հասանել ի մասն ժառանգութեան սրբոցն ի լոյս»: Եւ արդարև հասաք պարծանօք ի խաչն Քրիստոսի, զի չարչարանօքն Քրիստոսի վայելեսցեմք ի նորա կամս և ի նորին վարդապետութեանն:

232 «Արդ՝ զնա ծանիջիք, որ զձեզ ի խաւարէն կոչեաց յիւր սքանչելի լոյս փառաց. մատիջի՛ք առաջի աթոռոյ շնորհաց նորա, և գտջիք զողորմութիւն ի նմանէ. և ի բաց թօթափեսջիք զամենայն աղտ



227 Իսկ Աստծու ճշմարիտ Որդին ամոթ չի համարի եղբայր անվանել այնպիսիներին, որոնք կհամաձայնեն Հորը երկրպագելու: Սուրբ Հոգին իր սիրո երաշխիքը կշնորհի ձեզ՝ անանց ուրախությամբ զվարճացնելու համար ձեր սրտերը և կյանքի անմահություն կտա, միայն թե դուք դարձի գաք և ըստ նրա կամքի ընթանաք:

228 Այլ որ ասում եք «քո Աստվածը», ճշմարիտ եք, քանզի նրանք, որ ճանաչում են նրան, նա նրանց աստվածն է, իսկ որոնք չեն ճանաչում, թեպետ և նրա արարածներն են, անմաս կմնան նրա խնամքից ու մարդասիրությունից: Սակայն երկյուղածները մոտ են նրան, և նրա հսկողությունը նրանց շուրջն է ու կպահպանի նրանց:

229 Իսկ թերևս ասես, թե ո՞ւր է պահում երկյուղածներին, քանի որ նրանք երբ մեր ձեռքն ընկան, չարչարվեցին ու մեռան, և մենք ըստ մեր կամքի դատեցինք նրանց: Տես որ Աստված կամեցավ մարդուն մահվան երանությունը և իր փառավոր երկրորդ գալստյան ժամանակ իր վերաբերմունքը ի հայտ կբերի՝ բարիքներ տալով իր սիրելիներին և նրանց, որոնք ճանաչում են նրան և նրա կամքն են կատարում:

230 Այլ տես դու, թե ինչպես իր աստվածության զորությամբ հաստատուն պահեց սիրելի սուրբ վկաներին և ոչ էլ բազում նեղությունները նրանցից որևէ մեկին երկմտեցրին: Նա ձեր պղծությունից և անօրենությունից փրկեց նաև սուրբ երանելի Հռիփսիմեին՝ ընկերներով հանդերձ:

231 Թշնամու խաբեական մեքենայությունը այն է, որ սկզբից իսկ խաբել, պատրել է մարդկանց ու կորստյան ճանապարհների ուղևորներ դարձրել: Եվ կամ հենց ինձ՝ անարժանիս, իր բարերարությամբ արժանի արեց չարչարվելու իր մեծ անվան համար: Ինձ համբերություն տվեց, որպեսզի հասցնի երկնավոր վիճակին, ինչպես որ ասել է մեծ առաքյալ Պողոսը, որին դուք էլ արժանի կլինեք ճանաչելու և նրա խոսքերը վայելելու Քրիստոսի մարդասիրությամբ, թե՝ «Օրհնյալ է նա, որ մեզ արժանացրեց մասնակից լինելու սրբերի ժառանգությանը լույսի մեջ»: Եվ արդարև պարծանքով հասանք Քրիստոսի խաչին, քանզի Քրիստոսի չարչարանքներով պիտի վայելենք նրա կամքի ու նրա վարդապետության մեջ:

232 Արդ՝ ճանաչեցեք նրան, որը ձեզ խավարից կոչեց իր փառքի սքանչելի լույսին, մոտեցեք նրա շնորհների աթոռին և ողոր-



9—1461

չարեաց անօրէնութեան. լուացի՛ք զանձինս ձեր կենդանի ջրովն, և զփառաց լուսոյ զպատմուճանն արժանի լինիջիք զգենուլ յանձինս ձեր։

233 «Այլ վասն սորայն Հռիփսիմեայ դուք իսկ ինքնին գիտէք, թէ ո՛րպէս պահեաց զնա Տէր և ապրեցոյց ի ձեռաց ձերոց, ի պղծութենէ անօրէնութեան։ Եւ դու ինքնին գիտես զչափ քաջութեան ուժոյ պնդութեան ոսկերաց քոց. զիա՞րդ եղեր տկարացեալ առաջի աղջկան միոջ. զի պահեաց զնա զօրութիւն ամենատեառն Քրիստոսի։ Իսկ վասն իմ դու իսկ գիտես, զի հնգետասան ամ է իմ՝ զի կայի ես ի խաւարչուտ ի խոր յանհնարին վիրապին. ի մէջ օձիցն էր բնակութիւն իմ, և վասն ահին Տեառն ոչ երբէք մեղան ինձ. և ոչ զարհուրեցայ ի նոցանէ, և ոչ երկեաւ սիրտ իմ. զի յուսացեալ էի ի տէր Աստուած արարիչ ամենայնի։

234 «Այլ վասն այսորիկ գրեմ, զի տգիտութեամբ արարէք զոր ինչ արարէքն։ Բայց արդ՝ դարձարո՛ւք և ծանիցո՛ւք զՏէր, զի ողորմեսցի և կեցուսցէ զձեզ. և զսպանեալ կենդանիսն բարեխօս արարէք. զի կենդանիք են և չեն մեռեալք. և ծանիցո՛ւք զԱստուած, զի նա ինքն է Տէր ամենայնի. և ի բաց թողէք այսուհետև զպղծութեան պաշտամունսդ, զքարեղէն և զփայտեղէն, զարծաթեղէն և զոսկեղէն պղնձաձոյլ պատկերացդ, զի սուտ են և սնոտի։

235 «Եւ ո՞չ զայդ իսկ ասացի ձեզ վաղագոյն վասն մոլորութեանդ ձերոյ, թէ մառախուղ ստուերացն խաւարին թանձրութեան նստեալ է ի վերայ ձերոյ աչաց սրտին, ոչ կարացեալ հայել իմանալ, ածել զմտաւ, և զԱրարիչն ճանաչել։ Արդ՝ թէ ի ձէնջ ես ուղղութիւն ինչ տեսանէի՝ առ աստուածութիւնն պաշտամամբ մերձենալ՝ ոչ դադարէի դցայգ և զցերեկ աղաչել վասն ձեր, զի մի՛ կորիցէք։ Այլ վասն բազում մարդասիրութեան Արարչին, որ անքնին և անպատում է առ արարածս իւր, որ երկայնմտութեամբ ներէ թողու անսայ խնայէ. վասն բազում գթութեան իւրոյ։

236 «Որ յառուրցն առաջնոց թոյլ ետ գնալ մարդկան ըստ կամաց իւրեանց, որպէս և ասեն իսկ. «Բարձի թողի զնոսա՝ երթալ զհետ կամաց սրտից իւրեանց։ Եւ գնացին նոքա ըստ կամս անձանց իւրեանց»։ Այլ այժմիկ սկսեալ է կոչել զձեզ յիւր փառսն և յանեղծութիւն, լինել ձեզ ժառանգաւոր յաւէժ կենդանութեանն որ ոչն անցանէ։

237 «Վասն որոյ իսկ զիւր վկայսն սիրելիս առաքեաց առ ձեզ. որք ի վկայելն իւրեանց վկայեցին զմիասնական տէրութիւնն Երրոր-



մություն գտեք նրանից, որպեսզի թոթափեք անօրենության ամեն չար աղտ, ձեր անձերը կենդանի ջրով լվաք և արժանի լինեք ձեզ վրա հագնել փառքի լույսի պատմուճանը։

233 Բայց սույն Հռիփսիմեի մասին հենց դուք գիտեք, թե ինչպես Տերը պահեց նրան և փրկեց ձեր ձեռքերից ու անօրեն պղծությունից։ Եվ դու [ով թագավոր] ինքդ գիտես քո ոսկորների ամրության ու քաջության չափը և թե ինչպե՞ս տկարացար մի աղջկա առջև, քանզի նրան պահեց ամենատեր Քրիստոսի զորությունը։ Իսկ իմ մասին դու ինքդ գիտես, որ ահա տասնհինգ տարի է, որ մնում էի խավարչտին ու խոր ահազդու վիրապում։ Իմ բնակությունը օձերի մեջ էր, սակայն Տիրոջ ահից նրանք երբեք չվնասեցին ինձ, ոչ էլ զարհուրեցի նրանցից, և ոչ էլ սիրտս երկյուղ ընկավ, քանզի հուսացել էի ամենի արարիչ տեր Աստծուն։

234 Իսկ այս մասին գրեմ, որ տգիտությամբ էիք արել, ինչ որ արել էիք։ Բայց, արդ՝ դարձի եկեք և ճանաչեցեք Տիրոջը, որպեսզի ողորմի և ապրեցնի ձեզ, սպանված ողջերին բարեխոս արեք, քանզի կենդանի են և ոչ մեռյալ։ Ճանաչեցեք Աստծուն, որը ինքն է բոլորի տերը, այսուհետև հրաժարվեցեք պիղծ պաշտամունքներից, քարեղեն ու փայտեղեն, արծաթեղեն ու ոսկեղեն, պղնձաձույլ արձաններից, քանզի սուտ են ու սնոտի։

235 Չէ՞ որ նախապես էլ խոսեցի ձեր մոլորության մասին, թե թանձր խավարի ստվերի մառախուղը նստած է ձեր սրտի աչքերի վրա և խանգարում է ձեզ նայել, միտք ածել ու ճանաչել Արարչին։ Արդ՝ եթե ես աստվածությանը պաշտամամբ մերձենալու որևէ ուղղություն տեսնեի ձեզանից, չէի դադարի գիշեր ու ցերեկ ձեզ համար աղաչելուց, որ չկորչեք։ Այլ [խոսենք] Արարչի բազում մարդասիրության մասին, որն անքնին ու անպատում է իր արարածների նկատմամբ և համբերությամբ ներում է, լսում ու խնայում շնորհիվ իր բազում գթության։

236 Առաջին ժամանակներում նա թույլ տվեց մարդկանց գնալ ըստ իրենց կամքի, ինչպես և ասել է. «Թողեցի նրանց, որպեսզի իրենց սրտի ուզած ձևով ընթանան, և ընթացան նրանք ըստ իրենց անձնական կամքի»։ Սակայն այժմ արդեն կանչում է ձեզ իր փառքին ու անեղծությանը, որպեսզի ժառանգորդ դառնաք հավերժ կենդանության, որը չի անցնելու։

237 Սրա համար էլ իր սիրելի նահատակներին ձեզ մոտ ուղարկեց, որոնք իրենց նահատակությամբ վկայեցին երրորդության

դական՝ ընդ ամենայն ի վերայ ամենայնի զԱստուած, որ նա ինքն է յաւիտեանս յաւիտենից․ արքայութիւն նորա արքայութիւն յաւիտենից, և տէրութեան նորա վախճան ոչ գոյ։ Եւ զմահն իւրեանց եդին կնիք հաւատարիմ հաստատական՝ իւրեանց ճշմարտութեան հաւատոց․ որոց ահաւասիկ և ճառք ի միջի ձերում պատմին․ որք կենդանի են առ Աստուած և բարեխօս տօնողացն, որ մաղթեմք բարեխօս ունել զնոսա առ Աստուած։ Քանզի վասն Աստուծոյ մեռան՝ կարող են զմեռելութիւն բազմաց կենդանացուցանել։

238 «Վասն այսորիկ նոքօք հաշտեցարու՛ք առ Աստուած, ի ձեռն մահուան Որդւոյն Աստուծոյ․ վասն զի Որդին Աստուծոյ մեռաւ, զի զմեռելութիւն արարածոց կենդանացուսցէ․ իսկ սոքա մեռան, զի վկայք լիցին Աստուածութեան նորա։ Եւ զի ոչ եթէ առանց իւրոյ մահուանն կենդանութիւն տալ մեզ ոչ կարէր, այլ զի մեծացուսցէ զարարածս իւրով յանարգութիւն իջանելովն․ զի զանարգս բարձրացուսցէ իւրովն իբրև զմեզ լինելովն։

239 «Իսկ ոչ եթէ առանց սոցա վկայութեան չլինէր արդեօք հաւատարիմ, այլ զի մեծասցին սոքա որ սիրեցին զնա։ Եւ զմեր շունչս պահեալ ի մարմնի մերում․ զի թէպէտ և հասին մեզ նեղութիւնք մարմնոյ վշտաց և անհնարին ցաւոց, աւելի տանջեալ քան զամենայն մարդիկ․ զիա՞րդ հնար էր միօրեայ տոկալ մարդկային բնութեանս մարմնոյ այնմ ահագին վտանգի չարչարանացն։ Կամ թէ կեցցէ՞ արդեօք մարդ լոկ միօրեայ ժամանակի յանհնարին ի խոր վիրապի անդ յայնմիկ, յորում թաղեալն կայի ես ի մէջ օձիցն իբրև ի շեղջի, և եռային զմարմնովք իմովք, պատեալ կային շուրջ զինև և կայտռային զանդամովք իմովք․ սակայն մեծասքանչ ողորմութիւն Տեառն պահեաց զիս կենդանի։ Եւ որում ոչ ևս էի արժանի՝ զբանս մշակութեան բժշկութեան օգտի ոգւոց և մարմնոց մշակեմք աւասիկ ի միջի ձերում․ բժիշկ ոգւոց և մարմնոց ձերոց պատրաստեցաք՝ զձեր օգուտն ձեզ մատուցանել։

240 «ՅԱստուծոյ ի բարերարութենէ անտի սկսցուք զպատգամս երկնաւորս ձեզ ջամբել․ զի եթէ լուիջիք բանին իրաւանց, քարոզութեան Աւետարանին, հրամանաց Արարչին ամենայնի՝ փրրկեալք սրբեալք լինիջիք ի փոքր պատուհասէդ, և ի յաւիտենական կեանսն վայելեսջիք․ բանին աստուածութեան լուիջիք, և զբարութիւն երկնից արքայութեանն յանձինս ձեր ընկալջիք։

241 «Միայն թէ յակամայ տգիտութենէ մեղացդ, ի քարապաշտ ի փայտապաշտութենէդ սրբեալ լիջիք, և զանճառ բարիսն Աստու-



միասնական տերությունը, ամեն ինչում ամենից վեր Աստծուն, որը հավիտենական է, Նրա արքայությունը հավիտենից է և տերությունն անվախճան։ Նրանք իրենց մահը դրին որպես հավատարիմ հաստատուն կնիք իրենց ճշմարիտ հավատի համար։ Ահավասիկ ձեր մեջ նրանց ճառերն են պատմվում, որոնք կենդանի են Աստծով և բարեխոս՝ [Նրան] տոնողների համար, և մենք մաղթում ենք, որ իրոք բարեխոս լինեն առ Աստված։ Քանզի Աստծու համար մեռած լինելով՝ կարող են շատերին մահվանից կենդանացնել։

238 Ուրեմն նրանց միջոցով հաճեցրեք Աստծուն, Աստծու որդու մահվան շնորհիվ, վասնզի Աստծու որդին մեռավ, որպեսզի արարածների մեռելությունը կենդանացնի, իսկ սրանք մեռան Նրա աստվածության վկաները դառնալու համար։ Առանց իր մահվան նա չէր կարող մեզ կենդանություն տալ, այլ արարածներին բարձրացրեց անարգության աստիճանի իջնելով, որպեսզի մեզ նման լինելով նա բարձրացնի անարգներին։

239 Իսկ առանց սրանց վկայության, արդյոք կարելի չէ՞ր հավատարիմ լինել։ Բայց այդ արվեց, որպեսզի բարձրացնի նրանց, որոնք սիրեցին նրան։ Նույնպես և մեր շունչը մնաց մեր մարմնի մեջ, թեպետ մեզ մարմնական նեղություններ հասան, վշտեր ու անասելի ցավեր՝ բոլոր մարդկանցից ավելի տանջվելով․ Նույնիսկ մի օր չէր կարող մարդկային մարմինը տոկալ այն ահավոր չարչարանքներին։ Կամ թե արդյոք կարո՞ղ է մարդ լոկ մի օր ապրել այն սարսափելի խոր վիրապում, ուր ես թաղված էի օձերի մեջ, որպես շեղջերի մեջ, և վխտում էին նրանք իմ մարմնի վրա, փաթաթվում ինձ և խլրտում էին իմ մարմնի մասերի վրա, սակայն տիրոջ մեծասքանչ ողորմությունը ինձ կենդանի պահեց։ Եվ թեև արժանի չէի՝ ահավասիկ մշակում եմ ձեր մեջ հոգիների ու մարմինների բժշկությունը․ ձեր հոգիների ու մարմինների բժիշկ դարձա ձեզ մատուցելու այն, ինչ որ օգտակար է։

240 Սկսենք խոսել Աստծու բարերարության մասին՝ երկնային պատգամները ձեզ հաղորդելով, որովհետև եթե լսեք ճշմարտության խոսքը, Ավետարանի քարոզությունը, բոլորի Արարչի հրամանները, ապա փրկված և սրբված կլինեք այս փոքր պատուհասից և կվայելեք հավիտենական կյանքը։ Լսեցեք Աստվածային խոսքը և երկնքի արքայության բարությունը ձեր անձի վրա կընդունեք։

241 Միայն թե մաքրված լինեք ակամա տգիտության մեղքերից, քարապաշտությունից ու փայտապաշտությունից և Աստծու

ծոյ յանձինս ձեր ընդունել մարթասջիք. ապա և սուրբ վկայքն Աստուծոյ, զոր դուքն չարչարեցէք՝ վասն ձեր և նոքա բարեխօսութիւն կարեն մատուցանել. և մեր բանքս և ճառքս և ջանս և վաստակս ձեզ յօգուտ սերմանեսցի. բարեկեաց շատակեաց կենօք զձեզ յերկրի վայելեցուսցէ, և յերկինս հանդերձեալ կենացն զձեզ ժառանգորդս արասցէ։

242 «Ապա եթէ ոչ կամիցիք լսել քարոզութեան բանին կենաց՝ աստէն հարեալ վրիժուքն չարաչար հարուածովք զձեզ սատակեսցէ, և ի ձեռն օտար թշնամեաց զձեզ դատեսցի, և միանգամայն իսկ զքէն վրիժուցն հանեալ՝ ի մահ զձեզ մատնիցէ»։

243 ԻԲ. Եւ իբրև խօսեցաւ երանելին Գրիգորիոս զայս ամենայն՝ առ հասարակ զձեռս ղօձիւք արկեալ՝ զպատմուճանսն պատառէին. թագաւորն և նախարարքն, և այլ բազմութիւն մարդկանն իջեալ ի գետին ընդ մոխիր թաւալեալ՝ ասէին առ հասարակ իբրև ընդ մի բերան. «Արդ կայցէ՞ ինչ մեզ յոյս թողութեան յԱստուծոյ. զի մեք կորուսեալ էաք ի տգիտութեան մերում և ի խաւարային ճանապարհս. արդ՝ իցէ՞ թէ թողցին մեղքս այս մեր բազումք»։

244 Նա պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Մարդասէր է Տէր, երկայնամիտ և բազումողորմ է. գթած առ ամենեսեան որ կարդան առ նա, և որ խնդրեն ի նմանէ՝ թողու նոցա»։

245 Իսկ նոքա ասէին, թէ «Ծանո՛ մեզ, և հաստատեա՛ զմիտս մեր, զի մարթասցուք աղաչել զերեսս Արարչին մերոյ զոր ոչն գիտէաք. եթէ դարձեալ արդարև դարձցի՞ և ընկալցի՞ զմեզ յապաշխարութիւն. և կայցէ՞ ևս տեղի դարձի, և չիցէ՞ արդեօք հատեալ յոյս կենաց մերոց ի նմանէն։ Կամ դու արդեօք ո՞չ յիշեսցես զչարիսն, զոր մեք ընդ քեզ արարաք. և տացե՞ս մեզ զուղիղ վարդապետութիւն, և ո՞չ կալեալ ընդ մեզ ոխս, և ո՞ր չարակնիցես զմեզ, և ո՞չ արկանիցես զմեզ յարդարև յուղիղ ճանապարհէն»։

246 Եւ առ հասարակ գոչիւն բարձեալ մարդկանն ի գոչիւն լալոյ թագաւորաւն հանդերձ՝ ամենայն մարդիկն անկեալ թաւալէին առաջի նորա. զի սակաւիկ մի ոչ կարէին մեկնել ի նմանէ, վասն անհնարին հարուածոցն բարկութեան դիւացամոլ տանջանացն։ Զի թէ լինէին երբեք ուրեք մեկնեալ ի նմանէ՝ անդէն դիւացն ի վերայ հասեալ զայրագնեցուցանէին, անդէն իւրեանց ատամամբքն ուտել մարդկան զմարմինս իւրեանց։

247 Արդ՝ իբրև լուաւ սուրբն Գրիգորիոս զայս ամենայն բանս զոր խօսեցան նոքա առաջի նորա, իսկ նա յարտասուս հարեալ ասէ ցնոսա. «Դուք ինքնին գիտէք զայն ամենայն չարիս, զոր դուքն ընդ



անճառ բարիքները կարողանաք ձեր անձի վրա ընդունել։ Իսկ Աստծու սուրբ նահատակները, որոնց դուք չարչարեցիք, կարող են և ձեզ համար բարեխոսություն անել։ Մեր խոսքերը, ճառերը, ջանքն ու վաստակը ձեզ օգուտ կսերմանեն, որ դուք բարեկեցիկ երկարակյաց կյանք վայելեք երկրի վրա, իսկ երկնքում ձեզ ժառանգորդ կդարձնի հանդերձյալ կյանքին։

242 Իսկ եթե չկամենաք լսել կենաց խոսքի քարոզը, այստեղ վրեժի չարաչար հարվածներ խփելով կկոտորի ձեզ, օտար թշնամիների դատաստանին կհանձնի ու միանգամայն վրեժ լուծելով՝ մահվան կմատնի ձեզ»։

243 ԻԲ. Երանելի Գրիգորը երբ այս ամենը խոսեց, առհասարակ իրենց ձեռքերը օձիքին տանելով պատռեցին պատմուճանները։ Թագավորն ու նախարարները և մարդկանց այլ բազմություն, գետնին ընկնելով՝ մոխրի մեջ թավալվում էին ու միաբերան ասում. «Արդյոք կարո՞ղ ենք Աստծուց թողություն հուսալ, քանզի կորած էինք մեր տգիտության մեջ ու խավար ճանապարհներում։ Թողություն կգտնե՞ն մեր բազմաթիվ մեղքերը»։

244 Պատասխան տվեց Գրիգորը ու ասաց. «Մարդասեր է Տերը, համբերող ու բազումողորմ, գթացող է նրանց նկատմամբ, որոնք կդիմեն նրան և եթե իրենից խնդրեն՝ կների նրանց»։

245 Իսկ նրանք ասում էին. «Ծանոթացրու մեզ և հաստատիր մեր միտքը, որպեսզի կարողանանք խնդրել [տեսնելու] երեսը մեր Արարչի, որին չէինք ճանաչում. արդյոք կհամաձայնի՞, կընդունի՞ մեր ապաշխարությունը։ Դեռ կա՞ դարձի տեղ և կամ արդյոք կտրված չէ՞ մեր կյանքի հույսը նրանից։ Կամ դու արդյոք չե՞ս հիշի քեզ հասցրած մեր չարիքները, կտա՞ս մեզ ուղիղ վարդապետություն, ոխ չե՞ս պահի մեր նկատմամբ՝ չարսրտությամբ նայելով մեզ և չե՞ս շեղի մեզ ուղիղ ճանապարհից»։

246 Մարդիկ միասին աղաղակ բարձրացրին ու լաց եղան թագավորի հետ մեկտեղ, բոլորն ընկան և թավալվում էին նրա առջև՝ չկարողանալով մի քիչ հեռանալ նրանից, դիվական տանջանքների անտանելի հարվածների սաստկության պատճառով։ Քանզի, երբ մի քիչ հեռանում էին նրանից, դևերն իսկույն վրա հասնելով կատաղեցնում էին՝ ստիպելով ատամներով իրենց մարմիններն ուտել։

247 Արդ՝ Սուրբ Գրիգորը, երբ լսեց այս բոլոր խոսքերը, որ նրա առջև խոսեցին, արտասուք թափելով ասաց նրանց. «Դուք գիտեք այն ամեն չարիքները, որ ինձ հասցրեցիք։ Ինչպե՞ս կարող

*խս արարէք. զիա՞րդ կարիցէ մարդ տոկալ յայնչափ չարչարանաց վերայ, կամ գո՞յր հնար տոկալ ժամ մի՝ լոկ ի տեսլենէ օձի միոջ բացուստ ի բաց, թո՛ղ թէ ի մէջ բազմութեան օձիցն լինել ամս հընգետասան, և ողջ ապրել, և տոկալ և բնակել ևս հանապազ ի մէջ նոցա։*

*248 «Նախ յայդմ իսկ տեսէք զզօրութիւն Արարչին. զի որ զամենայն արար՝ զիարդ և կամի, յորժամ և կամի կարող է զիւրաքանչիւր բարս փոփոխել. զի և զայն զմեղանչական զթունաւոր զազանս որ յանհնարին գբի անդ՝ ընդ իս անարժանի ընդ իւրում ծառայիս քաղցրացուցանէր։ Զի թէպէտ և մեք անարժանք էաք՝ սակայն վասն ձերոյ օգտի զմեզ պահեալ՝ երևեցոյց զիւրոց սքանչելեացն զօրութիւն. զի զմեզ պահեալ ածեալ, և ի ձեր մշակութեան գործն եկեալ, և զօգուտն զձեր բերեալ, Աստուծոյ մարդասիրութիւնն մեօք առ ձեզ կատարեսցի։*

*249 «Եւ կամ է՞ր արդեօք հնար աղջկան միոջ մանկամարդոյ՝ ունել զդէմ առն սկայի, որպէս տեսէք իսկ աչօք ձերովք. զիա՞րդ էր հնար այդմ լինել, եթէ ոչ Աստուծոյ էր տուեալ զիրաւունս յաղթութեանն՝ պահել զիւր վկայսն անարատութեամբ ի ձերոց յանցուածոց յանօրէնութենէ։ Արդ՝ վասն մահուան այնոցիկ սրբոց երանելեացն, որոց արիւն նոցա հեղեալ յերկրի ձերում, որք արժանի եղեն աստուածութեան շնորհացն և պատարագեցան, վասն որոյ և ձեզ այց և խնդիր եղեալ Հայաստան աշխարհիս. վասն նոցա արդար արեանն հեղլոյ և ձեզ քաւութիւն շնորհի առատիկ ձերով ապաշխարութեամբդ յամենապարգևէն Աստուծոյ։*

*250 Իսկ վասն իմ՝ արդեօք ես ո՞չ էի ի հրամանէ Աստուծոյ ձեզ քարոզ, այլ ի կամս մտա՞ց իմոց. և զիա՞րդ հնար է՛ր այնմ լինել։ Իսկ արդ գո՞յր ինձ արդեօք հնար իշխանութեան՝ իշխել բան մի ի ձէնջ թաքուցանել, թո՛ղ թէ հրաման առեալ յԱստուծոյ։ Զի և ես ի խոր վիրապի անդ զամենայն օր տեսիլ տեսեալ աչօք բացօք զհրեշտակ Աստուծոյ, զի հանապազ քաջալերէր զիս և ասէր, որպէս և այժմ իսկ զնոյն տեսիլ տեսանեմ, որ ասէ ցիս, թէ «Քաջալերա՛ց, պինդ կաց, զի տէր Աստուած պահեաց զքեզ և արժանի համարեցաւ արբանեկութեան իւրոյ. և ետ քեզ զգործս մշակութեան իւրոյ, զի և դու ընդ այլ մշակսն մտեալ՝ վարձս առցես զանապական պարգևացն Քրիստոսի»։*

*251 «Զի և ձեր իսկ արկեալ զիս ի խոր վիրապն, յանհնարին տեղին մահուան, և ելեալ անտի ողջանդամ կամօքն Աստուծոյ։ Իբրև ոչ*



*էր մարդ տոկալ այնչափ չարչարանքներին, կամ որևէ հնար կա՞ր նույնիսկ մի ժամ դիմանալու. մարդ մեկ օձի լոկ տեսքից հեռու է փախչում, թող թե տասնհինգ տարի մնալ օձերի բազմության մեջ և ողջ փրկվել, տոկալ և շարունակ բնակվել նրանց մեջ։*

*248 Նախ այս բանում տեսեք Արարչի զորությունը, որն ամեն ինչ ստեղծել է ըստ իր կամքի և երբ կամենա կարող է ամեն մեկի բնույթը փոխել և, նույնիսկ այն վնասակար թունավոր գազաններին, որոնք սարսափելի հորի մեջ էին. քաղցրացրեց անարժանիս՝ իր ծառայի նկատմամբ։ Թեպետև մենք անարժան էինք, սակայն ձեր օգտի համար պահեց մեզ և ցույց տվեց իր հրաշքների զորությունը։ Քանզի մեզ պահեց, որպեսզի ձեր մշակության գործին մոտենալով և ձեզ օգուտ բերելով՝ Աստծու մարդասիրությունը մեր միջոցով ձեր նկատմամբ կատարվի։*

*249 Կամ արդյոք հնարավո՞ր էր, որ մի մանկամարդ աղջիկ դիմադրեր հսկա տղամարդու, ինչպես տեսաք հենց ձեր աչքերով։ Ինչպե՞ս կարող էր դա հնարավոր լինել, եթե Աստված տված չլիներ հաղթության իրավունքը իր նահատակներին անարատությամբ պահպանելու ձեր անօրինությունից։ Արդ՝ այդ երանելի սրբերի մահվան համար, որոնց արյունը թափվեց ձեր երկրում, և արժանի եղան աստվածային շնորհներին ու նահատակվեցին և որի համար ողորմաց ձեզ և մեր Հայաստան աշխարհին։ Նրանց թափած արդար արյան համար ձեր ապաշխարությամբ ահա քավություն շնորհեց ամեն ինչ պարգևող Աստված։*

*250 Իսկ իմ մասին [եթե խոսենք], արդյոք Աստծու հրամանով չէի՞ քարոզում ձեզ, թե՞ իմ որոշումն էր դա։ Եվ ինչպե՞ս կարող էր այդ լինել։ Իսկ արդ՝ ես հնար ունե՞ի արդյոք համարձակվել որևէ բան ձեզանից թաքցնելու, այն էլ Աստծուց հրաման առած լինելով։ Հենց խոր վիրապում էլ ես ամեն օր բաց աչքերով տեսիլքի մեջ տեսնում էի Աստծու հրեշտակին, որը մշտապես քաջալերում էր ինձ և ասում. ինչպես և այժմ էլ նույն տեսիլքը տեսնում եմ, որ ասում է ինձ, թե «քաջալերվիր, պինդ կաց, քանզի տեր Աստված պահեց քեզ, արժանի համարեց իրեն ծառայելու և քեզ տվեց իր մշակության գործը, որպեսզի դու ևս, այլ մշակների միանալով, Քրիստոսի անապական պարգևներից քո վարձը առնես»։*

*251 Դուք ինձ գցել էիք խոր վիրապը, մահվան սարսափելի տեղը, և ես այնտեղից Աստծու կամքով ողջանդամ ելա։ Այս բո-*

եթէ զայս ասելով՝ անձինս պարծանս տամ, այլ զի ոչ իսկ հնար է թաքուցանել զքանչելիսն Աստուծոյ. քանզի ոչ իսկ թաքչի, այլ պատմի։ Վասն զի զիս ապրեցոյց ի մահուանէ, որ յաչս ձեր մեռեալ համարեալ էի, որպէս և դուք իսկ ձեզէն վկայէք ինձ. և դուք զի մեռեալ էիք ի մեղս ձեր՝ ահաւադիկ մեռեալքդ ի ձեռն մեռելոյս կենդանանայք։ Վասն զի տուաւ ի ձեռս իմ պատմել ձեզ զհրամանս Աստուծոյ, դարձուցանել զձեզ ի ստուգութիւն, ի ճշմարտութեան ճանապարհն, և ի բաց լինել ձեզ յունայնութեան պաշտամանց անտի, ի քարեղէն, ի փայտեղէն, յարծաթագործ, ի պղնձագործ պատկերաց այտի, որ ոչ ինչ իսկ են և ոչ ումեք պիտանացու. դառնալ առ Աստուած կենդանի, որ արար զերկինս և զերկիր և զծով և զամենայն որ է ի նոսա, և ի Բան նորա՝ յՈրդին միածին, և ի Հոգին կենդանի և կենդանարար, սրբիչ և քաւիչ երկրպագուաց և փառաւորչաց իւրոց։

252 «Իսկ եթէ զձեզ յորդոր յօժարութեամբ տեսանիցեմք դարձեալ առ աստուածութիւն նորա՝ ախորժ յօժարութեամբ սկիզբն արասցուք ձեզ պատմելոյ վասն արարչութեանցն, թէ զիա՛րդ բարի աշխարհս ստեղծաւ ի բարերարէ անտի, թէ զիա՛րդ վարեցան կարգք աշխարհիս. զի ոմանք ի մարդկանէ զհաճութիւն բարեացն յիւրանց կամաց կատարեցին առ Աստուած. թէ որ զչարն գործեցին՝ աստէն պատժեցան յերկրի. թէ զիա՛րդ եկն Որդին Աստուծոյ մարմնով յաշխարհ անարգութեամբ. թէ զիա՛րդ գալոց է ի վախճանի նովին մարմնով և փառօք Հօր, և վասն լինելոց բարեացն և հանդերձեալ դատաստանին. և թէ առ այժմ զիա՛րդ օրէն է մեզ գնալ պատուիրանօք ըստ կամացն Աստուծոյ. և թէ զիա՛րդ ապաշխարութիւն գտանել, ընդ նմին և զթողութիւն մեղաց. և թէ զիարդ զմեղուցեալսն ագիտութեամբ՝ քաւել, և ըստ կամացն Աստուծոյ փախչել ի չարէ և զբարիս գործել և խոստացելոց բարեացն հասանել. և թէ զիա՛րդ արժան է գնալ ի ճանապարհս Աստուծոյ։ Զայս ամենայն կարգաւ մի ըստ միոջէ ոճով պատմեցից, անաշխատ լեզուաւ և անհանգիստ բերանով. զի և Տէր ըստ իւրում մարդասիրութեանն ընկալցի զձեր ապաշխարութիւնդ, և դուք արժանի լիջիք մտանել ի շնորհս մարդասիրութեան ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

253 «Սակայն մեք ձեզ ի սկզբանցն սկիզբն արարեալ՝ սկսցուք ցուցանել զաշխարհի զարարչութիւնն, բարերարութեան բարեացն ի բարերարէն, եթէ դուք կամիցիք սրտի մտօք ունկնդիր լինել և հաւատալ։ Սակայն մեք անտուստ ի բնէ սկիզբն արասցուք պատմելոյ



լորն ասելով ոչ թե իմ անձով եմ պարծենում, այլ որովհետև հնարավոր չէ թաքցնել Աստծու հրաշքները։ Քանզի չի էլ թաքցվի, այլ պետք է պատմվի, քանի որ ինձ փրկեց մահվանից, մինչդեռ ձեր աչքում մեռած էի համարվում, ինչպես որ դուք հենց ձեր կողմից վկայում եք։ Իսկ դուք, որ մեռած էիք ձեր մեղքերի մեջ, ահավասիկ մեռյալներդ մեռյալիս ձեռքով կենդանանում եք։ Վասնզի ինձ հանձնարարված է հաղորդել Աստծու հրամանները, ձեզ դարձի բերել դեպի ճշմարտության ճանապարհը, որ հրաժարվեք քարեղեն, փայտեղեն, արծաթեղեն ու պղնձե կուռքերի ունայն պաշտամունքից, որոնք ոչինչ են և ոչ ոքի պիտանի, դարձ կատարեք դեպի կենդանի Աստվածը, որն ստեղծել է երկինքն ու երկիրը, ծովն ու ամեն ինչ, որ նրա մեջ կա և դեպի նրա խոսքը՝ միածին Որդին ու կենդանի ու կենդանարար Հոգին, որը մաքրիչ ու քավիչ է իր երկրպագուներին ու փառավորողներին։

252 Իսկ եթե տեսնենք, որ դուք սրտանց ու հոժարությամբ դարձ կկատարեք առ Աստված, ապա հաճույքով ու սիրահոժար կսկսենք ձեզ պատմել արարչության մասին, թե ինչպես բարի աշխարհն ստեղծվեց բարերարի ձեռքով, ինչպես վարվեցին աշխարհի կարգերը։ Մարդկանցից ոմանք ըստ իրենց կամքի Աստծու հանդեպ կատարեցին հաճելի բարություն, և եթե չարիք գործեցին, պատժվեցին այստեղ՝ երկրում։ Թե Աստծու որդին մարմնով աշխարհ եկավ անարգությամբ և ինչպես վերջում գալու է նույն մարմնով և հոր փառքով և գալիք բարիքների ու հանդերձյալ դատաստանի մասին։ [Պատմելու ենք], թե ինչպես առայժմ մենք պարտավոր ենք ընթանալ պատվիրանների ուղիով և ըստ Աստծու կամքի, թե ինչպես կարելի է գտնել ապաշխարություն և մեղքերի թողություն և ինչպես ագիտությամբ մեղք գործողները կարող են քավություն գտնել և ըստ Աստծու կամքի չարից փախչել և բարիք գործել, որպեսզի խոստացված բարիքներին հասնեն, և թե, ինչպես արժան է, գնալ Աստծու ճանապարհով։ Այս ամենը կարգով մեկ առ մեկ պատմելու ենք պարզ լեզվով ու անլուռ բերանով, որպեսզի Տերը իր մարդասիրությամբ ընդունի ձեր ապաշխարությունը և դուք արժանի լինեք մեր տեր Հիսուս Քրիստոսի միջոցով մարդասիրության շնորհների մեջ մտնելու։

253 Սակայն մենք սկզբից սկսելով, ձեզ ցույց կտանք աշխարհի ստեղծումը՝ բարերարի կողմից արված բարերարությունը, եթե դուք կամենաք սրտանց ունկնդիր լինել ու հավատալ։ Սակայն

ձեզ նախ՝ վասն մեծի միոյ միայնոյ բարերարին, և ապա՝ եղելոցս ամենեցուն ի նմանէ։ Այլ զամենայն ի ձեր աշակերտելոցդ յօգուտ փութամք կատարել ըստ հրամանի աստուածութեանն. կարևորագոյն համարեցաք ընդ նորա և վասն նորին դիպանագոյն և նմանագոյն բանիւք զփոխանակն թելադրել. զի վասն աստուածութեան են բանքս. քանզի գիտեմք, թէ նա է ճշմարիտ Աստուած։

254 «Այլ ոչ եթէ զանհաս բնութենէն կարիցէ ոք ճառել, և որպէս էն՝ զայն կարիցէ ոք պատմել. զի անհաս և անբաւ և անբաւանդակ և անքնին է, անմատոյց և անիմաց է յամենայն արարածոց, աներևոյթ ի տեսլենէ և մօտ առ ամենեսին խնամով տեսչութեամբ գթութեամբ, շնորհօք մարդասիրութեան իւրոյ. ոչ տեսաւ երբէք ի մահկանացու մարմնաւորաց, նա և ոչ ի հոգեղինաց և ի հրեղինաց զուարթնոց։ Միայն փառաւորեալ յամենայն արարածոց. քանզի ամենայն ինչ ի նմանէ է, բայց նա միայն ինքնութեամբ։

255 «Սակայն արք արդարք ի մարդկանէ, որ արժանի եղեն ճանաչել զարարչութիւն նորա, և երկրպագութեամբ կամացն հնազանդեալ հրամանակատարք մշտնջենականին և աստուածամերձ կենացն պատմող մարգարէք անուանեցան ի դարս առաջինս յաստուածապաշտ յազգէն Եբրայեցւոց, յԱբրահամեան զաւակէն, որ աստուածպաշտութեամբն ընտրեալ՝ ամենայն ազգաց հայր անուանեալ. զի ի գլուխ հաւատոց արդարութեան ամենեցուն ելեալ նստիցի յառաջահաւատն պարծանօք, արդարև իսկ հայր անուանեալ. յորոյ օրինակ և ծնունդքն սերեալք ի նմանէ՝ ժողովուրդ առաջին և սեպհական անուանեալ։

256 «Յորոց միջի և մարգարէքն իբրև լուսաւորք աստուածապայծառ պատգամօքն ծագեցին, որք Հոգւոյն շնորհաց աստուածութեանն արժանի եղեն՝ ուսուցանել ամենեցուն զօրէնս Աստուծոյ, և զկամս և զկարգս նորուն ուղղութեան երկնաւոր հրամանացն ամենայն ուրուք առաջի դնելով, որպէս նոցուն իսկ մատեանք մարգարէութեան հաւաստեաւ պատմեն. որ յամենեցունց յօգուտ մինչ ի վախճան ընթացեալ, լի արարեալ զտիեզերս յօրինեալ ընթերցուածովքն յանդիման կացուցանել զարուեստ մարգարէական աստուածեղէն բանիցն. որպէս զի հնար լիցի ամենայն հնազանդելոցն բանից նոցա՝ զԱստուած ինքնին գլխովին յանդիման տեսանել ըստ տեսչութեանն։



Նախ և առաջ կսկսենք պատմել միակ մեծ բարերարի ու ապա նրա կողմից ստեղծվածների մասին։ Եվ այս ամենը հօգուտ ձեզ՝ աշակերտյալներիդ, շտապում ենք կատարել ըստ աստվածային հրամանի, կարևորագույն համարելով նրա փոխարեն և նրա մասին ամենապատշաճ ու ամենահարմար խոսքերով արտահայտվել, քանի որ աստվածության մասին ենք խոսելու և գիտենք, որ նա է ճշմարիտ Աստվածը։

254 Սակայն ոչ ոք չի կարող անհաս էության մասին ճառել և ինչպես որ նա է, ոչ ոք չի կարող պատմել, որովհետև անհաս, անբավ, անպարփակ ու անքնին է, անմատույց ու անիմանալի է բոլոր արարածների համար, տեսողության համար աներևույթ է, սակայն շնորհիվ իր հոգատարության ու գթության մոտ է բոլորին։ Մահկանացու մարդկանցից ոչ ոք նրան չի տեսել երբեք, և ոչ է՛լ հոգեղեններից ու հրեղեն հրեշտակներից որևէ մեկը։ Միայն փառաբանված է բոլոր արարածներից, քանզի ամեն ինչ նրանից է ծագում, բայց նա միայն ինքնագո է։

255 Սակայն արդար մարդիկ, որոնք արժանի եղան նրա արարչությունը ճանաչելու և երկրպագությամբ նրա կամքին հնազանդվեցին, մշտնջենականին հրամանակատար դարձան և աստվածամերձ կյանքի մասին պատմեցին՝ առաջին դարերում անվանվեցին մարգարեներ, եբրայեցի աստվածապաշտ ազգից, Աբրահամի զավակներից, որն իր աստվածպաշտության համար ընտրվելով՝ ամենայն ազգաց հայր անվանվեց ու որպես հավատքի գլուխ՝ պարծանքով նստելու է բոլորի աջակողմը և արդարև արժանի է հայր կոչվելու։ Նույնպես և նրանից ծնված սերունդը առաջին և սեփական ժողովուրդ է կոչված։

256 Նրանց միջից ծագեցին մարգարեները իբրև աստվածապայծառ պատգամներ ունեցող լուսավորներ, որոնք արժանի եղան Հոգու աստվածային շնորհներին, ամենքին սովորեցրին Աստծու օրենքները, նրա կամքը ու երկնավոր հրամանների ուղիղ կարգը ամենքի առջև դրեցին, ինչպես նրանց մարգարեական մատյաններն են հավաստիորեն պատմում, որպեսզի բոլորի օգուտը մինչև վերջ կրանա։ Տիեզերքը լցրին կարգավորված ընթերցվածքներով՝ ցույց տալով աստվածեղեն խոսքերի մարգարեական արվեստը, որպեսզի բոլոր նրա խոսքերին հնազանդվողները կարողանան հայտնի տեսնել հենց իրեն՝ Աստծուն, ըստ վերին կարգադրության*։

257 Արդ՝ ի մէջ սրբոցն աստուածապաշտ գնդաց մարգարէիցն ումն յարուցեալ մեծ մարգարէ, որոյ անուն Մովսէս կարդացեալ, արժանի եղեալ աստուածութեան շնորհացն. որոյ սկիզբն արարեալ ուսուցանելոյ յամենաստեղծ յսկզբնագործ ժամանակէն՝ աշխարհահամար աշխարհապատում մարգարէութեամբ՝ ամենեցուն աւանդեաց զճշմարիտ գիտութիւն։ Ըստ նմին օրինակի և մեր անտի սկիզբն արարեալ՝ ամենուսոյց շնորհօք Հոգւոյն բան ի գործ արասցուք վարդապետել ձեզ, փոյթ յանձին կալեալ վասն երկուց աշխարհաց հաստատելոց ի բարերարէն Աստուծոյ, վասն սկզբան և կատարածի, վասն անցաւորիս և վասն յաւիտենական մշտնջենաւորին։ Մեզ տացին բանք ի բերան, մեզ՝ ցուցանել զօգուտն, և ձեզ՝ լսել, ընդունել և հաւատալ, և քակել ի սատանայական գործոց չարութենէ, և աստուածամուխ կենացն լինել ժառանգորդ։

258 «Արդ՝ սկսցուք շնորհօքն Քրիստոսի ձեզ պատմել մի ըստ միոջէ մանրապատում նշանակօք, և դուք ունկնդիր եղեալ սրտի մտօք լուիջի՛ք»։

257 Արդ՝ սուրբ մարգարեների աստվածապաշտ գնդերի միջից ելավ մի մեծ մարգարե, որին կոչում էին Մովսես և արժանի լինելով աստվածային շնորհներին, սկսեց ուսուցանել ամենաստեղծ սկզբնագործ ժամանակի մասին, աշխարհահամար, աշխարհապատում մարգարեությամբ ամենքին ավանդեց ճշմարիտ գիտությունը։ Նույն ձևով մենք էլ Հոգու ամենուսույց շնորհներով սկսենք ձեզ վարդապետել, ջանք դնենք պատմելու երկու աշխարհների մասին, որոնք բարերար Աստծու ստեղծածներն են, սկզբի ու վախճանի, անցավորի ու հավիտենական մշտնջենավորի մասին։ Թող [Աստծու] խոսքերը մեր բերանում լինեն և մենք ցույց տանք օգուտը, իսկ դուք՝ լսեք, ընդունեք, հավատաք ու հեռանաք սատանայական չար գործերից՝ աստվածամուխ կյանքի ժառանգորդ դառնալով։

258 Արդ՝ սկսենք Քրիստոսի շնորհներով մեկ առ մեկ մանրապատում նշաններով ձեզ պատմել, իսկ դուք ունկնդիր եղեք ու սրտանց լսեցեք։

# ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

*259 ԻԳ. Տէր Աստուած, որ նա միայն ինքնութեամբ, և ոչ ոք յառաջ քան զնա. չիք ոք այլ Արարիչ ամենայնի՝ որ երևի և որ ոչն երևի. բայց Որդին միածին որ ի Հօրէ ծնեալ, և Հոգի նորուն որ ի նորին յէութենէ. որով եղև աշխարհս ի սկզբանց անդ, արարեալ միասնական Երրորդութեանն միով զօրութեամբ կամացն ամենազօրաց, միախորհ, միակամ, միաբուն ինքնութեամբ, և ամենայն ի նմանէ եղեալ, երկինք և երկիր։ Արարեալ զերկինս խորանարդ հաստայարկ, և զերկիր թանձրայատակ աղխեալ սեղմեալ. և զերկինս կախեալ զոչնչէ, և զերկիրս ի վերայ ոչնչի կացուցեալ, և ի նմին զանդունդս համատարածս խաւարազգածս աներևոյթս անկազմս անարարս և անյարդարս, անպատրաստս ստուերամածս։*

*260 Եւ անդէն իսկ ընդ ասելն Հօրն արարչութեան ցարարչակից Որդին և ցհամագործ Հոգին որ ի վերայ ջուրցն շրջէր, անդ ի ներքոյ ջուրցն հրամայեաց լինել կազմածոյն յօրինուածոց արարածոց։ Ասացեալ ի Հօրէ առ խորհրդակալսն խորհրդակատարսն համագործսն՝ լինել լոյս, և անդէն եղեալ լոյսն համասփիւռ՝ խաւարակուլ օրաբեր։ Եւ յետ այսորիկ հաստատութիւն ջրամած սառնեղէն ծովահերձ ջրաբաժին. որով երևեալ ցամաքն ամենածին ծաղկաբուղխ տնկաբեր։ Եւ յետ այսորիկ ասացեալ միասնական Երրորդութեանն զօրութեան՝ լինել լուսաւորացդ առ ի ջրեղէն խորանանման հաստատութեան երկնին ճառագայթաձիգք, աշխարհազունդք, նշանացոյցք, ժամանակաչափք. և ապա ղազգն շնչակեաց թռչնոց և զեռնոց և ջրածին կայտառաց։*

*261 Յետոյ բղխեալ եռացեալ յերկրէ ամենայն չորքոտանեաց ազգ, իւրաքանչիւր ըստ իւրում կարգի, վայելչիս հաստատեալ յառաջակամ պատրաստութեամբ կամացն աստուածութեան առ ի պա-*



# ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻ*

*259 ԻԳ. Տեր Աստված միակն է իր էությամբ և ոչ մեկը չի եղել նրանից առաջ։ Չկա այլ Արարիչ այն ամեն ինչի, որը երևելի և աներևույթ է, բացի Հորից ծնված միածին Որդուց և Նրա Հոգուց, որ նույն էությունից է, որով ի սկզբանե եղավ աշխարհը, ստեղծվեց ամենազոր կամքի միակ զորությամբ, միասնական Երրորդության մեկ մտածողությամբ, կամքով և բնությամբ։ Նրանով էր ստեղծված ամենայն ինչ՝ երկինքն ու երկիրը։ Նա ստեղծեց երկինքը ամրածածկ, գմբեթաձև և երկիրը՝ թանձրահատակ, պարփակյալ ու պինդ։ Երկինքը ոչ մի բանից չի կախված [դատարկության մեջ], իսկ երկիրը ոչնչի վրա է կանգնեցված, նրա (դատարկության) մեջ կան համատարած անդունդներ՝ խավարամած, աներևույթ, անկազմ, անկերպարանք, անհարդար, անպատրաստ, ստվերամած։*

*260 Ապա իր արարչական խոսքով դիմեց արարչակից Որդուն և համագործ Հոգուն, որը շրջում էր ջրերի վրա։ Հայրը հրամայեց, որ ջրերի տակ գոյանան արարածների կարգավորված հորինվածքները։ Հայրն ասաց իր խորհրդակիցներին, խորհրդակատարներին, գործակիցներին՝ թող լինի լույս և ահա եղավ համասփյուռ լույսը խավարը փարատող և օրաբեր։ Դրանից հետո [ստեղծվեց] ջրածածկ, սառնեղեն, ծովը պատառող, ջրաբաժան [ամուր] հաստատությունը, որով երևաց ամենածին ծաղկաբուխ և տնկաբեր ցամաքը։ Հետո միասնական Երրորդության զորությունն ասաց՝ թող լինեն ջրերի մեջ լուսավորներ, երկնքի խորանանման հաստատության մեջ ճառագայթաձիգներ, լուսավոր գնդեր, նշանացույցներ, ժամանակաչափ [լուսատուներ]։ Ապա [ստեղծեց] շնչավոր թռչունների ցեղը, զեռունները և ջրածին ձկները։*

*261 Հետո երկրից բխեցին եկան չորքոտանի ցեղի բոլոր տեսակները, յուրաքանչյուրն ըստ իր կարգի, հիանալիորեն հաստատված աստվածային կամքի նախապատրաստված բարյացակամու-*



10—1461

տիւ մարդոյն։ Որ զվայելչականն հանդերձեալ առնել Արարչին, որ կամարար կամացն առեալ անդէն զբարերարութիւն իւր ցուցանել, առնել զբանաւոր զիմաստուն զխօսուն արարածն, ի մէջ անխօս անբան անիմաստ արարածոցն։ Զի իմաստունն գիտասցէ զպատիւ Արարչին. իմացեալ զԱրարչին սքանչելութեան շնորհս փառաւորութեան՝ գիտասցէ դարձուցանել ի նմանէ զփառաւորութիւն փոխարէն. և ընդ նմին և ի ձեռն նորին՝ ամենայն արարածք երևեալ գործքն մատուսցեն զփառաւորութիւն։

262 ԻԴ. Իսկ ի մէջ աներևութիցն արարեալ աներևոյթ փառաւորիչս—զօրս հրեշտակաց հոգեղէնս, հրեղէնս, բազմութիւնք դասարթնոց։ Սոքա յօդս վերինս բնակեալ են, ի վերայ հաստատութեան ջրայարկի. իսկ մարդկանս ի ներքոյ, ի հողեղէն բնակութեան երկրիս, տուեալ վիճակք։ Զի Աստուծոյ բարերարի զամենայն արարեալ, կարգս լինելութեան հաստատեալ. իսկ չարն յանձնիշխան կամաց մտեալ՝ կործանէ զիւրաքանչիւր ոք առանձինն. այլ յԱրարչէն բարի եղեալ ամենայնն հաստատեցաւ։

263 Որ յառնելն զմարդն՝ սքանչելագոյն կարգաւ զիշխանն ի մէջ անցուցեալ, և անդ է տեսանել սքանչելիս և զարմանալիս և անհասական հրեշտակակերպս։ «Արասցո՛ւք, ասէ, մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան»։ Իսկ արդ՝ ըստ որո՞ւմ պատկերի արդեօք ասիցէ, և կամ ըստ որո՞ւմ նմանութեան զմարդն առնել. քանզի անեղծական, անստեղծական, անտարրական, իսկական աստուածութիւնն ճանաչի։ Ո՞րպէս լինելոցն արդեօք էականին հանգոյն առնոյր լինել, կամ հողն սակաւիկ՝ ինքնաբուն զօրութեանն Աստուծոյ. որ և անտեղեօք և անչափակալ վայրօքն, անսկզբնական լիութիւնն անմատոյց յումեքէ ունի մշտնջենաւոր նոյն պարզական և անշարժական միապէս։

264 Իսկ արդ՝ ո՞րպէս ստեղծականին զինքն օրինակ դնիցէ, և կամ զկաւն դրօշեալ՝ Աստուծոյ պատկերաւն ձևիցէ. զոր և ասէն իսկ, թէ «Ըստ պատկերի Աստուծոյ արար զնա»։ Նախ ասաց բանս յառաջասաց պատմութեան հանդերձելոցն, ապա անց յառաջակայսն, և ի լինելոցսն նշմարեցուցանէ։ Ու են որ անդէն իսկ մօտալուտ առաջոյ՝ ի նոյն ի նմին ժամանակի դէմ յանդիման ցուցանէ. զի տէր ըստ պատկերի Աստուծոյ արար զնա։ Մի՝ վասն իմաստու-



թյամբ, ի պատիվ մարդու, որը պետք է կատարեր այն, ինչ հաճելի է Արարչին։ Նա իր սեփական կամքով ցուցաբերեց իր բարերարությունը, ստեղծելով բանավոր, իմաստուն, խոսուն արարածին, անխոս, անբան, անմիտ արարածների միջև, որպեսզի իմաստունը ճանաչի Արարչի պատիվը և հասկանալով Նրա փառքի սքանչելի շնորհքը, գիտակցի, որ պետք է իր կողմից փառավորի Նրան և որ Նրանով ու Նրա միջոցով ամենայն արարածները [իրենց] տեսանելի գործերը որպես փառավորություն Նրան մատուցեն։

262 ԻԴ. Իսկ աներևույթ [արարածների] մեջ ստեղծեց աներևույթ փառավորիչներին՝ հրեշտակների հոգեղեն, հրեղեն զորքերը, արթունների բազմությունը։ Սրանք վերին օդում են բնակվում, ջրածածկ հաստատության վրա, իսկ մեզ՝ մարդկանցս տեղ է տըրված ներքևում այս երկրի հողեղեն բնակավայրում։ Քանզի բարեբարն Աստված ստեղծել է ամեն ինչ, հաստատելով [արարածների] լինելության կարգը։ Սակայն չարը անձնիշխան կամք ունենալով, կործանում է ամեն մի առանձին անհատի։ Մինչդեռ Արարիչը ամեն ինչ բարի էր ստեղծել։

263 Ստեղծելով մարդուն, Նա սքանչելագույն կարգով իշխան դարձրեց նրան և ահա այստեղ կարելի է տեսնել հրաշալի, զարմանալի և անհասկանալի հրեշտակային կերպարանքը։ «Ստեղծենք, ասում է Նա, մարդուն, ըստ մեր պատկերի և նմանության», իսկ արդյոք ո՞ւմ պատկերը Նա նկատի ուներ և կամ ո՞ւմ նմանությամբ էր ստեղծելու մարդուն։ Քանզի իսկական աստվածությունը հայտնի է որպես անեղծ, անստեղծ, աննյութական։ Արդյոք ինչպե՞ս ստեղծվելիքը կարող էր նման լինել իսկական գոյություն ունեցողին կամ սակավիկ հողը՝ Աստուծո բնական զորությանը։ Նա տարածությամբ չի սահմանափակված և անչափելի է, անսկիզբ լիություն ունի, բոլորին անմատչելի է, մշտնջենապես նույնը, պարզ և միանգամայն անշարժ։

264 Արդ, ինչպե՞ս կարող էր ինքն իրեն դնել որպես պատկեր ստեղծվողի համար, կամ կավին կերպարանք տալով, Աստուծո պատկերով ձևել։ Ինչպես ասված է «ըստ Աստուծո պատկերի ստեղծեց նրան»։ Նախ ասաց այս խոսքերը նախատեսելով հանդերձյալի պատմությունը, ապա անցավ ներկային և ակնարկեց լինելիքին։ Իսկ ինչ որ մոտալուտ [գալիք] է, անմիջապես հայտնի ցույց տվեց։ Քանզի տերը ըստ Աստուծո պատկերի ստեղծեց նրան։ Մի կողմից՝ հանուն նրա (մարդու) իմաստության, բանա-

թեան, բանաւորութեան, խելամտութեան, կենդանութեան, հոգևոր շնչոյն, զոր շնորհեաց առաւելութիւն՝ գիտել ճանաչել իմանալ և ի միտ առնուլ զամենայն շնորհաց զաստուածակիր զաստուածատուր իմաստութիւնն և զբանաւորութիւնն, զաստուածածանօթութիւնն և զպետութիւնն, և իշխել ի վերայ ամենայն երկրաբուղխ երկրածին ստեղծուածոցն, և զգիտութիւն յառաջգիտութեանն, և կացոյց զնա տէր ամենայնի։ Եւ ասաց Աստուած, թէ «Ամենայն քաղցրաբուղխ սերմանիք երկրի՝ ձեզ լիցի ի կերակուր»։ Եւ ապա զամենայն գազանս և զանասունս և զթռչունս ածեալ առաջի մարդոյն հնազանդէր։ Իսկ ապա աստուածակիր իմաստութեամբն խելամտեալ՝ ճանաչել ըստ իւրաքանչիւր ըստ առանձնային կերպարանաց զանունն նշմարեցուցանել. զի զգիտութիւն Տեառն ի մէջ անցուցեալ, նորա գիտութեամբ զնորա արարածս ճանաչել՝ նորա նման անուանեցաւ։

265 Եւ մի՝ վասն այսորիկ ասէ նման, վասն անձնիշխանական կամացն իշխանութեան։ Զի յԱստուծոյ յամենագործութեանն և ամենարարութեանն երկու արարածք պատուականք և արգոյք եղեալք ի բարերարէն հաստատեցան, մարդիկ և հրեշտակք։ Արդ՝ զմարդիկ թողեալ ի կամս անձնիշխան կամաց, վասն զի իւրովք կամօք անձնիշխանութեանն գիտասցէ ընդ բարեացն գործոց՝ շնորհս գտանել ի բարերար Տեառնէն և յԱրարչէն. և եդեալ առաջի նորա զգիտութիւն պատուիրանաց հաճոյիցն Աստուծոյ, զի գիտասցէ խոյս տալ ի չարէն, և զբարին ընտրել իւրոց կամացն լաւութեամբ, իբրև յինքեան քաջութենէ, իւրով անձնիշխան կամօք՝ յԱրարչէ անտի զիւրոց վաստակոց առեալ զփոխարէնս պատուեսցէ։

266 Իսկ վասն նմանութեանն իմանալի է այսպէս. զի ամենայն արարածք ընդ հնազանդութեամբ ծառայութեան են հարկեալք. զի մի՛ այլ աւելիս ինչ իշխեսցեն գործել քան զայն, որչափ ինչ նոցայն հրամայեցաւ՝ հարկք եդան ի վերայ իւրաքանչիւր՝ կատարել զհրամանս։ Բայց Աստուած զմարդն միայն բազմապատիկ փառաւորեաց և մտօք մեծացոյց, հոգեխառն հրեշտակակիցս խոնարհագոյնս արար։

267 Տե՛ս զարեգակն և զլուսին և զաստեղս՝ մեծամեծս ո՞րչափ քան զմարդն իցեն, և նորա կամացն կան, հարկեալք ընդ հրամանաւ պատուիրանացն։ Ո՛չ արեգակն յընթացից դադարէ, և ոչ լուսին կասէ ի մաշել և լնուլ, ո՛չ աստեղք զկարգօք իւրեանց անցանեն, և ոչ լերինք տեղափոխ լինին. ո՛չ օդք ի շշնջելոյ դադարեն, և ոչ ծով



կանության, խելամտության, կենդանության, հոգևոր շնչի, որն առատորեն շնորհեց, որպեսզի նա գիտենա, ճանաչի, տեղյակ լինի և իմանա ամենայն շնորհների աստվածատուր իմաստությունը, բանականությունը, աստվածածանոթությունը, տիրությունը, իշխելը ամենայն երկրաբուխ, երկրածին արարածների վրա ու կանխատեսելու գիտությունը և նրան դարձրեց ամենայնի տերը։ Ասաց Աստված, թե «երկրի բոլոր քաղցրաբուխ սերմերը ձեզ լինեն որպես կերակուր»։ Ապա բոլոր գազաններին, անասուններին ու թռչուններին Նա բերեց մարդու առջև և հնազանդեցրեց։ Ապա աստվածային իմաստությամբ [մարդը] խելամուտ եղավ ըստ յուրաքանչյուրի առանձին կերպարանքի ճանաչել և ցույց տալ անունը։ Քանզի Տերը գիտություն ներշնչեց, և Նրա գիտությամբ [մարդը] ճանաչեց Նրա արարածներին և Նրան նման համարվեց։

265 Մյուս կողմից նա ասում է. «նման» Նրա անձնիշխան կամքի հզորության համար։ Քանզի Աստուծո ամենակարողության և ամենաստեղծ գործունեության շնորհիվ երկու պատվական և հարգի արարածներ հաստատվեցին բարերարի կողմից՝ մարդիկ և հրեշտակները։ Արդ, մարդուն թողեց իր անձնիշխան կամքին, որպեսզի իր անձնական ազատ կամքով ի վիճակի լինի բարի գործերի փոխարեն արժանանալ բարերար Տիրոջ և Արարչի շնորհին։ Նա դրեց նրա առջև աստվածահաճո պատվիրանների գիտությունը, որպեսզի գիտակցի, որ պետք է չարից խույս տալ և բարին ընտրել իր կամքի ուղղամտությամբ, անձնական զորությամբ, իր անձնիշխան կամքով և ստանալով Արարչից իր վաստակի փոխհատուցումը, պատվի Նրան։

266 Իսկ նմանությունը այսպես պետք է հասկանալ. ամենայն արարածները հարկադրված են ծառայական հնազանդության, որպեսզի չլինի թե համարձակվեն ավելին գործել, քան նրանց հրամայված չափը, յուրաքանչյուրը հարկադրված լինելով հրամանները գործադրել։ Բայց Աստված մարդուն հատկապես բազմապատիկ փառավորեց, մտքով հարստացրեց, դարձնելով հոգեպես հրեշտակներին խոնարհագույն ընկերակից։

267 Տես արեգակը, լուսինը և աստղերը ինչքան մեծ են մարդուց, սակայն նրանք Նրա կամքին ենթակա են, հարկադրվելով պատվիրանադրի հրամաններին։ Ոչ արեգակը դանդաղում է իր ընթացքից, ոչ լուսինը դադարում է նվազելուց և լիանալուց, ոչ էլ աստղերը իրենց կարգից առաջ են անցնում։ Ոչ լեռները տեղա-

ի սահանս ծփանաց անդնդային մոլեգին ալեացն խռովելոց յուղեղոցն սաստկութեամբ անդադար կուտակելոցն՝ զեդեալ սահմանն ոչ կարացեալ անցանել և ապականել զերկիր. և ոչ երկիր բառնալ կրել դանդաղի զամենայն։ Որոյ հրամանաւ յօրինեալ է ամենայն, որոյ սուրբ և երկնաւոր զուարթունքն կան յանդադար փառաբանութեան։ Որ արար զբարձրութիւն երկնից և զթիւս աստեղաց, զջուրս ծովու և զաւազ երկրի, զկշիռս լերանց։ Որ հանէ զամպս և արգելու զհողմս, և դարձուցանէ զերեկ, և դալարեցուցանէ զչոր զօսացեալս, և՛ ժողովէ զանձրևաշիթս։ Վասն որոյ մարգարէութեան հոգին պատմէ, թէ «Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս ամենայն, և թզաւ զերկինս, և զերկիր ամենայն քլաւ իւրով. ո՞վ եդ զլերինս ի կշիռս, և զդաշտս կըշռորդօք եբարձ»։ Ո՞ր իցէ տեղին, որ զնա բարձեալ ունիցի, որոյ բանիւ արարածք ամենայն կախեալ կան։ Որ գիտէ զանցս գնացից երկնաւոր գնտոցն, որ ի վերայ օդոց շրջին, և ոչ թիւրին. տարածին, և ոչ ըստ արտուղի անկանին. ելանեն և մնան վարձկանք պարտաւորք տարւոյ. կասեն՝ արծարծին ի տունջենէ ի գիշեր և ի գիշերոյ ի տիւ. փոխարէնս արկեալ միմեանց փոխարինին՝ աննախանձ տան, անարգել դարձուցանեն ի չափ ժամանակաց, ի չորս որոշմունս փոփոխել տարւոյն, որպէս և Աստուած կարգեաց։

268 Եւ զիա՞րդ գնայցեն զօրութիւնք աստեղաց երկնից հաստատութեան՝ կշիռ կարգեալ ի գնացս իւրեանց անդադար, և ոչ անցանեն զչափով։ Կամ ուստի՞ ելանիցեն օդաշունչ սիք հողմոցն բըռնութեան, և ո՞ւր երթեալ դադարիցեն. և զի՞նչ որոշմունք իցեն միոյ միոյ ի նոցանէ. մինն քաղցրաշունչ՝ սնուցանէ զբոյսս, մինն սաստկացեալ՝ զպտուկսն բանայ, մինն զզեստս կկէ, գունակ գունակ ծաղկօք զերկիր զարդարէ ի գունագոյն երանգս. զմերկ ծառս ագուցանէ, զվարսաւոր գագաթունս զարդարէ։

269 Ուստի՞ ծանիցին օդք ամպածինք, որ և ի նոյին սպառին ի փայլատակմանց հողմոյ. ի ձայնէ որոտման ծնանին անձրևք. և ուր Տէր հրամայէ երթալ՝ երթեալ իջուցանեն և ոռոգանեն զերկիր. սնուցանեն զբոյսս, պարարեն զպտուղս մարմնապարարս. յո՞յր



փոխվում են, ոչ քամիներն են փչելուց դադարում, ոչ էլ ծովը անդընդային սահանքների ծփանքներով իր խռովյալ սաստկությամբ հուզյալ և անդադար կուտակվող մոլեգին ալիքներով, դրված սահմանները կարող է անցնել և ապականել երկիրը, և ոչ էլ երկիրը ամեն ինչը բառնալ կրելուց դադարում է։ Նրա հրամանով է հորինված ամեն ինչ և Նրա սուրբ և երկնավոր հրեշտակները անդադար փառաբանում են նրան։ Նա է, որ հաստատեց երկնքի բարձրությունը, աստղերի թիվը, ծովի ջրերը, երկրի ավազը և լեռների հավասարակշռությունը։ Նա է, որ ամպեր է բարձրացնում, արգելում է հողմերը, կրկին երեկո է բերում, դալարություն է տալիս գոսացյալ չոր խոտին և հավաքում է անձրևաշիթերը։ Նրա մասին մարգարեության ոգին պատմում է, թե «Ո՞վ է չափել իր ափով բոլոր ջրերը, իր թիզով՝ երկինքը և իր քիլով* ամենայն երկիրը։ Ո՞վ դըրեց լեռները կշեռքի վրա և դաշտերը հաշվեց չափիչով»։ Ո՞րն է այն տեղը, որ վեր է պահում Նրան, որի խոսքով բոլոր արարածները կախված են մնում։ Նա գիտե երկնավոր գնդերի ընթացքը, որոնք օդի մեջ շրջում են և չեն շեղվում, տարածվում են, սակայն զառտուղի չեն ընկնում։ Նրանք գալիս են և մնում որպես տարեկան վարձկաններ, հայտնվում են և վառվում ցերեկից մինչև գիշեր, գիշերից ցերեկ հաջորդելով միմյանց են փոխարինում, առանց խանգարելու անարգել վերադառնալով իրենց ժամանակների չափին և փոխվելով տարվա չորս եղանակների, ինչպես Աստված է կարգավորել։

268 Ինչպե՞ս են ընթանում երկնքի հաստատության աստղերի զորությունները, իրենց անդադար ընթացքի հավասարակշռությունը պահպանելով և առանց չափն անցնելու։ Կամ որտեղի՞ց են ելնում սաստիկ հողմերի օդաշունչ սյուքերը և ուր են գնում դադարում։ Ի՞նչ են ամեն մեկին բնորոշ [եղանակները]։ Մեկը քաղցրաշունչ է, սնուցում է բույսերը, մյուսը սաստիկ է, պտուկներն է բացում, մեկ ուրիշը զգեստներ է հյուսում, գույնզգույն ծաղիկներով զարդարում երկիրը տարբեր երանգներով, մերկ ծառերն է հագցնում, վարսավոր գագաթներն է զարդարում։

269 Որտեղի՞ց են ծնվում ամպաբեր քամիները, որոնք սպառվում են հողմի փայլատակումից, իսկ անձրևները ծնվում են որոտման ձայնից։ Ուր տերը հրամայում է երթալ, գնում են, իջնում, ոռոգում երկիրը, սնում են բույսերը, գիրացնում են մարմնապա-

յորովայնէ ելանիցեն գետք աղբերօքն հանդերձ, և ոչ դադարեն յելիցն և ոչ լնուն ի մտանելն։

270 Երկինք և երկիր, արեգակն և լուսին և բազմութիւնք աստեղաց, և՛ ծովք, գետք, գազան և անասուն, սողուն և թռչուն, ձկունք լուղականք, լեալք, լինելոցք՝ զիւրաքանչիւր կարգեալսն ըստ իւրաքանչիւր հրամանացն մատուցանեն։ Բայց միայն մարդոյն անձնիշխան թողան կամքն՝ զինչ և կամեսցի. և այլ աւելի ինչ ոչ բռնադատեցաւ քան զայն որ ազդեալ ասացաւ—չճաշակել նմա ի ծառոյ անտի. զի այնու արժանի արասցէ զնա փոխանակ ընդ փոքուն մեծամեծս ընդունել. վասն իւր շնորհ ունելոյն վաստակոց՝ լիցի առնուլ նմա յԱրարչէն զփոքունց փոխարէն զմեծամեծ շնորհսն։ Վասն այնորիկ և զանձնիշխան կամաց նմա հրամայեաց կամակար իշխանութիւն։

271 Կամ ո՞րպէս մարդ հողաբեր՝ օրինակաւ Արարչին յաշխարհ գայցէ, առժամագիւտ մատուցականն անմատոյց էականին նմանութեամբ առնուցու լինել զլինելն։ Քանզի անսահմանական և անվայրափակ և առանձնական զօրութեամբ, աստուածական անուա՞մբն միայն արդեօք մեծարեաց՝ ըստ պատկերին ասելով. այն չէ ինչ ի դէպ։ Քանզի ասէ Գիրն, թէ «Ըստ պատկերի Աստուծոյ արար զնա». և այլուր ասէ, եթէ «Աստուած հաստատեաց զմարդն յանեղծութիւն, և ըստ պատկերի իւրոյ բարերարութեանն արար զնա». և միւս ևս աստուածածանօթ իմաստութիւնն ասաց, թէ «Մարդ պատկեր Աստուծոյ է»։ Այլ անդէն ի սկզբանն կարգեաց Աստուած մարդոյն՝ մերձաւոր և ծանօթ կերպարանաց Աստուծոյ լինել, քանզի ոչ ի հաստատելն միայն, այլ առաւել ի ծանօթն առնել փութայր։ Քանզի նմանութեամբ մարդոյ երևեալ Աստուծոյ ի ստեղծանել զմարդն հող յերկրէ, և փչեաց յերեսս նորա շունչ կենդանի, և եղև մարդն յոգի կենդանի։ Ստեղծեալ զմարդն ձեռօք իւրովք՝ և արկ ի նա զկենդանութիւն ի փչել բերանոյ իւրոյ զկենդանական շունչն իմաստակիր մտաւորութեան բանաւորութեան ազդեցութեան. զի անդէն զաչս բացեալ արարածոյն՝ զԱրարիչն ծանիցէ, և անդէն Աստուծոյ բարերարութեան արարչութեանն ընտանի և մերձաւոր, գիտակ և պատմիչ լինիցի։

272 Եւ թէ զիա՞րդ ամենայն արարածոց առեալ հրաման լինել յաննիւթոյ, ի չքաւոր յանկերպարան նիւթոյ, որպէս ընդելական կերպարանացն և ձայնի հրամանացն՝ առանց յապաղանաց՝ ամե-



ցար պտուղները։ Ո՞ւմ որովայնից են ելնում գետերը իրենց աղբյուրներով, չեն դադարում ելնելուց և ոչ էլ հորդում լցվելով։

270 Երկինքն ու երկիրը, արեգակն ու լուսինը և աստղերի բազմությունը, ծովերը, գետերը, գազանն ու անասունը, սողունն ու թռչունը, լողական ձկները, եղածները և լինելիքները՝ ամեն մեկը իր կարգով և յուրաքանչյուրը ենթարկվեցին հրամաններին։ Բայց միայն մարդու կամքն է, որ անձնիշխան է թողնված, անելու ինչ կամենա։ Ավելի ոչինչ նրանից չպահանջվեց, քան այն, որից զգուշացված էր՝ չճաշակել այդ ծառից, քանզի այսպիսով, Նա արժանի կդարձներ նրան փոքրի փոխարեն մեծամեծ [բաներ] ընդունել և այն բանի համար, որ իր վաստակների դիմաց շնորհ էր վայելում, Նա Արարչից կստանար փոքր [արարքների] փոխարեն մեծամեծ շնորհներ։ Ահա սրա համար էլ Նա հրամայեց նրան ունենալ անկախ կամքի ազատ իշխանություն։

271 Կամ ինչպե՞ս հողածին մարդը կարող էր Արարչի օրինակով աշխարհ գալ և թեպետ դեռ նորաստեղծ, իր էությամբ նմանություն ունենալ անմատույց էականին։ Քանզի իր անսահման, անբովանդակալի ինքնուրույն զորությամբ արդյո՞ք, միայն աստվածային անվամբ մեծարեց նրան ասելով «ըստ պատկերի»։ Սա բոլորովին այդպես չէ։ Քանզի Ս. Գիրքն ասում է, թե «ըստ Աստուծո պատկերի ստեղծեց նրան» և այլուր ասվում է, թե «Աստված հաստատեց մարդուն անեղծության մեջ և ըստ իր բարերար պատկերի ստեղծեց նրան»։ Մի ուրիշ աստվածածանոթ իմաստություն էլ ասաց, թե «մարդը Աստուծո պատկերն է»։ Սկզբում Աստված մարդուն աստվածային կերպարանքին մերձավոր և ծանոթ դարձրեց, քանզի նա ջանում էր ոչ միայն հաստատել նրան, այլև առավել ծանոթ դարձնել։ Աստված մարդու նմանություն ունեցավ՝ ըստեղծելով մարդուն երկրի հողից։ Նրա երեսին կենդանի շունչ փչեց և մարդը դարձավ կենդանի ոգի։ Իր ձեռքով ստեղծելով մարդուն, նրա մեջ կենդանություն դրեց, փչելով իր բերնով իմաստուն մտավորության, բանականության կենդանի շունչը, որպեսզի արարածը աչքը բացելով ճանաչի Արարչին և ապա Աստուծո բարերարության, արարչագործության ծանոթ ու մերձավոր, գիտակ ու վկա լինի։

272 Կամ ինչպե՞ս ամենայն արարածներին հրամայված էր գոյություն առնել աննյութականից, աղքատիկ անկերպարան նյութից և [նյութական] կերպարանքին ու հրամանների ձայնին ար-

նայն արարածք սպասաւորականք զհրամանսն կատարիցեն։ Իսկ իսկական աստուածութիւնն ի ծածկութեանն ի վերոյ քան զտարրական նմանութիւնս և զձայնել զազդեցութիւնս, յիւրում յառանձնական չէութեանն զիւրն ունի։ Այլ վասն երևելի արարածոցս առեալ նմանութիւն, վասն ժուժկալութեան արարածոցս խոնարհեցի։ Զի թէ ոչ այնպէս էր, ոչ ոք էր որ տեսլեանն բնութեան կամ ինքեան ձայնին բարբառոյ ժուժալ կարէր. այլ որպէս զի կարասցեն զնա տեսանել՝ վասն այսորիկ առեալ նմանութիւն երևելի, բարբառոյ ազդեցութիւն։

273 Արդ՝ եղեալ մարդն ըստ պատկերի Աստուծոյ, հանդերձ ազատութեամբ, իմաստութեամբ, բանաւորութեամբ և իշխանական պատուով ըստ ազդեցութեան արարչութեանն, ոչ եթէ ըստ աստուածաբուն զօրութեանն, զոր միայն Միածինն ունի զնկարագիր էութեանն Հօր։ Ապա ածեալ Աստուծոյ զամենայն արարածս արարչութեան իւրոյ առ Ադամ, տեսանել զի՞նչ կոչեսցէ անուանս նոցա։ Որով յայտ իսկ է, թէ զԱրարիչն անուն յառաջ քան զայս ծանուցեալ Ադամայ. զի նախ այն էր կարևորագոյն։ Քանզի և միածին որդին Աստուծոյ զայս ասէր առ Հայր, թէ «Այս են կամք իմ, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտդ Աստուած»։ Նա և ի հարկէ իսկ նախ զԱրարիչն անուանէր Ադամ, զի յորոյ երեսաց զկենդանութիւնն ընկալեալ էր՝ նախ քան զամենայն զնա ետես. քանզի և արարածք իսկ առ ի ծանօթ առնելոյ նմա զԱրարիչն հաստեցան։

274 Արդ՝ անուանէ զառաջի ածեալսն յանդիման Արարչին. և զկնի եկեալն յառաջագունիցն ծանօթական լինի, որոց ոչ միայն անուանելովն, այլ և իմաստութեամբ և իշխանութեամբ առ հասարակ տիրէ։ Ապա մինչդեռ միայն սկիզբն և կատար է ինքն միանգամայն, յամենայն արարածս ինքն ինքեան միայն էր, և ոչ ոք էր զօրավիգն, և ոչ ընկեր ոք և ոչ նման նմա։

275 Արդ՝ Հօր արարչի խորհուրդ ի մէջ եդեալ ընդ արարչակից Որդւոյ և ընդ արարչակից Հոգւոյ, իբրև զխորհուրդն զառաջին նախաստեղծ մարդոյն. զի որպէս անդն ասաց, թէ «Եկա՛յք արասցուք մարդ ի նմանութիւն պատկերի կերպարանաց մերոց», և անդէն ստեղծեալ Ադամ ի կենդանութիւն ի չգոյէն հաստատեցաւ՝ նոյն օրինակ և աստ ասացեալ Հօր առ Որդին և առ Հոգին, ասէ. «Եկա՛յք



դեն սավոր լինելով, առանց հապաղելու բոլոր արարածները հրամանները կատարեցին։ Սակայն իսկական աստվածությունը ծածուկ (անտեսանելի) կերպով առանց նյութական նմանությունների կամ բարձրաձայն ազդարարելու իր անհատականության մեջ ունի իր սեփական էությունը։ Սակայն տեսանելի արարածների սիրուն նա նմանություն (ձև) առավ, որպեսզի իրեն խոնարհեցնելով, ուժեղացնի արարածներին։ Քանզի եթե այնպես չաներ, ոչ ոք չպիտի կարողանար Նրա բնությունը տեսնել, կամ Նրա ձայնը [լսել], այլ որպեսզի կարողանային նրան տեսնել, դրա համար տեսանելի նմանություն ստացավ և ձայնով խոսեց։

273 Արդ, մարդը ստեղծվել է ըստ Աստուծո պատկերի և շընորհիվ արարչության գործունեության օժտված է ազատությամբ, իմաստությամբ, բանականությամբ և անկախ պատվով, սակայն ոչ աստվածահատուկ զորությամբ, որը միայն Միածինն ունի, որպես Հոր էության նկարագիրը։ Ապա Աստված իր ստեղծած ամենայն արարածներին տարավ Ադամի մոտ տեսնելու, թե նա ինչ անուններով է կոչելու նրանց։ Թեև պարզ է, թե Ադամը ամենից առաջ Արարչի անունը գիտեր, քանզի նախ և առաջ այդ էր կարևորը։ Աստուծո միածին որդին այսպես էր ասել Հորը. «Այս է իմ կամքը, որ միայն քեզ ճանաչեն որպես ճշմարիտ Աստված»։ Այսպիսով, Ադամը, իհարկե նախ Արարչի անունը տվեց, քանզի ում երեսից որ կենդանություն էր ընդունել, նախ և առաջ նրան տեսավ։ Արարածներն էլ ստեղծվել էին նրան Արարիչը ծանոթ դարձնելու համար։

274 Արդ, նա Արարչի ներկայությամբ տվեց անունները իր առջև դրված [կենդանիների] և ծանոթացավ նրանց իրար ետևից, որոնց և նա առհասարակ տիրում էր ոչ միայն անունները տալով, այլև իմաստությամբ և զորությամբ։ Նա դեռ միայն առաջինն էր [մարդկանցից], ինչպես նաև վերջինը։ Բոլոր արարածների մեջ նա միայնակ էր ինքն իր հետ և ոչ ոք չկար նրան զորավիգ կամ ընկեր և ոչ ոք նման էր նրան։

275 Արդ, Արարիչ Հայրը խորհուրդ արեց արարչակից Որդու և արարչակից Հոգու հետ, առաջին նախաստեղծ մարդու համար եղած նախորդ խորհրդի նման. ինչպես այն ժամանակ ասել էր՝ «Եկեք մարդ ստեղծենք մեր կերպարանքի պատկերի նման», ապա ստեղծեց Ադամին և չգոյությունից նրան հաստատեց կենդանության մեջ։ Նույն ձևով և այստեղ Հայրը ասաց Որդուն և Հոգուն.

արասցուք Ադամայ օգնական նման նմա, ըստ նմանութեան պատկերի իւրոյ և ըստ նմանութեան կերպարանաց իւրոց»։ Եւ անդէն արկեալ նմա քուն զարմանալի, և հանեալ ոսկր ի կողից նորա՝ և շինեաց զայն ի պատկեր կնոջ և կացոյց առաջի նորա։ Եւ անդէն ծանուցեալ Ադամայ աստուածազգեաց իմաստութեամբ, թէ «Այս այժմ ոսկր յոսկերաց իմոց և մարմին ի մարմնոյ իմմէ. սա կոչեսցի կին, զի յառնէ իւրմէ առաւ». «Վասն այսորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր իւր, և յարեսցի ի կին իւր, և եղիցին երկոքին ի մարմին մի»։

276 Ո՞չ ապաքէն յանդիման Աստուծոյ ասիցէ զայս, անդ՝ ուր ամենայն զօրք հոգեղինացն զփառս Տեառն բարձրացուցանէին, և մարդն ի հանդիսի անցեալ։ Եւ զոր ասէն՝ ամենահաս գիտութեամբ մարգարէանայ, և քնով գործեալն զարթնականին ի մէջ բերէ զգործն. զի որ յառնէն առեալ դիտաց՝ նա և զայր յերկրէ գիտէ, և զերկիր՝ յոչնչէ, և զԱստուած՝ էական։ Եւ ասելովն, եթէ «Թո՛ղեալ զհայր և զմայր և յարել ի կին իւր, և եղիցին երկոքեան ի մարմին մի»՝ զբոլորովին կարգս աշխարհիս և զկատարած զամենայն գիտաց։

277 ԻԵ. Յետ այսորիկ առեալ Աստուծոյ՝ յԱդին դրախտին փափկութեան դնէր զմարդն. որում յայտ արարեալ ծառս երկուս, զմինն կենաց և զմինն գիտութեան բարւոյ և չարի. որում եդեալ պատուիրան՝ չճաշակել նմա ի ծառոյ անտի՝ մահու սպառնալեօք. զի Աստուծոյ պատուիրանապահութեամբն՝ զնախանձելի զաստուածատուր իմաստութիւն պահեալ, զաստուածական իշխանութիւնն պահպանութեամբ պատուիրանին յանտուշական փառս էականին ինքնակալ եղեալ վայելիցէ։ Եւ որպէս վերագոյնն ասացաք, եթէ զհրեշտակս և զմարդիկ յանձնիշխանութեան թողեալ, և զիւրաքանչիւր պատուէրս եդեալ ի վերայ, զի իւրաքանչիւր, յօժարութեամբ կամացն՝ լիցին Արարչին հրամանացն հնազանդեալ, վասն որոյ և առաւել փառաց արժանի լիցին հասանել։ Արդ՝ մարդոյն եդաւ փոքր պատուէր—ի ծառոյն չճաշակել. զի այնու ի մեծ պատիւ ձգեալ հասցէ, որպէս վերագոյնն ասացաք։ Իսկ զօրացն բազմութեան հրեշտակաց եդաւ պատուէր՝ կալ յանդադար փառաւորութեան իւրեանց Արարչին, ի մեջ պատիւ փառաց զնոսա բնակեցուցեալ, յաներևոյթ մեծութեանն վերին երկնաւոր մշտնջենաւոր լուսոյն։

278 Արդ՝ ոմն ի վերին զօրացն իշխանութեանցն հրեշտակաց իբրև տեսանէր զխոստումն բարեացն բարերարութեան Արարչին որ



«Եկեք Ադամին նրա նման օգնական ստեղծենք, իր պատկերի նմանողությամբ և իր կերպարանքի նման»։ Ապա զարմանալի քուն տվեց նրան և մի ոսկոր հանելով նրա կողից, այն ձևեց կնոջ պատկերով և կանգնեցրեց նրա առջև։ Իսկ Ադամը կռահեց աստվածատուր իմաստությամբ, թե «այս ոսկորը իմ ոսկորներից է և մարմինը իմ մարմնից է, սա կոչվելու է կին, քանզի իր ամուսնուց առնվեց». «Այդ պատճառով այրը պետք է թողնի իր հորն ու մորը և հարի իր կնոջը և երկուսը մի մարմին կլինեն»։

276 Չէ՞ որ Աստուծո դիմաց է նա ասել այս բանը այնտեղ, ուր հոգեղենների բոլոր զորքերը Տիրոջ փառքն էին բարձրացնում և մարդն էլ ներկա էր հանդեսին։ Այս խոսքերը ասելով, նա ամենայն գիտությամբ մարգարեացավ բացահայտ դարձնելով հավերժ արթունի կատարած գործը, երբ ինքը քնած էր։ Նա, որ աղամարդուց առնվեց, գիտեր, և նա ևս գիտեր, որ մարդը երկրից (հողից) է, և երկիրը՝ ոչնչից, և միայն Աստված գոյություն ունի։ Ասելով, թե «թողնելով հորն ու մորը, հարում է իր կնոջը և երկուսը լինեն մեկ մարմին», նա գիտեցավ աշխարհիս բոլոր կարգերը և ամեն ինչի վախճանը։

277 ԻԵ. Դրանից հետո Աստված առավ մարդուն և դրեց Ադինի (Եդեմի) հաճելի դրախտի մեջ։ Նրան ցույց տվեց երկու ծառ՝ մինը կենաց [ծառը], մյուսը՝ բարիի և չարի գիտության։ Նա մահվան սպառնալիքով պատվիրեց նրան չճաշակել այն ծառից, քանզի Աստուծո պատվիրանը պահելով, նախանձելի աստվածատուր իմաստությունը պահպանելով և պատվիրանապահությամբ նա վայելելու էր աստվածային իշխանությունը [ինքնագո] էակի անձեռնմխելի փառքով։ Ինչպես վերևում ասացինք, թե հրեշտակներին և մարդկանց թույլ տալով անձնիշխան լինել [միաժամանակ] յուրաքանչյուրին պատվեր տվեց, որպեսզի ամեն մեկը իր հոժար կամքով Արարչի հրամաններին հնազանդ լինի, որի համար առավել փառքի արժանի կդառնա։ Արդ, մարդուն փոքր պատվեր տվեց՝ ծառից չճաշակել, քանզի այսպիսով մեծ պատիվ ձեռք կբերեր, ինչպես վերևում ասացինք։ Իսկ հրեշտակների զորքի բազմությանը պատվեր տվեց՝ իրենց Արարչին անդադար փառաբանել, որը նրանց մեծ պատվի և փառքի մեջ էր պահել, վերին երկնավոր մշտնջենավոր լույսի աներևույթ մեծության մեջ։

278 Արդ՝ մեկը հրեշտակների վերին զորքի դասերից, երբ տեսավ Արարչի բարերարության լավ խոստումները մարդուն և որ մար-

առ մարդն, և մարդոյն կալ ի բանի Արարչին իւրոյ, և զգուշացեալ պահել զպատուիրանն՝ իւրովք կամօք չարացեալ չարն՝ չար անուանեցաւ. ուստի և զյետս երթալոյ զհակառակասէրն զսատանայ անուն ժառանգեաց։ Արդ՝ նախանձեալ չարին՝ արկանէ զմարդն ի մահ պատրանօք ի փառաց անտի. քանզի և ասէ իսկ իմաստունն, թէ «Նախանձու բանսարկուին և եմուտ մահ յաշխարհ», խաբէութեամբն ապականեալ։

279 Արդ՝ եկեալ մատուցանէ զխաբէութիւն պատրանաց մարդոյն թշնամին։ Եւ արդ՝ դու տե՛ս զոր ասէն. «Ընդէ՞ր, ասէ, պատուիրեաց ձեզ Աստուած չճաշակել ի ծառոյն». որով յայտ իսկ է, թէ ունէր ազատութիւն Ադամ և անձնիշխան կամս և իմաստութիւն յԱստուծոյ. գիտելով զԱստուած՝ պատուիրանադիր և զԱդամ՝ պատուիրեալ. թերևս յառաջ իսկ սա քան զպատուիրանն նենգութեամբ էր երևեալ, և ամենագիտին չէր ի ծածուկ, քանզի քննիչ է սրտի և երիկամանց։

280 Եւ արդ՝ դու տե՛ս զի՛նչ ասէր. «Թէ ճաշակեցէք՝ ասէ, աստուած լինիք»։ Զպատճառսն եդ ի նոսա, և ի ներքոյ յինքն զիշխանութիւնն կորզել ջանայր. զի զնա վրիպեցուցեալ հանեալ ի խոստմանցն՝ թերևս հնար լիցի նմա զնորա տեղին ժառանգել։ Որպէս և առաքեալն Աստուծոյ, որ հմուտ և տեղեակն էր աստուածաբեր խորհրդոյն, քանզի և ասէ իսկ, թէ «Անօրէն իշխանն իբրև աստուածանալն կամեցաւ՝ ձեռն արկանէր և զամենայն մարդիկ մեղօք կապէր». զի իբրև զնոսա հանեալ յայնմ բարեաց՝ ապա նմա հնար լիցի զխոստացեալսն ըմբռնել։ Իսկ նոքա վասն նորին պատճառանաց խաբեալք՝ ճաշակեցին, և անցեալ զպատուիրանաւն՝ յաստուածակերպ փառացն մերկացան։

281 Սակայն և անդ իբրև ի վերայ որդւոց հատուցելոց հայրաբար գթացեալ բարեգործէ. զոր և ասէ իսկ Գիրն, թէ «Լուան զձայն տեառն Աստուծոյ, զի իջեալ զգնայր ի դրախտին ընդ երեկս աւուրն»։ Եւ նոցա փախուցեալ թաքուցեալ ծառախիթ տերևապատ լինէին – զորոյ անցանել զամենագէտն երեսօք անհնար է. վասն որոյ և ասէ իսկ, թէ «Տէր Աստուած մերձաւոր եմ ես, ասէ Տէր, և ոչ Աստուած հեռաւոր. միթէ մա՞րթ ինչ իցէ մարդոյ փախչել թաքչել յինէն ի ծածկոյթ իւր՝ զի ես ոչ տեսից զնա. ո՞չ իմև լի են երկինք և երկիր»։ Եւ միւս ումն հմուտ մեծութեան նորա ի մարգարէիցն սրբոց ասէ, թէ



դը մնում էր Արարչի խոսքին, զգուշությամբ պահելով պատվիրանը, ապա իր չար կամքով չարացավ, չար անվանվեց, ուստի և հետ երթալու, հակառակասեր և սատանա անունները ժառանգեց։ Ապա չարը նախանձելով մարդուն, պատրանքներով այդ փառքից դեպի մահ նետեց, քանզի իմաստունն ասում է, թե «բանսարկուի նախանձով մահը մտավ աշխարհ» խաբեությամբ ապականելով։

279 Արդ, մարդու թշնամին պատրանքի խաբեությունը հնարեց։ Տես, թե ինչ է ասում՝ «ինչո՞ւ, ասում է Աստված ձեզ պատվիրեց ծառից չճաշակել»։ Սակայն հայտնի է, որ Ադամը ուներ ազատություն, անձնիշխան կամք և աստվածատուր իմաստություն, ճանաչելով Աստծուն իբրև պատվիրանատու և Ադամին՝ պատվիրյալ։ Թերևս իսկապես դա նենգությամբ հայտնված էր նրան նախքան պատվիրանը, սակայն դա ամենագետից ծածուկ չէր մնա, քանզի նա սրտի և երիկամանց (սրտի գաղտնիքների) քննիչն է։

280 Ապա տես, թե ինչ է ասում. «Եթե ճաշակեք, ասում է, աստվածներ կդառնաք»։ Նրանց հաղորդեց արդարացումը, իսկ ներքևից ինքը ջանում էր նրանց իր իշխանության տակ վերցնել, որպեսզի նրան վրիպեցնելով ու խոստումից հանելով, թերևս իրեն հնար լինի նրա տեղը ժառանգել։ Ինչպես Աստուծո առաքյալը, որը հմուտ և տեղյակ էր աստվածային խորհրդին, ասում էր, թե «անօրեն իշխանը, երբ կամեցավ աստվածանալ, ձեռքը գցեց և ամենայն մարդկանց մեղքով կապեց», որպեսզի նրանց հեռացնելով այդ բարիքներից, նրան հնարավոր լինի խոստացվածը ձեռք բերել։ Իսկ նրանք նրա հնարած պատճառաբանություններից խաբվելով, ճաշակեցին և պատվիրանները զանց առնելով, աստվածային փառքից մերկացան։

281 Սակայն պատժի արժանի որդիներին հայրաբար գթալով, նա բարիք է գործում, ինչպես Ս. Գիրքն է ասում. «Լսեցին Տեր Աստուծո ձայնը, որն օրվա երեկոյան իջել և քայլում էր դրախտում»։ Նրանք փախչելով թաքնվեցին ծառերի մեջ և տերևապատ դարձան, սակայն ամենագետի հայացքից փախչելն անհնար էր։ Այս պատճառով նա ասում է, թե «որպես Տեր Աստված, ես մերձավոր եմ, ասում է Տերը, և ոչ հեռավոր Աստված. միթե հնարավո՞ր է մարդուն փախչել ինձանից, իր ծածկույթի տակ թաքնվել, որպեսզի ես չտեսնեմ նրան։ Չէ՞ որ ինձնով լի են երկինքն ու երկիրը»։ Սուրբ մարգարեներից մեկ ուրիշը, որը ճանաչում է մեծությունը, ասում է, թե «ո՞ւր երթամ ես քո հոգուց, կամ ուր փախ-

«Յո՞ երթայց ես յոգւոյ քումմէ, կամ յերեսաց քոց ես յո՞ փախեայց. թէ ելանեմ յերկինս՝ դու անդ ես. թէ իջանեմ ի դժոխս՝ և անդր մօտ ես», նայեցեալ զնոքօք, թէպէտ և թաքչել կարծեցին։

282 Սակայն բարերարին ձայն արկեալ, թէ «Ո՞ւր ես, Ադամ». և նա ասէ. «Լուայ զձայն քո և երկեայ, զի գնայիր ի դրախտի աստ. քանզի մերկ էի և թաքեայ»։ Տեսանե՞ս ո՛րչափ մերձաւոր և ծանօթ էին Աստուծոյ, մինչև ոտնաձայնին անգամ չլինել անտեղեակ։ Քանզի բարերարն յանգէտս պատճառեալ՝ նախ ոտնաձայն առնէ. զի յոտսն քաւութիւնաբերս հասեալ մարդոյն, ինքնապատում լինելով զյանցանացն՝ փրկութիւն գտանիցէ։

283 Իսկ իբրև այն չլինէր՝ սակայն չկամի ամբաստան լինել և ահագինս ի դիմի հարկանել, այլ հաշտականաւն զիջանէ, թէ «Ո՞ ասաց ցքեզ թէ մերկ ես դու». քանզի կամի իմն ներելով այսրէն յինքն արկանել, զի քաղցրութիւնն Աստուծոյ զնոսա յապաշխարութիւն ածիցէ։ Իսկ իբրև այսու ևս ոչ զգաստացան, այլ զմիմեամբք պատճառեալ թշուառացան՝ ապա զդատաւորութիւնն ի մէջ անցուցեալ՝ վճիռ հատանէր, զոր հատուցեալ և ի հող դառնայցեն, զի Աստուծոյ դատաստանն ճշմարիտ է ի վերայ այնոցիկ որ զչարն գործիցեն։

284 Յետ այսորիկ ապա զապստամբութիւնն ի մէջ բերեալ ասելովն, թէ «Ահա Ադամ եղև իբրև զմի ի մէնջ՝ ճանաչել զբարի և զչար. հանցուք առ ի ծառոյն կենաց, զի մի՛ կերեալ կեցցէ յաւիտեան»։ Բայց «իբրև զմի ի մէնջ»՝ ոչ եթէ Աստուած եղեալ. քանզի չէ էականն լինելով, այլ զկարծեալն լինելոյ ասէ. զոր օրինակ սուտ աստուածք կարծեալք ի մարդկանէ՝ որ գործեցան առ անմտութեան յիմարութեան և պղծութեան մարդկան. որպէս և առ ձեզ իսկ տեսանէի զքարապաշտ զփայտապաշտ մոլորութիւնսդ, որ առ տգիտութեան ի ձէնջ նկարեցան. որ ոչ լսեն և ոչ խօսին, ոչ իմանան և ոչ շարժին, և ոչ գոյ շունչ ի բերանս նոցա. և թողեալ ձեր զԱստուած կենդանի, զԱրարիչն երկնի և երկրի՝ անշունչ անմռունչ քարանց պաշտօն մատուցանէիք, որ ոչ ինչ իսկ են։

285 Վասն որոյ և աստուածատես սրբոց մարգարէիցն հոգացեալ, իբրև իմաստուն բժշկեաց, զդեղ դարմանոյն ըստ ցաւոց հիւանդին պատրաստել, բառնալ ջնջել զգայթակղութիւնն, ի միջոյ ի



չեմ քո երեսից. եթե ելնեմ երկինք, դու այնտեղ ես, թե իջնեմ դըժոխք, այնտեղ ևս մոտս ես»։ Այս բոլորը գիտենալով հանդերձ նրանք թաքնվել փորձեցին։

282 Սակայն բարերարը ձայն տվեց, թե «ո՞ւր ես, Ադամ» և Նա ասաց՝ «Լսեցի քո ձայնը և երկնչեցի, քանզի գնում էիր այստեղ դրախտում, իսկ ես մերկ էի և թաքնվեցի»։ Տեսնում ես, թե որչափ մերձավոր և ծանոթ էին Աստուծո, որ մինչև անգամ ոտնաձայնին անտեղյակ չէին։ Այսպիսով բարերարը նախ ոտնաձայն էր հանում զղջումի առիթ տալով տգետին, որպեսզի մարդը հասնելով քավություն բերող ոտքերին, անձամբ պատմի իր հանցանքները և փրկություն գտնի։

283 Իսկ այն տեղի չունեցավ. սակայն Նա չկամեցավ ամբաստանող լինել և ահաբեկելով հարձակվել, այլ խաղաղարար ձևով զիջեց ասելով, թե «ո՞վ ասաց քեզ, թե մերկ ես», քանզի կամենում էր ներելով իրեն քաշել, որպեսզի Աստուծո քաղցրությունը նրանց ապաշխարության բերի։ Իսկ երբ սրանով էլ չզգաստացան, այլ ապաշնորհ դարձան միմյանց արդարացնելով, ապա Նա դատապարտեց նրանց, վճիռ հաստատեց, որ հատուցեն ու հող դառնան, քանզի Աստուծո դատաստանը ճշմարիտ է բոլոր նրանց հանդեպ, որոնք չար գործեր են կատարում։

284 Դրանից հետո [Ադամի] ըմբոստությունը մեջ բերելով ասում է, թե «ահա Ադամը դարձավ մեզանից մեկը, ճանաչելով բարին և չարը։ Հեռացնենք նրան կենաց ծառից, որպեսզի չլինի թե ուտելով ապրի հավիտյան»։ Բայց «Իբրև մեզանից մեկը» ոչ թե [նշանակում է] Աստված դարձավ, քանզի իրական էակը չէր նա, այլ ենթադրյալ գոյությունը։ Օրինակ, մարդկանց ենթադրած սուտ աստվածները, որոնք հնարվել են մարդկանց անմտության, հիմարության և պղծության հետևանքով, ինչպես և ձեզ* մոտ էլ տեսա քարապաշտության, փայտապաշտության մոլորությունները, որոնք տգիտությամբ ձեր կողմից պատկերվել են։ Նրանք չեն լսում, չեն խոսում, չեն հասկանում, չեն շարժվում և շունչ չկա նրանց բերանում։ Թողնելով կենդանի Աստծուն, երկնքի ու երկրի Արարչին, անշունչ, անմռունչ քարերին եք պաշտամունք մատուցում, որոնք ոչինչ են։

285 Այդ պատճառով աստվածատես սուրբ մարգարեները իբրև իմաստուն բժիշկներ հոգացել են դարմանելու դեղը, ըստ հիվանդի ցավի պատրաստել, որպեսզի վերացնեն, ջնջեն գայթակղու-



11—1461

բաց կորուսանել։ Որպէս և մի ոմն ի նոցանէ աստուածային Հոգւոյն զօրութեամբ լցեալ՝ գոչեաց ասելով, թէ «Աստուածք, որ զերկինս և զերկիր ոչ արարին՝ կորիցեն յերկրէ ի ներքոյ երկնից. այլ Տէր որ արար զերկիր զօրութեամբ իւրով, և ձգեաց զերկինս սքանչելի խորհրդով իւրով, և պատրաստեաց զտիեզերս ամենայն իմաստութեամբ իւրով, և որոտայ ձայնիւ, և լնու ջուրբ բազմութեամբ զերկինս, և հանէ զամպս ի ծագաց յերկրէ, և զփայլատակունս իւր յանձրևս արար, և հանէ զհողմս ի շտեմարանաց իւրոց»։

286 Յիմարեցաւ ամենայն մարդ ի գիտութենէ՝ ի վերայ անձանց թշուառութիւն յարուցանել. անդէն անձանց անձամբք իւրեանց ամօթալից առնեն զերեսս իւրեանց, և մեծի բարկութեանն Աստուծոյ պատրաստեն զանձինս. այլ այժմիկ կացցէ այս՝ յանդիմանել զմոլորութիւն ձեր, զի ի կարգի իւրում պատշաճէ։ Բայց այժմ որ ի կարգին սկիզբն արարաք պատմել ձեզ՝ ըստ իւրաքանչիւր կարգի զայն պատմեսցուք։

287 Հանեալ այնուհետև զմարդն ի փափկական դրախտէ անտի հանգստեան՝ արտաքոյ դրախտին բնակեցուցանէր, և փակեալ նմա զճանապարհ ծառոյն կենաց, զի մի՛ ականատես անգամ լիցի վայելչութեան դրախտին։ Անդ և երկիր անիծեալ, փուշ և տատասկ և հաց ցաւոց, և Ադամայ մահկանացուի մահ. և այս՝ մարդասիրութեան նշանակ է. որպէս և ասէն իսկ ի բերանոյ մարգարէին Աստուած, թէ «Խրատեսցէ զքեզ ապստամբութիւն քո, և չարիքն քո կշտամբեսցեն զքեզ. ապա գիտասցես դու, թէ չար և դառն եղև քեզ թողուլն զիս, ասէ տէր Աստուած քո»։ Եւ միւս ոմն ասէ յԱստուծոյ, թէ «Յորժամ դարձցիս և հեծեծեսցես՝ յայնժամ կեցցես և գիտասցես թէ ո՛ւր իցես»։ Քանզի յորժամ դառն ճաշակացն և կասկածանաց մահուն պաշարեալ իցէ, անսթափ ի մտացն ուշի յիշեսցէ զյիշատակս ծառոյն կենաց, և հեծեծելով խնդրեսցէ զմուտս դրախտին վայելչութեան. զի և յանդիման դրախտին բնակեցուցանելն ասացելոցս վկայէ։

288 ԻԶ. Իսկ բարերարն ոչ միայն ի դրախտին, այլ և արտաքոյ նորին չհեռանայր ի նոցանէ, յորժամ յանդիման դրախտին բնակեցուցանէր։ Եւ վասն իւրոյ բարերարութեանն հրամայեաց սերել յերկիր. ուր և անդէն հրամանաւ ակնարկելոյ Արարչին ծնունդ արձա-



թյունը և բոլորովին մեջտեղից հանեն։ Ինչպես նրանցից մեկը աստվածային Հոգու զորությամբ լցված գոչել է ասելով, թե «աստվածները, որոնք երկինքն ու երկիրը չեն ստեղծել, երկնքի տակ կորչելու են երկրից. այլ Տերը ստեղծեց երկիրը իր զորությամբ և երկինքը ձգեց իր սքանչելի խորհրդով, պատրաստեց տիեզերքը իր ամբողջ իմաստությամբ։ Երբ որոտում է իր ձայնով, բազում ջրերով լցվում է երկինքը, ամպեր է հանում երկրի ծայրերից, Նա իր կայծակները դրեց անձրևների համար և հանեց հողմերն իր շտեմարաններից»։

286 Բոլոր մարդիկ գիտությունից են հիմարացել, իրենց անձերին թշվառություն բերելով, ապա իրենք անձամբ իրենց երեսները ամոթալի են դարձնում, երբ իրենց անձերը ենթարկում են Աստուծո մեծ բարկությանը։ Այժմ այսքանը բավական է հանդիմանելու ձեր մոլորությունը, քանզի այն պատշաճ է իր տեղում։ Արդ այն, որ շարքով սկսեցինք ձեզ պատմել, յուրաքանչյուրը ըստ կարգի պատմելու ենք։

287 Այնուհետև մարդուն հանելով հեշտալի հանգստյան դրախտից, դրանից դուրս բնակեցրեց և փակեց նրա համար կենաց ծառի ճանապարհը, որպեսզի այլևս ականատես անգամ չլինի դրախտի վայելչությանը։ Ապա անեծք իջավ երկրի վրա՝ փուշ և տատասկ, ցավերի հաց և մահկանացու Ադամի մահը։ Սակայն սա մարդասիրության նշան է, ինչպես ասել է Աստված մարգարեի բերանով. «Քո ըմբոստությունը քեզ խրատելու է և քո չար գործերը կշտամբելու են քեզ։ Ապա դու կգիտենաս, թե չար և դառն է քեզ համար ինձ թողնելը, ասում է քո տեր Աստվածը»։ Մի ուրիշը Աստուծո կողմից ասում է, թե «երբ դու դարձի գաս և հեծեծես, այն ժամանակ կապրես և կգիտենաս, թե ուր ես»։ Քանզի երբ ճաշակի դառնությունը և մահվան անորոշությամբ պաշարված լինի, անզգալիորեն նրա միտքն է գալու կենաց ծառի հիշատակը և հեծեծելով խնդրելու է դրախտի վայելքներին մոտենալ։ Հենց նրա դրախտի դեմ հանդիման բնակվելը այս ասածներիս վկայությունն է։

288 ԻԶ. Իսկ բարերարը ոչ միայն դրախտում, այլև դրանից դուրս չէր հեռանում նրանցից, երբ բնակեցրեց դրախտին դեմ հանդիման։ Իր բարերարության պատճառով հրամայեց երկրում բազմանալ, ուր և նրանք Արարչի ակնարկած հրամանով երկրում

կեալ յերկիր՝ սկսան բազմանալ ընդ ասելն. «Աճեցէ՛ք և բազմացարո՛ւք, և լցէ՛ք զերկիր»։

289 Որդւոցն Ադամայ անդրանկանն Կահէլ անուն ճանաչէր, և միւսումն Հաբէլ. որք անդէն զիմաստութիւն տուողին ի մէջ անցուցեալ, նորին իմաստութեամբ՝ զնոյն Արարիչ ճանաչել։ Արդ՝ առեալ Կահէլի երէց որդւոյն ընծայս նուիրաց յարմտեաց, որպէս կապեալ ցորենոյ՝ պատարագս նմա մատուցանէր։ Իսկ ընդ այն հայեցեալ Հաբէլի՝ ի հօտիցն գառանցն ընծայեալ պտուղ՝ ի խաշանցն մատուցանէր։ Իսկ Աստուած իւրով մարդասիրութեամբն խոնարհեալ յընծայս որդւոցն Ադամայ՝ մերձաւոր ճանաչէր։ Քանզի և անդէն իսկ ընտրութիւն առնէ. զոմն ի միամտութեան գտեալ՝ ընդունի զպատարագն. իսկ զոմն ընդ եղբօրն յերկմտութեան գտեալ՝ անդրէն դատապարտեալ դարձուցանէ վասն երկմտութեանն. իսկ նա անդէն վասն որոյ մահ խորհեալ՝ սպան զեղբայրն. և անդէն նզովեալ երկիր վասն նորա, և նա ինքն անիծաւ զաւակաւն հանդերձ։

290 Արդ՝ Ադամայ ա՛յլ որդի ստացեալ յԱստուծոյ փոխանակ սպանելոյն Հաբելի, որոյ անուն Սէթ ճանաչէր։ Իսկ այն սպանեալն, վասն արդարութեան իւրոյ, կենդանի է առ Աստուած. զի որ յոչնչէն արար՝ նոյն և կենդանացուցանէ զնա յորժամ և կամի, զոր յոյժ պատմել դիւրին է ձեզ. յորժամ զձեզ ջերմեռանդն ի հաւատսն տեսանիցեմք՝ ասասցուք զայն, որոյ արդարութիւնն կայ պահի յաւիտեանս յաւիտենից։ Արդ՝ Կահէլ նենգաւոր մարդասպանն նզովեալ անիծաւ. վասն այսորիկ որոշեցաւ հրամանաւ Աստուծոյ. զի օրհնեաց Աստուած զՍէթ, և ետ նմա պատուէր, զի մի՛ զաւակն օրհնեալ խառնեսցի յանիծեալ զաւակն մարդասպանին Կահէլի։ Արդ՝ բազմացան մարդիկն առ հասարակ ի վերայ երկրի կողմանց ցեղիցն երկոցունց։

291 Արդ՝ սեթեան ցեղին կացին նահապետք արք արդարք մինչև ի դարն ութերորդ. առ որս բարերարութիւնն Աստուծոյ մերձաւոր եղեալ՝ միանգամայն, իսկ առ ամենեքումբք մերձաւորութեամբն յաճախեալ, զի մի՛ մոռացօնք ընտանութեանն լինիցին։ Վասն որոյ և երկայնակեաց իսկ արարեալ զհարսն, և յերկարակեաց ծնունդ շնորհեաց. զի գոնեայ վասն ցանկութեան որդւոց ելանիցեն ի խնդիր Աստուծոյ. մանաւանդ զի կարևորագոյն իսկ է գիտ ծննդոց ի կեանս երկրածնաց։

292 Արդ՝ նահապետքն կարգեալք, Ադամն առաջին աստուածաստեղծ, այսինքն Ադամ. և Սէթ, և ի նմանէ Ենովս, և ի նմանէ



ծնունդներ տվեցին և սկսեցին բազմանալ, ինչպես՝ ասված է՝ «Աճեցեք ու բազմացեք և լցրեք երկիրը»։

289 Ադամի որդիներից անդրանիկը կոչվում էր Կահել (Կայեն) և մյուսը Հաբել։ Ապա նրանք ի հայտ բերեցին տվողի իմաստությունը, նրա իմաստությամբ նույնին ճանաչելու որպես Արարիչ։ Արդ, Կահելը՝ երեց որդին, վերցրեց որպես նվիրելու ընծա՝ արմտիք, ցորենի կապոց կազմեց և Նրան պատարագ (զոհ) մատուցեց։ Երբ Հաբելը այս տեսավ, իր գառների հոտից նոր ծնունդը ընծայեց և իր խաշինքի [ոչխարներից] մատուցեց։ Իսկ Աստված իր մարդասիրությամբ խոնարհվեց Ադամի որդիների ընծաներին մերձավոր դառնալով։ Ապա ընտրություն կատարեց, մեկին անկեղծ գտնելով ընդունեց նրա զոհը, իսկ մյուսին՝ իր եղբոր նըկատմամբ չարակամ գտնելով, դատապարտեց և ետ դարձրեց չարանենգության պատճառով։ Իսկ նա դրա համար մահ նյութեց և սպանեց եղբորը։ Ապա երկիրը նրա պատճառով նզովվեց, և ինքն էլ անիծվեց զավակով հանդերձ։

290 Արդ, Ադամը Աստծուց ուրիշ որդի ստացավ, սպանված Հաբելի փոխարեն, որի անունն էր Սեթ։ Իսկ այն սպանվածը իր արդարության համար կենդանի է Աստուծո մոտ, քանզի Նա, որ նրան ոչնչից ստեղծեց, ինքն էլ կկենդանացնի նրան երբ որ կամենա, ինչպես շատ դյուրին է ձեզ պատմել։ Երբ մենք ձեզ տեսնում ենք հավատի մեջ ջերմեռանդ, հիշում ենք Նրան, որի արդարությունը կա և կմնա հավիտյանս հավիտենից։ Արդ, նենգավոր մարդասպան Կահելը նզովվեց ու անիծվեց և այդ պատճառով Աստուծո հրամանով անջատվեց։ Քանզի Աստված օրհնեց Սեթին և նրան պատվեր տվեց, որ իր օրհնյալ զավակը չխառնվի մարդասպան Կահելի անիծյալ զավակին։ Ապա մարդիկ երկրի վրա բազմացան առհասարակ երկու ցեղից։

291 Սեթյան ցեղն ունեցավ նահապետներ, որոնք արդար մարդիկ էին մինչև ութերորդ սերունդը։ Աստուծո բարերարությունը նրանց մոտիկ էր և Նա միշտ ամենքին մերձավոր էր, եթե չմոռանային Նրա հարազատությունը։ Դրա համար Նա հայրերին երկարակյաց դարձրեց և երկարակյաց զավակներ շնորհեց, որպեսզի գոնե որդիներ ցանկանալով, Աստված փնտրեն։ Մանավանդ որ շատ կարևոր էր զավակ վաստակելը երկրածինների կյանքում։

292 Նահապետները կարգով հետևյալն են՝ առաջինը Ադամն աստվածաստեղծ, այսինքն Ադամը, ապա Սեթը և նրանից Ենովսը

Կայնան, և ի նմանէ Մաղաղիէլ, և ի նմանէ Յարէդ, և ի նմանէ Ենովք։ Եւ եկաց Ենովք ամս հարիւր վաթսուն և հինգ, և ծնաւ զՄաթուսաղայ. և հաճոյ եղև Ենովք Աստուծոյ։

293 Նա և ամենայն նահապետացն շատակեաց եղեալ, իբրև ի բարերարէ անտի Աստուծոյ սերեալք բազմացան. նոյնպէս և յետ ծննդոցն յերկարակեացս արարեալ, զի որք Աստուծովն ստացան՝ պատմեսցեն հարք որդւոց. զի իբրև պատուիրանք զգուշացուցիչք լինիցին, առ ի ծանօթս առնելոյ զնոսա Աստուծոյ. որպէս և ասացաւ իսկ, թէ «Հարցջի՛ր դու ցհարս քո, և պատմեսցեն քեզ, և ցծերս քո, և ասասցեն քեզ». որով յայտ իսկ է, թէ վասն այսորիկ երկայնակեացք, և ոչ վասն բազմութեան ծննդոց։

294 Զի թէպէտ և ասաց Աստուած ցԱդամ, թէ «Աճեցէ՛ք և բազմացարո՛ւք և լցէ՛ք զերկիր»՝ որպէս յառաջագէտ ըստ մարմնական բարուցն զլինելոցն ասաց. իսկ Աստուած ոչ ի բազմացուցանելն միայն, այլ անդէն և անդ կամէր. զի ի մշտնջենակեաց անմահութիւնն փոխեսցին։ Որպէս և զԵնովք տեսանեմք յետ վարուց երկրակեաց կենացն, յետ ամուսնանալոյ և որդիս ծնանելոյ ուղղութեանն վարուք, վերացուցեալ զնա կենդանւոյն իսկ յանմահութեան վիճակն։ Որ ոչ վասն առնն միայնոյ, այլ զի ելք նորա՝ այլոց ճանապարհ գործեսցեն. և ոչ բռնադբօսութեամբ առեալ ի կեանսն, այլ զպարտ հաճոյական վարուցն հատուցեալ։ Սոյն օրինակ կամեցեալ Աստուծոյ զամենեսեան յանմահութիւն փոխել, յետ աստ վայելելոյ ամենեցուն։

295 Ամենայն մարդիկ ութերորդ դարուն հնազանդեալ մահու, մեղաց ծառայեալ՝ մոռացան զԱրարիչն, յուսակորոյսք ի կենաց անտի Աստուծոյ և ապականեալ զուղղական զիւրեանց ճանապարհն։ Մատնեաց զնոսա Աստուած ի կամս անձանց իւրեանց, առեալ զոգի շնորհաց մարդասիրութեան իւրոյ ի նոցանէ, զորոց և զառնելն ստրջացեալ ասէ։ Որ և ստրջանալն Աստուծոյ՝ ահագին զգուշութեան նշանակ է. զի թերևս այնու յուշ առնել մարթասցէ մոռացելոցն զարարչական զօրութիւնն, որ խառնակեցան յանիծեալ զաւակն Կայենի՝ ի պոռնկութիւնս, յայլանդակ վարս, ուտել մեռելոտի։ Միանգամայն իսկ երկիր զազրացեալ ի վարուց մարդկան զարշեցեալ, որպէս ասէ իսկ, թէ «Միանգամայն ամենեքեան յամբարշտութիւն կործանեցան, և ամենայն մարդ պղծեաց զճանապարհս իւր ի վերայ երկրի»։



և նրանից Կայնանը և նրանից Մաղաղիելը և նրանից Հարեդը (Յարեդ) և նրանից Ենովքը։ Ենովքը ապրեց հարյուր վաթսուն և հինգ տարի ու ծնավ Մաթուսաղային և Ենովքը հաճո եղավ Աստծուն։

293 Նա բոլոր նահապետներից երկարակյաց եղավ։ Քանի որ նրանք Աստուծո բարերարությամբ սերյալ բազմացան, ապա իրենց ծնունդից հետո էլ երկարակյաց եղան, որպեսզի ովքեր Աստուծով էին ստեղծված, իբրև հայրեր [ամեն ինչ] պատմեն իրենց որդիներին։ Քանզի պատվիրանները զգուշացուցիչ էին Աստծուն ճանաչելու համար, ինչպես և ասված է, թե «հարցրու քո հայրերին և նրանք քեզ կպատմեն և քո ծերերին և նրանք քեզ կասեն»։ Այսպիսով, պարզ է, թե այս պատճառով է, որ նրանք երկարակյացներ եղան և ոչ թե բազմաթիվ ծնունդներ ունենալու համար։

294 Քանզի թեպետ Աստված ասաց Ադամին, թե «աճեցեք ու բազմացեք և լցրեք երկիրը», սկզբից գիտենալով այն նյութական բարիքների մասին, որոնք լինելու էին, սակայն Աստված ոչ միայն բազմանալուն [ակնարկեց], այլև այն բանին, թե կամենում էր, որ նրանք մշտնջենական անմահության անցնեն։ Ինչպես տեսնում ենք, Ենովքը երկրային կյանք վարելուց, ամուսնանալուց և ուղիղ վարքով որդիներ ծնելուց հետո, կենդանի վերացավ անմահության վիճակին։ Այդ բանը միայն մեկ մարդու համար չէր, այլ նրա դուրս գալը պետք է այլոց ճանապարհ բացեր։ Նա բռնությամբ չկապվեց կյանքին, այլ հաճելի կյանքի պարտքը [արդեն] հատուցել էր։ Նույն օրինակով Աստված կամեցավ ամենքին անմահության փոխել, այստեղ [կյանքը] վայելելուց հետո։

295 Ութերորդ սերնդի (դար) բոլոր մարդիկ մահվան ենթարկվեցին, [քանզի] մեղքերին ծառայելով մոռացան Արարչին, աստվածային կյանքից հուսակորույս լինելով և ապականելով իրենց ուղիղ ճանապարհը։ Աստված նրանց իրենց կամքին թողեց, նրանցից վերցնելով իր մարդասիրական շնորհների ոգին և նրանց ստեղծած լինելուն զղջաց։ Աստուծո զղջալը նրա ահագին հոգատարության նշանն է, որ թերևս այսպիսով կարողանա մոռացողներին հիշեցնել արարչական զորությունը։ Նրանք խառնվել էին Կայենի անիծյալ սերնդի հետ, պոռնկության այլանդակ վարքի և մեռելոտի ուտելու մեջ։ Երկիրը միանգամայն զազրելի և գարշելի դարձավ մարդկանց վարքի պատճառով, ինչպես ասում է [Ս. Գիրքը], թե «ամենքը միանգամայն գլորվեցին ամբարշտության մեջ և ամեն մարդ պղծեց իր ճանապարհը երկրի վրա»։

296 Իէ. Արդ՝ ի ժամանակին յայնմիկ մի ոմն արդար գտեալ յարդարացեալ տոհմէն, որում Նոյ անուն կարդացեալ, հաճոյ եղեալ Աստուծոյ սիրեցաւ ի նմանէ։ Որ հրաման առեալ յԱստուծոյ առնել տապան արկղագործ փայտիւ՝ բազում ամաց գործելոյ, առ ի հարկանելոյ ազգին թշուառացելոյ։ Որոյ խոստացեալ այնուհետև առնուլ զՆոյ ընտանեօքն հանդերձ և ամենայն շնչականօքն ի տապանն, և ամենապահ ձեռամբն փակեալ զտապանն։ Եւ ապա դարձուցեալ զանդունդսն աւազակապս զցամաքաւ՝ հանդերձ հոսանօքն արձակելովք յերկնից, հեղեղասաստ ծովապատիժ բարկութեամբ զառ ի ներքոյս երկնից ջնջեալ, առ հասարակ ողողեալ սրբեաց։ Իսկ յետ սաստիցն անցելոց՝ զայրն արդար՝ աշխարհահայր երկրակալ յաւիտենադիր ուխտիւ կացուցեալ. զոր և յերկարակեաց արարեալ, առ ի պատմելոյ ազգացն եկելոց զհամաշխարհական բարկութեանն պայմանն։

297 Բայց ապա միատոհմ միալեզու ազգին բազմացելոյ խորհուրդ առեալ աշխարհագունդ՝ երկնաբերձ աշտարակ շինելոյ, անուանակիր առ ի յիշատակ մշտնջենաւոր, փոխանակ յաւիտենականին Աստուծոյ, որոյ պատմի անուն յաւիտենից յաւիտեանս և յիշատակ ազգաց յազգս։ Որոյ բարձրագոյն ազդեցութեամբ ցուցեալ զաստուածագործ գիտութիւնն ի խառնակելն, յամբոխելն, և զմիասնունդ ազգն ի բազում ազգս այլալեզուս օտարաձայնս անծանօթս միմեանց ընդ երեսս երկրի սփռէր. զի մի՛ կամայական սահման անձանց արկանիցեն, այլ յաւիտենադիր սահմանացն Աստուծոյ հնազանդեալ գնասցեն։ Որ ի բաժանել ազգացն և ի խառնակել լեզուացն և ի ցանել որդւոցն Ադամայ՝ կարգեաց սահմանս ամենայն ազգաց ըստ թուոյ հրեշտակացն Աստուծոյ։

298 ԻԸ. Եւ քանզի տարածելոց ազգացն աստուածամոռաց գիտութեամբն յիւրաքանչիւր պաշտամունս ի տարրականս արարածոց որոշեալ խոտորեցան յանդունդս մոլորութեան, արդ՝ այր մի ոմն աստուածեղէն ազդեցութեամբն զարթուցեալ, երանելի ամենեցուն, որոյ Աբրահամ անուն ճանաչի։ Ճշմարտին Աստուծոյ ուղեկից լեալ՝ երթեալ զհետ հրամանաց նորին հնազանդէր. առ որ բարբառ արձակեալ Աստուծոյ՝ ելանել նմա ի հայրենեացն իւրոց. քանզի պատրաստական գտանի Աստուած խնդրականաց իւրոց։

299 Արդ՝ ելեալ Աբրահամ ի հայրենեացն իւրոց, զհետ հրամանացն Աստուծոյ գնացեալ՝ հաւատովք վարեցաւ. որ զմեծ զաւետիսն արժանի եղև ընդունել, զկամս Արարչին իւրոյ կատարէր. որ



296 Իէ. Արդ՝ այդ ժամանակ գտնվեց մի արդար մարդ արդարացյալ տոհմից, որին Նոյ էին կոչում։ Սա Աստուծո հաճո լինելով սիրվեց նրանից։ Հրաման ստացավ Աստծուց փայտե արկղի պես տապան պատրաստել, բազում տարիների աշխատանքով, քանզի Նա [կամենում էր] պատժել թշվառ ցեղը։ Այնուհետև Նա խոստացավ Նոյին հանդերձ ընտանյոք և բոլոր շնչավորներին վերցնել տապանի մեջ և ամենապահ ձեռքով փակել տապանը։ Ապա ավազապատ [ծովի] անդունդները քշելով ցամաքի վրա, երկնքից արձակված հեղեղի հոսանքով հանդերձ, հեղեղասաստ, ծովապատիժ բարկությամբ, ջնջեց երկնքից ներքև եղած [ամեն ինչ] և առհասարակ ողողելով սրբեց։ Պատուհասի անցնելուց հետո, Նա արդար մարդուն հավիտենադիր ուխտով կարգեց հայր աշխարհի և տեր երկնի։ Նրան երկարակյաց դարձրեց, որ պատմի գալիք սերունդներին իր բարկության տիեզերական պայմանը։

297 Սակայն միատոհմ, միալեզու ազգը բազմացավ և խորհուրդ արեց կլոր երկնամերձ աշտարակ շինել, մշտնջենավոր լինելու սահմանված, փոխանակ հավիտենական Աստուծո, որի անունը հիշվելու է հավիտյանս հավիտենից և հիշատակը ազգից ազգ։ Իսկ Նա բարձրագույն ներգործությամբ ցույց տվեց աստվածային գիտությունը՝ խառնակելով, շփոթելով և տոհմակից ազգը բազում, այլալեզու, օտարաձայն միմյանց անծանոթ ազգերի բաժանելով, երկրի երեսին սփռեց, որպեսզի այլևս իրենց համար կամայական սահմաններ չորոշեն, այլ հնազանդ ընթանան Աստուծո հավիտենադիր սահմաններում։ Ազգերը բաժանելով, լեզուները խառնակելով և Ադամի որդիներին ցիրուցան անելով, Նա բոլոր ազգերին սահմաններ կարգեց ըստ Աստուծո հրեշտակների թվի։

298 ԻԸ. Եվ քանի որ ցրված ազգերը աստվածամոռաց գիտությամբ յուրաքանչյուրը տարվել էր նյութական արարածների պաշտամունքով, մոլորության անդունդը խոտորեցին։ Ապա մի մարդ աստվածային ազդեցությամբ ելավ, ըստ ամենայնի երանելի, որի անունն էր Աբրահամ։ Ուղեկից լինելով ճշմարիտ Աստուծո, նրա հրամաններին հետևելով հնազանդվեց։ Նրան խոսքն ուղղեց Աստված, թե պետք է ելնի իր հայրենիքից։ Քանզի Աստված պատրաստակամ է իրենից խնդրողների նկատմամբ։

299 Արդ, ելավ Աբրահամը իր հայրենի երկրից հետևելով աստվածային հրամաններին և հավատով քայլեց։ Նա արժանի եղավ ընդունելու մեծ ավետիսը և իր Արարչի կամքը կատարեց։ Գր-

ելեալ՝ ի մէջ օտար ազգացն հեթանոսաց պանդխտեցաւ. ըստ աստուածապաշտ սովորութեանցն բազում ամօք զհամբերութիւն յանձն իւր կրէր։

300 Արդ՝ իբրև լցան նորա ամք իննսուն և ինն, երևեալ Աստուած Աբրահամու՝ ուխտ եդեալ խօսէր և վերանայր. և դարձեալ հրեշտակօքն եկեալովք ի Մամբրէ՝ զպարգևական զաւակն խոստացաւ, և զիւր որդին գալ մտանել ընդ մարմնով, առնուլ մարմին ի զաւակէն Աբրահամու, և լինել որդի Աբրահամու, և ամենայն հաւատացելոց լինել հայր արդարութեան, և նահապետ արդարոց զնա կացուցեալ։

301 Նա և մարմնապէս իսկ զանթիւ բազմութեան խոստումնն զաւակին ընդունէր. որով ճանապարհաւ իսկ միանգամայն զժանդագործ երկիրն Սոդոմայցոց խրատեալ կուրացելովքն. ապա ի չհաւանելն՝ իջուցեալ կրակաբեր անձրևս, և աստուածասաստ բարկութեամբն համառօտ դատեալ։

302 Եւ յետ այսորիկ կատարեալ նմա զխոստումն զաւակին, զի տուաւ նմա որդի Իսահակ։ Եւ դարձեալ երևի Աստուած Աբրահամու, առ ի պատարագել զփորձական զոհն զԻսահակ, որով զաւետիս հանդերձելոցն ընկալաւ։ Նոյն օրինակ և առ Իսահակ որդին Աբրահամու երևեալ, հայրենի զինքն յուշ առնելով Աստուած։

303 Իսկ առ Յակոբ որդին Իսահակայ՝ ևս սքանչելագոյն սանդղաձև երկնաբերձ տեսլեամբ հանդերձ ամենայն հրեշտակօք՝ Տէրն ծանուցեալ երևի, և երբեմն իբրև զայր մի սոսկագոյն՝ գիշերամարտ մենակռիւ. բայց մարգարէն հրեշտակ ասէ։ Զոր և կաղացուցեալ իսկ՝ աստուածատես անուամբն նշանակեալ արձակէ, որ հանապազատես յիշատակ երևեալ Տեառն՝ յակոբեան զաւակին փայլիցէ։

304 Եւ այսպէս ընդելական և մերձաւորագոյն յաճախէ զերևումն, մինչև հեթանոսական թագաւորացն հնազանդի տեսլեամբ՝ առ ի պահպանութիւն իւրոց ծանօթիցն. զորոց և պատմէր իսկ, թէ «Կըշտամբեաց զթագաւորս վասն նոցա՝ չմերձենալ յօծեալս Տեառն». յայտ արարեալ, թէ «Արդարև բաժին Տեառն՝ Յակոբ, և վիճակ ժառանգութեան իւրոյ՝ Իսրայէլ»։

305 Որոց և զամենայն ժամանակս զհետ երթեալ օգնականու-



նալով օտար հեթանոս ազգերի մեջ, պանդխտեց և ըստ աստվածապաշտ սովորությունների, բազում տարիներ իր անձի վրա համբերությամբ [նեղություն] կրեց։

300 Երբ նրա իննսունինն տարին լրացավ, Աստված երևաց Աբրահամին, ուխտ դրեց նրա հետ և խոսեց ու վերացավ։ Եվ դարձյալ Մամբրեի մոտից եկած հրեշտակների միջոցով պարգևական զավակը խոստացավ, թե նրա որդին գալու էր մարմնով, մարմին էր առնելու Աբրահամի սերնդից և լինելու էր Աբրահամի որդի և բոլոր հավատացյալների համար արդարության հայր և արդարների նահապետ էր կարգվելու։

301 Նա ստացավ նաև անթիվ բազմությամբ սերունդ ունենալու մարմնավոր խոստումը։ Նույն ձևով նաև Նա խրատեց Սոդոմացոց չարագործ երկիրը կուրացվածների [օրինակով]. ապա երբ նրանք չհամոզվեցին, կրակաբեր անձրևներ իջեցրեց և աստվածահաստատ բարկությամբ վճիռ դատեց։

302 Դրանից հետո կատարեց նրան զավակի խոստումը, քանզի տվեց նրան որդի՝ Իսահակը։ Դարձյալ երևաց Աստված Աբրահամին և փորձելու համար պահանջեց, որ Իսահակին որպես զոհ մատուցի, որով նա հանդերձյալ [կյանքի] ավետիսն ստացավ։ Նույն ձևով Աստված երևաց նաև Աբրահամի որդի Իսահակին, հիշեցնելով նրան հայրենի երկիրը։

303 Իսկ Տերը ծանոթ դարձավ և երևաց նաև Իսահակի որդի Հակոբին սքանչելագույն տեսիլքով՝ դա մի սանդուղք էր, որը հասնում էր երկինք ամենայն հրեշտակների հետ մեկտեղ։ Իսկ երբեմն Նա երևում էր իբրև սոսկական մարդ և գիշերային մենակռիվ էր մղում։ Բայց մարգարեն ասում է, որ հրեշտակն էր [մենամարտում]։ Նա նրան կաղացրեց, նրան աստվածատես անվանեց, և սա մշտական հիշեցումն էր Տիրոջ երևալու մասին, որը փայլեցնելու էր Հակոբի սերունդը։

304 Այսպես սովորական և մերձավոր դարձավ Նրա երևումը, նույնիսկ հեթանոս թագավորներին տեսիլքով երևաց, որպեսզի պահպանի իրեն ճանաչողներին։ Սրանց մասին [Ս. Գիրքը] պատմում է, թե «նրանց սիրուն կշտամբեց թագավորներին, որպեսզի չմերձենան Տիրոջ օծյալներին», հայտնի դարձնելով, թե «արդարև Հակոբը Տիրոջ բաժինն է և Իսրայելը նրա ժառանգության վիճակը»։

305 Նա ամեն ժամանակ հետևում էր նրանց, օգնելով, որհ-

*թիւն առնելով, օրհնել աճել բազմացուցանել զզաւակ նոցա ի պանդըխտութեանն։ Զորս և յերկիրն Եգիպտացւոց իջուցեալ առ ի հաց ի բերան՝ սովոյն պատճառաւ, որ լինին ընդ հինգ նահապետսն յաբրահամեան դարէն՝ ամք իբրև չորեք հարիւր և երեսուն։ Ապա անդ էր տեսանել զբարձրագոյն զառաւելութիւն շնորհաց մարդասիրին Աստուծոյ յերկրին Եգիպտացւոց. զի զայր մի ի բանտ արգելեալ կալանաւոր՝ հանեալ վերացուցեալ, յայտնի արարեալ մարգարէական արուեստիւ, տէր Եգիպտացւոցն կացուցեալ։*

*306 ԻԹ. Յետ այսորիկ բազմացուցեալ զժողովուրդն իւր յերկրին Եգիպտացւոց, և ետես զնոսա նեղեալս ի նոցանէ։ Արդ՝ եկեալ երևեալ Տեառն առն միոջ ի ժողովրդենէն Եբրայեցւոց, ընդ որ կարի հաճեալ և արժանի գտեալ աստուածեղէն խորհրդոցն, որոյ անուն Մովսէս ճանաչէր։ Երևեալ նմա ի Քորեբական լերինն բոցանշան բորբոքեալ ի մորենւոյն. ծանօթս տուեալ Մովսիսի ի հայրենեաց անտի, և զէական անունն իւր ճշմարտեալ՝ առաքեաց զնա յԵգիպտոս. ընդ որում իջեալ ազգի ազգի հարուածովք տանջէր զԵգիպտացիսն առ ի խրատ։*

*307 Եւ հանեալ զԻսրայելացիսն հովանացեալ ամպովն և սիւնաձև լուսովն և բոցաղէզ հրոյն սպառնալեօք, հերձեալ զանդունդս ծովախորս, սուզանելով զԵգիպտացիսն, և անցուցեալ զժողովուրդն հանէ յանապատ. զոր և նշանագրեալ վայելեցուցանէ։ Տանի ի Քորեբ, և հանէ զնոսա ի լեառն Սինեայ. և անդ ի վեր ի Սինէական լերինն ամպայարկ աստուածամուխ խորան հարեալ, յորում և զունդ սիւնաձև ճառագայթաձիգ, և մէգ ի մառախուղ սրահակաձև շուրջ զլերամբն պատեալ. անդ բանակ բիւրաւոր հրեշտակաց։*

*308 Անդր այնուհետև կոչեցեալ զՄովսէս՝ յանդիման առնել աստուածակերպ տեսլեանն. որոյ յստակագոյնս նկատեալ և զպատուանդան ոտիցն՝ կապուտակաձև ականակերպ աղիւսնման, զուտ երկնագոյն ջինջ, առ ի յիշեցուցանել զգործ կաւոյն և ծովուն, և զլըրբենի սիրտ խստերախ ժողովրդեանն. և ի փառաց աթոռոյն և շուրջ զնովաւ շուք ահի իբրև զհուր բորբոքեալ։*

*309 Աստուած, որ ամենայնիւ լոյս է, ամենայնիւ լուր է, ամենայնիւ տես է, ամենայնիւ բան է, ամենայնիւ զօրութիւն է, ամենայնիւ իմաստութիւն է, հոգի կենդանի, հուր կիզելոյ, լոյս անփոփոխ է, փառք անպատում, անքնին տեսիլ, անբաւ մեծութիւն՝ երևէր նոցա՝ որչափ զի նոքա կարասցեն հանդարտել նորա տեսլեանն մեծութեանն։*



*նելով, որ աճեն, և սերունդը բազմանա պանդխտության մեջ։ Նա սովի պատճառով բերեց նրանց Եգիպտացոց երկիրը բերանի հացի համար։ Այնտեղ նրանք մնացին հինգ նահապետների [ժամանակ] աբրահամյան դարաշրջանից [հաշված] մոտավորապես չորս հարյուր երեսուն տարի։ Այնտեղ կարելի էր տեսնել մարդասեր Աստուծո շնորհների բարձրագույն առավելությունը Եգիպտացոց երկրում. քանզի մի մարդու, որ բանտարկված էր որպես կալանավոր, Նա հանեց, բարձրացրեց ու հայտնի դարձրեց մարգարեական արվեստով և Եգիպտացոց տեր դարձրեց։*

*306 ԻԹ. Դրանից հետո Նա բազմացրեց իր ժողովուրդը Եգիպտացոց երկրում և տեսավ, որ նեղված են նրանցից։ Արդ, Տերը եկավ-երևաց Եբրայեցոց ժողովրդից մի մարդու, որին շատ էր հավանել, արժանի գտել աստվածային խորհուրդներին և որի անունն էր Մովսես։ Երևաց նրան Քորեբ լեռան վրա, որպես մորենու մեջ բորբոքված բոց։ Նա Մովսեսին պատմեց նրա հայրենի երկրի մասին, նրան ցույց տվեց իր էական անունը և ուղարկեց Եգիպտոս։ Ընդ որում Նա տեսակ-տեսակ հարվածներով տանջեց եգիպտացիներին, որպես խրատ։*

*307 Իսրայելացիներին դուրս հանեց ամպով և սյունաձև լույսով ու բոցադեզ կրակի սպառնալիքով հովանավորեց։ Ճեղքեց ծովախոր անդունդները, ջրասույզ անելով եգիպտացիներին և անցկացնելով ժողովրդին անապատ հանեց, որը հրաշալի ձևով նկարագրված է։ Տարավ Քորեբ, հանեց (Սինէ) լեռը և այնտեղ Սինեայի (Սինէական) լեռան վրա աստվածային ամպից խորան դրեց, որի մեջ կար ճաճագայթաձիգ սյունաձև գունդ, և մեգն ու մառախուղը վարագույրի նման լեռան շուրջը պատել էին։ Այնտեղ կար բյուրավոր հրեշտակների բանակ։*

*308 Այնուհետև կանչեց Մովսեսին աստվածակերպ տեսիլքը ցույց տալու։ Սա հստակագույն ձևով նկատեց ոտքի պատվանդանը՝ կապտագույն գոհարանման շափյուղա աղյուս, զուտ ջինջ երկնագույն, հիշեցնելու համար կավի և ջրի (ծովի) գործը և սանձարձակ ժողովրդի լրբենի սիրտը, իսկ փառքի աթոռից և նրա շուրջը ահավոր փայլ երևաց, իբրև բորբոքյալ հուր։*

*309 Աստված, որն ամբողջովին լույս է, ամբողջովին համբավ, ամբողջովին տեսիլք, ամբողջովին խոսք, ամբողջովին զորություն, ամբողջովին իմաստություն, կենդանի հոգի, վառող հուր, անփոփոխ լույս, անպատում փառք, անքնին տեսիլք, անբավ մեծություն, երևաց նրանց որչափ որ նրանք կարող էին դիմանալ*

Յետ որոյ քահանայիցն հանդերձ ծերովքն ինքնատես երևի. և ամենայն ժողովրդեանն եկեալ յանդիման երևէր ի տեսիլ հրոյ բորբոքելոյ, և ի շփոթ բարբառոյ տալ նոցա պատգամս պատուիրանաց՝ գրեալ ի քարեղէն տախտակս ձեռինն Աստուծոյ. զի յիրաւանց նորա երկիցեն, և զպատուիրանս նորա պահեսցեն։ Եւ ասէ ցնա, թէ «Գամ ես յամպս յանդիման լինել Իսրայելացւոցն՝ խօսել ընդ քեզ, զի հաւատասցեն քեզ»։ Եւ երևեցաւ կառօք քրովբէիւք, և սիւն ամպովք և միգախառն հրով։

310 Իբրև եւ նա երկիցս անգամ կալ առաջի Տեառն՝ ասէր. «Թէ գտի գթութիւնս ի քէն՝ երևեցո՛ զքեզ ինձ, զի գիտացից զանուն քո. քանզի ողորմութիւն գտի ես ի քէն»։ Ասէ ցնա Տէր, թէ «Ոչ կարես դու տեսանել զերեսս իմ. զի ոչ գոյ մարդ որ տեսանիցէ զիս, և ապրի. բայց ահա դնեմ զքեզ ի փապ վիմիդ, և անցուցանեմ առ քև զփառս իմ»։ Եւ ցոյց նմա, զի գթած է և ողորմած. և երևեցաւ նմա խոնարհութեամբն, զի նա մի՛ մեռցի, և ապրեսցի և կեցցէ։ Որ և ամենայն ժողովրդեանն եկեալ յանդիման երևէր. զորոյ և զբարբառն իսկ առ հասարակ լուեալ, մինչդեռ ընդ Մովսիսի բանս ի կիր արկեալ էր։

311 Եւ այնպէս երեկօթս արարեալ ի լերինն աւուրս բազումս, և ականատես եղեալ, և զօրէն հոգեմատեան դիւանին զլեառն արարեալ՝ ուսուցանէր զորդիսն Իսրայէլի. որոց և պատուիրանս իւրադիրս շնորհեալ, յորում և զաշխարհահամար զաշխարհապատումն լինելն Մովսիսի տայր։ Ցուցանէր և ի նմանութիւնս ինչ անտարրական խորան. զոր տեսեալ Մովսիսի՝ հանդերձ որդւովքն Իսրայելի գործեաց խորան նիւթական ըստ օրինակի ցուցելոյն, որով բնակիցէ Աստուած ի մէջ նոցա։ Յորում և հանապազախօս իսկ ընդ Մովսիսի եղեալ և բիւրապատիկ օրինացն կարգելոց պատմող և ընդ նոսին հանապազորդեալ յօթեվանս յանապատին, և ահաւորագոյն նշանագործութեամբք տարեալ հասուցեալ ի խոստացեալսն։

312 Եւ եղեալ ընդ նոսա յանապատի անդ, և շրջեցուցեալ զնոսա անդ ամս քառասուն, զի մոռացուսցէ նոցա զսովորութիւն դիւցապաշտ քարապաշտութեանցն. զի թերևս կարասցեն սակաւ մի փարատել ի հեթանոսական ի սնոտի ուսմանց անտի՝ որ ներկեալ անմտութեամբն էին։ Զի այսպէս ածեալ զմտաւ, թէ հանեալ զնոսա յերկրէն Եգիպտացւոց սովորութեամբ չարեացն, գուցէ ուր տանե-



Նրա տեսիլքի մեծությանը։ Դրանից հետո Նա անձամբ երևաց քահանաներին ծերերով հանդերձ և ամբողջ ժողովրդին եկավ-երևաց, բորբոքյալ կրակի տեսիլքով և մի ձայն շեփորի նման դրեց նրանց պատվիրանների պատգամներ, որոնք գրված էին Աստուծո ձեռքով քարեղեն տախտակների վրա, որ նրանք հարգեն նրա արդարությունը և պահեն նրա պատվիրանները։ Ասաց նրան (Մովսեսին), թե «գալիս եմ ամպերի մեջ հանդիպելու իսրայելացիներին, որ խոսեմ քեզ հետ, որպեսզի հավատան քեզ»։ Նա երևաց կառքով, քերովբեներով, ամպի սյունով և միգախառն հրով։

310 Երբ երկրորդ անգամ եկավ կանգնելու Տիրոջ առջև, ասաց՝ «Եթե ես քեզանից գթություն գտա, քեզ ցույց տուր ինձ, որ գիտենամ քո անունը, քանզի ես ողորմություն գտա քեզանից»։ Տերն ասաց նրան, թե «չես կարող իմ երեսը տեսնել, քանզի մարդ չի կարող ինձ տեսնել ու ապրել, բայց ահա քեզ կդնեմ ժայռի խոռոչի մեջ և իմ փառքը քո կողքով կանցկացնեմ»։ Նա ցույց տվեց նրան, որ գթած ու ողորմած է և երևաց նրան խոնարհությամբ, որպեսզի նա չմեռնի, փրկվի ու ապրի։ Նա ամբողջ ժողովրդի դիմաց եկավ-երևաց և նրա ձայնը բոլորը լսում էին, երբ նա Մովսեսի հետ էր խոսում։

311 Այսպես բազում օրեր լեռան վրա հսկում կատարելով, ականատես լինելով և հոգով ներշնչված օրենքների գիրքը լեռան վրա ստանալով, ուսուցանում էր Իսրայելի որդիներին, որոնց [Աստված] իր դրած պատվիրանները շնորհեց և աշխարհի արարչագործության պատումը տվեց Մովսեսին։ Ցույց տվեց նաև նմանողությամբ մի աննյութական խորան։ Երբ Մովսես Իսրայելի որդիներով հանդերձ տեսավ, ըստ ցուցադրված օրինակի, նյութական խորան պատրաստեց, որպեսզի Աստված նրա մեջ բնակվի։ Նա հաճախ խոսում էր Մովսեսի հետ և պատմում էր կարգած օրենքների բյուրապատիկ օրինակներ։ Նա անընդհատ նրանց հետ էր անապատի օթևաններում և ահավոր հրաշքներով տարավ-հասցրեց խոստացյալ [երկիրը]։

312 Նա նրանց հետ էր անապատում և այնտեղ նրանց շրջեցրեց քառասուն տարի, որպեսզի մոռացվի նրանց դիցապաշտ քարապաշտության սովորությունը, որ թերևս կարողանան իրենցից մի քիչ փարատել հեթանոսական սնոտի ուսմունքները, որոնք նրանց թակարդել էին անմտության պատճառով։ Քանզի նա այսպես մտածեց՝ թե չար սովորություններով հանելով նրանց եգիպտացոց

ցին՝ զնոսա՝ ևս լի չարեօքն զնոսա տեսեալ՝ առաւել ևս բորբոքիցին ի չարիս. զոր օրինակ օդ զհուր տեսեալ՝ ևս չարագոյն հրդեհ հատանիցէ. այլ նախ քերեսցէ ի նոցանէ զաղտն հնացեալ, և ապա զնոսին իսկ պղծալից ազգացն Քանանացւոց խլիչս տարեալ բրեսցէ, և զնոսա անդէն բնակեցուսցէ։

313 Վասն այսորիկ առեալ շրջեցուցեալ զնոսա ընդ անապատն՝ ինքնատես ի լերինն լինելով, և ազգի ազգի նշանօք և արուեստիւք ի ձեռն Մովսիսի զզաւակն աբրահամեան հրահանգէր։ Երկնաւոր հացիւն մանանային քաղցրութեան զնոսա կերակրէր. ջուր ի վիմէ բղխեալ ի ծարաւին վտակս հոսեցուցանէր. և լորամարգի տեղացեալ ղբանակօքն՝ զփափագն հարեալ լցուցանէր։

314 Որոց անդէն իսկ դառնացուցեալ զԱրարիչն՝ բարկացուցին չարին սնոտեամբն սովորութեամբ, փոխանակ բարերարին Աստուծոյ՝ որթ կանգնեալ, Աստուած անուն եդեալ և փրկիչ կարդային. վասն որոյ բարկութիւնն Աստուծոյ ի վերայ նոցա եկեալ՝ սատակեաց անթիւ զօրս բազմութեան ի ժողովրդենէ անտի. վասն որոյ հրաման ելանէր՝ չմտանել յերկիրն խոստացեալ։ Եւ անդէն անկեալ սատակեցան յանապատի անդ ամենեքեան առ հասարակ ազգն անօրէն դառնացողաց որդւոցն Իսրայելի։

315 Եւ մեծ մարգարէն Մովսէս հրամանաւ Աստուծոյ ելեալ ի լեառն՝ և անդ մեռանէր. որ մինչև ցայսօր զգերեզման նորա ոչ ոք գիտել կարաց։ Եւ սերեալք բազմացան յանապատին՝ որք ոչ գիտէին ամենևին զչարին զսնունդ ինչ մեղաց։

316 Լ. Արդ՝ ի վերայ նոցա այր մի ընտիր, ի ձեռանէ Մովսիսի, հրամանաւ Աստուծոյ զօրավար և առաջնորդ կացուցեալ, որում Յեշով անուն ճանաչէր. որ առեալ յանապատէն զաբրահամեան զաւակն զորդիսն Իսրայելի խաղաց գնաց ի խոստացեալ երկիրն. խլեաց քակեաց ազգս եօթն յամբարշտացն, և զնոսա ածեալ բնակեցոյց։ Ուր և տեղի երևեցուցեալ՝ նախ յանուն Տեառն տաճար շինեցին. և յայտ իսկ էր ի հրամանէ Աստուծոյ, անդ միայն իշխել մատուցանել նմա զողջակէզսն պատարագաց, ուր բնակեալ էր Աստուած ի մէջ մարդկան։ Եւ անդ յարուցեալ նոցա դատաւորս, որք ըստ Աստուծոյ, կամացն դատէին զնոսա, որ և լի էին հոգւով մարգարէութեան. և էր զի ամամէջս արարեալ նոցա, իբրև մեռանէին դատաւորքն՝ դարձեալ ամբարշտեալ յԱստուծոյ՝ զից պաշտօն տա-



երկրից, գուցե այնտեղ, ուր տարվեն, նրանք տեսնեն, որ ժողովուրդը էլ ավելի չար է և իրենք ևս չարիքի մեջ առավել բորբոքվեն, ինչպես օրինակ, օդը, որ տեսնելով հուրը, ավելի է հրդեհ բորբոքում։ Նա ուզեց նախ քերել նրանցից հնացյալ աղտը և նրանց առաջնորդելով Քանանացոց պիղծ ազգերի դեմ, քանդել, արմատախիլ անել նրանց և [իսրայելացիներին] այնտեղ բնակեցնել։

313 Այս բանի համար նա շրջեցրեց նրանց անապատի մեջ, ուր Նա անձամբ լեռան վրա երևաց։ Նա Մովսեսի գործած տեսակ-տեսակ նշաններով ու հրաշքներով հրահանգեց Աբրահամի զավակներին։ Քաղցր մանանայի երկնավոր հացով կերակրեց նրանց, վեմից ջուր բխեցրեց, վտակներ հոսեցրեց ծարավների համար և բանակատեղու վրա լորամարգի տեղացրեց նրանց փափագը գոհացնելու համար։

314 Այնտեղ ևս նրանք Արարչին դառնացրին, բարկացրին իրենց սովորական չար վարմունքով։ Բարերար Աստուծո փոխարեն հորթ կանգնեցրին, նրա անունը Աստված դրեցին և փրկիչ կոչեցին։ Այդ պատճառով Աստուծո բարկությունը նրանց վրա եկավ և ժողովրդի անթիվ բազմություն կոտորվեց, որի համար էլ հրաման եղավ խոստացյալ երկիրը չմտնել։ Ապա անապատում կորան, կոտորվեցին ամենքն առհասարակ՝ Իսրայելի որդիների անօրեն, [Աստծուն] դառնացնող ազգը։

315 Եվ մեծ մարգարեն Մովսես Աստուծո հրամանով ելավ լեռը և այնտեղ մեռավ ու մինչև օրս ոչ ոք չի կարողացել գտնել նրա գերեզմանը։ Իսկ նրանք սերելով բազմացան անապատում և ամենևին չգիտեին, որևէ մեղք կամ չարի ներգործություն։

316 Լ. Արդ, Մովսեսի ձեռքով և Աստուծո հրամանով նրանց վրա մի ընտիր այր զորավար և առաջնորդ էր կարգվել, որի անունն էր Հեշով (Յեշով, Յեսու)։ Սա անապատից վերցնելով աբրահամյան սերունդը՝ Իսրայելի որդիներին, շարժվեց-գնաց խոստացյալ երկիրը։ Նա արմատախիլ արեց, կործանեց ամբարիշտ յոթը ազգերին, և նրանց (իսրայելացիներին) բերելով բնակեցրեց։ Այստեղ նա տեղ ցույց տվեց և նախ հանուն Տիրոջ տաճար շինեցին։ Աստուծո հրամանից հայտնի էր, որ միայն Նրան իրավունք ունեն պատարագի ողջակեզը մատուցել, ուր Աստված բնակված էր մարդկանց մեջ։ Ապա նրանց դատավորներ տվեց, որոնք ըստ Աստուծո կամքի դատում էին նրանց և լի էին մարգարեական հոգով։ Սակայն երբ դատավորները մեռնում էին, նրանց տարիների

նէին և պատկերաց երկիր պագանէին։ Վասն որոյ անդրէն մատնեալ զնոսա ի ձեռս օտար ազգաց և հեթանոս թագաւորօք խրատէր զնոսա։

317 Յետ այսորիկ ինքեանք իսկ խնդրեցին յԱստուծոյ թագաւորս, և ետ նոցա։ Յորոց միջի յարոյց զԴաւիթ որ լի էր Հոգւով սրբով, որում վկայեաց ևս, թէ «Գտի զԴաւիթ զորդի Յեսսեայ՝ այր ըստ սրտի իմում, որ արասցէ և կատարեսցէ զամենայն զկամս իմ»։ Եւ կանգնեաց ևս զաթոռ նորա և զաթոռ զաւակի նորա։

318 ԼԱ. Եւ ապա դարձեալ՝ անդ էր տեսանել ի պարգևական երկրին գունդս գունդս մարգարէականս, որք և տեսանողք կոչէին՝ վասն աստուածակերպ յայտնութեանցն պատահելոց։ Որք և բարձրագոյն պատմէին իսրայելական տոհմին ըստ իւրաքանչիւր կարգի. որպէս և արքայն Դաւիթ զհամաշխարհական տէրութիւնն երգեաց, թէ «Տէ՛ր Տէր մեր, զի՜ սքանչելի է անուն քո յամենայն երկրի»։

319 Զի է որումն կառօք տեսեալ իբրև զօրավար պայծառագոյն, և ումն իբրև զայր մի դատաւոր ի դատողական աթոռ՝ իբրև զորդի մարդոյ ընդ ամպս երկնից եկեալ՝ զհինաւուրցն տեսանէ. իսկ այլ ումն իբրև զայր մի ի վերայ սեղանոյ. զոր և ասէն իսկ, թէ «Տեսի զՏէր, զի կայր ի վերայ սեղանոյ»։ Տեսանե՞ս, զի թէպէտ և այր տեսանի՝ Տէր ճանաչի։

320 Եւ միւս ումն ևս սքանչելակերպ, թէ «Տեսի զՏէր ի վերայ աթոռոյ բարձրացելոյ, և վեցթևեան սրոբէագունդ շուրջ զՏերամբն»։ ուստև և զամենայնսն աստուածեղէն է իմանալ. որպէս և Աստուծոյ իսկ առ Աբրահամ անհամար և յաճախագոյն տեսիլս արարեալ և ամենայն զաւակի նորա։ Զոր և ասէ իսկ մարգարէն ի Տեառնէ, թէ «Ես ի տեսիլս յաճախեցի, և ի ձեռն մարգարէից նմանեցայ»։

321 Որ ի բաժանել ազգացն և խառնակել լեզուացն և ի ցանել որդւոցն Ադամայ՝ կարգեաց սահմանս ըստ թուոյ հրեշտակաց Աստուծոյ։ Որպէս և հրեշտակացն իսկ ինքնապատում արարեալ ցանկալւոյն Դանիէլի զիւրաքանչիւր սահմանացն, զոր և բարերարին Աստուծոյ հարկանելով, ի բարկութեանն զողորմութիւնս յիշէր. զի ի



միջև ընկած ժամանակ դարձյալ Աստուծո նկատմամբ ամբարիշտ դառնալով, աստվածներին պաշտամունք էին մատուցում և պատկերներին երկրպագում։ Դրա համար նրանց կրկին մատնեց օտար ազգերի ձեռքը և հեթանոս թագավորների միջոցով խրատում էր նրանց։

317 Դրանից հետո իրենք Աստծուց թագավորներ խնդրեցին և Նա տվեց նրանց։ Սրանց միջից բարձրացրեց Դավթին, որը լի էր սուրբ Հոգով և Նրա մասին վկայեց իսկ, թե «գտա Դավթին՝ Հեսսեի (Յեսսէ) որդուն, իմ սրտի համեմատ մարդուն, որն անելու և կատարելու է իմ բոլոր ցանկությունները»։ Նա կանգնեցրեց նաև նրա աթոռը և Նրա զավակի աթոռը։

318 ԼԱ. Ապա դարձյալ կարելի էր տեսնել այնտեղ պարգևական երկրում գունդ-գունդ մարգարեների, որոնք նաև տեսնողներ էին կոչվում, իրենց [երևացած] աստվածային հայտնությունների համար։ Նրանք բարձրաձայն պատմում էին Իսրայելի տոհմերին, ըստ յուրաքանչյուրի կարգի, ինչպես Դավիթ արքան երգեց համաշխարհային տերությունը, թե «Տեր, Տեր իմ, ինչ սքանչելի է քո անունը ամբողջ երկրի վրա»։

319 Քանզի մեկին երևաց կառքով, իբրև պայծառագույն զորավար, և մեկ ուրիշը տեսավ Հինավուրցին (Աստուծո), դատավորի նման դատական աթոռին նստած կամ մարդու Որդու նման, որը երկնքի ամպերի վրա էր գալիս. մեկ ուրիշն էլ [տեսավ Նրան] իբրև մի մարդու, որը սեղանի (խորանի) վրա է, ինչպես ասում են՝ «Տեսա Տիրոջը, որը սեղանի վրա էր»։ Տեսնում ես, որ թեպետ իբրև մարդ երևաց, ճանաչված է որպես Տեր։

320 Իսկ մեկ ուրիշն էլ տեսավ դեռ ավելի սքանչելակերպը. «Տեսա Տիրոջը աթոռին բարձրացած և վեցթևյան սերովբեների գունդը Տիրոջ շուրջը»։ Ուստի այս ամենը աստվածային ձևով պետք է հասկանալ և Աստված էլ Աբրահամին ու բոլոր սերունդներին անհամար և հաճախագույն տեսիլքներ ցույց տվեց։ Ինչպես մարգարեն էլ ասում է Տիրոջ կողմից, թե «Ես տեսիլքները հաճախակի դարձրի և մարգարեների ձեռքով նմանություններ գործեցի»։

321 Նա ազգերի բաժանման, լեզուների խառնակության և Ադամի որդիների ցրուցան անելու ժամանակ սահմաններ կարգեր ըստ Աստուծո հրեշտակների թվի։ Ինչպես իրենք հրեշտակներն էլ պատմել են ցանկալի Դանիելին, յուրաքանչյուրի սահմանների մասին և որոնց բարերարն Աստված պատժեց, սակայն բարկության

պղծագունդ այսոց, ի պատերազմական դիւացն՝ աստուածակարգ անուշահոտ ոգիքն զազգս մարդկան աներկիւղ պահեսցեն, առ ի յարդարելոյ ի գիտութիւն աստուածամերձ։ Զոր և երանելոյն Դաւթայ ըղձալի առեալ պատմէր, թէ «Բանակք հրեշտակաց Տեառն շուրջ է զերկիւղածօք իւրովք, և պահէ զնոսա»։ Եւ մեծն Յակոբ, թէ «Հրեշտակն որ պահէր զիս ի մանկութենէ իմմէ»։ Եւ ամենատէրն, թէ «Հրեշտակ իմ երթիցէ առաջի՝ պատրաստել զճանապարհս քո»։ Որոյ պահպանութիւնն առ ի ծանօթ առնելոյ աստուածամերձ գիտութեանն զմիասնական ազգսն բաժանեալս, զանկեալսն յերեսաց Աստուծոյ, զի թերևս երևելի արարածովքս՝ ծանօթք աներևութին Աստուծոյ լինիցին։

322 Զի «արար ի միոջէ արենէ զամենայն ազգս մարդկան՝ բնակել ի վերայ երեսաց երկրի. և հաստատեաց կարգեալ ժամանակս և սահմանադրութիւնս բնակութեան նոցա՝ խնդրել զԱստուած, զի թերևս զննիցեն զնա և գտանիցեն». «զի աներևոյթք նորա ի սկզբանէ աշխարհի՝ յարարածոցս իմացեալ տեսանին». զի Տէր արժանաւորաց իւրոց մերձաւոր է։ Նոյն օրինակ և ի Տեառնէ են ամենայն պահպանութիւնք. զի ուր Տէրն է՝ անդ ամենայն բանակք հրեղինացն են. որպէս և հայրապետին Յակոբայ՝ ըստ յայտնութեանցն եղելոցն առ նա՝ միանգամայն իսկ ի միջի լինէր հրեշտակախուռն բանակաց. քանզի կարգեալ էին հրեշտակքն ըստ նմանութեանցն առ ի պատգամաւորութիւն մարդկան կամօք մարդասիրին Աստուծոյ, որ առ վեցթևեան սերովբէիւքն իմանալի է։

323 Քանզի ոչ եթէ մարմնեղէն թևաւորք, այլ ըստ նմանութեան թևաւորք. որք երբեք բնաւ իսկ սոսկագոյն իբրև զմարդիկ հրեշտակքն երևեալ։ Քանզի առ Աբրահամու և Ղովտայ մարդկօրէն իսկ դարմանեալ. և առ Դանիէլիւ՝ իբրև զայր մի երևեալ. նոյնպէս առ Գեդէոնիւ՝ թանձրագոյն տեսլեամբ. իսկ Զաքարիա՝ հեծեալ ի մէջ լերանց ետես, և Յեսու՝ բնաւ իբրև զմարդ յանկարծագոյն, որում և յաներկիւղս հարցանէր. «Ի մե՞նջ իցես, եթէ ի թշնամեաց մերոց». և



մեջ հիշեց իր ողորմությունը։ Որպեսզի աստվածակարգ անուշահոտ հոգիները ոգիների պիղծ գնդից, ռազմաշունչ դևերից մարդկային ազգը աներկյուղ պահպանեն և պատրաստեն աստվածամերձ գիտությանը։ Ինչպես երանելի Դավիթը քննելով պատմում է, թե «Տիրոջ հրեշտակների բանակները շրջապատում են իրենց երկյուղածներին և Նա պահպանում է նրանց»։ Մեծն Հակոբը (ասում է), թե «հրեշտակը, որ ինձ պահում էր իմ մանկությունից»։ Իսկ Ամենատերը, թե «իմ հրեշտակը (դեսպանը) առջևից է գնալու քո ճանապարհները պատրաստելու համար»։ Նրա պահպանությունը այն բանի համար է, որ միասնական [բնությամբ], բայց բաժան-բաժան եղած ազգերին, որոնք Աստուծո երեսից ընկած են, աստվածամերձ գիտությանը ծանոթացնի, որպեսզի թերևս նրա երևելի արարածների միջոցով նրանք ծանոթացան աներևույթ Աստծուն։

322 Քանզի «մեկ արյունից ստեղծեց մարդկության բոլոր ազգերը, որ բնակվեն երկրի երեսին, հաստատեց որոշված ժամանակները (եղանակները) և նրանց բնակության սահմանները, որպեսզի փնտրեն Աստծուն և թերևս զննեն ու գտնեն»։ «Նրա աներևույթ [արարածները] ի սկզբանե աշխարհի, ծանոթ և տեսանելի են եղել ստեղծվածների միջոցով». քանզի Տերը իր արժանավորներին մերձավոր է։ Նույնպես և Տիրոջից են ամենայն պահպանությունները, քանզի, ուր Տերն է, այնտեղ են նաև հրեղենների (հրեշտակների) բոլոր բանակները։ Ինչպես Հակոբ հայրապետը, ըստ նրան եղած հայտնությունների, միանգամայն հրեշտակների բանակի մեջ էր գտնվում, քանզի հրեշտակները ըստ իրենց նմանությունների, կարգված էին մարդասեր Աստծու կամքով պատգամաբեր լինելու մարդկության համար, որը հասկանալի է վեցթևյան սերովբեների օրինակով։

323 Քանզի թեև նրանք մարմնեղեն թևավորներ չեն, այլ նմանությամբ թևավորներ, այսուհանդերձ հրեշտակները սոսկական մարդու կերպարանքով երևում են։ Նրանք Աբրահամին և Ղովտին մարդկային արտաքինով հայտնվեցին. նրանցից մեկը Դանիելին երևաց որպես մարդ. նույնպես և ծանր տեսիլքով հայտնվեց Գեդեոնին։ Զաքարիան լեռներում հեծյալ գնալիս, տեսավ [հրեշտակին], իսկ Հեսուն հանկարծակի տեսավ հենց մարդու կերպարանքով և աներկյուղ հարցրեց նրան՝ «Մեզանի՞ց ես, թե մեր թշնամիներից» և ապա տեղեկանալով, թե Աստուծո զորքերի զորավար

*ապա տեղեկացեալ, եթէ զօրավար է զօրացն Աստուծոյ՝ անկեալ երկիր պագանէր։ Նոյն օրինակ և ամենայն հրեշտակատեսացն։*

*324 Ճշմարտագոյն համարիցիմք այսուհետև զհոգեկան ազգին զամենայն մարդակերպ նմանութիւնս առ մարդիկ եղեալ՝ առ ի պատգամաւորութիւն սպասաւորութեան հրամանացն Աստուծոյ, առ ի պաշտօն ժամանակաց ըստ իրաց իրաց ինչ ընծայելոց, և ոչ հանապազակիր զնոյն նմանութիւն յանձին պահելոյ։ Զորոց զանտարրական անձինս մարգարէն իսկ գուշակէ, թէ «Ո արար զհրեշտակս իւր հոգիս, և զպաշտօնեայս իւր ի բոց հրոյ», զի «հոգիք են հարկաւորք, որք առաքին ի սպասաւորութիւն ժառանգաւորացն փրկութեան»։*

*325 Վասն այսորիկ և անպատում եղեալ Մովսիսի, զի մի՛ ընդ անզգայական արարածս հոգիքն մտաւորք և բանաւորք համարեսցին. այլ ծառայական սպասաւորութեամբն ինքեանք իսկ բարձեալ բերիցեն զհրամանս մեծութեան փառացն Աստուծոյ։ Բայց վասն արարեալ բնութեան նոցա՝ անդուստ ի վերուստ իսկ մարգարէքն բարձրագոյնս հնչէին, թէ «Արար զհրեշտակս իւր հոգիս»։ Եւ միւսն, թէ «Ես եմ տէր Աստուած, որ հաստատեցի զերկինս և զերկիր, որոյ ձեռք հաստատեցին զամենայն զօրս երկնից», բայց եթէ էին տարրաւորք՝ ապա երևելիք, և ոչ աներևոյթք. և առ հասարակ ոչ ումեք երևեալ։ Իսկ եթէ արարելոցն այսպիսի, ո՞րչափ ևս առաւել բարձրագոյն անարար և անմատոյց աներևոյթ բնութիւն էականին Աստուծոյ իմանալցի։*

*326 Որոյ ամենայն աստուածատես կատարելոցն միապէս մարդահասակ նմանութեամբ երևեալ ըստ իւրաքանչիւր ժամանակի, որ ի բարբառոյն իսկ և ի հրամանացն ճանաչի, եթէ մարդակերպ երևեալ։ Քանզի և ընդ մարդկան խօսէր, վասն հրաւիրելոյ ի տեսիլ բարեացն խոստացելոց, և ոչ մշտնջենաւոր զնոյն նմանութիւն յանձին պահելով։ Այլ նա բաւական է նմանութեամբք ճշմարտութիւն ցուցանել, որում ամենայն դժուարինքն դիւրականք են, և անհնարինքն հնարաւորք. կարող է ամենայնի, և տկարանայ նմա և ոչ ինչ։ Զորմէ և տեսանողքն բարձրաձայն հնչէին. զի ի չափաւոր յայտնութեանցն զանչափական աներևոյթն ճանաչէին, և առժամայն տեսլեամբն՝ զէական զօրութիւնն գիտէին ըստ կարի իւրեանց։*

*327 Զոր և հայրապետն Աբրահամ՝ տէր և դատաւոր ամենայն*



*ք, գետին ընկավ, երկրպագեց։ Նույնը կատարվեց նաև բոլոր հրեշտակատեսներին։*

*324 Այսուհետև ճշմարիտ համարենք, որ հոգևոր ցեղի ամեն տեսակ մարդկային կերպարանքով ի հայտ գալը մարդկանց, եղել է Աստուծո հրամաններին հնազանդվելու և տարբեր ժամանակներում ծառայություն մատուցելու համար տրված [զգուշացում]։ Եվ նրանք ոչ միայն նույն կերպարանքն են պահպանում. նրանց աննյութական անձերի մասին մարգարեն իսկ գուշակում է, թե «Նա իր հրեշտակներին հոգիներ է դարձրել և պաշտոնյաներին՝ կրակի բոց», քանզի «նրանք ծառայող հոգիներ են, որոնք առաքվում են սպասավորելու փրկության ժառանգորդներին»։*

*325 Այս մասին Մովսեսը ոչինչ չի պատմել, որպեսզի չլինի թե մտավոր և բանավոր հոգիները անզգա արարածներ համարվեն, այլ նրանք ծառայական սպասավորությամբ իրենք վերցրած կրերեն Աստուծո փառքի մեծության հրամանները։ Բայց ինչ վերաբերում է նրանց բնության ի վերուստ ստեղծված լինելուն, մարգարեները բարձրաձայն հայտնում են, թե «Նա իր հրեշտակները հոգիներ դարձրեց», իսկ մյուսը, թե «ես եմ Տեր Աստվածը, որ հաստատեց երկինքն ու երկիրը, որի ձեռքերը հաստատեցին երկնքի բոլոր զորքերը»։ Բայց եթե նրանք նյութական լինեին, ապա տեսանելի պիտի լինեին, ոչ աներևույթ և առհասարակ ոչ ոքի [հատուկ] չպիտի հայտնվեին։ Իսկ եթե այսպես է ստեղծվածների համար, որչափ ևս առավել Աստուծո էության աներևույթ բնույթը պիտի համարվի անստեղծ և անմատչելի։*

*326 Բոլոր աստվածատես կատարյալներին Նա միատեսակ մարդկային նմանողությամբ երևում է ըստ տարբեր ժամանակների և ճանաչվում է իր ձայնից և հրամաններից, եթե մարդակերպ է երևում, քանզի մարդկանց հետ է խոսում, հրավիրելով խոստացյալ բարիքների տեսիլքին և միշտ չէ, որ Նա նույն կերպարանքը իր վրա է վերցնում։ Նա ի վիճակի է ցույց տալ ճշմարտությունը նմանությամբ, որի մեջ բոլոր դժվարությունները դյուրին են և անհնարինները՝ հնարավոր։ Նա կարող է ամեն ինչ անել և ոչինչ անկարելի չէ Նրա համար։ Նրան տեսնողները նրա մասին բարձրաձայն գոչում էին, թե չափավոր հայտնություններից նրանք ճանաչեցին անչափելին, աներևույթը և վայրկենական տեսիլքով իմացան էական զորությունը ըստ իրենց կարողության։*

*327 Աբրահամ հայրապետն էլ Նրան ամբողջ երկրի տեր և*

երկրի կոչէր. և մեծն Մովսէս՝ էական Աստուած և արարիչ ամենեցուն. որում և ցանկացեալ իսկ էր զփառսն տեսանելոյ, զի ամենայն իսկ մարգարէքն տեսանողք էին։ Ոմն՝ թէ «Տէր Տէր առաքեաց զիս և Հոգի նորա». և թէ՝ «Բերան Տեառն խօսեցաւ զայս»։ Ապաքէն որ բերանոյն լսէր՝ և կերպարանացն ականատես լինէր։ Եւ ոմն պաղատանս մատուցեալ ասէր. «Տէր Տէր, աՀաւասիկ խօսել իսկ ոչ գիտեմ, զի մանուկ եմ ես»։ Տեսանե՞ս, «աւասիկ» ղյանդիմանն ցուցանէ։ Եւ ամենայն իսկ հրամանաբերքն՝ իբրև յերեսաց Տեառն եկեալ բարձրաբարբառ ընդ Հանուր աղաղակէին, ոմն՝ թէ «Ասաց Տէր զօրութեանց», և ոմն՝ թէ «Հրամայեաց Տէր ամենակալ»։ Իսկ Ամովսական բարբառովն միանգամայն իսկ ճանաչի՝ որով ասէն, թէ «Ոչ արասցէ Աստուած իրս ինչ՝ եթէ ոչ յայտնեսցէ զխորատն ծառայից իւրոց մարգարէից»։

328 ԼԲ. Եւ արդ՝ յայտնի է այսուհետև ասացելովքս, թէ և նախաստեղծ մարդոյն զնոյն նմանութիւն երևեալ ի սկզբանն. որպէս և առ յապայ ամենայն աստուածատես կատարելոցն զնոյն պահեալ, զի մի՛ օտարագոյն ինչ և անծանօթ կերպարանօք զտեսողսն Հարթուցանիցէ։ Մանաւանդ թէ առաւել լաւագոյն իսկ, զի յաստուածատես Հօրէն որդւոյն տեղեկացեալ՝ դիւրագոյն պատրաստիցի իբրև ընդելականի՝ և զլուեալն ունկանն և ակամբ ևս նկատել։ Որպէս և երանելին Յովբ, սիրելին Աստուծոյ, արդարն, ասէր ցԱստուած, թէ «Ի լուր ականջաց լսէի զքէն յառաջագոյն, բայց արդ և ակն իմ ետես զքեզ». ցոր և ասէր իսկ Աստուած. «Պնդեա՛ իբրև այր զմէջ քո, և մի՛ Համարիր այլազգ ինչ երևեալ քեզ»։

329 Քանզի և ի սկզբանն ըստ աղխեցութեանն երևեալ Աստուած, զոր և ասէն, եթէ «Ըստ պատկերի Աստուծոյ արար զմարդն»։ Եւ ամենայն յաւիտեանցն ըստ նմին նմանութեան Աստուած փառաց երևեալ. զոր և ասէր իսկ վկայն Ստեփաննոս, թէ «Աստուած փառաց երևեցաւ Հօր մերում ԱբրաՀամու», և ամենեքեան իսկ Տէր սաբաւովթ, և Աստուած ամենակալ կոչեն։

330 Եւ արդ՝ զերևելն Աստուծոյ ըստ նմանութեան մարդկան՝ ապաքէն ըստ տկարութեան տեսողացն իմանալի է, և ոչ եթէ անչափակալ բնութիւնն Աստուծոյ՝ սաՀմանաթաքոյց և կողմնափակ իցէ, և երբեք երբեք յիւրական սաՀմանացն յայլ սաՀմանս երևեալ գայցէ, որով լին է ամենայն։ Այլ զիջանելով և Հնարաւորութեամբ



պատավոր կոչեց, իսկ մեծն Մովսեսը՝ ինքնագո Աստված և ամեն ինչի Արարիչ։ Նա ցանկանում էր տեսնել Նրա փառքը, քանզի բոլոր մարգարեներն էլ տեսնողներ են։ Մեկն ասել է, թե «Տերը, Տերն առաքեց ինձ և Նրա Հոգին» և թե «Տիրոջ բերանը խոսեց այս»։ Իհարկե ով որ բերանից է լսում, նրա կերպարանքին էլ ականատես է լինում։ Մեկ ուրիշը պաղատանք մատուցելով ասում է՝ «Տեր, Տեր, աՀավասիկ խոսել իսկ չգիտեմ, քանզի մանուկ եմ»։ Տեսնում ես, «աՀավասիկը» ցույց է տալիս Նրա ներկայությունը։ Բոլոր Հրամանաբերները իբրև Տիրոջ կողմից եկածներ, միաՀամուռ բարձրաբարբառ աղաղակեցին. մեկն ասաց, թե «խոսեց զորությունների Տերը» և մեկ ուրիշը՝ «ամենակալ Տերը Հրամայեց»։ Իսկ Ամովսի լեզվով Նա միանգամայն ճանաչվում է նրա այն խոսքերից, թե «Աստված ոչինչ չի անի առանց իր խորՀուրդները Հայտնելու իր ծառաներին՝ մարգարեներին»։

328 ԼԲ. Արդ, Հայտնի է այսուՀետև մեր ասածներից, թե սկզբում նախաստեղծ մարդուն էլ նույն նմանությամբ երևաց, ինչպես և Հետագայում բոլոր աստվածատես կատարյալներին նույնը արեց, որ չլինի թե օտար կամ անծանոթ կերպարանքով տեսնողներին խրտնեցնի։ Մանավանդ թե ավելի լավ է, որ որդին աստվածատես Հորից տեղեկանալով դյուրությամբ նախապատրաստված լինի, որպես ընտանի [երևույթի] և լսածը ականջով ու աչքով նկատի։ Ինչպես և երանելի Հոբը, Աստուծո սիրելին, արդարը ասել է Աստծուն, թե «իմ ականջների լսողությամբ ես առաջինը քեզ լսեցի, բայց Հիմա իմ աչքն էլ քեզ տեսավ», որին և ասել է Աստված. «Պնդացրու քո մեջքը տղամարդու նման և մի Համարիր, թե որևէ օտարոտի բան երևաց քեզ»։

329 Քանզի սկզբում էլ Աստված երևաց ըստ ազգակցության, ինչպես [Սուրբ Գիրքն] ասում է, թե «ըստ Աստուծո պատկերի ստեղծեց մարդուն»։ Ուստի ամբողջ Հավերժության մեջ նույն նմանությամբ փառքի Աստվածը երևում է, ինչպես Ստեփաննոս Վկան ասել է՝ թե «Փառքի Աստվածը երևաց մեր Հոր ԱբրաՀամին»։ Եվ նրանք բոլորն էլ Նրան կոչեցին Տեր Սաբավովթ (Աստված) և ամենակալ Աստված։

330 Արդ, Աստուծո երևալը մարդու նմանությամբ տեսնողների տկարության պատճառով էր և ոչ թե այն, որ Աստուծո անչափելի բնությունը սաՀմանափակ և կողմնափակ է և ոչ էլ, այն, որ Նա, որով լցված է ամենայն ինչ, երբեմն երևում է իր սաՀման-

ընդելացուցանէր նմանութեամբքն, զի մերձաւորս և աստուածամուխս և յանդիմանատեսս ճշմարիտ կերպարանացն պատրաստիցէ. քանզի ի նմանութենէն ապաքէն լինի ճշմարտութիւնն խնդրելի։

331 Որում և մեծն Մովսէս ցանկացեալ հայէր. զի թէպէտ ձեռն ի ձեռն և բերան ի բերան յանդիմանախօս ընդ Աստուծոյ ճանաչէր Մովսէս՝ սակայն ճշմարիտ գեղոյն փութայր հասանել, ասելովն ցԱստուած, թէ «Ցո՛յց ինձ զանձն քո»։ Եւ արդ՝ տե՛ս զպատասխանին, թէ «Ոչ ոք է մարդ, որ տեսանիցէ զԱստուած և ապրիցէ». և ապա սակաւիկ ինչ նշանակաւ նուաճեալ զհայցողն, և զբնականն աներևոյթ պահեալ, վասն զի անհաս էր։

332 Տեսանե՞ս, զի անտեսական է ի հայեցողաց, և անքննական ի քննողաց ըստ առանձնական կերպարանացն. քանզի ոչ եթէ կերպարանք ինչ տարրականք իցեն նմանութիւնքն, այլ առ ժամայն տեսիլ. իսկ ճշմարտութիւնն՝ բնութիւն գոյական։ Քանզի և Մովսիսի նմանութիւն օրինակաւ տարրական խորանի ցուցաւ, ըստ որում կազմեաց խորան նիւթական, և Եզեկիելի՝ տաճար, օրինակ տաճարի։ Նոյնպէս և առաջին մարդոյն նմանութիւն անտարրական մարդակերպ երևեալ Աստուծոյ, զի արասցէ մարդ ի տարրական նիւթոյ՝ մերձաւոր ճշմարտութեանն։ Քանզի Աստուած անզղջական բարերարութեամբ իւրով կարգեաց առաջին մարդոյն՝ մերձաւոր և աստուածամուխ լինել աստուածական վայելչութեանն։

333 Եւ մի ըստ միոջէ առատագոյն Հոգին Աստուծոյ հեղեալ ի վերայ դասադաս գունդագունդ սրբոց մարգարէիցն ի մէջ իսրայելական տոհմին, որք ըստ կամացն Աստուծոյ պատուիրէին իւրեանց ազգացն՝ պահել զգուշութիւն հրամանացն Աստուծոյ. որ ազգ էին ընտիր, և պատուէր առին՝ չմերձենալ յայլ ազգս, և չխառնակել ի տոհմս հեթանոսաց, զի մի՛ ևս ուսցին զմեղս նոցա։

334 Իսկ նոցա խառնակեալ թաթաւեալ խնամութեամբ ընդ նոսա՝ առին ուսան զանաստուածպաշտութիւնս նոցա. թագաւորօքն և իշխանօքն խառնակեցան։ Վասն որոյ տրտունջ եղեալ մարգարէին՝ գոչէր, թէ «Խառնակեցան ընդ հեթանոսս և ուսան զգործս նոցա».



ները փոխարինելով ուրիշ սահմաններով։ Այլ Նա զիջելով և հնարամտությամբ ընտելացնում է նրանց նմանություններով, որպեսզի ճշմարիտ կերպարանքին մերձավոր, Աստուծո [էության] խորամուխ և հայտնապես տեսնող դարձնի, քանզի անկասկած ճշմարտությունը պետք է փնտրել նմանության մեջ։

331 Նրան ցանկացավ տեսնել նաև մեծն Մովսեսը։ Քանզի թեպետ ձեռքը ձեռքին և բերանը բերանին Մովսեսը ճանաչեց ու դեմ առ դեմ խոսեց Աստուծո հետ, սակայն նա ձգտում էր հասնել ճշմարիտ գեղեցկության, ասելով Աստծուն, թե «ցույց տուր ինձ քո անձը»։ Բայց տես պատասխանը. «Ոչ ոք կարող է տեսնել Աստծուն և ապրել»։ Ապա ավելի փոքր նշանակով նվաճում է իրեն հայցողներին, իսկ իր բնական անտեսանելիությունը պահպանում է, վասնզի անհասանելի է։

332 Տեսնում ես, որ անտեսանելի է նայողներին և քննողներին անհասանելի իր առանձնահատուկ կերպարանքով։ Քանզի Նրա նմանությունները ոչ թե նյութական կերպարանքներ են, այլ անցողիկ տեսիլքներ, իսկ ճշմարտությունը՝ Նրա էական բնությունն է։ Մի նմանություն ցույց տվեց նաև Մովսեսին նյութական խորանի օրինակով, ըստ որի նա նյութական խորան կազմեց։ Եվ մի տաճար ցույց տվեց Եզեկիելին որպես տաճարի օրինակ։ Նույնպես և առաջին մարդուն Աստված ցույց տվեց մի աննյութական նմանություն մարդու կերպարանքով, որպեսզի նյութական տարրից մարդ պատրաստի ճշմարտությանը մոտիկ ձևով։ Քանզի Աստված իր անզղջական բարերարությամբ առաջին մարդուն կարգադրեց, որ իրեն մերձավոր ծանոթ լինի և խորամուխ աստվածային վայելքին։

333 Նրանց վրա մեկը մյուսի ետևից Աստուծո Հոգին առատագույն թափվեց Իսրայելի ցեղի դասադաս և գունդագունդ սուրբ մարգարեների վրա, որոնք ըստ Աստուծո կամքի իրենց ժողովրդին պատվիրեցին Աստուծո հրամանները զգուշությամբ պահել։ Նրանք ընտրյալ ազգ էին և պատվեր էին ստացել չմերձենալ այլ ազգերին և չխառնակվել հեթանոսների տոհմերին, որպեսզի չսովորեն նրանց մեղքերը։

334 Իսկ նրանք խառնակվեցին և խնամությամբ ապականվեցին նրանց հետ, վերցրին, սովորեցին նրանց կռապաշտությունը, թագավորներով ու իշխաններով խառնակվեցին։ Դրա համար մարգարեն տրտունջք ասելով գոչեց, թե «խառնակվեցին հեթա-

ծառայեցին կռոց նոցա, և եղև նոցա ի գայթակղութիւն», և թէ «Զոհեցին զուստերս և զդստերս իւրեանց դիւաց, և հեղին արիւն անբիծ, արիւն ուստերաց և դստերաց իւրեանց, զոր զոհեցին կռոցն Քանանու»։

335 ԼԳ. Արդ՝ տէր Աստուած ի ժամանակի զի հարկանէր զերկիրն Եգիպտացւոց, զի հանցէ զնոսա անտի՝ կոտորեաց զամենայն անդրանիկս Եգիպտացւոց, և փրկեաց զնոսա անտի. վասն որոյ եդեալ ուխտ ընդ հարս նոցա՝ նուիրել զորդիս իւրեանց անդրանիկս տեառն Աստուծոյ իւրեանց։ Արդ՝ փոխանակ այսորիկ առեալ նոցա զուստերս և զդստերս իւրեանց՝ դիցն հեթանոսաց զոհէին, բագինս շինեալ յերկրին՝ զոր տէր Աստուած իւր անուանեալ՝ վիճակ ժառանգութեան իւրոյ կոչէր. իսկ նոցա պատկերս կանգնեալ փոխանակ նորա՝ քարանց և փայտից երկիր պագանէին. և շաղախեալ երկիրն յարենէն, որ պոռնկեալ ի դիսն՝ յաճախէին և զպոռնկութիւնս մարմնոց. վասն որոյ պղծեալ ի գնացս իւրեանց։

336 Զի ի մտանել նոցա յերկիրն զոր ետ նոցա՝ հրամայեաց ջնջել զանօրէն ազգսն որ էին յերկրին. զորս ոչ սատակեցին, այլ դաշնաւոր եղեալ, ուխտս հաստատեալ ընդ ազգսն անօրէնս, ընդ որում և միաբանեալ ժառանգեցին զամբարշտութիւն։ Զի Աստուած վասն չարեացն իւրեանց հան զբուն բնակիչս երկրին ի բնակութենէ անտի. իսկ նոքա մտեալ՝ զնոյն գործ միաբանութեան գործել սկսան իւրեանց թագաւորօքն և իշխանօքն և քահանայիւքն հանդերձ։

337 Վասն որոյ տեառն Աստուծոյ յառաւել գթոյ մարդասիրութեան իւրոյ առաքեալ առ նոսա զմարգարէսն սպառնալեաց պատգամօք, զի դարձցին յանօրէնութեան գործոց իւրեանց, և պաշտեսցեն զԱստուած զարարիչն ամենայնի, որ վասն իւրոյ մարդասիրութեանն գթացեալ ողորմէր ի վերայ չարութեան նոցա։ Որ մարգարէիւն տրտնջէր զնոցանէ, թէ «Փայտին ասացին՝ հայր իմ ես դու, և քարին՝ թէ քո իսկ է ծնեալ զմեզ. և դարձուցին յիս զթիկունս, և ոչ զերեսս իւրեանց»։

338 Արդ՝ չար և անմիտ ազգին կուրացելոյ յարուցեալ ի վերայ մարգարէիցն՝ քարկոծել և սպանանել. և այնչափ կոտորել զնոսա.



նոսների հետ և նրանց արարքները սովորեցին, նրանց կուռքերին ծառայեցին և նրանք սրանց համար որոգայթ եղան» և թե «իրենց որդիներին ու դուստրերին զոհեցին դևերին և անբիծ արյուն թափեցին՝ իրենց որդիների ու դուստրերի արյունը, որ զոհեցին Քանանի կուռքերին»։

335 ԼԳ. Արդ, այն ժամանակ, երբ Տերը հարվածեց Եգիպտացոց երկիրը, որպեսզի նրանց (իսրայելացոց) այնտեղից հանի, եգիպտացիների բոլոր անդրանիկներին կոտորեց, իսկ նրանց այնտեղից փրկեց։ Այդ պատճառով Նա ուխտ դրեց նրանց հայրերի հետ՝ նվիրել իրենց անդրանիկ որդիներին Տեր Աստծուն։ Բայց դրա փոխարեն նրանք իրենց որդիներին և դուստրերին հեթանոս աստվածներին զոհեցին, բագիններ շինեցին այն երկրում, որը Տեր Աստվածն իրն էր անվանել և իր ժառանգության վիճակն էր կոչել։ Իսկ նրանք Նրա փոխարեն պատկերներ կանգնեցրին և քարերին ու փայտին երկրպագեցին։ Երկիրը շաղախվեց աստվածների հետ շնանալու արյունով և նրանք շատացրին մարմնի պոռնկությունը։ Այսպիսով նրանք պղծյալ էին իրենց վարքի մեջ։

336 Երբ նրանք մտան այն երկիրը, որ Նա տվել էր նրանց, հրամայեց ջնջել այդ երկրում եղած անօրեն ցեղերին։ Սակայն նրանք չկոտորեցին, այլ դաշնակից դառնալով, ուխտեր հաստատեցին անօրեն ցեղերի հետ, որոնց միանալով ամբարշտություն ժառանգեցին։ Քանզի Աստված երկրի բնակիչներին հանել էր երկրի բնակությունից, նրանց չար արարքների պատճառով։ Իսկ նրանք նորից մտնելով նույն ձևով կրկին միաբանեցին նրանց հետ, իրենց թագավորներով, իշխաններով և քահանաներով հանդերձ։

337 Դրա հետևանքով Տեր Աստված իր առավել գթության և մարդասիրության պատճառով նրանց մոտ մարգարեներ առաքեց սպառնալի պատգամներով, որպեսզի ետ դառնան իրենց անօրեն գործերից և պաշտեն ամենայնի արարիչ Աստծուն, որն իր մարդասիրությամբ գթալով ողորմել էր նրանց չարության վրա։ Նա մարգարեների միջոցով տրտնջում էր նրանցից, թե «փայտին ասացին՝ դու ես իմ հայրը և քարին, թե՝ դու ես մեզ ծնել, իսկ ինձ թիկունք դարձրին և ոչ իրենց երեսները»։

338 Արդ, չար և անմիտ ազգը կուրացյալ ելավ մարգարեների դեմ, քարկոծեց ու սպանեց և այնչափ կոտորեց, մինչև որ մարգարեներից մեկն աղաղակեց, թե «ես միայն մնացի»։ Նրանք մար-

մինչև աղաղակել մարգարէի միոջ, թէ «Ես միայն մնացի»։ Եւ առեալ զմարգարէ սուրբ անունն՝ կարդալ սուտ և ընդվայրահար քրմացն։

339 Նա և աստուածատես մարգարէքն ճշմարիտք, որք ճշմարտութեամբ պատմեցին նոցա զգալուստ ճշմարիտ Որդւոյն Աստուծոյ յաշխարհ՝ մարմնաւորութեամբ հանդերձ. որ դառնացող ազգին և զայն չկամեցեալ լսել։ Վասն որոյ ևս առաւել ի վերայ նոցա զմահն զօրացուցեալ, զի և մի ոք ոչ մնացեալ՝ զոր ոչ սպանին պէսպէս տանջանօք։

340 ԼԴ. Վասն որոյ բարկացեալ տեառն Աստուծոյ ի վերայ ժողովրդեանն՝ գարշելի առնէր զժառանգութիւնն, մատնեալ զնոսա ի ձեռս հեթանոսաց. զի զորոց սիրեցին պաշտել զդիսն և ի նոսին պոռնկեցան՝ զնոսին տանջիչս և թշնամանիչս և գերիչս ի վերայ յարուցեալ՝ մատնեաց ի ձեռս նոցա. որպէս և ասէն, թէ «Մատնեցի զնոսա ի ձեռս հոմանեաց իւրեանց հեթանոսաց, և տիրել նոցա ատելեացն, և թշնամեացն նեղել զնոսա, խոնարհեցուցեալ զնոսա ի ներքոյ ձեռաց նոցա»։ Զի թէ և բազում անգամ փրկեաց զնոսա ի ձեռաց նեղչացն, սակայն յետ ելանելոյն ի նեղութենէն՝ ի նոյն յաճախեցին. դառնացուցին զԱստուած ի խորհուրդս իւրեանց, և կորացան յանօրէնութեան իւրեանց։

341 Սակայն հայեցաւ Տէր ի նեղութիւնս նոցա՝ ի լսել զձայն աղօթից նոցա. յիշեալ զուխտն որ ընդ հարսն էր, և գթացեալ ըստ բազում ողորմութեան իւրում, և ետ զնոսա ի գթութիւնս առաջի ամենայն գերչաց նոցա։ Փրկեաց զնոսա տէր Աստուած, և ժողովեաց ի հեթանոսաց, դարձուցեալ զնոսա ի գերութենէն, յետ ամացն եօթանասնից, յերկրէն Բաբելոնի, ի կողմանցն Ասորեստանի։ Շինեաց զաւերակսն վերստին, և նորոգեաց զտաճարն անուան իւրոյ. ետ զմարգարէութիւնն, և դարձոյց զքահանայութիւնն, և նորոգեաց միւսանգամ վերստին զամենայն. և անդէն իսկ զբանն ընծայեցոյց, զոր յետ անցելոց յաւիտեանցն կատարեաց Միածնաւն իւրով։

342 Զի ոչ եթէ յետոյ իմացեալ ամենագիտին՝ գայր երևել Որդին յաշխարհ, և բարձրացուցանել զմարդիկ ի փառս աւագութեան, այլ ըստ յառաջադրութեան ի սկզբանն՝ կատարեաց ի վախճանի։ Զի խորհուրդն ծածկեալ առ Աստուած յազգացն յաւիտեանց, այժմ յայտնեցաւ սրբոց իւրոց, քանզի նմանութիւնք երևեալք առ ժամայն արդարոցն՝ գուշակք ճշմարտութեանն յաւիտենականի որ գալոցն էր՝ լինէին։



գարե սուրբ անունն առնելով, գործածեցին սուտ և անարգ քրմերի համար։

339 Նույն ձևով այս ժանտաբարո ազգը չկամեցավ լսել նաև աստվածատես ճշմարիտ մարգարեներին, որոնք պատմում էին աստվածային ճշմարիտ Որդու գալուստը աշխարհ՝ մարմնավորությամբ հանդերձ։ Ուստի նրանց առավել ևս մահվան մատնեցին և ոչ ոք չմնաց, որին չսպանեին պես-պես տանջանքներով։

340 ԼԴ. Այս պատճառով Տեր Աստված բարկացավ այդ ժողովրդի վրա և գարշելով իր ժառանգությունից, նրանց (իսրայելացիներին) մատնեց հեթանոսների ձեռքը։ Նա մատնեց նրանց այն մարդկանց ձեռքը, որոնց աստվածները պաշտել սիրեցին և նրանց հետ պոռնկացան։ Սրանց որպես տանջողներ, թշնամանողներ և գերողներ հարուցեց նրանց դեմ։ Ինչպես և ասում է, թե «մատնեցի նրանց իրենց հեթանոս հոմանիների ձեռքը, նրանց ատողները տիրեցին նրանց, թշնամիները նեղեցին նրանց և խոնարհեցրին իրենց ձեռքերի տակ»։ Քանզի թեև բազում անգամներ փրկել էր նրանց նեղիչների ձեռքից, սակայն նեղությունից փրկվելուց հետո նույնը առավել հաճախ կրկնեցին, դառնացրին Աստծուն իրենց մտածություններով և կորացան իրենց անօրենության մեջ։

341 Սակայն նայեց Աստված նրանց նեղություններին, լսելով նրանց աղոթքների ձայնը և հիշեց այն ուխտը, որ նրանց հայրերի հետ ունեցել էր։ Գթաց նրանց ըստ իր մեծ ողորմության և նրանց շնորհ արեց ընդդեմ բոլոր գերողների։ Տեր Աստվածը փրկեց նրանց և հեթանոսների միջից հավաքեց նրանց, յոթանասուն տարի հետո վերադարձրեց գերությունից, Բաբելոնի երկրից, Ասորեստանի կողմերից։ Վերստին շինեց ավերակները և նորոգեց իր անվան տաճարը, նրանց մարգարեություն տվեց, վերահաստատեց քահանայությունը և ամեն ինչ վերստին նորոգեց։ Ապա իր խոսքը առաջ բերեց, որը դարաշրջաններ անցնելուց հետո Նա իրագործեց իր Միածնի միջոցով։

342 Քանզի ամենագետը ոչ թե հետո իմացավ Որդու գալերևալը աշխարհին և մարդկանց բարձրացնելը ավագության փառքին, այլ հենց սկզբից առաջադրված նպատակը Նա վերջում կատարեց։ Այն խորհուրդը, որն Աստուծո մոտ հավիտյան ծածկված էր, այժմ հայտնվեց իր սրբերին, քանզի արդարներին ժամանակավորապես երևացող նմանությունները՝ գալիք հավիտենական ճշմարտության գուշակություններն էին։

343 ԼԵ. Զի «բազում մասամբք և բազում օրինակօք՝ կանխաւ խօսեցաւ Աստուած ընդ հարսն մեր մարգարէիւք. ի վախճան աւուրցս այսոցիկ խօսեցաւ ընդ մեզ Որդւովն, զոր եդ ժառանգ ամենայնի, որով և զյաւիտեանս արար. որ է լոյս փառաց և նկարագիր էութեան նորա. որ կրէ զամենայն բանիւ զօրութեամբ իւրոյ»։

344 Տեսանե՞ս զմասունսն և զօրինակսն և զմարգարէսն՝ յաճախագոյն, և Աստուած՝ մի, որ վասն միոյ Միածնին իւրոյ խօսէր։ Ասաց մարգարէն ի դիմաց Տեառն, թէ «Ես եմ Աստուած, և չիք այլ ոք բաց յինէն, որ պատմիցէ յառաջագոյն զվերջինսն՝ մինչ չև եղեալ իցեն, և միանգամայն կատարեսցին». զի զխորհուրդն, լռեալ ի ժամանակաց և յայտնեալ մարգարէական գրովք՝ վասն միայնոյն իմաստնոյն Աստուծոյ գիտէր։

345 Իսկ յորժամ ինքն եկեալ փրկիչն Որդին Աստուծոյ՝ յայտնեաց առ աշակերտսն. զի «Երանի է, ասէ, աչաց ձերոց՝ զոր տեսանէքդ, և ականջաց ձերոց՝ զոր լսէքդ. զի բազում մարգարէք և արդարք և թագաւորք ցանկացան տեսանել զոր տեսանէքդ՝ և ոչ տեսին, և լսել զոր լսէքդ՝ և ոչ լուան»։

346 Տեսանե՞ս, զի ազդեցուցիչք էին նմանութիւնքն՝ ճշմարիտ կերպարանացն Քրիստոսի. և վայրկենի նմանութեամբքն՝ ի մշտնջենաւոր կերպարանսն փութային հասանել։ Զոր և օրէնքն մովսիսագիրք ամենայն իրօք զհանդերձելոցն նշանակեալ փայլէին։

347 Քանզի իբրև ետես Աստուած զհամաշխարհագործ զմեղսն տարածեալ, և որով մահն թագաւորեալ՝ առ հասարակ կլանէր յԱդամայ մինչև ի Մովսէս, և ի մոռացօնս դարձուցեալ զկենսաբեր աւետիսն յառաջագիրս, որպէս հուր ինչ մոլեկան հրդեհի՝ որ ապականիցէ զլերինս և զդաշտս, արձակեալ այնուհետև ի ներքս զօրէնսն իբրև զհեղեղատ սաստիկ՝ շիջուցանել զայն համատարած։ Վասն որոյ և ասէն իսկ, թէ «Ամենայն որ արասցէ զայս՝ կեցցէ ի սոսին». զի որպէս Ադամայ, թէ ճաշակեսցէ ի ծառոյն՝ մահ սպառնայր, ուստի և թագաւորեաց իսկ մահ՝ նոյնպէս և զօրինացն ասաց, թէ «Որ արասցէ զայս՝ կեցցէ ի սոսին», որով և շիջաւ իսկ մահ։

348 Քանզի և օրէնքն իսկ ստուերագիր յօրինակատարն Քրիս-



343 ԼԵ. Քանզի «բազում եղանակներով և բազում օրինակներով Աստված կանխավ խոսել է մեր հայրերի հետ մարգարեների միջոցով, իսկ այս օրերի վախճանին մեզ հետ խոսել է իր Որդու միջոցով, որին ամենայնի ժառանգ կարգեց, որի միջոցով հավիտենականությունն ստեղծեց, և որը նրա փառքի լույսն է, էության պատկերը և ամեն ինչ կրում է իր զորության խոսքով»։

344 Տեսնո՞ւմ ես, որ եղանակները, օրինակները և մարգարեները բազմաթիվ են, իսկ Աստված մի է, որը խոսեց իր Միածին որդու մասին։ Ասաց մարգարեն Տիրոջ փոխարեն, թե «Ես եմ Աստվածը և չկա այլ ոք բացի ինձանից, որ կարողանար առաջվանից պատմել վերջին դեպքերի մասին, նախքան դրանց լինելը և բոլորը միանգամայն կատարվելը», քանզի նա գիտեր խորհուրդը միակ իմաստուն Աստուծո, որը թաքնվել էր ժամանակներից և հայտնվեց մարգարեական գրքերի միջոցով։

345 Իսկ երբ եկավ ինքը՝ փրկիչը, Աստծու Որդին, հայտնեց աշակերտներին, թե «Երանի, ասում է, ձեր աչքերին՝ տեսածների և ձեր ականջներին՝ լսածների համար, քանզի բազում մարգարեներ, արդարներ և թագավորներ ցանկացան տեսնել ձեր տեսածները ու չտեսան և լսել ձեր լսածները ու չլսեցին»։

346 Տեսնո՞ւմ ես, թե [մարգարեների] ազդարարությունները նմանություններ էին Քրիստոսի ճշմարիտ կերպարանքի և ժամանակավոր նմանություններով ջանում էին հասնել մշտնջենավոր կերպարանքին։ Այսպես էլ Մովսեսի գրած օրենքները մատնանշում ու փայլեցնում էին հանդերձյալը ամենայն մանրամասնությամբ։

347 Քանզի երբ Աստված տեսավ, որ մեղքը աշխարհում համատարած դարձավ ու նրանով մահը սկսեց թագավորել, մոռացության տալով սկզբում գրված կենսաբեր ավետիսը, և կլանել էր առհասարակ ամեն ինչ Ադամից մինչև Մովսես, որպես մոլեկան հրդեհի կրակ, որն ապականելու էր լեռներն ու դաշտերը, ապա այնուհետև ներքև արձակեց օրենքը սաստիկ հեղեղատի նման հանգցնելու համատարած [կրակը]։ Սրա համար նա ասում է, թե «ամեն ոք, որ այս բանը կատարի, նրանով կապրի», քանզի ինչպես ծառից ճաշակելու համար Ադամին մահվամբ սպառնաց, ուստի և մահն էլ թագավորեց։ Այսպես ասաց նաև օրենքների մասին, թե «Ով որ այս բանը կատարի, նրանով կապրի», որով և հանգավ մահը։

348 Քանզի հենց օրենքը, որը Քրիստոսի ստվերագիրն է ու



18—1461

տոս՝ կորուսին զմահ. որով և յայտ իսկ արարեալ զծովացեալ զմեղսն, և ի համար արկեալ, և ըստ իւրաքանչիւր յանցանաց մահ սպառնացեալ։ Եւ տկարացուցեալ զամենեսին, և փակեալ ընդ անիծիւք և ընդ դատապարտութեամբ. զի յորժամ եկեալ բառնայցէ ամենափրկիչն Քրիստոս զմեղս անիծաբերս և մահածինս՝ ասասցեն ազատեալքն, թէ «Շնորհք Նմա, որ յայնչափ մահուց փրկեաց զմեզ»։

349 Հուսկ յայտ առնէ, թէ օրէնքն Քրիստոսի մնային, ասելովն, թէ «Օրէնքն յանցուածոց վասն յաւելան, մինչև եկեսցէ զաւակն որում խոստացեալն էր, կարգեալ հրեշտակօք ի ձեռն միջնորդի»։ Քանզի «Ընդ օրինօքն, ասէ, փակեալ պահէաք ի հանդերձեալսն հայեցեալ». որում ոչ միայն ազգք երկնածնաց, այլ և աներևոյթ զօրք հրեշտակաց հանդերձ ամենայն անզգայ արարածովքս սպասեալ մնային. ըստ այնմ թէ «Ակնկալութիւն արարածոց յայտնութեան Որդւոյն Աստուծոյ սպասէ. զի ընդունայնութեան արարածք հնազանդեցան, ոչ իւրեանց կամաւ, այլ վասն այնորիկ՝ որ հնազանդեցոյցն յուսով. զի և ինքեանք իսկ արարածքն ազատեսցին ի ծառայութենէ ապականութեան՝ յազատութիւն փառաց Որդւոյն Աստուծոյ»։

350 Քանզի յորժամ Ադամ, որ ըստ պատկերի Աստուծոյ արարաւ, և ամենայն զաւակ նորա, որ աստուածորդիքն կոչեցան, կամօք իւրեանց զապականութիւն ժառանգեցին՝ ընդ նոսին և ամենայն արարածք հնազանդեալ ապականեցան. ոչ իւրեանց կամաւ, այլ վասն առաջնորդութեան կամացն Աստուծոյ առ ի Քրիստոս ազատելոյ։ Քանզի և որ միանգամ ի վայելչութիւն և ի փառս մարդոյն հաստեցան՝ ապականեալք և անարգեալք վասն նորին բարկութեան։ Եւ երկիր անիծեալ և փշաբեր, հեղեղատեալ և հրայրեաց, շարժահիմն յողդողդեալ, և օդք ապականեալք ընդ ժամանակս ժամանակս. և լուսաւորք խաւարամածք և արիւնանշանք, և երկինք այլագունեալք. որպէս ի գրոց մարգարէականաց զանցելոցն է նշանակեալ. զոր և նոյն իսկ մարգարէքն յազգականացն կրէին յանձինս իւրեանց։ Զի թէպէտ և յԱստուծոյ պատուեալք առաքէին, սակայն և չընդունելեացն



օրինակատարը՝ ոչնչացրեց մահը, Նրանով հայտնի դարձավ մեղքերի ծովացյալ լինելը և հաշիվ կատարելով մահ սպառնաց՝ ըստ յուրաքանչյուրի մեղքերի։ Նա ամենքին տկարացրեց, դրեց անեծքի ու դատապարտության տակ, որպեսզի երբ գա ամենափրկիչ Քրիստոսը և վերացնի անիծաբեր և մահածին մեղքերը, ազատվածներն ասեն՝ «Շնորհակալություն նրան, որ այդպիսի մահվանից փրկեց մեզ»։

349 Վերջինս հայտնի է դարձնում, որ օրենքը մնաց մինչև Քրիստոս, ասելով, թե «օրենքը ավելացավ օրինազանցության պատճառով, մինչև գա այն սերունդը, որին խոստացված էր, հրեշտակներով հաստատված և միջնորդի ձեռքով», քանզի «օրենքի տակ, ասում է, փակված մնացինք նայելով հանդերձյալին», որին ոչ միայն երկրածին ազգերը, այլև հրեշտակների աներևույթ զորքերը ամենայն անզգա արարածներով հանդերձ սպասավորելու մնացին։ Ըստ այնմ, թե «արարածների ակնկալությունը սպասում է Աստուծո Որդու հայտնությունը, քանզի արարածները ունայնության հնազանդվեցին, ոչ իրենց կամքով, այլ Նրա համար, որը նրանց հնազանդեցրել էր այն հույսով, որ արարածները իրենք ևս ազատվելով ապականության ծառայությունից, Աստուծո Որդու փառքի ազատությանը հասնեն»։

350 Քանզի երբ Ադամը, որն ըստ Աստուծո պատկերի ստեղծվեց, ինչպես նաև նրա բոլոր զավակները, որոնք աստվածորդիներ կոչվեցին, իրենց կամքով ապականությունը ժառանգեցին, նրանց հետ նաև բոլոր արարածները հնազանդվեցին ու ապականվեցին, ոչ իրենց կամքով, այլ Աստուծո առաջագույն սահմանյալ կամքի համաձայն նրանց ի Քրիստոս ազատ թողնելու համար։ Քանզի նրանք, որ մի անգամ մարդու վայելքի ու փառքի համար ստեղծվեցին, ապականյալներ և անարգյալներ դարձան նրա բարկության պատճառով։ Երկիրն անիծյալ և փշաբեր դարձավ, հեղեղատյալ և հրով այրված, հիմքից խախուտ, անհաստատ դարձավ, քամիները ապականված էին ըստ տարբեր եղանակների, լուսավորները խավարամած և արյունանշան, երկինքը այլագույն, ճիշտ այնպես, ինչպես նշված է գալիք դեպքերի մասին մարգարեական գրքերում։ Նույնը մարգարեները իրենց ազգակիցներից կրեցին։ Քանզի թեպետ պատվավորները Աստծուց էին առաքվել, սակայն Նրանց չընդունողները թշնամանեցին ու քարկոծեցին, ինչպես ասում է

թշնամանեալք և քարկոծեալք. որպէս և ասէ իսկ ամենատէրն, թէ «Վասն ձեր կոտորեցի զմարգարէսն բանիւ բերանոյ իմոյ»։

351 Նոյնպէս և հրեշտակքն պատգամաւորեալք առ ազգս մարդկան, անարգեալք և տրտմեալք ի չընդունելեացն դառնային. որպէս և առ Ղովտ եկեալքն հրեշտակօքն պատեհագոյն է և զայլոցն իմանալ։ Քանզի եթէ դարձ միոյ մեղաւորի՝ ամենայն հրեշտակաց ուրախութիւն բերէ, ո՞րչափ ապստամբութիւնն ամենեցուն՝ տրտմութիւն գործիցէ. որով և անունն Աստուծոյ հայհոյեալ ասի և զՀոգին սուրբ տրտմեցուցեալ։ Այլ թէպէտ և այնպէս նեղութիւնակիր ամենայն արարածքն ընդունայնութեան ծառայէին, սակայն առաջի եդելոյ ազատեցուցիչ յուսոյն ամենեքեան սպասէին, հրեշտակք և մարգարէք և ամենայն արարածք։ Զի ոմն ասէր. «Ի պահու իմում կացից, և ելից ի վերայ վիմին և ակն կալայց». և միւսն՝ թէ «Ես Տեառն ակն կալայց և սպասեցից Աստուծոյ փրկչին իմոյ». և ոմն՝ թէ «Ո՞ տացէ ի Սիովնէ զփրկութիւն Իսրայէլի»։

352 ԼԶ. Իսկ ընդէ՞ր արդեօք յերկարեալ Միածնին՝ այնչափ նեղութիւնս արարածոցն հասուցանէր. եթէ ոչ՝ զի նախ ազդ արարեալ յառաջագոյն ընդելականս առնիցէ. զի մի յորժամ յանկարծ երևեալ՝ անծանօթ, անընկալ լինիցի. այլ իբրև հայեցելոց և սպասելոց՝ եկեալ ծանօթս տայցէ։ Զի եթէ յայնչափ ժամանակաց առ իւր արարեալսն եկեալ անընկալ եղև, ո՞րչափ ևս չազդեցելոցն և չհամբաւելոցն. այլ կանխակալ խորհրդով ծանօթս տուեալ ամենայն ազգացն և յաւիտեանցն եկելոց։

353 Որպէս ոմն ի պատգամաւորացն Աստուծոյ ասէ, թէ «Ինձ տուան շնորհքս այս՝ ի հեթանոսս աւետարանել զանքնին մեծութիւնն Քրիստոսի, և լուսաւոր առնել զամենեսեան, թէ զի՛նչ է տընտեսութիւն խորհրդոյն, որ ծածկեալն էր յամենայն յաւիտեանց առ Աստուծոյ՝ որ զամենայն ինչ արար. զի յայտնեսցի արդ իշխանութեանց և պետութեանց որ յերկինս են, ի ձեռն եկեղեցւոյ՝ բազմապատիկ իմաստութիւնն Աստուծոյ, ըստ յառաջադրութեան յաւիտեանցն, զոր արար տէրամբ մերով Յիսուսիւ Քրիստոսիւ». որոյ և վասն նորին իսկ յայտ արարեալ, թէ «Իբրև եկն լրումն ժամանակին»։



ամենատերը, թե «Ձեզ համար ես կոտորեցի մարգարեներին իմ բերանի խոսքով»։

351 Նույնպես և հրեշտակները, որոնք պատգամավորներ էին մարդկային ազգին [ուղարկված], իրենց չընդունողներից անարգված ու նեղված վերադարձան այնպես, ինչպես կարելի է հասկանալ, Ղովտի մոտ եկած հրեշտակներին, քանզի եթե մեկ մեղավորի դարձը բոլոր հրեշտակներին ուրախություն է բերում, ապա որչափ նրանց ըմբոստությունը ամենքին տրտմություն կպատճառի, քանի որ Աստուծո անունը հայհոյված կլինի և սուրբ Հոգին տրտմեցրած։ Այլ թեպետ այսպիսով բոլոր արարածները նեղություն էին կրում և ունայնության ծառայում, սակայն ամենքը՝ հրեշտակները, մարգարեները և բոլոր արարածները սպասում էին առաջադրված ազատարար հույսին, քանզի մեկն ասել է՝ «Իմ պահպանության տեղը պիտի կանգնեմ, վեմի վրա պիտի բարձրանամ և պիտի հուսամ», իսկ մյուսը, թե «ես Տիրոջը պիտի հուսամ և պիտի սպասավորեմ իմ փրկիչ Աստծուն»։ Մեկն էլ, թե «Բացի Սիոնից Իսրայելին ո՞վ փրկություն կտա»։

352 ԼԶ. Իսկ ինչո՞ւ արդյոք Միածինը երկարաձգում էր արարածներին նեղություններ հասցնելը, եթե ոչ այն բանի համար, որ նախապես զգուշացնի և իրեն ընտելացնի, որպեսզի երբ հանկարծակի երևա, անծանոթ, անընդունելի չլինի, այլ իբրև նրան տեսածներ ու սպասավորներ որպես ծանոթ ընդունեն։ Քանզի արդեն այդքան ժամանակ է, որ իր արարածներին գալով [երևաց] ու անընդունելի եղավ, ապա որչափ ևս անընդունելի պիտի լիներ, եթե հայտնվեր այնպիսիների, որոնք չէին ազդարարված և տեղեկացված։ Այլ կանխավ հայտնեց խորհուրդը ամեն ազգերին և հավիտյան եկողներին։

353 Ինչպես Աստուծո պատգամավորներից մեկը ասում է, թե «ինձ տրվեց այս շնորհքը՝ ավետարանելու հեթանոսներին Քրիստոսի անքննելի մեծությունը և ամենքին լուսավորել, թե ի՞նչ է այն խորհրդի տնօրինությունը, որը բոլորից հավիտյան ծածկված էր Աստուծո մոտ, որն ամեն ինչ ստեղծել է։ Որպեսզի նա հիմա երկնքի* վրա գտնվող իշխանություններին և պետություններին եկեղեցու միջոցով հայտնի Աստուծո բազմապատիկ իմաստությունը, ըստ իր հավիտենական ծրագրի, որը նա իրագործեց մեր Տեր Հիսուս Քրիստոսի միջոցով»։ Նույնի մասին խոսելիս նա հայտնում է, թե «երբ ժամանակը լրացավ»։

354 Իսկ ո՞վ այն իցէ ի մարդկանէ, որ կարող իցէ այնպիսի վարդապետութիւն զաստուածութենէն ճշգրտել խօսել. այլ որչափ ինքն կամեցաւ՝ առ ի ծանօթ առնել զինքն. զի ծանիցեն զնա և կեցցեն։ Այլ ոչ բաւեմք արարածքս զԱրարչէն պատմել, որ բնեռեալ կամք ի տիպս պատկերիս՝ ըստ առնել առնողին. այլ որչափ ըստ չափոյ ժուժալոյ տկարութեանս մերոյ՝ ինքն կամեցաւ պատմել մեզ. քանզի ոչ ոք գիտէ զԱստուծոյ՝ եթէ ոչ Հոգին Աստուծոյ և Որդին, որ եկն և պատմեաց և յայտնեաց և եցոյց, թէ «Որ ետես զիս՝ ետես զՀայր իմ»։

355 Բայց Աստուած Հոգի կենդանի է, Հուր կիզելոյ, անթիւ և անփոփոխ է, փառք անպատում, զօրութիւն անբաւ, գեղ աննման զարմանալի, անհաս մտաց և խորհրդոց, անխօս լեզուաց, անամփոփ խորհրդոց, արտաքոյ քան զամենայն ճառս. ոչ ականատես և ոչ ունկան լուեալ, և ոչ կարծիք սրտի կարեն հասանել։ Երկինք ամենայնիւ, աշխարհ ամենայնիւ և տիեզերք ամենայնիւ ի վեր ունել ոչ բաւեն. և բան Նորա բարձեալ ի վեր ունի զամենայն և ի զօրութիւն հրամանի Նորա կախեալ առանց թևոց ի թռիչս ի վերայ օդոց իբրև թռուցեալ։ Ինքն պատեալ զամենայնիւ, ի ներքոյ ամենայնի, ի վերայ ամենայնի, արտաքոյ ամենայնի, և ամենայն ի Նմանէ, և ամենայն ի Նա, և ամենայն ի փառս Նորա։

356 Եւ ի բազում նշանս և ի բազում արուեստս խօսեցաւ ընդ հարս մեր մարգարէիւք ի ժամանակս ժամանակս, ի տեսիլս անպատումս, յաննման փոփոխմունս, ի լուր զարմանալի, ի գեղ գովելի, յաստուածեղէն կերպարանս։ Ումեմն լուսեղէն նմանութեամբ, ի կերպարանս մարդոյ, ումեմն իբրև զհուր բորբոքեալ, ի կերպարանս մարդոյ, և արդարոց բազմաց երևեցաւ ըստ կարել տեսանելեացն նոցա, և ըստ հանդուրժել լսելեաց նոցա խօսեցաւ ընդ նոսա։ Զի անբաւ է մարդոյ տեսանել զԱստուած գոյիւ իւրով, իբրև մոմոյ զհուր, զի եթէ լերինք ոչ կարեն տեսանել զնա, զի յորժամ հայեցեալ ընդ նոսա՝ հալեցին։

357 Բայց իբրև ինքնակամ կամօք բարերարութեամբ իւրով



354 Բայց ո՞վ մարդկանցից կարող էր աստվածության մասին այսպիսի վարդապետություն ճանաչել և խոսել։ Բայց Նա ինքը այսպես կամեցավ, որպեսզի իր անձը ծանոթ դարձնի և ճանաչեն նրան ու ապրեն։ Սակայն մենք արարածներս չենք կարող պատմել Արարչի մասին, մենք, որ բեռնված ենք այս պատկերի տիպին, ըստ ստեղծողի ստեղծածին։ Բայց ինչքան որ մեր տկարությունը կարող էր ժուժկալել, ինքը կամեցավ մեզ պատմել, քանզի ոչ ոք չգիտի Աստծուն բացի Աստուծո Հոգուց և Որդուց, որը եկավ ու պատմեց, հայտնեց ու ցույց տվեց, թե «ով որ ինձ է տեսել, իմ Հորն է տեսել»։

355 Բայց Աստված կենդանի Հոգի է, կիզող Հուր, անչափելի և անփոփոխ, անպատում փառք, անբավ զորություն, աննման, զարմանալի գեղեցկություն, անհասանելի մտքերի ու խոհերի համար, լեզվով անբացատրելի, մտքում չամփոփվող, դուրս է ամեն տեսակ խոսքերից, ոչ աչքով է տեսանելի, ոչ ականջով լսելի, ոչ էլ սրտի հույսը կարող է նրան հասնել։ Երկինքն ամբողջովին, աշխարհն ամենայն և տիեզերքը ամբողջովին բավական չեն ընդգրկելու նրան։ Նրա խոսքը վերև բարձրանալով կրում է ամեն ինչ։ Նրա հրամանի զորությամբ [տիեզերքը] կախված է մնում առանց օդի վրա թռչող թևերի և կարծես թռչում է։ Ինքն ամեն ինչ պարփակում է, ամեն ինչի մեջ է, ամեն ինչի վրա է, ամեն ինչից դուրս է, ամեն ինչ նրանով է, ամեն ինչ նրանում է և ամեն ինչ Նրա փառքի համար է։

356 Նա բազում նշաններով ու հրաշքներով տարբեր ժամանակներում խոսեց մեր հայրերի հետ մարգարեների միջոցով անպատում տեսիլքներով, աննման կերպարանափոխումներով, զարմանալի ձայնով, գովելի գեղեցկությամբ, աստվածային կերպարանքներով, երբեմն լուսեղեն նմանությամբ, մարդկային կերպարանքով, երբեմն որպես բորբոքված հուր, մարդու կերպարանքով։ Բազում արդարների երևաց՝ ըստ նրանց տեսնելու կարողության և ըստ նրանց լսելու համբերության՝ խոսեց նրանց հետ։ Քանզի մարդըն անկարող է տեսնել Աստծուն իր էության մեջ, ինչպես մոմը չի դիմանա կրակին և լեռները չեն կարող տեսնել նրան, քանզի եթե նայեն նրան, կհալվեն։

357 Բայց երբ իր ինքնակամ ցանկությամբ և բարերարությամբ ինքնիրեն ցույց տվեց, երևաց մարդու կերպարանքով, եր-

զինքն ցուցանէր՝ ի կերպարանս մարդոյ երևէր, ումեմն լոյս, ումեմն հուր և ումեմն հողմ, և յամպ և ի մէգ և ի մրրիկ։

358 Իսկ եթէ ասիցեմք եթէ հուր է՝ զոր ինչ տեսանեմքն ասեմք. եթէ ասեմք լոյս է՝ զնմանութեան աստի կարծիս առեալ զմերոյ բնութեանս՝ նմանութիւն ցուցանեմք երևութիւքս աներևութին վասն մերոյ անհասութեանս։ Ապա նա ըստ մերոյ փոքրկութեանս երևի, որպէս զի մի՛ տարրական արարածքս կիզցին յահէ փառացն։ Եւ զանուն նորա ոչ ոք գիտաց. զի չէ ևս անդր քան զնա ոք՝ որ անտի և այսր անուանիցէ։

359 Եւ յերևելն իւրում արդարոցն՝ զահն իւր յինքն ամփոփէր, և մարդատեսիլ և հրեշտականման երևէր մտահաս ըստ հանդուրժելոյ աչաց։ Ո՛չ արարածք կարեն քննել զարարիչն, և ոչ զանգուածն զզանգիչն գիտէ։

360 Բայց Արարիչն գթայ յիւր արարածս. զի Աստուած արար զամենայն արարածս, և զարդարեաց ի գեղ զովելի և ի փառս վայելչութեան։ Ի հողոյ ստեղծ զհողեղէն մարմինս և ի լուսոյ զհրեշտակս, զարդարեալ ի լոյս վայելուչ, և զգեցեալ զարդարեաց զփառաց աթոռն, ուր մտանեն օրհնութիւնք հրեշտակաց, բարբառք սրովբէից, փառաւորութիւնք զուարթնոց, ժողովք բանակաց և գունդք սրբոց և դասք գովչաց և օրհնութիւնք երկնաւորացն և աղօթք արդարոցն և պաշտօն սրբոցն, սրովբէքն և քրովբէքն և զօրք միաբանական լուսոյն։

361 Լէ. Զայս վկայութիւն ասացեալ՝ կարգեցաք ի ձեր լսելիս զսուրբ հաւատս ճշմարիտս, որ յայտ յանդիման վարդապետեցին մեզ Գիրք սուրբք՝ սուրբ Հոգւովն, վասն մշտնջենաւոր արքայութեան աստուածութեանն. որ յայտնեցաւ խորհրդով՝ արդարոց հարցն մերոց, և խօսեցաւ ընդ մեզ Որդւովն և սուրբ Հոգւովն, և աւետարանեցաւ սրբովք մարգարէիւք և առաքելովք, և տուաւ մեզ հաստատութիւն հաւատոց։

362 Զի հաւատովք ճշմարտեսցուք ի մի Աստուած հայր և տէր և արարիչ ամենայնի, և ի միածին Որդին, որ ի Հօրէ և առ Հօր և ընդ Հօր, և ի սուրբ Հոգին, որ ի նորին էութենէ, և նովաւ արար զամենայն արարածս։ Որ է մի տէրութիւն, մի զօրութիւն, մի իշխանութիւն, մի մեծութիւն, մի գիտութիւն, մի խորհուրդ, մի պետութիւն.



բեմն որպես լույս, երբեմն հուր և երբեմն հողմ, ինչպես և ամպի, մեգի ու մրրկի մեջ։

358 Իսկ եթե ասենք, թե նա հուր է, ապա ասում ենք այն, ինչ տեսնում ենք. եթե ասում ենք լույս է՝ նրա նմանության գաղափարը մեր բնությունից ենք առնում, աներևույթին ցույց ենք տալիս որպես երևացող մեր անկարողության պատճառով։ Բայց նա մեր փոքրիկության համեմատ երևաց, որպեսզի նյութական արարածները չայրվեն նրա փառքի ահից։ Նրա անունը ոչ ոք գիտի, քանզի դեռ ոչ ոք չկար այնտեղ, բացի նրանից, որ նրան այնտեղ և այստեղ անուն տար։

359 Եվ իր երևալովը արդարներին՝ իր ահավորությունը իրեն էր քաշել և երևացել էր մարդատեսիլ, հրեշտականման և հասկանալի ըստ աչքերի կարողության։ Ոչ արարածները կարող են քննել Արարչին և ոչ էլ խմորը գիտի իրեն պատրաստողին։

360 Բայց Արարիչը գթում է իր արարածներին, քանզի Աստված ամենայն արարածներին ստեղծեց և զարդարեց գովելի գեղեցկությամբ և վայելուչ փառքով։ Հողից ստեղծեց հողեղեն մարմինները և լույսից՝ հրեշտակներին, վայելուչ լույսով ծածկեց ու զարդարեց փառքի աթոռը, ուր բարձրանում են հրեշտակների օրհնությունները, սերովբեների ձայները, զվարթունների փառավորությունները, բանակների բազմությունը, սրբերի գնդերը, գովերգողների դասերը, երկնավորների օրհնությունները, արդարների աղոթքները, սրբերի պաշտամունքը, սերովբեներն ու քերովբեները և միաբանական լույսի զորքերը։

361 Լէ. Հիշելով այս վկայությունը՝ ձեր լսելիքներին կարգով մատուցեցինք ճշմարիտ սուրբ հավատը, որը հայտ հանդիման մեզ ուսուցանել են սուրբ Գրքերը, սուրբ Հոգու միջոցով։ Աստվածության մշտնջենավոր արքայության մասին, որը խորհրդով հայտնըվեց մեր արդար հայրերին, հաղորդվեց մեզ Որդու և սուրբ Հոգու միջոցով, ավետվեց սուրբ մարգարեների և առաքյալների կողմից ու տրվեց մեզ հավատի հաստատությունը։

362 Քանզի հավատով մենք հաստատ ճանաչեցինք մեկ Աստված Հայրը, ամենայնի տերն ու արարիչը, միածին Որդին, որը Հորից է, Հոր կողքին, Հոր հետ և սուրբ Հոգին, որը նույն էությունից է և նրանով է ստեղծել ամենայն արարածներին, որը մեկ տերություն է, մեկ զորություն, մեկ իշխանություն, մեկ մեծություն, մեկ գիտություն, մեկ խորհուրդ, մեկ պետություն, մեկ անսկիզբ

մի անսկզբնական զօրութիւն. երեք կատարեալ անձինք, մի կատարեալ կամք. անպատում, անքնին միութիւն Երրորդութեանն. մի իսկութիւն, մի էութիւն, մի Աստուածութիւն, Հայր և Որդի և սուրբ Հոգին. երեք անձինք, մի զօրութիւն Աստուածութեանն. Հայր յանձնէ, Որդի ի Հօրէ, Հոգի ի նոցունց ի նոսին. իսկութեամբն, էութեամբն, Աստուածութեամբն հարթ հաւասար հաասարակ, ի խորութիւնս, ի բարձրութիւնս, ի լայնութիւնս, յերկայնութիւնս. մի էութիւն բնութեան, մի պսակ Երրորդութեանն, և լի են երկինք և երկիր փառօք նորա։

363 Որպէս և Սողոմոն արքայ, որդի մարգարէին, ասէ յիւր յոգեկիր աղօթսն, եթէ «Երկինք և երկիր չեն քեզ բաւական»։ Եւ մարգարէն ասէ իբրև յերեսաց Տեառն, թէ «Երկինք աթոռ իմ են, և երկիրս պատուանդան ոտից իմոց. զո՞րպիսի տուն շինիցէք ինձ, ասէ Տէր, կամ զի՞նչ տեղի բնակութեան պատրաստիցէք ինձ. ո՞չ ձեռն իմ արար զայս ամենայն. և ես յո՞ հանգեայց և դադարեցից, եթէ ոչ ի հեզս ի խոնարհս և յայնոսիկ, ոյք դողան ի բանից իմոց». և «Եղէց նոցա Աստուած, և նոքա եղիցին իմ ժողովուրդ»։ Իսկ որում երկինք և երկիր չեն բաւական, ո՞րպիսի ունիցի զնա սիրտ մարդոյ. միթէ մե՞ծ ինչ իցէ մարդ քան զերկինս և զերկիր։ Այլ յԱստուածութենէն զինչ կամի՝ և լինի, զինչ կամեցաւ՝ և արար, զինչ կամեցաւ՝ և եղև, որ ինչ կամի՝ ոչ զանցանէ. այլ ամփոփեցաւ, փոքրկացաւ, և եղև զինչ և կամեցաւ։

364 ԼԸ. Արդ՝ առաքեաց Աստուած զՈրդին իւր յաշխարհ, որ եկն և եղև ի կնոջէ. և ի մարդկեղէն մարմինս պատեցաւ. մարմնովն իւրով զամենայն մարմին կենդանացոյց։ Որով և յաղթեաց իսկ Արարիչն աշխարհի, զի նորոգեսցէ զարդարսն և զերծուսցէ ի մեղացածին ծննդոց և հրեշտակակերպս արասցէ և աստուածորդիս կոչեսցէ. և զմահկանացուս անմահացուսցէ անմահ Հոգւովն, պատուեսցէ աստուածեղէն փառօքն։ Վայելուչ լուսովն զարդարին, և յերկրաւորութենէս յերկնաւորութիւնն անցանեն, ի մահկանացուէս յանմահ կենդանութիւնն, զանանց լոյսն զգենուն և զանապական գեղ կերպարանացն։

365 Ո՞րչափ ես իցէ անպատում աստուածութիւնն, որ ամենայն բարութեանց աղբիւր են կամք նորա, և տէր ամենայն գործոց. և բանիւ բերանոյ նորա հաստատեցան ամենայն արարածք և ի նմանէ լոյս առին ամենայն լուսաւորք, և ի զօրութիւն նորա հաստատեալ



զորություն, երեք կատարյալ անձինք, բայց մեկ կատարյալ կամք, Երրորդության անպատում անքննելի միությունը։ Մի իսկություն, մի էություն և մի աստվածություն, Հայր և Որդի և սուրբ Հոգի, երեք անձինք, բայց մի Աստվածային զորություն՝ Հայրն ինքնիրենից, Որդին Հորից, Հոգին նրանցից ու նրանց մեջ։ Իսկությամբ, էությամբ, Աստվածությամբ նրանք առհասարակ հարթ հավասար են խորությամբ, բարձրությամբ, լայնությամբ, երկայնությամբ, բնությամբ մեկ միություն են, Երրորդության մեկ պսակ և երկինքն ու երկիրը լի են Նրա փառքով։

363 Ինչպես մարգարեի որդի Սողոմոն արքան ասում է իր հոգեկիր աղոթքների մեջ, թե «երկինքն ու երկիրը քեզ բավական չեն», իսկ մարգարեն ասում է Տիրոջ կողմից, թե «երկինքն իմ աթոռն է և երկիրը իմ ոտքերի պատվանդանը, ինչպիսի՞ տուն եք շինելու ինձ համար կամ ի՞նչ բնակության տեղ եք պատրաստելու ինձ, չէ՞ որ իմ ձեռքն է այս ամենը ստեղծել. ես ո՞ւմ հանգիստ ու դադար տամ, եթե ոչ հեզերին, խոնարհներին և այնպիսիներին, որոնք դողում են իմ խոսքերից» և «կլինեմ նրանց Աստվածը ու նրանք իմ ժողովուրդը կլինեն»։ Իսկ Նա, որին երկինքն ու երկիրը բավական չեն [պարփակելու], ինչպե՞ս մարդու սիրտը պիտի նրան ընդգրկի, մի՞թե մարդն առավել մեծ է, քան երկինքն ու երկիրը։ Սակայն Աստվածությունը ինչ կամենում է, լինում է, ինչ կամեցավ՝ ստեղծեց, ինչ կամեցավ՝ եղավ, ինչ կամենում է՝ զանց չի առնում, այսուհանդերձ [մարդանալով] Նա ամփոփվեց, փոքրացավ և եղավ, ինչ որ կամեցավ։

364 ԼԸ. Արդ, Աստված իր Որդուն առաքեց աշխարհ, որը եկավ ու ծնվեց կնոջից և մարդկային մարմնով ամփոփվեց, իր մարմնով բոլոր մարմինները կենդանացրեց։ Նրանով աշխարհի Արարիչը կարողացավ նորոգել արդարներին, փրկել նրանց մեղածին ծնունդներից, հրեշտակակերպ դարձրեց ու աստվածորդիներ կոչեց, մահկանացուներին անմահացնելով անմահ հոգիով ու պատվելով աստվածային փառքով։ Նրանք վայելուչ լույսով զարդարված են և կանցնեն երկրավորությունից երկնավորության, մահկանացուից՝ անմահ կյանքի, անանցանելի լույսով ու կերպարանքի անապական գեղեցկությամբ կպարուրվեն։

365 Որչափ անպատում է Աստվածությունը, որի կամքը ամենայն բարիքների աղբյուր է և տերն է ամեն գործերի։ Նրա բերանի խոսքով հաստատվեցին բոլոր արարածները. Նրանից լույս

կան ամենայն արարածք, վերնայարկք երկնից և աշխարհ ամենայն և որ ի նոսին, «Եւ ի Հոգւոյ բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա»։ Եւ երկնաւոր պաշտօնեայքն, և սրբոցն լուսեղէն բանակքն յուսով նորա կան կախեալ և ողորմութեանց նորա կարօտին. և ի նորա ակնարկելն՝ ամենայն արարածոց պէտք պատրաստին. և ի զօրութիւն նորա կեան ամենեքեան, և «Աչքն ամենեցուն ի նա յուսան»։

366 Որ արարիչն և հաստիչն է և առաջնորդն է ամենայնի իսկութեան բնութեամբն. անբաւ զօրութիւնն որ ի նմանէ է՝ տարածեալ արկեալ զամենայնիւ. ուստի կենարար զօրութիւնքն բաշխին, որ ընդ ամենայն արարածս անցանէ, ընդ երկնաւորս և ընդ երկրաւորս, ընդ օդս և ընդ հողմս, ընդ հուր և ընդ ջուր, ընդ լոյս և ընդ խաւար, ընդ անդունդս և ընդ բարձունս։ Որ ընդ աներևակի զօրութիւնսն թափանցանց լուսով իւրով ելանէ, որոյ զօրութիւն հոգւոյն անբաւ է, զամենայնիւ սփռեալ, ընդ ամենայնիւ տարածեալ. և ելանեն ճառագայթք զօրութեամբ, անըմբռնելի բնութեամբ։ Մի ունի զչափ վերին բարձանց, և մի զստորին անդնդոց, մի յաջ ձգեալ և մի յահեակ, մի ի գէմս և մի ի թիկունս։ Վեց զօրութեամբ ճառագայթքն, վեց հազարեան դարքն. եօթներորդ դարին՝ հանգիստ արդարոց։

367 Մեօքակերպ զԱստուած ի՞ւ քարոզեսցուք յօդապատ անդամովքս զանգեալ ի հողոյ։ Իւրաքանչիւր անդամ զիւրաքանչիւր գործ բարձեալ բերէ յանձին, ոչ ձեռնհաս ի գործ ընկերին. ո՛չ ակն լսէ, և ոչ ունկն տեսանէ. ո՛չ լեզու հոտոտի, և ոչ ձեռք գնան, և ոչ ոտք աղաղակեն։ Բերան՝ խորտկաց, հոտոտելիք՝ հոտոց, քիմք՝ ճաշակաց, մի մի յիւրաքանչիւր բնութեանն կապեալ կան։

368 Բայց ինքն իւրով կամօք արար զամենակեցոյց գալուստն իւր և կատարեաց զկամս Հօր։ Առաքեցաւ Աստուած յԱստուծոյ սուրբ Որդին, առ զմարմին ի կուսէ, մարդ կատարեալ՝ կատարեալ Աստուածութեամբն. զԱստուածութեան զօրութիւնն յայտ արար, և զմարմնոյ տկարութիւնն ցուցանէր։ Ծառայակից եղև մարմնովն մարդկութեանս, և ազատեաց ի մեղաց զմարդկութեան մարմինս։ Որով էջ ի դժոխս, և ած եհան անտի զարգելեալսն ի դժոխոց։ Մարմնով հալածեցաւ, և հալածեաց զսատանայ և կապեաց զմեղս։



տեան բոլոր լուսավորները և Նրա զորության մեջ հաստատված են բոլոր արարածները, երկնքի վերնահարկերը և ամբողջ աշխարհը իր մեջ եղածներով։ «Նրա բերանի Հոգիով հաստատվեցին նրանց բոլոր զորությունները»։ Երկնավոր պաշտոնյաները և սրբերի լուսեղեն բանակները Նրա հույսով մնում են կախված և կարոտ են նրա ողորմություններին։ Նրա մի ակնարկելով բոլոր արարածների պետքերը պատրաստվում են, ամենքը Նրա զորության մեջ են ապրում և «ամենքի աչքերը Նրան են հույս դնում»։

366 Նա է Արարիչը, ստեղծողը և ամենայնի առաջնորդը իր իսկական բնությամբ։ Անբավ զորությունը, որ Նրանից է տարածված, շրջապատում է ամեն ինչ։ Նրանից են բխում կենարար զորությունները, որոնք բոլոր արարածներին են անցնում՝ երկնավորներին և երկրավորներին, օդի և հողմի մեջ, հրո և ջրի մեջ, լույսի ու խավարի մեջ, անդունդների և բարձունքների մեջ։ Նա երևում է իր աներևույթ զորությունների հետ իր թափանցիկ լույսով։ Նրա Հոգու զորությունը անբավ է, ամեն տեղ սփռված, ամեն տեղ տարածված և ճառագայթները ելնում են զորությամբ, անըմբռնելի բնությամբ։ Նա չի գնում վերին բարձունքների չափ, ոչ էլ իջնում ստորին անդունդները, չի գնում ձախ կամ աջ, ոչ դիմաց, ոչ թիկունք։ Վեց զորությամբ ճառագայթներ [կան], վեց հազարամյա դարեր, իսկ յոթներորդ դարը արդարների հանգիստն է։

367 Ինչպե՞ս ենք Աստծուն մեզ նման հայտարարում, երբ մենք [կազմված ենք] հողից շաղված հոդակապ անդամներից։ Յուրաքանչյուր անդամ իր գործն է կատարում իր մեջ և ձեռնհաս չէ իր ընկերոջ գործին։ Ոչ աչքը լսում է, ոչ ականջը տեսնում, ոչ լեզուն հոտոտում, ոչ ձեռքը գնում և ոչ ոտքն աղաղակում։ Բերանը խորտիկների համար է, հոտոտելիքը՝ հոտերի, քիմքը՝ ճաշակելու. ամեն մեկը կապված է իր բնությանը։

368 Բայց ինքն իր կամքով իր ամենակեցույց գալուստը պատրաստեց և կատարեց Հոր կամքը։ Սուրբ Որդի Աստվածը առաքվեց Աստծու կողմից, կույսից մարմին առավ [որպես] կատարյալ մարդ՝ կատարյալ Աստվածությամբ։ Հայտնի դարձրեց Աստվածության զորությունը և ցույց տվեց մարմնի տկարությունը։ Մարմնով ծառայակից եղավ մարդկության և մեղքերից ազատեց մարդկանց մարմինները։ Նա իջավ դժոխք և այնտեղից դուրս հանեց դժոխքում արգելվածներին։ Մարմնով հալածվեց, հալածեց սատանային և կապեց մեղքերը։

*369 Չի որ ի մարմինն հաւատացին՝ ծանոյց նոցա զԱստուածութիւնն իւր, և որք ի մարմնոյն գթեցին՝ ուրացան զբնութիւն նորա։ Քանզի միացաւ ի մարմնի բնութեամբ, և խառնեաց զմարմինն ընդ իւր Աստուածութիւնն։ Որք հաւատացին ի նա՝ նոքա վայելեսցեն ի բարիսն յանպատումս. և որք յայսց հաւատոց վրիպեցան՝ նոքա զանկոխն և զանխուլ գնացին և ըստ արտուղի անկան և խրամատեցին անձանց իւրեանց անցս անկարկատս, և զբաղումս ի ճշմարիտ հաւատոցն թիւրեցին։ Իբրև կարծէին թէ գտին ինչ՝ գտին զոչինչ. որպէս և գրեալ է, թէ «Զոգան զհետ ոչնչի, և գտին զոչինչ»։ Զի գիւտիցն խնդիր՝ աշխատութիւն է, իսկ անգիւտ աշխատութիւն՝ սուտ վարդապետութեամբ կուապաշտութեան հասուցանէ։*

*370 Զի անտուստ ի վերուստ զանցելոց յաւիտենացն՝ զկնի իսկ եկելոցս մարգարէիւքն ամենեքումբք ծանօթս տայ. և առաջին օրինակօքն՝ վերջնոցս բազում անգամ վարդապետեալ. մերթ ահագին սպառնալեօք կարգէ՝ յիշատակօք առաջի վրիժուցն խնդրելոյ, զի զանհաւանսն զարհուրեցուցեալ՝ յուղղութիւն յորդորիցէ. որպէս զգունակ գունակ հարուածսն Եգիպտացւոց, և զդառնագոյն հատուցումն նոցա վրիժուցն խնդրելոյ։ Եւ կամ զանհաւան անկելոցն յանապատին, և զամենայն իսկ զփորձ առելոցն բարկութեանն Աստուծոյ զյիշատակս առեալ բերէ։*

*371 Նա և Քրիստոսի իսկ զերկիրն Սոդոմացւոց և Գոմորացւոց յօրինակ առեալ, զի մի ի չհաւանել ոմանց՝ եւս դժնդակագոյնս քան զայն կրիցեն։ Եւ մերթ զբազմադիմի սքանչելագործութիւնս պայծառագոյնս և զհատուցմունս արդարոցն պարգևելոցն Աստուծոյ յիշեցուցանէ. կարգէ միանգամայն և զհաստատութեան արարածոցս զպայման, բազում անգամ ասելով, թէ «Զերկինս ձգեցի, և զերկիր հաստատեցի», և «Զծով սահմանօք փակեցի». զի այսու ամենայնիւ հաւատարիմ զլսողսն առ խոստացեալսն քաջալերեսցէ։*

*372 ԼԹ. Իսկ իբրև եկեալ՝ կատարեաց փրկիչն ամենեցուն զերբեմնի խոստացեալսն վասն նորին։ Եւ վկայութեամբ զգալուստ Որդւոյն կարեմք ճշմարտել մարգարէականօքն յառաջասացելովք վասն մարմնածին ծննդեան աստուածորդւոյն, Հոգեխառն բանիւք զաստուածախառն մարմնոյն. զոր յառաջագոյն Աստուած եցոյց զիւրոյ Որդւոյն զգալուստ՝ արժանաւոր իւրոց մարգարէիցն ձայնիւք։*



*369 Նրանց, որոնք հավատացին մարմնին, ծանոթացրեց իր Աստվածությունը, իսկ որոնք գայթակղվեցին մարմնից, ուրացան նրա բնությունը։ Քանզի նա միացել էր մարմնին բնությամբ և խառնել էր մարմինը իր Աստվածությանը։ Ովքեր նրան հավատացին, վայելելու են անպատում բարիքները, իսկ ովքեր այս հավատից վրիպեցին, նրանք անկոխ և ծածուկ ճամփաներով գնացին, զառտուղի ընկան և իրենց անձերին անհուսալի ուղիներ խրամատեցին ու շատերին ճշմարիտ հավատից շեղեցին։ Երբ կարծում էին, թե ինչ-որ բան գտել են, ոչինչ չգտան, ինչպես և գրված է՝ «Գնացին ոչնչի ետևից ու ոչինչ չգտան»։ Քանզի գտնելու համար փնտրելը աշխատություն է, իսկ աշխատանքն առանց [որևէ բան] գտնելու կռապաշտության է հասցնում սուտ վարդապետությամբ։*

*370 Քանզի այնտեղից՝ վերևից բոլոր մարգարեների միջոցով հետո գալիքներին ապագա անցքերը ծանոթացրեց։ Եվ նախորդ օրինակներով ուշ եկողներին բազում անգամ վարդապետել է մերթ սարսափելի սպառնալիքներով, հիշեցնելով նախկին վրեժխնդրությունը, որպեսզի անհավատներին զարհուրեցնի և [ճշմարիտ] ուղղության մղի, ինչպես եգիպտացիների տեսակ-տեսակ պատիժները և նրանցից դառնագույն հատուցմամբ վրեժ խնդրելը։ Կամ հիշում է անապատում անհավատության մեջ ընկածներին և բոլոր նրանց, ովքեր փորձել էին Աստուծո բարկությունը։*

*371 Նույն ձևով Սոդոմացոց և Գոմորացոց երկիրը նա Քրիստոսի օրինակ դարձրեց, որ չլինի թե նրանցից մի քանիսի չհավատալու պատճառով նրանք ավելի դժնդակ ձևով տուժեն։ Մերթ հիշեցնում է բազմապիսի սքանչելի հրաշքները և արդարների հատուցումը Աստվածային պարգևներով։ Նա միաժամանակ հիշեցնում է արարածների հաստատության կարգը, բազում անգամ ասելով՝ «Երկինքը բարձրացրեցի և երկիրը հաստատեցի» և «Ծովը սահմաններով փակեցի», որպեսզի այս ամենով նա կարողանա ուժեղացնել իր լսողների հավատը խոստացվածների հանդեպ։*

*372 ԼԹ. Ապա երբ եկավ ամենքի փրկիչը, կատարեց այն, որ մի ժամանակ խոստացված էր իր մասին։ Եվ վկայությամբ մենք կարող ենք ճշգրտել Որդու գալուստը Աստվածության մարմնածին ծննդյան և աստվածախառն մարմնի մասին Հոգեխառն խոսքերի վերաբերյալ մարգարեների գուշակություններով, ինչպես և Աստված առաջվանից ցույց էր տվել իր Որդու գալուստը իր արժանավոր մարգարեների ձայներով։*

373 Զի «առաքեաց Աստուած զՈրդին իւր, որ եկն ծնաւ ի կնոջէ, և եմուտ ընդ օրինօք. զի զորս ընդ օրինօքն իցեն՝ գնեսցէ, զի մեք զորդեգրութիւն ընկալցուք»։ Հանգոյն սորա և կարապետն Յովհաննէս ասէր. «Ապաշխարեցէ՛ք, զի մերձեալ է արքայութիւն երկնից». զոր և յաւիտեանց Տէրն արքայութիւնաբեր առակ առաջի իսկ դնէ ասելովն, թէ «Կատարեալ է ժամանակ, և հասեալ է արքայութիւնն Աստուծոյ»։

374 Եւ արդ՝ եկեալ սքանչելի խորհրդակից Որդին Աստուծոյ՝ կատարել զխորհուրդ նախակարգ յաւիտեանցն, զոր և մարգարէն ասէ, եթէ «Հաստատէ զբանս ծառայից իւրոց, և զխորհուրդս հրեշտակաց իւրոց արդարացուցանէ»։ Ունի և հրեշտակն պատրաստել նմա ճանապարհ. որոյ տուեալ ողջոյն կուսին, առ ի զմարգարէականն կատարելոյ, եթէ «Կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ», և ասէ, «Ուրախ լեր, բերկրեալ, Տէր ընդ քեզ»։

375 Եւ անդէն նշանակէ, թէ զի՛նչ օրինակ Տէր ընդ նմա լինելոց իցէ. ասէ. «Հոգի սուրբ եկեսցէ ի քեզ, և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո. քանզի որ ծնանելոցն է՝ սուրբ է, և որդի Բարձրելոյ կոչեսցի»։ Եւ անդէն ի մարգարէականսն հայեցեալ՝ ասէ, թէ «Տացէ նմա Տէր Աստուած զաթոռն Դաւթի հօր իւրոյ, և թագաւորեսցէ ի վերայ տանն Յակոբայ յաւիտեան, և թագաւորութեան նորա վախճան մի՛ լիցի»։ Զորմէ և հայրապետն Յակոբ Հոգւովն լցեալ ասէր, և փառաւոր զՅուդա գիտացեալ՝ և մարգարէութիւն ասէ. «Մի՛ պակասեսցէ իշխան Յուդայ, և մի՛ պետ յերանաց նորա, մինչև եկեսցէ այն՝ որոյ իւր է թագաւորութիւն, զի նա է յոյս հեթանոսաց»։

376 Ահա տեսանեմք լցեալ կատարեալ զամենայն մարգարէութիւն լիով. ահա տեսանեմք զամենայն հեթանոսս սպասեալ նմա, ո՛ր կամաւ և ո՛ր ակամայ։ Ասէ. «Կապեսցէ զգրաստ իւր զորթոյ, և զյաւանակ իշոյն զորթոյն գնդակէ». այսինքն՝ զգալն խոնարհութեամբ առ մշակս այգւոյն, որ ոչ կամեցան զայգւոյ տէրն. որ չարչարեցաւ իւրով կամօք համբերեալ, զոր ի ժամու իւրում պատմեսցուք՝ որ դեռ վասն ծննդեան են բանք ասել ձեզ, զգուշակումն մարգարէիցն, զքարոզութիւն առաքելոցն, զվկայութիւն վկայիցն։

377 Խ. Որ նա ինքն է յէութեանն, որպէս և էն իսկ. սակայն



373 Քանզի «Աստված առաքեց Իր Որդուն, որը եկավ-ծնվեց կնոջից և մտավ օրենքների տակ, որպեսզի նրանց, ովքեր օրենքների տակ են, փրկագնի, և մենք որդեգրություն ստանանք»։ Այս ձևով Հովհաննես կարապետը ասում է՝ «Ապաշխարեցեք, քանզի երկնքի արքայությունը մոտ է»։ Այս ևս հավիտենության Տերը համարում է արքայության մասին առակ ասելով, թե՝ «Ժամանակը կատարյալ է և հասել է Աստուծո արքայությունը»։

374 Արդ, եկավ Աստուծո սքանչելի խորհրդակից Որդին, որպեսզի կատարած լինի երկար դարեր առաջ նախակարգված խորհուրդը, ինչպես մարգարեն է ասում, թե՝ «Հաստատեց իր ծառաների խոսքը և արդարացրեց իր հրեշտակների խորհուրդները»։ Նրան ճանապարհ է պատրաստում նաև հրեշտակը, որը կույսին ողջույն է տալիս, որպեսզի կատարվի մարգարեությունը, թե «կույսը հղանալու է և ծնվելու է որդի և նրա անունը լինելու է Էմմանուել» և ասում է՝ «Ուրախ եղիր, բերկրալի, Տերը քեզ հետ է»։

375 Ապա ցույց է տալիս, թե ինչ ձևով Տերը նրա հետ է լինելու, ասում է՝ «Սուրբ Հոգին գալու է քեզ վրա և Բարձրյալի զորությունը քեզ հովանի է լինելու, քանզի նա, որ ծնվելու է, սուրբ է և կոչվելու է Բարձրյալի Որդի»։ Ապա նայելով մարգարեություններին ասում է, թե՝ «Տեր Աստված նրան տալու է իր հոր Դավթի աթոռը և թագավորելու է Հակոբի տան վրա հավիտյան, և նրա թագավորությունը վախճան չի ունենա, Նրա մասին Հակոբ հայրապետը Հոգիով լցված նույնպես ասաց, և Հուդային փառավոր ճանաչելով մարգարեության մեջ ասաց՝ «Հուդային իշխան չի պակասի և ոչ էլ պետ երանքի (մեջքի) համար, մինչև որ գա նա, որին պատկանում է թագավորությունը, քանզի նա է հեթանոսների հույսը»։

376 Ահա տեսնում ենք մարգարեությունը լրիվ իրականացած, կատարված, ահա տեսնում ենք ամենայն հեթանոսներին կամա թե ակամա նրան ծառայելիս։ Ասում է՝ «Իր գրաստը որթատունկին է կապելու և իր իշու ձագը որթատունկի ծունկին», այսինքն դա նրա խոնարհությամբ գալն է այգու մշակների մոտ, որոնք չկամեցան այգու տիրոջը։ Նա չարչարվեց իր կամքով, համբերեց։ Այն իր ժամանակին պիտի պատմենք. նրա ծննդյան մասին դեռ խոսքեր կան ասելու, մարգարեների զգուշացումը, առաքյալների քարոզը, վկաների վկայությունը։

377 Խ. Նա ինքն իր էության մեջ է, որպես և իսկապես Է-ն,



14—1461

յորժամ կամեցաւ՝ առ զմարդկան կերպարանս, և զգեցաւ մարմին, և էջ ի մեր նմանութիւն. այն որ անբաւն էր և անհաս յամենայն լրութեան Աստուածութեանն՝ և վասն մեր էջ ի չափաւորութիւն, և ամփոփեցաւ ի մարմին. բովանդակեցաւ ճշմարտութեամբ ի մարմնին, և ճշմարիտ մարդ եղև, և էջ յանարգութիւն, զի զմեզ բարձրացուսցէ։ Սակայն իւրով Աստուածութեամբն յերկինս է և յերկրի՝ առ Հօր և ընդ Հօր. և ամենայն արարածք հրամանաւ նորա շարժին ըստ իւրաքանչիւր կարգածոցն կազմածոց։

378 Սակայն թէպէտ վասն մեր էջ յանարգութիւն՝ այլ կայ յիւրում բնութեանն. որպէս և ինքն ասէ, թէ «Ես նոյն եմ, և ոչ փոփոխեցայ»։ Զի թէպէտ զկերպարանս առ և զմարմին մարդկան՝ այլ խառնեաց միացոյց ընկղմեաց զմարմինն յԱստուածութեան իւրում։ Եւ դարձեալ ասէ. «Սա է Աստուած Աստուած մեր յաւիտեանս յաւիտենից»։ Եւ դարձեալ ասէ. «Դու նոյն ես, և ամք քո ոչ անցանեն»։ Եկեալ այսպիսի բարբառ և առ մեծն մարգարէից Մովսէս, թէ «Ես եմ որ ի սկզբանէն էի. այսպէս ասասցես, թէ որ ի սկզբանէն Աստուած՝ առաքեաց զիս առ ձեզ»։ Զոր և Յովհաննէս ասէր ի թղթին իւրում, թէ «Որ էրն ի սկզբանէ, զորմէ լուաք, որում ականատեսքն իսկ եղաք, ընդ որ հայեցաքն, և ձեռք մեր շօշափեցին զբանն կենաց. և կեանքն յայտնեցան, և տեսաք և վկայեմք», զի նա ինքն է Աստուած ճշմարիտ և կեանք յաւիտենականք։

379 Որ առ զմարմին անըմբռնելին, և շօշափեցաւ և ըմբռնեցաւ մարմնովն. և զամենայն անցս մարմնոյն յանձն առեալ իւրովք կամօք, յանծանօթս եղեալ համբեր խոնարհութեամբ. և ոչ ուրուք բռնադատութեամբ, բայց իւրովք իշխանական և անձնիշխան կամօք կրեաց զայն. որպէս և ինքն ասէր. «Իշխանութիւն ունիմ դնել զանձն իմ իմովք կամօք, զի դարձեալ միւսանգամ առից զնա»։

380 Եւ ինքն ծնաւ ի կուսէն և իւրովք կամօք կատարեաց զկամս առաքչին իւրոյ. ասէ. «Ես եկի կատարել զկամս Հօր իմոյ», զի ցուցցէ զմիաւորական զանքակ զանբաժին ինքնութեանն միութիւն։ Կամօք Հօր եմուտ յարգանդ կուսին, և ոչ գարշեցաւ. վասն զի ինքն է սրբիչ ամենայնի։ Իւրովք կամօք պատեցաւ ի խանձարուրս և եղեալ ի մսուր անասնոց. զի ինքն է տէր և արարիչ ամենայն մեծութեանց և բղխիչ ամենայն բարութեանց։

381 Հինաւուրցն վասն մեր մանկացաւ, և առ զկերպարանս



սակայն երբ կամեցավ, մարդկային կերպարանք առավ, մարմին հագավ և իջավ մեր նմանությանը։ Նա, որ անբովանդակելի էր և անհասանելի իր Աստվածության ամբողջ լիության մեջ, մեր պատճառով իջավ չափավոր ձևերի մեջ, ամփոփվեց մարմնի մեջ։ Ճշմարտությամբ բովանդակվեց մարմնի մեջ, եղավ ճշմարիտ մարդ, իջավ անարգության, որպեսզի մեզ բարձրացնի։ Սակայն իր Աստվածությամբ երկնքում է և երկրի վրա, Հոր մոտ է և Հոր հետ։ Բոլոր արարածները Նրա հրամանով են շարժվում, յուրաքանչյուրն ըստ կարգադրության և դասավորման։

378 Սակայն թեպետ մեզ համար իջավ անարգության, այսուհանդերձ մնում էր իր բնության մեջ, ինչպես ինքն է ասում, թե «Նույնն եմ և չեմ փոխվել», քանզի թեպետ առավ մարդկային կերպարանքը և մարմինը, սակայն խառնեց-միացրեց-ընկղմեց մարմինը իր Աստվածության մեջ։ Դարձյալ ասում է՝ «Սա է Աստված, մեր Աստվածը հավիտյանս հավիտենից»։ Եվ դարձյալ ասում է՝ «Դու նույնն ես, և քո տարիները չեն անցնի»։ Այսպիսի ձայն հասավ նաև մարգարեներից մեծագույն Մովսեսին, թե՝ «Ես եմ, որ սկզբից կայի, այսպես պիտի ասես, թե նա՝ Աստվածը, որ սկզբից կար, ինձ առաքեց ձեզ»։ Հովհաննեսը նույնպես ասում է իր թղթում, թե՝ «Նա կար սկզբից, նրա մասին լսել էինք, նրան ականատես իսկ եղանք, նրան նայեցինք, մեր ձեռքերը շոշափեցին կյանքի խոսքը և կյանքը հայտնվեց և տեսանք ու վկայեցինք», քանզի նա ինքը ճշմարիտ Աստվածն է և հավիտենական կյանքը։

379 Անըմբռնելին մարմին առավ, շոշափվեց և ճանաչվեց մարմնով և մարմնի բոլոր հանգամանքներով հանձն առավ իր կամքով, խոնարհությամբ համբերեց անծանոթների մեջ լինելով։ Ոչ որևէ մեկի բռնադատությամբ, այլ իր սեփական և ինքնիշխան կամքով կրեց այն, ինչպես ինքն է ասում՝ «Իշխանություն ունեմ իմ անձը դնելու իմ կամքով, որպեսզի դարձյալ առնեմ այն»։

380 Ինքը ծնվեց կույսից, իր կամքով կատարեց իր առաքիչի կամքը, ասում է՝ «Ես եկա կատարելու իմ Հոր կամքը», որպեսզի նա ցույց տա միակ անքակտելի, անբաժանելի ինքնության միությունը։ Հոր կամքով մտավ կույսի արգանդը և չզարշեց, վասնզի ինքն է ամեն ինչ սրբացնողը։ Իր կամքով խանձարուրի մեջ փաթաթվեց և անասունների մսուրը դրվեց, քանզի ինքն է տերն ու արարիչը ամեն մեծությունների և բաշխիչը ամեն բարիքների։

381 Հինավուրցը մեզ համար մանկացավ, առավ մեր մարդ-

*մարմնոյ տկարութեանս մերոյ մարդկութեանս, զի զմեզ փոխեսցէ յանմահութիւն իւր։ Սակայն թէպէտ և զգեցաւ մարմին, և էջ ի մեր նմանութիւն՝ այլ կայ ի փառս հայրենի բնութեանն Աստուածութեան իւրոյ. որպէս և էր իսկ, և է, և կայ յաւիտեան ընդ Հօր իւրում ի բարձունս յիւրում բնութեանն, հանդերձ մարմնովն զոր ի մէնջն զգեցաւ, փառաւորեալ ցանկորդ ի հոգեղէն և ի հրեղէն զուարթնոցն։*

*382 Նա եկն եղև մարդ, զի մարմնաւորքս տեսանել կարասցեն. բայց զԱստուած գոյիւ ոչ տեսեալ ուրուք, ո՛չ հրեշտակաց և ոչ հրեշտակապետաց, ո՛չ սրովբէից և ոչ քրովբէից և ոչ բիւրաւոր բանակաց երկնաւոր զուարթնոց. բայց Որդին ծածկեալ մարմնով՝ կատարելամիտ իմաստնոց եցոյց և յայտնի արար, զի յագեսցին լուսոյն սքանչելութեամբ, թէ «Որ ետես զիս՝ ետես զՀայր իմ»։ Եւ եկեալ զխոստացեալսն կատարեաց ի սրբոյ կուսէն. և ծնունդն առաջին՝ ի Հօրէ յառաջ քան զանկէտ յաւիտեանս, մշտընջենական և յաւիտենական ծնունդ, ի մշտընջենական և յաւիտենական Հօրէն յառաջ քան զամենայն։*

*383 Այսչափ և եթ գիտել տկարութեան արարելոցս ի նմանէ, զի նա և ճշմարիտ Հայր՝ մի են. ուստի ամենայն հայրութիւն անուանեալ կոչի երկնաւորաց և երկրաւորաց։ Մի միայն Տէր, երեքանձնական զօրութիւն. երեք անձինք, մի զօրութիւն, մի միութիւն գիտութեան, զօրութիւն մի՝ միասնական փառօք, մի միայն լուսաւորութեամբ, մի միայն իսկութեամբ. զի ոչ ոք կարէ քննել, թէ ո՛րպէս կամ զիա՛րդ եղև։*

*384 Հաւատացէ՛ք յԵրրորդութիւնն. ճշմարտեցէ՛ք ի միութիւնն անշշունջ լռութեամբ, լուռ հաւատովք։ Բայց զանյայզ զանքննին հողապատեանքս ի հողոյ զանգեալ զիա՞րդ քննել կարիցեմք և կամ գիտել զԲարձրելոյն. և սկզբնաւորքս զանսկիզբնն զանհասն զիա՞րդ կարիցեմք քննել։*

*385 Հաւատք ճշմարիտ այս են։ Խոնարհեցաւ և խառնեաց զԱստուածութիւնն ընդ մարդկութեանս, և զանմահն ընդ մեռոտս. զի զամենայն մարդիկ անքակ արասցէ յանմահութենէ Աստուածութեան իւրոյ. յորժամ մարմնովն առ Հօրն ընդ աջմէն եմուտ, և խառնեաց զմեզ յԱստուածութիւն իւր միածին Աստուածորդին հզօրակիցն Հօր. յորոյ ի ձեռն հաստատեաց զհիմունս երկրի. և*



*կային տկարության մարմնի կերպարանքը, որպեսզի մեզ տանի իր անմահությանը։ Սակայն թեպետև մարմին հագնվեց և իջավ մեր նմանությանը, այսուհանդերձ մնում էր իր Աստվածային հայրենի բնության փառքում, ինչպես և էր իսկապես և է, և կա հավիտյան իր Հոր մոտ բարձունքներում, իր բնության մեջ, մեր մարմնով, որ հագավ փառավորվելով համապազոր հոգեղեն ու հրեղեն հրեշտակների կողմից։*

*382 Նա եկավ-դարձավ մարդ, որպեսզի մենք մարմնավորներս կարողանանք տեսնել։ Սակայն Աստծուն իր էությամբ չի տեսել ոչ ոք, ո՛չ հրեշտակները, ո՛չ հրեշտակապետերը, ո՛չ սերովբեները, ո՛չ քերովբեները և ո՛չ էլ երկնավոր զվարթունների բյուրավոր բանակը։ Բայց Որդին մարմնով ծածկված կատարելամիտ իմաստուններին ցույց տվեց և հայտնեց ինքն իրեն, որպեսզի հագենան իր լույսի սքանչելիությամբ, թե «ով ինձ տեսավ, տեսավ իմ Հորը»։ Նա գալով խոստացածը կատարեց սուրբ կույսից։ Առաջին ծնունդը եղել էր Հորից նախքան անսահման ժամանակները, մի մշտնջենական և հավիտենական ծնունդ, մշտնջենական և հավիտենական Հորից, նախքան ամեն ինչ։*

*383 Միայն այսչափ գիտենք մենք տկար արարածներս նրա մասին, քանզի նա և ճշմարիտ հայրը մեկ են, ինչպես ամեն մի հայրություն կոչվում է երկնավոր և երկրավոր [արարածների] կողմից։ Միայն մեկ Տեր՝ երեքանձնական զորություն, երեք անձինք՝ մեկ զորություն, մեկ գիտության միություն, մեկ զորություն՝ միասնական փառքով, միայն մեկ լուսավորությամբ, միայն մեկ իսկությամբ, քանզի ոչ ոք կարող է քննել, թե որպես կամ ինչու նա եղավ։*

*384 Հավատացեք Երրորդությանը, ընդունեցեք միությունը անշշունջ լռությամբ և լուռ հավատով։ Բայց մենք հողապատյան արարածներս ինչպես կարող ենք քննել անիմանալին, անքննելին և կամ ճանաչել բարձրյալին։ Մենք, որ սկիզբ ենք ունեցել, ինչպես կարող ենք քննել անսկզբին, անհասանելիին։*

*385 Այս է ճշմարիտ հավատը։ Նա խոնարհվեց, խառնեց Աստվածայինը մարդկայինին և անմահը մահկանացուին, որպեսզի բոլոր մարդկանց անքակտելիորեն [կապի] իր Աստվածային անմահությանը։ Երբ միածին Աստվածորդին, Հոր հզորակիցը, մարմնով Հոր մոտ՝ աջ կողմը մտավ, մեզ խառնեց իր Աստվածությանը։ Նրա ձեռքով [Հայրը] հաստատեց երկրի հիմքերը և պարզեց եր-*

պարզեաց զպարզուածս և երկնից։ Վասն որոյ մարգարէն ասէ. «Յայտնեաց Տէր զաջ իւր և զբազուկ իւր ամենայն հեթանոսաց, և տեսին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ»։

386 Աջն Հօր ինքն իսկ է և բազուկն՝ միածինն Քրիստոս. և նովաւ լուսաւորեցան ամենայն եղեալքս. որ «ի սկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր Բանն. որ ամենայն ինչ նովաւ եղև», և նովաւ հաստատեցան ամենայն ինչ՝ որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի. Հարկ էր զի նովաւ սրբեսցին՝ որով եղենն և հաստատեցան, և նովաւ լուսաւորեսցին. և կամեցեալ Աստուծոյ, զի կեցցեն արարածք, և մի՛ կորիցեն։

387 ԽԱ. Արդ՝ առաքեաց Աստուած զՀոգին սուրբ ի կոյսն Մարիամ, և առ Աստուածորդին մարմին ի կուսէն. որով կորոյս զչարն՝ զովին մարմնովն պարտաւորեաց զմեղսն աստուածախառն մարմնովն. ի բարձրախառն խոնարհութենէն՝ զաներևոյթ խառն տեսմանն։ Աւետարանումն հրեշտակացն առ հովիւսն՝ զաստուածեղէն փառացն գուշակէր. մսուրն և խանձարուրքն՝ զխոնարհաձիգ մարմնոյն զաղքատութիւնն ի մէջ բերէին. առաջնորդ աստեղըն, մոգուցն պատարագօք՝ յայտնի ամենատեառնն տէրութիւն. Երկրաւորօքս գիտասցուք զմարմինն, և երկնաւորօքն ծանիցուք զԱստուածութիւնն։

388 Արդ՝ տե՛ս զի՛նչ պատմէ մեզ Միքիայն շնորհ հոգւոյն մարգարէութեան, թէ «Եւ դու, Բեթղեհէմ, ասէ, ոչ ինչ կրսեր վիճակաց հասեր. ի քէն ծագեսցէ ինձ պետ և իշխան տանն Իսրայէլի, և ելք նորա ի սկզբանէ աւուրց աշխարհի»։ «Ի սկզբանէ»՝ զԱստուածութիւնն ցուցանէ, «Բեթղեհէմ»՝ զմարմինն պատմէ։ Հրեշտակապետն ասէ. «Ծնցի և կոչեսցեն զանուն նորա Յիսուս». և սաղմոսարանն երգեաց «յառաջ քան զարև զանուն նորա»։ Մին զմարմնածին ծնունդն պատմէ, և միւսն զԱստուածութիւնն ցուցանէ՝ զյառաջ քան զարուսեակ ի Հօրէ ծնեալ։

389 Մեք զայս ճշմարիտ հաւատս ունիմք ի սուրբ Գրոց և յօրինաց եկեղեցւոյ՝ առաջնորդ կենաց ճանապարհի առ Աստուած, և ի սուրբ գիրս վարդապետութեան հաւատովք։ Եւ մի՛ խոտորիք ի կարգաց իմաստութեան, մի՛ յաջ և մի՛ յահեակ. զի ոչ եթէ այնպիսիք իցեն սերմանիքն, ամուլք և ժանգառք, աղաղունք և ոսնեալք, բայց զոր սերմանեմք յանդաստանս սրտից լսելեաց, այլ յաստուածեղէն գրոց, ի հոգեպատում մատենից. և քան զայս աւելի թէ ոք սերմա-



կընքի տարածությունը։ Նրա մասին մարգարեն ասում է. «Տերը երևան հանեց իր աջը և իր բազուկը բոլոր հեթանոսներին, և երկրի բոլոր ծայրերը տեսան մեր Աստուծո փրկությունը»։

386 Հոր աջը ինքն իսկ է և բազուկը՝ միածին Քրիստոսը։ Նրանով լուսավորվեցին բոլոր արարածները, «Սկզբից էր Խոսքը, Խոսքը Աստուծու մոտ էր, Աստված էր Խոսքը և ամեն ինչ նրանով եղավ»։ Նրանով հաստատվեց ամեն ինչ, որ երկնքում և երկրում է։ Անհրաժեշտ էր, որ օրհնվեն նրանով, որի [կողմից] ստեղծվել են, հաստատվել և նրանով լուսավորվեն, քանզի Աստված կամեցավ, որ արարածներն ապրեն և չկորչեն։

387 ԽԱ. Արդ, Աստված առաքեց սուրբ Հոգին կույս Մարիամին և Աստվածորդին մարմին առավ կույսից, որով վերացրեց չարը, նույն մարմնով մեղքերի հատուցումը տվեց աստվածախառն մարմնով, բարձրախառն խոնարհությամբ աներևույթը միացրեց տեսանելիին։ Հրեշտակների ավետումը հովիվներին՝ աստվածեղեն փառքն էր գուշակում։ Մսուրը և խանձարուրը ցույց էին տալիս մարմնի խոնարհ աղքատությունը, առաջնորդ աստղերը, մոգերի ընծաները ի հայտ էին բերում ամենատիրոջ տերությունը։ Երկրավոր [նշաններով] պետք է ճանաչենք մարմինը, իսկ երկնավորներով՝ ճանաչենք Աստվածությունը։

388 Արդ, տես ինչ է պատմում մեզ մարգարեական հոգու շնորհը Միքիայի մեջ, թե՝ «Եվ դու Բեթղեհեմ, ասում է, որ ոչ ցածր աստիճանի ես հասել, քեզանից ծագելու է ինձ պետ և իշխան՝ Իսրայելի տանը, և նրա ելքը աշխարհի օրերի սկզբից է»։ «Սկզբից», այսինքն աստվածությունն է ցույց տալիս, «Բեթղեհեմը» մարմինն է նշանակում, հրեշտակապետն ասում է՝ «Կծնվի և նրա անունը կդնեն Հիսուս» և սաղմոսերգուն երգեց՝ «Նրա անունը արևից առաջ է»։ Մեկը մարմնածին ծնունդն է պատմում և մյուսը ցույց է տալիս աստվածությունը, որը ծնված է Հորից նախքան արուսյակը (արեգակը)։

389 Մենք այս ճշմարիտ հավատն ունենք սուրբ Գրքերի և եկեղեցու օրենքների մասին, [որպես] կյանքի առաջնորդ Աստուծո մոտ գնալու, ընդունելով սուրբ Գրքերի հավատի վարդապետությունը։ Մի խոտորվեք իմաստության կարգից ո՛չ աջ և ո՛չ ձախ, քանզի սրանք այնպիսի սերմեր չեն, որոնք ամուլ են ու փտած, ազազուն ու չորացած։ Բույսերը, որոնք սերմանում ենք լսող սրտերի անդաստանում, աստվածեղեն գրքերից, հոգեպատում մատյանի-

նեսցէ զայնպիսի սերմանիս ի լսելիս լսողաց՝ այնպիսիքն նզովեալք են. թէ և հրեշտակ իցէ յերկնից՝ իբրև զօձ նզովեալ հողակեր, որ սուտ և պատիր բանիւք զպատուիրան Արարչին փոխել կամեցաւ։

390 Բայց մեք ոչ այնպիսի պատրանս ձեզ մատուցանեմք, և զայս վկայեմք առաջի Աստուծոյ. զի նա միայն գիտէ զսրտից խորհուրդս, և ամենայն ծածկեալք նմա յայտնի են. զի յամենայն ժամ առաջի նորա եմք։ Եւ այժմ առաջի նորա խօսիմք զնորա պատգամսն, զքաջաբոյսսն և զատոքսն և զպտղաբերսն և զարդիւնատուսն և զշահեկանսն և զվայելելիսն և զշտեմարանալիցսն. որ կարող են պարարել զձեզ, աստ մարմնաւոր պտղովն, և անդ յարքայութեանն զձեզ վայելեցուցանել յանանց և յերկրնաւոր ուրախութեանն։ Նմա փառք ամենատեառնն, որ վասն մերոյ կենաց մարդացաւ և մարդկերպ շրջեցաւ, եկեր իբրև զմեզ և արբ. տանջեցաւ, չարչարեցաւ, խաչեցաւ, բևեռեցաւ, սպանաւ, թաղեցաւ, կենդանացաւ, յարեաւ, վերացաւ և ել նստաւ ընդ աջմէ ծնողին իւրոյ Աստուծոյ, և Հայր կենդանացոյց զամենեսեան որ ի նայն հաւատացին։

391 ԽԲ. Բայց մեզ դեռ կայ պատմել ձեզ՝ զծնունդ Աստուածորդւոյն որ ի կուսէն. զէ զիա՛րդ եղև, մի ըստ միոջէ պատմեսցուք։ Զի ոչ եթէ յորմէ հետէ ծնունդն ի կուսէն իցէ՝ յայնմ հետէ է սկիզբն անսկզբանն Բանին գոյացութեան. այլ յառաջ քան զամենայն յաւիտեանս ծնաւ ի Հօրէ, իսկ արդ վասն մեր էջ և մարմնով ծնաւ ի կուսէն. այլ այնր ծննդոյ Հօր որ զնայն ծնաւ՝ նա միայն գիտէ։ Իսկ երկրորդ ծնունդն շնորհիւ իւրով ի մէջ մարդկան. վասն զի կեցուսցէ զմարդիկ, և օրհնեսցէ յառաջին անիծից անտի զերկիր և իւրովք օրհնութիւնաբեր գարշապարօքն եկեալ նորոգեսցէ. զի ետես կորուսեալ զմարդիկ՝ ժողովեաց զցրուեալսն, և եգիտ զկորուսեալսն։

392 Եւ յղացեալ այնուհետև ի Հոգւոյն սրբոյ շնորհագիւտ կուսին յանարանց յանապական արգանդին զորդին Աստուծոյ՝ անհասական պայմանաւ։ Եւ ըստ օրինին ծննդականաց ծնաւ զանդրանիկն ի քաղաքի Դաւթի ի Բեթղեհէմ, առ ի կատարելոյ զմարգարէականն, թէ «Դու, Բեթղեհէմ տունդ Եփրաթայ, սակաւաւորդ, իցե՛ս լինել ի հազարաւորսն Յուդայ. ի քէն ելցէ ինձ պետ և իշխան Իսրայելի. և ելք նորա ի սկզբանէ աւուրց յաւիտենից աշխարհի»։



ներից [են վերցված]։ Եթե որևէ մեկը դեռ նույնիսկ սերմանի [վերոհիշյալների] նման սերմեր իր լսողների լսողության մեջ, այդպիսին նզովյալ լինի, եթե նույնիսկ հրեշտակ է երկնքից, հողակեր օձի նման անիծյալ լինի, քանի որ սուտ և պատիր խոսքերով կամենում է Աստուծո պատվիրանը փոխել։

390 Բայց մենք այսպիսի պատրանք չենք մատուցում ձեզ և այս բանը վկայում ենք Աստուծո առջև, քանզի միայն նա գիտի սրտի խորհուրդները, ամեն ծածուկ բան նրան հայտնի է և ամեն ժամ նրա առջև ենք։ Այժմ նրա առջև խոսում ենք նրա պատգամները, որոնք քաջաբույս են, բովանդակալի, պտղաբեր, արդյունատու, շահեկան, վայելող, շտեմարանալի, որոնք կարող են ձեզ պարարել այստեղ մարմնավոր պտուղով և այնտեղ արքայության մեջ ձեզ վայելել կտան անանցանելի և երկնավոր արքայությունը։ Փառք նրան՝ ամենատիրոջը, որ մեր կյանքի համար մարդացավ և մարդակերպ շրջեց, մեզ նման կերավ ու խմեց, տանջվեց, չարչարվեց, խաչվեց, գամվեց, սպանվեց, թաղվեց, կենդանացավ, հարություն առավ, վերացավ և ելավ-նստեց իր ծնող Աստուծո աջ կողմը, և Հայրը կենդանացրեց բոլոր նրանց, որ հավատացին նրան։

391 ԽԲ. Բայց մենք դեռ պետք է պատմենք Աստվածորդու ծնունդը կույսից, թե ինչպես եղավ, մեկ առ մեկ կպատմենք։ Քանզի ոչ թե կույսից ծնունդ առնելուց հետո գոյացության սկիզբն առավ անսկիզբ խոսքը, այլ նա ամեն ինչից առաջ հավիտյան ծնվել էր Հորից, իսկ այժմ մեզ համար իջավ և մարմնով ծնվեց կույսից և Հորից նրա ծննդյան մասին միայն ինքը գիտի։ Իսկ երկրորդ ծնունդը նրա շնորհիվ տեղի ունեցավ մարդկանց մեջ, որպեսզի ապրեցնի մարդկանց, երկիրը փրկի առաջին անեծքից և իր օրհնաբեր քայլերով գա ու նորոգի նրան, քանզի նա տեսավ, որ մարդիկ կորստյան են մատնված, և հավաքեց ցրվածներին ու գտավ կորածներին։

392 Այնուհետև շնորհագյուտ կույսը անհայր, անապական արգանդում սուրբ Հոգուց հղացավ Աստծո որդուն [մեր մտքերին] անմատչելի ձևով։ Եվ ըստ ծննդականների օրենքի նա իր անդրանիկը ծնավ Դավթի քաղաքում՝ Բեթղեհեմում, կատարելու համար մարգարեական խոսքը, թե «դու Բեթղեհեմ Եփրաթա տուն թեև սակավավոր ես Հուդայի հազարավորների մեջ, քեզանից ինձ կելնի պետ և իշխան, ու նրա ելքը ի սկզբանե աշխարհի հավիտենական օրերից է»։

393 Տեսանե՞ս զելսն յառաջընծայս։ Տեսանե՞ս և զաւետիս հրեշտակացն յօթևանս հովուացն, թէ «Ծնաւ ձեզ այսօր փրկիչ, որ է օծեալ տէր ի քաղաքի Դաւթի»։ Տեսանե՞ս, որոյ ելքն ի սկզբանէ աշխարհի՝ «այսօր ծնաւ» ասէին. պատմեն զօծելոյն՝ առ ի նշանակելոյ զմարգարէականն, թէ «Ո՛ պատմէ ի մէջ մարդկան զօծեալ իւր»։ Եւ տուեալ նշան զօծելոյն, թէ «Գտանիցէք մանուկ պատեալ ի խանձարուրս և եդեալ ի մսուր». այն իսկ էր յաւիտենական խորհուրդն ծածկեալ առ Աստուծոյ, որ յայտնեցաւ երկնակեաց իշխանացն։

394 Զորոյ անդէն իսկ զաստուածական փառացն զերգս առեալ երկնաւոր զօրուն՝ հովուացն ուսուցանէին. զի մի՛ ի մսրոյն և ի պատանացն արհամարհեալ հովուացն կարծիցի։ Եւ փութացեալ այնուհետև հովուացն՝ հասեալ գտանէին զմանուկն ըստ նշանակելոյ հրեշտակին. որ ոչ միայն մօտաւորացն, այլ և բացականացն արևելեաց աստղանշան ծանօթ գտեալ։ Անդ էր այնուհետև քննելի հոգեպատում մատեանքն մարգարէականք, թէ «Մանուկ ծնաւ մեր, և որդի տուաւ մեզ, որոյ իշխանութիւն իւր է ի վերայ ուսոց իւրոց. և անուն կոչեցաւ նմա հրեշտակ մեծի խորհրդոյ, սքանչելի խորհրդակից, Աստուած հզօր, իշխան հայր հանդերձելոյ աշխարհին»։

395 Տեսանե՞ս, զի և որդի և իշխան և հրեշտակ և խորհրդակից և Աստուած հզօր և հայր հանդերձելոյ աշխարհին՝ զայսօրածին մանուկն նշանակէ։ Քանզի և է իսկ որդի. վասն զի զօրութիւն Աստուծոյ է, խորհրդակից և Աստուած հզօր, որով և յաւիտեանքն հաստատեցան։ Եւ մանուկ՝ զի այսօր ի սուրբ կուսէն ծնաւ ի Բեթղեհէմ. որ և յառաջապատում իսկ ասէ, թէ «Տէր ասաց ցիս, որդի իմ ես դու, և ես այսօր ծնայ զքեզ». և հայր հանդերձելոյ աշխարհին՝ զի զհնացեալ և զմահակուլ աշխարհս ըստ առաջին հողածին մարդոյն՝ երկրորդ մարդն կուսածին եկեալ յերկնից նորոգիցէ։ Եւ իշխան՝ քանզի «գաւազան բղխեսցէ յարմատոյն Յեսսեայ, ասէ Եսայի, և ծաղիկ ի շառաւեղաց անտի»՝ զծնունդ դստերն Դաւթի. ապա և յաթոռն Դաւթի նստցի, և զարքայութիւն նորա յաջողեսցէ։

396 ԽԳ. Որով եկեալ հասին աւուրքն, զոր մարգարէն յառաջագոյն սահմանեաց. «Ահա աւուրք գան, ասէ Տէր, հաստատեցից



393 Տեսնո՞ւմ ես նախագուշակված դեպքերը։ Տեսնո՞ւմ ես հրեշտակների ավետիսը հովիվների օթևանում, թե՝ «Ձեզ այսօր փրկիչ ծնվեց, որը Դավթի քաղաքի օծյալ Տերն է»։ Տեսնո՞ւմ ես, որ նրա ելքը աշխարհի սկզբից է, «այսօր ծնվեց» ասում էին։ Նրանք խոսում էին օծյալի մասին, որպեսզի մատնանշեն մարգարեությունը, թե՝ «որը խոսում է մարդկանց մեջ իր օծյալի մասին»։ Նա նշան տվեց օծյալի մասին, թե՝ «կգտնեք մի մանուկ խանձարուրով փաթաթված և դրված մսուրի մեջ»։ Սա էր հավիտենական խորհուրդը, որը ծածուկ էր մնացել Աստուծո մոտ և հայտնվել երկնային իշխաններին։

394 Այնտեղ նրա աստվածային փառքի մասին երգեր էին ասում երկնավոր զորքերը և սովորեցնում հովիվներին, որ չլինի թե նա հովիվների կողմից արհամարհվի մսուրի և պատանքի պատճառով։ Այնուհետև հովիվները փութալով հասան-գտան մանուկը ըստ հրեշտակի նշածի։ Նա հայտնի դարձավ ոչ միայն մոտավորներին, այլև արևելքի հեռավոր [երկրներին], աստղի նշանով։ Ուստի այսպես պետք է հասկանալ մարգարեական հոգեպատում մատյանները՝ «մեզ մանուկ ծնվեց և որդի ծնվեց մեզ, որի իշխանությունը իր ուսերի վրա է և նրա անունը կոչվեց մեծ խորհրդի հրեշտակ, սքանչելի խորհրդակից, հզոր Աստված, հանդերձյալ աշխարհի իշխան հայր»։

395 Տեսնո՞ւմ ես, որ որդի իշխան, հրեշտակ, խորհրդակից, հզոր Աստված և հանդերձյալ աշխարհի հայր է կոչվում այսօրածին մանուկը։ Քանզի իսկապես որդի է, քանի որ Աստուծո զորությունն է, խորհրդակից և հզոր Աստված, որի միջոցով հավիտենականությունը հաստատվեց։ Մանուկ է, քանի որ այսօր սուրբ կույսից ծնվեց Բեթղեհեմում, որի մասին նախօրոք ասել է, թե՝ «Տերն ասաց ինձ, իմ որդին ես դու, և ես այսօր ծնեցի քեզ»։ Հանդերձյալ աշխարհի հայր է, քանզի երկրորդ կուսածին մարդը երկնքից գալով պիտի նորոգի առաջին հողածին մարդու պատճառով հնացած և մահակուլ դարձած աշխարհը։ Իշխան է, քանզի «Հեսսեի արմատից, ասում է Եսային, գավազան բխեց և ծաղիկ՝ նրա շառավիղից». դա Դավթի դստեր ծնունդն է։ Ապա նա նստելու է Դավթի աթոռին և նրա թագավորությունը հաջողության պիտի հասցնի։

396 ԽԳ. Այսպիսով եկան-հասան օրերը, որոնք մարգարեն նախապես սահմանել էր։ «Ահա օրեր կգան, ասում է Տերը, երբ

զբանս իմ բարի՝ զոր խօսեցայ ի վերայ տանն Իսրայելի և ի վերայ տանն Յուդայ։ Յաւուրն յայնոսիկ և ի ժամանակին յայնմիկ ծագեցից Դաւթի ծագումն արդարութեան, որ առնիցէ իրաւունս և արդարութիւն յերկրի»։ Վասն որոյ և անդէն ասէ. «Դա՛րձ, Յակոբ, և բուռն հար զնմանէ, ընդ ծագումն առաջին լուսոյ նորա. մի՛ տար այլում զփառս քո, և մի՛ զօգուտ քո ազգի օտարոտւոյ»։

397 Իսկ այլ մարգարէ յայտնագոյն իսկ վճիռ տայ, թէ «Յաւուր յայնմիկ կանգնեցից զխորանն Դաւթի, զանկեալն կանգնեցից, և զկործանեալս նորա և զատակեալս նորա վերստին կանգնեցից, և շինեցից զնա ըստ աւուրցն յաւիտենից. որպէս զի խնդրեսցեն զիս մնացորդք մարդկան և ամենայն հեթանոսք, յորոց վերայ կոչեցեալ է անուն իմ, ասէ Տէր»։ Որ առնէ զայս՝ յայտնի է ի սկզբանէ յաւիտեանց, քանզի յառաջագոյն խոստացեալ Դաւթի՝ ասէ, թէ «Ի պտղոյ յորովայնէ քումմէ նստուցից յաթոռ քո՝ բարձրացուցեալ քան զամենայն թագաւորս երկրի, հաստատեալ զաթոռ նորա ըստ աւուրցն երկնից, իբրև զարեգակն առաջի իմ, իբրև զլուսին, զի հաստատեալ է յօդս»։

398 Նա եկեալ, «Որոյ իւրն է թագաւորութիւն, և նա է յոյս հեթանոսաց», որպէս և պատմեացն Մովսէս, և յարուցեալ թագաւոր համաշխարհական, զամենայն ազգս հնազանդելով, և զթագաւորութիւն իւր ազգի այլում ոչ փոխեալ, ըստ ասացելոյն Դանիելի։ Նա և Դաւթի իսկ, որոյ որդի անուանեցաւ Քրիստոս, բղխեալ ի սրտէ հոգեպատում բարբառով մարգարէին, զհանգամանս թագաւորին յայտ արարեալ. նախ՝ թէ «Գեղեցիկ է քան զամենայն որդիս մարդկան, և շնորհս սփռէ ի շրթանց իւրոց». և գեղեցիկ ոչ զկերպարանացն, այլ զանզուգական փառացն ասէ։ Եւ դարձեալ՝ թէ «Ա՛ծ զսուր քո ընդ մէջ քո, հզօր, զի վայելէ ճշմարտութեան քում»։ Ապա յետ այնորիկ միանգամայն իսկ վճիռ տայ, թէ «Աթոռ քո, Աստուած, յաւիտեանս յաւիտենից, գաւազան ուղղութեան՝ գաւազան արքայութեան քոյ». և նշանակէ, թէ օծեալն է այն, զոր և ինքն իսկ մարգարէն զմուտս օծելոյն երգէր ասելովն, թէ «Վասն այսորիկ օծ զքեզ Աստուած Աստուած քո իւղով ուրախութեան առաւել քան զընկերս քո»։

399 Տեսանե՞ս, զի յառաջագոյն ծանուցեալ տեսող մարգարէին Հոգւովն սրբով, թէ միածին Որդին Աստուծոյ աթոռակից Հօր սիրե-



կհաստատվեն իմ բարի խոսքերը, որ խոսքերը, որ խոսեցի Իսրայելի և Հուդայի տան մասին։ Այդ օրերին և այդ ժամանակ ես ծագեցնելու եմ արդարության ծնունդը, որը երկրի վրա իրավունք և արդարություն պիտի գործի»։ Այդ մասին ապա ասում է. «Դարձիր Հակոբ և բռնիր նրան, նրա լույսի առաջին ծագման ժամանակ. մի տար այլոց քո փառքը և ոչ քո օգուտը՝ օտար ազգի»։

397 Իսկ մի ուրիշ մարգարե հայտնապես վճիռ է տալիս, թե՝ «այդ օրերին Դավթի խորանն եմ կանգնեցնելու, ընկածները պիտի ոտքի կանգնեցնեմ, նրա կործանված ավերակները վերստին եմ կանգնեցնելու և այն շինելու եմ հավիտենականության համար, որպեսզի ինձ փնտրի մարդկանց մնացած մասը և բոլոր հեթանոսները, որոնց վրա իմ անունն է դրված, ասում է Տերը»։ Թե ով է այս բանն անում, հայտնի է հավիտենականության սկզբից, քանզի նախապես խոստանալով Դավթին ասել է, թե՝ «Քո որովայնի պտուղից նստեցնելու եմ քո աթոռին, բարձրացնելու եմ ավելի բարձր, քան երկրի բոլոր թագավորները, նրա աթոռը երկնքի օրերի չափ եմ հաստատելու, իմ առջևի արեգակի նման և իբրև լուսինը, քանզի նրանք օդում են հաստատված»։

398 Նա եկավ, «որին [պատկանում] է թագավորությունը և նա հույսն է հեթանոսների», ինչպես պատմել է Մովսեսը։ Եվ աշխարհակալ թագավորը բարձրացվեց բոլոր ազգերին հնազանդեցնելու։ Նա իր թագավորությունը այլ ազգի չի տա, ինչպես ասել է Դանիելը։ Նույնպես և Դավիթը, որի որդին կոչվեց Քրիստոս մարգարեի սրտից բխած հոգեպատում խոսքերով։ Թագավորի հատկանիշները ցույց տալով նախ ասում է, թե՝ «Նա գեղեցիկ է ավելի քան բոլոր մարդկանց որդիները և նրա շրթները շնորհ են սփռում», իսկ գեղեցիկ է ասում ոչ թե կերպարանքի, այլ անզուգական փառքի համար։ Եվ դարձյալ, թե՝ «Սուրդ կախիր քո մեջքին, ով հզոր, որպեսզի վայել լինի քո ճշմարտությանը»։ Ապա դրանից հետո անմիջապես վճիռ է տալիս, թե՝ «քո աթոռը Աստված հավիտյան հավիտենից է, քո թագավորության գավազանը արդարության գավազան է» և նշում է, թե օծյալն է նա և որ ինքն իսկ մարգարեն նրա օծյալ գալու մասին երգել է, թե «այս պատճառով Աստված, քո Աստվածը ուրախության յուղով քեզ օծեց ավելի քան քո ընկերները»։

399 Տեսնո՞ւմ ես, որ մարգարեին նախապես սուրբ Հոգու կողմից ծանուցված էր, թե Աստուծո միածին Որդին՝ Հոր աթոռա-

լին՝ եղև որդի Դաւթի, և բարձրացուցանել զաթոռ նորա յաւիտենական։ Որպէս և ասէն. «Յառաջագոյն տեսանէի զՏէր առաջի իմ յամենայն ժամ, և ընդ աջմէ իմմէ». զոր և գիտէ, զի երդմամբ երդուաւ նմա Աստուած՝ ի պտղոյ յորովայնէ նորա նստուցանել յաթոռ նորա. որում և օրինականքն իսկ վկայէին, թէ «Յազգէ Դաւթի և ի Բեթղահէմ գեղջէ գայ Քրիստոսն»։

400 Եւ անդ նա ոչ միայն յառաջագոյն գուշակելոցն, այլ և առժամայն նշանաւ՝ մոգուցն եկելոց թագաւոր ճանաչէր. որք և ասէին. «Ո՞ւր է որ ծնաւ արքայն Հրէից», և տեղեկացեալ ի դպրացն՝ հասանէին ուր էր մանուկն. որում և երկրպագեալ և պատարագս մատուցեալ, և միանգամայն տիրագէտ և հրեշտակածանօթ եղեալ դարձան։

401 ԽԴ. «Եւ իբրև լցան աւուրք ութ թլփատել զնա՝ և կոչեցաւ անուն նորա Յիսուս, որ կոչեցեալ էր ի հրեշտակէն, մինչ չև յղացեալ էր զնա յորովայնի»։ Զոր և ասէ մարգարէն, թէ «Մինչ չև ստեղծեալ էր զքեզ յորովայնի՝ գիտեմ զքեզ, և մինչ չև ելեալ էիր յարգանդէ՝ սրբեցի զքեզ». և այս ի Տէրն իսկ թարգմանի, թէ «Զոր Հայր սրբեաց և առաքեաց յաշխարհ»։ Իսկ այլ մարգարէ, թէ «Յարգանդէ կարդաց զիս Տէր, և յորովայնէ մօր իմոյ կոչեաց զանուն իմ»։

402 Եւ արդ՝ դու տե՛ս զճշմարիտ կերպարանս բերեալ ի սուրբ կուսէն, և ոչ առ աչօք ինչ տեսիլ։ Զի սկիզբն առնու անսկզբնականն. և աւուրբք համարեալ՝ ութօրեայ թլփատի յառաջ քան զարուսեակ որդին, աւետեօք խոստացեալ զաւակն Աբրահամու. որով օրհնին ամենայն ազգք երկրի. որպէս և Քրիստոսի Յիսուսի թլփատելն առ ի կատարելոյ զաւետիս հարցն, որոյ «Մտեալ, ասէ, ընդ օրինօք, զի զօրինաւորսն փրկեսցէ, զի և մեք զորդեգրութիւն ընկալցուք»։

403 Արդ՝ սնընկալ եղեալ՝ այնուհետև որդին Դաւթի հալածի յԵգիպտոս, առ ի կատարելոյ զայն, թէ «Յերկրէն Եգիպտացւոց կոչեցից զորդի իմ»։ Քանզի յառաջագոյն սահմանեալ Աստուծոյ ամենագիտի հոգեկիր մարգարէիւքն իւրովք, թէ ո՛րպիսի համբերութիւնս միածին Որդին իւր ի Հրէաստանեացն եկեալ կրիցէ։ Որպէս և Պետրոս յառաքելագործ մատենին ասէ, թէ «Աստուած որպէս յառաջագոյն պատմեաց ի բերանոյ ամենայն մարգարէից զչարչարելն Քրիս-



կիսը, սիրելին եղավ Դավթի որդի և բարձրացրեց նրա աթոռը հավիտյան։ Որպես և ասում է՝ «Նախապես տեսնում էի Տիրոջն իմ առջև ամեն ժամ և իմ աջ կողմում»։ Նա ինքն էլ գիտի, որ երդումով երդվեց նրան Աստված՝ նրա աթոռին նստեցնել նրա որովայնի պտուղը, որի մասին և օրինակներն են վկայում, թե «Դավթի ազգից և Բեթղեհեմ գյուղից է գալիս Քրիստոսը»։

400 Այստեղ նա թագավոր ճանաչվեց ոչ միայն նախապես եղած գուշակություններով, այլև նույն ժամին եղած նշանով՝ նրա մոտ եկած մոգերով, որոնք ասում էին. «Ո՞ւր է նա, որ ծնվեց Հրեից արքա» և դպիրներից տեղեկանալով հասան այն վայրը, ուր մանուկն էր, ու երկրպագեցին նրան, ընծաներ մատուցեցին և միաժամանակ Տիրոջից ու հրեշտակից տեղեկություններ ստանալով վերադարձան։

401 ԽԴ. «Երբ լրացան նրա թլփատելու ութ օրերը, նրա անունը դրեցին Հիսուս, որը հրեշտակն էր կոչել, մինչ դեռ չէր հղացած արգանդում»։ Ինչպես և ասում է մարգարեն. «Մինչ դեռ նա չէր ստեղծել քեզ որովայնում, ես գիտեի քեզ և նախքան արգանդից ելել էիր, քեզ սրբացրի»։ Սա բացատրվում է՝ այն վերաբերելով Տիրոջը, թե «ում որ Հայրը սրբացրեց և առաքեց աշխարհ»։ Իսկ մի ուրիշ մարգարե, թե «արգանդից կանչեց ինձ Տերը և իմ մոր որովայնում կոչեց իմ անունը»։

402 Արդ, տես որ նա ճշմարիտ կերպարանք ստացավ սուրբ կույսից և ոչ թե աչքին երևացող տեսիլք։ Քանզի սկիզբ է առնում [միայն] անսկիզբը։ Օրերով հաշվելով ութերորդ օրը նախքան առավոտյան աստղը (արուսեակ) թլփատվեց որդին՝ ավետիսով խոստացված Աբրահամի զավակը, որով օրհնվում են երկրի բոլոր ազգերը։ Ուստի Քրիստոսի թլփատվելը կատարումն էր հայրերին տրված ավետիսի։ «Մտավ, ասում է, օրենքի տակ, որպեսզի օրինապահներին փրկի և մենք ևս որդեգրություն ստանանք»։

403 Արդ՝ անընկալ լինելով այնուհետև Դավթի որդին հալածվեց Եգիպտոս, որպեսզի կատարվի այն [խոսքը], թե «Եգիպտացոց երկրից կանչելու եմ իմ որդուն»։ Քանզի Աստուծո կողմից նախապես սահմանված էր իր հոգեկիր մարգարեների միջոցով, թե որպիսի չարչարանքներ կրելու էր միածին Որդին հրեաներից, ինչպես և Պետրոսը առաքելագործ մատյանի մեջ ասում է, թե՝ «Աստված ինչպես որ նախապես պատմել էր բոլոր մարգարեների բերանով իր Քրիստոսի չարչարվելու մասին, այնպես էլ կատարվեց»։

տոսի իւրոյ՝ նոյնպէս և կատարեաց»․ զոր և Տէրն իսկ ասէր, թէ «Եկի կատարել զօրէնսն և զմարգարէս»։

404 խե․ Կոչեցեալ ապա յԵգիպտոսէ՝ գայ անցանէ ի Նազարէթ, ի կարծեալ հայրենիսն իւր ըստ մարմնոյ․ աճէ և զարգանայ հասակաւ, ըստ օրինակի մարդկան որդին մարդոյ․ անսայ և Իսրայելական ազգին՝ զի ինքնակամ դիմեսցեն ի բացեալ աղբիւրն կենաց։ Քանզի զնմանէ իսկ գուշակէ սաղմոսանուագն, թէ «Աղբիւրն կենաց ի քէն է»։ Զոր և Փրկիչն յայտ արարեալ սամարացի կնոջն ասելով․ «Թէ գիտէիր դու զպարգեւսն Աստուծոյ, և ո՛վ է, որ ասէդ ցքեզ, թէ տուր ինձ ըմպել՝ դու արդեօք խնդրէիր ի նմանէ, և տայր քեզ զջուրն կենդանի»։

405 Որոյ ապա ի լնուլ ամացն իւրոց երկոտասանից՝ ելեալ յԵրուսաղէմ, և ընդ վարդապետս օրինացն բանս ի կիր արկեալ և զարմացուցեալ զամենեսեան, առ ի կատարելոյ զմարգարէականն, թէ «Ահաւասիկ ի միտ առցէ մանուկ իմ, վերասցի և բարձրասցի և փառաւորեսցի յոյժ»։ Զի թէպէտ և խոնարհեցաւ Աստուածութիւնն յերկնից՝ սակայն յերկրակեաց ի ներքնոցս բարձրացեալ ճանաչի։ Ի միտ առեալ, զի թէպէտ և խոնարհութեամբ էջ՝ սակայն ինքնաբուն իւրոց փառացն զօրութեամբ վերացեալ, ըստ յառաջագուշակ տեսողութեան մարգարէին, թէ «Վերասցի և բարձրասցի և փառաւորեսցի»։ Իբրև զի ոչ ինչ է նա կարօտ փառաց, այլ յետ իւրով կամօք զիւր կամս կատարելոյ համբերատար իշխանութեամբն, ոչ եկամտաւ ինչ, այլ բնական փառօքն վերացեալ ճանաչէր երկնաւոր զօրուն, ըստ այնմ որ ասէն, թէ «Համբարձաւ Աստուած օրհնութեամբ, և Տէր մեր ձայնիւ փողոյ»։

406 Իսկ փողն միթէ եղջի՞ւր ինչ գոչիցէ, փքոցուռոյց լնդովք, թռալիր օդով փողիցն այտմամբ․ այլ աստուածասքանչ աւետեօքն զամենայն գոչել և լցուցանել, թէ «Ահա Աստուած, ահա Տէր»։ Զի և ճանապարհս քարոզութեան կենսաբեր նորա վարդապետութեանն արասցեն, և զնա ի միտ առեալ ծանիցեն, թէ «Ահա Տէր, որում սպասէաք սմա․ ցնծասցուք և ուրախ լիցուք ի փրկութեան մերում»։ Որ նովիմբ ճանապարհք քարոզութեան բացեալ իւրեանց կենացն լուսոյ բարեաց հանդստեան, և ի միտ առեալ ծանիցեն, թէ ընդ նմա յարքայութիւնն վերացեալ, լուսեղէն յարկացն բնակութեան լինիցին բնակիչք․ հաւանեսցին լսել, ի միտ առնուլ, այսինքն է ճանաչել



Ինչպես և Տերն իսկ ասում է, թե «եկա կատարելու օրենքը և մարգարեները»։

404 խե․ Կանչվելով ապա Եգիպտոսից եկավ-անցավ Նազարեթ իր կարծեցյալ հայրենիքը ըստ մարմնի։ Աճեց և զարգացավ հասակով՝ ըստ մարդկային ցեղի օրինակի։ Ենթարկվեց նաև իսրայելական ազգին, որպեսզի նրանք ինքնակամ դիմեն բացված կենաց աղբյուրը։ Քանզի նրա մասին է գուշակել սաղմոսանվագը, թե «կենաց աղբյուրը քեզանից է»։ Այս ևս Փրկիչը հայտնեց սամարացի կնոջն ասելով՝ «Եթե դու գիտենայիր Աստուծո պարգևը և ո՞վ է նա, որ ասաց քեզ, թե տուր ինձ ըմպել՝ դու ինքդ կխնդրեիր նրանից և նա քեզ կտար կենդանի ջուրը»։

405 Ապա նա տասներկու տարեկանը լրացնելուց հետո ելավ Երուսաղեմ և օրենքի վարդապետների հետ զրույցի մեջ մտավ ու զարմացրեց բոլորին։ Ի կատարումն այն մարգարեության, թե՝ «Ահավասիկ իմ մանուկը պիտի ըմբռնի, բարձրանա, վերանա և հույժ փառավորվի»։ Քանզի թեպետ Աստվածությունը երկնքից խոնարհվեց, սակայն ներքևի երկրակյացների կողմից բարձր է ճանաչված։ Նրանք հասկացան, որ թեպետ և խոնարհությամբ նա իջավ, սակայն իր ինքնաբուն փառքի զորությամբ բարձր է ըստ մարգարեի նախապես գուշակած տեսիլքի, թե «կվերանա-կբարձրանա և կփառավորվի», բայց քանի որ նա փառքի կարոտ չէ իր կամքը կատարելուց հետո համբերատար իշխանությամբ բարձրացավ, ոչ արտաքին որևէ [օգնությամբ], այլ իր բնական փառքով բարձրանալով ճանաչվեց երկնավոր զորքի կողմից, ըստ այն խոսքի, թե «Աստված համբարձավ օրհնությամբ և Տերը մեր ձայնի փողով»։

406 Իսկ փողը մի՞թե եղջյուրի նման չի հնչելու շնչով ուռած այտերով [լնդով], թուշը օդով լի բերանից փչվելով, որպեսզի աստվածասքանչ ավետիսներով գոչեն և լցնեն ամբողջ [տիեզերքը], թե «ահա Աստված, ահա Տերը»։ Քանզի նրանք քարոզության ճանապարհն են կտրելու և նրան հիշելու, ճանաչելու են, թե «ահա Տերը, որին սպասում էինք, ցնծանք և ուրախ լինենք մեր փրկության համար»։ Նրանով քարոզության ճանապարհը բացվեց իրենց կյանքի լույսի, բարիքների և հանգստյան համար, որպեսզի մտածեն ու հասկանան, թե նրա հետ արքայությամբ բարձրանալով լուսեղեն հարկերի կացարանների բնակիչներ պիտի լինեն։ Նրանք պիտի հոժարեին լսել հասկանալ, այսինքն տիեզերքը պետք է ճա-

զնա տիեզերաց․ որպէս և սաղմոսարանն ասէ, թէ «Յիշեսցեն և դարձցին առ Տէր ամենայն ծագք երկրի»։

407 Եւ վերանալն և բարձրանալն՝ զի էջ ի խոնարհութիւն խոնարհ մարմնովն. վասն այնորիկ նորին խոնարհութեան մարմնոյն կերպարանօք բարձրանայ։ Իբրև զմարդ խոնարհ երևեալ, և առաւել քան զամենայն մարդիկ հեզ և խոնարհ, և հանդարտութիւն ցուցեալ համբերութեամբ վշտացն զոր առ ի մարմինն. վասն այսորիկ նովին մարմնովն բարձրացեալ ի խոնարհութեանցն, մարդկութեամբն վերացեալ և բարձրացեալ և փառաւորեալ. իբրև զի զմարդատեսիլ կերպարանացն զոր առն՝ բարձրացուցանէր, զբարս խոնարհութեան օրինակեալ տպաւորէր յինքեան։

408 ԽԶ. Արդ՝ լռեալ ամս երեսուն զինքն ի յայտնելոյ, ի հասակ մարմնոյն զարգացեալ, ըստ բնութեան աճման մարմնոյն՝ անսայ և մկրտութեան, և նախ յառաջագոյն կարապետ առաջոյ արձակեալ զՅովհաննէս, մեծն մարգարէիցն՝ պատրաստել նմա ճանապարհ և ուղղել զշաւիղս յայտնութեան նորա։ Անսայ տալ զմկրտութիւն ապաշխարութեան, ոչ զմկրտութիւն աստուածադրոշմն լուսաւորութեան կենացն անվախճանից, այլ տալ զապաշխարութեանն սրբութեան մկրտութիւն. որպէս առ մովսիսեան դարին, յորժամ Աստուած երևել նոցա կամէր՝ հրամայէր նոցա լուանալ և սրբել, զի արժանաւորք լիցին աստուածատես փառացն երևելոյ։

409 Սոյնպէս և Յովհաննէս եկեալ լուանայր զժողովուրդն ապաշխարութեամբ. զի յորժամ Աստուածորդին երևեսցի՝ պատրաստագոյնք արժանաւորութեամբ նորին վարդապետութեանն զունկընդրութիւն մատուսցեն, ի սիրտսն գործել ճանապարհ, զի ի հեզ և ի խոնարհ օթևանս զամենատէրն ընդունել մարթասցեն։

410 Արդ՝ եկեալ և ինքն մկրտի ի Յովհաննէ, ձեռն արկեալ գրել կտակ յաւիտենական, և իւրով արեամբն կնքեալ, ապրել ամենեցուն լուսաբեր և կենսատու մկրտութեամբն, հրամայեաց ամենայն երկրածին մարդկան, ամենայն մսեղեաց, աստուածանման պատկերին փրկութեան նմանել։ Արդ՝ եկեալ առ կնքատուն Յովհաննէս մկրտել ի նմանէ. որոյ զահի հարեալ՝ ընդդէմ գնացեալ, թէ «Ինձ պարտ է ի քէն մկրտել»։ Որոյ լուեալ պատասխանի և առեալ հրաման համար-



նաչի նրան, ինչպես և սաղմոսարանն է ասում, թե «երկրի բոլոր ծայրերը պիտի հիշեն և դառնան առ Տերը»։

407 Եվ վերանալն ու բարձրանալը այն է, որ նա իջավ խոնարհության, խոնարհ մարմնով, այդ պատճառով նույն խոնարհության մարմնի կերպարանքով կբարձրանա։ Նա երևաց իբրև խոնարհ մարդ և առավել հեզ ու խոնարհ, քան բոլոր մարդիկ։ Նա դիմացկունություն և համբերություն ցուցաբերեց իր մարմնի վրա կրած վշտերի հանդեպ։ Այդ պատճառով նույն մարմնով բարձրացավ խոնարհություններից, իր մարդկությամբ վերացավ, բարձրացավ, փառավորվեց։ Քանզի նա բարձրացրեց մարդատեսիլ կերպարանքը, որ առել էր, և խոնարհության նկարագիրը որպես օրինակ իր վրա տպավորվեց։

408 ԽԶ. Արդ, երեսուն տարի ինքնիրեն չհայտնելուց հետո, զարգանալով մարմնի հասակով, ըստ մարմնի բնական աճման՝ նա ենթարկվեց մկրտության։ Նախ և առաջ նա որպես կարապետ ուղարկել էր Հովհաննես [Մկրտչին]՝ մարգարեներից ամենամեծին՝ պատրաստելու ճանապարհը և ուղղելու նրա հայտնության շավիղները։ Նա համաձայնեց տալ ապաշխարության մկրտությունը, ոչ անվախճան կյանքի աստվածադրոշմ լուսավորության մկրտությունը, այլ ապաշխարության սրբության մկրտությունը, ինչպես Մովսեսի դարում, երբ Աստված նրանց երևալ ուզեց, հրամայեց լվացվել և սրբանալ, որպեսզի արժանավոր լինեն աստվածատես փառքի երևալուն։

409 Այսպես եկավ Հովհաննեսը՝ լվալով ժողովրդին ապաշխարությամբ, որ երբ Աստվածորդին գա, պատրաստագույն արժանավորությամբ նրա վարդապետությանը ունկնդիր լինեն, իրենց սրտում ճանապարհ բացեն, որպեսզի կարողանան ընդունել ամենատիրոջը իրենց հեզ ու խոնարհ օթևաններում։

410 Արդ, նա գալով ինքը մկրտվեց Հովհաննեսից, ձեռնարկելով գրել հավիտենական կտակ և իր արյամբ կնքել, որպեսզի ամենքը ապրեն լուսաբեր և կենսատու մկրտությամբ։ Հրամայեց ամեն երկրածին մարդկանց, բոլոր մարմնավորներին աստվածանման փրկության պատկերին նմանվել։ Արդ, եկավ կնքատու Հովհաննեսին՝ մկրտվելու նրանից, որն ահաբեկված մերժեց, թե «Ի՛նձ հարկավոր է քեզանից մկրտվել»։ Իսկ նա լսեց ու պատասխանեց համարձակ հրամայելով մկրտել իրեն, թե «Թույլ տուր այժմ, քան-

ձակ զնա մկրտելոյ, թէ «Թոյլ տուր այժմ, զի այսպէս արժան է լինել, զի կատարեսցուք զարդարութիւնս ամենայն»։

411 Եւ զի՞նչ իցեն արդարութիւնքն, եթէ ոչ զոր Հոգւովն սրբով նորուն Յովհաննու հայրն Զաքարիա գոչեաց, թէ «Յիշեաց, ասէ, զերդումն, զոր երդուաւ Աբրահամու հօր մերում, տալ մեզ առանց երկիւղի զփրկութիւն ի թշնամեաց մերոց և ի ձեռաց ամենայն ատելեաց մերոց. պաշտել զնա սրբութեամբ և արդարութեամբ»։ Ըստ որում և երգողն ասէ. «Յիշեաց զուխտ իւր որ ընդ Աբրահամու և զերդումն իւր ընդ Սահակայ, և հաստատեաց առ Յակովբ զհրաման իւր, և առ Իսրայէլ զուխտ իւր յաւիտենից»։ Օրհնեաց հարցն հաւատովք զամենայն երկիր, օրհնեաց կատարեաց զխոստմունսն, և վասն նորին էջ ինքն ի ջուրսն, և սրբիչ և նորոգիչ միանգամայն զջուրսն կացուցանէր։

412 Եւ վասն զի զերկիր զառաջինն ի ջուրցն փարատեցուցեալ հրամանաւ, և ջրովն պարարեալ՝ ամենայն բոյսք և զեռունք և գազանք և անասունք և թռչունք ի ջուրցն դալարութենէ բղխեցին յերկրէ. սոյն օրինակ դալարեցոյց զարգանդ ծննդկանութեան ջուրցն՝ մկրտութեամբ, սրբեալ ջուրքն և նորոգեալ զհնութիւն մաշուածոյ հողեղէն նիւթոյս, զոր մեղացն էր մաշեալ հնացուցեալ, մերկացուցեալ ի շնորհաց անտի Հոգւոյն։ Արդ՝ միւսանգամ բացեալ զարգանդ աներևոյթ Հոգւոյն երևելի ջրովն՝ նորածնունդ նորափետուր զարդարեալ միւսանգամ ի ծննդականութիւն աւազանին, զգեցուցանել զամենեսեան լուսաւոր պատմուճանօք, որ միւսանգամ վերստին ծնանիցին։

413 Քանզի ի սկզբանն իսկ արարչութեան ժամանակին՝ շրջէր Հոգի Աստուածութեան ի վերայ ջուրցն. և անտի զկազմած արարածոցն յօրինէր, ի լինելութիւն արարածոցն հրամայէր հաստանալ։ Նա և զհաստատութիւն երկնի՝ բնակութեան հրեշտակաց հրեղինաց, որ երևիս մեզ ջրեղէն՝ հրամայեաց հաստանալ։ Նոյն օրինակ եկեալ կատարէ զուխտն զոր եդ ընդ հարսն։ Էջ ինքն ի ջուրսն, սրբեաց զջուրս ներքինս երկրիս՝ որ մեղօք մարդկան էր պղծեալ։

414 Արդ՝ իւրոց գարշապարացն կոխելով զջուրսն՝ սրբեաց և սրբիչս արար։ Եւ որպէս յառաջագոյն շրջէր Հոգին ի վերայ ջուրցն՝ նոյն օրինակ բնակեսցէ ի ջուրսն, և զամենեսեան ընկալցի որ ծնանին նովաւ։ Եւ ջուրքն վերինք մածեալք բնակութիւն են հրեշտակաց։ Արդ՝ զայս ջուրս իբրև զայն ջուրսն արար. վասն զի ինքն էջ ի ջուրսն, զի ամենեքեան Հոգւովն ի ջուրցն նորոգեալ հրեշտակասցին,



զի այսպես արժան է լինել, որպեսզի կատարենք բոլոր արդարությունը»։

411 Ի՞նչ է արդարամիտ լինելը, եթե ոչ այն, որ Հովհաննեսի հայր Զաքարիան սուրբ Հոգով գոչեց, թե «Հիշեց, ասում է, երդումը, որ երդվեց մեր հայր Աբրահամին՝ մեզ առանց երկյուղի փրկություն տալ մեր թշնամիներից և բոլոր նրանցից, ովքեր ատում են մեզ, ծառայեց նրան սրբությամբ և արդարությամբ»։ Նույն ձևով սաղմոսերգուն ասում է. «Հիշեց իր ուխտը Աբրահամի հետ և երդումը Սահակին և Հակոբի համար հաստատեց իր օրենքը և Իսրայելի համար դրեց իր հավիտենական ուխտը»։ Հայրերի հավատով օրհնեց ամբողջ երկիրը, օրհնեց, կատարեց խոստումները և նույն պատճառով նա ինքը եկավ ջրերի մեջ և միանգամայն սրբացնող ու նորոգող դարձրեց ջրերը։

412 Վասնզի նա առաջին երկիրը իր հրամանով դուրս բերեց ջրերից և ջրով պարարեց բոլոր բույսերը, զեռունները, գազանները, անասուններն ու թռչունները և ջրի դալարությամբ բխեցին երկրից։ Նույն ձևով՝ մկրտությամբ դալարեցրեց ջրերի ծննդականության արգանդը ջրով՝ սրբացնելով և նորոգելով հողեղեն նյութի մաշված հնությունը, որը մեղքի միջոցով մաշված-հնացած էր, մերկացած հոգու շնորհներից։ Ապա անտեսանելի Հոգին կրկին բացեց արգանդը երևելի ջրով, նորածնունդ նորափետուրներին զարդարելով ավազանի ծննդականության համար, հագցնելու համար բոլորին լուսավոր պատմուճանը, որ մյուս անգամ վերստին ծնվեն։

413 Քանզի արարչության ժամանակի սկզբից իսկ Աստվածության Հոգին շրջում էր ջրերի վրա և այնտեղ արարածների կազմավորությունն էր հորինում ու հրամայում էր արարածներին լինելության հասնել։ Նա հրամայեց նաև կազմել երկնքի հաստատությունը՝ հրեղեն հրեշտակների բնակարանը, որը մեզ ջրեղեն է թվում։ Նույն ձևով եկավ-կատարեց ուխտը, որ դրել էր հայրերի հետ։ Իջավ ինքը ջրերի մեջ և սրբացրեց երկրի ներքին ջրերը, որոնք մարդկանց մեղքով պղծված էին։

414 Արդ, իր գարշապարով կոխելով ջրերը սրբացրեց և սրբացնող դարձրեց։ Եվ ինչպես նախապես Հոգին շրջում էր ջրերի վրա, նույն ձևով էլ կբնակվի ջրերի մեջ և ամենքին կընդունի, որ նրանով ծնվեն։ Հավաքված վերին ջրերը հրեշտակների բնակարանն են։ Սակայն նա այդ ջրերը դարձրեց այն ջրերի նման, քանզի ինքն իջավ ջրերի մեջ, որպեսզի ամենքը ջրերի մեջ Հոգով նո-

*և նոյն Հոգին մինչև յափտեան ի ջուրցն զամենսեան յորդեգրութիւն մատուցանիցէ։ Վասն զի դրունս բացեալ ջուրցն ի խոնարհ, զի վերնաջուրցն դրունք բացցին երկնից, և զամենսեան փառօք վերացուսցէ յորդեգրութիւն։*

*415 Վասն զի ճշմարիտ որդին Աստուծոյ խոնարհեցաւ և էջ ի ջուրսն մկրտութեան, զի զխոստմունսն կատարեսցէ զհարցն և զաւետիսն։ Յառաջ քան զայն և զթլփատութիւնն առ յանձն. զի և երկոցունց կողմանցն շնորհեսցէ շնորհս և հաստուսցէ զքարիս։ Զի իւրով թլփատելովն կատարեսցէ զհաստատութիւն խոստմանցն, և ի խրախուսն հրաւիրմանցն որդեգրութեան ժառանգութեան արժանաւորացն։ Եւ ի մկրտելն՝ զամենայն մկրտեալսն կեցուցանէ իւրով յանձն առնլովն զմկրտութիւնն, և պատուական արարեալ զմկրտութիւն՝ իւրով իջանելովն ի մկրտութիւն։*

*416 Եւ նախ անտի իսկ ի միտ առեալ ճանաչի ճշմարիտ Որդին Աստուծոյ՝ բարբառովն Հօր իւրոյ և իջանելովն ի վերայ նորա Հոգւոյն։ Զի անտի իսկ ի միտ առեալ ճանաչի, առ ի կատարելոյ զյառաջասացութիւնն Հօր, թէ «Ահաւասիկ ի միտ առցէ մանուկ իմ, վերասցի և բարձրասցի և փառաւորեսցի յոյժ»։*

*417 Զի ամս երեսուն լուռ և աներևոյթ շրջեալ ի մէջ նոցա, և ապա եկեալ հասեալ ի մկրտութիւն՝ արդ ի մկրտութեանն ճանաչի ամենեցուն։ Յովհաննէս վկայէ և ասէ. «Սա է, զորմէ եսն ասէի, որ զկնի իմ գայ՝ առաջի իմ եղև. զի նախ նա իսկ առաջին էր. զի ի լրութենէ անտի նորա մեք ամենեքեան առաք շնորհս»։*

*418 Խէ. Եւ Հոգին ի վերայ նորա իջեալ ի նմանութիւն աղաւնոյ։ Իսկ ընդէ՞ր արդեօք ի նմանութիւն աղաւնոյ երևեցի Հոգին սուրբ Աստուծոյ. զի ուսուսցէ տեսողացն, թէ ոչ այլ ինչ է հնար մատչել առ Աստուածորդին՝ եթէ ոչ անմեղութեամբ և արդարութեամբ և սրբութեամբ՝ յաղաւնակերպ նմանութենէ անտի առեալ զկերպարանս յանձին բերիցեն։*

*419 Վասն զի քննիչ է սրտից և ծածկագէտ և ամենայն գաղտնեաց յայտնիչ. զի զամենայն ինչ գիտէ, և զամենայն ինչ զոր ասէ՝ կարող է կատարել, և տկարանայ նմա և ոչ ինչ. որպէս ասաց Գաբրիէլ առ կոյսն սուրբ, թէ «Ոչ տկարասցի առ ի յԱստուծոյ ամենայն բան»։ Որ և զսրտից մարդկան զխորհուրդս ի վեր բերեալ յանդիմանէ. «Ո ստեղծ առանձին զսիրտս նոցա, որ ի միտ առնու զամենայն գործս նոցա», որ առ նա էին մատչելոց։*



*բոցված հրեշտականան, և նույն Հոգին մինչև հավիտյան ամենքին ջրերով որդեգրություն բերի։ Նա բացեց ստորին ջրերի դռները, որպեսզի երկնքի վերին ջրերի դռները նույնպես բացվեն և ամենքին փառքի մեջ բարձրացնի որդեգրության համար։*

*415 Վասնզի Աստուծո ճշմարիտ Որդին խոնարհվեց և իջավ մկրտության ջրերի մեջ, որպեսզի հայրերին տրված խոստումներն ու ավետիսները կատարվեն։ Նախքան այդ նա թլփատությունը հանձն առավ, որպեսզի երկու կողմից շնորհ և բարիք ընծայի՝ իր թլփատվելով նա կկատարեր խոստումների հաստատումը և իր խրախուսանքով ժառանգության արժանիներին որդեգրության կհրավիրեր։ Եվ մկրտվելով՝ նա բոլոր մկրտվածներին կյանք է տալիս՝ ինքն անձամբ ընդունելով մկրտություն և պատվական դարձրեց մկրտությունը՝ ինքն իջնելով մկրտվելու։*

*416 Իսկ նա նախ հասկացվեց ու ճանաչվեց, որպես Աստուծո ճշմարիտ Որդի, իր Հոր ձայնով և Հոգու նրա վրա իջնելով։ Քանզի դրանով նա հասկացել և ճանաչվել էր, կատարելու համար Հոր նախապես ասածը, թե «Ահավասիկ իմ մանուկը խոհեմ պիտի լինի, վերանա, բարձրանա և հույժ փառավորվի»։*

*417 Երեսուն տարի լուռ և աներևույթ շրջեց նրանց մեջ և ապա եկավ-հասավ մկրտության և մկրտությամբ էլ ճանաչվեց բոլորից։ Հովհաննեսը վկայում է և ասում. «Սա է, որի մասին ասում էի, որ կգա իմ ետևից. և նա ինձանից առաջ էր, քանզի նա առաջինն էր, և նրա կատարելությունից մենք ամենքս շնորհ ստացանք»։*

*418 Խէ. Եվ Հոգին իջավ նրա վրա աղավնու նմանությամբ։ Իսկ ինչո՞ւ արդյոք աղավնու նմանությամբ եկավ Աստուծո սուրբ Հոգին. որպեսզի տեսնողներին ուսուցանի, թե չկա ոչ մի այլ հնար մոտենալու Աստվածորդուն, եթե ոչ անմեղությամբ, արդարությամբ և սրբությամբ, որ նրանք պետք է աղավնակերպ նմանությունն առնեն իրենց մեջ կրելու համար այդ կերպարանքը։*

*419 Վասնզի նա սրտերի քննիչ է, ծածկագետ և ամենայն գաղտնիքների բացահայտող, քանզի ամեն ինչ գիտի, ամեն ինչ, որ ասում է, կարող է կատարել, և նրա համար անկարելի բան չկա։ Ինչպես ասաց Գաբրիելը սուրբ կույսին, թե «Աստուծո համար ամեն բան կարելի է»։ Նա ի հայտ է բերում մարդկանց սրտի խորհուրդները և հանդիմանում։ «Նա, որ հատուկ ստեղծեց նրանց սրտերը և հասկանում է նրանց բոլոր գործերը», որոնք մերձենալու են նրան։*

420 Վասն այնորիկ Հոգին աղաւնակերպ իջանէ, զի ուսուսցէ տեսողացն՝ սրբամտելով առ Աստուածորդին մերձենալ, և զշնորհս բարերարութեան Հոգւոյն ընդունել, և Հօրն հաճոյ լինել. վասն այսորիկ Որդին Աստուծոյ եկն և կատարեաց զուխտ հարցն, անուանելով նոցա որդի։ Որդին Աստուծոյ վասն այսորիկ եկեալ մկրտի, ի հաստատել զմկրտութիւն ամենայնի՝ որ մկրտելոցն իցեն, զի անդ իսկ զայս աւանդելով՝ փրկութիւն ամենեցուն յայտնեալ՝ ի միտ առեալ ծանիցի, և անտի իսկ բացցէ զամենակեցոյց ճշմարտութեան վարդապետութիւնն իւր յայտնել աշխարհի։ Որպէս ասէ մարգարէն իբրև յերեսաց տեառնորդւոյն, թէ «Մատերո՛ւք առ իս և լուարո՛ւք զայս. ոչ ի սկզբանէ ի ծածուկ ինչ խօսեցայ, և ոչ ի տեղւոջ խաւարին երկրի. զի յորժամ լինէրն՝ ես անդ էի. և արդ՝ Տէր Տէր առաքեաց զիս և Հոգի նորա»։ Տեսանե՞ս զէական միաւորութիւնն. «յորժամ լինէրն՝ ես անդ էի» ասէ. յայտ արարեալ զմիաբուն երրորդական զօրութիւնն, թէ և՛ ի հաստատելն համագործ, և ի նորոգելն միաբան։

421 Արդ՝ բացեալ երկինք՝ և Հայր աղաղակէ, թէ «Դա է Որդի իմ սիրելի». և Հոգին իջեալ ի նմանութիւն աղաւնոյ. զի յայտ լիցի միաբուն խորհուրդ զօրութեան գալստեան Որդւոյն։

422 Եւ զի՞նչ իցէ զոր ասէն, թէ «ի սկզբանէ խօսեցայ»՝ եթէ ոչ զյառաջաձայնեան սրբոց մարգարէիցն, որ ինքն իսկ ի նոսա վասն իւր խօսեցաւ. և խորհրդով միաբանական Հօրն և Հոգւոյն՝ եկեալ երևի արդ ի վախճան ժամանակացս։ «Որ էրն ի սկզբանէ Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր Բանն. նա էր ի սկզբանէ առ Աստուած. ամենայն ինչ նովաւ եղև, և առանց նորա եղև և ոչ ինչ որ ինչ եղեն։ Նովաւ կեանք էր, և կեանքն էին լոյս մարդկան. և լոյսն ի խաւարի անդ լուսաւորէր. և խաւար նմա ոչ յաղթեաց։ Եղև այր մի առաքեալ յԱստուծոյ, անուն նորա Յովհաննէս. սա եկն ի վկայութիւն, զի վկայեսցէ վասն լուսոյն, զի ամենեքեան հաւատասցեն նովաւ»։

423 Արդ՝ լցեալ և կատարեալ զամենայն, և լոյս Որդւոյն Աստուծոյ ի մէջ անցեալ լուսաւորել զամենայն մարդ՝ որ գալոց է յաշխարհ. որում խաւարն ոչ կարացեալ համեմատել յաղթել. այլ այսու լուսով եղև աշխարհ, և զնա ոչ ծանեաւ։ Արդ՝ վասն այսորիկ եկեալ, զի ի միտ առցեն զլոյս նորա, և որդիք Աստուծոյ լիցին։ Եկն



420 Այդ պատճառով Հոգին աղավնակերպ իջավ, որպեսզի տեսնողներին ուսուցանի սուրբ մտքով Աստվածության մերձենալ և Հոգու բարերարության շնորհները ընդունել ու հաճո լինել Հորը։ Այդ բանի համար Աստուծո Որդին եկավ և կատարեց հայրերի ուխտը, նրանց որդի անվանելով։ Աստուծո Որդին այն բանի համար եկավ-մկրտվեց, որպեսզի հաստատի բոլորի մկրտությունը, ովքեր մկրտվելու են և որ այդ ավանդելով՝ ամենքի համար փրկություն հայտնի և հասկացվի ու ճանաչվի և այդպիսով բացահայտի ամենակեցույց ճշմարտության վարդապետությունը ու հայտնի դարձնի աշխարհին, ինչպես ասում է մարգարեն Տյառնորդու կողմից, թե «մոտեցեք ինձ և այս լսեցեք, առաջվանից ծածուկ չխոսեցի և ոչ էլ երկրի մի խավար տեղում, քանզի երբ Նա կար, ես այնտեղ էի և արդ՝ Տերը, Տերը և Նրա Հոգին առաքեցին ինձ»։ Տեսնո՞ւմ ես էականի միավորությունը, «երբ Նա կար, ես այնտեղ էի» ասում է հայտնելով միաբուն երրորդության զորությունը, որը համագործ է հաստատելու մեջ և միաբան՝ նորոգելու մեջ։

421 Արդ, երկինքը բացվեց և հայրն աղաղակեց, թե «դա է իմ սիրելի որդին» և Հոգին իջավ աղավնու նմանությամբ, որպեսզի հայտնի լինի Որդու գալստյան զորության միաբուն խորհուրդը։

422 Իսկ ի՞նչ է նշանակում, որ ասում է, թե «սկզբից խոսեց»։ եթե ոչ սուրբ մարգարեների գուշակությունները, որոնց մեջ ինքն իր մասին խոսեց և Հոր և Հոգու միաբանական խորհրդով եկավ-երևաց վերջին ժամանակներում։ «Որն սկզբից խոսքն էր և խոսքը Աստուծո մոտ էր և Աստված էր խոսքը։ Նա սկզբից Աստուծո մոտ էր, ամեն ինչ նրանով եղավ և եղածներից ոչինչ առանց նրան չեղավ։ Նրանով էր կյանքը և կյանքը մարդկանց լույսն է։ Լույսը խավարում լուսավորում էր և խավարը նրան չհաղթեց։ Մի այր առաքյալ ուղարկվեց Աստծուց, որի անունն էր Հովհաննես։ Սա եկավ վկայության, որպեսզի վկայի լույսի մասին և ամենքը նրա միջոցով հավատան»։

423 Արդ, ամեն ինչ լրանալուց և կատարվելուց հետո Աստուծո Որդու լույսը եկավ մեր մեջ լուսավորելու բոլոր մարդկանց, որոնք աշխարհ են գալու, և խավարը չկարողացավ հակառակվել, հաղթել։ Այս լույսով ստեղծվեց աշխարհը, որը սակայն չճանաչեց Նրան։ Արդ, այս պատճառով եկավ, որպեսզի նրանք ըմբռնեն նրա լույսը և Աստուծո որդիներ դառնան։ Եկավ հաստատելու օրենքը և

*հաստատել զօրէնս և զմարգարէս, և զօրինակսն անցուցեալ՝ և զճշմարտութիւնն հաստատեալ։*

*424 Եւ զի՞նչ իցէ որ ասէ՝ «Բանն». միթէ բարբա՞ռ լոկ իցէ, բախիւն լեզուի ընդ օդս, որ յառաջ քան զասել ասողին չէ յայտ, և յետոյ անհետ՝ չէ ի միջի։ Այլ վասն այսորիկ անուանեցաւ Բան, զի որպէս բան ի բերան ասողին՝ նոյնպէս և ամենայն հրամանք Հօր կամացն ելանեն ի բերանոյ Որդւոյ։ Զի գիտակ է Հօր և կատարիչ կամաց նորա, որպէս և ինքն ասէ. «Ոչ ոք գիտէ զՀայր՝ եթէ ոչ Որդի. որպէս և զՈրդի ոչ ոք գիտէ՝ եթէ ոչ Հայր»։ Եւ դարձեալ ասէ, եթէ «Եկի կատարել զկամս այնորիկ որ առաքեացն զիս»։ Եւ դարձեալ Յովհաննէս ասէ. «ԶԱստուած ոք երբէք ոչ ետես, բայց միածին Որդին որ ի ծոց Հօր՝ նա պատմեաց»։*

*425 Եւ ինքն առ Հայր ասէ, թէ «Եհաս ժամ, Հայր. փառաւոր արա զՈրդի քո». և եկեալ բարբառ յերկնից ասէ. «Փառաւոր արարի, և այլ փառաւորեցից»։ Իբրև զի ոչ թէ ի խնդրել ապաստան, և կամ կարօտ ինչ հայրաբուն փառացն, այլ զի լուիցեն արարածք և հաստատեսցին յՈրդին։ Նոյն օրինակ և Որդին ի միջի կացեալ՝ զՀայրն ցուցանէ աշխարհի և զՀոգին սուրբ. նոյնպէս և Հայրն աղաղակէ վասն Միածնին, թէ «Դա է Որդին իմ միածին, հաճեցուցիչ անձին իմոյ. եդից զոգի իմ ի վերայ դորա»։ Որ և յայտ լեալ յիջանելն ի վերայ և հանգչել, որպէս և ինքն ասէր զՀոգւոյն սրբոյ, թէ «Նա զիս փառաւոր առնէ»։*

*426 Եւ եկեալ կատարէ զկամս առաքչին իւրոյ. որ և աղաղակ իսկ եդեալ ասէր, եթէ «Որ հաւատայ յիս՝ հաւատայ յայն որ առաքեացն զիս. և որ տեսանէ զիս՝ զայն տեսանէ որ առաքեացն զիս»։ Եւ այսպէս զհայրական փառսն յինքեան ցուցանէ ամենեցուն յայտական վարդապետութեամբն։*

*427 Եւ զյառաջընթաց կարապետն հրեշտակ առաքեալ Հօր՝ գալ առաջի և աղաղակէ, թէ «Սա է Որդին Աստուծոյ, սա է գառն Աստուծոյ, սա է որ գայ բառնալ զմեղս աշխարհի»։ Եւ ելեալ ի վերայ լերինն բարձու, ի մեծութիւն զօրութեան Աստուածութեանն, որպէս յառաջատես տեսանող մարգարէն ասէ ի Տեառնէ. «Ի վերայ լերինն սրբոյ, ի լերինն բարձու՝ անդ ծառայեսցեն ինձ ամենայն ազգք երկրի»։ Եւ դարձեալ միւս տեսանողն գոչէ, թէ «Ե՛լ ի վերայ լերինդ բարձու, աւետարանիչդ Սիոնի. բարձրացո՛ զբարբառ քո, աւետարանիչդ Երուսաղեմի։ Բարձրացա՛յք, բարձրացուցէ՛ք զբարբառ ձեր,*



*մարգարեներին։ Օրինակներ ցույց տվեց և հաստատեց ճշմարտությունը։*

*424 Իսկ ի՞նչ է նշանակում «Խոսքը». մի՞թե լոկ մի ձայն է, լեզվի բախում օդի մեջ, որը նախքան ասողի արտասանելը հայտնի չէ և հետո անհետանում է։ Այն պատճառով «Խոսք» կոչվեց, քանզի ինչպես խոսքն է ասողի բերանում, նույնպես և Հոր կամքի բոլոր հրամանները Որդու բերանից են ելնում։ Նա գիտի Հորը և կատարում է նրա կամքը, որպես և ինքն ասում է՝ «Ոչ ոք չգիտի Հորը բացի Որդուց և Որդուն ոչ ոք չգիտի բացի Հորից»։ Դարձյալ ասում է, թե «եկա կատարելու ինձ առաքողի կամքը»։ Դարձյալ ասում է Հովհաննեսը. «Աստծուն ոչ ոք չի տեսել բացի միայն Միածին Որդուց, որ Հոր ծոցում է և պատմել է նրա մասին»։*

*425 Իսկ ինքն ասում է հորը, թե՝ «հասավ ժամը, հայր, փառավորիր քո Որդուն» և երկնքից ձայն լսվեց, որն ասում է. «Փառավորեցի և կրկին կփառավորեմ»։ Սա ոչ թե ապաստան խնդրելու կամ հոր հատուկ փառքից զուրկ լինելու համար է ասված, այլ նրա համար, որ արարածները լսեն և հաստատ լինեն Որդու մեջ։ Նույն ձևով և Որդին մեր մեջ գտնվելով աշխարհին ցույց է տալիս Հորը և սուրբ Հոգուն, ինչպես հայրը աղաղակում է Միածնի մասին, թե՝ «դա է իմ միածին Որդին, իմ անձի հաճեցուցիչը. իմ հոգին դնելու եմ նրա վրա»։ Սա հայտնվեց նրա վրա իջնելով և կանգ առնելով, որպես և ինքն ասում է սուրբ Հոգու մասին, թե՝ «Նա ինձ փառավորում է»։*

*426 Եկավ ու կատարեց իր առաքիչի կամքը։ Նա աղաղակելով ասում է, թե՝ «ով հավատա ինձ, կհավատա նրան, որ առաքեց ինձ, ով տեսնի ինձ, կտեսնի նրան, որ առաքեց ինձ»։ Այսպես ամենքին հայտնի վարդապետությամբ ցույց է տալիս հայրական փառքը իր անձի միջոցով։*

*427 Եվ հայրն առաջընթաց [Հովհաննես] կարապետին դեսպան ուղարկեց, որն առաջինը գալով աղաղակեց, թե՝ «սա է Աստուծո Որդին, սա է Աստուծո գառը, սա է, որ գալու է աշխարհի մեղքերը տանելու»։ Եվ ելավ բարձր լեռան վրա, դեպի Աստվածության զորության մեծությունը, ինչպես կանխատեսող մարգարեն ասում է Տիրոջ մասին՝ «Սուրբ լեռան վրա, բարձր լեռան վրա, այնտեղ երկրի բոլոր ազգերը ինձ են ծառայելու»։ Եվ դարձյալ մյուս տեսնող [մարգարեն] գոչում է, թե «Ելի՛ր բարձր լեռան վրա, ով Սիոնի ավետարանիչ, բարձրացրու քո ձայնը, ով Երուսաղեմի*

և մի՛ զանգիտէք. ասա՛ դու ցքաղաքդ Յուդայ. Ահաւասիկ Աստուած մեր, ահաւասիկ Տէր Տէր գայ զօրութեամբ իւրով, և բազուկն հզօր տէրութեամբ իւրով. ահաւասիկ վարձք հատուցման իւրոյ ընդ իւր, և գործք իւրաքանչիւր առաջի նորա։ Իբրև հովիւ հովուեսցէ զխաշինս իւր, և ի բազուկս իւր ժողովեսցէ զգառինս իւր, և ի գիրկս իւր ընկալցի զնոսա, և մխիթար լիցի յղեաց ծանրացելոց։ Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս ամենայն, կամ ո՞վ չափեաց զերկինս թզաւ իւրով, և զերկիրս ամենայն քլաւ իւրով։ Ո՞վ եդ զլերինս ի կշիռս, և բարձ զդաշտս կշռորդօք։ Ո՞վ գիտաց զմիտս Տեառն, կամ ո՞վ եղև նմա խորհրդակից»։

428 Եւ զի՞նչ իցէ զոր ասէն, թէ «Ե՛լ ի վերայ լերինդ բարձու, աւետարանիչդ Սիոնի». այլ իբրև զայն որ ասէն, թէ «Տէր ետ հրաման». զի տէրունի հրամանքն՝ ամենեցուն գեր ի վերոյ են, և ի բարձանց են հրամանք Բարձրելոյն։ Եւ զի՞նչ բարձր և ստուար քան զհրամանս Աստուածութեանն կայցէ. ի նոյն ինքն ելեալ Աստուածութեանն քարոզք, ի նոյն հրամանաց լեառն բարձրութեան, առանց զանգիտելոյ և երկիւղի ամենեցուն առաջի անվեհեր քարոզել։

429 ԽԸ. Արդ՝ եկն և մեծն Յովհաննէս, որդի քահանայապետին Զաքարիայ. անդէն եւ տաճարակիցն, և ոչ օտար ոք. անդէն ժառանգն և բնակիչն Սիոնի, նորուն վակասակիր քահանայութեանն, խոյրադիր պատուին պատմուճանացն սրբութեան, աւանդակիր պատուիրանացն. և ոչ եկամուտ ոք, այլ կամարածուն վայելչութեան, շառաւեղն Մովսիսի և զաւակն Ահարոնի և աւետարանիչն Սիոնի, օծութեանն անկու, առեալ զպատիւ նախնեացն քահանայութեանն։ Եւ բովանդակեալ զմարգարէութիւն մարգարէիցն՝ ելեալ յանապատ ի վերայ աստուածական հրամանացն լեռնացելոց, բարձրացուցեալ զբարբառ իւր աւետարանիչն Երուսաղեմի, բարձրացեալ բարձրացուցանէր զբարբառ իւր, զի ձայն բարբառոյ էր նա յանապատի, և ասէ. «Ահա Աստուած մեր, ահա Տէր», և նա նոյն թագաւոր Իսրայելի։

430 Արդ՝ ամենայն շնորհք աւանդութեան մարգարէութեանն Իսրայելական ազգին, որ կրէր աւանդապահ օրհնութեանն աւետեացն և օծութեանն, ի ձեռն Ղևեայ տոհմին էր յանձնեալ, քահանայութիւնն՝ թագաւորութեամբն հանդերձ։

431 Քանզի ի ժամանակին, իբրև կոչեաց Տէր զՄովսէս ի մէջ հրոյն և ամպոյն ի գլուխ Սինէական լերինն՝ և տեսիլ փառաց Տեառն



ավետարանիչ։ Բարձրացեք, բարձրացրեք ձեր ձայնը և մի վախեցեք, Հուդայի քաղաքներին ասացեք։ Ահավասիկ մեր Աստվածը, ահավասիկ Տերը, Տերը գալիս է իր զորությամբ և Նրա բազուկը հզոր է իր տերությամբ, ահավասիկ իր հատուցման վարձքը իր հետ է և իր յուրաքանչյուր գործը իր առջև է։ Իբրև հովիվ հովվելու է իր խաշինքը և իր բազուկների մեջ հավաքելու է իր գառներին, իր գիրկն է ընդունելու նրանց և մխիթարիչ է լինելու ծանր հղիներին։ Ո՞վ է չափել իր ափով բոլոր ջրերը կամ ո՞վ է չափել երկինքը իր թիզով և երկիրը իր քիլով։ Ով դրեց լեռները կշեռքի վրա և դաշտերը հաշվեց կշիռով։ Ո՞վ գիտեցավ Տիրոջ միտքը կամ ո՞վ եղավ Նրան խորհրդակից»։

428 Իսկ ի՞նչ է այն, որ ասում է, թե՝ «ելիր բարձր լեռան վրա, ով Սիոնի ավետարանիչ», այլ ինչպես այն, որ ասում է, թե՝ «Տերը տվեց հրաման», քանզի տերունի հրամանները ամեն ինչից վեր են և բարձրյալի հրամանները վերևից են։ Իսկ ի՞նչ է ավելի բարձր և հաստատուն, քան Աստվածության հրամանը։ Աստվածության քարոզիչները ելան նույն հրամանների բարձր լեռը՝ բոլորի առջև անվեհեր քարոզելու առանց վախի կամ երկյուղի։

429 ԽԸ. Արդ, եկավ և մեծն Հովհաննեսը, Զաքարիա քահանայապետի որդին։ Ապա եկավ տաճարակիցը, որը օտար մեկը չէր։ Այստեղ էր Սիոնի ժառանգորդը և բնակիչը, որը նույն վակասակիր քահանայությունից է, խույր կրողը ի պատիվ պատմուճանի սրբության և պատվիրանների ավանդակիրը։ Նա օտարամուտ մեկը չէր, այլ վայելուչ գոտի կապողը, Մովսեսի շառավիղը, Ահարոնի զավակը և Սիոնի ավետարանիչը, օծության արժանին, որն առել էր նախնիների քահանայության պատիվը։ Եվ կատարելով մարգարեների գուշակությունը, ելավ անապատ, ըստ լեռնականներին տրված աստվածային հրամանների, Երուսաղեմի ավետարանիչը բարձրացավ և բարձրացրեց ձայնը, քանզի սա աղաղակի ձայնն էր անապատում և ասում էր. «Ահա մեր Աստվածը և Տերը» և նույնը Իսրայելի թագավոր է։

430 Արդ, իսրայելական ազգի ավանդության մարգարեության ամբողջ շնորհը, որ կրում էր ավետիսների օրհնության և օծման ավանդապահը, ինչպես նաև քահանայությունը թագավորությամբ հանդերձ [նրան] էր հանձնված Ղևիի տոհմի միջոցով։

431 Քանզի այն ժամանակ, երբ Տերը կանչեց Մովսեսին հրի և ամպի միջից, Սինա (Սինեական) լեռան գլխին Տիրոջ փառքի

իբրև զհուր վառեալ էր. իբրև առնոյր զպատուիրանս օրինացն Մովսէս ի ձեռացն Աստուծոյ, պարգևախնդիր տեսանելով զԱստուած ի պատասխանւոյն նմա, զի ասէ «Գթած եմ և ողորմած»՝ անդ առնոյր զաւանդութիւն իշխանութեան՝ քահանայութեան, թագաւորութեան և մարգարէութեան՝ ի ձեռաց Աստուծոյ։ Անդ ետ նմա զօրինակ օծութեանն Քրիստոսի, զի նախ առակքն լինիցին, և ապա եկեսցէ ճշմարտութիւնն, որ էն իսկ. անդ տայր նմա առնել զեղջիւրն օծութեան և զխնկանոց խնկոյն։

432 Որ եղջիւրն զօրինակ օծութեանն Քրիստոսի, և խնկանոցն զօրինակ սուրբ կուսին Մարիամու ունէր։ Զի որպէս նայն լին էր հոտով սրբութեամբ՝ նոյնպէս և կոյսն Հոգւով սրբով և զօրութեամբ Բարձրելոյն։ Իսկ եղջիւր ձիթոյն ունէր զօրինակ օծութեանն Քրիստոսի, զի որ միանգամ յօրինակ նորա օծանէին՝ անտի օծան։ Ուստի և օծանէրն իսկ Ահարովն ի քահանայութիւն տեառն, և առնոյր զքահանայութեան թագն՝ օծանել ըստ նմին օրինակի, դնել նոցա արտախուրակս, և պաշտել ի սրբութիւն Տեառն, և կարգել զհանապազորդ հացն ի սեղանն, որ բերէր զօրինակ մարմնոյ Աստուածորդւոյն։

433 Անդ արար Մովսէս զարծաթի եղջիւրն օծութեան իւրոյ, ուստի քահանայքն և մարգարէքն և թագաւորքն օծանէին։ Անդուստ գայր կարգեալ օծութիւնն մի ըստ միոջէ ըստ հրամանի իշխանութեան պատուիրանին, որ կարգեալ գայր առաջնորդութեամբ։ Յաբրահամեան զաւակին պաշտէր խորհուրդն, զի աւանդապահքն տային ցմիմեանս մինչև ցՅովհաննէս՝ քահանայ, մարգարէ և մկրտիչ. և ի նա հասեալ՝ իբրև ի ժառանգ մնացեալ։ Զի ի նա հասեալ էր յառաջին նախնեացն՝ թագաւորացն, մարգարէիցն և յօծելոց քահանայիցն՝ իբրև յաւանդապահ. և նա ետ զքահանայութիւնն, զօծութիւնն, զմարգարէութիւնն և զթագաւորութիւնն ցՏէր մեր Յիսուս Քրիստոս։

434 Եւ կատարեցաւ մարգարէութիւնն Յակովբայ՝ յասել առ որդիս ազգի իւրոյ, թէ «Մի՛ պակասեսցէ պետութիւն իշխանութեանն, մինչև եկեսցէ այն՝ որոյ իւր է թագաւորութիւնն. քանզի նա է յոյս հեթանոսաց»։

435 Արդ՝ առաջին հարքն որ եղեն օրինակ նորա, յորս Աստուծոյ կերպարանքն նկարեալ կային. զի նոցա ամենայն արարածք հնազանդէին, քանզի զկերպարանս Արարչին ի նոսա տեսանէին։ Իսկ



տեսիլքը որպես հուր վառվում էր, և երբ Մովսես Աստուծո ձեռքից առավ օրենքների պատվիրանը ու տեսավ, որ Աստված բարյացակամ է նրան տված իր պատասխանների նկատմամբ, քանզի ասում է՝ «Գթած եմ և ողորմած», ապա նա առավ իշխանության ավանդությունը՝ քահանայությունը, թագավորությունը և մարգարեությունը Աստուծո ձեռքից։ Նա նրան մի օրինակ տվեց Քրիստոսի օծման, որպեսզի նախ առակներն իրականանան և ապա գա ճշմարտությունը՝ Նա որ է։ Ապա նա հրամայեց անել օծման եղջյուրը և խունկի բուրվառը։

432 Եղջյուրը օրինակն է Քրիստոսի օծման և խնկանոցը՝ օրինակը սուրբ կույս Մարիամի։ Քանզի ինչպես նա լի էր սրբության հոտով, նույնպես և կույսը՝ սուրբ Հոգով և Բարձրյալի զորությամբ։ Իսկ ձեթի եղջյուրը նմանությունն ուներ Քրիստոսի օծման, քանզի ովքեր մեկ անգամ նրա նման օծվել էին, նրանից էին օծվել։ Ուստի և Ահարոնն էլ օծվեց Տիրոջ քահանայության, առավ քահանայության թագը, որ նույն ձևով ինքն էլ օծի, խույրի փաթթոց (արտախուրակ) դնի, որպեսզի Տիրոջ սրբությունը պաշտեն, սեղանին հանապազօր հաց կարգեն, որը Աստվածության մարմնի օրինակն է։

433 Այդտեղ Մովսես իր օծման արծաթ եղջյուրը պատրաստեց, որից օծվում էին քահանաները, մարգարեները և թագավորները։ Ապա կարգով մեկ առ մեկ, ըստ իշխանության պատվիրանի հրամանի, հերթով գալիս էր ըստ ավագության։ Խորհուրդը պահպանված էր Աբրահամի սերնդի մեջ, քանզի նրանք ավանդությունը պահելով իրար փոխանցեցին մինչև Հովհաննեսը՝ քահանան, մարգարեն և մկրտիչը։ Նրան հասնելով՝ իբրև ժառանգի նրա մոտ մնաց։ Նրան էր հասել առաջին նախնիներից, թագավորներից, մարգարեներից և օծյալ քահանաներից, որպես ավանդապահի։ Իսկ նա տվեց քահանայությունը, օծությունը, մարգարեությունը և թագավորությունը մեր Տեր Հիսուս Քրիստոսին։

434 Եվ կատարվեց Հակոբի մարգարեությունը ասելով իր ազգի որդիներին, թե «Մի պակասեցրեք իշխանության տիրապետումը, մինչև որ գա նա, որինն է թագավորությունը, քանզի նա է հեթանոսների հույսը»։

435 Արդ, առաջին հայրերը նրա օրինակով էին, որոնց մեջ Աստուծո կերպարանքն էր նկարված, և ամենայն արարածները հնազանդվում էին նրանց, քանզի Արարչի կերպարանքը նրանց

զի՞րդ հնազանդէին անխօս անմռունչ և անշշունչ արարածքն՝ մահկանացու մարդկան, եթէ ոչ զնշանս Աստուծոյ ի նոսա տեսանէին և զկերպարանս Արարչին։ Եւ այսպէս մի ըստ միոջէ վարեալ եկեալ աւանդութիւնքն մինչև ցՅովհաննէս, և Յովհաննէս ետ զաւանդ պահեստին տեառն իւրում։

436 խԹ. Եւ այնուհետև Տէր ինքնին ի միջի կայ, և Յովհաննէս վկայէ, թէ «Չեմ ես Քրիստոսն, այլ առաքեալ եմ առաջի նորա։ Այլ որ հարսնն է՝ նա է փեսայ, և որ բարեկամն է փեսային՝ կայ առ նմա և հնազանդի նմա. նա և ուրախ առնի յուրախութեան նորա, զի զձայն լսէ զփեսային։ Իմ ուրախութիւնս այս լցեալ և կատարեալ է, և արդ՝ նմա պարտ է աճել, և ինձ մեղմանալ։ Որ ի վերուստն գայ՝ ի վեր է քան զամենայն, որ յերկրէ է՝ յերկրէ աստի խօսի. որ յերկնիցն գայ՝ զոր ինչ լուաւ և ետես՝ վկայէ, և զվկայութիւն նորա ոք ոչ ընդունի. իսկ որ ընդունի զվկայութիւն նորա՝ ծրարեաց և կնքեաց, զի արդարև ճշմարիտ Աստուած է։ Զի որ յԱստուծոյ առաքեցաւ՝ նա զպատգամս Աստուծոյ խօսի. զի ոչ եթէ չափով տուաւ նմա հոգին. Հայր սիրէ զՈրդի, և զամենայն ինչ ետ ի ձեռս նորա. որ հաւատայ յՈրդի՝ ընդունի զկեանս յաւիտենից, և որ թերահաւատէ յՈրդւոյ՝ ոչ տեսանէ զկեանս յաւիտենից. այլ բարկութիւն Աստուծոյ ի վերայ նորա բնակեալ է»։

437 Ահա եկեալ հրեշտակն Յովհաննէս՝ պատրաստել ճանապարհ տեառն իւրում։ Զի որպէս ծննդեանն Գաբրիէլ եղև կարապետ՝ նոյնպէս յայտնութեանն սա եղև, և առաջի եկեալ ասէ. «Առաքեալ եմ առաջի նորա. այլ որ հարսնն է՝ նա է փեսայ»։

438 Իսկ ո՞ իցէ հարսն, կամ ո՞ փեսայն, եթէ ոչ այն՝ զոր մարգարէն ասէ, թէ «Այսպէս ասէ Տէր. խօսեցայց զքեզ ինձ յաւիտեան, և խօսեցայց զքեզ ինձ արդարութեամբ և իրաւամբք և ողորմութեամբ և գթութեամբ. և ծանիցես, զի ես եմ Տէր Աստուած քո. և լքցես դու զհոմանիսն քո, զփայտեղէնս և զքարեղէնս, և ասասցես, եթէ երթայց դարձայց առ այրն իմ առաջին»։

439 Քանզի թողին մարդիկ զպաշտօն Արարչին իւրեանց, և ամենայն փայտի և քարի հնազանդեցան. և թողին զայրն առաջին որ յոչնչէն արար զնոսա, և շնացան յամենայն ինչ տարրեղէն որ առ ական դիպեցան, և պոռնկեցան զհետ սնոտի պաշտամանցն արա-



վրա էին տեսնում, իսկ ինչպե՞ս անխոս, անմռունչ, անշշունչ արարածները կհնազանդվեին մահկանացու մարդկանց, եթե նրանց վրա չտեսնեին Աստուծո նշանները և Արարչի կերպարանքը։ Այսպես, ավանդությունները մեկից մյուսին անցնելով հասան մինչև Հովհաննեսը, և Հովհաննեսը պահեստի ավանդը տվեց իր տիրոջը։

436 խԹ. Այնուհետև տերը ինքը առաջ եկավ և Հովհաննեսը վկայեց, թե «Ես չեմ Քրիստոսը, այլ առաքված եմ նրա առջևից։ Ով հարսն ունի, նա է փեսան, իսկ նա, որ փեսայի բարեկամն է, նրա հետ կանգնում է և նրան է հնազանդվում. նա և ուրախանում է նրա ուրախությանը, քանզի լսում է փեսայի ձայնը։ Իմ այս ուրախությունը լիացած և կատարյալ է և արդ նա պետք է աճի, իսկ ես պետք է նվազեմ։ Նա, որ ի վերուստ է գալիս, վեր է ամենքից։ Ով երկրից է, երկրից է խոսում, և ով երկնքից է գալիս, ինչ լսել ու տեսել է, վկայում է, ու նրա վկայությունը ոչ ոք չի ընդունում։ Իսկ ով ընդունի նրա վկայությունը, ծրարած ու կնքած կլինի, թե արդարև [նա] Աստված ճշմարիտ է։ Քանզի նա, որ Աստծուց առաքվեց, Աստուծո պատգամներն է խոսում, քանի որ հոգին չափով չի տրվել նրան։ Հայրը սիրում է Որդուն, և ամեն ինչ տվել է նրա ձեռքը։ Ով հավատա Որդուն, հավիտենական կյանք կընդունի, իսկ ով թերահավատ լինի Որդու [նկատմամբ], չի տեսնի հավիտենական կյանքը, այլ Աստուծո բարկությունը նրա վրա կմնա»։

437 Ահա դեսպան (հրեշտակ) Հովհաննեսը եկավ պատրաստելու իր տիրոջ ճանապարհը։ Քանզի ինչպես նրա ծննդյան ժամանակ Գաբրիելը դարձավ սուրհանդակ (կարապետ), նույնպես և հայտնության ժամանակ սա եղավ (դեսպանը) և առաջ գալով ասաց. «Առաքված եմ նրա առջևից, բայց նա, ով հարսն ունի, նա է փեսան»։

438 Իսկ ո՞վ է հարսը կամ ո՞վ է փեսան, եթե ոչ նա, որի մասին մարգարեն ասում է, թե «այսպես ասում է Տերը, քեզ հավիտյան ինձ պիտի նշանեմ և քեզ արդարությամբ, իրավունքով, ողորմությամբ ու գթությամբ ինձ պիտի նշանեմ, և կճանաչես, թե ես եմ քո Աստվածը, և դու կլքես քո փայտեղեն ու քարեղեն հոմանիներին և կասես, թե երթամ-դառնամ իմ առաջին ամուսնուն»։

439 Քանզի մարդիկ թողեցին իրենց Արարչի պաշտամունքը և ամեն փայտի ու քարի հնազանդվեցին։ Նրանք թողեցին առաջին «մարդուն»*, որը ոչնչից ստեղծել էր նրանց, շնացան ամեն նյութականի հետ, որ նրանց աչքին ընկավ, և պոռնկացան արարած-



16—1461

րածոց։ Վասն այսորիկ էջ Աստուածորդին քակել յերկրէ զընդունայնութիւն պոռնկութեան շնութեան քարեղէն հոմանեացն, դարձուցանել յերկրպագութիւն Հօր, և տալ անուանել զայրն իւր՝ այր առաջին։ Եւ առաջին՝ վասն նախանական ինքնութեանն ասէ, որպէս մեկնէ Պաւղոս առաքեալ առ հեթանոսս և ասէ. «Հաստատեցի խօսեցայ զքեզ հարսնութեան իբրև զկոյս մի սուրբ՝ յանդիման կացուցանել Քրիստոսի». և մարգարէն ասէ. «Կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ», զամենայն տիեզերս իբրև զմի հարսն դարձուցեալ առ մի փեսայ. սոյնպէս նշանակէ այրն՝ որ յերկնից եկն Որդին Աստուծոյ. որպէս Յովհաննէս ասէ. «Որ հարսնն է՝ նա է փեսայ. և մեք, բարեկամք և ծառայք՝ ըստ հրամանացն ընթանամք. կամք առ նմա և հնազանդիմք նմա, և ուրախ առնիմք յուրախութեան նորա, և զձայնն լսեմք զփեսային»։

440 Այս այն է զոր մարգարէն ասէ. «Լո՛ւր, դուստր, և տե՛ս, խոնարհեցո՛ զունկն քո, մոռա՛ զժողովուրդ քո և զտուն հօր քոյ. զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քում. զի սա ինքն է Տէր քո. երկիր պագցես սմա»։ Այս այն է որ ասէն. «Եղբօրորդեա՛կ իմ, յարիցես զարթիցես, մերձաւո՛ր իմ, սիրելի՛ իմ. բացցես ինձ զդուրս տանն, և համբուրեսցես զիս ի համբուրից բերանոյ քոյ. զի առատ են ստինք քո քան զգինի, և հոտ իւղոց քոց քան զամենայն խունկս անուշութեան։ Իւղ արկեալ է անուն քո, վասն այսորիկ օրիորդք սիրեցին զքեզ. զհետ անուշութեան իւղոց քոց ընթասցուք մեք. տարաւ զիս արքայ ի սենեակ իւր»։

, 441 Եւ ո՞վ իցէ հարսն՝ եթէ ոչ եկեղեցի հեթանոսաց, կամ ո՞վ իցէ փեսայն՝ եթէ ոչ Յիսուս Քրիստոս Որդին Աստուծոյ, որ էջ յերկնից և նուաճեաց զամենայն յերկրպագութիւն Հօր։ Եւ զի՞նչ իցեն երկու առատ ստինքն՝ եթէ ոչ կտակարանքն Աստուծոյ, որ արբուցանեն զամենայն տգէտս հոգևոր կաթամբն գիտութեան։ Եւ զի՞նչ իցէ զոր ասէն. «Հոտ իւղոց քան քան զամենայն խունկս անուշութեան». և թէ՝ «Իւղ արկեալ է անուն քո».—զօծութիւնն Քրիստոսի և զանուն յայտ առնէ. և համբուրելն՝ սիրոյ նշանակ է, զի եկեղեցի՝ Քրիստոսի, և Քրիստոս՝ Որդի Աստուծոյ։



ների սնոտի պաշտամունքից հետո։ Այդ պատճառով Աստվածորդին իջավ երկրից վերացնելու քարեղեն հոմանիների հետ պոռնկության, շնության ունայնությունը՝ [մարդկանց] դարձնելու Հոր երկրպագության և իր ամուսնուն անվանելու առաջին այր։ Ասում է առաջին [այր կոչվեց] նախնական ինքնության (բնության) համար, ինչպես Պողոս առաքյալը հեթանոսներին բացատրում է ասելով. «Ես հաստատեցի և հարսնության նշանեցի քեզ, որպես մի սուրբ կույս Քրիստոսի դիմաց կանգնեցնելու»։ Եվ մարգարեն ասում է. «Դշխոն կանգնելու է քո աջ կողմում» ամբողջ տիեզերքը որպես մեկ հարս բերելով մեկ փեսայի մոտ։ Այսպես նա նշանակում է մարդուն, որը եկավ երկնքից՝ Որդին Աստուծո. ինչպես Հովհաննեսն է ասում. «Ում որ է հարսը, նա է փեսան և մենք՝ բարեկամներ ու ծառաներ, ըստ հրամանների ընթանում ենք։ Նրանով կանք և նրանք ենք հնազանդվում, ուրախանում ենք նրա ուրախությամբ և լսում ենք փեսայի ձայնը»։

440 Սա նա է, որին մարգարեն հիշում է. «Լսիր դուստր և տես, խոնարհեցու քո ականջը, մոռացիր քո ժողովրդին և քո հոր տունը, քանզի թագավորը ցանկացավ քո գեղեցկությանը։ Նա է քո Տերը և նրան ես երկրպագելու»։ Սա նա է, որ ասում է. «Ով եղբորորդի (կամ հորեղբորորդի) իմ, դու վեր կկենաս, կզարթնես, իմ մերձավոր, իմ սիրելի, կբացես ինձ տան դռները և ինձ կհամբուրես քո բերնի համբույրներով, քանզի քո ստինքները գինուց առատ են և քո յուղերի հոտը [գերազանց է] քան ամեն տեսակ անուշ խունկերը։ Քո անունը դուրս թափված յուղ է, դրա համար էլ օրիորդները սիրեցին քեզ։ Մենք ընթանալու ենք քո յուղերի անուշության ետևից։ Արքան տարավ ինձ իր սենյակը»։

441 Եվ ո՞վ է հարսը, եթե ոչ հեթանոսների եկեղեցին, կամ ով է փեսան, եթե ոչ Աստուծո Որդի Հիսուս Քրիստոսը, որն իջավ երկնքից և նվաճեց ամենքին՝ երկրպագելու Հորը։ Եվ ի՞նչ են երկու առատ ստինքները, եթե ոչ Աստուծո Կտակարանները, որոնք բոլոր տգետներին արբեցնելու են գիտության հոգևոր կաթով։ Իսկ ինչ է այն, որ ասում է, թե «քո յուղերի հոտը [գերազանց է] քան ամեն տեսակ անուշ խունկերը և թե «քո անունը դուրս թափված յուղ է». դա ի հայտ է բերում Քրիստոսի օծությունը և նրա անունը։ Համբուրելը սիրո նշանակ է, քանզի եկեղեցին քրիստոնեության ˙, իսկ Քրիստոսը Աստուծո Որդին։

442 Արդ՝ «նմա աճել և ինձ մեղմանալ», այսինքն զժամանակն ասէ մեղմանալոյ. զի մկրտութիւնն զոր տայր նա ժողովրդեանն՝ ապաշխարութեան մկրտութիւն էր։ «Որ, ասէ, ի վերուստ եկն՝ ի վերոյ է քան զամենայն», յայտ արարեալ զգալն ի ծոցոյ Հօր առ մեզ։ Իսկ ես, ասէ, յերկրէ խօսեցայ, յերկնից առեալ զգիտութիւն. իսկ որ յերկնիցն եկն՝ նա զՀօրն խօսի և զՀօրն գործ գործէ։ Որպէս և Տէր ինքն ասէր առ Հրեայսն, թէ «Ես ի Հայր, և Հայր յիս. զինչ տեսանեմ թէ Հայր գործէ՝ զնոյն և ես գործեմ. զի վասն այսորիկ իսկ եկի, զի արարից զկամս Հօր իմոյ, և կատարեցից զգործս նորա»։

443 Ասաց և վասն Հրէիցն, թէ զվկայութիւն նորա դուք ոչ ընդունիք։ Իսկ որ ընդունի զվկայութիւն նորա՝ ծրարեաց և կնքեաց, զի անկորուստ լիցի արդարութիւնն. և երդմամբ՝ զի արդարև ճշմարիտ Աստուած է. զի անշուշտ և անշարժ և անկորուստ լիցի արդարութիւն հաւատոցն. և երդումն՝ կնիք, որպէս առ Աբրահամն։ Զի որ ի ծոցոյ Հօր եկն՝ նա է տեղեակ խորհրդոց ծնողին իւրոյ։ Զի ոչ եթէ իբրև կարօտ ոք ա՛ռ նա զշնորհս Հոգւոյն, այլ ինքն միակամ, միաշունչ, միախորհ ընդ Հօր և ընդ Հոգւոյն. զի ինքն է բաշխիչ շնորհաց Հոգւոյն սրբոյ։ Զի Հայր սիրէ զՈրդի իւր, և ամենայն հաստատեալքն Հօր՝ Որդւով. և որ Հօրն՝ նոյն և Որդւոյ. և որպէս Հայր՝ նոյնպէս և Որդի. և ամենայն շնորհք Հոգւոյն յՈրդւոյ բաշխին։ Եւ «Որ հաւատայ յՈրդի՝ ունի զկեանսն յաւիտենականս. որ թերահաւատէ յՈրդւոյ՝ ոչ տեսանէ զկեանսն յաւիտենից»։

444 Վկայէ Յովհաննէս, ասէ. «Զորմէ ասէին, սա է միածին Որդին Աստուծոյ. ես տեսի և վկայեմ, թէ սա է որ բառնայ զմեղս աշխարհի»։ Սա է ժառանգ այգւոյն, և Տէր գայ զօրութեամբ, և բազուկն հզօր տէրութեամբ իւրով. զի բազուկ հզօր Հօր սա՛ է, և զտէրութիւն իւր առ իւր ունի, թէպէտ և կամօք երևեցաւ խոնարհութեամբ։

445 «Ահաւասիկ, ասէ, վարձք հատուցման իւրոյ ընդ իւր». և ամենայնի նա է հատուցանող «և գործք իւրաքանչիւր առաջի նորա»։ Ըստ այնմ, թէ «Ի միտ առնու զամենայն գործս նոցա»։ Իբրև հովիւ մի՝հովուեսցէ զխաշինս իւր»։ Որ և ի մէջ իսկ անցեալ կենարարն ասէ, թէ «Ես եմ հովիւն քաջ. հովիւ քաջ զանձն իւր դնէ ի վե-



442 Արդ, «նրան պետք է աճել, իսկ ինձ նվազել» ասելով, ակնարկում է մեղմանալու ժամանակը, քանզի ժողովրդին տված նրա մկրտությունը, ապաշխարության մկրտություն էր։ «Նա, որ, ասաց նա, ի վերուստ եկավ, վեր է, քան բոլորը», ակնարկելով Հոր ծոցից նրա գալը մեզ մոտ։ Ես, ասում է, երկրից խոսեցի, երկնքից առնելով գիտությունը, իսկ նա, որ երկնքից եկավ, Հոր [խոսքն] է խոսում և Հոր գործերն է կատարում։ Ինչպես ինքը Տերը ասել է հրեաներին, թե «ես Հոր մեջ եմ և Հայրն իմ մեջ». ինչ տեսնում եմ, որ Հայրը գործում է, նույնը ես եմ գործում, քանզի հենց դրա համար էլ եկա, որպեսզի իրագործեմ իմ Հոր կամքը և կատարեմ նրա գործերը»։

443 Ասել է նաև հրեաների մասին, թե նրա վկայությունը չեք ընդունում, իսկ ով ընդունել է նրա վկայությունը, ծրարել ու կնքել է, թե անկորուստ է արդարությունը և երդմամբ հաստատել է, թե արդարև ճշմարիտ է Աստված, որպեսզի հավատքի արդարությունը լինի հաստատ, անշարժ և անկորուստ։ Երդումը՝ կնիքն է, ինչպես Աբրահամի հետ եղավ։ Նա, որ Հոր ծոցից եկավ, տեղյակ է իր ծնողի խորհրդին։ Քանզի նրա մոտ Հոգու շնորհների պակաս չկա, այլ ինքը միակամ, միաշունչ և միախորհ է Հոր և Հոգու հետ, քանի որ ինքն է Սուրբ Հոգու շնորհների բաշխիչը։ Հայրը սիրում է որդուն և ամեն ինչ, որ Հոր կողմից է հաստատված և Որդու միջոցով է [կատարված]։ Ինչ որ Հորն է, նույնպես և Որդունն է, ինչպես Հայրն է, նույնպես և Որդին է և Հոգու բոլոր շնորհները Որդու կողմից են բաշխվում։ «Ով հավատա Որդուն, հավիտենական կյանք կունենա, իսկ ով չհավատա Որդուն, չի տեսնի հավիտենական կյանքը»։

444 Հովհաննեսը վկայում է ասելով. «Այն, որի մասին ասում էին, թե սա է Աստուծո միածին որդին, ես տեսա և վկայում եմ, թե նա է, որ բառնալու է աշխարհի մեղքերը»։ Սա է այգու ժառանգորդը և Տերը գալու է զորությամբ և բազուկը հզոր է իր տերությամբ։ Քանզի սա է հզոր Հոր բազուկը և իր տերությունը պահպանում է, թեև կամավոր կերպով խոնարհ երևաց։

445 «Ահավասիկ, ասում է [մարգարեն], իր հատուցման վարձքը իր հետ է»։ Բոլորին հատուցողը նա է «և յուրաքանչյուրի գործերը նրա առջև են»։ Նմանապես, թե «ի միտ է առնում նրանց բոլոր գործերը»։ «Հովվի նման հովվելու է իր խաշինքը»։ Որպես կենարար մեր մեջ գալով, նա ասում է. «Ես եմ քաջ հովիվը, քաջ

րայ խաշին իւրոյ», Եւ ի բազուկս իւր ժողովեսցէ զգառինս իւր, և ի գիրկս իւր ընկալցի զնոսա»։

446 Որ և կենարարն եկեալ յայտ առնէր, յառնուլն ի ժողովելն զմանկտին ի վերայ աստուածական բազկացն. և օրինակեալ ամենեցուն, «Եթէ ոչ դարձջիք և լինիջիք իբրև զմանուկս զայս՝ ոչ կարէք մտանել յարքայութիւնն Աստուծոյ»։ Նորոգել հրամայէ, և մերկանալ զհին մարդկութիւնս ի ձեռն մկրտութեան աւազանին։ Զի թէպէտ և կարի ոք թմբրեալ ծանրացեալ իցէ՝ ծանրակիր մեղօքըն խստութեան յղացեալ, որպէս ասէն. «Ահաւասիկ երկնեաց զանօրէնութիւն, յղացաւ զցաւս և ծնաւ զանիրաւութիւն». սակայն բացեալ զդրունս ապաշխարութեան՝ ի մէջ մեր եկեալ կայ կենարարն, աղաղակէ և ասէ. «Եկա՛յք առ իս, ամենայն վաստակեալք և աշխատեալք և ոյք ունիք բեռինս ծանունս, և ես հանգուցանեմ զձեզ. և առէ՛ք զլուծ իմ ի ձեզ. և ուսարո՛ւք յինէն, զի հեզ եմ, հանդարտ և խոնարհ սրտիւ, և գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ իմ քաղցր է, և բեռն իմ փոքրոգի»։

447 Իսկ եթէ հարցցէ ոք, թէ ո՛վ իցէ որ այսպէս մխիթար լինիցի յղեացն ծանրացելոց՝ լուիցէ Եսայեայ մարգարէութեանն՝ ո՛վ այն իցէ. ասէ. «Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս ամենայն, կամ ո՞վ չափեաց զերկինս թզաւ իւրով և զերկիր ամենայն քլաւ իւրով. ո՞վ եդ զլերինս ի կշիռս, և բարձ զդաշտս կշռորդօք. ո՞վ գիտաց զմիտս Տեառն, կամ ո՞վ եղև նմա խորհրդակից»։ Որ ի հօրէ ուսաւ զվճիռ դատաստանին՝ նա եկեալ մարդ լեալ քարոզէ աշխարհի, խառնեալ սիրով իւրով զամենեսեան յԱստուածութիւնն։ Եւ այսուհետև եկեալ լոյսն, ի մէջ անցեալ՝ «լուսաւոր առնել զամենայն մարդ որ գալոց է յաշխարհ»՝ քարոզէր և ասէր. «Ապաշխարեցէ՛ք, զի մերձեալ է արքայութիւնն Աստուծոյ». կատարեալ են ժամանակք. հաւատացէ՛ք յաւետարանն։

448 Ծ. Արդ՝ իբրև անցանէր առ ծովեզերբն՝ տեսանէ զՊետրոս և զԱնդրէաս և զՅակովբոս և զՅովհաննէս, և կոչեաց զնոսա ի ձկնորսութենէ անտի. որ անդէն վաղվաղակի թողուն զհայրն իւրեանց նաւաւն հանդերձ և երթան զհետ նորա։ Եւ զբազումս յայլոց ի պէսպէս զբօսանաց կոչեալ՝ աշակերտս երկոտասանս և առաքեալս անուանեաց. զորս ուսուցանէ ազատանալ յամենայն զբօ-



հովիվը իր անձը դրեց իր հոտի համար» և «իր բազուկների մեջ հավաքելու է իր գառներին և իր գիրկն է ընդունելու»։

446 Նա՝ կենարարը եկավ-հայտնեց մանուկներին ժողովելով իր աստվածային բազուկների մեջ՝ «Եթե դարձի չգաք և չդառնաք այս մանուկների նման, չեք կարող մտնել Աստուծո արքայությունը»։ Հրամայում է նորոգել մեր անձերը և ազատվել հին մարդկությունից, մկրտության ավազանի միջոցով։ Քանզի թեպետ մարդ կարող է շատ հոգնած, ծանրացած լինել, տանելով մեղքերի խիստ դժվարին բեռը, ինչպես ասված է «Ահավասիկ երկնեց անօրենությունը, հղացավ ցավերը և ծնեց անիրավությունը», սակայն ապաշխարության դռները բացելով կենարարը եկավ-մնաց մեր մեջ, աղաղակեց ու ասաց. «Եկեք ինձ մոտ բոլոր հոգնավաստակներ և խոնջացածներ և որոնք ունեն ծանր բեռներ և ես կհանգստացնեմ ձեզ, ձեզ վերցրեք իմ լուծը և սովորեցեք ինձանից, քանզի հեզ եմ, հանդարտ և սրտով խոնարհ և ձեր անձերին հանգիստ կգտնեք, քանի որ իմ լուծը քաղցր է և իմ բեռը թեթև»։

447 Իսկ եթե որևէ մեկը հարցնի, թե ով է նա, պետք է այսպես մխիթարիչ լինի հոգնած ծանրացածներին, ով էլ լինի, թող լսի Եսայիի մարգարեությունը, որն ասում է՝ «Ո՞վ չափեց իր ափով ամբողջ ջրերը, կամ ո՞վ չափեց երկինքը իր թիզով և երկիրը իր քիլով, ո՞վ չափեց լեռները կշռի մեջ և դաշտերը կշռորդով։ Ո՞վ գիտեցավ Տիրոջ մտքերը, կամ ո՞վ եղավ նրան խորհրդակից»։ Նա, որ Հորից սովորեց դատաստանի վճիռը, եկավ, մարդ դարձավ, քարոզեց աշխարհին, իր սիրով ամենքին խառնելով Աստվածությանը։ Այսուհետև եկավ լույսը, եկավ մեր մեջ, «լուսավոր դարձրեց ամեն մի մարդու, որն աշխարհ է գալու» նա քարոզում էր և ասում՝ «Ապաշխարեցե՛ք, քանզի մերձեցել է Աստուծո արքայությունը», ժամանակները ի կատար են ածված, հավատացեք Ավետարանին։

448 Ծ. Արդ, երբ ծովեզերքով էր անցնում, տեսավ Պետրոսին, Անդրեասին, Հակովբոսին ու Հովհաննեսին և կանչեց նրանց ձկնորսությունից։ Նրանք անմիջապես թողեցին իրենց հորը նավով հանդերձ և գնացին նրա ետևից։ Բազում այլոց ևս տեսակ տեսակ զբաղմունքներ ունեցողների կանչեց և անվանեց նրանց իր տասներկու աշակերտներն ու առաքյալները, որոնց սովորեցրեց ազատ մնալ ամեն տեսակ զբաղմունքներից։ Նրանք շրջում էին

սանաց. որ զհետ նորա շրջէին, արժանի եղեալ աստուածագործ աւանդութեան խորհրդոյն։

449 Որ այնուհետև մարդասէրն Քրիստոս ի մէջ անցուցեալ զամենակար բժշկարանն, բժշկել զամենայն ախտս և զչարչարանս. և զյառաջաձայն սրբոց մարգարէիցն զգուշակումն ելից, ի մէջ ունելով զբանն որ գոչէ. «Նա զհիւանդութիւնս մեր բարձցէ». և զնոցուն բանս արդարացուցեալ, որպէս ասէն, թէ «Արդարացուցանէ զբանս ծառայից իւրոց մարգարէից»։

450 Եւ սկսնու այնուհետև զառակսն անցուցանել, թէ «Ընդ ամենայն տեղիս ի ձեռն Հոգւոյն ճշմարտութեան երկիր պագցեն Հօր, զի Հայր զայնպիսի երկրպագուս խնդրէ». և թէ «Զողորմութիւն կամիմ, քան զպատարագս»։ Եւ եթէ Ես եմ Հօրորդին, զի Հայր ինձ վկայէ Հոգւովն հանդերձ ճշմարտութեամբ. և թէ Մովսէս ձեզ յառաջագոյն վասն իմ գրեաց. և Յակոբ վասն իմ ասէր ցՅուդա, թէ «Մի՛ պակասեսցէ իշխան Յուդայ և մի՛ պետ յերանաց նորա, մինչև եկեսցէ այն՝ որոյ իւրն է թագաւորութիւն. քանզի նա է յոյս հեթանոսաց»։

451 Եւ թէ՝ մարգարէքն ամենայն վասն իմ գրեցին, առեալ յիմմէ առաքչէն զգիտութիւն. և յայտ արարեալ նոցա, թէ իմ է այգին, և դուք էք մշակքն. և ես եկի, զի ես եմ ժառանգ այգւոյն. եկի խնդրել զպտուղ այգւոյն զի առից. որպէս առաքեաց զիս Հայր իմ՝ և ես եկի կատարել զկամս Հօր իմոյ։ Եւ թէ՝ եկի կատարել զխոստացեալ աւետիսն Աբրահամու, զի աւետեօքն կեցցէ զաւակն Աբրահամեան, և զաւակն Աբրահամու նոցա ծանօթ լիցի։ Իսկ նորա միանգամայն զճշմարտագոյնն առաջի եդեալ, եթէ «Յառաջ քան զլինելն Աբրահամու եմ ես»։ Եւ անդր ի վեր այնուհետև հայեցուցեալ, որպէս և ասէն իսկ, հարցանելով առ ի նոցանէ զմարգարէականն, թէ «Ո՞րպէս ասէք զՔրիստոս որդի Դաւթի, զորմէ Դաւիթ իսկ նշանակեաց Հոգւովն սրբով, թէ Ասաց Տէր ցՏէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ. և արդ՝ զիա՞րդ իցէ որդի Դաւթի»։

452 Նոյնպէս և ամենայն յայտնութեամբք և առակօք յանդիմանէր և խայտառակէր զկեղծաւորութիւն և զամբարշտութիւն և զանօրէնութիւն նոցա։ Իսկ նոցա, խլացելոցն և կուրացելոց ի ճշմարտութենէն, նախանձեալ՝ ելին, ի չարութիւն դառնութեան իւրեանց, կորուսանել զանձինս իւրեանց։ Իսկ նա եկեալ՝ լինէր բըժիշկ մարդասիրութեամբ իւրով, զկոյրս լուսաւորել, զկաղս գնա-



նրա ետևից, արժանի լինելով աստվածագործ ավանդության խորհրդին։

449 Այնուհետև մարդասեր Քրիստոսը ի հայտ բերեց իր ամենակարող բժշկությունը, բժշկելու ամեն տեսակ ախտեր և չարչարանքներ։ Նա կատարեց սուրբ մարգարեների նախօրոք արած գուշակությունները, հիշելով խոսքը, որ ասում է. «Նա կվերցնի մեր հիվանդությունները» Նա արդարացրեց նրանց խոսքերը, ինչպես ասել են, թե «արդարացնում է իր ծառա մարգարեների խոսքերը»։

450 Այնուհետև սկսեց առակներ անցկացնել, թե «Ամեն տեղ ճշմարտության Հոգու միջոցով նրանք երկրպագելու են Հորը, քանզի Հայրը այնպիսի երկրպագուներ է փնտրում» և թե «նախընտրում եմ ողորմությունը, քան զոհերը»։ Ապա թե «ես եմ Հոր Որդին, քանզի Հայրն ինձ է վկայում Հոգով ճշմարտությամբ հանդերձ և թե Մովսեսը նախապես գրել էր իմ մասին և Հակոբը իմ մասին էր ասել Հուդային, թե «Հուդայից չեն պակասի իշխաններ և ոչ էլ պետ նրա մեջքից, մինչև որ գա նա, որինն է թագավորությունը, քանզի նա է հեթանոսների հույսը»։

451 Եվ թե՝ բոլոր մարգարեները իմ մասին գրեցին։ Նրանք տեղեկություն էին վերցրել ինձ առաքողից և հայտնեցին, թե իմն է այգին և դուք եք մշակները։ Ես եկա, քանզի ես եմ այգու ժառանգորդը, եկա խնդրելու այգու պտուղը, որ տանեմ. ինչպես առաքեց ինձ իմ Հայրը, այնպես էլ եկա կատարելու իմ Հոր կամքը։ Եվ թե՝ եկա կատարելու Աբրահամին խոստացված ավետիսը, քանզի ավետիսներով է ապրում Աբրահամի զավակը, և որպեսզի Աբրահամի զավակը նրանց ծանոթ լինի։ Իսկ նա միանգամից առաջադրեց ճշմարտությունը, թե «Աբրահամի լինելուց առաջ ես կայի»։ Այնուհետև վեր բարձրացրեց նրանց հայացքները, ինչպես և ասված է՝ հարցնելով նրանց մարգարեների մասին, թե «ինչպե՞ս եք Քրիստոսին Դավթի որդի կոչում, որի մասին հենց Դավիթը հաստատեց Սուրբ Հոգու միջոցով, թե ասաց Տերն իմ Տիրոջը՝ նստիր իմ աջ կողմը, ուստի ինչպե՞ս կարող է լինել Դավթի որդի»։

452 Նույնպես և ամեն տեսակ հայտնություններով և առակներով հանդիմանում էր և խայտառակում նրանց կեղծավորությունը, ամբարշտությունը և անօրենությունը։ Իսկ նրանք խլացած և կուրացած ճշմարտության հանդեպ, նախանձելով ելան, իրենց դառնության չարության մեջ կորցնելու իրենց անձերը։ Իսկ նա գալով բժիշկ դարձավ իր մարդասիրությամբ, կույրերին լուսավո-

ցուցանել, զբորոտս սրբել, փրկել զամենայն ըմբռնեալսն ի սատանայէ. և զանդամալոյծս յարուցանել, և զխուլս բանալ, և համերց տալ խօսել, և զմեռեալս յարուցանել. զսատանայ կոխան տայր հաւատացելոց իւրոց, և խոստանայր երթալ պատրաստել օթևանս յարքայութեանն երկնից. և զինքն արարեալ օրինակ ամենայնի, համբերել ճգնութեանց առաքինութեամբ։

453 Որ դարձոյց զջուրն ի գինի. զի յայտնի լիցի Աստուածութիւն նորա, թէ նոյն է որ յոչնչէն արար զջուրն ի բնութիւն ջրոյ՝ նոյն և զջուրն ի գինի դարձոյց, որպէս և կամեցաւ։ Եւ այն որ վասըն մեղացն ցաւս խառնեաց՝ նոյն ինքն եկն զառողջութիւն բաշխել։ Եւ բազումք հաւատացին յանուն նորա, իբրև տեսին զնա և զնշանսն զոր առնէր. այլ նա քանզի սրտագէտ էր՝ գիտէր զամենայն խորհուրդս մարդկան, քանզի ծածկագէտ է։

454 ՏԱ. Ապա յետ այսորիկ տուեալ վճիռ. «Եթէ ոք ոչ ծնցի ի ջրոյ և ի Հոգւոյ՝ ոչ կարէ մտանել յարքայութիւնն Աստուծոյ», և ոչ նորոգեսցի միւսանգամ, զի «Այս ասէ, որ ի մարմնոյ աստի է ծնեալ՝ մարմին է, իսկ այն որ ի Հոգւոյ անտի է՝ հոգի է. զի Հոգին սուրբ ուր կամի՝ բղխէ. զձայն նորա լսես, այլ ոչ գիտես, ուստի՛ գայ կամ յո՛վ երթայ». «Զի ոչ ոք է որ ել յերկինս, բայց որ էջն յերկնից Որդին մարդոյ»։

455 Եւ ասացեալ վասն յառաջագիր չարչարանացն իւրոց, թէ «Որպէս Մովսէս կախեաց զօձն յանապատին՝ այնպէս կախել պարտ է Որդւոյ մարդոյ. զի որ միանգամ հաւատայցէ ի նա՝ ընկալցի զկեանսն յաւիտենից։ Զի այնպէս սիրեաց Աստուած զաշխարհ, զի զՈրդին իւր միածին ետ ի վերայ նորա, զի ամենայն որ հաւատասցէ ի նա՝ մի կորիցէ, այլ ընկալցի զկեանսն յաւիտենականս։ Զի ոչ առաքեաց Աստուած զՈրդի իւր յաշխարհ, զի պատժեսցէ զաշխարհ, այլ զի փրկեսցէ նա զաշխարհ։ Որ հաւատայ ի նա՝ ոչ մըտանէ ի պատիժս դատապարտութեան. իսկ որ ոչն հաւատայ ի նա՝ աստստին իսկ դատապարտեալ է. քանզի ոչ հաւատաց յանուն միածնի Որդւոյն Աստուծոյ»։ Եկն առ իւրսն, և իւրքն զնա ոչ ընկալան»։ Այն որ ի սկզբանէ ժամանակացն եղեն երախտիքն և խնամակալութիւնքն և պատուիրանքն, ուստի և մարմնովն իսկ երևեցաւ՝ յանձանց իսկ մերժեցին զնա։

456 «Եւ այս են դատաստանքն, զի լոյս եկն յաշխարհ, և մարդիկ սիրեցին զխաւար առաւել քան զլոյս. զի էին գործք իւրեանց



րելով, կաղերին քայլեցնելով, բորոտներին մաքրելով, բոլոր սատանաներից բռնվածներին փրկելով, անդամալույծներին կանգնեցնելով, խուլերի [ականջը] բանալով, համրերին խոսել տալով, մեռյալներին կանգնեցնելով։ Նա իր հավատացյալներին ուժ տվեց ոտնակոխ անելու սատանային և խոստացավ երթալ օթևաններ պատրաստել երկնքի արքայության մեջ, իսկ իր անձը բոլորին օրինակ դարձրեց՝ առաքինությամբ համբերելու ճգնություններին։

453 Նա ջուրը գինի դարձրեց, որպեսզի հայտնի լինի նրա Աստվածությունը, թե նա, որ ոչնչից ջրին տվեց ջրի բնությունը, նույն ջուրը գինի դարձրեց, ինչպես և կամեցավ։ Նա, որ մեղքերի պատճառով ցավերին մասնակցեց, նույն ինքը եկավ առողջություն բաշխելու։ Շատերը հավատացին նրա անվանը, երբ տեսան նրան և հրաշքները, որ նա գործել էր։ Նա սրտագետ էր, գիտեր մարդկանց բոլոր խորհուրդները, քանզի ծածկագետ է։

454 ՏԱ. Ապա դրանից հետո վճիռ տվեց՝ «Եթե ամեն մարդ չծնվի ջրից ու Հոգուց, չի կարող մտնել Աստծո արքայությունը» և ոչ էլ մյուս անգամ կնորոգվի. «Այո, ասում է նա, նա, որ մարմնից է ծնված՝ մարմին է, իսկ այն, որ Հոգուց է՝ Հոգի է։ Քանզի Սուրբ Հոգին որտեղից կամենա կբխի, նրա ձայնը կլսես, սակայն չգիտես, ուստի է գալիս կամ ուր է գնում». «քանզի ոչ ոք ելել է երկինք, բացի նրանից, որ իջավ երկնքից՝ մարդու Որդին»։

455 Եվ նա ասաց իր առաջ գրված չարչարանքների մասին, թե «ինչպես Մովսեսը անապատում կախեց օձին, այնպես էլ մարդու Որդին պարտավոր է կախվել, որպեսզի ով մի անգամ հավատա նրան հավիտենական կյանք ունենա։ Քանզի Աստված այնպես սիրեց աշխարհը, որ իր միածին Որդուն նրա համար տվեց, որպեսզի ամեն ոք, որ հավատա նրան, չկորչի այլ ընդունի հավիտենական կյանք։ Աստված իր Որդուն աշխարհ չուղարկեց, որ պատժի աշխարհը, այլ, որպեսզի փրկի աշխարհը։ Ով հավատա նրան, դատապարտությամբ պատժի տակ չի մտնի, իսկ ով չի հավատա, հիմիկվանից դատապարտված է, քանզի չի հավատացել Աստուծո միածին Որդու անվանը»։ «Եկավ յուրայիններին և յուրայինները չընդունեցին նրան», որի երախտիքն ու խնամակալությունը և պատվիրանները ժամանակների սկզբից էին և երբ մարմնով իսկ երևաց, մերժեցին նրան։

456 Եվ այս է դատաստանը, որ լույսը եկավ աշխարհ, սակայն մարդիկ խավարը առավել սիրեցին քան լույսը, քանզի նրանց

չարութեամբ։ Զի ամենայն որ զչար գործէ՝ զչար ատեայ նա զլոյսն, և ոչ գայ ի լոյսն, զի մի՛ յանդիմանեսցին գործք նորա։ Իսկ որ առնէ և գործէ զճշմարտութիւն՝ գայ նա ի լոյսն՝ զի յայտնի լինիցին գործք նորա, թէ Աստուծով գործեցան»։ Եւ Աստուածորդւոյն ուսուցեալ ամենեցուն զճանապարհս արդարութեան. իսկ խաւարասէր գործոց մարդկան անօրինաց Հրէից սկսեալ կեղծաւորել, և խնդրեալ սպանանել զնա մշակաց այգւոյն, և ոչ համարեալք արժանի զանձինս իւրեանց կենացն յաւիտենականաց, իսկ այնպիսեացն գեհեան խոստացաւ, ասելով վա՛յ ի վերայ նոցա։

457 ԾԲ. Իսկ բարերարի Տեառնն ժողովեալ զաշակերտսն երկոտասան, զորս և առաքեալս անուանեաց, և դարձեալ եօթանասուն և երկուս. խրատեալ և վարժեալ զնոսա Աստուածութեանն խրատուն, և վկայս կացուցեալ և ասացեալ ցնոսա, և սիրելիս իւր և բարեկամս անուանեալ, թէ «Ես ձեզ ասեմ, սիրելեաց իմոց. մի՛ երկնչիք յայնցանէ, որ զմարմինն սպանանեն, և զոգին ոչ կարեն սպանանել»։ Եւ թէ «Ես զձեզ ինձ բարեկամս գիտեմ». և թէ «Զոր միանգամ ասաց ինձ Հայր իմ և եցոյց՝ ես ձեզ ցուցի»։ Եւ յայտնեալ նոցա զելսն առ ի Հօրէ և զդարձն ի նոյն, ասելովն, թէ «Ելի ի Հօրէ և եկի յաշխարհ, և դարձեալ թողում զաշխարհ և երթամ առ Հայր»։

458 Տուեալ նոցա և զաւետիս Հոգւոյն սրբոյ առաքելոյն ի Հօրէ, թէ «Երթամ և առաքեմ զմխիթարիչն, որ եկեալ մխիթարեսցէ զտրտմեալսդ վասն իմ»։ Տե՛ս զզուգականութիւնն, տե՛ս զմիաւորական զօրութիւնն, տե՛ս զէականութիւնն, տե՛ս զմիական լիութեանն կամակցութիւն. զի «Եկեալ՝ ասէ, զիմ տեղին լցցէ ձեզ, և նովին ճշմարտութեամբ առաջնորդեսցէ ձեզ, և յանդիմանեսցէ զաշխարհս, զի ոչ հաւատացին յիս, դատեսցի և զկարծեալ իշխան աշխարհիս այսորիկ։ Ճշմարտեսցէ միանգամայն ձեզ վասն իմ, զի ի Հօրէ առաքի. որոյ գալուստն՝ զերթալոյն իմոյ առ Հայր վկայէ. նա եկեալ առաջնորդեսցէ ձեզ ամենայն ճշմարտութեամբ»։

459 ԾԳ. Ապա առնու այնուհետև զյառաջադիր խորհուրդ չարչարանացն Յիսուս՝ կատարել յԵրուսաղէմ. վասն որոյ բազում անգամ գուշակեաց, թէ մեռանելոց է և յերիր աւուր յառնելոց։

460 Եւ վասն ո՞յր արդեօք գայցէ ի մահն. մի՞թէ պարտական ինչ իցէ մահու. այլ մարգարէն ասէ, թէ «Անօրէնութիւն ինչ ոչ գոր-



գործերը չար էին։ Ով որ չարիք է գործում՝ չարիք կգտնի, նա ատում է լույսը և լույսի մոտ չի գա, որպեսզի նրա գործերը չհանդիմանվեն։ Իսկ ով ճշմարտություն է անում և գործում՝ կգա լույսին, որպեսզի նրա գործերը հայտնի լինեն, թե գործվել են Աստուծով»։ Աստվածորդին ամենքին ուսուցանեց արդարության ճանապարհները, իսկ անօրեն հրեաները խավարասեր մարդիկ, սկըսեցին կեղծավորել և այգու մշակները կամեցան սպանել նրան ու իրենց անձերը արժանի չէին համարում հավիտենական կյանքին։ Այդպիսիներին գեհեն խոստացավ ասելով՝ վայ նրանց։

457 ԾԲ. Իսկ բարերար Տերը հավաքելով տասներկու աշակերտներին, որոնց առաքյալներ անվանեց, ինչպես նաև յոթանասուներկուսին խրատեց և վարժեցրեց նրանց Աստուծո խրատներով, փորձեց ու խոսեց նրանց, իր սիրելիներն ու բարեկամները անվանեց, ասելով թե «ասում եմ ձեզ իմ սիրելիներ, մի վախեցեք նրանցից, որոնք մարմինն են սպանում և հոգին չեն կարող սպանել»։ Եվ թե «ես ձեզ գիտեմ որպես իմ բարեկամներ» և թե «այն, որ Հայրը մի անգամ ասաց ինձ և ցույց տվեց ես ձեզ ցույց տվեցի»։ Հայտնեց նրանց իր ելքը Հորից և դարձը դեպի նույնը ասելով, թե «ելա Հորից և եկա աշխարհ և դարձյալ թողնում եմ աշխարհը երթալու Հոր մոտ»։

458 Տվեց նրանց նաև Հորից առաքված Սուրբ Հոգու ավետիսը, թե «գնում եմ առաքելու մխիթարիչին, որ գալով կմխիթարի իմ պատճառով տրտմածներին»։ Տես հավասարությունը, միավորված զորությունը, էականությունը և միակ լիության կամակցությունը։ «Գալով, ասում է, ձեզ համար իմ տեղն է լցնելու և նույն ճշմարտությամբ առաջնորդելու է ձեզ ու հանդիմանելու է այս աշխարհը, որ չհավատաց ինձ, դատելով նաև այս աշխարհիս կարծեցյալ իշխանին։ Նա միանգամայն ճշմարիտն է ասելու ձեզ իմ մասին, քանզի Հորից է առաքված. նրա գալուստը վկայում է իմ Հոր մոտ երթալը։ Գալով նա առաջնորդելու է ձեզ ամենայն ճըշմարտությամբ»։

459 ԾԳ. Այնուհետև Հիսուսը ընդունեց չարչարանքների կանխորոշված խորհուրդը, որպեսզի այն կատարի Երուսաղեմում, որի մասին բազում անգամներ գուշակել է, թե ինքը մեռնելու է և երրորդ օրը հառնելու։

460 Արդյոք ո՞ւմ համար էր գնալու մահվան, մի՞թե նա պարտական էր մահվան։ Սակայն մարգարեն ասում է, թե «նա անօրի-

ծեաց, և ոչ գտաւ նենգութիւն ի բերան նորա». զոր և ինքն իսկ ասէր, թէ «Ո՞վ ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց»։ Իսկ ըստ օրինա՞ց ինչ պարտական մահու. այլ ասէ. «Կատարել եկի զօրէնս». որում և առաքեալ վկայէ, թէ «Կատարած օրինացն Քրիստոս է»։ Իսկ ի բռնաւորա՞ց արդեօք ի հարկէ մեռանիցի. այլ ասէ, թէ «Անձամբ իմով դնեմ զանձն իմ, և ոչ ոք հանէ յինէն։ Անձամբ, ասէ, զանձն իմ դնեմ, զի միւսանգամ առից զնա»։

461 Իսկ ընդէ՞ր կամիցի զանձն դնել անպարտականն մահու։ «Ես եմ, ասէ, հովիւ քաջ, որ ի վերայ խաշանց իմոց մեռանիմ»։ Յո՞րոց խաշանց արդեօք. ի հարթուցելո՞ցն, ի փախուցելո՞ցն, ի գազանակուր եղելո՞ցն, զորոց յառաջագոյն մարգարէն ասաց, թէ «Ամենեքին իբրև ոչխարք մոլորեալք, և այր ամենայն ի ճանապարհի իւրում մոլորեցաւ. և Տէր մատնեաց զնա ի մեղս մեր, և յանօրէնութեանցն ժողովրդեան իմոյ ի մահ վարեցաւ»։

462 Վասն որոյ քահանայապետ ազգին տիրասպանուաց ակամայ մարգարէացաւ, թէ «Լաւ է մեզ, զի այր մի մեռանիցի ի վերայ ժողովրդեանս, և մի՛ ամենայն ազգս կորիցէ»։ Բայց նա ոչ ասէ ի վերայ ազգին միայն, այլ զի և զամենայն որդիսն Աստուծոյ, զցրուեալսն ի բաժանել ազգացն՝ ժողովեսցէ ի մի։ Վկայէ և Պաւղոս, թէ «Յայտնեաց Աստուած զսէրն իւր ի մեզ. զի մինչ դեռ մեղաւորքն էաք՝ Քրիստոս վասն մեր մեռաւ». և թէ «Ի ժամանակի ի վերայ ամբարշտաց մեռաւ»։

463 Եւ արդ՝ եկեալ աշակերտօքն ի լեառն Ձիթաստանեաց, զի կատարեսցէ զմարգարէին որ ասէ, թէ «Եկեսցէ հասցէ Տէր Աստուած իմ և ամենայն սուրբք ընդ նմա. և կացցեն ոտք նորա յաւուր յայնմիկ ի վերայ լերինն Ձիթենեաց հանդէպ Երուսաղէմի, յարևելից կուսէ»։

464 Եւ ի տօնական աւուրն օրինականաց գայ աշակերտօքն կատարել զօրէնսն, և յայտնել զխորհուրդս հոգևորական տօնին. և յառաջ քան զչարչարանսն՝ զփրկութիւնագործ զմարմին իւր և զարիւն պարգևէ աշակերտացն։ Տեսանե՞ս, զի կամաւ և ոչ ի բռնութենէ չարչարի Որդին Աստուծոյ, որ յառաջագոյն քան զչարչարելն ճաշակեալ լինի։



նություն չի գործել և ոչ էլ նենգություն կար նրա բերանում». իսկ ինքն ասում էր, թե «Ձեզանից ո՞վ ինձ կհանդիմանի մեղքերի համար»։ Իսկ արդյոք ըստ օրենքի՞ էր նա մահվան դատապարտված։ Սակայն նա ասում է՝ «Եկա կատարելու օրենքը», որի մասին առաքյալն է վկայում, թե «Քրիստոս է օրենքի իրականացումը»։ Իսկ արդյոք բռնավորների՞ ուժով է մեռնելու, սակայն ասում է՝ «Իմ կամքով եմ դնում իմ կյանքը, և ոչ ոք կարող է ինձանից վերցնել։ Իմ կամքով ասում է դնում եմ իմ կյանքը, որպեսզի կրկին առնեմ այն»։

461 Իսկ ինչո՞ւ է կամենում իր անձը դնել անպարտ մահվան։ «Ես եմ, ասում է, քաջ հովիվը, որ իմ ոչխարների համար մեռնում եմ»։ Արդյոք ի՞նչ ոչխարների համար՝ խրտնածների, փախչողների, գազանների կեր եղողների, որոնց մասին մարգարեն նախօրոք ասել է, թե «ամենքը ոչխարների նման մոլորվեցին և ամեն մարդ իր ճանապարհին մոլորվեց։ Տերը մատնեց նրան մեր մեղքերի պատճառով և իմ ժողովրդի անօրինությունների համար մահվան տարվեց»։

462 Այդ բանի մասին տիրասպանների ազգի քահանայապետը ակամա մարգարեացավ, թե «լավ է մեզ, որ մի մարդ մեռնի ժողովրդի համար և ամբողջ ազգը չկորչի»։ Բայց նա չի ասում միայն մեկ ազգի համար, այլ թե նա ի մի է հավաքելու ազգերի բաժանման ժամանակ ցրված, Աստուծո բոլոր որդիներին։ Վկայում է նաև Պողոսը, թե «Աստված իր սերը հայտնեց մեզ, որ մինչդեռ մենք մեղավորներ էինք, Քրիստոս մեզ համար մեռավ» և թե «Նա [հարմար] ժամանակին մեռավ ամբարիշտների համար»։

463 Արդ, աշակերտների հետ եկավ Ձիթաստանյաց լեռը, որպեսզի կատարվի մարգարեի խոսքը, որ ասում է, թե «գալու-հասնելու է իմ Տեր Աստվածը և բոլոր սրբերը նրա հետ և այն օրը նրա ոտքը կանգնելու է Ձիթենյաց լեռան վրա Երուսաղեմի հանդեպ, արևելյան կողմում»։

464 Եվ օրինականաց տոնական օրը աշակերտներով եկավ օրենքը կատարելու և տոնի հոգևոր խորհուրդները հայտնելու։ Իր չարչարանքներից առաջ իր փրկությունագործ մարմինը և արյունը պարգևեց աշակերտներին։ Տեսնո՞ւմ ես, որ իր կամքով և ոչ բռնությամբ չարչարվեց Աստուծո Որդին, որպեսզի չարչարանքից առաջ ճաշակած լինի։

465 Յետ այսորիկ աղօթս առնէ խորհրդիւ ի լերինն առ Հայր. ոչ վասն իւր ինչ զանգիտելոյ, այլ զի ցուցցէ, թէ միակամ ընդ Հօր զառաջի եդեալսն գործիցէ։ Վասն որոյ բազում անգամ ասացեալ յառաջագոյն, թէ «Ոչ յանձնէ ինչ խօսիմ և ոչ յանձնէ ինչ գործեմ, այլ Հայր որ բնակեալն է յիս՝ նա գործէ»։ Մանաւանդ լնու մարգարէականն, թէ «Փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս, այլ ես յաղօթս կայի»։

466 Եւ յայտ արարեալ աշակերտացն զմիակամութիւնն իւր ընդ Հօր՝ և ապա իջանէ ի լեռնէն, փութացեալ վասն անհաւատիցն դնել զանձն. մանաւանդ յորժամ ի տօնն եկելոց հեթանոսացն աղաչել զաշակերտսն՝ երթալ ընդ նոսա առ Յիսուս։ Որովք կատարի և մարգարէականն, թէ «Այսպէս ասէ Տէր ամենակալ. յաւուրսն յայնոսիկ բուռն հարկանիցեն արք տասն յամենայն ազգաց զփոշակէ առն հրէի և ասասցեն. երթիցո՛ւք մեք ընդ քեզ, զի լուաք, եթէ Աստուած ընդ քեզ է»։ Եւ Յիսուսի լուեալ ասէ. «Եհաս ժամ, զի փառաւորեսցի Որդի մարդոյ»։ Տեսանե՞ս, զի զչարչարանսն փառս կոչէ։

467 ՄԴ. Արդ՝ ճշմարիտ աշակերտացն երբեմն ժողովեալ առ ճշմարիտ վարդապետն տէր Յիսուս, փրկիչ և բարերար և Որդի Աստուծոյ և օծեալ. զորս հարցանէր, թէ «Զո՞ ուստեք ասեն մարդիկս զՈրդւոյ մարդոյ՝ թէ իցէ։ Որոց տուեալ պատասխանի՝ ասեն. Ոմն զՅովհաննէս Մկրտիչ, այլք զԵղիա և կամ զմի ոք ի մարգարէիցն. և ասէ Յիսուս. Դուք զո՞ ոք ուստեք ասէք, թէ իցեմ»։ Որոց առաջինն Պետրոս ասէ, թէ Դու ես Քրիստոս Որդի Աստուծոյ կենդանւոյ»։ Վասն որոյ և զերանութիւնն ընկալաւ. ասէ. «Երանի՛ է քեզ, Պետրոս որդի Յովնանու, զի ոչ յերկրէ տոհմակցաց քոց, ի մարմնոյ և յարենէ ազգի քոյ, ի մարդկանէ առեր դու զայդ գիտութիւն, այլ Հայր յերկնից ետ ի սիրտ քո և յայտնեաց քեզ»։ Եւ արար զնա վէմ հաստատութեան ամենայն եկեղեցեաց։

468 Եւ եղեն իսկ հիմունք առաքեալքն, և առին շնորհս քահանայութեան և մարգարէութեան և առաքելութեան երկնաւոր խորհրդոյն գիտութեան, որ վարէր զայր յԱբրահամեան զաւակէն. զոր ետ ցՏէր ժառանգութեանն աւանդապահն Յովհաննէս, և Տէր ետ առաքելոցն։ Եւ զփականս արքայութեանն ետ ի ձեռս նոցա, զի



465 Դրանից հետո լեռան վրա թաքուն աղոթեց Հորը ոչ այն պատճառով, որ իր կողմից անգիտություն կար, այլ որպեսզի ցույց տա, որ միակամ լինելով Հոր հետ, նախապես դրվածը պիտի գործադրի։ Դրա համար բազում անգամներ նախօրոք ասել է, թե «ինքս ոչինչ չեմ խոսում և ինքս ոչինչ չեմ գործում, այլ Հայրը, որ իմ մեջ բնակված է, նա է գործում»։ Մանավանդ նա լրացնում է մարգարեությունը, թե «իմ սիրո փոխարեն ինձ մատնեցին, բայց ես աղոթքի մեջ էի»։

466 Եվ հայտնեց իր աշակերտներին իր միակամությունը Հոր հետ և ապա լեռից իջավ, փութալով իր անձը զոհել անհավատների համար, մանավանդ տոնին եկած հեթանոսները աղաչեցին աշակերտներին իրենց հետ գնալ Հիսուսի մոտ։ Սրանով կատարվում էր մարգարեությունը, թե «այսպես է ասում ամենակալ Տերը այդ օրերին՝ տասը մարդ բոլոր ազգերից բռնելու են մի հրեայի շապիկից (դրոշակ) և ասելու են՝ «գնանք քեզ հետ, քանզի լսել ենք, թե Աստված քեզ հետ է»։ Եվ Հիսուսը լսելով ասաց. «Հասավ ժամը, որ փառավորվի մարդու Որդին»։ Տեսնո՞ւմ ես, որ չարչարանքները փառք է կոչում։

467 ՄԴ. Արդ, ճշմարիտ աշակերտները երբեմն հավաքվում էին ճշմարիտ վարդապետ, փրկիչ, բարերար Աստծո Որդի և օծյալ տեր Հիսուսի մոտ և նա հարցնում էր նրանց, թե «ի՞նչ են ասում մարդիկ մարդու Որդու մասին, թե ով է։ Նրանք պատասխանեցին և ասացին՝ ոմանք ասում են Հովհաննես Մկրտիչն է և ուրիշները՝ Եղիան և կամ մեկը մարգարեներից։ Ասաց Հիսուս՝ իսկ դո՞ւք ինչ եք ասում, թե ով եմ»։ Նրանցից առաջինը Պետրոսը ասաց, թե «դու Քրիստոսն ես, կենդանի Աստծո որդին»։ Դրա համար էլ նա երանություն ընդունեց։ Ասաց «Երանի քեզ, Պետրոս, որդի Հովնանի, քանզի ոչ թե քո երկրային տոհմակիցներից, որոնք քո մարմնից ու արյունից են, [ոչ էլ] մարդկանցից ստացար դու այդ գիտությունը, այլ Հայրը երկնքից դրեց քո սրտի մեջ և հայտնեց քեզ»։ Եվ նրան բոլոր եկեղեցիների հաստատության վեմ դարձրեց։

468 Եվ իրոք առաքյալները դարձան հիմքեր, ստացան քահանայության, մարգարեության, առաքելության և երկնավոր խորհրդի գիտության շնորհները։ Եվ սա եկավ-հասավ Աբրահամի սերնդին, իսկ ժառանգության ավանդապահ Հովհաննեսը այն տվեց Տիրոջը և Տերը տվեց առաքյալներին։ Արքայության փականքները (բանալիները) տվեց նրանց ձեռքը, քանզի ինքն իսկ Աստ-



17—1461

ինքն իսկ Աստուածորդին էր դուռն մտողացն. վասն որոյ և մարգարէն աղաղակէր. «Այս դուռն Տեառն է, և արդարք մտանեն ընդ սա»։ Արդ՝ ետ Յովհաննէս զքահանայութիւնն և զօրութիւնն և զմարգարէութիւնն և զթագաւորութիւնն ցփրկիչն մեր Քրիստոս. և Քրիստոս ետ առաքելոցն, և առաքեալքն՝ եկեղեցւոյ մանկանց։

469 Համարձակութիւն առին հարցանելոյ զՏէրն ի Ձիթաստանեաց լերինն, յորժամ վասն քակելոյ գեղեցիկ տաճարին վճիռ ետ. «Ասա՛ մեզ, ասեն, ե՞րբ լինիցի այդ, և կամ զի՞նչ նշան իցէ քոյոյ գալստեանն և վախճանի աշխարհիս»։ Իսկ նա թէպէտ և հրաժարէր, թէ «Վասն աւուրն այնորիկ ոչ ոք գիտէ, ո՛չ հրեշտակք երկնից և ոչ Որդի, բայց միայն Հայր». և Ղուկաս յառաքելագործ մատենին առակաւ մեկնէր. «Ոչ է ձեզ, ասէ, քննել զժամանակս և զժամս, զոր Հայր եդ յիւրում իշխանութեանն».— իսկ ո՞ այլ ոք իցէ իշխանութիւն Հօր՝ եթէ ոչ ինքն Որդի.— սակայն առեալ մանրապատումն նշանակօք վասն ահաւոր և ամպախաղաց գալստեանն իւրոյ՝ աշակերտացն ուսուցանէր։

470 Տեսանե՞ս, զի գիտակ էր Որդի ոչ միայն աւուրն, այլ և ժամուն, և կերպարանաց իւրոյ գալստեանն ոչ իւիք անտեղեակ. բայց վասն թերահաւատ լսողացն ըստ ժամանակի և զիջանելով խօսէր։ Այլ թէպէտ և խառնապատում վճարեաց վասն հարցողացն զաւերն Երուսաղեմի, և զհամաշխարհական կատարածն պատմեաց, ոչ ինչ դժուարին է հասանել ի վերայ կատարածին և աւերածոյն Երուսաղեմի, թէ կամեսցի ոք հաւաստեաւ քննել զիւրաքանչիւրսն ընտրելով։

471 Եւ արդ՝ առեալ ի պատմել զպայման մեծամեծ նեղութեանցն և սուտ քրիստոսացն և սուտ մարգարէիցն յարուցելոց և զնեռինն՝ զնոցին մոլորեցուցիչ նշանագործութեանցն ճառէ։ Վասն որոյ և առաքեալքն նշանակեցին, թէ «Յետին ժամանակսն այնպիսիքն յառնելոց են»։ Ապա վասն յանկարծակի և երագահաս գալըստեան իւրոյ նշանակէ հանդերձ օրինակօքն տուեալովք Նոյիւ և Ղովտաւ. զոր Պաւղոս՝ «Յական թօթափել» ասէ։ «Վաղվաղակի, ասէ, յետ նեղութեան աւուրցն այնոցիկ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր. և աստեղք յերկնից թօթափեսցին, և զօրութիւնք երկնից շարժեսցին։ Եւ ապա երեւեսցի նշան Որդւոյ մարդոյ յերկինս»։ Ի վերուստ խաչն փայլեսցէ, և լնուցու զամենայն



վածորդին էր մտնողների դուռը, որի համար մարգարեն աղաղակում էր. «Սա տիրոջ դուռն է և արդարները կմտնեն նրանից»։ Արդ, Հովհաննեսը քահանայապետությունը, օծությունը, մարգարեությունը և թագավորությունը տվեց մեր փրկիչ Քրիստոսին և Քրիստոսը տվեց առաքյալներին, իսկ առաքյալները՝ եկեղեցու մանկանց։

469 [Աշակերտները] համարձակություն առան Ձիթաստանյաց լեռան վրա հարցնելու Տիրոջը, երբ նա գեղեցիկ տաճարը քանդելու վճիռ էր տվել «Ասա՛ մեզ, ասում են, ե՞րբ կլինի դա և կամ ի՞նչ նշան է լինելու քո գալստյան և աշխարհի վախճանի մասին»։ Իսկ նա թեպետ և հրաժարվում էր, ասաց՝ «Այդ օրվա մասին ոչ ոք գիտի, ոչ երկնքի հրեշտակները և ոչ որդին, բացի միայն Հորից»։ Ղուկասը առաքելագործ մատյանի (Գործք առաքելոց) մեջ առակով մեկնում էր «դուք չպետք է, ասում է, քննեք ժամանակները և ժամը, որը Հայրը դրել է իր իշխանության մեջ»։ Իսկ ուրիշ ո՞վ [ներկայացնում] է Հոր իշխանությունը, եթե ոչ ինքը Որդին։ Այսուհանդերձ նա մանրապատում նշաններով բացատրեց աշակերտներին իր ահավոր և ամպախաղաց գալստյան մասին։

470 Տեսնո՞ւմ ես, Որդին գիտակ էր իր գալստյան ոչ միայն օրվա, այլև ժամի և կերպարանքի մասին և ոչ մի բանի անտեղյակ չէր, բայց թերահավատ լսողների պատճառով խոսում էր ժամանակի համեմատ և զգուշությամբ։ Թեպետ և նա խառնապատում ձևով իրեն հարցնողներին պատմեց Երուսաղեմի ավերի, ինչպես նաև համայն աշխարհի վախճանի մասին, [այսուհանդերձ] դժվար չէ հասկանալ վախճանը և Երուսաղեմի ավերածությունը, եթե մարդ կամենա ստույգ քննել յուրաքանչյուր [մանրամասնությունը] ընտրելով։

471 Արդ, սկսեց պատմել մեծամեծ նեղությունների պարագաների և սուտ քրիստոսների ու երևան գալիք սուտ մարգարեների և Նեռի (սուտ Քրիստոս) մասին, նկարագրելով այդ մոլորեցուցիչների նշանները։ Այդ մասին առաքյալներն էլ մատնացույց արեցին, թե «հետին ժամանակներում այնպիսիներն են երևան գալու»։ Ապա իր հանկարծակի և արագահաս գալստյան մասին նշում է, օրինակներ տալով Նոյի և Ղովտի միջոցով, որի մասին Պողոսն ասում է «ակնթարթում». «Անմիջապես այն օրերի նեղությունից հետո արեգակը խավարելու է և լուսինն իր լույսը չի տալու, աստղերը երկնքից թափվելու են և երկնքի զորությունները շարժվելու են։ Ապա երկնքում երևալու է մարդու Որդու նշանը»։ Ի վերուստ խաչն

երկիր լոյս նորա, յորժամ կրկին զիւր գալուստն այսրէն նշանակէ, առնել զհատուցումն իւր— ի ժողովուրդս ամենայն յանդիմանութիւն— յազգս ազանց, դատել զամենայն ազգս հրով բարկութեամբ իւրով և դատաստանօք իւրովք. զամենայն գիտութիւն ետ և յայտնեաց իւրոց առաքելոցն և հաւատացեալ աշակերտացն և սիրելի բարեկամացն։

472 Ծն. Արդ՝ եկեալ ի մէջ ժողովրդեանն, յուշ առնելով զյանդիմանաւոր և զհրապարակախօս վարդապետութիւնն իւր՝ ասէ, թէ «Ես յայտնի խօսեցայ ընդ աշխարհի և յամենայն ժամ ուսուցի ժողովրդեանն ի տաճարի անդ, ուր ամենայն Հրեայքն ժողովեալ էին, և ի ծածուկ ինչ ոչ խօսեցայ»։ Որ և աղաղակ իսկ եղեալ ասէր, թէ «Որ հաւատայ յիս՝ հաւատայ յայն որ առաքեացն զիս. և որ տեսանէ զիս՝ զայն տեսանէ որ առաքեացն զիս»։ Եւ այսպէս վկայութիւն եդեալ ճշմարտութեամբ և ուխտեալ՝ երթայ այնուհետև անկանել ի ձեռս ապստամբողացն։ Զի որք ի լուսաւոր և ի կենդանատու վարդապետութենէն թիկունս դարձուցեալ մոլորեցան՝ թերևս ի շօշափել ձեռացն չարչարանօք զկենդանարարն՝ սթափեսցին և զգաստասցին մոլորականքն։

473 Քանզի քահանայիցն և օրէնսուսոյց վարդապետացն մատնեցաւ, առ ի յուշ առնելոյ նոցա օրինօքն զյառաջապատում չարչարանացն իւրոց. և նոցա առեալ դատեցան զդատաւորն ամենայնի, ըստ ամենայն գրելոցն վասն նորա։ Որպէս և Պաւղոս յԱնտիոք Պիսիդացւոց վկայէ վասն նորա, թէ «Բնակեալքն յԵրուսաղէմ անծանօթք եղեն ի նմանէ, և ըստ բարբառոյ մարգարէիցն, որ յամենայն շաբաթս ընթեռնուին՝ դատեալ կատարեցին, և ոչ մի ինչ պատճառս մահու գտեալ՝ խնդրեցին ի Պիղատոսէ սպանանել զնա»։ Եւ իբրև առեալ զկեանսն՝ յանդիման իւրեանց կախեցին ըզփայտէ. այն վասն որոյ յառաջագոյն Տեառն նշանակեալ առ ի յօրինացն, թէ «Պարտ է բարձրանալ Որդւոյ մարդոյ»։ Եւ անդ այնուհետև ի ժամուն յայնմիկ լցեալ կատարի բանն որ ի Յովբ, թէ «Որ տայ հրաման արեգական, և ոչ ծագէ և թաքուցանէ զաշխարհատարած ճառագայթսն, և որ կնքէ զիւրաքանչիւր փայլիւն աստեղաց»։

474 Եւ ի վեցերորդ ժամէ անտի, ասէ աւետարանագիրն, խաւար կալաւ զերկիր մինչև ցինն ժամ աւուրն, առ ի կատարելոյ զԱմովսական մարգարէութիւնն, թէ «Եղիցի յաւուր յայնմիկ, ասէ Տէր Տէր, մտցէ արեգակն ի միջօրէի, և խաւարեսցի յերկրի լոյս ի տուէ»։



է փայլելու և նրա լույսը լցնելու է ամբողջ երկիրը, երբ նշվելու է նրա կրկին գալստյան մասին, անելու է իր հատուցումը, որպես հանդիմանության բոլոր ժողովուրդներին, բոլոր ազգերին դատելու իր բարկության հրով և իր դատաստանով։ Ամբողջ գիտությունը նա տվեց ու հայտնեց իր առաքյալներին, հավատացյալ աշակերտներին և սիրելի բարեկամներին։

472 Ծն. Արդ, գալով ժողովրդի մեջ, նա հիշեցնելով իր հանդիմանավոր և հրապարակախոս վարդապետությունը, ասում է, թե «Ես հայտնի խոսեցի աշխարհին և ամեն ժամ ժողովրդին ուսուցանեցի տաճարում, ուր բոլոր հրեաները հավաքվել էին, և ծածուկ ոչինչ չխոսեցի»։ Նա աղաղակելով ասում էր, թե «Ով հավատա, ինձ կհավատա նրան, որ առաքել է ինձ, և ով տեսնի ինձ, նրան է տեսնում, որ առաքեց ինձ»։ Այսպես ճշմարտությամբ վկայություն տալով և ուխտելով գնաց այնուհետև ընկնելու ապստամբողների ձեռքը, որպեսզի, ովքեր լուսավոր և կենդանատու վարդապետությունից թիկունք դարձնելով մոլորվեցին, դաժանորեն ձեռք գցելով կենդանարարին, թերևս սթափվեն և զգաստանան մոլորությունից։

473 Քանզի քահանաների և օրենսուսույց վարդապետների ձեռքը մատնվեց, նրանց օրենքի միջոցով հիշեցնելու իր կանխագուշակված չարչարանքների մասին։ Սակայն նրանք բռնեցին ու դատեցին ամենայնի դատավորին, ըստ նրա մասին եղած բոլոր գրվածքների։ Ինչպես Պողոսը Պիսիդացվոց Անտիոքում վկայում էր նրա մասին, թե «Երուսաղեմ բնակվածները անծանոթ մնացին նրանից և ըստ մարգարեների խոսքերի, որն ամեն շաբաթ օրերում ընթեռնում էին՝ դատ արեցին և մահվան ոչ մի պատճառ չգտնելով, Պիղատոսից խնդրեցին սպանել նրան»։ Եվ երբ նրա կյանքը խլեցին, իրենց դիմաց փայտից կախեցին։ Այս մասին Տերը նախօրոք նշանակել էր օրինաց [գրքերում], թե «մարդու որդին պետք է բարձրացվի»։ Այնուհետև այն ժամին լրացավ ու կատարվեց Հոբի ասածը, թե «նա որ հրաման է տալիս արեգակին և նա չի ծագում և թաքցնում է աշխարհատարած ճառագայթները և կնքում է յուրաքանչյուր փայլուն աստղ»։

474 Վեցերորդ ժամից, ասում է ավետարանագիրը, երկիրը խավար պատեց մինչև օրվա իններորդ ժամը, որպեսզի կատարվի Ամովսի մարգարեությունը, թե «այդ օրը այնպես է պատահելու, ասում է տիրանց Տերը (Տէր Տէր), որ արեգակը կեսօրին մայր

*Հանգոյն նմա և Զաքարիա, թէ «Եղիցի յաւուրն յայնմիկ, ոչ եղիցի լոյս, և ցուրտ և պարզ եղիցի օր մի· և օրն այն յայտնի Տեառն. ոչ տիւ իցէ և ոչ գիշեր· և ընդ երեկս եղիցի լոյս»։*

*475 Եւ զի՞նչ իցէ, թէ «Օրն այն յայտնի Տեառն», եթէ ոչ յառաջագոյն նկատեալ մարգարէիւքն ասէ, թէ օր Տեառն, որոյ և ժամադրութիւնն հասեալ կայր։ Որպէս և Դանիէլ ի հրեշտակէն տեղեկացեալ գրեաց, թէ «Յետ վաթսուն և երկուց եօթներորդացն սպանցի օծեալն»։ Իսկ «Յայտնի Տեառն»՝ զնշանաւորն ասէ, զոր արեգակամբն ցուցեալ, որպէս ի սկզբանցն ի լինելութեանն հաստատեաց զլուսաւորսն, թէ «Եղիցին ի նշանս»։ Վասն որոյ իւր իսկ յերկարեալ զհրաժարելն հանդերձ խաւարադիր ժամուն նշանաւն, զի «Հայեսցին և տեսցեն զոր խոցեցինն»։ Իսկ նոքա ևս քան զևս նսեմացեալք, և հասեալք ի յատակս մոլորութեան, և իբրև շունք համրացեալք ի խոստովանողական բարբառոյն։*

*476 Եւ նորա կատարեալ զամենայն, որպէս ասէ աւետարանագիրն, թէ «Յետ այսորիկ գիտաց Յիսուս, եթէ ահա ամենայն ինչ կատարեալ է՝ ասէ. Ծարաւի եմ»։ Զի լցցի գիրն, այպանութեան բաժակաւն քացախ ընդ լեղւոյ խառնեալ մատուցանէին. վասն որոյ նշանակեաց, թէ «Ամենայն ինչ կատարեալ է»։ Անդ լցեալ և բան մարգարէին, թէ «Կատարած ինքն արասցէ». վկայէ և Պաւղոս, թէ «Իբրև կատարեցին զամենայն զգրեալսն վասն նորա՝ իջուցեալ զդին եդին ի գերեզմանի»։*

*477 «Եւ զինն ժամաւն, ասէ, գոչեաց Յիսուս ի ձայն մեծ և ասէ. Էլի էլի, լամա սաբաքթանի, այսինքն է, Աստուած, Աստուած իմ, ընդէ՞ր թողեր զիս»։ Տեսանե՞ս, զի ի հրաժարելն՝ անոխակալութեամբ վարդապետութիւն գործէ, որով և զաւազակն խաչակից իւր և զհարիւրապետն և զբազումս ևս այլս աշակերտեալ։ Քանզի կամօք եկեալ ի կատարումն, և ոչ ուրուք ի բռնութենէ ըմբռնեալ ամենազօրն, վասն որոյ գոչեաց ի ձայն մեծ, զի կատարեսցէ զասացեալսն մարգարէին, թէ «Արեգակն և լուսին խաւարեսցին, և աստեղք ծածկեսցեն զլոյս իւրեանց», և «Տէր ի Սիոնէ գոչեսցէ, և յԵրուսաղեմէ տացէ զձայն իւր»։*



*է մտնելու և լույսը երկրի վրա խավարելու է ցերեկը»։ Նրա նըման է Զաքարիան, թե «այդ օրը այնպես է պատահելու, որ լույս չի լինելու և մի օր ցուրտ ու պաղ է լինելու և այն օրը հայտնի է տիրոջը. ոչ ցերեկն է լինելու, ոչ գիշեր, և երեկոյան լույս է լինելու»։*

*475 Եվ ի՞նչ է, թե «այդ օրը հայտնի է Տիրոջը», եթե ոչ այն, որ նախապես մարգարեների կողմից նկատված էր Տիրոջ օրը, որի ժամադրությունը հասել էր։ Ինչպես և Դանիելը հրեշտակից տեղեկանալով գրեց, թե «Վաթսուներկու շաբաթից (եօթներորդաց) օծյալը կսպանվի»։ Իսկ «Տիրոջը հայտնի է» նշանակում է արեգակով ցույց տրված նշանը, ինչպես սկզբում հաստատեց լուսավորների լինելությունը, թե «Թող նշանների համար լինեն»։ Այդ պատճառով նա երկարացրեց իր մեռնելը խավարադիր ժամի նշանի հետ, որպեսզի «նայեն ու տեսնեն նրան, ում խոցեցին»։ Իսկ նրանք առավել ևս կուրացած և մոլորության հատակին հասնելով, շների նման համրացան, չկարողանալով խոստովանել։*

*476 Եվ նա ամեն ինչ կատարելով, ինչպես ասում է ավետարանագիրը, թե «Դրանից հետո Հիսուս գիտեցավ, թե ահա ամեն ինչ կատարված է և ասաց՝ ծարավի եմ», որպեսզի կատարվի գրվածը, նրան այպանության բաժակով մատուցեցին լեղիով խառըն քացախ»։ Սրա համար է նշել, թե «ամեն ինչ կատարված է»։ Այնտեղ կատարվեց և մարգարեի խոսքը, թե «նա ինքն է վերջավորությունը լրացնելու»։ Պողոսը վկայում է, թե «երբ բոլոր նրա համար գրվածները կատարեցին իջեցնելով նրա դին, դրեցին գերեզման»։*

*477 «Երբ ինն ժամին, ասում է, գոչեց Հիսուս մեծ ձայնով և ասաց՝ էլի էլի լամա սաբաքթանի, այսինքն Աստված, Աստված իմ, ինչու ինձ թողեցիր»։ Տեսնո՞ւմ ես, թե մահվան ժամանակ նա անոխակալությամբ է վարդապետում, որով և սովորեցրեց իր խաչակից ավազակին, հարյուրապետին և այլ աշակերտներին։ Քանզի իր կամքով էր եկել մահվան և ոչ որպես ամենազոր որևէ մեկի կողմից բռնադատված։ Դրա համար մեծ ձայնով գոչեց, որպեսզի կատարվի մարգարեի ասածները, թե «Արեգակն ու լուսինը խավարելու են, և աստղերը ծածկելու են իրենց լույսը», և «Տերը Սիոնից գոչելու է և Երուսաղեմից իր ձայնն է տալու»։*

478 Արդ՝ ո՞վ իցէ ի մարդկանէ, որ ի տագնապել ոգւոյն, յորժամ մօտ ի սպառելն իցէ՝ զաղաղակ տայցէ կամ գոչիցէ. այլ բերանակապ և անբան ևս եղեալ յառաջ քան զմեռանելն իսկ։ Իսկ հաստիչ ոգւոց Քրիստոս, կամաւորական սիրովն եկեալ ի մահ՝ ազդառնէր բարձրաձայն հանդերձ ահաւոր նշանօքն տունկովք, թէ և ի հրաժարելն միակամ միագործ է ընդ Հօր. և յայտնի արարեալ զհաւաստի մահն իւր վասն աշխարհի, բարբառելով զմարգարէականն, թէ «Աստուած Աստուած իմ, ընդէ՞ր թողեր զիս», և թէ «Ի ձեռս քո դնեմ զհոգի իմ»։

479 ԾԶ. Եւ զի մի՛ յերկբայս ինչ վասն փութանակի և լուսաւոր յարութեանն ի նենգաւորացն համարեսցի՝ իջուցեալ ի փայտէն եդին ի գերեզմանի. զորմէ ինքն իսկ կանխաւ նշանակեաց, օրինակելով ըստ մարգարէին, թէ «Որպէս Յովնան եղև ի փոր ձկանն զերիս տիւս և զերիս գիշերս, նոյնպէս լինելոց է Որդի մարդոյ ի սիրտ երկրի»։ Որով լցաւ տեսողութիւնն Եսայեայ, թէ «Ահաւասիկ դնեմ ի հիմունս Սիոնի վէմ պատուական». հանգոյն նմա և հոգեպատում երգողին, թէ «Ի հող մահու իջուցին զիս». որում և Պաւղոս վկայէ, թէ «Մեռաւ ըստ գրոց և թաղեցաւ»։

480 Որոց և Հրեայքն հմուտ և տեղեկագոյն եղեալ ասացելոցն, և պատմեալ դատաւորին զասացեալսն Քրիստոսի, թէ «Յերիր աւուր յառնելոց եմ»՝ առին զդաս մի զինուորաց, զի անքուն ակամբ պատրաստականք կայցեն ի գիշերապահս զգուշութեամբ։ Իսկ Տէրըն, ըստ ասացելոյն իւրոյ, յարուցեալ յաւուրն երրորդի, զի որպէս ի մահն կամօք Հօր՝ նոյնպէս և ի փառս յարութեանն, զի լցցին և ասացեալքն մարգարէին, թէ «Յետ երկուց աւուրց յաւուրն երրորդի յարիցուք և կացցուք առաջի Նորա, և զհետ երթիցուք ճանաչել զՏէր. և իբրև զառաւօտ պատրաստական գտցուք զնա»։ Որով լուծեալ զերկունս մահու. «Քանզի ոչ իսկ էր հնար արգելուլ նմա ի նմանէ», որ չէրն վաճառեալ ընդ մեղօք. զի թէպէտ և վիրաւորեցաւ և համարեցաւ ընդ ննջեցեալսն ի գերեզմանս, առ ի բառնալոյ զմեղս և բժշկելոյ զարարածս իւր՝ այլ «առանց օգնականի և ի մեռեալս ազատ»։

481 Քանզի միայն և անծառայական անձամբ և ի մեղացն ազատ՝ սպան «զզօրացեալ մահ աշխարհական և եհատ զամենայն արտօսր յամենայն երեսաց»։ Վասն այնորիկ և ասացեալն կատարէր, թէ «Ոչ թողցես զանձն իմ ի դժոխս, և ոչ տացես սրբոյ



478 Արդ, ի՞նչ մարդ, որ հոգու տագնապի ժամանակ, երբ մահվան մոտ է լինում, աղաղակ տա կամ գոչի. նա պետք է բերանակապ և անխոս լիներ մեռնելուց առաջ։ Սակայն հոգիների արարիչ Քրիստոսը հոժարակամ սիրով գալով մահվան, բարձրաձայն ազդարարեց, ահավոր նշաններով հանդերձ, թե նույնիսկ մահվան ժամանակ Հոր հետ միակամ և միագործ է։ Նա աշխարհի համար [կատարված] իր հավաստի մահը հայտնի դարձրեց բարբառելով մարգարեությունը, թե «Աստված, Աստված իմ, ինչո՞ւ ինձ թողեցիր» և թե «Քո ձեռքն եմ դնում իմ հոգին»։

479 ԾԶ. Եվ որպեսզի չլինի, թե նենգավորների կողմից որևէ կասկած լինի նրա շտապփույթ և լուսավոր հարության մասին, իջեցնելով նրան փայտից գերեզման դրին, որի մասին ինքն իսկ կանխավ նշել էր, ըստ մարգարեական օրինակի, թե «Ինչպես Հովնան ձկան փորում երեք օր և երեք գիշեր մնաց, նույնպես և մարդու Որդին լինելու է երկրի սրտում»։ Սրանով կատարվեց Եսայիի տեսիլքը, թե «Ահավասիկ Սիոնի հիմքում դնում եմ պատվական վեմ», նրա նման և հոգեպատում սաղմոսերգուն ասում է, թե «Մահվան հողը իջեցրին ինձ», որին Պողոսը ևս վկայում է, թե «Մեռավ [սուրբ] Գրքերի և թաղվեց»։

480 Այս խոսքերին վերահասու և տեղյակ լինելով հրեաները դատավորին պատմեցին Քրիստոսի ասածները, թե «Երեք օրից հառնելու եմ», և զինվորների մի դասակ վերցրին, որպեսզի անքուն աչքերով գիշերը պատրաստ հսկեն զգուշությամբ։ Իսկ Տերը, ըստ իր ասածի, երրորդ օրը հարություն առավ, որպեսզի, ինչպես Հոր կամքով եղած մահվամբ, այնպես էլ հարության փառքով, կատարվեն մարգարեի խոսքերը, թե «երկու օրից հետո երրորդ օրը հարություն ենք առնելու և կանգնելու նրա առջև ու հետևելու, ճանաչելու ենք Տիրոջը և նրան պատրաստ ենք գտնելու արշալույսի նման»։ Սրանով լուծեց մահվան երկունքը «քանզի հնարավոր չէր, որ նա նրանից բռնվի»։ Նա մեղքերի տակ վաճառված չէր և թեպետ վիրավորվեց ու համարվեց գերեզմաններում ննջեցյալներից, սակայն նա «առանց օգնականի և մեռյալների մեջ ազատ էր» բառնալու համար մեղքերը և բժշկելու արարածներին։

481 Քանզի լինելով միակ ինքնիշխան և մեղքերից ազատ, նա սպանեց «աշխարհակուլ զորեղ մահը և արտասուքը սրբեց բոլոր երեսներից»։ Դրա համար նա կատարեց ասվածը, թե «իմ անձը

*քում տեսանել զապականութիւն. ծանուցեր ինձ զճանապարհս քո կենաց, լցուցեր զիս ուրախութեամբ յերեսաց քոց»։ Որ և ասէր իսկ, թէ «Ես եմ հովիւն քաջ, և վասն խաշանց իմոց դնեմ զանձն իմ»։ Եւ ել այնուհետև յերկրէ հովիւն հօտից բանաւոր ոչխարաց. և կատարէ զմարգարէական բարբառն, թէ «Որ եհան յերկրէ զհովիւն հօտից». զոր առաքեալն թարգմանէ, թէ «Եհան ի մեռելոց զհովիւն հօտից զմեծն արեամբ յաւիտենական ուխտին՝ զտէր մեր Յիսուս Քրիստոս»։*

*482 Եւ քանզի բազում անգամ աւանդեալ ի լսելիս օրինականացն զչարչարանսն և զերրորդ աւուր զյարութիւնն, ոչ պարծանօք և ոչ սպառնալով, այլ զի քաղցրուսոյց վարդապետութեամբ ածիցէ զվրիպեալսն ի հաւատոցն ճշմարտութիւն՝ յառաջագոյն ժամադիր առնէ առ ի յարութիւնն։ Զի որոց՝ եկեալ առ ի կուսէն ոչ ծանուցեալ՝ թերևս յորժամ առ ի գերեզմանէն դայցէ՝ դիմեսցեն անկանել յարքայութիւնն։ Քանզի առ ի կեալ կենդանեաց եկն կենդանարարն. և նոքա փոխանակ կենացն՝ յուսահատութեամբ մահու նուիրեցան։*

*483 Մեռաւ ապա վասն մեռելոցն, և յարեաւ՝ զի յարութեամբն իւրով օրինակ լիցի. վասն որոյ և ի գիշերի իսկ արարեալ զլուսաւոր յարութիւնն, զի պահարկելոցն և զգուշացելոցն ծանուսցէ զճշմարտութիւն իւր յիրացն կատարելոց։ Որոց թանձրագոյն և ահագինս արարեալ զարհաւիրսն շարժմամբ երկրին և վիմօքն պատառելովք և գերեզմանօքն բացելովք և մեռելովքն յարուցելովք։ Որով և լնոյր բան մարգարէին, թէ «Լերինք շարժեսցին ի նմանէ, և երկիր խախտեսցի յերեսաց նորա, և վէմք պատառեսցին». որով և «խռովեալ պահապանացն և եղեալ հանգոյն մեռելոց»։*

*484 Իսկ կենդանին յարուցեալ, և հանդերձ հրեշտակացն վկայութեամբ ծանօթս տայ՝ որոց եկեալ սպասէին նմա, որպէս և նշանակեաց մարգարէն, թէ «Քաղցր է Տէր՝ որոց սպասեն նմա յաւուր նեղութեան, և ճանաչէ զերկիւղածս իւր»։ Քանզի յառաջագոյն իսկ հրաւիրեաց յականկալութիւն լուսաբեր յարութեանն. որով եկեալ ի վախճան և բարբառ մարգարէին, թէ «Վասն այսորիկ սպասեա՛ ինձ, ասէ Տէր, յաւուր յարութեան իմոյ ի վկայութիւն»։*



*չես թողնի դժոխքում և քո սուրբը ապականություն չի տեսնելու։ Դու ինձ ծանոթացրիր կյանքի քո ճանապարհին, ինձ լցրիր ուրախությամբ քո երեսից»։ Նա ասել էր նաև, թե «ես եմ քաջ հովիվը և իմ ոչխարների համար դնում եմ իմ անձը»։ Այնուհետև բանավոր ոչխարների հոտի հովիվը ելավ երկրից և կատարեց մարգարեական խոսքը, թե «նա որ երկրից հանեց հոտերի հովվին», որն առաքյալը թարգմանում է, թե «հավիտենական ուխտի մեծ արյամբ հանեց մեռելներից հոտերի հովվին՝ մեր Տեր Հիսուս Քրիստոսին»։*

*482 Քանզի բազում անգամ տեղեկացրել էր օրենքի վարդապետներին չարչարանքների և երրորդ օրում հարության մասին, ոչ պարծանքով և ոչ սպառնալիքով, այլ [կամենում էր] քաղցրաուսույց վարդապետությամբ հավատքից վրիպածներին ճշմարտության բերել։ Նա առաջվանից հարության ժամ էր որոշել, որպեսզի նրանք, ովքեր չճանաչեցին նրան, երբ եկավ կույսից, թերևս այն ժամանակ, երբ գերեզմանից գա, կձգտեն արքայություն ընկնելու։ Քանզի կենդանարարը եկավ կենդանիների կյանքի համար, իսկ նրանք կյանքի փոխարեն հուսահատությամբ մահվան նվիրվեցին։*

*483 Ապա մեռավ մեռելների համար և հարություն առավ, որպեսզի իր հարությամբ օրինակ լինի։ Այդ պատճառով իր լուսավոր հարությունը կատարեց հենց գիշերը, որպեսզի պահակներին և հսկիչներին հայտնի իր կատարած գործի ճշմարտությունը։ Նրանք սարսափելի ահաբեկվեցին երկրաշարժի արհավիրքից, պատառվող քարերից, բացվող գերեզմաններից և հառնող մեռելներից։ Այսպիսով կատարվեց մարգարեի խոսքը, թե «լեռները պիտի շարժվեն նրանից, և երկիրը ցնցվեց նրա առջև, իսկ ժայռերը ճեղքվեցին»։ Ապա և «պահապանները խռովյալ էին, մեռելների նման»։*

*484 Իսկ կենդանին ելավ և հրեշտակների վկայությամբ հայտնեց նրանց, որ եկել էին և սպասարկում էին նրան, որպես և նշել է մարգարեն, թե «քաղցր է Տերը նրանց համար, որ սպասում են նրան նեղության օրը և նա ճանաչում է իրենից երկյուղածներին»։ Քանզի նախ և առաջ նա հրավիրել էր լուսաբեր հարության ակնկալությանը, որով կատարվեց մարգարեի այն խոսքը, թե «սրա համար սպասեց ինձ, ասում է Տերը, մինչև իմ հարության օրը որպես վկայություն»։*

485 Դիմեալ այնուհետև պահապանացն ի քաղաքն, և այնպէս հռչակաւոր և ազգական արարեալ զաստուածագործ յարութիւնն, մինչև անդէն գիշերայն ընթացեալ եկելոց կանանցն ի գերեզմանէն, աւետարանել աշակերտացն զտեսեալ զսքանչելիսն։ Նոյնպէս և պահապանացն ոգեսպառ և սրտաբեկ ի քաղաքն անկեալ, պատմելով քահանայիցն և աշակերտացն եղելոց, մանաւանդ յարուցելոցն ամբոխելոցն և դրդելոցն՝ ի քաղաքն երևելով բազմաց։

486 Որով եկեալ ի վախճան և խոստացեալ բան մարգարէին, թէ «Բացից զգերեզմանս ձեր, ասէ Տէր, և հանից զձեզ ի գերեզմանաց ձերոց»։ Դարձեալ Եսայի ասէ, թէ «Յարիցեն մեռեալք և կանգնեսցին, որ իցեն ի գերեզմանս. զի ցօղ որ ի քէն՝ բժշկութիւն է նոցա»։ Թերևս վասն կենդանարար արեանն Քրիստոսի նշանակեաց, որ ի վերայ խաչին հեղաւ զամենեքումբք։ Եւ զի յայտ արասցէ, եթէ անտի մարգարէացաւ՝ զնովիմբ ածեալ և ի դէմս աշակերտացն. «Գնա՛ ժողովուրդ իմ, մո՛ւտ ի շտեմարանս քո, և փակեա՛ զդուրս քո և թաքի՛ր առ ժամանակ մի»։

487 Իսկ կամակոր ազգին խաչահանուացն, խլացելոցն և կուրացելոցն ի ճշմարտութենէն, ոչ ինչ օգուտ գործեաց՝ ո՛չ պատմութիւն կենդանեացն, և ո՛չ երևել մեռելոցն, և ոչ ահաւորութիւն նշանացն աստուածայաղթ յարութեանն։ Քանզի վասն նոցա իսկ առակեաց ամենագէտն զլինելոց իրսն վասն մեծատանն թելադրեալ. «Թէ Մովսիսի և մարգարէիցն ոչ լուիցեն՝ ապա թէ և ի մեռելոց ոք երթայ առ նոսա՝ ոչ լսեն»։ Որոց ի դէպ ելանէ և բարբառ մարգարէին, թէ «Յաւուր յայնմիկ առից ի վերայ ձեր առակ, և ողբասցեն ողբս ձայնիւ և ասասցեն, թէ թշուառութեամբ թշուառացաք»։ Զոր և առեալ իսկ և ազգականին իւրեանց Պաւղոսի, թէ «Ողբալով ասեմ զթշնամեաց խաչին Քրիստոսի, որոց կատարածն կորուստ է»։

488 Ծէ. Երթայ այնուհետև Քրիստոս ընդ երեկս աւուրն միաշաբաթուն՝ երևել աշակերտացն դրօքն փակելովք, ասէ աւետարանագիրն. և տուեալ զկենդանարար ողջոյնն, և բազում ուրախութիւն աշակերտացն արարեալ։ Անդ կատարէր նուագ սաղմոսարանին, թէ «Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ. արարէ՛ք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սեղանոյ»։ Եւ զի՞նչ իցեն ան-



485 Այնուհետև պահապանները դիմեցին քաղաք և այսպես ազդարարեցին ու հայտնի դարձրեցին աստվածագործ հարությունը, մինչև որ գիշերը կանայք գերեզմանից եկան ավետելու աշակերտներին իրենց տեսած հրաշքները։ Նույնպես և պահապանները ոգեսպառ և սրտաբեկ ընկան քաղաք, եղածը պատմելով քահանաներին ու աշակերտներին, մանավանդ հուզված ու գրգռված ամբոխին, շատերին երևալով քաղաքում։

486 Այսպիսով կատարվեց մարգարեի խոստացածը. «Բացելու եմ ձեր գերեզմանները, ասում է Տերը, և ձեզ հանելու եմ ձեր գերեզմաններից»։ Դարձյալ ասում է Եսային. «Կհառնեն մեռյալները, և կկանգնեն գերեզմանում եղածները, քանզի քեզանից եղած ցողը նրանց կբուժի»։ Թերևս նա ակնարկեց Քրիստոսի կենդանարար արյունը, որը խաչի վրա թափվեց ամենքի համար։ Եվ որպեսզի հայտնի դարձնի, թե այնտեղ մարգարեացավ, նա խոսքը վերաբերեց աշակերտներին։ «Գնա, իմ ժողովուրդ, մտիր քո շտեմարանները, փակիր քո դռները և մի առ ժամանակ թաքնվիր»։

487 Իսկ խաչ հանողների կամակոր ազգը, որը խլացած և կուրացած էր ճշմարտությունից, ոչ մի օգուտ քաղեց ոչ կենդանացածների պատմությունից, ոչ մեռելների երևալուց և ոչ էլ աստվածահաղթ հարության ահավոր նշաններից։ Քանզի նրանց մասին է, որ ամենագետը առակներով խոսեց, հաշվելով այն, ինչ պատահելու էր մեծատունին. «Եթե նրանք Մովսեսին ու մարգարեներին չլսեցին, ապա եթե մեռելներից որևէ մեկը գա նրանց մոտ, չեն լսելու նրան»։ Նրանց էր վերաբերում նաև մարգարեի խոսքը, թե «այն օրը ես ձեր մասին առակ եմ ասելու և նրանք ձայնով ողբալու են ու ասելու, թե՝ մենք խիստ թշվառությամբ թշվառացանք»։ Այդ ողբը իրոք իրենց ազգակից Պողոսը բարձրացրեց, թե «ողբալով եմ ասում Քրիստոսի խաչի թշնամիների մասին, որոնց վախճանը կորուստ է»։

488 Ծէ. Այնուհետև գնում է Քրիստոս միաշաբաթ (կիրակի) օրվա երեկոյան և երևում աշակերտներին փակ դռներից ներս, ինչպես ասում է ավետարանագիրը։ Եվ տվեց նա կենդանարար ողջույնը և աշակերտներին բազում ուրախություն պատճառեց։ Ապա կատարեց Սաղմոսարանի նվագը (երգը), թե «մեր Տեր Աստվածը երևաց մեզ, ուրախության տոն արեք շատ կանուխ մինչև սեղանի (խորանի) անկյունները»։ Եվ ի՞նչ են սեղանի (խորանի)

կինք սեղանոյն՝ եթէ ոչ զխաչն նշանակէ, որ և անկիւնս իսկ ցուցանէ խաչին չորս։

489 Մինն ընդ երկիր ցցեալ, զի յայտնեսցէ դնել զՏեառն գարշապարսն յերկրի. զի ի վերայ վիմին հաստատութեան շինեսցէ դիցէ զբարձրութիւն հիմանց եկեղեցւոյ. որպէս և մարգարէն գուշակեաց, թէ «Ի վերայ վիմին կացոյց զիս Տէր, զի անշարժ առնիցէ»։ Իսկ զբուն անկիւնն՝ զկատարն ի վեր ուղղեալ, զի այն անկիւնն (որ) ի վեր կոյս ուղղեալ է իբրև զկշռուած սահմանի, զբնութիւն այնորիկ, որ ի նորայն ի վերայ բազմեցաւ՝ ի վեր կոյս համանիցէ և անդր հայեցուցեալ զտեսողսն, ի Հայրն ի գլուխն Քրիստոսի, և զբնութիւնն ցուցանիցէ։ Իսկ աջ անկիւնն՝ ցուցանէ զզօրութիւն աջոյ բազկի. աջովն զուրախութիւն արդարոցն զուարթութեան՝ պարգևացն պատրաստելոց պսակացն զարդուն ցուցանէ։ Իսկ ահեակ անկիւնն՝ ղտանջանսն նշմարեցուցանէ զմեղաւորացն։

490 Վասն զի ունի սեղանն չորս անկիւնս, որ է խաչն. և յիրաւի սեղան, զի եղև վերընկալ տէրունական մարմնոյն ճշմարիտ պատարագին որ մատեաւ Հօր։ Յիրաւի և չորս անկիւնս ասէ, զի ուղղեսցի ընդ չորս անկիւնս ամենայն երկրի, և զամենայն տիեզերս ուրախ արասցէ յայսմ սեղանոյ, զերկնաւորս և զերկրաւորս, և զսանդարամետականսն, և զհիմնացեալսն, որ են առաքեալքն և մարգարէքն։ Եւ զերկնաւորսն՝ զհրեշտակս, զզօրսն հոգեղէնս. որոց կարի իսկ ուրախութիւն եղև և լինի ընդ անկարծակամ դարձ կենացն։ Եւ մարդիկ իսկ երկրաւորք՝ որ կեցին և դարձան առ Տէր. և դուք արդ կամիք կեալ այցելութեամբն Քրիստոսի։ Եւ սանդարամետականքն՝ ննջեցեալքն, զորս փրկեաց գալստեամբն իւրով։ Քանզի խաչն, որ կանգնականն՝ զյաղթականն ցուցանէ, վերնանկիւնն զյաղթութիւնն ցուցանէ։

491 Իսկ յայսմ սեղանոյ վայելեցին նախ առաքեալքն, զի տեսին զյարութիւն նորա և ցնծացան. և լցաւ կատարեցաւ այն որ ասէն, թէ «Արարէ՛ք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սեղանոյ»։ Անդ կատարէր և նուագ սաղմոսարանին, թէ «Զերծ յինէն զքուրձ իմ և ինձ զգեցոյց զուրախութիւն»։ Որոց ցուցեալ զնըշանս չարչարանացն յարուցելոյն. որում վկայէ Պաւղոս, թէ «Այսու-



անկյունները, եթե ոչ այն, որ դա նշանակում է խաչը, որը չորս անկյուններ է ցույց տալիս։

489 [Անկյուններից] մեկը ցցեց երկրի վրա, որպեսզի ցույց տա տիրոջ գարշապարը երկրի վրա դնելը, որպեսզի հաստատուն վեմի վրա շինի ու դնի եկեղեցու հիմքերի բարձրությունը։ Ինչպես և մարգարեն է գուշակել, թե «Տերն ինձ կանգնեցրեց վեմի վրա, որպեսզի անշարժ դարձնի»։ Ապա բուն անկյունը՝ կատարը վեր ուղղեց, որպեսզի այդ վեր ուղղված անկյունը որպես հավասարակշռություն, դեպի վեր բարձրացնի նրանց բնությունը, որոնք նրա վրա հենվեցին, և այսպիսով տեսնողները տեսնեն Հորը, Քրիստոսի գլուխը և ցույց տան նրա բնությունը։ Իսկ աջ անկյունը ցույց է տալիս աջ բազկի զորությունը. աջովը ցույց է տալիս արդարների զվարթության ուրախությունը, պատրաստված պարգևները, պսակների զարդարանքը։ Իսկ ձախ անկյունը ցույց է տալիս մեղավորների տանջանքները։

490 Քանզի սեղանը (խորանը) չորս անկյուն ունի, որը հենց խաչն է, և դա իրոք սեղան է, քանզի նա ստացավ տերունական մարմնի ճշմարիտ պատարագը, որը Հորն էր մատուցված։ Հիրավի նա չորս անկյուն է հիշում, որպեսզի ամբողջ երկրի չորս անկյուններին ուղղի և ուրախանա այս սեղանից ամենայն տիեզերքը՝ երկնավորները և երկրավորները, սանդարամետականները (դժոխական) և հիմնացյալները, որոնք առաքյալներն են ու մարգարեները։ Երկնավորները հրեշտակներն են, հոգեղեն զորքը, որը շատ ուրախություն է ունեցել և ունենում է կյանքի անկասկած վերադարձին։ Իսկ մարդիկ են երկրավորները, որոնք ապրում էին և դարձան Տիրոջը և դուք արդ կամենում եք ապրել Քրիստոսի այցելությամբ։ Սանդարամետականները ննջեցյալներն են, որոնց փրկեց իր գալստյամբ։ Քանզի խաչը, որը կանգնեցված է, ցույց է տալիս հաղթականին, իսկ վերնանկյունը ցույց է տալիս հաղթությունը։

491 Այդ սեղանից նախ վայելեցին առաքյալները, քանզի տեսան նրա հարությունը և ցնծացին։ լրացավ-կատարվեց այն, որ ասվել էր, թե «ուրախության տոներ կատարեցեք կանխավ մինչև սեղանի անկյունները»։ Այնտեղ կատարվեց և սաղմոսարանի նըվագը (երգը), թե «ինձ ազատեցիր իմ քուրձից և ինձ ուրախություն հագցրիր»։ Սրանք ցույց են տալիս հարուցյալի չարչարանքների նշանները, որի մասին վկայում է Պողոսը, թե «այսուհետև

Հետև ոչ մեռանի, և մահ նմա ոչ ևս տիրէ»։ Եւ քանզի սքանչելագործ է և անհասական ի քննողաց, և ամենայն անհնարականաց հնարաւոր. զի որպէս յառաջ քան զչարչարելն պարգևեաց զկենդանարար մարմին իւր և զարիւն աշակերտացն, առ ի յայտ առնելոյ թէ ինքնակամ չարչարի՝ նոյնպէս և յետ յարութեանն ցուցանէ յանձին զնշան բևեռացն. յայտ արարեալ թէ չէին բաւական վէրքն արգելուլ ի գերեզմանի զբժիշկն վիրաւորաց։

492 Նոյնպէս և ճաշակեալ ընդ աշակերտսն ի նոր արքայութեանն, զի յայտ արասցէ, թէ որ յանկարօտ և յանճաշակ արքայութեանն ճաշակել գիտէ՝ նոյն և յառաջ քան զչարչարանսն ի քաղցական և ի դարմանաւոր աշխարհիս լի և անկարօտ ամենալցոյցն շրջէր։ Այլ զոր օրինակ անդ առ ի հաստատելոյ զաշակերտսն ճաշակեաց, նոյնպէս և աստ՝ առ ի հաւատարիմ առնելոյ աշխարհի քաղցեաւ, եթէ արդարև իսկական Որդին Աստուծոյ եղև ըստ ժամանակի և որդի մարդոյ, զի կեցուսցէ զաշխարհ։ Վասն որոյ և կանխասաց եղեալ մարգարէին, թէ «Աստուած յաւիտենական, Աստուած, որ հաստատեաց զծագս երկրի, ոչ քաղցիցէ և ոչ վաստակեսցի, և ոչ գոյ քննութիւն իմաստութեան նորա»։ Երևի և Կղէոպեանց ումեմն ի ճանապարհին Եմմաւուսայ, և առաջի եդեալ նոցա զաւանդեալս մարգարէականս, որ վասն նորա վկայեալ։

493 ԾԸ. Յետ այսորիկ երևեալ աշակերտացն առ Տիբերական ծովուն, և արարեալ նշանս առ ի հաստատելոյ զնոսա, և յայտ արարեալ նոցա, թէ ոչ սակաւիկ ինչ կասեցուցեալ գերեզմանին զաստուածագործ զօրութիւնն. այլ որպէս և առ ծննդեամբն, և յառաջ քան զչարչարանսն և ի չարչարանսն՝ նովին զօրութեամբ և յետ յարութեանն։ Որում և վկայեաց իսկ երանելին Պաւղոս, թէ «Յիսուս Քրիստոս երէկ և այսօր, նոյն և յաւիտեանս յաւիտենից»։

494 Յիշեցուցանէ ապա աշակերտացն և վկայ ածէ զյառաջագոյն ասացեալսն իւր և ասէ. «Այս բանք են զոր խօսեցայ ընդ ձեզ՝ մինչ առ ձեզն էի, թէ պարտ է լնուլ ամենայն գրելոցն յօրէնսն Մովսիսի և ի մարգարէս և ի սաղմոսս վասն իմ». և փչեաց ի նոսա Յիսուս և ասէ. «Առէ՛ք զՀոգի սուրբ»։ «Եւ յայնժամ եբաց զմիտս նոցա՝ իմանալ զգիրս, և ասէ ցնոսա, թէ այսպէս պարտ էր չարչարել Քրիստոսի և յառնել ի մեռելոց յաւուր երրորդի»։



չի մեռնի և մահն այլևս չի տիրի նրան»։ Նա սքանչելագործ է, քննողներին անհասանելի և ամեն անհնարը հնարավոր դարձնող։ Քանզի ինչպես չարչարանքից առաջ իր կենդանարար մարմինը և արյունը պարգևեց աշակերտներին հայտնելու համար, թե ինքնակամ չարչարվեց, նույնպես և հարությունից հետո իր անձի վրա ցույց է տալիս բևեռների նշանը, հայտնի դարձնելու, թե վերքերը բավական չէին գերեզմանում պահելու վիրավորների բժշկին։

492 Նույնպես և ճաշակեց աշակերտների հետ նոր արքայության մեջ, որպեսզի ցույց տա, թե ինքը, որ անկարոտ և հաճելի արքայության մեջ գիտի ճաշակել, նույնպես և չարչարանքներից առաջ շրջում էր քաղցի և դարմանի կարոտ աշխարհում, ինքն անկարոտ, սակայն այլոց լիացնելով։ Բայց ինչպես այնտեղ ճաշակեց աշակերտներին հաստատելու համար, այնպես և այստեղ քաղցած մնաց աշխարհին համոզելու, թե արդարև իսկական Աստուծո որդին ծնվել էր հենց ժամանակին իբրև մարդու որդի, որպեսզի աշխարհն ապրեցնի։ Այս առթիվ մարգարեն կանխասաց եղավ ասելով, թե «Հավիտենական Աստվածը, Աստվածը որ հաստատեց երկրի ծայրերը, չի քաղցի և չի հոգնի և նրա իմաստությունը չի քննվի»։ Երևաց նաև Կղեոպյանց Եմմաուսի ճանապարհին և նրանց առջև պարզեց մարգարեական ավանդները, որոնք նրա մասին են վկայում։

493 ԾԸ. Դրանից հետո երևաց աշակերտներին Տիբերական ծովի մոտ, հրաշքներ կատարեց նրանց [հավատը] հաստատելու համար և նրանց հայտնեց, թե գերեզմանը նույնիսկ սակավիկ չափով չի կասեցրել աստվածային զորությունը։ Սակայն ինչպես իր ծննդյան ժամանակ և չարչարանքներից առաջ ու չարչարանքների ժամանակ, նույն զորությունն ուներ նաև հարությունից հետո։ Որի մասին վկայել է նաև երանելի Պողոսը, թե «Հիսուս Քրիստոս երեկ և այսօր նույնը և հավիտյանս հավիտենից»։

494 Ապա հիշեցնում է աշակերտներին և վկա է բերում նախապես ասվածը, թե «այս խոսքերն են, որ խոսեցի ձեզ, մինչդեռ ձեզ մոտ էի, թե պետք է կատարվեն Մովսեսի օրենքում, մարգարեների մոտ և սաղմոսներում բոլոր գրվածները իմ մասին»։ Հիսուս շունչ փչեց նրանց վրա և ասաց՝ «Առեք սուրբ հոգին»։ «Այն ժամանակ նա բացեց նրանց մտքերը՝ ճանաչելու Գրքերը և ասաց նրանց, թե այսպես պետք է չարչարվեր Քրիստոս և երրորդ օրում մեռելներից հարություն առներ»։

495 Եւ իբրև կատարեաց զուխտադրութիւնն Աստուծոյ վասն հրէական ազգին, զորոց և ամբաստան եղեալ յառաջագոյն ասելովն, «Իմ եթէ չէր եկեալ և խօսեցեալ ընդ նոսա՝ մեղ ինչ ոչ գոյր նոցա. բայց արդ չիք պատճառք վասն մեղաց իւրեանց. զի տեսին զգործս իմ, զոր այլ ոչ ոք գործեաց, և ատեցին զիս և զՀայր իմ», — դարձուցանէ այնուհետև զլուսաւոր վարդապետութիւնն իւր ի հեթանոսս. որով ածեալ ի կատարումն զառաջապատում պատգամս Եսայեայ, թէ «Ետու զքեզ յուխտ ազգին և ի լոյս հեթանոսաց՝ լինել փրկութիւն մինչև ի ծագս երկրի»:

496 Եւ հանեալ զաշակերտսն ի լեառն Ձիթենեաց և հաստատեալ միաւորական ճշմարտութեամբն, ասելով, թէ «Գնացէ՛ք այսուհետև աշակերտեցէ՛ք զամենայն հեթանոսս, և մկրտեցէ՛ք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ». «Եւ ամբարձեալ զձեռս իւր օրհնեաց զնոսա. և ընդ օրհնելն վերացաւ յերկինս», ասէ աւետարանագիրն. զի կատարեսցի երգ սաղմոսարանին, թէ «Համբարձաւ Աստուած օրհնութեամբ»։ Որոց հրաման տուեալ, թէ «Նստարո՛ւք յԵրուսաղէմ, և ես առաքեցից զաւետիս Հօր իմոյ ձեզ». որով եկեալ ի վախճան Ամովսական բարբառն, թէ «Որ շինէ յերկինս զհամբառնալ իւր, և զաւետիս իւր յերկիր հաստատէ։

497 ԾԹ. Ակն արկեալ մեզ այսուհետև ի վախճան ասացելոցս, ճառս ի մէջ առնուլ զքրիստոսապատում աւետեացն խոստացելոց վասն մխիթարութիւնաբեր (աղբեր) Հոգւոյն սրբոյ։ Մանաւանդ զի առընթեր ևս ունիցիմք զդիւրահասոյց քաջալերիչն զերանելին Ղուկաս, որ իրագէտ և միջամուխ քրիստոսագործ իրացն կատարելոց ճանաչի. վասն որոյ և բարձրապատում իսկ հնչեցուցանէ ի սկզբանն տիեզերախօս աւետարանին ասելովն, թէ «Կամ եղև և ինձ, որ ի սկզբանէն զհետ երթեալ էի ամենայնի ճշմարտութեամբ՝ կարգաւ գրել քեզ, քաջդ Թէոփիլէ, զի ծանիցես զբանիցն որոց աշակերտեցարն զճշմարտութիւն»:

498 Եւ քանզի համառօտ բանիւք առ ի կատարած աւետարանին իւրոյ զերկանչու ճանապարհն Քրիստոսի նշանակեաց՝ առնու դարձեալ յառաքելանշան յերկրորդ մատենին զորպիսութիւն իրացն կարգել. և միանգամայն իսկ զառաջագիր աւետարանն յիշատակելով՝ սկիզբն դնէ առաքելագործ Գրոյն, նշանակեալ և զնոյն Թէոփիլոս. «Զբանն առաջին զոր արարի վասն ամենայնի, ո՛ Թէոփիլէ, զոր սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել»։ Վասն որոյ և կարճապատում շարեալ՝ ի վերանալն փութայ և լուսաւորագոյն ևս



495 Երբ հրեա ազգին վերաբերյալ Աստծո ուխտադրությունը կատարվեց, որին Նա նախապես ամբաստանել էր ասելով. «Եթե ես չգայի և չխոսեի նրանց հետ, նրանք հանցանք չէին ունենա, բայց արդ չկա արդարացում նրանց մեղքերին, քանզի տեսան իմ գործերը, որ ուրիշ ոչ ոք չի գործել և ատեցին ինձ ու իմ Հորը»։ Այնուհետև իր լուսավոր վարդապետությունն ուղղեց հեթանոսներին և կատարման մասին առաջ բերելով Եսայիի առաջապատում պատգամները, թե «քեզ ազգին տվեցի որպես ուխտ և լույս հեթանոսներին, փրկություն բերելու մինչև երկրի ծայրերը»։

496 Նա հանեց աշակերտներին Ձիթենյաց լեռը և հաստատեց միասնական ճշմարտությամբ ասելով, թե «գնացեք այսուհետև աշակերտներ դարձրեք բոլոր հեթանոսներին և մկրտեցեք նրանց հանուն Հոր և Որդու և Սուրբ Հոգու»։ «Եվ բարձրացնելով ձեռքը, օրհնեց նրանց և օրհնելով վերացավ երկինք», ասում է ավետարանագիրը, որպեսզի կատարվի սաղմոսարանի երգը, թե «Աստված համբարձավ օրհնությամբ»։ Նրանց հրաման տվեց, թե «նստեցեք Երուսաղեմում և ես իմ Հոր ավետիսը ձեզ կառաքեմ», որով և կատարվեցին Ամովսի խոսքերը, թե «Նա իր համբառնալը երկնքում է կատարում և իր ավետիսը երկրի վրա հաստատում»։

497 ԾԹ. Այսուհետև ակնարկ գցենք այս ասվածների լրանալու վրա, ճառաբանություն կատարենք խոստացված քրիստոսապատում ավետիսների մասին, որոնք վերաբերում են մխիթարությունաբեր Սուրբ Հոգուն։ Մանավանդ որ առընթեր ունենք դյուրըմբռնելի քաջալերիչ Ղուկասին, որը ճանաչված է որպես իրագետ և միջամուխ Քրիստոսի կատարած գործերին, և որի մասին բարձրապատում հնչեցնում է իր տիեզերախոս ավետարանի սկզբում ասելով, թե «ես էլ որ սկզբից այն ամեն ինչին ճշգրտությամբ տեղեկացել էի, կամեցա կարգով գրել քեզ, ով քաջդ Թեոփիլոս, որպեսզի սովորած խոսքերիդ ճշմարտությունն իմանաս»։

498 Եվ քանի որ իր ավետարանի վերջում համառոտ խոսքերով նկարագրեց Քրիստոսի երկնային ճանապարհը, ապա իր երկրորդ մատյանում՝ առաքյալների մասին [կրկին] դեպքերի որպիսությունն է կարգում և անմիջապես նախկինում գրված ավետարանը հիշատակելով, սկսում է առաքյալների գործոց Գիրքը, հիշելով նույն Թեոփիլոսին. «Նախկին պատմությունը, որ գրել էի ամեն ինչի մասին, ով Թեոփիլոս, որն սկսեց Հիսուս անել և ուսուցանել»։ Դրա համար և կարճապատում շարելով, աճապարում է

պատմեալ զհանգամանս վերանալոյն, զհրամանացն Քրիստոսի առ աշակերտսն, և զամպաչու ելս նորին, և զվկայութիւն հրեշտակացն իջելոցն վասն վերանալոյն Քրիստոսի, և զօրինակն միւսանգամ նորին գալստեանն։

499 Յետ այնորիկ պայծառագոյն և առաւել սքանչելագոյն նշանակէ զէջս Հոգւոյն սրբոյ յերկնից, թէ «Ի կատարել աւուրցն պենտեկոստէից էին ամենեքեան միաբան ի միասին. և եղև յանկարծակի հնչիւն յերկնից եկեալ իբրև սաստիկ հողմոյ, և ելից զամենայն տունն յորում նստէին. և երևեցան նոցա բաժանեալ լեզուք իբրև ի հրոյ, և նստաւ իւրաքանչիւր ի վերայ նոցա, և լցան ամենեքեան Հոգւով սրբով, և սկսան խօսել յայլ լեզուս, որպէս և Հոգին տայր բարբառել նոցա»։

500 Տեսանե՞ս զբարձրանշան զհռչակաւոր և զանկարծահաս զմուտն Հոգւոյն սրբոյ։ «Եւ եղև, ասէ, յանկարծակի հնչիւն յերկնից եկեալ իբրև սաստիկ հողմոյ»։ Եւ յայտ իսկ է, եթէ երկնաւորացն և երկրաւորացս ծանուցեալ զէջս Հոգւոյն սրբոյ, մանաւանդ թէ հանդերձ երկնաւորական զօրուն խաղացեալ գայր։ Որում յառաջընծայ եղեալ յերգս սաղմոսարանին՝ մարգարէն հայէր, որպէս ի քառասներորդ իններորդ սաղմոսին նուագի, թէ «Աստուած մեր յայտնապէս եկեսցէ, և հուր առաջի նորա գնասցէ, և շուրջ զնովաւ մրրիկ յոյժ. կոչեսցէ զերկինս ի վերուստ և զերկիր ի դատել զժողովուրդ իւր և ժողովել առ ինքն զսուրբս իւր»։

501 Եւ քանզի յառաջագոյն վկայութիւն եղեալ Հոգւոյն սրբոյ տանն Իսրայելի և ուխտ եղեալ քրիստոսամուտ գալստեանն՝ երկնիւք և երկրաւ. երբեմն՝ թէ «Նայեցարո՛ւք, երկինք, և խօսեցայց, և լուիցէ երկիր զպատգամս բերանոյ իմոյ», և երբեմն՝ թէ «Լուիցէ երկին, և ունկն դիցէ երկիր, զի Տէր խօսեցաւ»։

502 Եկեալ այնուհետև ի դատաստան, կոչել զերկինս և զերկիր, դատել զժողովուրդս։ Վասն որոյ ամենափրկիչն նշանակեաց, թէ «Եկեալ յանդիմանեսցէ զաշխարհս վասն մեղաց, զի ոչ հաւատան յիս»։ Քանզի տեղեկագոյնք և ընդելականք էին Հոգւոյն տունն իսրայելական առ ի գումարութենէ մարգարէիցն յարուցելոց և նոցին սքանչելեօքն։ Եւ աշխարհի աննիազ երևեալ, որ և հեթանոսական ազգացն յայտնի եղեալ աստուածական Հոգւոյն զօրութիւն. և նշանակէ իսկ ծանուցեալ թագաւորացն՝ ասել փարաւոնի ցՅովսէփ,



վերանալը (համբարձումը) պատմել և առավել ևս լուսավորագույն պատմելով վերանալու հանգամանքները, Քրիստոսի հրամանները աշակերտներին, նրա ամպաչու ելքը և իջնող հրեշտակների վկայությունը Քրիստոսի վերանալու մասին և նրա մյուս անգամ կրկին գալստյան օրինակը։

499 Սրանից հետո նա նկարագրում է Սուրբ Հոգու պայծառագույն և առավել սքանչելագույն վայրէջքը երկնքից, թե «Պենտեկոստեի* օրերի ավարտին ամենքը հավաքված էին միասին, և հանկարծակի հնչյուն եղավ երկնքից սաստիկ հողմի նման և լցրեց ամբողջ տունը, ուր նստել էին, և նրանց երևացին բաժանված լեզուներ կարծես թե կրակից և նստեցին յուրաքանչյուրի վրա։ Ամենքը սուրբ Հոգով լցվեցին և սկսեցին այլ լեզուներ խոսել, ինչպես Հոգին նրանց խոսել էր տալիս»։

500 Տեսնում ես սուրբ Հոգու բարձրանշան հռչակավոր և անհասկանալի մուտքը. «Եվ պատահեց, որ, ասում է, հանկարծակի հնչյուն եկավ երկնքից սաստիկ հողմի նման»։ Եվ հայտնի է, որ երկնավորներն ու երկրավորները իմացան Սուրբ Հոգու վայրէջքը, մանավանդ որ նա եկավ երկնավոր զորքով հանդերձ։ Մարգարեն որ առաջընծա էր այս բանը [ասել] սաղմոսարանի երգերում, ինչպես նվագվում է (երգվում է) քառասունիններորդ սաղմոսում, թե «մեր Աստվածը հայտնապես կգա և նրա առջևից հուր է գնալու, շուրջը սաստիկ մրրիկ է լինելու, երկինքը կանչելու է ի վերուստ և երկիրը՝ դատելու իր ժողովրդին և իր մոտ հավաքելու իր սրբերին»։

501 Քանզի Սուրբ Հոգին հառաջագույն վկայություն ավեց Իսրայելի տանը և ուխտ արեց Քրիստոսի գալստյան համար երկնքով ու երկրով, երբեմն ասելով՝ «Ուշ դիր, երկինք, որ խոսեմ, և թող երկիրը լսի իմ բերանի պատգամները», և երբեմն, թե «Երկինքը լսելու է և երկիրը ունկնդրելու, քանզի Տերը խոսեց»։

502 Այնուհետև նա գալու է դատաստանի՝ կանչելով երկինքն ու երկիրը, դատելու ժողովուրդներին։ Այս մասին ամենափրկիչը հայտարարեց, թե «Գալով հանդիմանելու է աշխարհը իր մեղքերի համար, քանզի չհավատացին ինձ»։ Իսրայելի տունը լավատեղյակ և քաջածանոթ էր Հոգուն շնորհիվ մարգարեների գնդի, որոնք հայտնվել էին և հայտնի էին իրենց հրաշքներով։ Նրանք աշխարհում կարող չէին, և հեթանոս ազգերին ցույց տվեց աստվածային Հոգու զորությունը։ Նրանք հայտարարեցին և ծանոթացրին թա-

թէ «Ոչ գտանեմք զոք իբրև զքեզ՝ որ ունիցի զՀոգի Աստուծոյ»։ Նոյնպէս և Բաղտասար ասաց ցԴանիէլ, թէ «Գիտեմք զի Հոգի սուրբ Աստուծոյ գոյ ի քեզ»։

503 Կ. Այլ որդիքն Իսրայելի առաւել ևս յղփացոյնք և ստուարացոյնք մարգարէիւքն ճանաչէին։ Մեծն Մովսէս հանդերձ եօթանասուն և երկու ծերովքն յանապատի անդ. և ի պարգևական երկրին դասք դասք մարգարէից յարուցելոց յաւուրս Թագաւորացն, որ ի Թագաւորագիր մատեանսն կարգեալ կայ, որոց բնաւ ինքնապատում յայտնի արարեալ զմերձաւորութիւն Հոգւոյն։ Եսայի ասէ. «Հոգի Տեառն ի վերայ իմ». և Միքիէ, թէ «Ես լցայց Հոգւով զօրութեամբ Տեառն»։ Իսկ Եզեկիելի միանգամայն յայտնի արարեալ կազդական զօրութիւն Հոգւոյն, ըստ պատմութեան կառանչան տեսլեանն։ Կամ նոյն ինքն իսկ յորժամ սքանչելակերպ զյարութիւնագործ տեսիլն պատմէր, թէ «Եղև ձեռն Տեառն ի վերայ իմ. և առ զիս Հոգի սուրբ, և տարաւ ի դաշտ մի, որ լի էր ոսկերօք զօրաց բազմաց. և ասէ ցիս. Որդի մարդոյ, իցէ՞ թէ կենդանի լինիցին ոսկերքդ այդ. և ասեմ. Տէր Տէր, դու գիտես զայդ»։

504 Տեսանե՞ս զմարգարէն, ո՛րպիսի ճշմարտագոյնս տեղեկացեալ, յայտ առնելով զաստուածական պատիւ Հոգւոյն սրբոյ։ Ի միտ առ և զաստուածահրաման գործոցն զօրութիւն ի վերայ թանձրախուռն ոսկերացն հնացելոց, թէ ո՛րպէս առ իւրաքանչիւր յօդս յարեալք և պատուաստեալք և կենդանացեալք՝ կանգնեցան կացին. զի մի ի բանիցն և ի հրամանացն միայն, այլ առաւել ևս յիրացն կատարելոց առեալ ստանիցիս զճշմարտութեանն բարձրութիւն։

505 Եւ արդ՝ նոյն բաւական և ամենակար Հոգին սուրբ, քննիչ խորոցն Աստուծոյ, որ յառաջագիր օրինօքն աւետարանեաց մարգարէական բարբառովք վասն կենսաբեր գալստեան Որդւոյն Աստուծոյ՝ առաքեցաւ յաստուածական փառացն ի ժողով երկոտասանիցն ընտրելոց, «ժողովել առ ինքն զսուրբս իւր», և ճշմարտագոյն հաստատել վասն իրացն կատարելոց, որ Քրիստոսիւն գործեցան։

506 «Եւ երևեցան նոցա բաժանեալ լեզուք իբրև ի հրոյ». զի ականատես իսկ փայլեցուցէ զշնորհացն բարձրութիւն։ Եւ նոքա լցեալ Հոգւով սրբով, որք և ի մերձաւորացն եպերեալք, եթէ «արբեալք իցեն». այլ և էին իսկ արբեալք մարգարէական բաժակաւն։



գավորներին փարավոնի ասածը Հովսեփին, թե «Մենք չենք գտնում քո նմանը, որն ունի Աստուծո հոգին»։ Նույնպես և Բաղդասարը ասել է Դանիելին, թե «Գիտենք, որ Աստուծո սուրբ Հոգին քո մեջ է»։

503 Կ. Իսրայելի որդիները առավել ևս հայտնի էին որպես մարգարեներով հղփացած և լիացած՝ մեծն Մովսեսը յոթանասուներկու ծերերով հանդերձ անապատում, իսկ պարգևական երկրում խումբ-խումբ մարգարեները, որոնք ելան թագավորների օրոք և դա կարգված է Թագավորագիր մատյաններում (Գիրք թագավորաց)։ Նրանք բոլորը պատմելով հայտնի դարձրին Հոգու մերձավորությունը։ Եսային ասում է՝ «Տիրոջ հոգին իմ վրա է»։ Եվ Միքիեն, թե «Ես լցվելու եմ հոգով Տիրոջ զորությամբ»։ Իսկ Եզեկիելը միանգամայն հայտնի դարձրեց հոգու ազդու զորությունը, ըստ կառանչան տեսիլքի պատմության։ Կամ թե ինքն իսկ երբ պատմում էր սքանչելակերպ հարության տեսիլքը, թե «Տիրոջ ձեռքը իմ վրա եղավ, Սուրբ Հոգին ինձ մոտ է և տարավ մի դաշտ, որը լի էր բազում զորքերի ոսկորներով և ասաց ինձ՝ մարդո՛ւ Որդի, կարո՞ղ են այդ ոսկորները կենդանանալ, և ասացի՝ Տեր, Տեր, դու գիտես այդ»։

504 Տեսնո՞ւմ ես մարգարեն ինչպես ճշմարտագույնը տեղեկանալով, բացահայտում է Սուրբ Հոգու աստվածային պատիվը։ Նկատիր նաև աստվածահրաման գործերի զորությունը, հնացած, թանձրախուռն ոսկորների նկատմամբ, թե ինչպես ամեն մի հոդակապ ելնելով, պատրաստվելով, և կենդանանալով կանգնեց։ Քանզի ոչ միայն խոսքերով ու հրամաններով, այլ առավել ևս կատարված բաներով կարող ես ըմբռնել ճշմարտության բարձրությունը։

505 Եվ արդ՝ նույն հզոր և ամենակարող Սուրբ Հոգին՝ Աստուծո խոսքերի քննիչը, որ առաջագիր օրենքներով մարգարեական ձայների միջոցով ավետարանել էր Աստուծո որդու գալուստը՝ առաքվեց աստվածային փառքի կողմից տասներկու ընտրյալների ժողովին «Իր մոտ հավաքելու իր սրբերին» և ճշմարտագույն հաստատելու եղած գործերը, որոնք Քրիստոսի միջոցով կատարվեցին։

506 «Եվ նրանց երևացին բաժանյալ լեզուներ կրակի նման», որպեսզի աչքին տեսանելի ձևով փայլեցնի շնորհների բարձրությունը։ Իսկ նրանք Սուրբ Հոգով լցված էին և իրենց մերձավորները նրանց այպանում էին, թե «Հարբած են», և նրանք իրոք

*Զի նոքա արբեալք և ուրախացեալք և միանգամայն ամենայն տիեզերաց առեալ բերեալ զբարձրութեանց ուրախութիւնս։ Զոր և ընդ նոցայն փոխանակ պատմեալ մարգարէին, թէ «Ուրախ եղէց և ցնծացայց ի քեզ». և դարձեալ՝ թէ «Արբեցայց յերևել յերեսաց փառաց քոց». և եթէ «Բաժակ քոյ որպէս զանապակ արբեցոյց զիս». և թէ՝ Ողորմութիւն քո, Տէր, յառաջ մղեսցէ զիս». և յայտնի իսկ ծաւալեալ հոսեցան շնորհք Հոգւոյն սրբոյ։*

*507 Եւ իբրև հուր երևեալ՝ զի խոտանն այրեսցի, և ընտիրն լցցի բաժակօք ուրախութեան Հոգւոյն, անկարօտ զանձու պարգևօքն որ ոչ անցանէ։ Եւ նոքա լցեալք անկարօտ հոսանօք Հոգւոյն՝ միանգամայն զամբարեցին հրդեհական Հոգւոյն զօրութեամբ։ Որոց բարեխնդրացն բարութեան ուրախութիւն պատրաստեցին, ամենայն տիեզերաց մատուակք եղեալ արբուցին ծարաւեաց, իսկ անհնազանդիցն արբուցին զկործանումն։*

*508 Զի սկիզբն մատուակութեան՝ ժիր մարգարէն մանուկն Երեմիա ընթացեալ արբոյց բազում լեզուաց զբաժակն հատուցման մեղացն և զդառնութիւն մահուն անկանգնական։ Իսկ սոքա միանգամայն արբին զհուր Հոգւոյն ուրախութեան, և եղեն մատուակք ընդ տիեզերս. ընթացան, պաշտեցին զանուշութիւն բաժակօքն քաղցրութեանց ուրախութեան արժանեացն ի բազմականս արքայութեան հարսանեացն։ Իսկ յուլացն ծուլացելոց, անմտացն շքթելոցն խառնեցին և արբուցին զմրուր բաժակացն լեղւոյն դառնութեան, զի այրեսցին իսկ ընդ ըմպելն շրթունք իւրեանց և անձինք իւրեանց։*

*509 Արբ զայս բաժակ Անանիա և կինն իւր Սափիրա, և ոչ կարացին զօրել ուժոյ զօրութեան անոյշ գինւոյ նորա։ Ծարաւեցան արբին ղմայլեցան, և պասքեցան ի մաղձոյն, որ թաքուցեալ էր ի փոր նոցա. չորացան երկմտութեան մեղօքն իւրեանց, և կիզան ի համոյ հրաբաժակ գինւոյն սաստիկ զօրութեանն։ Արբ զայն բաժակ և կին ումն Տաբիթա. բաժակ գինւոյն, որ արբոյց և ննջեցոյց զնա՝ դարձեալ առողջութեամբ արդարութեան կանխեաց և յարոյց զնա յուսովն։ Արբ ի բաժակէն յայնմանէ և Կոռնելիոս, որ եղև արժանի բազմականին, և եւ բազմաց որ ընդ նմայն էին։*



*հարբած էին մարգարեական բաժակով։ Նրանք հարբած էին, ուրախացած և միանգամայն ամբողջ տիեզերքին բերել էին բարձրության ուրախությունները։ Նրանց փոխարեն մարգարեն պատմում է, թե «Ուրախ եմ լինելու և ցնծալու եմ ի քեզ», և դարձյալ թե «Հարբելու եմ քո փառքի երեսին երևալուն», և թե «Քո բաժակը, որպես անապակ գինի, հարբեցրել է ինձ» և թե «Քո ողորմությունը Տեր, ինձ առաջ է մղելու», և հայտնապես Սուրբ Հոգու շնորհները ծավալվեցին և հոսեցին։*

*507 Եվ [Հոգին] իբրև հուր երևաց, որպեսզի խոտանը այրի և ընտիրը լցվի Հոգու ուրախության բաժակների մեջ, անսպառ գանձի պարգևներով, որոնք չեն անցնում և նրանք լցված լինելով Հոգու անսպառ հոսանքով, միանգամայն պայծառ վառվեն Հրդեհող Հոգու զորությամբ։ Բարին խնդրողներին բարության ուրախություն է պատրաստված և նրանք լինելով ամբողջ տիեզերքի մատովակներ, արբեցրին ծարավներին, իսկ անհնազանդներին արբեցրին կործանումով։*

*508 Քանզի մատովակության սկզբում ժիր մարգարեն երիտասարդ Երեմիան, առաջ ընթանալով բազում լեզուների խմեցրեց մեղքերի հատուցման բաժակը և անխուսափելի մահվան դառնությունը։ Իսկ սրանք (մարգարեները) միանգամայն խմեցին ուրախության Հոգու հուրը և եղան մատովակներ տիեզերքի մեջ։ Առաջ ընթացան և արքայության հարսանիքին արժանի բազմականներին անուշ խմիչք մատուցեցին ուրախ քաղցրության բաժակներով։ Իսկ թուլացածներին ու ծուլացածներին, անմիտներին ու շփացածներին խառնեցին և արբեցրին դառն լեղիի բաժակների մրուրով, որպեսզի ըմպելու ժամանակ նրանց շրթունքներն ու անձերը այրվեն։*

*509 Այս բաժակը խմեց Անանիան և նրա կինը՝ Սափիրան և նրանք չկարողացան դիմանալ նրա անուշ գինու զորության ուժին։ Նրանք ծարավեցին, խմեցին, ղմայլեցին և պապակեցին մաղձից, որ թաքնված էր նրանց փորում։ Չորացան իրենց երկմտության մեղքերով և կիզվեցին հրաբաժակ գինու սաստիկ զորեղ համից։ Այդ բաժակը խմեց նաև մի կին՝ Տաբիթան։ Գինու բաժակը, որ հարբեցրեց և ննջեցրեց նրան, դարձյալ արդարության առողջությամբ բարձրացրեց նրան և հույսով հարություն տվեց։ Այդ բաժակից խմեց նաև Կոռնելիոսը, որն արժանի էր եղել կոչունքին և շատերին տվեց, որոնք իր հետ էին։ Շմավոնի մատրո-*

Մատռուակութիւն Շմաւոնի սկիզբն արար ուրախութեանց ի նմանէ, բաժակաւն որ ի ձեռին նորա։

510 ԿԱ. Եւ ահա գայ պաշտէ զամենեսին, և եհաս ահաւասիկ մինչև առ ձեզ։ Ահա լի են շտեմարանք այսր Թագաւորի, և կազմ են մատռուակք արբուցիչք. յօրինեալ են բաժակք ի մատունս, և յօրինեալ բազմականք ի տաճարս, կազմեալ զըմպելի քաղցր և անոյշ գինի ուրախութեան ամենեցուն, որ կամին ըմպել զնա հաւատովք։ Կազմեալ է և զմուռն դառնութեան խաւարին չարութեան՝ չարացն ըմպելին, այրիչն կործանման։

511 Արդ ահա զոր կամիք ըմպել՝ պատրաստ է երկոքումբք ստուգութիւն ձեզ մատուցանել։ Արբէ՛ք զիմաստութիւն և մի՛ զանմտութիւն, զողորմութիւն և մի՛ զբարկութիւն. զհաւատոն քաղցրութեան, և մի՛ զերկմտութիւն անհաւատութեան՝ զայրիչ հրոյն չարութեան, որ տոչորէ ի գեհենի և ի խաւար տանի. այլ զհուր բաժակացն, որ լուսաւորեսցէ զձեզ յըմպելն ձերում զնա, և այրեսցէ զժանգ մեղաց տգիտութեան ձերոյ, և պահեսցէ զանձինս ձեր յուսով հաւատոց ձերոց։

512 Առաքեալքն երանելիք արբին և արբեցան, և ուրախ եղեն. և արբուցին տիեզերաց երկուք բաժակօք՝ որք կամեցան ըմպել զինչ կամեցանն։ Արբոյց և ձեզ աւադիկ յիմարութիւն տգիտութեան, և խառնեաց աւադիկ ձեզ դեղ բաժակ մահու. առէ՛ք արբէ՛ք արդ հաւատովք զբաժակն բժշկութեան կենաց անձանց ձերոց, զի փրկութեամբ ապրեսջիք յայրմանէն՝ որ գալոցն է։

513 Ահա հասեալ է բաժակն պատուհասի պատժոց յանձինս ձեր. առէ՛ք արբէ՛ք զբաժակն խաղաղութեան՝ որ լին է օգտութեամբ։ Ծարաւի լերուք ապաշխարութեան, զի խառնեսցի ձեզ մխիթարութիւն ուրախութեան։ Արբէ՛ք զհոգին որդեգրութեան, և մի՛ զհոգին պղծութեան, զոր արբ Շաւուղ և տարագրեցաւ։ Արբ Դաւիթ, և եմուտ յուրախութիւն Տեառն իւրոյ. նոյնպէս և դուք՝ թէ կամիք միայն. բարերար է ուրախարարն, որ առաքեաց առ ձեզ զայս զառաքեալս, որ եկին ձեզ յուրախութիւն, և բերին երկուս բաժակս, զմինն սաստից, և զմիւսն ուրախութեանց։

514 Զի այն, որ առաքեաց զերկոտասանսն իւր ընդ ամենայն երկիր մատռուակս՝ նոյն առաքեաց և զայս զիր վկայսս ի մէջ ձեր։



վակությունը նրանից եկող ուրախությունների սկիզբը դրեց իր ձեռքի բաժակով։

510 ԿԱ. Եվ ահա գալիս բոլորին սպասարկում է և ահավասիկ մինչև ձեզ է հասել։ Ահա լի են այս Թագավորի շտեմարանները և պատրաստ են արբեցնող մատռվակները, բաժակները դրված են մատների մեջ և [պալատի] դահլիճներում (տաճար) դասավորված են կոչունքի սեղանները։ Քաղցր ըմպելին և ուրախության անուշ գինին պատրաստել է ամենքի համար, որոնք կամենում են այն ըմպել հավատով։ Պատրաստել է նաև չար խավարի դառնության մուրը՝ չարերի ըմպելին, որն այրում է մինչև կործանում։

511 Արդ, ինչ որ կամենաք ըմպել, պատրաստ է երկու ձևով ձեզ մատուցվելու։ Խմեցեք իմաստությունը և ոչ անմտությունը, ողորմությունը և ոչ բարկությունը, քաղցրության հավատը և ոչ անհավատության երկմտությունը՝ չարության այրիչ հուրը, որ տոչորում է գեհենում և տանում դեպի խավար, այլ [խմեցեք] բաժակների հուրը, որ լուսավորելու է ձեզ այն ըմպելու ժամանակ և այրել տանելու է ձեր տգիտության մեղքերի ժանգը, իսկ ձեր անձերը փրկելու է ձեր հավատի հույսով։

512 Երանելի առաքյալները խմեցին, արբեցին և ուրախ եղան. և երկու բաժակով արբեցրին ամբողջ աշխարհը՝ նրանց, ովքեր խմեցին ինչ կամեցան։ Ահավասիկ տգիտության հիմարությունը ձեզ արբեցրել է և [տվել] մահու բաժակը՝ թույնով խառնված։ Արդ, վերցրեք հավատով արբեցեք ձեր հոգիների կենաց բժշկության բաժակից, որպեսզի փրկությամբ ազատվեք այրվելուց, որը գալիք է։

513 Ահա պատժի, պատուհասի բաժակը հասել է ձեզ [սակայն] առեք խմեցեք խաղաղության բաժակը, որը լի է օգտակարությամբ։ Ծարավ եղեք ապաշխարության, որպեսզի ձեր վրա լցվի ուրախության մխիթարությունը։ Խմեցեք որդեգրության հոգին և ոչ հոգին պղծության, որով արբեց Շավուղը (Սավուղը) և տարագրվեց։ Խմեց Դավիթը և մտավ իր Տիրոջ ուրախության մեջ։ Նույնպես և դուք [կմտնեք], եթե միայն կամենաք։ Ուրախարարը բարերար է, նա ձեզ է ուղարկել այս առաքյալներին, որոնք եկան ուրախացնելու, բերին երկու բաժակ՝ մինը սպառնալիքների և մյուսը՝ ուրախությունների։

514 Քանզի նա, որ իր տասներկու [աշակերտներին] առաքեց ամբողջ երկրի մեջ որպես մատռվակների, նույնը և ձեր մեջ

Եւ զի արքեալք էիք դուք մոլորութեամբ մեղաց ձերոց՝ արբուցին ձեզ զմրուր պատուհասին որ եհաս ձեզ. զի մահուամբն իւրեանց եղեն մատուցակք ճշմարտութեան Աստուծոյ աւետեացն առ ձեզ. քարոզեցին նոքա նեղութեամբք իւրեանց, և խառնեցին զարիւնն իւրեանց յերկուս բաժակս. զի խրատեսցեն զանմտութիւն կուրութեան սրտից ձերոց։ Եւ զարձեալ պատրաստեսցեն յառաջիկայսն բաժակս ուրախութեան ձերոյ. զի մահու կենդանութեան բաժակօք ուրախ արասցեն զձեզ, զոր ինքեանքն արբին։

515 Վասն զի տեսին զՏէրն և զԱրարիչն արարածոց, զի խոնարհեցաւ ի բաժակ խոնարհութեան մահու անարգութեան՝ ինքնակամ իւրովք կամօք, և արբ զհամբերութիւն չարչարանաց բաժակին ինքնայօժար խոնարհութեամբն. վասն այսորիկ ամենայն առաքինի վկայք ճշմարտութեան և Աստուածութեան նորա ետուն նեղութեան զանձինս իւրեանց. զի իւրեանց նեղութեամբք և վշտօքն զոր կրեցին՝ վկայք լիցին այնորիկ որ կամօք կրեաց զայն. զի զմեր անարգութիւնս բարձցէ և զմեր չարչարանս յանձն առցէ և մերում մահուն հաւասարեսցէ հաճութեամբ կամաց իւրոց. զի որպէս կամեցաւ, զինչ կամեցաւ՝ և եղև, և որպէս կամեցաւ՝ արար։ Զի զմեր հողեղէն բնութիւնս զգեցաւ, և խառնեաց յանխառն Աստուածութիւնն, զի տացէ մեզ զիւր անմահութիւնն և զանվշտութիւնն և զանչարչարութիւնն։ Զապականացու մարմինս խառնեաց յանապականութիւն Աստուածութեանն, զի զբնութիւնս մեր անապականս գործեսցէ։

516 Եւ արդարքս այս ցանկացան Տեառն մահու լինել վկայք իւրեանց մահուամբն՝ այնմ, որ զմեռելութիւն արարածոց կենդանացոյց մահուամբն իւրով։ Զի ցանկալի եղև մահ՝ մահուամբ Աստուծոյ մերոյ, որ վասն մեր արբ զբաժակն մահու, և ետ ըմպել մեզ զբաժակն անմահութեան։ Վասն զի այս մահ՝ ժամանակեան է, զի միւսանգամ նորոգեսցուք ի փառս յարութեանն անփոփոխ կենացն մշտնջենականաց։ Որպէս ինքն Տէրն ասէ ի սրբում յաւետարանին, թէ «Արդարև արդարև ասեմ ձեզ, զի եթէ ոչ հատն ցորենոյ յերկիր անկանի և մեռանի՝ լոկ միայն հատ կայ. բայց ի մեռանելն՝ բազմապատիկ փառաւորի, և պտղաբերէ տոհմականաւ»։

517 ԿԲ. Իսկ ամենայն վարք երկրի կենաց նման են վարուց մշակութեան երկրաբուղխ արմտեաց. վասն զի սերմանի նախ սերմն յարգանդ, և ապա ծառացեալ ծաղկի մարդահասակ պատկեր



առաքեց իր այս վկաներին։ Բայց որովհետև դուք արբեցած էիք ձեր մեղքերի մոլորությամբ, ձեզ արբեցրին ձեզ հասած պատուհասի մրուրով, որպեսզի իրենց մահվամբ ձեզ մոտ մատովակներ լինեն Աստուծո ավետիսների ճշմարտության։ Նրանք քարոզեցին իրենց նեղություններով և լցրին իրենց արյունը երկու բաժակի մեջ, որպեսզի զգուշացնեն ձեր սրտերի կուրության, անմտության համար և դարձյալ պատրաստեն սույն բաժակները ձեր ուրախության համար, որպեսզի [իրենց] մահվան միջոցով ուրախացնեն ձեզ կենդանության բաժակներով, որից իրենք խմել էին։

515 Քանզի տեսան Տիրոջը և արարածների Արարչին, որը ինքնակամ իր ցանկությամբ խոնարհվեց խոնարհության բաժակի ու մահու անարգության և ինքնահոժար խոնարհությամբ խմեց չարչարանքի բաժակի համբերությունը։ Դրա համար ճշմարտության և նրա Աստվածության բոլոր ճշմարիտ վկաները իրենց անձերը նեղության մատնեցին, որպեսզի իրենց նեղություններով ու վշտերով, որ կրեցին, վկաներ լինեն նրան, որ կամավոր կերպով կրեց այն՝ մեր անարգությունը վերացնելու, մեր չարչարանքները հանձն առնելու և իր հաճելի կամքով մեր մահվան հատուցումը տալու համար։ Քանզի, ինչպես կամեցավ, ինչ կամեցավ, կատարվեց և ինչպես կամեցավ գործեց։ Նա մեր հողեղեն բնությունը հագավ և միաձուլեց անխառն Աստվածությանը, որպեսզի մեզ տա իր անմահությունը, անվշտությունը և անչարչարությունը։ Ապականացու մարմինը խառնեց Աստվածության անապականությանը, որպեսզի մեր բնությունը անապական դարձնի։

516 Այս արդարները ցանկացան իրենց մահվամբ վկաներ լինել Տիրոջ մահվան, որն իր մահվամբ կենդանացրեց արարածների մեռելությունը։ Քանզի մեր մահը ցանկալի դարձավ մեր Աստուծո մահվամբ, որ մեզ համար խմեց մահվան բաժակը և մեզ տվեց խմելու անմահության բաժակը։ Վասն զի այս մահը ժամանակավոր է, որ մյուս անգամ նորոգվենք, անփոփոխ, մշտնջենական կյանքի, հարության փառքի մեջ։ Ինչպես Տերը ինքն ասում է իր սուրբ Ավետարանում, թե «Արդարև ասում եմ ձեզ, եթե ցորենի հատը երկիր չընկնի և չմեռնի, լոկ միայն հասկ կմնա, բայց մեռնելով, բազմապատիկ կփառավորվի և առատ բերքով կպտղաբերի»։

517 ԿԲ. Իսկ ամենայն երկրային էակների կյանքը նման է երկրաբուխ արմտիքի մշակության կյանքին, քանզի նախ սերմը արգանդի մեջ սերմանում է, ապա մարդահասակ ծառանում, ծաղ-

Աստուածութեանն. զի որպէս վերագոյնն ասացաք, թէ «Մարդ ըստ պատկերի Աստուծոյ արարաւ» իմաստութեամբ, բանաւորութեամբ. որպէս զվարս օրինակաց ի բնարմատէն կարգեցաք ձեզ։

518 Արդ՝ առ մարդն վարել և սերմանել զերկիր, զի անդէն եդաւ նմա հրաման, թէ «Զինչ վարեսցէ մարդ՝ զնոյն և հնձեսցէ»։ Եւ այն տուաւ ի խելամտութիւն՝ իմանալ մարդկան զառ ի յայտնեօքս ի ծածկեալ յաներեւոյթսն սերմանել և հնձել. զի ընկալցին յուսով զհամբարսն պատրաստեալս. զի զինչ և վաստակեսցէ մարդ աստուածպաշտութեան պատուիրանօքն՝ անդ ի պատրաստեալ հանդերձելումն ընկալցի զպտուղսն։

519 Սոյն օրինակ որպէս մշակութիւնն, զի նախ վարս վարեալս ցելեալս կակղեալս հերձեալս, ակօսաձիգ պատառեալ զերկիրն սևակոշտեալ, պարարտացուցեալ՝ նախ քրտնաքեր աշխատութեամբ հատանիցեն զընդվայր արմատսն մոլեբոյսս, տարապարտ աճումն սիզաբոյս բանջարոցն, և ապա սերմանել զսերմանիս զօգտակարն ցանից։

520 Սոյն օրինակ և քարոզութիւն Աւետարանին, եթէ ոչ նախ հատցէ ոք զպարտս պատժապարտութեան իւրայոցն ընդվայրաբոյս սովորութեան անարժանացն, կամասէր կամագնաց ինքնակամ մեղացն։ Որպէս և այժմիկ առ ձեզ տեսանեմք. զի թէ ոչ խլեսջիք դուք ի մտաց ձերոց զարմատս ընդվայրաբոյսս վնասակարս կորուսիչ մեղացն, որ ի ձեզ արմատացեալ են և պատեալ զոստովք մտաց ձերոց՝ առ ի խափանել զծաղիկս և առ ի չտալ բերել զպտուղսն, նա և միանգամայն իսկ ի զօսացուցանել, արկեալ զձեզ ի տարակոյս անօրէնութեան, և կամ յանհիւթ ապառաժ տեղին, որ թէպէտ վարել վարիցէ ոք՝ սակայն անման եղեալ ի պտղոյն զրկի։ Նոյն օրինակ և դուք, եթէ ոչ խլեսջիք ի ձէնջ զսնոցեանն սովորութիւնսն՝ ոչ կարէք ընդունել զսերմնն, որ ի ձեզ պտուղ տայցէ զօգտութեանն։

521 ԿԳ. Արդ՝ դուք, եղբարք, նայեցարո՛ւք իմաստուն մտօք ընդ անձինս ձեր և խորհուրդ առեալ ձեզէն ի ձեզ՝ խորհեցարո՛ւք և տեսէ՛ք զանձինս ձեր. զի Աստուած գթած և մարդասէր յայց ել ձեզ և ետես, և ոչ կամեցեալ ընդ ձեր կորուստն, այլ վաղագոյն սպառնալեօք պատուհասիցն կոչեաց զձեզ ի դրունս ապաշխարութեան մուծանել, զի կեցջիք և մի՛ մեռանիցիք։ Զի անարժան խընդ-



կում Աստվածության պատկերով։ Ինչպես վերևում ասել ենք, թե «Մարդն ըստ Աստծո պատկերի ստեղծվեց» իմաստությամբ, բանականությամբ, ինչպես արդեն պատմել ենք նրանց կյանքը, ովքեր օրինակելի են եղել։

518 Արդ, մարդը սկսեց երկիրը վարել ու սերմանել, քանզի հրաման էր եղել, թե «ինչ վարի մարդը, նույնն էլ կհնձի»։ Սույն [խրատը] տվեց, որպեսզի մարդիկ խելամիտ լինեն և հայտնի [աստվածներով] ըմբռնեն, որ պետք է սերմանել և հնձել այն, ինչ ծածկված և աներևույթ է, որպեսզի հույսով ստանան պատրաստված պաշարները, որ եթե մարդ վաստակի աստվածապաշտության պատվիրաններով, հանդերձյալ [կյանքում] կստանա պտուղները։

519 Այսպես է մշակությունը, քանզի նախ [մշակները] վար են վարում ցելում, կակղացնում, հերկում սևակոշտ երկիրը ակոսաձիգ պատառելով պարարտացնում, սկզբից քրտնաքեր աշխատությամբ մոլեբույս արմատները ընդ վայր կտրելով (արգելելով) սիզաբույս բանջարեղենի տարապարտ աճումը, ապա սերմանում են օգտակար ցանքի սերմերը։

520 Այսպես է և Ավետարանի քարոզությունը։ Նախ և առաջ պետք է կտրել, հեռացնել [մարդու] անձնական ավելորդ բուսած անարժան սովորության կամասեր, կամապաշտ, ինքնակամ մեղքերի պատժապարտության պարտքերը։ Այդ բոլորը այժմ ձեզ մոտ տեսնում ենք։ Եթե ձեր մտքերից չխլեք հանեք կորուսիչ մեղքերի ավելորդ բուսած վնասակար արմատները, որոնք ձեր մեջ հիմնավորված են ու ձեր մտքերում ճյուղավորված, և խանգարելով ծաղիկներին ու թույլ չտալով պտղաբերել, նույնիսկ դոսացնում են նրանց և ձեզ գցում անօրենության տարակույսի մեջ և կամ ապառաժ անջուր տեղ, որը թեպետ և մարդ վարի, այսուհանդերձ ամուլ և անպտուղ կլինի, նույն ձևով և դուք, եթե ձեզանից չհանեք ձեզ սնուցող սովորությունները, չեք կարող ընդունել սերմը, որը ձեր մեջ օգտակար պտուղ կտա։

521 ԿԳ. Արդ եղբայրներ, իմաստուն մտքով նայեցեք ձեր անձերին (հոգիներին) և խորհուրդ արեք դուք ձեր մասին, խորհեցեք և տեսեք ձեր անձերը, քանզի Աստված՝ գթած ու մարդասեր, ձեզ այցի է ելել ու տեսել և չի կամենում ձեր կորուստը, այլ վաղագույն պատուհասների սպառնալիքով ձեզ կոչ արեց ապաշխարության դուռը մտնել, որպեսզի ապրեք և չմեռնեք։ Քանզի մարդիկ,

լոյ մարդիկն, որ անցին հեթանոսութեամբ իւրեանց և չեղեն արժանի գիւտի անձանց, որք ոչ կամեցան իմանալ զԱրարիչն իւրեանց, յառաջագէտ իմաստութեանն Աստուծոյ թողեալ զնոսա՝ որ ոչն էին լսելոց նորա հրամանացն, այլ պատրաստելում տանջանացն կանխութեանց նիւթեալք թղքեցան։

522 Արդ՝ պարտ է ձեզ կակղել զանդս մտաց ձերոց, և խլել զմեղսն գայթակղեցուցիչս յանձանց ձերոց, որ խափան առնեն արդարութեանցն ի ձեզ բուսոցն, այսինքն կռապաշտութեանցն սովորութիւնք, որ ի նախնեացն հետէ մոլորեալ դանդաչեցին, որ իբրև քուն ընդ արթունս եղեալ՝ յիմարակորոյս անմտեալք՝ ընդ վայր թարթափեցին ոչ ինչ յօգտակարսն, այլ յունայնութիւնս ի սնոտիս ի տարապարտս յանօգուտս, որ բնաւ ոչինչ իսկ են, ո՛չ օգուտ և ոչ վնաս ումեք։ Օգուտ չեն, զի անշունչք են, անիմաստք անխաղացք, անշարժք լոկ. ոմանք կոփածոյք են և ոմանք կռածոյք, ոմանք խարտածոյք են և ոմանք ձուլածոյք, եղեալք ի մտաց ճարտարաց, հաստեալք ի վնասել. ընդ վայր և եթ աշխատեալք, զուր որ պաշտենն զնոսա։ Ոչ կարեն զվնաս ինչ պահել ի նոցանէ, և ոչ այնչափ՝ թէ լու մի կամ ճանճ որ անօգուտ ընդ մարդկան է բնակեալ՝ քշել հանել ի տանէ պաշտօնէիցն իւրեանց։ Եւ ոչ սարդքն, որ ելևէջս առնեն զնոքիմբք պատկերօք և ձգեն զոստայնս իւրեանց զգլխովք նոցա՝ թէ զայն յանձանց ի բաց կարիցեն մաքրել. այլ ընդ վայր ի ներքոյ ժանգակեր փոշոտեալ հարեալ մաշին։

523 Եւ քարեղէն պատկերացն առեալ զքարաքոս ժանգոյն, զազրացեալ, կանաչացեալ, ներկեալ, և անփոյթք եղեալ տգեղանան։ Իսկ զփայտեղէն պատկերսն որդանցն հարեալ՝ բոտոտակեր եղեալ մաշին։ Իսկ հանդերձիկն որ զնոքօք արկեալ՝ այն ցեցակեր մեցոտեալ փխրեալ եղծնեալ մաշեալ կորուսեալ ապականին։ Զի թէպէտ և ումեք վասն նոցա անմտութիւնքն զօք ստիպեն փոյթ առնել՝ յախերկան կոտորել զանասունս իւրեանց ի զոհս ճենճերոյն զազրութեան պղծութեան շարաւոյն, սակայն նոյն խանձրահոտ մուրն և ծուխն այրեցածոյն ելեալ դիզեալ մածեալ զնոքօք, իբրև



որոնք արժանի չեն փնտրվելու, իրենց կյանքն անցկացրին հեթանոսության մեջ, արժանի չեղան իրենց անձերը (հոգիները) գտնելու և չկամեցան ճանաչել իրենց Արարչին, ապա Աստուծո առաջագետ իմաստությունը լքեց նրանց, որոնք նրա հրամաններին չէին անսացել, այլ նեղվեցին իրենց համար կանխավ պատրաստված տանջանքներով։

522 Արդ՝ դուք պարտավոր եք ձեր մտքերի անդաստանները կակղացնել և գայթակղեցուցիչ մեղքերը ձեր անձերից հեռացնել, քանզի դրանք խափանում են ձեր մեջ արդարությունը բուսնելուն։ Դրանք են կռապաշտության սովորությունները, որոնք նախնիներից հասնելով, մոլորեցրել են. դուք եղել եք քնի մեջ, թեև արթուն [վիճակում] և հիմար ու անմիտ։ Սրանք (աստվածները), որոնք ոչինչ իսկ են, ոչ օգուտ ունեն և ոչ որևէ վնաս, ձեզ քարշ տվեցին առանց որևէ օգուտ տալու, այլ միայն [տարան] ունայնության, սնոտության և տարապարտ անօգտակարության։ Օգուտ չունեն, քանզի անշունչ են, անիմաստ, անփոփոխ ու անշարժ։ Ոմանք կոփածո են, ուրիշները՝ կռածո, ոմանք խարտոցած, ուրիշները՝ ձուլածո, հնարված են ճարտարամիտների կողմից և ստեղծված վնասելու համար։ Իզուր աշխատանք են թափում նրանք, որ պաշտում են նրանց։ Նրանք չեն կարող վնասվել նրանցից։ Ոչ էլ լվին կամ ճանճին, որ անօգուտ բնակվում է մարդու վրա, նրանք կարող են քշել, հանել իրենց պաշտողների տնից։ Ոչ էլ սարդերին, որոնք նրանց պատկերների (արձանների) վրա ելևէջ են անում և նրանց գլուխների վրա իրենց ոստայնն են ձգում, կարող են իրենց վրայից մաքրել, այլ ժանգից կերված, փոշոտած անօգուտ մաշվում են։

523 Քարեղեն պատկերները (արձանները) ծածկվելով քարաքոս ժանգով, զազրանալով, կանաչելով, գունատվելով և անփույթ թողնվելով տգեղանում են։ Փայտեղեն պատկերները որդերի հարձակման ենթարկվելով, որդակեր լինելով, մաշվում են։ Իսկ հանդերձները, որ նրանց վրա գցված են, ապա ցեցակեր, ապականված, փխրված, եղծված, մաշված լինելով, ապականվելով, կորչում են։ Քանզի, եթե նույնիսկ նրանցից մեկին անմտությունն ստիպի հոգ տանել ընդ ունայն իր անասունները մորթելով, որպես զազրելի ճենճահոտով և պիղծ ապականությամբ զոհ, այսուհանդերձ նույն խորովվածի խանձահոտ մուրն ու ծուխը գալով պատելու ու քսվելու են նրանց, ածուխի նման սևացնելով և այլագույն



19—1461

զածուխ սևացուցեալ զնոսա յայլագոյնս դարձուցանէ. և ծախք անշահք և անօգուտ վաստակք՝ որ ի նոսա լինին։

524 Եւ զայս ամենայն ըմբռնեալ ձեր՝ ի մոլորութիւնս ճեպիք վնասել օգտութեանն և յաւիտենական նիւթել ձեզ տանջանս, յանշէջ հուրն և յորդն անմահ երթալ վասն ոչնչին։ Եւ զԱրարիչն ձեր թողեալ՝ անմռնչովքն բարկացուցանէք զԱստուած ձեր. հանեալ ձեր սերմանիս՝ փոխանակ ցորենոյ՝ փուշ, և փոխանակ հաճարոյ՝ որոմն, և փոխանակ պարարտ երկրին՝ զանօգուտն զապառաժն ընտրեցէք զանպտուղն։

525 Արդ՝ ա՛ղէ տեսէ՛ք, աւադիկ դուք յանդիման կայք. ո՞ ոք ի ձէնջ յառաջ կացեալ տայցէ պատասխանի, թէ լուաւ ոք զձայն պատկերաց ձերոց, կամ եռես դուզնաքեայ օգուտս ինչ ի նոցանէն, որչափ թէ սակաւ մի յայտնեօքս. բայց միայն երազովքն և պատիր խաբէութեամբ ցնորիւքն, որ ի մէջ գալ ոչ կարեն՝ այնու միայն կորուսեալ զոգիս ձեր և հանեալ յԱրարչէն։

526 Արդ՝ որ այսպէս անօգուտ են և ոչինչ, և ոչ ումեք պիտանացու՝ հատէ՛ք խզեցէ՛ք ի բաց ընկեցէք յանձանց ձերոց զցամաքեալ զօսացեալն. որ ոչ ձեզ խեզութիւն, այլ առողջութիւն բժշկութեան, դարման տանել անձանց, իբրև այն՝ որ թափիցէ զմաղձ և զմաղաս դառնութեանն, և թեթևացուցեալ զինքն յախտիցն՝ առողջութեամբ լինի. սոյնպէս և դուք զանօգուտն եթէ թողեալ լինիք՝ զօգտութիւն անձանց գտանէք, ի յաւիտենից տանջանաց դատաստանացն ապրելով։ Զի կռապաշտութեանդ սերմանիք յանշէջ հուր գեհենին արկանէ, ուստի չիք հնար փրկութեան՝ զայս պտուղ բերէ։

527 ԿԴ. Իսկ ճշմարտութիւն բարեպաշտութեան զԱստուած զԱրարիչն ամենայնի ճանաչելոյ՝ բերէ պտուղ զյաւիտենական զմըշտընջենաւոր արքայութիւն ուրախութեանցն, և տայ այնոցիկ որ զնայն ճանաչեն։ Սերմնդ անօրէնութեանց ձերոց և առ ձեզ երեւեցաւ փոքր ի շատէ— բոյսք որոման պատուհասից. զի գիտասջիք զդորին հասկն հանել, որ առ յապայն լինիցի. որ առ ձեզ մատուցանիցի՝ թէ ոչ վաղագոյն սրբեսջիք զորոմնդ ի ցորենոյդ ընտրել։

528 Զի գայ միւսանգամ այլ ժամանակ, վարումն և հնձումն. վարել ի գերեզմանի, և հնձել միւսանգամ յարութեամբն ի գործս



դարձնելով։ Իսկ ծախսը և աշխատանքը նրանց վրա անշահ և անօգուտ կլինի։

524 Այս ամենն ըմբռնելուց հետո, դեռ աճապարում եք վնասել օգտակար գործին և ձեզ համար հավիտենական տանջանք պատրաստել, անշեջ հրի և անմահ որդի մոտ գալով, վասն ոչնչի։ Թողնելով ձեր Արարչին, անմռունչ [կուռքերի] պատճառով բարկացնում եք ձեր Աստծուն։ Դուք փուշ սերմանեցիք՝ փոխանակ ցորենի և որոմ՝ փոխանակ հաճարի ու փոխանակ պարարտ երկրի, անօգուտ, անպտուղ ապառաժն ընտրեցիք։

525 Արդ՝ տեսեք ահա դուք [ձեզ] հանդիման կանգնած եք։ Ո՞վ ձեզանից առաջ գալով պատասխան կտա [ասելով], թե լսած լինի ձեր պատկերների ձայնը կամ նրանցից հայտնապես չնչին օգուտ տեսած լինի, թեկուզ և սակավագույն չափով տեսանելի։ Բայց միայն երազներով և ցնորքի պատիր խաբեությամբ, որոնք ոչ մի բանի պետք չեն, միայն դրանցով կորցրեցիք ձեր հոգիները և կտրվեցիք Արարչից։

526 Արդ՝ դրանք, որ անօգտակար և ոչինչ են և ոչ ոքի պիտանի, կտրեցեք, խզեցեք, ձեր անձերից (հոգիներից) դուրս հանեք ցամաքած, զոսացածը, ընտրելով ոչ թե այն, որ խեղություն [կպատճառի], այլ այն, որ կտա պինդ առողջություն և դարման ձեր անձերին։ Այն մարդու նման, որ դուրս թափելով դառնության մաղձը և մաղասը (խորխ), թեթևանում է ախտից և առողջանում, այդպես և դուք, եթե անօգուտը թողնեք, ձեր անձերին օգտակարություն կգտնեք, հավիտենական տանջանքի դատաստանից ազատվելով։ Քանզի կռապաշտության սերմերը ձեզ գեհենի անշեջ հրի մեջ կնետեն, որտեղից փրկության հնար չկա. այսպիսին է նրա պտուղը։

527 ԿԴ. Իսկ Աստծուն՝ ամենայնի Արարչին ճանաչելու բարեպաշտության ճշմարտությունը, որպես պտուղ է բերում ուրախությունների հավիտենական մշտնջենավոր արքայությունը և տալիս նրանց, ովքեր նրան ճանաչում են։ Ձեր անօրենությունների սերմը՝ պատուհասների որոմի բույսերը, փոքր ի շատե հայտնի դարձավ ձեզ, որպեսզի գիտակցեք, որ պետք է դրա հասակը կտրել, որը հետագայում մեծանալու է և ձեզ է հասնելու, եթե դուք, վաղօրոք սրբված չլինելով, ի վիճակի չլինեք որոմը ցորենից տարբերել։

528 Քանզի մյուս անգամ այլ ժամանակ կգա վարելու և հընձելու՝ վարելու գերեզմանում և հարությամբ կրկին հնձելու յուրա-

իւրաքանչիւր վաստակոց։ Մի՛ լինիք իբրև զգօսացեալսն, զոր հուրն անշէջ դատել՝ զձեզ իւր կերակուր առնիցէ, այլ զալարութեամբ ծաղկեալ մրգաւէտ ի պտղոցն անուշութիւն՝ զարգոյսն մատուցանիցէք ձերում Տեառնն։ Զի յորժամ միւսանգամ ի գերեզմանացն բուսուցանիցէ զձեզ՝ լինիցիք ցորեան, զի յշտեմարանս արքայութեանն ընկալցին զձեզ ի բարիս, զի բերիցէք զբերսն ձեզ տուեալս ընդ միոյ բազումս։ Զի զոր օրինակ ի հունձս՝ ընտրեալ զորումն ի ցորենոյն ի հուր արկանիցեն՝ նոյն օրինակ բուսանին յանկարծօրէն յական թօթափել մարդիկ ի գերեզմանաց։ Որոց զԱստուածութիւն, նորին պատուիրանօքն հանդերձ, յանձինս ընկալեալ իցէ՝ նոքա ըստ նմանութեան ատոք ցորենոյ բուսեալք պարարտութեամբն։

529 Եւ որպէս հատն մերկ յերկիր անկեալ՝ բուսեալ, առեալ արմատս բերեալ ցօղուն, արձակեալ ստեղն, կապեալ ծունր, ջոլացեալ, աւլցեալ հասկաթուս, ընդ միոյ հատոյն բազումս առեալ ի շայեկանութիւն սերմանելեացն պատրաստէ՝ նոյնպէս և անդ է տեսանել. բուսեալ անձինք արդարոցն ի գերեզմանաց, նոյն մարմինք նոյն հոգւով բերեալ զգործս վաստակոցն արդարութեան՝ անդստին ի գերեզմանացն յարքայութիւն վերանայցեն։ Ընդ միոյ սակաւուն, ընդ միոյ մեկնակ անձին բիւրս և հազարս պայծառացուցեալս՝ անթիւ հատուցմունս առեալ բերիցեն։ Անդստին ընդ յառնելն զփառս զգենուցուն, որպէս հասկն, որ զատոքութիւն յանձին ցուցանիցէ և յշտեմարանս խնամոցն անկեալ պարանի։

530 Նոյնպէս և փուշքն զհասկսն մեղաւորաց պատեալ ներքուստ ի վեր գայցեն. անդստին իսկ իբրև ի մօրէ զկերպարանս առեալ՝ ի վեր բերիցեն զանօրէն գործոցն զպտուղսն։ Որպէս ի հոգևոր երգարանին նուագէ վասն այսորիկ, թէ «Անկաւ հուր, և ոչ տեսին զարև, մինչ չև ի միտ՝ առեալ էր զփուշս իւրեանց, իբրև զդժնիկ բարկութեամբ կենդանւոյն կիզցէ զնոսա»։

531 Եւ կամ այն զի՞նչ իցէ որ ասէն, թէ «Մինչ չև ի միտ առեալ զփուշս իւրեանց»։ Այս ինքն յանհոգ դատարկութեան գործէին զմեղսն. մինչ ոչն գիտէին զյանցանս՝ յառաջագիր պատրաստեցան տանջանքն։ Որպէս և այլուր ուրեմն ասէ, թէ «Յառաջ քան զօր իւր՝ հասեալ պատահիցեն նմա ցաւք իբրև զջուրս»։ Որպէս ի սկզբանն փուշքն վասն մեղաւորացն յանցաւորութեան բուսան՝ նոյն



քանչյուրի վաստակած գործերը։ Մի լինեք դոսացածի նման, որին անշեջ հուրն է գտնելու և իր կերակուրն է դարձնելու։ Այլ ձեր Տիրոջը մատուցեք հարդի [նվերներ]՝ դալարությամբ ծաղկած անուշությունը ձեր մրգավետ առատ պտուղների։ Որպեսզի մյուս անգամ ձեզ գերեզմաններից դուրս բարձրացնի, լինեք ցորենի նման և ձեզ օրհնությամբ ընդունի արքայության շտեմարանները, որ ձեզ տրված մեկի դիմաց բազում [պտուղներ] բերեք։ Քանզի, ինչպես հունձի ժամանակ, որոմը ընտրում են ցորենից և հուրը նետում, նույն ձևով էլ հանկարծակի մի ակնթարթում մարդիկ ելնելու են գերեզմաններից։ Նրանք իրենց հոգիներում ընդունելու են Աստվածությունը իր պատվիրաններով հանդերձ և լիքը ցորենի նման բուսնելու են պարարտությամբ։

529 Եվ ինչպես մերկ հատիկը երկիր ընկնելով, բուսնում է, արմատ առնում, ցողուն բերում, ճյուղ արձակում, ծունր է կապում ուռճանում, դառնում աղեցուն հասկերով, մեկ հատիկի դիմաց բազում արտադրելով, պատրաստում սերմանողի օգտագործման համար, նույնը և այստեղ ենք տեսնում։ Արդարների հոգիները գերեզմաններից ելնելու են, նույն մարմինները նույն հոգով և արդարության գործերը կատարելով, վերանալու են գերեզմաններից [երկնքի] արքայություն։ Ամեն մի փոքրիկ, ամեն մի միայնակ անձ բյուր և հազար անթիվ պայծառագույն հատուցում է ստանալու։ Ապա երբ հառնեն, փառք են զգենալու, ինչպես հասկը, որ իր լիությունն է ցույց տալիս և խնամքով հավաքվում շտեմարաններում։

530 Նույնպես և փուշերը, որոնք մեղավորների հասկերն են ներքուստ պատում, վեր են բարձրանալու, ապա կերպարանք առնելով, կարծես մորից, անօրեն գործերի պտուղներ են բերելու։ Ինչպես հոգևոր երգարանում [սաղմոսերգում] նվագում է այդ մասին, թե «Հուր ընկավ, իսկ նրանք չտեսան արևը, նախքան որ նրանք նկատեն իրենց փուշերը, կենդանի [էակի] բարկությամբ փուշի նման նա կհրկիզի նրանց»։

531 Եվ կամ ի՞նչ է, որ ասում են «նախքան որ նրանք նկատեն իրենց փուշերը»։ Այսինքն անհոգ դատարկության մեջ գործում էին մեղքերը, քանի դեռ չգիտեին հանցանքները, իսկ տանջանքները առաջվանից պատրաստված էին։ Ապա այլ տեղում ասում է, թե «իր օրվանից առաջ նրան ցավեր են պատահելու ջրերի նման»։ Ինչպես սկզբում փուշերը բուսան մեղավորների հանցավորության

և զյանցաւորօքն պատեալ բուսեալ՝ լուցկիք եղեալ այրիցեն անդրստին իսկ ընդ յառնելն։ Իսկ ձեզ աւադիկ ազդ արար կանխեաց, որպէս զի դուք ապրեսջիք յայն ահագին ի հրոյն հեղեղէ. զի սուրբ սերմանիքն ցանեսցին ի ձեզ, և մի՛ փուշն այրելի։

532 ԿԾ. Արդ՝ «Որդիք մարդկան, մինչև յե՞րբ էք խստասիրտք, ընդէ՞ր սիրէք զնանրութիւն և խնդրէք զստութիւն»։ Ծաներո՛ւք զաստուածագործ զսքանչելիսդ, որ առ ձեզդ երևեցաւ. զի այսուհետև ոչ թողցէ ստուգութիւնն զամենայն բնակիչս աշխարհի, թէ ոչ ծանիցեն զնա ամենայն ազգք երկրի, և նմա ծառայեսցեն ընդ միով լծով։

533 «Խզեսցուք, ասէ, զկապանս նոցա, և ընկեսցուք ի մէնջ զլուծ նոցա»։ Արդ խզեցէ՛ք զկապանսն հեթանոսութեան յանձանց ձերոց, և ազատեցա՛յք դուք ի մեղացն յանցուածոց, ուրախակից լինել այնոցիկ, որ ծիծաղին ի կորուստ ամբարշտաց։ Որպէս ասէ Իմաստութիւնն առ հանդերձեալս, թէ «Այսուհետև ես ծիծաղեցայց զկորստեամբ ձերով». և թէ՝ «Այն որ բնակեալն է յերկինս՝ ծիծաղեսցի զնոքօք, և Տէր ինքնին արհամարհեսցէ զնոսա։ Յայնժամ խօսեսցի՝ ընդ նոսա բարկութեամբ իւրով, և սրտմտութեամբ իւրով խռովեցուսցէ զնոսա»։ Այս իսկ է ժամանակ կշտամբութեան և յանդիմանութեան. զի Որդւոյն Աստուծոյ առեալ ի Հօրէ ի ծնչէն իւրմէ զիշխանութիւն դատել զամենեսեան՝ որ ոչ պաշտիցեն զՀայր՝ դատի զնոսա. և որ ոչ զՈրդին կամ զՀոգին սուրբ՝ տանջէ զնոսա։

534 Այս ձեզ ճանաչելոյ զՀայր՝ բարբառ Որդւոյն կանխեաց, ասէ. «Ես կացի թագաւոր ի նմանէ՝ պատմել ինձ զհրամանս Տեառն, հովուել զձեզ գաւազանաւ խստութեան երկաթոյն». և իբրև զկաւեղէն անօթ փշրել զայնոսիկ, որ անհնազանդութեամբն դիմադարձ լինիցին փրկութեանն, զի անօթք կաւեղէնք իսկ են մարդիկ։ Արդ՝ որ պիտանացուքն են՝ զնոսա գանձու պատուականաւ լցցէ. իսկ որ անպիտանքն են՝ զնոսա տանջանօք և կորստեամբ լցցէ. զի զարթուցեալ իսկ է Տէր յամպոց սրբոց իւրոց, այց առնել ամենայն անօրէնութեանց մարդկան։ «Արդ՝ թագաւորք, զայս ի միտ առէք, խրատեցարո՛ւք ամենեքեան, ոյք դատիք զերկիր. ծառայեցէ՛ք Տեառն երկիւղիւ, և ցնծացէ՛ք առաջի նորա դողութեամբ։ Ընկալարո՛ւք զխրատ նորա, զի մի՛ բարկասցի Տէր, և կորնչիցիք ի ճանապարհացն արդարութեան. զի բորբոքեալ է բարկութիւն նորա ի վերայ ձեր»։



պատճառով, նույնպես և հանցավորներին պատելով, աճելով, լուցկի դառնալով, բռնկվելու և այրելու են նրանց։ Իսկ ձեզ, ահավասիկ, ազդարարելով կանխեց, որպեսզի դուք ազատվեք այն ահագին հրո հեղեղից, որպեսզի ձեր մեջ սուրբ սերմերը ցանվեն և ոչ այրելի փուշը։

532 ԿԾ. Արդ՝ «Մարդու որդիներ, մինչև ե՞րբ եք խստասիրտ լինելու, ինչո՞ւ եք սիրում նանրությունը և փնտրում ստությունը»։ Ճանաչեցեք աստվածագործ հրաշքները, որոնք ձեզ մոտ երևացին։ Որպեսզի այսուհետև ճշմարտությունը չթողնի աշխարհի ամենայն բնակիչներին և որ երկրի բոլոր ազգերը ճանաչեն նրան և նրան ծառայեն մի լծի տակ։

533 «Խզենք, ասում է, նրանց կապանքները և մեզանից դեն գցենք նրանց լուծը»։ Արդ խզեցեք հեթանոսության կապանքները ձեր հոգիներից և ազատվեցեք անցած մեղքերից, ուրախակից լինելով նրանց, որ ծիծաղում են ամբարիշտների կորստյան վրա, ինչպես Իմաստության [Գիրքը] ասում է հանդերձյալ գալիքներին, թե «այսուհետև ես պիտի ծիծաղեմ ձեր կորստյան վրա» և թե «նա, որ բնակված է երկնքում, ծիծաղելու է նրանց վրա և ինքը Տերը արհամարհելու է նրանց։ Այնժամ նրանց հետ խոսելու է իր բարկությամբ և խռովեցնելու է իր սրտմտությամբ»։ Այս իսկ է կշտամբության և հանդիմանության ժամանակը, քանզի Աստուծո որդին Հորից՝ իր ծնողից առել է իշխանություն դատելու ամենքին։ Ովքեր Հորը չեն պաշտում, դատում է նրանց, իսկ ովքեր Որդուն կամ Սուրբ Հոգուն [չեն պաշտում], տանջում է նրանց։

534 Ձեր Հոր մասին Որդին նախապես ասաց. «Ես նրանից թագավոր կարգվեցի պատմելու Տիրոջ հրամանները, հովվելու ձեզ երկաթի պնդությամբ գավազանով» և որպես կավեղեն անոթ, փշրել նրանց, որ անհնազանդությամբ դիմադարձ են լինում փրկությանը, քանզի մարդիկ կավեղեն անոթներ են։ Արդ, ովքեր պիտանի են, նրանց պատվական գանձերով է լիացնելու, իսկ ովքեր անպիտան են, նրանց տանջելու է և կորուստով լիացնելու։ Քանզի Տերը իր սուրբ ամպերից նայում է այցելելու մարդկանց ամենայն անօրենությունները։ «Արդ՝ թագավորներ ի միտ առեք, ամենքդ, որ դատում եք երկիրը, խրատվեցեք։ Երկյուղով ծառայեցեք Տիրոջը և նրա դիմաց դողությամբ ցնծացեք։ Ընդունեցեք նրա խրատը, որ Տերը չբարկանա և դուք չկորչեք արդարության ճանապարհից, քանզի նրա բարկությունը բորբոքված է ձեր վրա»։

535 Իսկ երանի իցէ ձեզ՝ թէ մարթիցէք աղաչել զերեսս Տեառն, և յուսասցիք ի բազում ողորմութիւն փրկութեան նորա. թողցէ ձեզ և շնորհեսցէ ձեզ զյանցանս ձեր։ Ապա թէ յամառեալ կայցէք՝ փշրեսցէ զատամունս ի բերանս յամառելոցն ամբարշտաց, և արկցէ զձեզ ի յաւիտենական տանջանսն։ Ապա յոչինչ օգուտ է այն զղջումն, որ անդ անկեալ ի միտս լինիցի. այլ տե՛ս, զի՛նչ գոչէ մարգարէն. «Ոչ ոք է ի դժոխս որ խոստովան առնի առ քեզ, և ոչ ոք է թէ յայնմ մահու յիշէ զքեզ». զի այնուհետև ոչ ոք կարէ անցանել ըստ եդեալ սահմանն հաստատութեան։

536 Իսկ ժամանակ այս՝ է ապաշխարողաց ողորմութիւն գտանելոյ, առ այժմ, այսպէս ասէ մարգարէն. «Աստուած դատաւոր արդար, հզօր և երկայնամիտ, որ ոչ ածէ զբարկութիւն իւր զօրհանապազ»։ Ապա այլ զի՞նչ ասիցէ արդեօք. «Զի թէ ոչ դարձցին՝ զսուր իւր սրեալ է և զաղեղն իւր լարեալ, և նոցա պատրաստեալ է զանօթս մահու և ղնետս հրեղէնս գործեալ, որոց երկնեն զանօրէնութիւն, և յղութիւն նոցա, ասէ, ծնանի զցաւս»։ Իսկ այնք, որոց լուեալ հաւատասցեն սքանչելութեանցն և դարձցին յԱստուած յԱրարիչն և պաշտիցեն զնա՝ այսպէս ասէ. «Քաջալերեա՛ց, երկիր, խընդա՛ և ուրախ լեր, զի մեծամեծս արար Տէր զառնելն իւր ընդ քեզ»։ Եւ մարդիկն այն, որ զԱրարիչն իւրեանց ոչ ճանաչեն՝ նոքա իբրև զանասունս համարեալ են. վասն այնորիկ իբրև ընդ երէս խօսի. «Մի՛ երկնչիր, ասէ, երէ վայրի, զի բուսան քեզ ճարակք ի դաշտս և յառապարս»։ Զի քան զանապատս ևս անպտուղ էին սիրտք մարդկան, և քան զդաշտս ևս անջրդի։

537 Արդ՝ և այգի կոչէ զնուաճեալսն, և թզենի պտղաբեր քաղցրրութեանց ըստ աստուածպաշտութեան բանին. որպէս և ասէ, թէ «Որպէս զի քաղցր են ի քիմս իմ բանք քո, քան զմեղր բերանոյ իմոյ». և դարձեալ՝ եթէ «Քաղցր ես դու, Տէր, և քաղցրութեամբ քո ուսո՛ ինձ զարդարութիւնս քո»։ Եւ դարձեալ առ աստուածապաշտսն գոչէ մարգարէն և ասէ. «Լցցին կալք ցորենով, և զեղցին հնձանք գինւոյ և իւղոյ. և հատուցից փոխանակ ամացն, յորս եկեր մարախն և ջորեակն և ժանգն և թրթուրն, զօր իմ մեծ՝ զոր առաքեցի ի վերայ ձեր. ուտիցիք վայելեսջիք, և օրհնեսջիք զՏէր Աստուած ձեր»։ Իսկ առ անօրէնսն այսպէս ասէ. «Արկէ՛ք մանգաղս, զի հա-



535 Իսկ երանի լինի ձեզ, եթե կարողանաք աղաչել Տիրոջը և հուսաք նրա փրկության մեծ ողորմությանը։ Նա թողություն կըտա ձեզ ու կշնորհի ձեր հանցանքները։ Ապա եթե համառեք, կփըշրրի համառող ամբարիշտների ատամները նրանց բերաններում և ձեզ հավիտենական տանջանքների կմատնի։ Իսկ ոչ մի օգուտ չունի այն զղջումը, որ այնտեղ նրանց միտքն է գալիս։ Տես, ի՞նչ է գոչում մարգարեն. «Ոչ ոք դժոխքում քեզ չի խոստովանի և ոչ ոք այն մահվան ժամանակ կհիշի քեզ»։ Քանզի այնուհետև ոչ ոք կարող է անցնել հաստատ դրված սահմանը։

536 Իսկ ողորմություն ստանալու համար ապաշխարության ժամանակը այժմ այս է, ըստ մարգարեի «Աստված արդար դատավոր է, հզոր ու երկայնամիտ, և իր բարկությունը ընդմիշտ չի երկարեցնի»։ Ապա այլ ի՞նչ ասի արդյոք. «Քանզի եթե դարձի չգան, ապա իր սուրը սրված է և աղեղը լարված ու նրանց համար պատրաստված են մահվան գործիքները, հրեղեն նետերը գործի են դըրված նրանց համար, ովքեր անօրենություն են երկնում և նրանց հղությունից ասում է, ցավեր կծնվեն»։ Իսկ նրանց, որ լսելով հավատան հրաշքներին և Աստծուն ու Արարչին դարձ կատարեն և պաշտեն նրան, այսպես է ասում. «Քաջալերվի՛ր երկիր, խնդա և ուրախ եղիր, քանզի Տերը մեծամեծ գործեր արեց ձեր մեջ»։ Այն մարդիկ, որ իրենց Արարչին չեն ճանաչում, նրանք անասուններ են համարվում, որոնց հետ խոսում է իբրև վայրի կենդանիների (երեների). «Մի վախեցիր, ասում է վայրի երե, քանզի քեզ համար արոտավայրեր են բուսել դաշտերում և առապարներում»։ Քանզի անապատից էլ անպտուղ էին մարդկանց սրտերը և դաշտերից ևս անջրդի։

537 Արդ՝ այգի է կոչում ընտանի [կենդանիներին] և թզենին՝ պտղաբեր իր քաղցրության մեջ, ըստ աստվածապաշտական խոսքին, որն ասում է, թե «քանզի քո խոսքերը իմ քիմքին ավելի քաղցըր են, քան մեղրը իմ բերնին» և դարձյալ թե «քաղցր ես դու Տեր և քո քաղցրությամբ սովորեցրու ինձ քո արդարությունը»։ Եվ դարձյալ մարգարեն աստվածապաշտներին գոչում է և ասում. «Կալերը պիտի լցվեն ցորենով, գինու ու յուղի հնձանները պիտի զեղան։ Ես հատուցելու եմ այն տարիների փոխարեն, երբ մորեխը, ջորյակը և ժանգն (որդ) ու թրթուրը կերան։ Դա իմ զորքն էր, որ առաքեցի ձեր վրա. կուտեք, կվայելեք և կօրհնեք ձեր Տեր Աստծուն», իսկ անօրեններին այսպես է ասում. «Վերցրեք մանգաղ-

*սեալ է ժամանակ կթոց. մտէ՛ք հարէ՛ք հնձանս, զի լցեալ են հընձանք և զեղուն գուբք իւրեանց, զի բազմացան չարիք նոցա. վասն այնորիկ ձայնք հնչեցին ի ձորն դատաստանի»։*

*538 ԿԶ. Ի ժամանակս Աբրահամու արբ Սոդոմ զգինին անօրէնութեան. արդ՝ խնդրեցաւ և քննեցաւ ի բարձրագահաց Տեառնէն՝ ի հարիւրոյ մինչև ի տասն, և ոչ գտան ի նմա տասն բաժակք արդարութեան։ Զի խաղող նոցա՝ էր խաղող դառնին, և ողկոյզ նոցա՝ ի դառնութիւն լեղւոյ, սրտմտութիւնք վիշապաց՝ գինի նոցա, սրտմտութիւնք չարաթոյնք իժից անհնարին առանց բժշկութեան՝ բաժակք նոցա։*

*539 Վասն այնորիկ արբոյց նոցա ըհամ հրաբաժակ գինւոյն այրման նոցին, և կիզան նոքա բաժակօքն իւրեանց։ Լցեալ էին շտեմարանք նոցա անօրէնութեամբ. վասն այսորիկ հնչեաց կործանումն նոցա։ Հասեալ էր յանդս նոցա որումն. վասն այնորիկ ի գործ անկաւ մանգաղ նորա, հնձեաց եկէղ զնոսա ի հրդեհի իւրում։ Ուռկանն որ պատեաց զնոսա՝ զոհեցան նոքա նմին ուռկանի. և ծխեցան նմին ցանցի, զի եղևն բաժին նորին։ Կերաւ թրթուր զնոսա, և խզզեաց զնոսա ջորեակ, և արածեաց զնոսա մարախ մեղաց իւրեանց. վասն այսորիկ վաղվաղակի զօսացան։ Եւ արածեաց հուր զշինուածս նոցա. տեղաց ի նոսա հուր, և յորդեցին վտակք հրեղէնք ի մէջ նոցա. և եբարձ զխռիւն անկեալ ի միջոյ նոցա. գետք հրեղէնք յարեան ի մէջ նոցա, և ողողեցին այրեցին զերկիր նոցա։ Լցան շտեմարանք նոցա հրով, և զեղան նովիմբ հնձանք նոցա. լըցին զբաժակս մեղաց իւրեանց ի մրրոյն զոր արբին, և կիզան միանգամայն։ Զի ղովտեան բաժակն, որ գտաւ ի մէջ նոցա, ուստի ոչ արբին նոքա զուրախութիւն՝ եղև նա նոցա այլ բաժակ, և արբոյց նոցա զտրտմութիւն։*

*540 Բաժակն կենդանութեան, ուստի ոչ կամեցան ըմպել զկենդանութիւն՝ արբոյց նոցա զմահու դառնութիւն։ Բաժակն քաղցրութեան, որ ոչ քաղցրացաւ ի քիմս նոցա՝ դառնութիւն, բղխեաց ի նմանէ. այն՝ որ հուր նոցա ոչ այրէր զդալարսն, այլ պահէր զկանաչսն, և տոչորէր ի զօսս և այրէր զգօսացեալսն։ Արբ զայս բաժակ Յուդա Սկարիովտացի, և այրեցաւ, զի ազազուն էր ծառ նորա։ Արբին զայս առաքեալքն, և դալարացան, և լցին անոյշ պտղովն զերկիր ամենայն։ Տարածեցաւ հոտ ծաղկաց նոցա ընդ տիե-*



*ները, քանզի հասել է կթոցի ժամանակը, մտեք, հարեք հնձաններ, քանզի հնձանները լցված են և իրենց գուբերը զեղում են, քանզի նրանց չարիքը բազմացավ, դրա համար ձայներ հնչեցին դատաստանի ձորում»։*

*538 ԿԶ. Աբրահամի ժամանակ Սոդոմը խմեց անօրենության գինին։ Արդ բարձրագահից Տերը փնտրեց ու քննեց՝ հարյուրից մինչև տասը և նրանում չգտան տասը արդարության բաժակ։ Քանզի նրանց խաղողը դառն խաղող էր և նրա ողկույզները լեղիի դառնությամբ։ Նրանց գինին էր վիշապների սրտմտությունը, իսկ չար իժերի չարաթույն սրտմտությունը, որը բուժում չունի, նրանց բաժակներն են։*

*539 Դրա համար նրանց խմեցրեց հրաբաժակ գինու այրման համը, և նրանք կիզվեցին իրենց բաժակներով։ Նրանց շտեմարանները լցված էին անօրենությամբ, որի համար նա հայտարարեց նրանց կործանումը։ Նրանց հանդերը որոմ էր հասել, դրա համար նրա մանգաղը գործի անցավ, հնձեց ու կիզեց նրանց իր հրդեհով։ Ուռկանը, որ պատեց նրանց, հենց նրա մեջ զոհվեցին և ծխի նըման վառվեցին նույն ցանցի մեջ, քանզի նրա բաժինը դարձան։ Թրթուրը կերավ նրանց և ջորյակը նրանց ոչնչացրեց ու նրանց մեղքերի մորեխը արածեց նրանց վրա։ Դրա համար վաղաժամ զոսացան։ Նրանց շենքերը հուրը կուլ տվեց, հուր տեղաց նրանց վրա և հրեղեն վտակներ հորդեցին նրանց մեջ։ Նա վերցրեց խռիվը, որ ընկնի նրանց մեջ։ Նրանց մեջ երևան եկան հրեղեն գետեր և ողողեցին ու այրեցին նրանց երկիրը։ Նրանց շտեմարանները հրով լցվեցին, և նրանով զեղան նրանց հնձանները։ Իրենց մեղքերի բաժակները լցրին մրուրով, որը խմեցին և միանգամից կիզվեցին։ Ղովտյան բաժակից, որը գտնվում էր նրանց մեջ, նրանք ուրախություն չխմեցին։ Դա նրանց համար այլ բաժակ դարձավ և տրտմություն խմեցրեց։*

*540 Կենդանության բաժակը, որից չկամեցան կենդանությունը ըմպել, նրանց մահու դառնություն խմեցրեց։ Քաղցրության բաժակը, որը չքաղցրացավ նրանց քիմքի վրա, դառնություն բխեց նրանից, այն (բաժակը), որի հուրը չայրեց դալարը, այլ պահեց կանաչը և տոչորեց չորացածներին և գոսացածներին։ Այդ բաժակը խմեց Հուդա Սկարիովտացին և այրվեց, քանզի ազազուն էր նրա ծառը։ Այն խմեցին առաքյալները, դալարացան և անուշ պտղով լցրին ամենայն երկիրը։ Նրանց ծաղիկների հոտը տարածվեց*

զերս։ Սրբութիւն նոցա և գինի անոյշ նոցա պաշտի յուրախութիւն վերնոց և ներքնոց, հրեշտակաց և մարդկան, և Տէր տաճարին ուրախ է ի նոսա, իբրև յայս բաժակս, որ հասին աւասիկ արբուցանել ձեզ. մի՛ զովտեան բաժակն աբրահամեան որ գտաւ ի Սոդոմ, ուստի չեղեն նոքա ուրախ, և ըստ այնմ այլ ոչ գտաւ ի մէջ նոցա։

541 Կէ. Ահա երեսուն և եօթն բաժակք քրիստոսեանք որ եկին պաշտել զձեզ. հուր է զօրութիւն նորա, և անոյշ է համ նորա, ուրախութիւն է ի յայտնիս նորա, և տրտմութիւն է ի ծածուկս նորա։ Զի թէ ըմպէք զնա արժանեօք՝ այրեսցէ զաղտ ձեր, և սրբեսցին անձինք ձեր։ Այրեցան մարմինք որդւոցն Ահարոնի, և ոչ այրեաց հուրն զպատմուճանս քահանայութեան նոցա։ Սովոր է այս բաժակ այրել զաղտեղիսն, և պահել զսրբեցեալսն։ Արդ՝ եթէ կամեսջիք սիրով ըմպել զբաժակն երանութեան, որ յակամայն ի մէջ ձեր բղխեաց՝ այրեսցէ զմեղս ձեր և զտեսցէ և ընտրեսցէ զանձինս ձեր յուրախութիւն։

542 Իսկ եթէ արդեօք գայցէ ինչ զմտօք ձերովք, թէ մեք սպանաք զսուրբ վկայսն՝ զայս և Պաւղոս անօթն ընտրութեան ոգիտացաւ ի հրէութեան ժամանակին. որ եկն ի քարոզութիւն առաքելոցն՝ ի հալածման նոցին սպան նա զՍտեփանոս, որ եղև վկայ Աստուածութեանն խոնարհութեան և անդէն բարձրութեան նորին ի նոյն։ Արդ՝ ահա և դուք որ ոգիտացայք՝ արբէք զբաժակդ զայդ, զոր մղեցին ձեռք ձեր. զի զոր վկայեցին նոքա և մեռան՝ նոյն մահու կենդանացան նոքին և եղին ի վիճակսն երկնաւորս։

543 Եւ Ստեփանոս ի ժամ մահուն իւրոյ ետես զերկինս բացեալ և զՈրդին ընդ աջմէ ծնողին իւրոյ, և խնդրեաց զթողութիւն սպանողացն իւրոց, եղոյծ զկապանս ամբարշտութեան նոցա բարեխօսութեամբ աղօթից իւրոց, դադարեցոյց զգոչումն արեան իւրոյ, լռեցոյց զբողոք տանջման իւրոյ և հայցեաց ի Տեառնէ զթողութիւն նոցա։ Վասն այսորիկ բարձ Պաւղոս վիրագ զլուծ նորա, զոր ձգէր եզն ամոլոյն. և առ յանձն զտանջանս նորին, և արբ զնոյն բաժակ մահու նորա. եղև վկայ բանից նորա ընդ նմին և հաւասարորդ առ Տէր իւր. ետես զնոյն տեսիլ և լուաւ զնոյն անճառութիւն բանիցն, զոր ետեսն Ստեփանոս և լուաւ։



տիեզերքում։ Նրանց սրբությունը և անուշ գինին ուրախություն է տալիս թե՛ վերնայիններին, թե՛ ներքնայիններին, հրեշտակներին ու մարդկանց։ Տաճարի Տերը ուրախ է նրանցով, ինչպես նաև այս բաժակներով, որոնք ահավասիկ եկան ձեզ խմեցնելու։ Դա ղովտյան բաժակը չէ՝ աբրահամյանը, որը Սոդոմում էր, որից նրանք ուրախ չեղան և դրա նմանը չկար նրանց մեջ։

541 Կէ. Ահա երեսունյոթ քրիստոնյա բաժակները, որոնք եկան ծառայելու ձեզ։ Նրա զորությունը հուր է և անուշ է նրա համը, ուրախություն է իրեն ճանաչողներին և տրտմություն նրանց, ովքեր թաքնվում են նրանից։ Քանզի եթե այն արժանավորապես ըմպեք, կայրի ձեր աղտը և կսրբի ձեր հոգիները։ Ահարոնի որդիների մարմինները այրվեցին և հուրը չայրեց նրանց քահանայության պատմուճանները։ Այս բաժակը սովոր է այրել աղտեղիներին, իսկ սրբացածներին՝ պահպանել։ Արդ եթե կամենաք սիրով ըմպել երանության բաժակը, որն անակնկալորեն ձեր մեջ բխեց, ապա կայրի ձեր մեղքերը, կզտի ու կմաքրի ձեր հոգիները ուրախության համար։

542 Իսկ եթե ձեր միտքը մտնի, թե՝ մենք սպանեցինք սուրբ վկաներին, ապա [իմացեք], որ նույն ձևով Պողոսը իր հրեության ժամանակ չիմացվեց, որ լինելու է ընտրության անոթը։ Նա եկավ առաքյալների քարոզության ժամանակ և նրանց հալածելով, սպանեց Ստեփանոսին և ապա դարձավ աստվածության խոնարհության, ինչպես նաև նրա բարձրության վկան։ Արդ՝ ահա և դուք, որ տգիտացած էիք, խմեցեք այս բաժակը, որ ձեր ձեռքերը ետ էին մղել, քանզի ինչպես նրանք վկայեցին ու մեռան, նույն մահով նրանք կենդանացան և եղան երկնավոր վիճակները։

543 Ստեփանոսը իր մահվան ժամին տեսավ երկինքը բացված և Որդուն իր ծնողի աջ կողմում։ Նա թողություն խնդրեց իրեն սպանողներին, նրանց ամբարշտության կապանքները իր աղոթքների բարեխոսությամբ լուծեց, դադարեցրեց իր արյան համար գոչումը, լռեցրեց իր տանջման համար բողոքը և Տիրոջից նրանց թողություն հայցեց։ Այս բանի համար Պողոսը կրեց նրա վայրագ լուծը, որը ձգում էր եզների ամոլը, հանձն առավ նրա տանջանքները և խմեց նրա մահվան նույն բաժակը։ Նա եղավ վկա նրա խոսքերի և հավասարապես մասնակից իր Տիրոջը։ Տեսավ նույն տեսիլքը և լսեց խոսքերի նույն անճառությունը, որ տեսել ու լսել էր Ստեփանոսը։

544 Արդ՝ դուք սպանողք էք այսց սպանելոց, հաւատացէ՛ք զհաւատս սոցա և ձգեցէ՛ք զլուծ նոցա, և ընկեցէ՛ք յանձանց ձերոց զլուծ մեղաց, լերո՛ւք վկայք ճշմարտութեանն քարոզաց։ Արբէ՛ք զնոյն բաժակ հոգևոր ըմպելւոյն, և եղերո՛ւք կցորդք նոցա. և իջցեն մարդասէր սիրոյն վտակք յանդս սրտից ձերոց՝ պարարտացուցանել զերկիր մտաց ձերոց քարոզութեամբն, որ ի ձեզ տոհմական լիցի՝ զօրաւոր հաւատովք ձեր ի նա՝ ըմպել ձեզ զբաժակն մարդասիրութեան զտիչ հրոյն ընտրութեան։ Որպէս ի ժամանակս հրէութեան քահանայութեանն՝ ի գերութեան անդ առեալ զկենդանի հուր պատարագացն տարեալ քահանայիցն արկին ի ջրհորն, և հուրն ի ջուր դարձաւ. և յետ ամացն եօթանասնից ի դարձին երթեալ առին զջուրն և բերին արկին զողջակիզօքն, իբրև շինեցաւ տաճարն՝ և ջուրն դարձաւ ի բնութիւն հրոյ։ Վասն զի ըստ պիտոյից կարող է փոփոխել զկերպարանսն և զարդիւնսն ըստ իւրայն մատուցանել. մանաւանդ այս սքանչելութեան հուր, երևեալ ըստ մասանց մասանց Հոգւոյն սրբոյ։

545 Որպէս և հուրն ի մէջ դալարոյն կանաչ ոստոցն մորենւոյն երևեալ՝ պահեաց զնա անթարշամ. զի հուրն լուսատու պահեաց զմորենին, և ապրեցոյց զՄովսէս, և եղև նմա բաժակ ուրախութեան։ Արբ ի նմանէ Մովսէս որ յուսացաւ ի նա. ապրեցոյց զանասունս Իսրայէլի, և խանձեաց զստացուածս Եգիպտոսի ի մէջ կարկտին. և ի մէջ ծովուն արբոյց զբաժակն Իսրայէլի, զի արբին զՀոգին և երգէին ի մէջ ծովուն, որում մատռուակէր Մարիամ քնարաւն. զի անցին ընդ ծովն յաղթ և օրհնեցին։ Արբին յայնմ բաժակէ և Եգիպտացիքն, և արբեցան ի բաժակէ սեանն, որ կապեաց զանիւս կառաց նոցա. գլորեաց զնոսա մրուր նորա, և զարկոյց զնոսա հետ նորա։ Արբ ժողովուրդն զտրտնջման բաժակն, զոր խառնեաց բարկութիւնն, արբոյց նոցա բաժակ քննման, ուր պարտաւորեցան նոքա։

546 ԿԸ. Սիւնն սուրբ, որ ընդ ամպս օդոց հովանոցանայր նոցա ի տապ խորշակին ի տունջեան, և լուսատու ջեռուցանէր զնոսա ի ցրտոյ սառամանեացն ի գիշերապահութեան առաջնորդութեանն՝ նոյն սիւն ըստ ժամանակի ժամանակի փոփոխեալ՝ ըստ պիտոյից նոցա զպէտսն պատրաստէր։ Երբեմն վիմացեալ հոսէր նոցա ի յագուրդ ի ծարաւսն՝ վտակս անոյշ ջուրցն. զի ինքն Քրիստոս էր այն, որ ընդ ամենայնի զամենայն ունի լրութիւն, լցեալ բարերարէր նոցա. որ երբեմն ի քաղցրութիւն հացի. և երբեմն թը-



544 Արդ դուք այս զոհերին սպանողներն եք։ Հավատացեք սրանց հավատին և ձգեցեք նրանց լուծը, ձեր հոգիներից դեն գցեք մեղքերի լուծը, եղեք ճշմարտության քարոզի վկաներ, խմեցեք հոգևոր ըմպելիքի նույն բաժակը և եղեք նրանց կցորդները։ Մարդասեր սիրո վտակները իջնելու են ձեր սրտերի հանդերը՝ պարարտացնելու ձեր մտքի հողը քարոզությամբ, որը ձեր սեփականն է լինելու նրա նկատմամբ ձեր զորավոր հավատքի շնորհիվ, և դուք խմելու եք մարդասիրության բաժակը, ընտրության զտիչ հուրը։ Հրեության քահանայության ժամանակ, երբ գերության [տարվեցին] քահանաները առնելով պատարագի կենդանի հուրը, տարան նետեցին ջրհորը, և հուրը ջուր դարձավ, ապա յոթանասուն տարի հետո՝ իրենց վերադարձին երթալով առան ջուրը և բերին գցեցին ողջակեզների շուրջը։ Երբ շինվեց տաճարը, ջուրը բնությամբ հուր դարձավ։ Վասն զի ըստ անհրաժեշտության կարելի է փոխել կերպարանքը և ըստ պարագայի արդյունք տալ, մանավանդ Սուրբ Հոգու այս սքանչելի հուրը, որը երևաց տարբեր ձևերով։

545 Հուրը երևաց մորենու կանաչ դալար ոստերի մեջ և այն մնաց անթառամ, քանզի լուսատու հուրը պահեց մորենին, փրկեց Մովսեսին և եղավ ուրախության բաժակ։ Դրանից խմեց Մովսես, որը նրան հուսաց։ Դա փրկեց Իսրայելի անասուններին և կարկտով խանձեց Եգիպտոսի ստացվածքները։ Ծովի մեջ այդ բաժակը Նա խմեցրեց Իսրայելին, քանզի նրանք խմեցին Հոգին և երգում էին ծովի մեջ, որին Մարիամ [գինի] էր մատռվակում իր քնարով և նրանք հաղթական անցան ծովը և օրհնեցին։ Այդ բաժակից խմեցին նաև եգիպտացիք և արբեցին սյան բաժակից, որին նրանց կառքերի անիվները կապեց։ Նրա մրուրը գլորեց նրանց և գետին խփեց նրա հետևից։ Ժողովուրդը խմեց տրտնջման բաժակը, որը նրա բարկությունն էր խառնել։ Տվեց նրանց քննության բաժակը խմելու, որին նրանք դատապարտված էին։

546 ԿԸ. Սուրբ սյունը, որը տապախառն խորշակին օդային ամպով հովանի տվեց նրանց, օրվա ընթացքում և առաջին գիշերապահության, լույս տալով ջեռուցում էր նրանց ցուրտ սառնամանիքին, նույն սյունը ժամանակ առ ժամանակ փոփոխվելով, ըստ նրանց կարիքների պատրաստում էր պետք եղածը։ Երբեմն վեմից ջուր էր հոսեցնում՝ նրանց ծարավը հագեցնելու անուշ ջրերի վտակներով։ Քանզի ինքը Քրիստոսն էր այն, որն ըստ ամենայնի ունի ամենայն լիություն և լիացնելով բարերարում էր նրանց։ Եր-

շրնովքն. իսկ երբեմն զքաղցրութիւն աղբերացն բղխէր նոցա, և բաժակ Հոգւոյն սրբոյ ուրախ առնէր զնոսա։

547 Իսկ ըստ նոցին խստապարանոցութեան և ողնգմնեայ քարուցն, խառնէր տայր նոցա զբաժակն բարկութեանն։ Զի այս բաժակ թէպէտ հուր, թէպէտ ջուր՝ կարէ զզօրութիւն իւր փոխել յինչ և կամի. երբեմն ձիւն լինի և երբեմն սառն, երբեմն անձրև, երբեմն հուր և փայլակն դառնայ, և երբեմն ցօղ սնուցիչ բուսոց՝ կերակրել զգազանս և զթռչունս, զերէ և զանասուն, և պատրաստել զդարմանս մարդկան և զխնամս արարածոց։ Նոյն կարէ և հոգևոր ցօղել բուսուցանել սերմն հաճոյ կամաց վերնոյն, պատրաստել բանաւոր հօտին զկերակուրն անապականութեան։

548 Իսկ երբեմն քաղցր անձրև շայեկան, բուսուցիչ երկրապաբար խարակիչ փայլատակմամբն զջերմագոյն արկեալ, առ ի քրտնացուցանել զբոյսսն, արբուցանէ ցօղով զատեղն յղութիւն և զփթիթսն յղութիւն զուարթութեանն։ Կրկնակի պահանջէ զդահութիւն տալեացն շնորհողին, յորժամ օգտի յաճախութեանցն զայս բաժակ արբուցանէ։ Զի և ամպք սպասաւորք հրամանացն մատուակեն. զի թէպէտ լցեալ պատրաստեալ լի անձրևով զերեսս երկնից ունիցին, այլ ի գալն և յարձակելն, ի տալն, ի մատուակելն երկրի, յորժամ կամի՝ զշայեկանսն մատուցանէ, իսկ յորժամ ոչ՝ զդժնդակն, զեղեամն և զձիւն և զվնասաբեր կարկուտն. այրիչ նշողիւքն տապացուցանէ, և ժանգաւութեամբ պատրաստէ զվընասն, և չարաթոյն օդոցն շնչմամբ խստութեան դառնութեան՝ խորշակահար ցամաքեցուցանէ զվարսաձև բոյսս դալարոյն, մօտ առ կարճինսն այրեցուցանէ։

549 ԿԹ. Ամպովքն զհրամանսն կատարէ. զի բնական իմն է ամպովքն երևել ի սկզբանցն, իբրև ընդունիչ հրամանացն և պաշտօնեայ մատուակութեանցն առ մարդիկ, երբեմն բարկութեանց, երբեմն ողորմութեանց։ Զի յորժամ կամէր Աստուած առ մարդիկ երևել՝ զզօրութիւն իւր յինքն ամփոփեալ, յամպն ծածկեալ առագաստեալ պահէր. զի ոչ կարէին մարդիկ համօրէն ժուժել բաւել տեսլեան Աստուածութեանն. այլ փակեալ զերկինս իբրև սրահակաւ իմն, յինքն վարագուրեալ, զի մի՛ անժոյժ եղեալ արարածք կիզցին։



բեմն հացի քաղցրությամբ և երբեմն թռչուններով, իսկ երբեմն նրանց համար քաղցր աղբյուրներ էր բխեցնում և Սուրբ Հոգու բաժակը ուրախացնում էր նրանց։

547 Սակայն նրանց խստապարանոցության և կամավոր քարքերի պատճառով խառնեց ավեց նրանց բարկության բաժակը։ Քանզի այս բաժակը, թեպետ հուր կամ ջուր, կարող էր իր զորությունը փոխել ինչի որ կամենար։ Երբեմն ձյուն էր լինում, երբեմն սառույց, երբեմն անձրև, երբեմն հուր և փայլակ էր դառնում և երբեմն բույսերի սնուցիչ ցող, որպեսզի գազաններին ու թռչուններին, երեներին ու անասուններին կեր հայթայթի ու պատրաստի մարդկանց ուտելիքը և արարածների կարիքները։ Նույնը կարող է և հոգևոր ցողով վերնայինի կամքին հաճո սերմ բուսցնել, բանավոր հոտի համար անապականության կերակուր պատրաստել։

548 Իսկ երբեմն դառնում է քաղցր շահեկան անձրև, որը երկիրը դարձնում է պարարտ, արգասաբեր, տաք փայլատակումով ջերմություն է զգում, որպեսզի թրջի բույսերը, ուրախության համար ցողով արբեցնի ծլուղերը և փթիթները։ Նա կրկնակի գոհություն է պահանջում շնորհողի պարգևների համար, երբ օգուտն ավելացնելու համար խմեցնում է այս բաժակը։ Քանզի նույնիսկ ամպերը, նրա հրամաններին սպասավորելով, վայր են հեղում։ Թեպետ նրանք լի անձրևով լցնում են երկնքի երեսը, սակայն գալու և անձրևելու ժամանակ, տալով և թափելով երկրի վրա, նա է, որ երբ կամենում է, օգտակար [անձրևն] է մատակարարում, իսկ երբ չի [կամենում] դժնդակ եղյամ, ձյուն և վնասաբեր կարկուտ է [բերում], այրիչ շողերով վառում է և տապահարությամբ պատրաստում է կործանումը, չարաթույն օդի խիստ դառն շնչով խորշակահար ցամաքեցնում է դալարի վարսաձև բույսերը և այրում մինչև արմատները։

549 ԿԹ. Ամպերով նա հրամաններ է կատարում, քանզի բնական է սկզբից ամպով երևալ իբրև հրամաններ արձակող և մարդկանց մատուլակության պաշտոն ունեցող, երբեմն բարկությամբ, երբեմն ողորմությամբ։ Երբ Աստված կամեցավ մարդկանց երևալ իր զորությունն իր մեջ ամփոփեց, ամպի մեջ ծածկված քողարկված պահեց, քանզի մարդիկ չէին կարող տոկալ աստվածության տեսիլքին, այլ նա փակեց երկինքը սրահակով ինքն իրեն վարագուրելով, որ անժուժկալ արարածները չկիզվեն։

550 Նա թէպէտ և երևէր յայնժամ երբեմն ժամանակաւ ումեք ումեք արժանեացն՝ ըստ նոցա հանդուրժելոյ տեսանելոյ տեսանելեացն երևէր, զի նոքա տանել կարասցեն, որպէս Մովսիսին և կամ գլխովին ժողովրդեանն ի Սինէական լերինն իջեալ ամպովն պատեալ երևէր, և անտի խօսէր ընդ նոսա. Նա և յամենայն ի դարսն նոյնպիսի երևեալ ամպով. իսկ սրբոյն Եզեկիելի հոգելից մարգարէին՝ ես հռչակական տեսլեամբ երևեալ. սակայն ոչ առանց ամպոյ ետես ոք երբեք ուրեք յամենայն մսեղեաց։ Որպէս և հոգեկիր մարգարէն ի տեսլեանն իւրում պատմէ և ասէ. «Տեսի զի հոգի վերացեալ գայր ի կողմանցն հիւսիսոյ, և ամպ մեծ ի նմա, և լոյս սաստիկ զնովաւ. և հուր և կայծակունք հատանէին ի նմանէ, և ի մէջ նորա տեսիլ արեգական և ճառագայթք հրոյ»։

551 Սակայն լոյս և հուր, և ոչ առանց ամպոյ. զի լոյսն ի լուսաւորել զպիտոյսն, և հուրն յայրել զանպիտանսն բարկութեամբ։ Իսկ ամպն՝ երկոցուն զերկոսին մատռուակել տայ յարբանեկելն, զի հուրն զմեղաւորսն այրէ, և լոյսն բարեացն զՀոգին շնորհացն որդեգրութեան արբուցանէ, իսկ չարացն զկայծակունսն արբուցանէ և զբոցն ծխախառն հեղձամղձուկ նեղութեան տանջանացն։ Նա և մեծութեանն իւրոյ ամպք գտանին սպասաւորք, որպէս և տեսողն պատմէ, թէ «Ամպք փոշի են ոտից նորա»։

552 Եւ վասն յորդելոյն բազմացելոյն ամբարշտութեանց ասաց. «Սաստէ ծովու, և ցամաքեցուցանէ, և զգետս ամենայն աւերէ»։ Վասն զի զծովն մեղաց ցամաքեցուցէ, և զգետս անօրէնութեան կասեցուցէ, և զնեխականն և զանհամականն և զպղտորն և զկացունն պարզեսցէ։ Իսկ իւրոցն ապաւինելոցն և ի նա յուսացելոցն փրկութիւն բազմացեալ ծովացի և գետ առանց մեղաց յորդեսցէ։ Վասն որոյ միւս մարգարէն ասէ ի նոյն պարու երգոյն իւրոյ, թէ «Զգետս ցրուեսցես, և զերկիր դողացուսցես ի սաստկութենէ անձրևի քոյ՝ որ անցանեն ընդ սա»։ Զի զջուրս սաստկութեան ի վերուստ հոսեսցէ ի վերայ ջուրցն, զի զջուրսն դառնացեալս ի բաց մղեալ մերժեսցէ. զի այնմ մտեալ որ սրբահամն է՝ զաղտեղին և զգարշացեալն ի բաց անցուսցէ։

553 Որպէս միւս տեսանողն ի նոյն նուագեաց, և անդէն զնոյն միահամուռ մեկնեաց. ասէ. «Անձրև կամաց պատրաստեցեր, Աստուած, ժառանգութեան քում. զի թէպէտ և հիւանդացաւ՝ սակայն դու հաստատեցեր զնա»։ Զի ի մեղաց ծովուն ըմբռնեալք, և նոյն



550 Նա թեպետ ժամանակ առ ժամանակ երևում էր որոշ արժանիներին։ Երևում էր ըստ նրան տեսնողների տեսնելու կարողության, որպեսզի նրանք ի վիճակի լինեն տեսնելու, ինչպես օրինակ Մովսեսին և կամ ամբողջ ժողովրդին Սինեական լեռան վրա, իջնելով ամպով պատած և այնտեղ խոսեց նրանց հետ։ Բոլոր դարերում Նա երևաց նույն ձևով՝ ամպով, իսկ սուրբ Եզեկիել հոգելից մարգարեին՝ հռչակավոր տեսիլքով, սակայն առանց ամպի, մարմնավորներից ոչ ոք երբեք չի տեսել։ Ինչպես հոգեկիր մարգարեն իր տեսիլքում պատմում էր, թե «տեսա, որ Հոգին վերացած գալիս էր հյուսիսի կողմից, վրան մեծ ամպ, շուրջը սաստիկ լույս։ Նրանից դուրս էին գալիս հուր ու փայլակ և նրա մեջ կար արեգակի տեսիլք և հրո ճառագայթներ»։

551 Սակայն [Աստված երևաց] որպես լույս ու հուր և ոչ առանց ամպի, քանզի լույսը պիտանիներին լուսավորելու համար է, իսկ հուրը՝ բարկությամբ այրելու համար անպիտաններին։ Ամպը երկուսի համար էլ է և երկուսին էլ մատռվակում է։ Հուրն այրում է մեղավորներին և լույսը ծառայում է բարիքների որդեգրման շնորհքների Հոգուն, իսկ չարերին կայծակներ է հարուցում և հեղձամղձուկ նեղության տանջանքների ծխախառն բոցը։ Նաև ամպերը նրա մեծության սպասավորներն են, ինչպես և տեսնողն է պատմում, թե «ամպերը նրա ոտքերի փոշին են»։

552 Եվ ամբարշտությունների հորդելով բազմանալու մասին, ասաց «Սաստում է ծովին ու ցամաքեցնում և բոլոր գետերն ավերում է»։ Նա կարող է մեղքերի ծովը ցամաքեցնել, անօրենության գետերը կասեցնել և նեխած, անհամ, պղտոր և ճահճացած [ջրերը] պարզեցնել։ Իսկ իրեն ապավինածներին և հուսացածներին Նա ծովացյալ բազում փրկություն կտա, և գետը առանց մեղքերի հորդառատ կհոսի։ Այդ մասին մյուս մարգարեն իր երգի նույն պարի մեջ ասում է, թե «ցրվելու ես գետերը և երկիրը դողացնելու ես քո անձրևի սաստկությունից, որն անցնում է նրա վրայով»։ Նա սաստկության ջրերը ի վերուստ հոսեցնելու է այն ջրերի վրա, դառնացյալ ջրերը ետ մղելով մերժելու համար, որպեսզի նա, որ սրբահամ է, աղտեղին ու գարշելին դուրս մղի։

553 Ինչպես մյուս տեսանողը նույնը նվագեց և նույնը միահամուռ մեկնեց ասելով. «Առատ անձրև պատրաստեցիր, Աստված, քո ժառանգության համար և թեպետ հիվանդացավ, սակայն դու հաստատեցիր նրան»։ Քանզի նրանք մեղքերի ծովում բռնված էին,

ախտիւ հիւանդացեալք և կապեալք յամբարշտութեան կապանսն, վասն այնորիկ զծովն անունչ անհամութեան քամեալ, և ցամաքեցուցեալ զակն աղբեր նորա, և զանձրև սաստից տեղացէ առ մարդիկ։ Որպէս և յայս հայեցեալ երգեաց մարգարէն. «Խորք ի խորոց կարդացին առ քեզ ի ձայն սահանաց քոց»։ Զի իբրև սահանք հոգևորք երկնաւոր պատգամացն ի վերուստ իջեալ ի վերայ կուտակին, և զախտաժէտսն և զցաւագնոտսն ի բաց կորուսցեն։

554 Եւ ցօղն բժշկական եղև առողջացուցիչ, որպէս և ասէն, եթէ «Ցօղդ որ ցօղէ ի՛ քէն՝ այն բժշկութիւն է նոցա», զի դարձցին առ նա երկիւղիւ։ Զի այնք որ սիրովն ոչ դարձան առ նա՝ ահիւ սպառնալեաց արար զնոսա իւր ժառանգութիւն, որպէս զձեզ։ Զի նա զհեղեղն մեղաց ի ձէնջ ի բաց անցուսցէ, և ապա տացէ ձեզ զառատութիւն շնորհաց իւրոց։

555 Զի ի ձէնջ բխեալ «Յորդեսցեն իբրև զգետս արդարութիւնք, և իրաւունք իբրև ղջուրս հեղեղաց բազմասցին». և ապա զիւր գիտութիւն կենաց ձերոց՝ յամպոց ողորմութեան ի ձեզ տեղասցէ, որպէս և ասէն, թէ «Անձրև կամաց պատրաստեցեր, Աստուած, ժառանգութեան քում. զի թէպէտ հիւանդացաւ՝ սակայն դու հաստատեցեր զնա». ապա «Զուխս փափկութեան տացես ըմպել արժանեացն», ըստ բանի հոգևորական երգչին, որ ասէ, թէ «Ի քէն է, Տէր, աղբիւր կենաց, և լուսով քով տեսանեմք զլոյս». և թէ «Ծագեա՛ զողորմութիւնս քո՝ ոյք ճանաչեն զքեզ». իսկ իւրոց ճանաչչացն ծագէ, և աղբիւրքն իմաստութեան ի նոյն լուսոյ ականէն առ նոսին բղխեալ, իսկ անիմաստիցն՝ այրիչ վտակքն և ողողիչք և հըրդեհիչք և տոչորականք։

556 Եւ քանզի իբրև զհուր յերկրի վառեալ էին մեղքն՝ առ ի տալ լոյս, զի անթաքուստ լիցին ի վրէժխնդրութենէն որ ի վերայն էր հասանելոց, վասն որոյ յառաջագոյն կանխեաց յառաջագէտ մարգարէութիւնն զիրացն իւրոց ասացելոց հաստատութիւն, որպէս ասէ. «Տեսի ի մարդիկ զմեղսն ծովացեալս, բազմացեալս, հեղեղեալս». որպէս միանգամ մեկնեցաւ առակն յաւուրս Նոյեան դարին. ի ծովանալ մեղացն յերկրի, ընդ նմին ծովացան և ջուրքն, կորուսանել զմարդիկ սաստկացան։



նույն ախտով հիվանդացած և կապված ամբարշտության կապանքներին։ Այդ պատճառով քամելով անզգամության անհատակ ծովը և ցամաքեցնելով նրա աղբյուրի ակունքը, նա սաստերի անձրև է տեղացնելու մարդկանց վրա։ Ինչպես այս բանին նայելով մարգարեն երգեց. «Խորքերը ի խորոց կանչեցին քեզ քո սահանքների ձայնով»։ Քանզի հոգևոր սահանքների նման երկնավոր պատգամները ի վերուստ իջնելու կուտակվելու են խորխորատի վրա և ախտաժետներին ու ցավագարներին կործանելու են։

554 Բուժող ցողը առողջացուցիչ եղավ, ինչպես և ասում են, թե «ցողդ որ քեզանից է ցողում, նրանց համար բժշկություն է», որպեսզի նրան վերադառնան երկյուղով։ Քանզի նրանք, որ սիրով չդարձան Նրան, ապա սպառնալիքի ահը ավեց նրանց որպես ժառանգություն, ինչպես [օրինակ] ձեզ։ Նախ մեղքերի հեղեղը ձեզանից հեռացնելու է և ապա տալու է իր շնորհների առատությունը։

555 Քանզի ձեզանից բխելով «արդարությունը հորդելու է գետի նման, և իրավունքը հեղեղի ջրերի նման ծավալվելու է»։ Նա ձեր կյանքի իր գիտելիքները ձեր վրա է անձրևելու ողորմության ամպերից, ինչպես և ասում են, թե «առատ անձրև պատրաստեցիր, Աստված, քո ժառանգության համար և թեպետ հիվանդացավ, սակայն դու հաստատեցիր նրան» ապա «փափկության հեղեղներ ես ըմպել տալու արժանիներին», ըստ երգչի հոգևոր խոսքի, որն ասում է, թե «քեզանից է, Տեր, կյանքի աղբյուրը, և քո լույսով տեսնում ենք լույսը», և թե «ծագիր քո ողորմությունը նրանց, որ ճանաչում են քեզ»։ Իրեն ճանաչողներին ծագում է և իմաստության աղբյուրը նույն լույսի աղբյուրից նրանց վրա է բխում, իսկ անիմաստասերների վրա՝ այրիչ վտակներ, ողողիչներ, հրդեհիչներ և տոչորողներ։

556 Քանզի մեղքերը լույս տալու համար հրո նման վառվել էին երկրի վրա, որպեսզի անթաքուստ լինեն վրեժխնդրությունից, որը վրա էր հասնում։ Իսկ կանխատեսող մարգարեությունը նախապես նշեց իր ասածների հաստատությունը, որպես ասում է. «Տեսա մարդկանց մեջ մեղքերը ծովի նման, բազմացած հեղեղանման» ինչպես մի անգամ առակը մեկնվեց Նոյան դարի օրերին, երբ երկրի մեղքերը ծովացել էին, նույն ձևով ծովացան և ջրերը ու սաստկացան մարդկանց կործանելու համար։

557 Հ. Արդ՝ սրբոց մարգարէիցն զիրացն եղելոց զառակսն յաճախագոյնս ի մէջ բերեալ, թերեւս եղելովքն ահարկեալ՝ զնոսա յիւրաքանչիւր ամբարշտութեանցն փրկել կարասցեն։ Վասն այսորիկ յաճախագոյնս երբեմն զՍոդոմայեցիսն հրկիզեալս, երբեմն զհեղեղամաց մարդիկն ջրահեղձոյց դարին յօրինակ առեալ, երբեմն զհարուածս Եգիպտոսի և զայլոց բազմաց. և զանօրէնութիւնսն՝ ծովացեալս կոչէ, և փարատել յերկրէ խոստանայ, և դարձեալ զարդարութիւն յերկրի խոստանայ դնել, և քան զջրհեղեղն ևս յորդագոյնս բազմացուցանել, և զիրաւունս ծաղկեցուցանել։

558 Վասն այսորիկ յանցանել մարդկան ընդ անցութեան ծովըն, գոչէ մարգարէն և ասէ. «Անցցեն ընդ ծովն յաղթ, և հերձցեն զալիս ծովուն», այսինքն է զամբարշտութիւնս. և թէ՝ «Ցամաքեսցին պտոյտք գետոց», այսինքն մեղացն յորդութիւնք։ Վասն որոյ միւս մարգարէն ասէ, թէ «Ի վերայ գետոց բարկասցիս, Տէր, կամ սրտմտութիւն քո ի վերայ ծովուց և կամ բարկութիւն քո ի վերայ գետոց»։

559 Զի ածցէ զյորդութեան անձրեւն, և ջուրքն սուրբք, կենդանութեան հոսանքն, մերժեսցեն զջուրսն ամբարշտութեան, և ծածկեսցեն յերկրի զդառնութիւն չարութեան տգիտութեան ամբարշտութեան մարդկան։ Որպէս ասէ մարգարէն, թէ «Լցցի երկիր գիտութեամբ Տեառն՝ իբրև ջուրք բազումք զի ծածկեն զծովս». զայն զկորստական ջուրցն ասէ, զկորուսիչ և զհեղձուցիչ ջուրցն, թէ զայն ջուրսն ծածկէ՝ որ արբոյցն զերկիր ի հրապոյրս պղտորս. որ առաւելագոյն ևս վասն հրապուրանացն՝ ի կռապաշտութիւնսն յորդեալ մոլեգնեալ էին յաշխարհի։ Զի հանցէ զամպն հոգիընկալ, որ մարգարէին Եղեկիելի երևեցաւ. զի նոյն ամպ տեղասցէ ի մարդիկ զշընորհս գիտութեան, և նոյն դալարացուսցէ և զչորութիւնն ի բոյս շրջեսցէ։

560 Իսկ զգօսացելովքն որ ի հաւանութիւն գալ ոչ կամին՝ սփռեսցէ զանձրև հրեղէն փայլատականց ի կիզուլ, յայրել և ի վախճանել, մատուսցէ ըմպել զբաժակն դառնութեան։ Որպէս ի տասներորդում սաղմոսին նուագէ տեսանողն, թէ «Տեղասցէ ի վերայ մեղաւորաց որոգայթ, հուր և ծծումբ. այս մրրիկ է բաժին բաժակի նոցա»։



557 Հ. Արդ՝ սուրբ մարգարեները գալիք դեպքերի առակները հաճախագույն մեջ բերեցին, որ թերևս գալիք դեպքերով վախեցնելով կարողանան փրկել նրանց իրենց ամբարշտություններից։ Այդ պատճառով նրանք հաճախ տվին օրինակներ՝ երբեմն Սոդոմայեցիների հրկիզումը, երբեմն ջրհեղեղի ժամանակ մարդկանց ջրահեղձ լինելու օրինակը, երբեմն Եգիպտոսի հարվածները և բազում այլ [օրինակներ]։ Անօրինությունները նա ծովացյալ է կոչում, խոստանում է այն փարատել երկրից և դարձյալ խոստանում է երկրում արդարություն հաստատել, այն ջրհեղեղից էլ ավելի հորդառատ բազմացնել և իրավունքը ծաղկեցնել։

558 Այդ պատճառով մարդկանց ծովի անցքից անցնելու ժամանակ գոչում է մարգարեն և ասում. «Նրանք անցնելու են մեծ ծովը և ծովի ալիքներն են հերձելու», այսինքն ամբարշտությունները։ Եվ թե «Գետերի պտույտները ցամաքելու են», այսինքն մեղքերի հորդառատությունը։ Այդ մասին մյուս մարգարեն ասում է, թե «գետերի վրա ես բարկանալու, Տեր, և քո սրտմտությունը լինելու է ծովերի վրա և քո բարկությունը՝ գետերի վրա»։

559 Նա անձրևների հորդություն է բերելու և սուրբ ջրերը՝ կենդանության հոսանքը, մերժելու են ամբարշտության ջրերը և ծածկելու են երկրի վրա մարդկանց չարության, տգիտության, ամբարշտության դառնությունը։ Ինչպես ասում է մարգարեն, թե «երկիրը Տիրոջ գիտությամբ է լցվելու առատ ջրերի նման, որոնք ծածկում են ծովերը»։ Այս բանն ասում է կորստական ջրերի՝ կորուսիչ և հեղձուցիչ ջրերի մասին, թե ծածկելու է այդ ջրերը, որոնք երկիրը արբեցրին պղտոր հրապույրներով, և առավել ևս հրապուրանքների պատճառով ամբողջ աշխարհում տարածված, մոլեգնած էին կռապաշտության մեջ։ Քանզի նա հանելու է հոգիընկալ ամպը, որ Եզեկիել մարգարեին երևաց և նույն ամպը մարդկանց վրա տեղացնելու է գիտության շնորհները և նույնը դալարեցնելու է ու չորությունը բույսի շրջելու։

560 Իսկ գոսացածները, որոնք հնազանդության չեն գալիս նրանց վրա հրեղեն փայլատակումների անձրև է սփռելու, որ կիզի, այրի ու ոչնչացնի, դառնության բաժակը մատուցելով ըմպելու համար։ Ինչպես տեսանողը տասներորդ սաղմոսում նվագում է, թե «մեղավորների վրա տեղալու է որոգայթ, հուր և ծծումբ, այս մրրիկն է նրանց բաժակի բաժինը»։

561 «Զի Տէր արդար է և զարդարութիւն սիրէ», և արդարութեամբ կամի առ ինքն կոչել զձեզ յորդեգրութիւն. զի հոգիընկալ ամպն աստուածակիր ճշմարտութեան սովոր է տեղալ յոգիս մարդկան զգիտութեան ուսուցութիւն, և անկել ի սիրտս մարդկան զերկիւղ աստուածպաշտութեան, և մատռուակել զսէրն Քրիստոսի Արարչին առ իւր արարածս. և նորուն կամօքն ամբառնալ ի բարձրութիւն իւրոյ Աստուածութեանն, զոր ձեզ պարտ է ընդունել։

562 ՀԱ. Զի եթէ ամպք որ սպասաւորք են, առեալ զհրաման ի Տեառնէ, իջեալ ի բարձանց ի խորութիւն անդնդական ծովուցն խոնարհ՝ առ եթերացն առ ընթեր լցեալ ուռուցեալ, ամփոփեալ զբազմութիւն ջուրցն, հանեալ, վերացեալ, տարածեալ, ծածկեալ զերեսս երկնից լի որոտմամբ, ցօղալից առատութեամբ զԱրարչին հրամանս կատարեն, առ ի ներքոյս մատուցանեն, ո՞րչափ ևս առաւել այս վկայքս, որ վերացան ի սէր Աստուածութեանն, առ որս Աստուած խոնարհեցաւ՝ ևս առաւելագոյն առին զշնորհս Հոգւոյն, ևս առաւել լցան պարգևօքն. որք զմարմինս իւրեանց եդուն ի գանձն տէրունի, զի միւսանգամ առցեն անդրէն, նորոգեալ զհնացեալն։ Եւ լցեալ աստուածական պատգամօքն՝ զուն եդեալ և ճգնութեամբ մեծաւ քարոզեցին, և տեղացին ի ձեզ զտեղ երկնաւոր շահիցն և փայլատակեցին ի ձեզ զլոյս և զհուր միանգամայն, և քան զաստուածընկալ ամպն ևս զօգուտն ի ձեզ հոսեցին։ Փոխանակ ամպաշուք տեղալի որոտալոյն ահագնութեան՝ Աստուած որոտաց առ ձեզ ևս ահագնագոյնս, և կամեցաւ զձեր կեանս և զփրկութիւն։

563 Եւ սոքա, որ ատեցին զաշխարհս և զամենայն ինչ որ յերկրի է և սիրեցին զերկինս և զպատուիրանս Թագաւորին Արարչին, որ նստին ի վերայ նորա, որ ընկալան զնոսա և զոգիս նոցա ի լուսեղէն յարկսն, և յերկնաւոր քաղաքն յափշտակեցան նոքա և զուարթակից երկնաւորացն եղեն, որ են կենդանիք. որ փոխեցան ի տկարութենէս ի զօրութիւն, յապականութենէս յանապականութիւն, ի մահուանէս յանմահութիւն. զի յաղթեցին մարմնեղէն ցանկութեանցն, և հաղորդեցան աստուածեղէն փառացն. որ նորոգեցան ի փառս անպատումս, և զերծան յանպիտոյիցս. և ոսկերք նոցա տաճարք եղեն Աստուածութեանն Հոգւոյն, քանզի և առ Տէրն



561 «Քանզի Տերը արդար է և սիրում է արդարությունը» և արդարությամբ կամենում է ձեզ իր մոտ կանչել որդեգրության, որովհետև աստվածակիր ճշմարտության հոգիընկալ ամպը սովոր է մարդկանց հոգիների մեջ տեղալ գիտության ուսուցումը, մարդկանց սրտերում անկել աստվածպաշտության երկյուղը, Քրիստոս Արարչի սերը հոսեցնել նրա արարածների վրա և նույնի կամքով բարձրացնել իր աստվածության բարձրությանը, որը դուք պարտավոր եք ընդունել։

562 ՀԱ. Քանզի եթե ամպերը, որոնք սպասավորներ են, հրաման են ստանում Տիրոջից, իջնում են բարձունքներից ծովերի ցածըր անդունդների խորությունը և եթերի մոտ առընթեր լցված և ուռած, ամփոփելով ջրերի առատությունը, հանելով, վերանալով, տարածվելով ծածկելով երկնքի երեսը՝ որոտումներով լի և ցողալից առատությամբ Արարչի հրամաններն են կատարում, ներքև հոսեցնելով [անձրևը], ապա առավել ևս այս վկաները, որոնք վերացան ի սեր աստվածության, նրանց վրա Աստված խոնարհվեց, առավելագույն չափով ստացան Հոգու շնորհները և առավել ևս լցվեցին պարգևներով։ Նրանք իրենց մարմինները տվին որպես տերունի գանձ, որպեսզի մյուս անգամ առնեն նորոգելով հնացածը։ Լցված աստվածային պատգամներով, ջանք դրեցին և մեծ ճգնությամբ քարոզեցին, ձեր վրա տեղացին երկնային շահի անձրևը, ձեզ փայլատակեցին լույսն ու հուրը միանգամայն և առավել քան աստվածընկալ ամպը ձեր վրա օգուտներ հոսեցրին։ Ամպաշուք անձրևալի ահագին որոտման փոխարեն՝ Աստված որոտաց ձեզ առավել ևս սարսափելի կերպով՝ կամենալով ձեր կյանքն ու փրկությունը։

563 Իսկ սրանք, որ ատեցին աշխարհը և ամեն ինչ, որ երկրի վրա է և սիրեցին երկինքն ու պատվիրանները Արարիչ Թագավորի, սպասում էին նրան, որ ընդունեց նրանց և նրանց հոգիները լուսեղեն հարկերում։ Նրանք տարվեցին երկնավոր քաղաքը և զվարթակից դարձան երկնավորներին։ Նրանք կենդանի են և տկարությունից զորության փոխվեցին, ապականությունից՝ անապականության, մահվանից՝ անմահության, քանզի հաղթեցին մարմնեղեն ցանկություններին և հաղորդակից եղան աստվածեղեն փառքին։ Նրանք նորոգվեցին անպատում փառքի մեջ և փրկվեցին անպիտանությունից։ Նրանց ոսկորները աստվածության Հոգու տա-

իւրեանց կենդանիք են, և սուրբ Հոգիք նոցա գգուեալ պահին կենդանիք։

564 Իսկ մարմինք նոցա և ոսկերք նոցա Աստուծոյ տաճարք են ի միջի ձերում. զի ոչ այլ իւիք կարիցէք դուք զԱստուած ընդ ձեզ հաշտեցուցանել և մերձենալ առ Աստուած՝ եթէ ոչ բարեխօսութեամբ աղօթից նոցա. և հաւանել ձեզ հաւատոցն այնց՝ որով նոքայն վարեցան և արժանի եղեն ելանել ի ծովն կենդանի, և անտի հոսել ի ձեզ զվտակս քարոզութեան աստուածական պատգամացն, և պաշտել ձեզ զբաժակն արարչական սիրոյն՝ թէ ընդունել մարթասջիք։ Զի ոչ զոք թողուցու ըստ անձանց կամս գնալ. այլ եթէ կամիցիք, և եթէ ոչ՝ սակայն զոր Աստուածն կամի՝ զայն էք կատարելոց։

565 ՀԲ. Քանզի իբրև ետես Աստուած զազգս մարդկան տկարացեալս և եղծեալս հիւանդութեան մեղօքն՝ եկն իբրև զբժիշկ բըժըշկել, զի մի՛ ի հիւանդութենէ մեղացն մեռանիցին. որում և վըկայէ մարգարէն և ասէ. «Թէպէտ և հիւանդացաւ՝ սակայն դու հաստատեցեր զնա»։ Արդ՝ նոյն գթածն և մարդասէրն, որ ի սկզբանէն էր յաւիտենից, հաստիչն և արարիչն ամենայնի՝ նոյն ինքն բժիշկ իւրոց արարածոցն, որ երկիւղածացն ծագեաց զլոյս իւր, որպէս ասէ մարգարէութիւնն. «Ծագեսցէ ձեզ երկիւղածաց անուան իմոյ արեգակն արդարութեան, և բժշկութիւն ի թևս իւր»։

566 Եւ ո՞վ իցէ արեգակն արդարութեան՝ եթէ ոչ որ խոնարհեցաւ և ծագեաց զիւր ճառագայթսն ամենայն հիւանդացելոցն և յախտ անկելոցն մեղօք, նոյն է որ ի Հօրէն ծագեաց. զի նա միայն է, որ կարէ լուսաւորել զոգիս խաւարեալս մարդկան, և զուարճացուցանել զանձինս ստուերանստաց անկելոցն։ Եւ նա ինքն է, որ յայց ել կորստեանդ ձերում. որոյ ճառագայթիւք նորա կեան արարածք եղեալք ի նմանէ ամենայնք։ Նա և զարդն երկնից, այսինքն են լուսաւորքն, զիւրեանց լոյսն յակնարկել ճառագայթից նորա ի մէջ արարածոց ջահացուցանեն՝ առ ի տալ լոյս երկրի. և լի են լուսով նորա երկինք և աշխարհ։ Եւ Հոգի նորա՝ նշոյլք ճառագայթից նորին էութեանն, որ խոնարհեցաւ կամօք գթութեան իւրոյ, եկն ի լուսաւորել զարարածս. զի էին խաւարեալ՝ եկն ի տալ ծագել զլոյս իւր։



ճարներ եղան։ Քանզի իրենց Տիրոջ հետ կենդանի են, և նրանց սուրբ հոգիները գուրգուրանքով կենդանի են պահվում։

564 Նրանց մարմիններն ու ոսկորները ձեր մեջ Աստուծո տաճարներ են, քանզի ոչ մի այլ ձևով դուք չեք կարող Աստծուն հաշտեցնել ձեզ հետ և մերձենալ առ Աստված, եթե ոչ նրանց աղոթքների բարեխոսությամբ և նրանց հավատը ընդունելով, որով նրանք ապրեցին և արժանի եղան կենդանի ծովը ելնելու և այնտեղից ձեր վրա հոսեցնելու աստվածային պատգամների քարոզության վըտակները, մատուցելու ձեզ արարչական սիրո բաժակը, եթե ընդունել կարողանաք։ Քանզի ոչ ոքի չի թողնելու, որ գնա ըստ իր անձնական կամքի, այլ եթե կամենաք թե ոչ, այնուհանդերձ ինչ որ Աստված է կամենում, այն եք կատարելու։

565 ՀԲ. Քանզի երբ տեսավ Աստված, որ մարդկային ազգը տկարացած է և մեղքերի հիվանդությամբ եղծված, եկավ իբրև բըժիշկ բժշկելու, որպեսզի մեղքերի հիվանդությունից չմեռնեն։ Այդ մասին մարգարեն վկայում է ասելով. «Թեպետ և հիվանդացավ, սակայն դու հաստատեցիր նրան»։ Արդ նույն գթածն ու մարդասերը, որն սկզբից հավիտենական է, ստեղծողն ու ամենայնի արարիչը, նույն ինքն իր արարածների բժիշկն է, որը երկյուղածներին իր լույսն է ծագում, ինչպես ասում է մարգարեությունը. «Ձեզ՝ իմ անունից երկյուղածներին, ծագելու է արդարության արեգակը և բժշկությունն իր թևերի մեջ է»։

566 Եվ ո՞վ է արդարության արեգակը, եթե ոչ Նա, որ ինքն իրեն խոնարհեցրեց և ծագեց իր ճառագայթները բոլոր հիվանդացածների և մեղքերի ախտերով բռնվածների վրա։ Նա նույնն է, որ Հորից ծագեց, քանզի միայն Նա է, որ կարող է լուսավորել մարդկանց խավարյալ ոգիները և զվարճացնել ստվերանիստ մնացած հոգիները։ Նա ինքն է, որ այցելության եկավ ձեր կործանմանը և Նրա ճառագայթներով ապրում են Նրա կողմից ստեղծված ամենայն արարածները։ Նաև երկնքի զարդերը, այսինքն լուսավորները իրենց լույսը արարածների մեջ ջահի նման պայծառացնում են, նայելով Նրա ճառագայթներին, որպեսզի լույս տան երկրին։ Երկինքն ու աշխարհը լի են Նրա լույսով։ Նրա Հոգին իր սեփական էության ճառագայթի նշույլն է, որ խոնարհվեց իր գթության կամքով և եկավ լուսավորելու արարածներին, քանզի խավարյալ էին և Նա եկավ տալու, ծագելու իր լույսը։

567 Իսկ եթէ ոչ կամիցին բանալ զսիրտս իւրեանց նորա ճառագայթից Աստուածութեանն՝ այրեսցէ մինչև խպառ. որպէս և ասէն, թէ «Հուր բորբոքեցաւ ի բարկութենէ իմմէ. այրեսցէ և իջցէ մինչև ի դժոխս ներքինս. կերիցէ զերկիր և զամենայն բոյս երկրի նոցա. վառեսցին հրով, բորբոքեսցին հիմունք լերանց նոցա»։ Զի՞, կամ ընդէ՞ր, կամ ո՞րպէս զհիմունս մատուցեալ հրդեհիցէ։ Այլ քանզի հիմնացեալ էին մեղքն յերկրի և զօրացեալ՝ վասն այսորիկ հիմամբք և արմատովքն հանդերձ զչարն հրդեհեսցէ, և խլեսցէ զմոլորութիւնն յերկրէ առ հասարակ, և զմորոսութիւն կռապաշտութեանն ջնջել և ի բաց կորուսանել, որպէս ի սկզբան տանջանացդ առ ձեզ ցուցաւ։

568 Զի յորժամ զծովու նմանութիւն, զմեղացն քամելոյ և զյստակելոյ ճառս բերէ ի մէջ, և զդժնդակսն հեղձուցանէ անդէն ըստ չհլութեան նմանութեան խստասրտութեան ընդդիմասովոր բարոյիցն՝ ապարասան ապարթանական փարաւոնեան զօրուն վաշտացեալ գնդօքն, և բազմացեալ կառօքն, և սպառազէն առնձիոյն նիզակօք, և անթիւ երիվարօքն վառելովք ի ջուրսն կորնչել։ Զի ի չափաւոր ժամանակի՝ ոռոգմունք կարի պիտոյ են առ ամենայն բոյսս սերման. իսկ յորդն և անչափն՝ նեխէ ապականէ և կորուսանէ. իսկ որ կարին բազմանայ՝ ողողէ անյիշատակ ջնջէ։ Սոյն օրինակ և լոյսն ցանկալի է յաչս մեր, այլ յորժամ կարի ջերմակիծն առնէ՝ վնասէ, ըստ եբրայական բանակին, որ հակառակ կացեալ ընդ Մովսիսի՝ այրեցան ի բարկութենէ անտի Աստուծոյ։

569 Իսկ ցամաք երկիրս բնակութիւն է մեր. և ամենայն օգուտք և պաճարանք կենաց մերոց ի սմանէ և ի վերայ սորա, և դայեկութեան դարմանք, ըստ նմանութեան կաթինն ի մօրէ, մեզ յայնմանէ։ Վասն որոյ նոյն խնամակալ մեզ երկիրս պայթեաց պատառեցաւ, եբաց զիւր թանձրութիւնն, և սոյզ, ընկլոյզ եկուլ միանգամայն, կենդանւոյն ի դժոխս յուղարկեաց զղևտացիսն, որ իշխեցին յընչաց քերել և արհամարհել զընտրեալն և զսիրելին Աստուծոյ զՄովսէս։

570 ՀԳ. Յայնմ ժամանակի այս եղև, իսկ արդ՝ զի առաքեաց Աստուած զՈրդին իւր առ մարդիկ, որ եկն և շրջեցաւ ընդ աշխարհս, և առաքեաց զիւր առաքեալսն ընդ երկիր ամենայն. և այս երանելիքս որ առ ձեզ հասին, ոչ միայն զլոկ բանս, այլ և զնշանս արուեստիցն ցուցին ձեզ ձերով պատուհասիւքդ։



567 Իսկ եթե չկամենան իրենց սրտերը բացել նրա աստվածության ճառագայթներին, նա իսպառ կայրի նրանց, ինչպես ասված է, թե «Հուրը բորբոքվեց իմ բարկությունից, որն այրելու է և իջնելու մինչև դժոխքի խորքը, ոչնչացնելու է երկիրը և նրանց երկրի բոլոր բույսերը վառելու է հրով և բորբոքելու է նրանց լեռների հիմքերը»։ Ինչու, ինչ բանի համար, կամ ինչպես հիմքերին մոտենալով հրդեհելու է։ Քանզի նրանց մեղքերը հիմնված և զորացած էին երկրի վրա, դրա համար հիմքերով և արմատներով է հրդեհելու չարը և մոլորությունը երկրից խլելու է առհասարակ, ջնջելու է կռապաշտության մոլորությունը ու դուրս վանելու, ինչպես ձեր տանջանքների սկզբում ձեզ ցույց տրվեց։

568 Քանզի, երբ ծովի նմանության, մեղքերը քամելու և զըտելու մասին է ճառում, նա այնտեղ խեղդում է դժնդակներին, որոնք նման էին իրենց անհնազանդությամբ, խստասիրտ, ընդդիմասովոր բարքերով, փարավոնյան անսանձ ժպիրհ զորքին, որն իր վաշտ վաշտ գնդերով, բազմաթիվ կառքերով, սպառազեն այրաձիու նիզակներով և անթիվ զինավառ երիվարներով, ջրերի մեջ կորավ։ Քանզի չափավոր ձևով ոռոգումը շատ պիտանի է բոլոր բույսերի սերմերին, իսկ հորդառատ և անչափ [ջուրը] նեխում է, ապականում և ոչնչացնում, իսկ եթե շատ բարձրանա, ողողում և անհիշատակ բնաջնջում է։ Նույն ձևով լույսը ցանկալի է մեր աչքերին, սակայն, երբ չափազանց ջերմության է հասնում, վնասում է, ինչպես եբրայական ազգը*, որը հակառակ կանգնելով Մովսեսին, այրվեց Աստուծո բարկությամբ։

569 Իսկ ցամաք երկիրը մեր բնակավայրն է, և մեր կյանքի ամեն օգուտ ու սնունդ նրանից է և նրա վրա է [աճում], և մեր աճման սնունդը, ինչպես կաթը մորից, գալիս է նրանից։ Այդ պատճառով մեր խնամակալը՝ երկիրը պայթեց, պատռվեց, բացեց իր խորքերը և սուզեց միանգամայն, կենդանի կուլ տվեց, դժոխք ուղարկեց ղևտացիներին, որոնք համարձակվեցին ծաղրել և արհամարհել Աստուծո ընտրյալ և սիրելի Մովսեսին։

570 ՀԳ. Այդ ժամանակ այսպես է եղել, իսկ արդ՝ Աստված մարդկանց մոտ առաքեց իր Որդուն, որը եկավ շրջեց աշխարհում և առաքեց իր առաքյալներին ամբողջ երկիրը, իսկ այս երանելիները հասան ձեզ մոտ, ոչ միայն լոկ խոսքեր, այլև հրաշալի նշաններ ձեզ ցույց տվեցին ձեր պատուհասների միջոցով։

571 Իսկ արդ՝ որք անգոսնեցին զծառայն Աստուծոյ զՄովսէս, այնպիսի պատուհասի եղեն արժանի. իսկ որք իշխեցին ընդդէմ Աստուածորդւոյն խստանալ, ո՞րպիսի լինիցին պատժոց պատուհասից արժանի։ Զի նոքա որ յերկրաւոր հրամանատուէն հրաժարեցին՝ այնչափ բարկութեան եղեն պատահեալք. իսկ որք յերկնաւորէն հրաժարեցին՝ ո՞րչափ ևս առաւել լինիցին դիպեալք տանջանաց։ Քանզի Տէրն Աստուածորդին առաքեալ ի Հօրէ, յորժամ զիւր առաքեալսն զսիրելիսն առաքէր ընդ երկիր ամենայն՝ այսպէս հաստ զդատավճիռն և հաստատեաց. ասէ. «Որ զձեզ ընդունի՝ զիս ընդունի, և որ զիսն ընդունի՝ ընդունի զՀայրն իմ»։

572 Արդ՝ թէպէտ յերեկ սպանէք դուք զնոսա, այլ Աստուծոյն նոքա և այժմ կենդանի են, և յաւիտեան կենդանի են լինելոց։ Արդ՝ նոցին բարեխօսութեամբ հաճեցայք դուք ընդ Աստուծոյ, ըստ խրատու սոցին առաքելակցին ձերոց առաքելոցս՝ մեծին Պաւղոսի, որ ասէն, թէ «Մեօք հաճեցարո՛ւք ընդ Աստուծոյ ի ձեռն մահու Որդւոյ նորա». զի Որդին Աստուծոյ մեռաւ և եկեաց, սոյնպէս և վկայքըն նորա սիրելիք կենդանի են և ձեզ բարեխօս։

573 Զի Որդին Աստուծոյ նա ինքնին ձեզ քարոզ աւետեաց և ինքնին ձեզ մատռուակ ուրախարար պատգամացն։ Նա ինքնին ձեզ հրաւիրակ յարքայութիւնն. նա ինքնին պաշտօնեայ իւրոց բարեացըն. նա ինքնին բազուկս ի վեր հարեալ՝ ի մէջգետին անցեալ պարգևատու լինի իւրոցն արժանեացն։ Նա ինքնին ահարկու լինի և դարձուցիչ ի վերայ այնոցիկ՝ որք ոչն ճանաչեն զնա. նա ինքնին գտակ է՝ որ կորուսեալն են ի նորա բարեացն։ Նա ինքնին առաջնորդ լինի մոլորելոցն, որք մոլորեալ են ի նորա ճանապարհացն։ Նա ինքնին նաւահանգիստ լինի այնոցիկ, զորս ալիք ամբարշտութեան մեղացն պաշարեցին իբրև զձեզ։ Նա ինքնին լինի դարձուցիչ գերութեանց՝ որք իցեն գերեալք ի մեղս իբրև զձեզ։ Նա ինքնին լինի բժիշկ վիրաւորելոց՝ որ ամբարշտութեամբն են վիրաւորեալք իբրև զձեզ։ Նա ինքնին լինի օգնական՝ որք թափեալ են յօգնականութեանցն զնայն ճանաչելոյ։ Նա ինքնին լինի յոյս յուսացելոց ի նա, ի մշտնջենաւորն, յանկէտ յանսպառ յանպատում յանվախճան արքայութեանն։ Որ նայի քաղցրութեամբ յարարածս իւր, և գթութեամբն իւրով կերակրէ զչարս և զբարիս. այլ և խրատէ զամենեսեան, զի յորդեգրութիւն կոչման Աստուածութեանն մերձենալ արժանիս արասցէ։



571 Իսկ ովքեր անգոսնեցին Աստուծո ծառա Մովսեսին, նման պատուհասի արժանի եղան և ովքեր համարձակվեցին Աստվածորդու դեմ հակառակվել, ինչպիսի՞ պատժի ու պատուհասի արժանի են լինելու։ Քանզի նրանք, որ երկրավոր օրենսդրից հրաժարվեցին, այսպիսի բարկության պատահեցին, իսկ ովքեր երկնավորից հրաժարվեցին, որչա՞փ առավել տանջանքների են հանդիպելու։ Տեր Աստվածորդին առաքված էր Հորից, երբ իր առաքյալներին՝ սիրելիներին առաքեց ամբողջ երկրին և այսպիսով դատավճիռը տվեց ու հաստատեց ասելով. «Ով որ ձեզ ընդունի, ինձ կընդունի, և ով ինձ կընդունի, կընդունի իմ Հորը»։

572 Արդ, թեպետ երեկ դուք սպանեցիք նրանց, սակայն Աստուծո համար նրանք և այժմ կենդանի են ու հավիտյան կենդանի են լինելու։ Արդ՝ նրանց բարեխոսությամբ դուք հաշտվելու եք Աստուծո հետ ըստ ձեր այս առաքյալներին առաքելակից մեծ Պողոսի խրատի, որն ասում է, թե «Մեր միջոցով հաշտվելու եք Աստուծո հետ, նրա Որդու մահվամբ», քանզի Աստուծո Որդին մեռավ և ապրեց, նույնպես և նրա սիրելի վկաները կենդանի են և ձեզ համար բարեխոս։

573 Աստուծո Որդին ինքը ձեզ քարոզ ավետեց և ինքը ձեզ ուրախարար պատգամների մատռվակ է։ Նա ինքը ձեզ արքայության հրավիրակ է և իր բարիքների պաշտոնյա։ Նա բազուկները վեր բարձրացնելով երկրի կենտրոնն է անցնում և պարգևատու լինում իր արժանիներին։ Նա ինքը ահարկու է և պատժում է նրանց, որ չեն ճանաչում նրան։ Նա ինքը գտնող է նրանց, որ կորցրել են իր բարիքները։ Նա ինքը առաջնորդ է մոլորվածների, որոնք մոլորվել են նրա ճանապարհներից։ Նա ինքը նավահանգիստ է նրանց, որոնց ձեզ նման մեղքերի ամբարշտության ալիքը պաշարել է։ Նա ինքը գերությունից փրկող է նրանց, որոնք մեղքերով գերված են ձեզ նման։ Նա ինքը բժիշկ է վիրավորների, որոնք ձեզ նման վիրավորված են ամբարշտությամբ։ Նա օգնական է այնպիսիներին, որ նրան ճանաչելու օգտակարությունից զուրկ են։ Ինքը հույս է իրեն հուսացողներին, մշտնջենավոր, անկետ, անսպառ, անպատում, անվախճան արքայության մեջ։ Քաղցրությամբ է նայում իր արարածներին և իր գթությամբ կերակրում չարերին ու բարիներին, այլև ամենքին խրատում է, որպեսզի արժանի լինեն մերձենալու աստվածության կոչման որդեգրությանը։

574 Այլ ձեզ յայտնի լինիցի, զի այս այսպէս է. զի Աստուած մարդասէր կամի, զի ժառանգս արասցէ զձեզ ինքեան։ Այլ յայնժամ մինչ ոչն գիտէիք դուք զԱստուած՝ ծառայէիք այնոցիկ, որք ոչ էին ի բնէ աստուածք. այլ այժմիկ ծաներուք դուք զԱստուած, մանաւանդ թէ Աստուած իսկ ծանեաւ զձեզ. զի էիք դուք մոլորեալք յարարածս ակարս և ի պաշտօն սնոտի, և ի լուծ ծառայութեան մեղացն էիք հնազանդեալ. այլ այժմ ազատեցայք յայնմանէ յանօգուտ կամացն լծոյ ծառայութեանն, ի ստրկութենէ անտի, ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր յՈրդին Աստուծոյ։

575 Զգոյշ լերուք, գուցէ հրաժարիցէք ի խօսելեաց աստի. զի թէ այնք ոչ կարացին ապրել, որ յերկրաւոր հրամանատուէն իշխեցին հրաժարել, ո՞րչափ ևս առաւել մեք՝ եթէ յերկնաւորէն թիկունս դարձուցանիցեմք։ Որոյ ձայնն զերկիր շարժեաց յայնժամ՝ դարձեալ և այժմիկ խոստացեալ է և ասէ. «Դարձեալ միւսանգամ շարժեցից ոչ միայն զերկիր, այլ և զերկինս». այլ զոր ասէն «միւսանգամ ևս»՝ յայտնէ զշարժելոցն իբրև զեղելոցն փոփոխումն. զի այն հաստատուն կայցէ՝ որ անշարժն իցէ։

576 Վասն այսորիկ հնազանդեցէ՛ք դուք ի սիրտս ձեր անշարժ թագաւորութեանն և ըմբռնեսջիք զշնորհս, որով պաշտիցէք մտադիւրութեամբ զԱստուած։ Զի Աստուած՝ հուր ծախիչ է, զի այրեսցէ զմեղս ձեր, և սրբեսցէ զանձինս ձեր՝ իբրև ի հալոցս փորձութեան ճարտարութեան արուեստիցն, կռանագործ արծաթարարացն, ընտրել զժանգն ի սրբոյ անտի։ Իսկ որ ընտրին՝ սուրբ և պատուականանայ. իսկ որ ոչն՝ այրի և հրդեհի. որպէս գիտողն ասէ, թէ «Եղիցի լոյսն Իսրայէլի ի հուր, և սրբեսցէ զնա ի բոց բորբոքեալ»։ Եւ զանօրէնութիւնն՝ խոտոյ նմանեցուցանէ. ասէ այսպէս, թէ «Վառեսցի զնովաւ, և կերիցէ զնա իբրև զխոտ. յաւուր յայնմիկ շիջցին լերինք և բլուրք և անտառք, և կերիցէ ի շնչոյ մինչև ի մարմին. և որ ապրէն՝ եղիցի իբրև ոք որ ապրէ ի բորբոքեալ բոցոյ. և որ մնացեալ իցէ ի նոցանէ՝ ասէ, թուով եղիցին»։

577 ՀԳ. Արդ՝ ի ժամանակսն յայնոսիկ յառաջինսն յետ ջրհեղեղին, իբրև բազմացան մարդիկ ի վերայ երեսաց երկրի՝ վայելէին ի պարարտութեան խնամոցն Աստուծոյ. և ճարպոյ եկեալ զակամբ՝ յայլայլութիւն մտաբերէին, անկզխտացեալք յիմարեցան։ Եկեալ ի մի վայր, խորհուրդ առեալ, սնոտիմաց խորհուրդ, շինել ի պաշտօն մեհենից աշտարակ մի բարձր անհնարին՝ կոթողեցին ի



574 Այլ ձեզ թող հայտնի լինի, որ այս այսպես է։ Մարդասերն Աստված կամենում է, որ ձեզ իրեն ժառանգորդներ դարձնի։ Այն ժամանակ մինչդեռ դուք չգիտեիք Աստծուն, ծառայում էիք նրանց, որոնք ի բնե Աստված չէին, իսկ այժմ ճանաչեցիք Աստծուն, մանավանդ, թե Աստված էլ ճանաչեց ձեզ, որ մոլորված էիք դեպի տկար արարածները և սնոտի պաշտամունքը, հնազանդվելով մեղքերի ծառայությանը։ Սակայն այժմ ազատված եք այդ անօգուտ լծի ծառայությունից՝ ստրկությունից [դառնալով] Տեր մեր Հիսուս Քրիստոսին, Աստծու Որդուն։

575 Զգույշ եղեք, որ չզրկվեք խոստացվածից, քանզի եթե չկարողացան փրկվել նրանք, որ երկրավոր հրամանատուից հրաժարվեցին, որչափ ևս մենք [չենք փրկվելու], եթե թիկունք դարձնենք երկնավորին։ Նրա ձայնը շարժեց երկիրը այն ժամանակ և այժմ էլ խոստանում է ասելով. «Դարձյալ մյուս անգամ շարժելու եմ ոչ միայն երկիրը, այլև երկինքը»։ Իսկ որ ասվում է «մյուս անգամ ևս» հայտնվում է իրերի շարժվելը, որպես եղած (ստեղծված) իրերի փոփոխում, քանզի այն, որ անշարժ է, հաստատուն է մնալու։

576 Ուստի դուք ձեր սրտերում հնազանդվեցեք անշարժ թագավորությանը և ստանաք շնորհները, որով պաշտելու եք Աստծուն հոժարությամբ։ Քանզի Աստված լափող հուր է, որը կայրի ձեր մեղքերը և կսրբացնի ձեր սրտերը, ինչպես ճարտար արվեստի կռանագործ արծաթագործների փորձության հալոցներում զտվում է ժանգը մաքուր մասից։ Ինչ որ զտվում է, մաքուր է և պատվական, իսկ ինչ չի զտվում, այրվում է և վառվում, ինչպես գիտողն (մարգարեն) ասում է, թե «Իսրայելի լույսը դառնալու է հուր և սրբելու է նրան բորբոքված բոցի մեջ»։ Անօրենությունները խոտի նման է դարձնելու, այսպես է ասում, թե «վառվելու է նրա շուրջը և ուտելու է նրան իբրև խոտ։ Այդ օրը լեռները, բլուրները և անտառները խորտակվելու են և սպառելու են շնչից մինչև մարմինը, իսկ ով ապրի, լինելու է նրա նման, որը բորբոքված բոցից է փրկված, իսկ ովքեր նրանցից մնալու են, ասում է թվով [հաշված] են լինելու»։

577 ՀԳ. Արդ՝ այն առաջին ժամանակներում, ջրհեղեղից հետո, երբ մարդիկ բազմացան երկրի երեսին, վայելում էին Աստծո խնամքի պարարտությունը և հղփացան ու խռովության մտահղացման ինքնամոռացության մեջ հիմարացան։ Հավաքվելով որոշ վայրում՝ խորհուրդ արեցին, սնոտի խորհուրդ՝ մեհյանների պաշտա-



21—1461

դաշտսն Սենէար յերկրին Ասորեստանեայց։ Արդ՝ շինել շինէին ի պաշտօն դիւաց, անձանց իմն անուն մեհենաշէն կապեալ՝ առ իւրեանց որդիս թողուլ։ Պանծացեալ հպարտացեալ, զանձինս ի գործ կացուցեալ՝ կաւագործութեան վաստակասէր անօրէնութեանն աշխատէին, իբրև պաշար խերշատանաց չարութեան զաւակաց ազգացն զկնի իւրեանց եկելոցն թողուլ խնդրէին այն անմիտ ազգն առաջին։

578 Տէր Աստուած նայեցեալ ի նոցա պակասամտութիւն՝ խառնեաց արբոյց նոցա զխառնակութիւն լեզուացն բաժանման. անդէն ի նմին տեղւոջ զնոսա ընդ միմեանս խառնակեաց, ուստի և նոյն տեղին զխառնակութեան զԲաբել անուն ժառանգեաց։ Եւ նոքա ցրուեալք ի միմեանց մեկնեցան, չլուեալ այնուհետև այր ընկերի բարբառոյ. այսպէս քակեալք ի միմեանց անջատեցան. և լքումն գործոյն եղև. զոր առաջի արկեալն էր՝ ինքեանք ջակտէին։ Եւ արբեալք՝ յիւրաքանչիւր լեզուս խօսէին, ուսեալք յամենահաստիչ Արարչէն. խառնակեալք և ցրուեալք բաժանեցան ի միմեանց։

579 Եւ հուր ահագին հողմախառն շոգի Հոգւոյն Աստուծոյ, որ սովորն է զմարդիկ յուղղութեան ճանապարհն հաստատել, և ի զրավաստակ ճանապարհացն խափանել, ուղղել յարդարութիւն և հաստատել զամենեսեան՝ այն հուր անկեալ ի վերուստ, կործեալ զաշտարակն՝ վերուստ ի վայր փլուզեալ հոսեաց, տապաստ դաշտացն ցան և ցիր կացուցանէր։ Արդ՝ իբրև այս նոցա նորացոյց ամբարշտութեանցն խափան լինէր, ցրուեալք ընդ վիճակս իւրաքանչիւր՝ ըստ կամացն Աստուծոյ ի վերայ երկրի սփռեցան. եօթանասուն և երկու նահապետք լեզուաց կացեալ՝ բաժանեցան ընդ երկիր, հաստատեալք յիւրաքանչիւր սահմանս։

580 Բայց մի ումն, որ նախնի հեբրայական ազգին, ոչ ի խորհուրդն եմուտ շինել զվաղափուլն, և ոչ կցեցաւ յարագաւերն՝ վասն որոյ էր խորհուրդն. վասն այսորիկ զիւր լեզուն պահեալ։ Որ նախ Արարչին իւրովք զաւակօք հանդերձ ծանօթ եղեալ, որպէս ի սկզբանն պատմեցաք, զաստուածպաշտութիւն յանձն առեալ՝ ժողովուրդ ձեռական անուանեցան Աստուծոյ. ուստի և մարգարէքն աստուածախօսք. «Ուստի և Քրիստոս ըստ մարմնոյ, որ է ի վե-



մունքի համար շինել բարձր անհասանելի աշտարակ և այն կոթողեցին Սիննար դաշտում, Ասորեստան երկրում։ Արդ՝ շինեցին շենքը դևերի պաշտամունքի համար իրենց անձերին կապելով մեհենաշեն անունը և այն կտակեցին իրենց որդիներին։ Հոխորտալով, հպարտանալով գործի անցան և ջանասիրաբար աշխատեցին անօրինության կավագործությամբ, քանզի այն անմիտ առաջին ցեղը կամենում էր չարության պաշար թողնել իրենից հետո եկող սերունդներին։

578 Տեր Աստված նայելով նրանց պակասամտությանը, շփոթեցրեց ու խմեցրեց նրանց տարբեր լեզուների բաժանման խառնակությունը։ Այնտեղ նույն վայրում նրանց իրար խառնեց, ուստի և այն տեղը բաբելոնյան խառնակության անունը ժառանգեց։ Նրանք ցրվելով իրար մոտից մեկնեցին, այնուհետև այրն իր ընկերոջ լեզուն չէր հասկանում։ Այսպես միմյանցից բաժանվելով անջատվեցին, նրանց գործը լքվեց և այն, որ սկզբում կատարել էին, իրենք քանդեցին։ Լինելով արբեցած, յուրաքանչյուրը տարբեր լեզու էր խոսում, սովորելով ամենաստեղծ Արարչից։ Նրանք խառնվեցին ու ցրվեցին, բաժանվելով միմյանցից։

579 Եվ ահագին հուրը՝ Աստուծո Հոգու հողմախառն շոգու հետ, որ [ընդհանրապես] սովոր է մարդկանց ուղիղ ճանապարհի վրա հաստատել և զրավաստակ ճանապարհներից ետ պահել, ուղղել դեպի արդարություն և ամենքին հաստատել, ապա այն հուրը ընկավ ի վերուստ, կործեց աշտարակը վերից վայր, փլուզեց, փշրեց և դաշտերի մեջ տապաստ ու ցիրուցան դարձրեց։ Արդ, երբ նրանց այս նորացույց ամբարշտությունը խափանվեց, նրանք սփռվեցին երկրի վրա, ըստ Աստուծո կամքի, յուրաքանչյուրը իր մասում։ Յոթանասուներկու նահապետներ տարբեր լեզուների [պետեր] դարձան, բաժանվեցին երկրում, յուրաքանչյուրը հաստատվելով իր սահմաններում։

580 Բայց մեկը, երբ եբրայական (հեբրայական) ազգի նախնին էր, խորհրդի չմտավ շինելու վաղափուլ [աշտարակը] և ոչ էլ կցվեց արագավերին, քանզի այդպիսին էր խորհուրդը։ Այդ պատճառով նա պահպանեց իր լեզուն։ Նա իր զավակներով հանդերձ առաջինը ծանոթացավ Արարչին, ինչպես սկզբում պատմել ենք, աստվածապաշտությունը հանձն առավ և անվանվեցին Աստուծո սեփական ժողովուրդը։ Նրանից ծագեցին աստվածախոս մարգարեները «Նրանից է և Քրիստոսը, ըստ մարմնի, որ ամենքից վեր

րայ ամենայնի Աստուած օրհնեալ յաւիտեանս»․ ուստի և աշակերտքն աւետարանիչք նորապարգև կտակարանացն շնորհելոց․ որք և վկայք նորա զօրութեանն գործոց նշանաց և արուեստից, որ գործեցան ի նորա գալստեանն։ Որք և մատակարարեցին զշնորհսն, որք և զհուրն կենդանութեան Հոգւոյն ի բերան առեալ՝ հրդեհեալ սրբեցին զաղտն տիեզերաց․ որք և յարուցին ի գլորմանէ զանկելութիւն ամենայն երկրի․ որք զանօրէնութիւնն տիեզերաց փլուզեալ այրեալ մաշեցին ըստ օրինակի բարձրաբերձ աշտարակին զորմէ պատմեցաքն։

581 Արդ՝ փոխանակ բարձրաբերձ և վաղաւեր աշտարակին՝ խաչն ճշմարտութեան կանգնեցաւ, որոյ զօրութիւնն մշտնջենական է, և փառք նորա Աստուած․ որպէս և գիտողն ասէ․ «Ի քեզ, Տէր, յայտնեսցի, և փառք նորա զքեզ ծածկեսցեն․ գնասցեն թագաւորք ի լոյս քո, և հեթանոսք ի ծագել լուսոյ քոյ»։

582 Հե. Ահա թագաւորեալք, որք պարծեցան ի խաչելեալ Փրկիչն, որք և վկայք են նորա Աստուածութեանն։ «Որք մեռանն ընդ Քրիստոսի՝ ընդ նմին և թագաւորեն»․ զի մատնեցան ի մահ վասն անուանն Աստուծոյ, զի և կեանքն Յիսուսի յայտնի լինին ահաւասիկ ի մահկանացու մարմինս սիրելեացն Քրիստոսի։ Որք և յայտնի մեռեալք, և ի ծածուկ կենդանիք, որք քարոզեն յայտնի զկենդանութիւն իւրեանց, և տան զկենդանութիւն ըմպել ձեզ, որ մեռեալք էք ի մեղս ձեր։

583 Զի Աստուած յայտնեցաւ ձեզ յոսկերս նոցա․ վասն զի առին նոքա յանձինս իւրեանց զլոյս չարչարանաց խաչին, և նովին Քրիստոսի չարչարանօքն օրինակեալ զհամբերութիւն Փրկչին յանձինս իւրեանց, լուսաւորել զխաւարն որ մածեալ էր յոգիս ձեր․ որպէս ասէ գիտողն, թէ «Խաւար ծածկեաց զերկիր, և մառախուղ մածեալ է զհեթանոսօք»։ Ահա արդարև խաւար և մառախուղ մածեալ է զհեթանոսութեամբ ոգւովք ձերովք՝ անճանաչողական սովորութեամբքդ, որպէս և աշտարակն մոլորութեան, յոր յղացան ազգք մարդկան զանօրէնութեան պաշտամունս, անշնչոց և շնչաւոր արարածոց պաշտօն մատուցանել փոխանակ Արարչին։

584 Զի թէպէտ և յղացեալ խորհրդովք անօրէնութեան յաշտարակագործ կորուսիչ պաշտամանն, վասն որոյ և ցրուեցան ընդ



է և Աստված նրան օրհնել է հավիտյան», նրանից են և շնորհված նորապարգև կտակարանների աշակերտները՝ ավետարանիչները, որոնք վկաներն են նրա զորության, գործերի, նշանների և հրաշքների, որ կատարվեցին նրա գալստյան ժամանակ։ Նրանք շնորհներ մատակարարեցին և Հոգու կենդանության շունչը իրենց բերանն առնելով, հրդեհեցին, սրբեցին տիեզերքի աղտը, գլորումից բարձրացրին ամբողջ երկրի ընկածներին։ Նրանք տիեզերքի անօրենությունները տապալեցին, այրեցին, մաշեցին ըստ բարձրաբերձ աշտարակի օրինակի, որի մասին պատմեցինք։

581 Արդ, բարձրաբերձ և վաղավեր աշտարակի փոխարեն ճշմարտության խաչը կանգնեցվեց, որի զորությունը մշտնջենական է և նրա փառքն է Աստված։ Ինչպես գիտողն (Մարգարեն) է ասում․ «Քեզ Տերը հայտնվելու է, և նրա փառքը քեզ է ծածկելու, թագավորները գալու են քո լույսին, և հեթանոսները՝ քո լույսի ծագելուն»։

582 Հե. Ահա թագավորյալները, որոնք պարծեցան խաչեցյալ փրկչով և նրա աստվածության վկաներն են։ «Նրանք մեռան Քրիստոսի հետ, նրա հետ էլ թագավորում են», քանզի մահվան մատնվեցին հանուն Աստուծո, որպեսզի Հիսուսի կյանքն էլ ահավասիկ հայտնվի Քրիստոսի սիրելիների մահկանացու մարմիններում։ Նրանք հայտնապես մեռած են, սակայն ծածկապես կենդանի, քարոզում են հայտնապես իրենց կենդանությունը և նրանք կենդանությունն են մատուցում ըմպելու ձեզ, որ մեռած եք ձեր մեղքերի մեջ։

583 Աստված ձեզ հայտնվեց նրանց ոսկորների մեջ, քանզի նրանք իրենց վրա առան չարչարանքների լույսը և Քրիստոսի նույն չարչարանքներով Փրկչի համբերությունը իրենց անձերի վրա արտացոլեցին, լուսավորելու համար խավարը, որ պատել էր ձեր հոգիները։ Ինչպես ասում է գիտողը (մարգարեն), թե «խավարը ծածկեց երկիրը և մառախուղը պատել է հեթանոսներին»։ Ահա արդարև խավար և մառախուղ է պատել ձեր հոգիների հեթանոսությունը, տգետ սովորություններով, ինչպես մոլորության աշտարակը, ուր մարդկային ցեղերը անօրենության պաշտամունքը հղացան, Արարչի փոխարեն պաշտելով անշունչ ու շնչավոր արարածներին։

584 Քանզի թեպետ և իրենց խորհուրդներում անօրենության հղացան աշտարակագործ կորուսիչ պաշտամունքով, որի համար և

երկիր խառնակեալ լեզուօքն՝ սակայն ոչ թողին զնոյնն. որպէս ասէն գիտողն ի նոյն սաղմոսարանին, թէ «Ահաւասիկ երկնեցին զանօրէնութիւն, յղացան զցաւս, և ծնան զանօրէնութիւն»։ Զի յետ քակտելոյն աշտարակին և թողլոյն զիւրաքանչիւր գործս անօրէնութեան՝ գործեցին ձեռագործս, որում երկիր պագանէին. որպէս և միւս գիտողն ասէ. «Փայտին ասացին՝ հայր իմ ես դու, և քարին ասացին՝ եթէ քո իսկ ծնեալ է զմեզ, և դարձուցին յիս զթիկունս, և ոչ զերեսս իւրեանց»։

585 Վասն այսորիկ փոխանակ փայտին, որում երկիր պագանէին՝ կանգնեաց զխաչն իւր. ուստի և զլոյս ճառագայթիցն արձակեաց ամենայն արարածոց, որք նստէին ի խաւարի և ի ստուերս մահու. իսկ զանպիտոյսն այրեսցէ, որպէս ըստ գիտողական բանին ասէ. «Եղիցի լոյսն Իսրայելի հուր, և սրբեսցէ զնա ի բոց բորբոքեալ»։ Իսկ աշտարակն յուզեաց զսրտմտութիւն բարկութեան Արարչին՝ ցրել զնոսա և խառնակել զլեզուս նոցա։ Իսկ ի խաչէն ողորմութիւնք յուզեցան, ժողովել զցրուեալսն ազգաց որդւոցն Ադամայ։ Եւ փոխանակ քարապաշտութեանն հնոտւոյն սնոտւոյն՝ վիմացոյց զհաւատս իւրոց վկայիցն, զի անշարժ լինիցին և հաստատուն։

586 Եւ շինեսցո՛ւք մեք ձեօք հանդերձ ի վերայ հաստատութեան հաւատոցն առաքելոց և մարգարէից. ընկալցո՛ւք զշնորհացն հուր Հոգին։ Որ այրեացն և փլոյզ զաշտարակն մոլորութեան՝ նոյն շինեսցէ զմեզ հիմամբք հաստատութեանն հաւատոյ, և ածցէ զմեզ ի միաբանութիւն խաչիւն իւրով։ Եւ տացէ մեզ զհուր Հոգւոյն, որով մեղքն այրեսցին, և արդարութիւնն լուսաւորեսցի ի խաչն, ուստի Տէրն յայտնեցաւ, ուստի Տէրն կախեցաւ, ուստի փառք նորա ծագեցին և լցին զերկիր, ուստի վկայքն, թագաւորքն և թագաւորեալքն ընդ Քրիստոսի, որով և հաշտիք դուք ընդ Աստուծոյ ի ձեռն մահու Որդւոյ նորա։

587 Վասն որոյ և Աստուածորդին խոնարհեցաւ, զի առցէ զմարմին մարդկան, և խոնարհեսցի յանարգութիւն մահու՝ մինչև ի թաղումն անգամ. զի զարժանացեալսն արասցէ նմանակիցս պատկերի Աստուածութեանն մարդասիրութեամբն իւրով, որք և եղբարք անուանեցան վասն անբաւական սիրոյն՝ որ սիրեացն զմարդիկ. զի լինիցի ինքն անդրանիկ ի մէջ եղբարց բազմաց։ Վասն իւրոյ մարդասիրութեանն եհատ այսպէս զդատաւճիռն. ասէ ինքն Աստուա-



երկրում ցրվեցին լեզուները խառնելով, այսուհանդերձ նույնը չթողեցին, ինչպես ասում է գիտողը, նույն սաղմոսարանի մեջ, թե «Ահավասիկ անօրենություն երկնեցին, ցավեր հղացան և ծնեցին անօրենություն»։ Քանզի աշտարակի քանդվելուց և յուրաքանչյուրն իր անօրենության գործերը թողնելուց հետո՝ ձեռագործ [պատկերներ] պատրաստեցին, որոնց երկրպագում էին, ինչպես և մյուս գիտողը ասում է. «Փայտին ասացին՝ դու իմ հայրն ես, և քարին ասացին, թե դու ես մեզ ծնել, ինձ թիկունք դարձրին և ոչ իրենց երեսները»։

585 Այդ պատճառով փայտի փոխարեն, որին երկրպագում էին, իր խաչը կանգնեցրեց, որպեսզի լույսի ճառագայթներ արձակի ամենայն արարածների վրա, որոնք նստած էին խավարի և մահու ստվերի մեջ։ Նա այրելու է անպիտաններին, ըստ մարգարեի խոսքի. «Իսրայելի լույսը դառնալու է հուր և սրբելու է նրան բորբոքված բոցով»։ Իսկ աշտարակը հուզեց Արարչի սրտմտությունը, բարկությունը և ցրեց նրանց ու խառնեց նրանց լեզուները։ Իսկ խաչից ողորմություն հորդեց՝ Ադամի որդիների ցրված ցեղերին հավաքելու համար։ Հնոտի, սնոտի քարապաշտության փոխարեն, վեմի նման [ամրացրեց] իր վկաների հավատը, որպեսզի անշարժ լինեն և հաստատուն։

586 Եվ մենք կկառուցենք ձեզ հետ մեկտեղ առաքյալների և մարգարեների հավատքի հաստատության վրա։ Ընդունենք Հոգու շնորհների հուրը։ Նա, որ այրեց և քանդեց մոլորության աշտարակը, ինքն էլ մեզ կվերակառուցի հավատքի հաստատության հիմքի վրա և մեզ միաբանության է տանելու իր խաչով։ Նա մեզ կտա Հոգու հուրը, որով մեղքերն այրվելու են և արդարությունը լուսավորելու է խաչի միջոցով, որի վրա Տերը կախվեց, որին [վկայել են] մարտիրոսները, թագավորները և Քրիստոսի հետ թագավորյալները և որի միջոցով դուք հաշտվելու եք Աստուծո հետ նրա Որդու մահվամբ։

587 Դրա համար Աստվածորդին խոնարհվեց, որպեսզի մարդկային մարմին առնի, խոնարհվի մինչև մահու անարգությունը, մինչև անգամ թաղումը, արժանիներին Աստվածությանը նմանակից դարձնի իր մարդասիրությամբ, որոնց եղբայր անվանեց իր անսահման սիրով, որով սիրեց մարդկանց և որ ինքը լինի անդրանիկ բազում եղբայրների մեջ։ Իր մարդասիրության պատճառով այսպես տվեց դատավճիռը, ասում է ինքը Աստվածորդին, թե «ար-

*ծորդին, թէ «Սոքա են իմ քորք և եղբարք, որ առնեն զկամս Հօր իմոյ որ յերկինս է». զի Որդին եկեալ կատարեաց զկամս Հօր։*

*588 Եւ զի՞նչ իցեն կամք Հօր՝ եթէ ոչ զի զորդիս մարդկան զմերժեալս ընկալցի միւսանգամ յարքայութիւնն, և զանկեալսն ի ներքոյ մահու կանգնեսցէ ի կենդանութիւն, և զկամարարսն Հօր, որ ինքն բնութեամբ Որդի է միածին՝ արասցէ որդիս շնորհօք։ Եւ վասն այնորիկ էջ ինքն Տէրն զօրութեանց ի տկարութիւն մարդկութեան կարգացն, զի նովին տկարութեամբ ըմբռնեսցէ զտկարացեալսն ի զօրութիւն փառացն Աստուածութեան կարգացն, և տացէ արժանի լինել որդեգրութեան շնորհին։*

*589 Արդ՝ ինքն իջեալ կամօք, զի զսիրեցեալսն խառնեսցէ յԱստուածութիւնն։ Որք ըստ արժանական սիրոյն իցեն տպաւորեալ աստուածական սիրոյն՝ զնոսա եղբարս իւր անուանեաց. և զբնական սէրն իւրոյ հայրական իմաստութեանն ուսոյց նոցա, և ի գութ խնամոց Հօրն գրգեաց յորդեաց ջեռոյց զնոսա. և ետ իշխանութիւն սրբոցն որդիս Աստուծոյ լինել՝ որք հաւատացին յանուն նորա։ Եցոյց նոցա հայր շնորհաց՝ զծնողն իւր, և ետ բանս ի բերան՝ հայր կոչել զնա անձանց, և եցոյց զբարերարութիւն Հօր իւրոյ նոցա. զի հօրաբարոյ բարերարութեամբն լիցին արժանի՝ ճշմարիտ Որդւոյն եղբարք անուանել։ Զորս առեալ Որդւոյն առ Հայր մատուցանիցէ, թէ «Ահաւասիկ ես և մանկունք իմ զոր ետ ինձ Հայր»։ Եւ դարձեալ առ Հայր խօսի և ասէ, թէ «Պատմեցից զանուն քո եղբարց իմոց, և ի մէջ ժողովրդոց օրհնեցից զքեզ»։ Որպէս և առ աշակերտսն ասէր. «Զի զամենայն զոր ասաց ինձ Հայր իմ՝ ես ձեզ ցուցի. զի ես զձեզ ինձ բարեկամս գիտեմ»։*

*590 Ճշմարիտ Որդին Աստուծոյ ճշմարիտ վկայս և խորհրդակիցս իւր արար զկամարարս Աստուածութեանն իւրոյ, որք մխեցան ի սէր նորա և զպատուիրանս նորա պահեցին. զորս և այնչափ վերացոյց և բարձրացոյց զնոսա յիւր Աստուածութիւն անդր, մինչև առ Հայր գոչէր, թէ «Այսուհետև սոքա չեն յաշխարհէ աստի, որպէս և ես չեմ յաշխարհէս»։ «Եւ ես աղաչեցից զՀայր, զի զՀոգին սուրբ զբարեխօսն առաքեսցէ առ ձեզ զառհաւատչեայն, որ խառնեսցէ զձեզ յԱստուածութիւն անդր, որ ի ձեզ իսկ բնակեսցէ մինչև յաւիտեանս. զոր ոչ տեսանէ, ասէ, և ոչ ճանաչէ այս աշխարհս»։ Արդ՝ զնոսա արար նախ տաճար Աստուածութեանն յերկրի, և տուն*



*րանք են իմ քույրերը և եղբայրները, որոնք կատարում են իմ Հոր կամքը, որ երկնքում է», քանզի Որդին գալով, կատարեց Հոր կամքը։*

*588 Եվ ինչ է Հոր կամքը, եթե ոչ կրկին արքայության մեջ ընդունել մարդկանց մերժված որդիներին և մահվան ներքև ընկածներին կենդանության կանգնեցնել և իր Հոր կամարարներին, որի միածին Որդին ինքն է բնությամբ, շնորհների որդիներ դարձնի։ Այդ պատճառով ինքը զորությունների Տերը իջավ մարդկային կարգի տկարությանը, որպեսզի նույն տկարությամբ տկարացյալներին հասցնի Աստվածության կարգի փառքի զորությանը և արժանի դարձնի որդեգրության շնորհին։*

*589 Արդ՝ ինքը կամովին իջավ, որպեսզի սիրեցյալներին խառնի Աստվածությանը։ Նրանք, որ արժանի սիրով Աստվածային սիրո պատճենը դարձան, այսպիսիներին իր եղբայրներն անվանեց։ Իր հայրական իմաստության բնական սերը ուսուցանեց նրանց, գուրգուրեց, հորդորեց, ջերմացրեց նրանց և տվեց իշխանություն Աստուծո սուրբ որդիները լինելու, քանի որ հավատացին նրա անվանը։ Ցույց տվեց նրանց շնորհների Հորը՝ իր ծնողին և նրանց սովորեցրեց հայր կոչել նրան և իր Հոր բարերարությունը ցույց տվեց, որպեսզի հայրաբարո բարերարությամբ արժանի լինեն ճշմարիտ Որդու եղբայր կոչվելու։ Նրանց տարավ Որդին և ներկայացրեց Հորը, թե «ահավասիկ ես և իմ մանկունքը, որ տրվեց ինձ Հայրը»։ Դարձյալ խոսեց Հորը և ասաց, թե «Քո անունը հայտնելու եմ իմ եղբայրներին և ժողովուրդների մեջ օրհնելու եմ քեզ»։ Այնպես ինչպես աշակերտներին ասում էր. «Ամեն ինչ, որ ինձ ասաց իմ Հայրը, ցույց տվեցի ձեզ, քանզի ձեզ ես գիտեմ, որ իմ բարեկամներն եք»։*

*590 Աստուծո ճշմարիտ որդին իր Աստվածության կամարարներին դարձրեց իր ճշմարիտ վկաները և խորհրդակիցները, որոնք խորացան նրա սիրո մեջ և նրա պատվիրանները պահեցին։ Նա այնքան վերացրեց ու բարձրացրեց նրանց իր Աստվածությանը, մինչև որ Հորը գոչեց, թե «այսուհետև սրանք այս աշխարհից չեն, ինչպես և ես չեմ այս աշխարհից», «և ես աղաչելու եմ Հորը, որ բարեխոս սուրբ Հոգուն առաքի ձեզ մոտ, որպես առհավատչյա և նա ձեզ խառնելու է Աստվածությանը, որ ձեր մեջ բնակվելու է մինչև հավիտյան, սակայն նրան այս աշխարհը չի տեսնի ու չի ճանաչի»։ Արդ նախ նրանց դարձրեց իր Աստվածության տաճար*

օթեվանաց Հոգւոյ սրբոյ. «Ես և Հայր իմ, ասէ, եկեսցուք, և օթեվանս առ ձեզ կալցուք»։ Եւ զանձանակ սիրոյ զօրութեան մեծութեան խորհրդոյ Հօր պատրաստեաց զնոսա, և յառաջ քան զաշխարհ ծանուցաւ նոցա։

591 ՀԶ. Եւ քանզի ոչ կարացեալ մարդկան բառնալ զլուծ պատուիրանացն արդարութեան՝ վասն այսորիկ անկան ընդ կարեօք մահու մեղացն։ Եւ իբրև ոչ ուրուք ի մարդկանէ կարացեալ ցանկել զխրամատութիւնն,— ի ծառայատոհմ ազգացն ոչ հնարեցաւ այս լինել, որ ի ձեռն Ադամայն յանցաւորութեան զօրացաւ մահ և եկուլ, որպէս ասացաւ, թէ «յԱդամայ ամենեքեան մեռանէին»,— իսկ Որդին Աստուծոյ առ զկերպարանս Ադամայ, ի նմանութիւն ծառայի, և եղև ինքն իբրև զմի ի մարդկանէ, և եկն ի ցանկել զխրամատեալն, զի շինեսցէ զաւերեալսն. որպէս ասէ մարգարէն, թէ «Շինեսցին աւերակքն յաւիտենից»։ Զի առցէ զմարմին արդարոցն իւրոց կերպարանացն և նովին մարմնովն կատարեսցէ զարդարութիւնսն ամենայն. որպէս առ Յովհաննէս խօսի, թէ «Այժմ այսպէս վայել է լինել, զի կատարեսցուք զարդարութիւնսն ամենայն»։

592 Վասն զի ինքն Տէրն ծառայական մարմնովն զամենայն արդարութիւնսն կատարեաց, զի մարմնոյն, զոր խառնեաց և միացոյց յԱստուածութիւնն՝ նմին մարմնոյն տացէ զյաղթութիւնն։ Զի որպէս ընդ միոյ ադամական մարմնոյն պարտաւորեցան՝ նոյնպէս ընդ միոյ տէրունական մարմնոյն ազատեսցին ի ծառայութենէ մեղացն, այնու ազատութեամբն՝ որ ի վեր է քան զամենայն ազատութիւնս։

593 Որ վասն զնոսա ազատելոյ էջ ի ծառայութիւն, զի իւրով մարմնովն լցցէ և կատարեսցէ զամենայն չափս կարգացն հանդիսի արդարութեանցն. զի միանգամայն բարձցէ զկարիս տկարութեան մարմնոյ մեղացն. և միանգամայն ինքն ինքեան քահանայացի Հօր իւրում, և միանգամայն ինքեամբ հաճեսցէ մատուցանել զինքն պատարագ հաշտութեան Հօր իւրում, և նովին պատարագաւն մատուսցէ ընդ նմին զհաւատոն խոստովանութեան մերոյ։ Զի ինքն էր որ յաղթեաց և կատարեաց, և հատ ընկեաց զդատակնիք մահու, զի անշուշտ և աննուտ և անվրէպ լիցին կենացն աւետիք. զի ի Քրիստոս Յիսուս ամենեքեան կենդանասցուք։



երկրում և Սուրբ Հոգու օթևանաց տունը։ «Ես և իմ Հայրը, ասում է, գալու ենք և ձեզ մոտ օթևանելու»։ Նա նրանցից պատրաստեց Հոր սիրո զորության մեծության ու խորհրդի գանձանակ և նախքան աշխարհը ճանաչվեց նրանցից։

591 ՀԶ. Եվ քանզի մարդկությունը չէր կարող տանել արդարության պատվիրանների լուծը, այդ պատճառով ընկավ մեղքերի համար մահվան կարիքի տակ։ Քանզի ոչ ոք մարդկանցից կարող էր կամրջել խրամատը, քանի որ ծառայատոհմ ազգերը չէին կարող այն անել և նրանց վրա Ադամի հանցավորության պատճառով զորացավ մահը և կուլ տվեց, ինչպես ասված է, թե «Ադամի պատճառով ամենքը մեռան», իսկ Աստուծո Որդին Ադամի կերպարանքն առավ ծառայի նմանությամբ, ինքը դարձավ մարդկանցից մեկը և եկավ կամրջելու խրամատը, որ շինի ավերվածը։ Ինչպես ասում է մարգարեն, թե «ավերակները շինվելու են ընդմիշտ»։ Քանզի [եկավ] առնելու իր արդարների կերպարանքով մարմինը և նույն մարմնի միջոցով կատարելու էր ամեն արդարություն։ Ինչպես խոսեց Հովհաննեսին, թե «այժմ այսպես վայել է մեզ, որ ամենայն արդարությունները կատարենք»։

592 Վասնզի ինքը Տերը ծառայի մարմնով ամենայն արդարությունները կատարեց, որպեսզի հաղթություն պարգևի մարմնին, որը խառնեց ու միացրեց Աստվածությանը։ Եվ ինչպես ադամական մեկ մարմնի միջոցով [մարդիկ] պարտավոր մնացին, նույնպես և տերունական մեկ մարմնի միջոցով կազատվեն մեղքերի ծառայությունից. այն ազատության միջոցով, որը վեր է ամենայն ազատություններից։

593 Նրանց ազատության համար իջավ ծառայության, որ իր մարմնով լրացնի և կատարի արդարության գործերի կարգերի ամենայն չափերը։ Որպեսզի միանգամից վերացնի մեղավոր մարմնի տկարության կարիքը և միանգամից ինքն իրեն քահանայաբար [մատուցի] իր Հորը և միանգամից իր անձը հաճելի կերպով մատուցի, որպես հաշտության զոհաբերություն իր Հոր հանդեպ և նույն զոհաբերությամբ դրա հետ մատուցի մեր խոստովանության հավատքը։ Քանզի ինքն էր, որ հաղթեց ու կատարեց և ջարդեց ջնջեց մահու դատակնիքը, որպեսզի կենաց ավետիքը լինի անտարակույս, անսուտ, անվրեպ, քանի որ մենք ամենքս կենդանի ենք ի Հիսուս Քրիստոս։

594 Եւ զի՞նչ այն իցէ զոր ասէն, թէ «Կատարեաց զկամս Հօր իւրոյ», եթէ ոչ՝ զի իւրով մարմնովն բարձրացուսցէ զանուն յաղթութեան կատարման արդարութեանն։ Ընդ ամենայն մարմնաւորաց առեալ զնպատակն յաղթութեան, զի բարձցէ զնախատինս յորդւոցն Ադամայ, և թափեսցէ զթոյնս մահու, և ջրեսցէ զխայթոցս դժոխոց. որպէս զի համարձակ լիցուք յասելն, թէ «Ո՞ւր է յաղթութիւն քո, մահ, կամ ո՞ւր են խայթոցք քո, դժոխք»։ Զի հատցէ միանգամայն զամենայն արտօսր յամենայն երեսաց, և բարձցէ զսուգ տխրական և տացէ զուարթութիւն զանտրտումն։

595 Եւ որպէս ինքն խոնարհեցաւ ի բարձրութեանց անտի՝ այնպէս բարձրացոյց զորս եգիտն արժանաւորս իւրում Աստուածութեանն. և արար զնոսա գանձանակս սիրոյ իւրոց կամացն, և տաճար բնակութեան Հոգւոյն սրբոյ. զի լիցին նոքա ընկղմեալ յԱստուածութիւնն. զի իւրովն ազգակից մարմնովն ձգեաց զնոսա նախ առ իւր, և նոքօք զամենեսեան ձգեսցէ ի նոցա ուրախութիւնն։ Որպէս յառաջախօս գիտող մարգարէն յայս հիացեալ խօսէր, թէ «Ուրախ լիցուք յուրախութիւն ազգի քոյ, և գովեսցուք մեք ի ժառանգութեան քում». զի ժառանգութիւն Հօր՝ Որդին միածին է. իսկ ազգք ուրախակիցք՝ արդարքն մարմնակիցքն տէրունական մարմնոյն։ Զի զգովութիւն արդարութեանն ինքն բարձրացոյց ընդ ամենայն մարմնոց մարդկան, որ ժառանգն էր Հօր և ժառանգիչ ամենայն արարածոց։ Իսկ զիւր վկայեալսն արար իւր ուրախակիցս, զի տոհմակիցք էին մարմնոյ նորա. իսկ ամենայն տոհմակից մարդիկ լիցին ուրախակիցք տոհմակցաց իւրեանց վկայիցն։

596 Եւ Տէրն նախ զնոսա զատոյց յերկրէս կարգաց, և հրեշտակակրօն և աստուածախառն կարգօք բարձրացոյց յերկրէս. զի ինքեանք վերացեալք յԱստուածութիւնն՝ զամենեսեան զտոհմակիցս իւրեանց վերացուսցեն ի նոյն սէր Աստուածութեանն յոր ինքեանք հասինն։ Զի և զխորհուրդս Աստուածութեանն նախ նոքա արժանացան գիտել, և նոքօք ամենայն արարածք գիտացին՝ «զոր աշխարհ, ասէ, ոչ տեսանէ և ոչ ճանաչէ»։ Զի նոքա նախ զատան մեկնեցան յաշխարհէս, և ապա հասեալ սիրովն Տեառն իւրեանց ի զօրութիւն Հոգւոյ նորա. «Դուք, ասէ, ճանաչէք, զի ի ձեզ բնակեսցէ մինչև յաւիտեան»։

597 Հէ. Տեսանէ՞ք զդատավճիռն, զի ասաց, թէ «մինչև յաւիտեան ի ձեզ բնակեսցէ». զի որպէս ի կենդանութեան սոցա՝ սոյն-



594 Ի՞նչ է, որ ասվում է, թե «կատարեց իր Հոր կամքը», եթե ոչ այն, որ իր մարմնով բարձրացնելու է արդարության կատարման հաղթանակի անունը։ Նա հաղթության նպատակ ձեռք բերեց ամենայն մեղավորների համար, որպեսզի վերացնի Ադամի որդիների նախատինքը, թափի մահու թույնը և ջնջի դժոխքի խայթոցները, որպեսզի համարձակ լինենք ասելու ժամանակ, թե «ո՞ւր է քո հաղթությունը, մահ, կամ ո՞ւր են քո խայթոցները, դժոխք»։ Քանզի նա միանգամայն կկտրի բոլոր երեսներից ամեն արտոսր, կվերացնի տխուր սուգը և կտա անտրտում զվարթություն։

595 Եվ ինչպես ինքը խոնարհվեց բարձրությունից, այնպես էլ իր Աստվածությունը բարձրացրեց նրանց, որոնց արժանի գտավ և դարձրեց իր կամքի սիրո գանձանակներ ու սուրբ Հոգու բնակության տաճարներ, որպեսզի նրանք ընկղմվեն Աստվածության մեջ։ Քանզի իր սեփական մարմնով ձգեց նրանց նախ իրեն և նրանցով ձգելու է ամենքին դեպի ուրախություն։ Ինչպես առաջախոս գիտուն մարգարեն այս բանին հիանալով ասում էր, թե «ուրախ կլինենք քո ազգի ուրախությանը և մենք գովելու ենք քո ժառանգությունը»։ Քանզի Հոր ժառանգությունը միածին Որդին է, իսկ ազգերը, որոնք ուրախակից են, տերունական մարմնի արդար մասնակիցներն են։ Քանզի ինքը արդարության գովությունը բարձրացրեց ամենայն մարդկանց մարմինների հետ, նա, որ Հոր ժառանգորդն էր և ամեն արարածների ժառանգիչը։ Իսկ ովքեր նրան վկայեցին, դարձրեց իր ուրախակիցները։ Քանզի նրա մարմնի տոհմակիցներն էին, իսկ ամենայն ազգակից մարդիկ ուրախակից են լինելու [հավատի] վկաներին, որոնք իրենց տոհմակիցներն են։

596 Տերը նախ նրանց զատեց այս երկրային կարգից և հրեշտակակրոն ու աստվածախառն կարգերով բարձրացրեց երկրից, որպեսզի նրանք վերանալով դեպի Աստվածություն իրենց ամեն տոհմակիցներին բարձրացնեն Աստվածության նույն սիրուն, որին իրենք հասել են։ Նախ նրանք արժանի եղան գիտենալու Աստվածության խորհուրդները և նրանց միջոցով ամենայն արարածները գիտեցան, «որ աշխարհը չի տեսնում և չի ճանաչում»։ Քանզի նրանք նախ զատվեցին, մեկնեցին այս աշխարհից և ապա իրենց Տիրոջ սիրով հասան նրա Հոգու զորությանը. «Դուք, ասում է, ճանաչեցեք, որ նա ձեր մեջ բնակվելու է մինչև հավիտյան»։

597 Հէ. Տեսնո՞ւմ եք դատավճիռը, որ ասաց, թե «մինչև հավիտյան բնակվելու է ձեր մեջ»։ Քանզի ինչպես սրանց կենդանու-

պէս և այժմ և յաւիտեան բնակեալ է յոսկերս սոցա բարեխօս Հոգին՝ որդեգրութեան արժանի եղելոցս, որով հաշտեցիք դուք ընդ Աստուծոյ ի ձեռն մահու Որդւոյ նորա: Զի սուրբ վկայքս այսոքիկ Հոգւովն, որում եղեն արժանի՝ նովին լիցին ձեզ բարեխօս. զի և ձեզ, անգիտելոց և յանցուցելոց, լիցի թողութիւն: Զի Որդին Աստուծոյ, որ ինքեամբն եցոյց զօրինակ կենդանութեան իւրոց վկայիցն սիրելեաց՝ ասէ ցնոսա, թէ «Ես կենդանի եմ, և դուք յիս կենդանասջիք. զի ես ընդ Հօր և դուք ընդ իս և ես ընդ ձեզ: Զի որ ընդունի զպատուիրանս իմ և պահէ զնոսա՝ նա է որ սիրէ զիս, և սիրեսցի ի Հօրէ իմմէ, և ես սիրեցից զնա, և երևեցուցից նմա զիս»:

598 Արդարև սիրեցին զՏէրն առաւել քան զկար իւրեանց. զի տեսին զՏէրն և զԱրարիչն, զի եդ զանձն իւր ի վերայ նոցա, իսկ սոքա ետուն զանձինս իւրեանց ի մահ փոխանակ մահու նորա. և խառնեցան ի սէր Աստուածութեան նորա, և եղեն օթևանք մեծութեան նորա: Տեսին զՏէրն, զի մատոյց զանձն իւր Հօր պատարագ, վասն այսորիկ և սոքա իբրև զառինս մատուցան ի մահ, զի լիցին պատարագ Աստուածորդւոյն: Զի Որդին Աստուծոյ կատարեաց զկամս Հօր իւրոյ, իսկ սոքա կատարեցին զկամս Աստուածորդւոյն: Աստուածորդին ձգեաց զնոսա առ ինքն, և նոքօք զամենայն տիեզերս:

599 Առին նոքա հրաման ի Տեառնէ՝ արհամարհել զաշխարհս և զամենայն որ ինչ յաշխարհի է. զի արհամարհեսցեն զայս կեանս յաշխարհի՝ զի անցաւորք են: Արհամարհեսցեն և զնեղութիւնսն որ ի սմա՝ վասն արդարութեանն որ գայցէ, զի երանութիւնք են և սերմանիք մշտնջենաւոր արքայութեանն: Զի խոտեսցեն և անարգեսցեն, լքցեն և թողցեն զիւրաքանչիւր գործս ունայնութեան կարգացըն, զի ապրեսցին ի յաւիտենից տանջանացն:

600 Ասէ. «Մի՛ երկնչիք յայնցանէ որ զմարմինն սպանանեն և զոգին ոչ կարեն սպանանել. այլ երկերո՛ւք դուք յայնմանէ, որ զոգին և զմարմինն արկանիցէ ի գեհենն հրոյ»: Զի թողցեն զչարն և ընտրեսցեն զբարին. փափագեսցեն, ընթասցին ի սրբութիւն, և զերկնաւոր լոյսն և զյաւիտենից փառսն ժառանգեսցեն և ժառանգակից անմահութեանն լիցին աստուածական յաւիտենական փառացն:



թյան ժամանակ, նույնպես և այժմ ու հավիտյան բարեխոս Հոգին բնակվում է սրանց (վկաների) ոսկորների մեջ, որոնք որդեգրության արժանի եղան: Նրանցով դուք հաշտվելու եք Աստուծո հետ, նրա Որդու մահվան միջոցով: Այս սուրբ վկաները, նույն Հոգով, որին արժանի եղան, նույնով ձեզ բարեխոս են լինելու, որպեսզի ձեզ՝ անգետներիդ և մեղքի տանողներիդ թողություն լինի: Քանզի Աստուծո Որդին, որն իրմով կենդանության օրինակ ցույց տրվեց իր սիրելի վկաներին, ասում է նրանց, թե «ես կենդանի եմ և դուք իմ մեջ կենդանանալու եք, քանզի ես Հոր հետ եմ և դուք ինձ հետ եք և ես ձեզ հետ: Ով ընդունի իմ պատվիրանները և պահի, նա է, որ սիրում է ինձ և սիրվելու է իմ Հորից, ես սիրելու եմ նրան և ինձ հայտնելու եմ նրան»:

598 Արդարև Տիրոջը առավել սիրեցին, քան իրենց [անձնական] կարողությունը, քանզի տեսան, որ Տերն ու Արարիչը իր անձը զոհեց նրանց համար, իսկ սրանք իրենց անձերը մահվան տրվեցին նրա մահվան փոխարեն: Նրանք խառնվեցին նրա Աստվածության սիրուն և նրա մեծության օթևաններ դարձան: Տեսան, որ Տերն իր անձը մատուցեց որպես զոհ իր Հորը: Այդ պատճառով նրանք էլ գառների նման մահվան մատնվեցին, որ Աստվածորդու համար ողջակեզ դառնան: Քանզի Որդին Աստուծո կատարեց իր Հոր կամքը, իսկ սրանք կատարեցին Աստվածորդու կամքը: Աստվածորդին նրանց իրեն ձգեց և նրանց միջոցով ամենայն տիեզերքը:

599 Նրանք Տիրոջից հրաման ստացան արհամարհելու աշխարհը և ամեն ինչ, որ աշխարհինն է, որ արհամարհեն աշխարհիկ կյանքը, որ անցավոր է: Նրանք պետք է արհամարհեին նաև նեղությունները, որ նրա մեջ են, հանուն արդարության, որ գալու է: Նրանք երանությունն են և մշտնջենավոր արքայության սերմերը: Նրանք պետք է խոտեին և անարգեին, լքեին ու թողնեին ունայնության կարգի յուրաքանչյուր գործ, որպեսզի փրկվեին հավիտենական տանջանքներից:

600 Ասում է. «Մի երկնչեք նրանցից, որ մարմինն են սպանում և հոգին չեն կարող սպանել, այլ վախեցեք դուք նրանցից, որ հոգին ու մարմինը գեհենի հրի մեջ են գցելու», որպեսզի թողնեն չարը և ընտրեն բարին, փափագեն, ընթանան դեպի սրբություն և երկնավոր լույս, հավիտենական փառքը ժառանգեն և աստվածային հավիտենական փառքի անմահության ժառանգորդ դառնան:

601 Ասաց Որդին Աստուծոյ. «Մտէ՛ք ընդ նեղ դուռն. զի նեղ է, ասէ, դուռն որ հանէ ի բարիս, և անձուկ է ճանապարհն որ տանի ի կեանս յաւիտենից»։ Զի նեղութեամբ և վշտօք հասցեն յանըսպառ արքայութիւն անդր, որ պահեալն է նոցա, յորժամ Քրիստոս յայտնեսցի միւսանգամ յաւիտենական պարգևօքն յարութեամբըն, և անմահութիւն բերելով և ըստ գործոցն հատուցանելով. որպէս և անդր ևս յիւրում տեղւոջն պատմեսցուք ձեզ։

602 ՀԸ. «Եւ եղերո՛ւք դուք, ասէ, խորագէտք իբրև զօձս»։ Եւ զի՞նչ իցէ խորագիտութիւն օձին, եթէ ոչ՝ իբրև ծերասցի նա և տեսցէ ապականեալ զմարմին իւր՝ զխորհուրդս խորագիտութեանն իւրոյ ի մէջ բերէ։ Զի դիմէ նա ընդ տեղի ինչ նեղածերպ վայրաց, և ընդ կրթելն կեղևէ զապականեալ մորթն ծերացեալ մարմնոյն, ի բաց մերկանայ և միւսանգամ ի մանկութիւն դառնայ, և նորոգեալ զծերութիւնն իւր զարդարէ։ Սոյնպէս և արդարքն զանցաւոր մարմընոյս խաղամուռս յանձանց ի բաց մերկանան, զի մտցեն ընդ նեղ դուռնն և ըմբռնեսցեն զանմահ թագաւորութիւնն։ Զի որ զՏէրն սիրեցին՝ կենդանիք են յաւիտեան. քանզի այսպէս ասաց. «Որ հաւատայ յիս, թէպէտ և մեռանի՝ կենդանի է». զի «Ես իսկ եմ յարութիւն և կեանք», ասաց Որդին Աստուծոյ, որ կամօքն Հօր, որպէս վերագոյնն ասացաք, ճաշակեաց զմահ վասն մեր, զի փրկեսցէ յապականութենէ զամենայն ազինս։ Իսկ այժմ զի նստի ընդ աջմէ՝ Հօր՝ զամենայն ինչ պատրաստէ և շնորհէ յուսացելոց իւրոց։

603 «Եղերո՛ւք, ասէ, միամիտք իբրև զաղաւնիս»։ Մի՝ վասն զի մարդասէր է և մարդընդել, և ի մարդամօտի և եթ կամի կեալ աղաւնի, զի և Աստուած մարդասէր է և կամի հանապազ ի մէջ սրբոց իւրոց բնակել։ Եւ միւս՝ եթէ բազում անգամ բարձցէ ոք զձուս կամ զձագս աղաւնւոյ՝ ոչ երբէք երկմտեալ թողու զտեղի բունոյ իւրոյ։ Սոյն օրինակ, թէպէտ բազում և անսպառ իցեն չարիք մարդկան հանապազ առ արարչութիւնն, ուստի խնամք դարմանոցն մատակարարին, և զնա ոչ ճանաչեն՝ սակայն ոչ թողու և հեռանայ յարարածոց իւրոց. այլ հանապազ յայց ելեալ՝ խնդրէ զկորուսեալս զի գտցէ. և ասէ, թէ «Այսօր ձայնի իմում լուիցէք». և կամի զի վասն որոյ զՈրդին իւր առաքեաց՝ արասցէ ժառանգս շնորհօք զամենեսին։ Զի ուսցին զխորագիտութիւն օձին, մերկանալ զհնութիւն



601 Ասաց Աստուծո Որդին. «Մտե՛ք նեղ դռնով, քանզի նեղ է,- ասում է, այն դուռը, որ դեպի բարին է հանում և անձուկ է ճանապարհը, որ տանում է հավիտենական կյանք»։ Քանզի նեղությամբ ու վշտերով են հասնելու անսպառ արքայությանը, որ նրանց է վերապահված, երբ Քրիստոս, հարության ժամանակ, կրկին հայտնվի հավիտենական պարգևներով, բերելով անմահության և ըստ գործերի հատուցելով, ինչպես իր տեղում ձեզ պատմելու եմ։

602 ՀԸ. «Եղեք, ասում է,- խորագետ օձի նման»։ Իսկ ինչ է օձի խորագիտությունը, եթե ոչ այն, որ երբ ծերանում է և տեսնում, որ իր մարմինն ապականյալ է՝ իր խորագիտության խորհուրդները ի հայտ է բերում։ Դիմում է այնպիսի տեղ, ուր նեղածերպ վայրեր կան և ըստ իր սովորության ծերացյալ մարմնի ապականյալ մորթը կեղևում է և ազատվելով նրանից կրկին մանկության է դառնում ու նորոգվելով զարդարում իր ծերությունը։ Սույնպես և արդարները անցավոր մարմնի կրքերը իրենց հոգիներից հեռացնում են, որ մտնեն նեղ դռնից և ստանան անմահ թագավորությունը։ Քանզի ովքեր սիրեցին Տիրոջը՝ կենդանի են հավիտյան, քանի որ այսպես ասաց. «Ով հավատա ինձ թեպետ և մեռնի, կենդանի է», քանզի «Ես իսկ եմ հարությունն ու կյանքը» ասաց Աստուծո Որդին, ինչպես վերևում ասացինք՝ ճաշակեց մահը մեզ համար, որ ամենայն ազգերին փրկի ապականությունից։ Իսկ այժմ քանի ո՛ր նստում է Հոր աջ կողմը, ամեն ինչ պատրաստում ու շնորհում է իրեն հուսացողներին։

603 «Եղեք միամիտ, ասում է, աղավնիների նման»։ Նախ որովհետև աղավնին մարդասեր է ու ընտանի և կամենում է միայն ապրել մարդու մոտ, քանզի և Աստված մարդասեր է ու կամենում է միշտ իր սրբերի մեջ բնակվել։ Երկրորդ, եթե մեկը բազում անգամներ վերցնի աղավնու ձվերը կամ ձագերը, սա երբեք երկմըտելով իր բույնի տեղը չի թողնի։ Սույն օրինակով, թեպետ և բազում ու անսպառ են մարդկանց չարիքները արարչության հանդեպ, որը նրանց սնունդի խնամքն է մատակարարում, իսկ նրանք չեն ճանաչում նրան, սակայն նա չի թողնի ու հեռանա իր արարածներից, այլ միշտ այցի է ելնում, փնտրում է կորուսյալներին, որ գտնի. և ասում է, թե «այսօր իմ ձայնը լսեցեք» և կամենում է այն բանի համար, որ իր Որդուն առաքեց, ամենքին իր շնորհների ժառանգորդ դարձնել, որպեսզի սովորեն օձի խորագիտությունը՝

մարդկութեան տգիտութեանցն ամբարշտութեանց յանձանց, և առցեն զմիամտութիւն զանվնաս և զսուրբ աղաւնւոյն, որ և զբարս Աստուածութեանն յինքեան բերէ։ Քանզի և Հոգին Աստուծոյ յորժամ յայտնեցաւ աշխարհի, զոր ի վերն պատմեցաք՝ ի կերպարանս մարմնաւոր աղաւնւոյ երևեցաւ, զի ցուցցէ զբարերարական զմիամտական սիրոյ զառաւելութիւն։

604 Զի որք կամիցին ասպնջական Հոգւոյն Աստուածութեանն լինել՝ առցեն ի տեսլենէ անտի զբարս զանվնաս և զաններկեան աղաւնւոյն։ Որպէս և Տէրն ասէր ցաշակերտսն, թէ «Եղերո՛ւք դուք բարերարք առ չարս և առ թշնամիս, և յամենեցունց հալածեալք վասն արդարութեան. զի Հայրն ձեր բարերար է. ծագէ զարեգակն իւր ի վերայ բարեաց և չարաց, և ածէ անձրև ի վերայ արդարոց և մեղաւորաց. զի լիջիք դուք որդիք բարերարք Հօրն ձերոյ բարերարի»։

605 ՀԹ. Արդ՝ որք յայսմ միամտութեան արդարութեան պատուիրանի կացեալ իցեն՝ առցեն զկերպարանս արագաթեւ աղաւնւոյ, և թռիցեն ի թևս Հոգւոյն սրբոյ հասանել յերկնից արքայութիւնն, որում ցանկացեալ մնային սուրբք յերկրի։ Ցոր և մարգարէն կաթոգին տենչացեալ սպասէր ասելովն, թէ «Տայր ոք ինձ թևս որպէս զաղաւնւոյ, զի թռչէի վերանայի»։ Զոր և երանելին Պաւղոս, առաքելակից ձերոց առաքելոցս, մեկնեաց ի թղթին մխիթարականի, որով զԹեսաղոնիկեցիսն սփոփէր, թէ «Մեք որ կենդանիքս եմք և որ մնացեալքս լինիմք՝ հանգուցելովքն հանդերձ յափշտակիմք ընդ ամպս՝ ընդ առաջ լինել Տեառնն ի վերայ օդոց, և այսպէս յամենայն ժամ ընդ Տեառն լինիցիմք», խառնեալք ի գունդն Քրիստոսի, թռուցեալք ի թռիչս արագութեան լուսափետուր սպիտակերամն աղաւնեաց, որք առին կերպարանեցին յանձինս զկերպարանս Որդւոյն Աստուծոյ որ երևեցաւ նոցա. և զնոյնս պատուիրեաց յանձինս մատուցանել, զի բուսուսցէ նոցա թևս հոգեորս՝ խառնել ի գունդն աստուածական։

606 Արդ՝ զարմացեալք հարցանիցեն և զօրք վերինք լուսեղէնք, յորժամ տեսանիցեն զներքնագունդս սրբոց մարմնականաց, զի առ Տէրն ի ներքուստ վերացեալ գայցեն, թէ «Ո՞վ են սոքա իբրև զամպս թռուցեալ, և իբրև զաղաւնիս ձագախառն երամովին գան առ իս»։ Ապա լուիցեն անդէն յինքնին Տեառնէն պատասխանի, թէ «Սոքա յիս յուսացեալ են. տարայց զնոսա ի լեառն սրբութեան իմոյ, և ուրախ արարից զնոսա ի տաճարի իմում». և ամե-



դեն նետել իրենց հոգիներից մարդկային տգիտության, ամբարշտության հնոտին և զգենուլ աղավնու անվնաս և սուրբ միամտությունը, որն Աստվածության բարիքներն իր հետ է բերում։ Քանզի Աստուծո Հոգին երբ հայտնվեց աշխարհին, որի մասին վերևում պատմեցինք, աղավնու մարմնավոր կերպարանքով երևաց, որպեսզի ցույց տա բարեսիրտ և հավատարիմ սիրո առավելությունը։

604 Քանզի ովքեր կամենում են Աստվածության Հոգուն ասպնջականություն տալ, այդ տեսիլքից առնելու են աղավնու անվնաս և զվարթ բնությունը։ Որպես և Տերն ասել էր աշակերտներին, թե «եղեք դուք բարերարներ չարերին և թշնամիներին, թեև դուք ամենքից հալածված լինեք վասն արդարության, քանզի ձեր Հայրը բարերար է՝ ծագում է իր արեգակը բարիների ու չարերի վրա և անձրև է տեղում թե արդարների, թե մեղավորների վրա, որպեսզի լինեք ձեր բարերար Հոր բարերար որդիները»։

605 ՀԹ. Արդ, ովքեր այս արդարության պատվիրանին հավատարիմ մնան, արագաթև աղավնու կերպարանքը կառնեն և սուրբ Հոգու թևերով կթռչեն հասնելու երկնքի արքայությունը, որին ցանկացել էին սրբերը երկրի վրա։ Որին և մարգարեն կաթոգին տենչացել, սպասել էր ասելով թե «Ո՞վ ինձ կտար թևեր աղավնու պես, որ թռչեի վերանայի»։ Այս բանը երանելի Պողոսը՝ ձեր առաքյալների առաքելակիցը, մխիթարական թղթի մեջ մեկնեց, որով թեսաղոնիկեցիներին սփոփում էր, թե «մենք որ կենդանի ենք և մնացել ենք, հանգուցյալներով հանդերձ հափշտակված ենք ամպերի մեջ, օդում ընդառաջ լինելու Տիրոջը և այսպես հավիտյան Տիրոջ հետ կլինենք։ Նրանք խառնվելու են Քրիստոսի գնդին, թռչելով լուսափետուր, սպիտակերամ աղավնիների արագ թռիչքը, որոնք իրենց անձի վրա վերցրին Աստուծո Որդու կերպարանքը, որ նրանց երևաց։ Նույն [կերպարանքը] պատվիրեց նրանց իրենց անձի վրա ցույց տալ, որպեսզի նրանց մոտ հոգևոր թևեր բուսցնի և նրանք խառնվեն աստվածային գնդին։

606 Արդ, զարմացած կհարցնեն վերին լուսեղեն զորքերը, երբ տեսնեն մարդկային սրբերի ներքին գնդերը, որոնք գալու են առ Տերը ի ներքուստ վերանալով, թե «ովքե՞ր են սրանք, որ թռչում են իբրև ամպեր և իբրև աղավնիներ ձագախառն երամով գալիս են առ ինձ»։ Ապա այնտեղ լսելու են Տիրոջ պատասխանը, թե «սրանք ինձ են հուսացել, տանեմ նրանց իմ սրբության լեռը և ուրախացնեմ նրանց իմ տաճարում» և ամենքը, որ տեսնելու են նր-

նեքեան որ տեսանիցեն զնոսա՝ ճանաչիցեն, թէ «Սոքա են զաւակ օրհնեալ յԱստուծոյ», և ուրախութեամբ ցնծասցեն ի Տէր։ Անդէն ասիցէ Տէրն, թէ «Եղիջիք ինձ ուստերք և դստերք». անդ ապա գութք խնամոցն յուզիցին արարչական սիրոյն ըստ բանի մարգարէին, թէ «Որպէս գթայ հայր ի վերայ որդւոց իւրոց՝ գթասցի Տէր յերկիւղածս իւր»։

607 Զի «այժմ յուսով նայելովն՝ զայս ամենայն իբրև ընդ հայելի տեսանեմք, բայց ապա դէմ յանդիման». և ի նոյն նորոգումն նորոգիմք փառաց ի փառս իբրև զՏեառն Հոգին, որ փորձէն և ընտրէ զամենեսեան, և նորոգէ զորս և գտանէ արժանացեալս։ Արդ՝ ի բովս փորձութեան հալոցաց ընտրութեան հրոյ կացուցանէր զլեզուս առաքելոցն, զի նոքօք ամենայն տիեզերաց ընտրութիւն արասցէ. զի և տաճար Աստուածութեանն և բովք երկրի օթեվանք Արարչութեանն եղեն։

608 Զոր և յառաջավաստակ մշակացն մարգարէիցն՝ զկնի գալոցս դաւանեալ զայս զլինելոցս ամենայն ազգաց՝ նախ իւրեանց հրէական ազգին ծանուցանելովն, և ապա ամենայն տիեզերաց ազդ առնել սմին, թէ «Ժողովել ժողովրդոց ի միասին, և թագաւորաց ծառայել Տեառն»։

609 Եւ դարձեալ յանձինս հայեցեալք, և զառ յապայ գալոցն որդիս՝ զառաքեալսն նկատեալ, և առ Տէր գոչեալ իբրև զանձանց և զորդւոցն, որ սփռելոցն էին ընդ երկիր, թէ «Փոխանակ հարց քոց եղիցին որդիք քո. և կացուսցես զնոսա իշխանս ընդ ամենայն երկիր»։ Որք և կացեալ իշխան երկրի, դարձուցանել զամենեսեան միում իշխանութեան ի հնազանդութիւն, ի ծառայութիւն ազատութեանն անձնիշխան կամօք. զի լիցին ամենեքեան ժառանգք արքայութեանն, յինքնագործ լաւութենէ անտի հանդերձ իշխանօք։

610 Որպէս և ինքն Տէրն խօսի զհանդերձելոցն բերանովք մարգարէիցն, թէ «Արարից զիշխանս քո ի խաղաղութիւն, և զայցելուս քո յարդարութիւն». որով առաքեալքն արբին զբաժակն այցելութեան, և արբուցին տիեզերաց զբաժակն խաղաղութեան։ Վասն որոյ և յառաջագոյն իսկ կանխեալ մարգարէին տեսողութեամբն զլինելոցսն, թէ «Այսպէս ասէ ցիս Տէր. Ա՛րկ դու զարծաթդ ի բովս



րանց, ճանաչելու են, թե «սրանք են Աստծով օրհնյալ զավակները», և ուրախությամբ ցնծալու են ի Տեր։ Այնտեղ ասելու է Տերը, թե «եղեք ինձ որդիներ և դուստրեր», անդ ապա արարչական սիրո խնամքի գութը պիտի հուզվի՝ ըստ մարգարեի խոսքի. «Ինչպես հայրը գթում է որդիներին, Տերն էլ գթալու է իրենից երկյուղածներին»։

607 Քանզի «այժմ հուսով նայելով, այս ամենը կարծես հայելու մեջ տեսնում ենք, բայց ապա՝ դեմ հանդիման» և նույն նորոգությամբ նորոգվում ենք փառաց ի փառս, ինչպես Տիրոջ Հոգին, որ փորձում և գտնում է ամենքին ու նորոգում, որին որ արժանի է համարում։ Արդ, փորձության բովերի մեջ, ընտրության հրահալոցում, նա դնում է առաքյալների լեզուները, որպեսզի նրանցով ամենայն տիեզերքին ընտրություն կատարի. քանզի և Աստվածության տաճարը և երկրի բովերը Արարչության օթևաններ են դարձել։

608 Այս մասին առաջավաստակ մշակները՝ մարգարեները, դավանելով ամեն ազգերին գալիք դեպքերը, նախ իրենց հրեական ազգին ծանուցեցին և ապա տիեզերքի ամեն ազգերին ազդարարեցին. «Ի մի ժողովել ժողովուրդներին ու թագավորներին՝ ծառայելու Տիրոջը»։

609 Դարձյալ իրենց անձերին անդրադառնալով, առաքյալներին նկատեցին իրենց ապագա որդիները և Տիրոջը գոչելով, իբրև թե խոսելով իրենց անձերի և որդիների մասին, որոնք սփռվելու էին երկրի վրա, թե «Քո հայրերի փոխարեն քո որդիներն են լինելու և նրանց իշխաններ կկարգես ամբողջ երկրում»։ Դարձել են երկրի իշխաններ, ամենքին դարձնելու մեկ իշխանության հնազանդության, իրենց կամքով ազատության ծառայության, որ ամենքը լինեն արքայության ժառանգորդներ, իրենց գործերի լավությամբ, իրենց իշխաններով հանդերձ։

610 Ինչպես և ինքը Տերը խոսում է հանդերձյալի մասին, մարգարեների բերնով, թե «խաղաղության մեջ եմ դնելու քո իշխաններին և քո այցելուներին արդարության մեջ»։ Նրանով առաքյալները խմեցին այցելության բաժակը և խմեցրին աշխարհին խաղաղության բաժակը։ Դրա համար էլ մարգարեները առաջվանից իսկ կանխատեսեցին գալիքը, թե «այսպես է ասում ինձ Տերը՝ նետիր քո արծաթը բովի մեջ և քննիր, թե մաքուր է, ինչպես և ես քննվեցի

և քննեա՛ թէ սուրբ իցէ, որպէս և ես քննեցայ ի վերայ նոցա. և առի զերեսուն արծաթին և արկի ի տուն Տեառն ի բովս։

611 Այլ զի գալոց իջանելոց էր Աստուածորդին և զամենայն ազգս վերացուցանելոց էր յԱստուածութիւնն, վասն այսորիկ եղեալ քննութիւն ի վերայ ամենայն մարդկան, ըստ նմանութեան պատուիրանին՝ ի պտղոյ ծառոյն չճաշակելոյ, զի արժանի լինիցին զանմահութիւնն առնուլ շնորհապարգևին։ Նոյնպէս և Տէրն մարմնոյն խոնարհութեամբն և անարգն երևելով փորձեալ քննեսցէ զքաջահաւատսն,— որք ի գծուծ կերպարանսն տեսին և լուան եթէ Աստուած է,— եթէ ո՞րպէս և զի՞րդ հաւատասցեն բնութեան բարձրութեանն. վասն այսորիկ ած և ասաց, թէ «Որպէս և ես քննեցայ ի վերայ նոցա»։ Արդ՝ արարեալ զնոսա միաբանական միաբանութեամբ՝ իբրև զմի տուն երևեցուցեալ, միախոհ միահաւատ ճշմարտութեամբն, միաքարոզ, յօդապատ անդամօքն, մի տաճար Աստուածութեանն. որով և զամենայն տիեզերս քննեսցէ վասն իւրոյ գալստեանն հաւատալոյ։

612 Չ. Արդ՝ քանզի եկեր հուր մեղացն և վախճանեաց առ հասարակ զմարդկութեան բնութիւնն. զի բորբոքեալ մեղքն ի նմանութիւն հրոյ տոչորեցան, և բարկութիւն սրտմտութեան Աստուծոյ զարթեաւ առ ի խնդրել վրէժ։ Արդարև թուով մնացեալք, որպէս ասացն, թէ «Եւ որ մնացեալքն իցեն՝ թուով լիցին»։ Արդ՝ նախ ընդ թուով մտանէր, և յայտնէ զերկոտասանսն հաստատեալս՝ մշակս կացուցեալս ըստ ազգացն իսրայելական տոհմին։ Որ և ըստ առաջին լեզուացն բաժանելոց ամենայն ազգաց, երևեցուցեալ եօթանասուն և երկուս, որպէս յառաջագոյն քան զայս ասացաք. զի նոքօք ի միաբանութիւն զառաջին պատառումն ազգացն և լեզուացն ժողովեսցէ։

613 Իսկ սոքա զառաջինն՝ թուով մնացեալք և սակաւք։ Վասն որոյ և ինքն եկն Որդին Աստուծոյ ուսուցանել, միաբանական հաւատովք ընտրել զմի և զնոյն ժողովն. վասն որոյ եկն իսկ և ասէ. «Հունձք բազումք են, և մշակք սակաւք. արդ՝ աղաչեցէ՛ք զտէր հնձոցն, զի հանցէ մշակս ի գործ արդեանց իւրոց»։ Եւ նոյն ինքն այսուիկ պահանջեաց ի նոցանէ զսէր առ միմեանս, և միացուցեալ զնոսա՝ իւր տաճար հաստատեաց յերկրի, և նոքօք փորձեաց զամենայն տիեզերս։

614 Եւ այս էր որ երևեցաւ հուր Հոգին յաւուրս պենտեկոստէիցն, որ եկեալ հանգեաւ ի լեզուս առաքելոցն, որ եկեալ ժողո-



նրանց համար և առա երեսուն արծաթը ու նետեցի Տիրոջ տունը բովի մեջ»։

611 Քանի որ գալու իջնելու էր Աստվածորդին և ամեն ազգերը վերացնելու դեպի Աստվածությունը, դրա համար բոլոր մարդկանց քննություն կատարվեց, պատվիրանի ձևով՝ ծառից պտուղը չճաշակելու, որպեսզի արժանի լինեն շնորհապարգևի անմահությունն առնելու։ Նույնպես և Տերը մարմնի խոնարհությամբ և անարգ երևալով, փորձով քննելու է քաջահավատներին, որոնք գծուծ կերպարանքով տեսան, սակայն իմացան, թե նա Աստված է, թե ինչպես և ինչու հավատալու են նրա բնության բարձրացմանը։ Դրա համար առաջ բերելով ասաց, թե «ինչպես ես ևս քննվեցի նրանց համար»։ Արդ նրանց դարձրեց միաբան, միասնական, իբրև մեկ տուն հանդես բերելով միախոհ, միահավատ ճշմարտությամբ, միաքարոզ, հոդակապ անդամներով, Աստվածության մի տաճար, որով նա քննելու է ամենայն տիեզերքը իր գալստյանը հավատալու հարցում։

612 Չ. Արդ, քանզի մեղքերի հուրը կերավ և առհասարակ քայքայեց մարդկային բնությունը և բորբոքյալ մեղքերը հրի նման տոչորվեցին, ապա Աստուծո դառն բարկությունը զարթնեց վրեժ խնդրելու։ Արդարև, քչերը մնացին, ինչպես ասված է, թե «ովքեր մնացին, հազիվ են հաշվվելու»։ Արդ, նախ հաշվեց ու հայտնաբերեց տասներկու հաստատյալներին, որոնց մշակներ կարգեց, ըստ իսրայելական տոհմի ցեղերի։ Նա, ըստ բոլոր ազգերի առաջին լեզվական բաժանման, ի հայտ բերեց յոթանասուներկուսին, ինչպես նախքան այս ասել ենք, որպեսզի նրանց միջոցով միաբանության բերի ազգերի և լեզուների նախկին պառակտումը։

613 Իսկ սրանք սկզբում փոքրաթիվ էին։ Դրա համար ինքը Աստուծո Որդին եկավ ուսուցանելու միաբանական հավատքով ընտրելու միևնույն ամբողջությունը։ Դրա համար եկավ և ասաց. «Հունձքը բազում է, իսկ մշակները սակավ, արդ աղաչեցեք հնձի տիրոջը, որ մշակներ գործի դնի իր բերքի համար»։ Եվ նույն ինքն սրանով պահանջեց նրանցից սեր միմյանց նկատմամբ և միացնելով նրանց, երկրում իր տաճարը հաստատեց և նրանցով փորձության ենթարկեց ամբողջ տիեզերքը։

614 Այս էր հուր Հոգին, որ երևաց պենտեկոստեի օրերին, եկավ կանգնեց առաքյալների լեզուների վրա, եկավ ժողովեց ցրվածներին և սկսեցին խոսել լեզուներով, նախկին ցրված լեզունե-

վեաց զցրուեալսն, և սկսան խօսել լեզուս առ լեզուսն առաջինս առ ցրուեալսն։ Վասն զի անկաւ սերմն անօրէնութեան յարգանդ մտաց անմիտ մարդկանն առաջնոյ, վասն այսորիկ և սաղմն ամբարշտութեան ընկալեալ՝ ձեռն ղիշտաւ արկեալ յղացան զկռապաշտութեան ծնունդն ի մէջ բերել։ Իսկ պտուղն այսորիկ՝ քակտումն էր յայլափոխ յայլաձայն, այլ ընդ այլոյ ի միմեանց մոլորեալք, այլ յեղբօրէ իւրմէ անջատեալ ցրուեցան։

615 Իսկ սոցա զմիասիրտ ժողովն միասէրն խնդրեալ ի միմեանց։ Վասն այսորիկ հրամայէ, զի նախ ինքեանք իւրեանց միտօքն առ միմեանս ժողովեսցին, զի ուսցին զամենայն ազգացն ժողովսն ածել ի մի միաբանութիւն։ Զի նախ զնոսա արասցէ օթեվանս պատրաստեալս և ապա առաքեսցէ առ նոսա զՀոգին Աստուածութեանն, որ զսէրն Հօր և զՈրդւոյ առեալ խաղացեալ դայր առ նոսա, զի նախ ի նոսա բնակեսցէ, և նոքօք յամենայն արարածս։ «Ես և Հայր իմ, ասէ, եկեսցուք և օթեվանս առ նմա արասցուք»։ Եւ սիրովն առ միմեանս զոր ուսոյց նոցա՝ ասէ. «Աղաչեցէ՛ք զՏէր հնձոցն, զի հանցէ մշակս ի գործս արդեանցն իւրոց»։

616 Միթէ ինքն ո՞չ կարէր առանց նոցա աղաչանացն զայն առնել, որ ակնարկելովն արար զամենայն արարածս. այլ վասն զի առ ամենայնիւ ընկերսիրութիւն պատուական է առ Աստուածութիւն անդր. զի որպէս Աստուածութիւնն մարդասէր է՝ նոյնպէս կամի, զի զմիմեանս սիրելովն արժանի լիցին Աստուածութեանն առ միմեանս անվնասութեամբն։

617 Զի ի միջէ երկրէ հող և հողմք և բոյս հողոյ, ի միմեանց բաժանեալ ծնունդք և միոյ Արարչի ստեղծուածք, սիրեսցեն նախ զարարչութիւնն, և սիրեսցին ի նմանէ. և նորա հաճոյիւքն կեալ կարասցեն, ըմբռնեալ զարքայութիւնն երկնից. Զի անձնսիրութեամբ ընկերսիրութիւն ոչ լինի, այլ ինքնասիրութիւն, որ ոչ է հաճոյ կամաց արարչութեանն. վասն որոյ և մեղքն ի սկզբան մտին յաշխարհ։ Իսկ զի Աստուածութիւնն մարդասէր է՝ վասն այսորիկ իւրոց կամացն արար զնոսա խորհրդակիցս. զի նոքա սիրեսցեն զմիմեանս, և եղեն հրաւիրակ տիեզերաց և աղաչեսցեն և հանցեն մշակս ի գործս արդեանց Տեառն իւրեանց։

618 ԶԱ. Զի առաջին յղութիւն անձնակամ մարդկանն գնալոյ՝ ծնաւ զպատառումն խառնակութեան լեզուացն։ Որպէս և վասն հրէական ժողովրդեանն տեսանի ի մարգարէականացն պատմու-



րով։ Վասնզի անօրենության սերմն ընկավ նախկին անմիտ մարդկանց մտքի արգանդը, դրա համար և ամբարշտության սաղմն ընդունելով, ձեռքը կշտին դնելով, հղացան կռապաշտության ծնունդը մեջտեղ բերել։ Իսկ դրա պտուղը քայքայումն էր և այլափոխ, այլաձայն միմյանցից հեռանալով, այլն եղբորից բաժանվելով ցրվեցին։

615 Իսկ սրանք միմյանցից խնդրեցին միասիրտ, միասեր համախմբում։ Դրա համար հրամայեց, որ իրենք իրենց մտքով հավաքվեն իրար մոտ, սովորեն ամեն ազգերը հավաքել մեկ միասնության մեջ։ Որպեսզի նախ նրանց պատրաստի օթևաններ դարձնի և ապա նրանց առաքի Աստվածության Հոգին, որն առնելով Հոր և Որդու սերը աճապարեց եկավ նրանց մոտ, որ նախ նրանց մեջ բնակվի և ապա նրանց միջոցով ամենայն արարածների մեջ։ «Ես և իմ Հայրը, ասում է, գալու և օթևանելու ենք նրա մոտ» և միմյանց նկատմամբ ունենալիք սիրով, որն ուսուցանել էր նրանց, ասաց. «Աղաչեցեք հնձի Տիրոջը, որ մշակներ գործի դնի իր բերքի համար»։

616 Մի՞թե ինքը չէր կարող առանց նրանց աղոթքների կատարել այն, Նա, որ մեկ ակնարկով ստեղծել էր ամեն արարածներին, այլ վասնզի ընկերասիրությունը ըստ ամենայնի պատվական է Աստվածության մոտ և Աստվածությունը մարդասեր է, ապա Նա կամենում է, որ սիրելով միմյանց արժանի լինեն Աստվածությանը, անվնաս լինելով իրար նկատմամբ։

617 Քանզի մեկ երկրից են հողը, հողմը և հողի բույսը, [այսուհանդերձ] միմյանցից տարբեր են ծագումով, թեև մեկ Արարչի ստեղծածներն են, ուստի պետք է նախ սիրեն արարչությունը և սիրվեն նրանից։ Նրան հաճելի ձևով ապրելով նրանք պիտի կարողանան երկնից արքայությունն ստանալ։ Քանզի անձնասիրությամբ ընկերասիրություն չի լինի, այլ եսասիրություն, որը հաճելի չէ Արարչի կամքին։ Սրա համար և մեղքը ի սկզբանե մտավ աշխարհ։ Իսկ որովհետև Աստվածությունը մարդասեր է, այդ պատճառով նրանց իր գործերի խորհրդակիցը դարձրեց, որ նրանք սիրեն միմյանց, լինեն իբրև տիեզերքի հրավիրակ և աղոթեն ու մշակներ հանեն Տիրոջ հնձի գործերի համար։

618 ԶԱ. Քանզի անձնակամ մարդկանց առաջին հղացած [գործը] ծնեց լեզուների խառնակության ճեղքվածքը։ Նույնը և տեսնում ենք հրեական ժողովրդի մոտ, ըստ մարգարեների պատմածի, թե

թենէ, զի ասէ. «Ա՛ղէ, հարցէ՛ք և տեսէ՛ք, իցէ՞ երբէք լուեալ, թէ արուք յղանան և ծնանին ձեռն արկեալ զընդերօք և դարման խնդրեն։ Զի տեսանեմ աւասիկ զամենայն այր՝ և ձեռն իւր ի վերայ կըշտի իւրոյ. հայիմ ընդ մարդ, և երեսք ամենայն իբրև ի գոյն դալկան՝ դեղնացեալ շրջին»։

619 Արդարև իսկ յղացեալ էին յամբարշտութիւնս կռապաշտութեան բազմասէր բարոյիցն, և ձեռն յընդերս եդեալ՝ ակն ունէին շահաղաւակ գտանել անձանց ի սնավաստակ գործոց անտի։ Ուստի և զեզուկ, զգոյն, ախտի ծննդեան՝ ի հաստուցմանէ անտի յանդիմանութեանն գտեալ լինէր նոցա՝ զգերութիւն ծնանելով. և զքայքայումն աւերածոյ ցրմանն, փոխանակ պտղոյ որովայնին, իբրև զմանուկ ի գիրկս առեալ տանէին, և յազգս օտարս պանդըխտեալք՝ փոխանակ սիրոյ ամուսնութեան սեննկացն՝ թափառական լինէին։ Փոխանակ ապստամբութեանն վիճակատուութեան՝ զկործանումն յԱրարչէն իւրեանց ի մերձաւոր Տեառնէն ընդունէին։

620 Սոյն օրինակ և ազգքն առաջինք, փոխանակ զի իշխեցին ի բուն յիւրեանց Տեառնէն թիկունս դարձուցանել, որ զնոսայն յոչընչէն ինչ արար, և ի խեցեկոյտ ի խեցեկարկատ, ի կպրաշաղախ աշտարակն ապաստանեալք՝ նովին ախտիւն անօրէն պաշտամամբքըն յղացան, ցրուեալք պատառեալք քակտեալք, ի միմեանց բաժանեալք՝ ծնանէին ընդ երեսս երկրի իւրաքանչիւր ոք առանձինն մի մի ի նոցանէն, զմենութիւն չկեցութեանն յանձինս իւրեանց, իբրև զպտուղ որովայնի ի գիրկս, ըստ նմանութեան մանկամօր առեալ՝ ընդգրկեալ բերէին։

621 Եւ հայեցեալ ի պատուհասն առաջին եկեալ ջրհեղեղին՝ սկսան գործել զաշտարակն. իբրև ակն ունել նմին և նովին շինուածովն ապրել՝ յորժամ եկեսցէ։ Եւ ոչ հայեցան յԱրարիչն՝ կարճել յիւրեանց անօրէնութեանցն, և նորին հաճելի գործովն ապրել. և ի նմանէն որ ինչ կամք և լինելութիւն, թէ յետս թէ յառաջ, զայն ինչ ոչ ածին ընդ միտ՝ որ ի սկզբանէ Արարիչն էր. և ի մի ժողով եկեալ ամենեքեան՝ ոչ ևս զգային միմեանց յղութեանն որով և ծանրացեալն էին։

622 Վասն այսորիկ և ամենատեսն իբրև ետես զանհաճոյս կամացն իւրոց ի նոսա, զխակութեանն զանհասութիւն՝ խորհուրդ արկեալ Աստուածութեանն զյղութեանն նոցա բերել ի մէջ զծնունդըն։ Եւ ասաց Աստուած. «Եկա՛յք իջցո՛ւք և պղտորեսցո՛ւք զլեզուս նոցա». և ոչ ասաց, թէ «Գնացէ՛ք իջէ՛ք և պղտորեցէ՛ք զլեզուս նոցա». որպէս և կարգ հրամանին պատշաճէր Աստուածութեանն. այլ



ձևով հարցրեք և տեսեք՝ լսվե՞լ է երբևիցե, թե արուները հղանան ու ծնեն, ձեռքը որովայնին դնելով դարման խնդրեն։ Ահավասիկ տեսնում եմ ամեն այր ձեռքն իր մեջքին։ Նայում եմ մարդուն և ահա բոլորի երեսները դալկագույն դեղնացյալ են դարձել»։

619 Արդարև իսկ հղացել էին բազմասեր բարքերի կռապաշտ ամբարշտությամբ և ձեռքերը մեջքին դնելով ակնկալում էին սնահավատ գործերով շահավոր պտուղ գտնել իրենց համար։ Ուստի գտան դժբախտության, ծննդյան ախտի գույնը, որպես հատուցում իրենց մեղադրանքի, գերություն ծնեցին։ Որովայնի պտղի փոխարեն ծնեցին ցրման, ավերածի քայքայումը և այն իբրև մանուկ գիրկն առնելով տարան։ Օտար ազգերի մոտ պանդխտելով սիրո ամուսնության սենյակների փոխարեն թափառական եղան։ Իրենց ապստամբության վիճակի փոխարեն կործանումն ընդունեցին իրենց Արարչից, մերձավոր Տիրոջից։

620 Նույն ձևով և առաջին ազգերը, այն բանի համար, որ համարձակվեցին թիկունք դարձնել իրենց Տիրոջը, որ նրանց ոչնչից ստեղծել էր, և ապաստանեցին խեցեկույտ, խեցիով շաղված և կպրաշաղախ աշտարակը, նույն անօրեն պաշտամունքի ախտով հղանալով, ցրվեցին, ցիր ու ցան եղան, քայքայվեցին, իրարից բաժանվեցին։ Նրանք ծնեցին երկրի վրա, ամեն մեկն առանձին, չկեցության մենությունն իրենց անձերի մեջ, իբրև որովայնի պտուղն իրենց գրկում և մանկամոր նման հղացան ու ծնեցին։

621 Վերհիշելով նախկինում պատահած ջրհեղեղի պատուհասը, սկսեցին շինել աշտարակը, ակնկալելով, որ նույն շինվածով կփրկվեն, երբ [նորից] գա։ Չնայեցին Արարչին, որ կարճեն իրենց անօրենությունները նրա համար ու հաճելի գործերով փրկվեն։ Ոչ էլ նրա կամքին ու լինելությանը, ոչ առաջ ոչ հետո, ուշադրություն չդարձրին նրան, որն ի սկզբանե Արարիչն էր։ Եվ ամենքն ի մի հավաքվելով՝ դարձյալ չզգացին միմյանց հղությունը, որով և ծանրացած էին։

622 Դրա համար ամենատեսը, երբ նրանց մոտ տեսավ այն, ինչ իրեն անհաճո էր՝ նրանց խակությունը, տհասությունը, ապա Աստվածությունը խորհուրդ արեց ի հայտ բերել նրանց հղությունը, ծնունդը։ Ասաց Աստված. «Եկեք իջնենք ու պղտորենք նրանց լեզուները» և չասաց, թե «գնացեք իջեք ու պղտորեցեք նրանց լեզուները» ինչպես և հրամանի կարգը պատշաճում էր Աստվածությանը, այլ «Եկեք, ասաց, իջնենք ու պղտորենք»։ Նա գործի մեջ

«Եկա՛յք, ասէ, իջցո՛ւք և պղտորեսցուք». իբրև առ հաւասարութիւն գործոյն յայտնի առնէր ի «պղտորեսցո՛ւք»-ն ասել, զիրաւ և առ մարդոյն արարչութեամբն և լեզուացն բաժանմամբ օրինակեաց զայս։

623 Քանզի զմարդկութիւնն վասն մերոյ փրկութեան յանձն առնլոց էր Աստուածութիւնն՝ զթիւ Երրորդութեան երեսացն ուսուցանէր առաքելոցն. զի ըստ այնմ օրինակի աշակերտեսցեն զամենեսեան, որ ընդ ամենայն տիեզերս մարդիկ իցեն, յայտնեալ երեքանձնական միասնական զօրութեանն, միապաշտօն տէրութեանն խոնարհեալ ծունր կրկնեսցի։ Իսկ յղութիւն նոցա ծնոյց զանլուր միմեանց ձայնիցն շփոթութիւն։

624 Իսկ արդ՝ զի՞նչ ասացին ազգքն այնոքիկ առաջինք ի շինել զաշտարակն. «Եկա՛յք շինեսցո՛ւք աշտարակ, զի իցէ գլուխ նորա ի վեր մինչև յերկինս»։ Որ ոչ կարացին հասուցանել ի բարձրութիւնն խոստացեալ անձանց պարծանացն զոր պանձացան. այլ աւերեցին փլուզին քակեցին զմիաբանական միալեզու միաբանութեանն իւրեանց շինութիւն միամտութեանն։ Ոչ հասուցին զաշտարակն ըստ ասելոյն յերկինս, զի յերկրի էր, և աստուստ էր շինուածն. այլ անտի իջուցին ի կործանումն բաժանման ցրուելոյն. յըղացան զանօրէնութիւն, ծնան զբազմաձայն լեզուացն բաժանումն, զի մի՛ լուիցէ այր ընկերի բարբառոյ, ի միմեանց մեկնելով ցրուեցան։

625 Իսկ Աստուածութիւնն երևեցաւ յայնժամ խորհրդով, և յայտնեցաւ այժմ յայս ժամանակս յայտնապէս. մեկնեցաւ արդեամբք, զի ծանիցեն ամենեքեան, տեսցեն և հաւատասցեն։ Արդ՝ սերմանեաց յանձինս մարգարէիցն զշնորհս յառաջգիտութեան Հոգւոյն սրբոյ, զի յղասցին զճշմարտութեանն աւետիս Աստուածութեանն զալստեան ամենայն արարածոց. և նոքա սերմանեսցեն ընդ ամենայն տիեզերս, զի յղասցին զխորհուրդն կենդանութեան ակնկալութեան, անմահութեանն բերել ծնունդս։ Ցղասցին զյոյս և զսէր նախ առ Աստուածութիւն արարչութեանն, և ապա զսէր ընկերսիրութեանն՝ աննենգ և անկեղծաւոր սիրով պահել հաւասարութիւն առ միմեանս։

626 Զոր և ինքն իսկ եկեալ մեկնեաց, թէ «Ցայս երկուս պատուիրանս ամենայն օրէնք և մարգարէք կախեալ կան»։ Նախ՝ սիրել զԱստուածութիւնն յամենայն սրտէ և յամենայն անձնէ և ամենայն զօրութեամբ հանդերձ, որ է առաջինն։ Եւ երկրորդն՝ սիրել



հավասարություն դրեց «պղտորենք» ասելով և հիրավի, այս օրինակով, թե՛ ստեղծեց մարդուն թե՛ բաժանեց լեզուները։

623 Քանզի Աստվածությունը մեր փրկության համար հանձն առավ մարդկային կերպարանքը, նա առաքյալներին սովորեցրեց Երրորդության անձնավորությունների թիվը, որպեսզի, ըստ այս օրինակի ուսուցանեն ամենքին, ուր որ տիեզերքում մարդիկ լինեն, հայտնելով, որ երեքանձնական միասնական զորության, միապաշտոն տերության առջև ծունկի իջնեն։ Իսկ նրանց հղությունը ծնեց միմյանց անհասկանալի ձայների շփոթություն։

624 Իսկ ի՞նչ ասացին այն առաջին ազգերը աշտարակը շինելու ժամանակ. «Եկեք այնպիսի աշտարակ շինենք, որ նրա գլուխը վեր լինի մինչև երկինք»։ Նրանք չկարողացան հասցնել այն բարձրությանը, որ իրենց հպարտությունը խոստացել էր, որով պարծեցել էին, այլ ավերեցին, փլուզեցին, քանդեցին իրենց լեզուների միասնությունը և համախոհ համերաշխության շինությունը։ Աշտարակը չհասցրեցին, ըստ իրենց ասածի, մինչև երկինք, քանզի երկրի վրա էր և այստեղ մնաց շինվածքը։ Այլ այնտեղից իջան մինչև կործանում, բաժանում և ցրում։ Անօրենություն հղացան, ծնունդ տվեցին բազմահնչյուն լեզուների բաժանմանը, այնպես որ այրն իր ընկերոջ լեզուն չէր հասկանում և միմյանցից հեռանալով ցրվեցին։

625 Իսկ Աստվածությունն այն ժամանակ խորհրդավոր էր երևացել, իսկ այս ժամանակներում հայտնապես ներկայացավ։ Իրավամբ հայտնվեց, որպեսզի ամենքը ճանաչեն, տեսնեն ու հավատան։ Արդ, մարգարեների մեջ սերմանեց սուրբ Հոգու, կանխագիտության շնորհը, որպեսզի հղանան Աստվածության գալստյան ճշմարիտ ավետիսը արարածներին և նրանք սերմանեն ամբողջ տիեզերքին, որպեսզի հղանան կենդանության ակնկալության խորհուրդը, անմահության ծնունդ տան, հղանան հույսը և սերը նախ առ Արարիչ Աստվածը և ընկերասիրության հակում ցույց տան միմյանց նկատմամբ, համերաշխության աննենգ և անկեղծ սիրով։

626 Այս բանն ինքը գալով մեկնեց, թե «այս երկու պատվիրաններից են կախված բոլոր օրենքներն ու մարգարեները»։ Նախ սիրել Աստծուն ամենայն սրտով, ամենայն հոգով և ամենայն զորությամբ հանդերձ, որն առաջինն է։ Եվ երկրորդը՝ սիրել ընկերոջըն իբրև իր անձը։ Իսկ երրորդը՝ լսել Աստվածության խոսքի ավետիսը, առանց երկմտության և հավատալ նրան։ Սրանով հղացան սլանալու արագությունը, որով թռիչքի են գնալու սուրբ Հոգու թե-

զընկերն իբրև զանձն։ Իսկ երրորդն՝ լսել Աստուածութեան բանին ուսանեաց առանց երկմտութեան և հաւատալ աչամիկ։ Այսուիկ յղացան զարագութիւն սլանալոյ, որով ծնան ի թռիչս և ի թևս Հոգւոյն սրբոյ, զի խառնեսցին ի գունդն Քրիստոսի՝ յղանալ զլոյսն հաւատոյ և ծնանել յարքայութիւն միանգամայն զըմբռնեալսն։ Որպէս և ընդ ամենայն արարածոց գոչէ մարգարէն առ Հայր, իբրև յամենեցունց բերանոյ, իբրև ընդ ամենեցունց տեսեալ զորդեգրութիւն շնորհին, որ կատարելոցն էր առ մեօք, ասէ. «Իբրև երկունք յղւոյ զի հասեալ իցէն ի ժամանակս ծննդեան, և առ ցաւս իւր ճչիցէ»։

627 Եւ զի՞նչ իցեն երկունքն հասեալք, որ զցաւսն ճչելոյ ստիպիցեն, եթէ ոչ զղջմունք և խոստովանութիւնք՝ ապաշխարութեամբ յղացեալք, որպէս և ասէն, թէ «Այնպէս եղեաք սիրելւոյ քում»։ Եւ զորմէ՞ սիրելւոյ արդեօք խօսեսցի մարգարէն, եթէ ոչ վասն Որդւոյն Նորա ասիցէ, որ գալոցն էր, որում մնայր ակնկալութիւն ամենայն արարածոց, որ եկն կատարեաց ինքեամբ զամենայն. որպէս և ասեն իսկ առ Նա բողոքեալ, թէ «Տէ՛ր, յահ և յերկիւղ քո յղացաք, երկնեցաք և ծնաք զհոգի փրկութեան քոյ»։

628 ՁԲ. Արդ՝ փոխանակ աշտարակին ինքն Տէրն կանգնեաց զխաչափայտն՝ ըստ յառաջասաց մարգարէութեանն. որպէս ասէ թէ «Ահաւասիկ կանգնեմ նշան ի վերայ հեթանոսաց», այսինքն զխաչն փրկական. յորոյ վերայ ինքնին Տէրն, ուստի և զկեանս գործէ աշխարհի։

629 Բայց «եկա՛յք, ասացին, շինեսցո՛ւք աշտարակ, զի իցէ գլուխ նորա ի վեր մինչև յերկինս». և այս ըստ նոյն նոցա կարծիսն անցեալ. և այն ոչ այսպէս։ Իսկ խաչ՝ աշտարակն, յորոյ վերայ Աստուածորդին բազմեցաւ. խաչն յերկրի, և մարմինն ի վերայ նորա. իսկ Աստուածութիւնն մինչև ի վեր քան զերկինս, և քան զանկէտ, քան զանսահման բնութիւն տարրեղէն արարածոցս, բովանդակեալ և բևեռեալ ի խաչին փայտի, լցեալ և տարածեալ ի տարերս և յանտարերս, այնպիսին՝ որ և ի սիրտս առաքելոց և ամենայն սրբոց բնակեալ էր հանդերձ Հարբն և սուրբ Հոգւովն իւրով։ Որ և լեզուս փոխանակ լեզուացն խափանելոց շարժեաց. զի յառաջին աշտարակէն ցրումն եղև, իսկ ի խաչէս՝ ժողով. անտի մերժումն ի տանջանս, և աստի՝ մերձումն յարքայութիւնն։

630 ՁԳ. Յղացան առաքեալքն զսէր առ մարմնակիցս իւրեանց և ծնան զամենայն արարածս, խառնեալ յԱստուածութիւն



վերի վրա, խառնվելու Քրիստոսի գնդին, հղանալու հավատքի լույսը և մի անգամ բռնվածներին բերեն ծնելու արքայության մեջ։ Ինչպես և ամենայն արարածների համար մարգարեն գոչում է Հորը, իբրև բոլորի կողմից ասված, ամենքի համար, տեսնելով շնորհի որդեգրությունը, որը պատրաստված է մեզ համար, ասում է. «Իբրև հղության երկունքի մեջ եղող, որի ծննդյան ժամանակը հասնելով, ցավից ճչում է»։

627 Բայց ի՞նչ է հասած երկունքը, որի ցավերը ստիպում են ճչալ, եթե ոչ ապաշխարությամբ հղացած զղջում և խոստովանություն, ինչպես ասված է, թե «մենք էլ այնպես եղանք քո սիրելիի համար»։ Ո՞ր սիրելիի մասին է արդյոք խոսում մարգարեն, եթե ոչ Նրա Որդու մասին, որը գալոց էր, որին էր ուղղված ամենայն արարածների ակնկալությունը, որն եկավ ինքն իրմով ամեն ինչ կատարեց, ինչպես ասացին նրան բողոքելով, թե «Տեր, ահի ու երկյուղի մեջ երկնեցինք և ծնեցինք քո փրկության հոգին»։

628 ՁԲ. Արդ աշտարակի փոխարեն ինքը Տերը խաչափայտը կանգնեցրեց, ըստ կանխագուշակ մարգարեության, որ ասում է, թե «ահավասիկ նշան եմ կանգնեցնում հեթանոսների վրա», այսինքն փրկարար խաչը, որի վրա ինքը Տերն է և որից կյանք է տալիս աշխարհին։

629 Բայց «եկեք, ասացին, աշտարակ շինենք, որպեսզի նրա գլուխը մինչև երկինք հասնի» և այս, ըստ նրանց ծրագրի կատարվեց, բայց մյուսն այդպես չեղավ։ Իսկ աշտարակը խաչն է, որի վրա Աստվածորդին բազմեց, խաչը երկրի վրա և մարմինը նրա վրա։ Աստվածությունը, որը հասնում է ավելի վեր, քան երկինքը, քան անորոշ կետը, քան նյութական արարածների անսահման բնությունը, մնաց պարփակված ու բևեռված փայտե խաչի վրա, լցված ու տարածված նյութականների և աննյութականների վրա։ Նա էր, որ առաքյալների և ամենայն սրբերի սրտերում բնակված էր Հորով և իր սուրբ Հոգով հանդերձ։ Նա լեզուներ ներշնչեց խափանված լեզուների փոխարեն։ Քանզի առաջին աշտարակից ցրում առաջացավ, իսկ խաչից՝ հավաքում։ Դրանից՝ հեռացում դեպի տանջանքները, սրանից՝ մերձեցում դեպի արքայություն։

630 ՁԳ. Առաքյալները սեր հղացան իրենց մարմնակիցների հանդեպ և ծնեցին ամենայն արարածներին ու խառնեցին Աստվածությանը։ Մատնեցին իրենց անձերը ընկերների բողոքների պատ-

անդր։ Մատնեցին զանձինս իւրեանց՝ ընկերացն բողոքելով, զի Աստուած ասացին. վասն այսորիկ իբրև զթշնամիս չարամահք եղեալ ի վերայ երախտեացն՝ չար փոխանակ ընդ բարւոյ ընդունէին հրաւիրակքն, որ եկին կոչել զամենեսեան ի հարսանիս Աստուածութեան սիրոյն։ Մահ ընկալեալ տանջանօք հանդերձ, փոխանակ ընդ դրուատին և պատիւ գտանելոյ ի նոցանէ, որպէս և դուք իսկ առ ձերսս արարէք. զի տգիտութեամբ արարէք, զի ոչ էիք հասեալ յիրաւի ի լաւութեանցն վերայ։

631 Արդ՝ յառաջին աշտարակէն ցրումն լեզուացն եղև. և այժմ ինքն Տէրն ժողովեաց զցրուեալս ազգացն, և բևեռեաց ընդ մարմնոյ իւրոյ, զոր առ ի մէնջ՝ ի փայտին զորմէ կախեցաւ. զի անքակութիւն արասցէ ի մի հաւատս միաբանական պաշտամանն։ Իսկ նոքա առին հրաման սիրել զտէրն և զկամս նորա առնել. զի զանձինս տոհմակցաց իւրեանց, այսինքն զամենայն մարդկան, ապրեցուսցեն ի յաւիտենական մահուանէն։ Զի Տէր ինքնին եկն և մեռաւ վասն ամենեցուն, զի զամենեսեան ձգեսցէ յանմահութիւնն. իսկ սոքա նորին կամացն քարոզք առաքեցան, զի տացեն զփրկութիւն և զերախտիս Աստուածութեանն առնուլ ի միտ ամենեցուն որ առ նոսայն եղև։

632 Վասն այսորիկ յղացան առաքեալքն ի Հոգւոյն սրբոյ և ծնան լեզուս՝ խօսունս անմահութիւն ամենեցուն։ Զի ինքն եկն Հոգի Աստուածութեանն փորձել և քննել զամենեսեան, իբրև զարծաթ ի բովս, լեզուօք առաքելոցն. որպէս և ասէն ընդ ամենեցուն, իբրև ընդ երկրի, բերան առեալ՝ իբրև զփող նովին զօրութեամբ գոչէ մարգարէն, թէ «Փորձեցեր զմեզ, Աստուած, և քննեցեր՝ որպէս և քննի արծաթ»։

633 Արդարև իսկ փորձեցան արդարքն իբրև ի բովս՝ ի Հոգւոյն սրբոյ. զի նախ զնոսա փորձեաց ի փչել Հոգւոյն զօրութեան. «Փչեաց ի նոսա և ասէ, առէ՛ք զՀոգին սուրբ»։ Զի ընտրեսցէ նախ զնոսա իբրև զարծաթ, զի աղտն այրեսցի. զի տուն Տեառն՝ ինքն աստուածախառն մարմինն էր, որ և տիեզերաց էին բովք սրբելոյ։ Անկան առաքեալքն առաքինիք ի բովսն՝ նախ թուով երկոտասանքն. այրեցաւ հալեցաւ կորեաւ մի ի նոցանէն, որդին կորստեան Յուդայ. իբրև զանագ ի մէջ հրոյ ծախեալ սպառեցաւ։

634 Սրբեցան մետասանքն և ընտրեցան իբրև զարծաթ ի բովս և եղին անօթք ընտիրք ճարտարութեան պիտոյից Արարչին։ Փոր-



ճառով, քանզի Աստուծո հետ խոսել էին։ Այս պատճառով իբրև թշնամիներ չարամահ եղան նրանց բարիքի համար։ Բարիքի փոխարեն չարիք էին ընդունում հրավիրյալները (առաքյալները), որոնք եկել էին ամենքին կոչ անելու Աստվածության սիրո հարսանիքին։ Փոխանակ նրանցից դրվատանք ու պատիվ գտնելու, տանջանքով մահ ստացան, որպես և դուք իսկ արեցիք ձերոնց։ Քանզի տգիտությամբ արեցիք և հիրավի չէիք հասել լավության [գիտակցության]։

631 Արդ, առաջին աշտարակի պատճառով եղավ լեզուների ցրումը և այժմ ինքը Տերը ցրված ազգերը ժողովեց ու բևեռեց իր մարմնի վրա, որը մեզանից էր առել և դրանով փայտից կախվեց, որպեսզի միաբանական պաշտամունքի մի հավատի մեջ անքակտելի դարձնի։ Իսկ նրանք հրաման ստացան սիրել Տիրոջը և նրա կամքը կատարել, որպեսզի իրենց տոհմակիցների, այսինքն ամենայն մարդկանց հոգիները փրկեն հավիտենական մահվանից։ Քանզի Տերն ինքը եկավ և մեռավ բոլոր նրանց համար, որոնց ամենքին անմահության է բարձրացնելու։ Իսկ սրանք առաքվեցին որպես նրա կամքի քարոզիչներ, որպեսզի ամենքին տեղյակ դարձնեն Աստվածության փրկությանն ու երախտիքին, որը եղել էր նրանց մեջ։

632 Այս պատճառով առաքյալները սուրբ Հոգուց հղացան և ծնեցին լեզուներ, որոնք անմահության մասին էին խոսում ամենքին։ Քանզի ինքը Աստվածության Հոգին եկավ փորձելու և քննելու ամենքին առաքյալների լեզուներով, ինչպես արծաթը բովի մեջ։ Ինչպես ամենքին ասված, իբրև աշխարհին ուղղված, իբրև փող խոսելով մարգարեն նույն զորությամբ գոչում է, թե «փորձեցիր մեզ, ով Աստված, ու քննեցիր, ինչպես արծաթն է քննվում»։

633 Արդարև իսկ արդարները փորձվեցին, ինչպես բովի մեջ, սուրբ Հոգու միջոցով։ Նախ նրանց փորձեց՝ փչելով Հոգու զորությունը։ «Փչեց նրանց և ասաց՝ առեք սուրբ Հոգին», որպեսզի նախ զտի նրանց որպես արծաթ և աղտը մաքրի։ Քանզի Տիրոջ տունը նրա աստվածային մարմինն էր։ Նրանք նաև տիեզերքի համար զտելու բով էին։ Ընկան առաքինի առաքյալները բովի մեջ նախ տասներկու թվով, այրվեց հալվեց, կորավ նրանցից մեկը՝ կորստյան որդի Հուդան, անագի նման հրի մեջ քայքայվեց, սպառվեց։

634 Սրբվեցին տասնմեկը և զտվեցին ինչպես արծաթը բովի մեջ ու եղան Արարչի կարիքների ճարտար ընտիր անոթներ։ Փորձ-

ձեցան պէսպէս նեղութեամբք և տանջանօք զոր կրեցին ի մարդկանէ, յայնցանէ՝ որոց զօգուտն խօսեցան. հաստատեալ սիրովն տային վկայութիւն մարմնակցացն, յորոց ընդունէին տանջանս, զի զՏեառն առաքչին զհրամանսն կատարեսցեն. սէր օգտի ընկերացն բերեալ, համբերելով նեղութեանցն, զի զանցաւորսն արհամարհեսցեն։ Զի յորժամ Արարիչն աշխարհի յայտնեսցի միւսանգամ՝ նոքա ընդ նմին թագաւորեսցեն յաւիտենական թագաւորութեամբն. որպէս ասէն յիրաւի ի դէմս նոցա նոյն երգողին մարգարէութիւն, թէ «Փորձեցեր զմեզ, Աստուած, և քննեցեր՝ որպէս և քննի արծաթ. իջուցեր զմեզ յորոգայթ, և եդեր նեղութիւն ի թիկունս մեր, և անցուցեր զմարդիկ ի վերայ գլխոց մերոց»։

635 Զի քննեաց զնոսա հրովն Հոգւոյն և ի ձեռս մարդկան. զի ի հանդիսի փորձութեան քաջութիւնքն երևեսցին նեղութեամբքն վասն արդարութեանցն. որպէս և դուք յայնցանէ, որ և ի ձերում աշխարհիս առաջի ձեր վկայք Աստուածութեանն գտան՝ գիտէք զփորձն. զի սիրեցին զյոյսն խոստացեալ միւսանգամ պայտեանն Աստուածորդւոյն։ Առին զհուր Հոգւոյն կենդանւոյ յանձինս իւրեանց, և զվտակս բղխման անմահութեանն բաւական եղեն ընդունել։ Վասն այսորիկ կարացին դիմել անցանել, արհամարհել զհրով տանջանացն և զպաղեալ սառամանեօք մեղացն։ Արդարև արհամարհել արհամարհեցին զմեղօք և ընդ նմին զնեղութեանցն եկելոց գոհանային զտուողէն շնորհաց, թէ «Անցաք մեք ընդ հուր և ընդ ջուր, և հաներ զմեզ ի հանգիստ»։

636 Զի նախ անցին ընդ հուրն և ընդ ջուրն և ընդ սուրն մեղաց, և արհամարհեցին զհուր մեղացն և զջուրն անօրէնութեան և զսուր տանջանացն փորձութեան, և ընկալան զլուսաւորիչ հուրն կենդանութեան և զջուրն նորոգութեան և զսուրն, այսինքն «զբանն Աստուծոյ, որ սուր է քան զամենայն սուր երկսայրի և պողովատիկ, և կարող է հասանել հատանել թափ անցանել մինչև յորոշումն ոգւոց և մարմնոց և շնչոց»։

637 Վասն այսորիկ և մարգարէն յառաջագոյն ընծայեցուցանէ զայս, թէ «Սուրք երկսայրիք են ի ձեռս նոցա». որով և կորիցեն հատանիցեն միանգամայն զանօրէնութիւնս ամբարշտութեանցն, խլեսցեն յերկրէ։ Եւ զհնձեալսն և զհատեալսն զի՞նչ առնիցեն։ Ասէ,



վեցին պես-պես նեղություններով ու տանջանքներով, որ նրանց պատճառեցին մարդիկ, այնպիսինները, որոնց օգտի համար են խոսել։ Հաստատ լինելով սիրո մեջ վկայություն տվեցին մարմնակիցներին, որոնցից տանջանքներ էին ընդունել, որպեսզի կատարվեն առաքիչ Տիրոջ հրամանները։ Նրանք օգուտի սեր բերեցին ընկերներին, համբերելով նեղություններին, որ անցավոր լինելու պատճառով արհամարհեցին։ Քանզի աշխարհի Արարիչը երբ մյուս անգամ հայտնվի, նրանք նրա հետ թագավորելու են հավիտենական թագավորությամբ, ինչպես հիրավի նրանց կողմից ասում է նույն երգողի մարգարեությունը, թե «փորձեցիր մեզ Աստված և քննեցիր ինչպես քննվում է արծաթը, մեզ որոգայթի մեջ նետեցիր և մեր թիկունքին բեռ դրեցիր ու մարդկանց նստեցրիր մեր գլուխների վրա»։

635 Քանզի նրանց քննեց Հոգու հրով և մարդկանց ձեռքով, որպեսզի փորձության հանդեսի ժամանակ նրանց քաջությունը երևա արդարության համար կրած նեղությունների միջոցով։ Ինչպես և դուք գիտեք նրանց փորձը, ովքեր ձեր երկրում, ձեր առջև Աստվածության վկաներ եղան։ Նրանք սիրեցին Աստվածորդու կրկին գալստյան խոստացված հույսը։ Կենդանի Հոգու հուրը իրենց վրա վերցրին և արժանի եղան ընդունելու անմահության բխման վտակները։ Այս բանի համար նրանք կարողացան դիմագրավել, անցնել, արհամարհել հրով տանջանքները և սառնամանիքով պաղած մեղքերը։ Արդարև արհամարհելով արհամարհեցին մեղքերը և նրա հետ նաև գալիք նեղությունները ու գոհացան շնորհներ տվողից, թե «Մենք անցանք հրի ու սրի միջով և դու մեզ հանգստի հասցրիր»։

636 Քանզի նախ անցան հրի, ջրի և մեղքի սրի միջով և արհամարհեցին մեղքերի հուրը, անօրենության ջուրը և փորձության տանջանքի սուրը. նրանք ընդունեցին կենդանության լուսավորիչ հուրը, նորոգության ջուրը, և սուրը, այսինքն «Աստուծո խոսքը, որն ավելի սուր է, քան ամենայն երկսայրի սուր ու պողպատ և կարող է հասնել, կտրել, ճեղքել մինչև անջատումը հոգու, մարմնի ու շնչի»։

637 Սրա համար էլ մարգարեն նախապես այս էր առաջարկել, թե «երկսայրի սրերը նրանց ձեռքում են», որով և կտրելու, հատանելու են և միանգամայն վերացնելու երկրից ամբարշտությունների անօրենությունները։ Իսկ ի՞նչ են անելու հնձված ու կտրվածի

թէ «Հողմք առցեն, և ամպք բաժանեսցեն, և փոթորիկ իբրև զխաւ կոտեսցէ զնոսա»։ Իսկ կոտեալքն ի հուրն անշէջ մատնեսցին։ Զի արդարև իսկ ճշմարիտ մշակաց գործ այն է, զի զպիտանի արդիւնսն, շահեկանսն, ի շտեմարանս ժողովեսցեն, և զփուշն և զգժնիկն տալ ճարակ հրոյ։

638 ԶԴ. Արդ՝ սոքա նախ զանձինս փորձեցին, և ապա աշխարհի եղեն բովք։ Ընկալան զհուրն կենդանութեան. միւսանգամ մտին ի բովս իբրև զարծաթ, զտեալք և պարզեալք և ձուլեալք ի սէր Արարչին զտան ի հնոցէն հալոցաց՝ եղեն փողք կռածոյք ի սպաս Տեառն հրամանացն, գոչեցին լցին զտիեզերս։ Փողք առ փողս գոչեցին և ասեն ընկեր ցընկեր, թէ «Աւետարանեցէ՛ք օր ըստ օրէ զփրկութիւն նորա. պատմեցէ՛ք ի հեթանոսս զփառս նորա, յամենայն ժողովուրդս զսքանչելիս նորա. զի մեծ է Տէր և օրհնեալ է յոյժ, ահարկու է նա ի վերայ ամենայն կռոց». և թէ՝ «Ամենայն կուռք հեթանոսաց ոչինչ են, այլ Տէր զերկինս արար»։ Իսկ փոխանակ պատկերացն կռելոց առաքեալքն իբրև շփորք կռածոյք անուանեցան, զի զամենայն աշխարհս ընդ հանուր լցցեն. որպէս ասէ, թէ «Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա, և մինչև ի ծագս տիեզերաց են խօսք նոցա»։

639 Արդ՝ և ինքեանք հնոցք տիեզերաց, և հուր կենդանութեան Հոգւոյն ի լեզուս նոցա, զի զամենայն աշխարհս փորձեսցեն։ Եւ զի գոչեսցեն ես ի Տեառնէն զճշմարիտ բնութեանն Աստուածութեանն զյայտնութիւն, թէ «Տեսէ՛ք տեսէ՛ք, զի ես եմ, և ոչ գոյ այլ Աստուած բայց յինէն». թէ՝ «Ես սպանանեմ, և ես կեցուցանեմ. հարկանեմ, և ես բժշկեմ, և ոչ ոք իցէ, որ հանիցէ զձեզ ի ձեռաց իմոց». և եթէ՝ «Սրեցից իբրև զփայլակն զսուսեր իմ, և ի խնդիր վրիժուց արձակեսցից զաջ իմ. հատուցից զհատուցումն թշնամեաց իմոց»։

640 Յղացան լեզուք առաքելոցն զանչափութիւն հաւատոցն իւրեանց, և ծնան լեզուս զոր ոչ գիտէին։ Գոչեցին իբրև զփող՝ զմիահեծան տէրութեանն իշխանութիւն, և ծնան զանթիւ բազմութիւն մարդկան ի կարգս հրեշտակաց ի սպասաւորութիւն Աստուածորդւոյն։ Զի փոխանակ հրեշտակացն անկելոց, որք կործանեցան յաստուածակիր ի լուսեղէն ի սպասաւորութենէն՝ որդիք մարդկան հրեշտակացին, կանգնեցին և կալցին զտեղիս նոցա։ Զի թիւք կարգեալք փառաւորութեանցն՝ նոյն անխախուտ մնացեալ լիութեամբն



հետ։ Ասում է, թե «Հողմերը տանելու են, ամպերը բաժանելու և փոթորիկն իբրև խոտ կոտելու է նրանց»։ Իսկ կոտակվածները անշեջ հրի են մատնվելու։ Քանզի արդարև իսկ ճշմարիտ մշակների գործն այն է, որ պիտանի արդյունքը, շահեկանը շտեմարանների մեջ ժողովեն, իսկ փուշն ու եղջերափուշը հրո ճարակ դարձնեն։

638 ԶԴ. Արդ, սրանք նախ իրենք իրենց փորձեցին և ապա աշխարհի բովեր դարձան։ Կենդանության հուրն ընդունեցին, կրկին մտան բովերի մեջ իբրև արծաթ զտված ու մաքրված և ձուլված Արարչի սիրո մեջ։ Նրանք հնոցի հալոցից հանվեցին և եղան կռածո փողեր՝ ի սպաս դրված Տիրոջ հրամաններին։ Նրանք գոչեցին ու լցրին տիեզերքը։ Փողերը փողերին գոչեցին և ընկերն ընկերոջ ասաց, թե «ավետարանեցեք օրըստօրե նրա փրկությունը, պատմեցեք հեթանոսներին նրա փառքը և ամենայն ժողովուրդներին նրա հրաշքները, քանզի մեծ է Տերը և հույժ օրհնյալ, ահարկու է նա ամեն կուռքերի նկատմամբ», և թե «հեթանոսների ամենայն կուռքերը ոչինչ են, սակայն Տերը երկինքն է ստեղծել»։ Իսկ կռած պատկերների փոխարեն առաքյալները կռածո շեփորներ կոչվեցին, որ ամենայն աշխարհը ընդհանրապես լցնեն, ինչպես ասված է, թե «ամբողջ երկրով մեկ հնչեց նրանց ձայնը և մինչև տիեզերքի ծագերն են հասնում նրանց խոսքերը»։

639 Արդ, նրանք տիեզերքի հնոցներ են, և Հոգու կենդանության հուրը նրանց լեզուների վրա է, որպեսզի փորձեն ամենայն աշխարհը և կոչեն Տիրոջ անունից Աստվածության ճշմարիտ բնության հայտնությունը, թե «տեսեք, տեսեք, որ ես եմ և չկա Աստված բացի ինձանից» թե «ես եմ սպանում և ես կենդանացնում, ես եմ հարվածում և ես բժշկում և չկա մեկը, որ ձեզ փրկի իմ ձեռքից» և թե «փայլակի նման սրելու եմ իմ սուսերը և հանուն վրեժի արձակելու եմ իմ աջը, հատուցելու եմ իմ թշնամիների հատուցումը»։

640 Առաքյալների լեզուները հղացան իրենց հավատի անչափությունը և ծնեցին լեզուներ, որ չգիտեին։ Փողի նման գոչեցին [աղդարարելով] միահեծան տերության իշխանությունը և մարդկանց անթիվ բազմությունը տարան հրեշտակների կարգը՝ սպասավորելու Աստվածորդուն, քանզի ընկած հրեշտակների փոխարեն, որոնք զրկվեցին աստվածային լուսեղեն սպասավորությունից, մարդու որդիները կարող են դառնալ հրեշտակներ, բարձրանալ ու գրավել նրանց տեղերը։ Այսպիսով փառավորյալների կարգավոր-

անպականեցին, զի ի հասարակաց փառաւորութեանցն զովեստք աճեցեալ զօրացին, ուստի ի համեմատութենէ անտի «Փառք ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, ի մարդիկ հաճութիւն»։

641 Զե. Եղեն փողք առաքեալքն ժամատուք տիեզերաց. զի դիցեն ի սիրտս ամենայն երկրի ակնկալութիւն ժամակալութեան՝ սպասել տեառնագալուստ փողոյն։ Զի նովին ձայնիւք եկեալ հասեալ, ի ժամանակի անդ ծանուցեալ զնոյն ձայն փողոյն, ի մահահանդիստ քնոյն յարուցեալք ի գարունն՝ զբերս բուսոյն իւրաքանչիւր հասելոցն տերևիցեն։ Զի այնուհետև յայն հասեալ գարունն՝ զիւրաքանչիւր սերմանեաց յարմատոյ անտի զտեսիլ կերպարանացըն բերիցեն։

642 Ոմն իբրև զարմաւն քաղցրահամ և զգեղեցկատես. որպէս ասէ յառաջընծայ մարգարէութիւնն, թէ «Արդարքն իբրև զարմաւենիս ծաղկեսցին, և իբրև զմայրսն Լիբանանու բազումք եղիցին։ Տնկեալք եղիցին ի տան Տեառն, և ի դաւիթս Աստուծոյ մերոյ ծաղկեսցին»։ Եւ դարձեալ՝ ինքն Տէրն մեր Յիսուս Քրիստոս յաւետաւեացաբեր և ի կենսաբեր Աւետարանին իւրում ամենեցուն տայ գիտութիւն յայտնապէս, թէ «Ի թզենւոյ անտի ուսարո՛ւք զառակն. զի յորժամ ոստքն կակղասցին և տերևեսցին՝ գիտասջի՛ք, ասէ, թէ մերձ է գարունն»։

643 Զի կարի նմանութիւնք և օրինակք են ամենայն ծառատունկք, զիւրաքանչիւր կերպարանաց տեսիլս բերելով և ոչ երբէք փոխեն զգոյնս գոյնս ծաղկանցն, համոցն և հոտոցն և տերևոցն։ Զի արմաւն զիւր տեսիլն և զգոյնն և զհամն և զպարարն բերիցէ և զբնական զարմատոյն, զծննդեան բուսոյն։ Նոյնպէս և թուզն զտեսիլ իւրոյ տերևոյն և զարար կեղևոյն և զտարր մրգոյն ի նմանէ որիշ. և այլքն ի նմանէ ուրոյնք։ Զի կարմրախնձորն զիւր օրինակն, և կարմրատանձն զիւրն, և կարմրադեղձն զիւրն։ Եւ են նոյն ի նորին բնութենէ որ այլագոյնք են. զի և զհոտն անգամ իւրաքանչիւր ոք ի նոցանէ առանձինն արձակիցէ։

644 Սոյնպէս կիտրոնն և ապարաղսամոնն և դափնին և ձիթենին գեղեցիկ և սերկևիլն և մուրտն և ընկոյզն և նուշն և քնարուկն և հաճարուկն և թութն և նուռնն և հոյնն։ Եւ ամենայն ծառք մրգաբերք և ծաղկաբերք և տերևաբերք և հասկաբերք, բարձունք և



ված թիվը կմնա անխախտ, լիությամբ անպակաս, որպեսզի փառավորյալների հասարակությունից գովեստները բազմանալով աճեն հետևյալ համեմատությամբ «փառք բարձունքներում Աստծուն, երկրում խաղաղություն և մարդկանց հաճություն»։

641 Զե. Առաքյալները եղան տիեզերքին [ազդարարող] ժամատու փողեր, որ ամբողջ երկրի սրտերի մեջ դնեն նշանակված ժամկետի ակնկալությունը սպասելու տյառնագալուստ փողին։ Քանզի նույն ձայներով գալու են և այդ ժամանակ ծանուցելու փողի նույն ձայնը։ Մահահանգիստ քնից ելնելով դեպի գարուն, ցույց են տալու յուրաքանչյուրի բույսի ծաղկելը։ Այնուհետև երբ հասնեն այս գարնանը, յուրաքանչյուրն իր սեմի արմատից հատուկ կերպարանքն է ի հայտ բերելու։

642 Մեկն իբրև քաղցրահամ ու գեղեցկատես արմավենի, ինչպես ասում է կանխագուշակ մարգարեությունը, թե «արդարները արմավենիների նման ծաղկելու և Լիբանանի մայրիների պես բազմանալու են։ Տնկվելու են Տիրոջ տանը և մեր Աստծո բակերում ծաղկելու են»։ Դարձյալ ինքը՝ մեր Տեր Հիսուս Քրիստոս, իր ավետաբեր ու կենսաբեր Ավետարանում ամենքին հայտնապես գիտություն է տալիս, թե «թզենու ծառից սովորեցեք առակը, քանզի երբ ոստերը կակղեն ու տերևակալեն, գիտեցեք, թե մերձ է գարունը»։

643 Քանզի ամեն տեսակ ծառատունկերը լավ նմուշներ և օրինակներ են, յուրաքանչյուրն ի հայտ բերելով իր կերպարանքի տեսքը։ Երբեք չեն փոխում ծաղիկների գունագեղությունը, համը, հոտը և տերևները։ Քանզի արմավենին պիտի ունենա իր տեսքը, գույնը, համը և բերքը, ինչպես նաև արմատի բնական վիճակն ու բույսի աճը։ Նույնպես և թզենին ունի իր տերևներն ու կեղևի կառուցվածքը, նրա միրգը այլ տեսակ է և ուրիշները նրանից տարբեր են։ Կարմրախնձորն ունի իր ձևը, կարմրատանձն իրը և կարմրրադեղձն իրը։ Նրանք նույն բնությունից են, սակայն այլագույն են, քանզի յուրաքանչյուրը նրանցից նույնիսկ իր առանձին հոտն է արձակում։

644 Այսպես և կիտրոնը, բաղսամոնը (ապաբաղսամոն), դափնին, գեղեցիկ ձիթենին, սերկևիլը, մուրտն, ընկույզը, նուշը, քնարուկը, հաճարուկը, թութը, նուռը, և հոնը (հուն)։ Եվ ամենայն մրգաբեր, ծաղկաբեր, տերևաբեր և հասկաբեր ծառերը, բարձր են և հսկա, ինչպես մայրին, նոճին, սոճին (շոճն), թեղոշը (կարմիր

մեծամեծք. որպէս մայրն և նոճն և շոճն և թեղօշն և սարդն և սարոյն և սօսն և յակրին և դին և կաղամախն և ուռին և տօսախն։

645 Սոյնպէս և գունակ գունակ և երփն երփն ծաղկանցն. որպէս մանրագորն և վարդն և շուշանն և ասպազանն և յասմիկն և անխարն և սմնակն և ներգիսն և շամպղիտակն և մեղրուկն, հօրօտն և մօրօտն և մանիշակն. և այլն ամենայն համասպրամ ծաղկանցն և ծառոցն բոյսք բողբոջոցն գարնանւոյն երևեցին յետ ձըմերանւոյն։

646 Սոյն օրինակ և յարութիւն մեռելոց։ Զի յորմէ հետէ ստեղծաւ աշխարհ՝ ոչ ոք ի նոցանէ յաշունն կամ ի գարունն փոխ առ յընկերէն, և կամ զիւրն ետ զկերպարանս բուսոյն ծննդեան նմանութեան իւրոյ։ Այլ ի սկզբանց արարչութեանցն ի ստեղծուածագործ ժամանակէ անտի մինչև ի վախճանելոյ ժամանակն, թէպէտ ստէպ ստէպ յաշունն ունին բոյսք աճունք, չորացեալք տերևընկէց լինին, և պարարեալք ձմերասունք լինին, սառնապատք, ձիւնաթաղք, եղեմնահարք, խստութեամբ հարեալք դձձին արմատքն ծաղկանց, և կամ բազմակոյտք իմն իմն դարաստանացն, և անտառք բարձրաբերձ մայրիցն մայրեացն աճեցելոց՝ ստուարապատ յօրացելովքն հանդերձ շառաւեղօքն, սակայն ի ժամանակս գարնանւոյն հասեալք՝ ամպաշողք, որոտընդոստք, անձրևաբաղխք, ցօղահարք, առատաբուղխք, ամարասունք՝ ի վեր բերեն զիւրաքանչիւր օրինակ բուսոց տերևոցն։ Ըստ իւրոյ բնութեանն զայ տեսիլն յիւր իսկ կերպարանն, և ոչ փոխի ի նմանէ յընկերն, կամ յընկերէն ի նորա նըմանութիւն, այլ ըստ հաստատեալ կարգողին՝ նոյնպէս կայ յիւրում բնութեանն. անխախուտ անփոփան պատրաստեալ ըստ Արարչին հրամայելն՝ բուսանին փթթին։

647 Նա և մանրախոտքն ղալարիք՝ իմն իմն և այլևայլք և ուրիշք են նմանութեամբ ի միմեանց, որպէս լօռն և վարսակն և կընիւնն, և որ ինչ նման է նոցա։ Նա և սերմանիքն օգտակարք մարդկան, որպէս ցորեանն և հաճարն և գարին և կորեակն և գաւարսն և ոսպնն և ոլոռնն և որիզն և դկուղն և սիսեռնն, և այլ ևս բազում սերմանիք՝ զոր ի թիւ ոչ ոք կարասցէ արկանել։ Որք իւրաքանչիւր յիւրում ժամու ի գարունն ցուցանեն զյարութիւնն իւրեանց՝ բու-



կաղնի), սարդը (սարդենի), սարոն (կիպարիս), սոսը (չինարի), հակրին (արքայամորի), դին (գիհի), կաղամախը, ուռին և տոսախը։

645 Նույնպես և գույնզգույն ու երփներանգ ծաղիկները, ինչպես մանրագորը (մարդախոտ), վարդը, շուշանը, ասպազանը (տիպաստատուկ), հասմիկը, անխարը (լուտաս), սմնակը (ահրեփուկ), ներգիսը (նարկիս), շամպղիտակը (քարխոտ), մեղրուկը (թոքախոտ), հորոտն ու մորոտը, մանուշակը և ամենայն համասպրամ (անուշահոտ) ծաղիկների ու ծառերի բողբոջը երևալու է գարնանը, ձմեռվանից հետո։

646 Նույնօրինակ է և մեռելների հարությունը։ Քանզի այն բանից հետո, երբ ստեղծվեց աշխարհը, ոչ ոք աշնան կամ գարնան չի փոխարինել իր ընկերոջը և կամ տվել իր կերպարանքը որևէ բույսի, որը նույն ծնունդն ունի։ Այլ սկսած իրենց ստեղծումից, արարչագործության ժամանակից մինչև վախճանի ժամանակը, թեպետ ստեպ-ստեպ աշնանը աճող բույսերի մեջը դատարկվում է, չորացած տերևներն ընկնում են և պարարտացածները ձմեռնահար են լինում, սառնապատ, ձյունաթաղ, եղյամահար [ձմեռվա] խստությունից զարնված քայքայվում են ծաղիկների արմատները, ծառաստանների բազմակույտ ծառերը, անտառները բարձրաբերձ մայրիներով, առատ աճած ոստերով՝ ստվարապատ ուռճացած, ճյուղերով հանդերձ, սակայն երբ հասնում է գարնան ժամանակը ամպերից շող ստանալով, որոտից ցնցված, անձրևով հղփացած, ցողահար, առատաբուխ աճելով ամռանը, նրանցից յուրաքանչյուրը իրեն հատուկ ծաղկուն տերևներ է ընծայում։ Ըստ ամեն մեկի բնության նրա տեսքը մնում է իր կերպարանքով և չի փոխվում մի այլ ձևի և կամ ընկերը չի նմանվում նրան, այլ ըստ կարգողի հաստատած ձևի՝ նույնությամբ մնում է իր բնության մեջ։ Անխախտ, անփոփոխ, պատրաստված ըստ Արարչի կարգադրության բուսնում և փթթում են։

647 Դալար մանրախոտերը տեսակ-տեսակ և այլևայլ ձևերով են տարբերվում միմյանցից, ինչպես լոռը (չրիմուռ), վարսակը և կնյուկը (վաղմեռուկ) և նրանց նմանները։ Նաև մարդկանց օգտակար սերմերը, ինչպես ցորենը, հաճարը, գարին, կորեկը, գավարսը (դեղին կորեկ), ոսպը, ոլոռը, որիզը (բրինձ), կուղը (բակլա), սիսեռը և բազում այլ սերմեր, որ կարելի չէ թվարկել։ Սրանցից յուրաքանչյուրը գարնանը, իր ժամանակին ցույց է տալիս իր հա-

*սովքն և համովքն և հոտովքն, բողբոջովքն, ծաղկովքն և ընդովքն. և տերևազգեստք զիւրեանց մերկութիւնն ըստ իւրաքանչիւր նմանութեան ագուցանեն։*

*648 Որպէս և միտք և մարմինք մարդկան աստուածական ցօղովն ի մեծ գարունն պարարեալք ի գերեզմանացն բուսանիցին։ Զի միանգամայն կազմիցին ոսկերօքն չորացելովք՝ միսքն և ջիղքն և աճառքն և նեարդքն, մորթովքն զգեցեալք և մազովքն զարդարեալք։ Եւ իւրեանց ոգիքն ի նոսին դարձեալք, և իւրեանց նմանութիւնքն յինքեանս. զի զիւրաքանչիւր գործոցն տեսիլս ի գլուխս իւրեանց առեալ բերիցեն, իբրև զմիրգս քաղցրութեան և զանուշութեան. պտուղսն, համովքն և իւղովքն և ծաղկովքն և հոտովքն, աճեցուն բազկարձակ տերևալից ջրասուն վայելչութեամբքն։ Զոր և սաղմոսարանն մարգարէութեամբքն նուագեաց, թէ «Եղիցի նա որպէս ծառ, որ տնկեալն է ի գնացս ջուրց, որ զպտուղ իւր ի ժամու տացէ, և տերև նոցա մի՛ թափեսցի. և զամենայն ինչ զոր և առնիցէ՝ յաջողեսցի նմա»։ Եւ դարձեալ՝ եթէ «Ծաղկեսցին ի քաղաքի Տեառն՝ իբրև զխոտ երկրի». և եթէ՝ «Եղիցին օրհնեալ յաւիտեանս»։*

*649 ԶԶ. Եւ արդարև իսկ գարունն բուսաբեր՝ զօրինակ մարդկան յարութեան մեռելոցն ուսուցանէ։ Եւ զի ծաղիկքն և ծառատունկքն զարդարին, նա և փուշքն բուսանին,— որպէս դժնիկն և տատասկն, եղինճն և պատեղինճն, խայթահարն, ժանտափուշն, տափափուշն, սրափուշն, որոմնն, կայծուկն, գաղձն վնասակար, և որ ինչ նման է սոցա,— և սոքա ամենեքեան յիւրաքանչիւր նմանութեան բնութեանն բուսանին։ Իսկ օգտակար ծաղիկքն և կամ շառաւիղք ծառոցն դրաստանաց՝ յիւրեանց բնութեանն հասանեն գարնայնոյն։*

*650 Իսկ միտք մարդկան, որ են տունկք բուրաստանաց կամ ծաղիկք ծաղկոցաց Աստուածութեանն՝ ունին ինքեանք յինքեանս ըստ կամաց իւրեանց բերել զնմանութիւնս և զօրինակս տերևոցն և ծաղկանցն և հոտոցն և մրգոցն։ Զի թէպէտ և դառնաբերք լինին և թէպէտ քաղցրաբերք, թէպէտ մրգաբերք լինին և թէպէտ փշաբերք, թէպէտ արդարութիւնաբերք լինին և թէպէտ մեղսաբերք, թէպէտ ծաղիկք լինին, զի ի սկտեղս պատուականս թագաւորին ելանիցեն, և պսակք զարդու ուրախութեան պիտոյից պատրաստիցին. ըստ ասելոյն գուշակութեան Հոգւոյն սրբոյ ի բերանոյ խօսեցեալ Եսայեայ մարգարէին, թէ «Յայնժամ եղիցիս դու պսակ վայելչու-*



*ությունը՝ բույսով, համով, հոտով, բողբոջով, ծաղկով և պտղով։ Տերևազգեստ բույսերն իրենց մերկությունը ծածկում են յուրաքանչյուրն ըստ իր ձևի։*

*648 Այսպես և մարդկային մտքերն ու մարմինները, աստվածային ցողով պարարած գերեզմաններից բուսնելու են մեծ Գարնանը։ Քանզի չորացած ոսկորների շուրջը անմիջապես կազմվելու են մսերը, ջղերը, աճառները և նյարդները, մորթեր զգեցած և մազերով զարդարված։ Նրանց հոգիները և նմանությունն իրենց են դառնալու, քանզի նրանցից ամեն մեկը կրելու է իր գործերի պատկերը իր գլխի վրա, ինչպես քաղցր մրգեր և անուշահամ պտուղներ, համեմունքներով, յուղերով, ծաղիկներով և բուրմունքով, առատ ճյուղերի և ջրերի վրա աճած տերևների վայելչությամբ։ Այս բանը սաղմոսերգուն մարգարեության մեջ նվագեց. «Նա լինելու է ծառի նման, որ տնկված է ջրերի հոսանքի մեջ, իր պտուղը ժամանակին է տալու և նրանց տերևը չի թափվելու և ամեն ինչում հաջողություն է ունենալու»։ Եվ դարձյալ «ծաղկելու են Տիրոջ քաղաքում իբրև երկրի խոտ» և թե «օրհնյալ են լինելու հավիտյան»։*

*649 ԶԶ. Արդարև բուսաբեր գարունն օրինակ է տալիս մարդկանց հարությանը մեռելներից։ Քանզի ծաղիկներն ու ծառատնկերը զարդարված են և փշերն էլ են բուսնում, ինչպես դժնիկն (եղջերափուշ) ու տատասկը, եղինճն ու պատեղինճը, խայթահարը, ժանտափուշը, տափափուշը, սրափուշը, որոմը, կայծուկը (ուղտափուշ), վնասակար գաղձը (գայլախոտ) և ինչ որ սրանց նման է և ապա այս ամենը յուրաքանչյուրն իր բնության համեմատ բուսնում է։ Իսկ օգտակար ծաղիկները և կամ անտառների ծառերի մատղաշները գարնան հասնում են իրենց բնական վիճակին։*

*650 Իսկ մարդկանց մտքերը, որոնք Աստվածության բուրաստանների տունկերն են կամ ծաղկանոցների ծաղիկները, ի վիճակի են իրենց կամքով կրելու իրենց մեջ տերևների, ծաղիկների, անուշահոտությունների ու մրգերի նմանություններ և օրինակներ։ Քանզի մի քանիսը դառնաբեր են, մյուսները քաղցրաբեր, մի քանիսը մրգաբեր են, մյուսները փշաբեր, մի քանիսը արդարությունաբեր են, մյուսները մեղսաբեր, իսկ մյուսները ծաղիկներ են դառնում, որպեսզի թագավորի պատվական սկուտեղների մեջ երևան և պատրաստվեն որպես արժանավորների ուրախության զարդեր, պսակներ, ըստ սուրբ Հոգու գուշակության, ասված Եսայի մարգարեի բերնով, թե «այն ժամանակ վայելչության պսակ կլինես*

թեան ի ձեռին Տեառն, և թագ արքայութեան ի ձեռին Աստուծոյ. և քեզ անուն կոչեսցին կամք իմ, և յերկրին քում շինութիւն բնակութեան»։

651 Անդ լինելոց է շինութիւն՝ յաստուածական և յանստուեր և յանխաւար և յանկարօտ և յանփոփոխ քաղաքին։ Զի այժմ ամենայն բոյսք՝ յիւրաքանչիւր բնութեան կան կապեալք. բայց միայն մարդատունկքն կարող են զիւրաքանչիւր բարս բնութեան գունակ գունակ կերպարանացն շրջշրջել. այժմ որպէս և կամին՝ զայն բոյս թաղեն յանձինս իւրեանց, և նովին թաղին ի գերեզմանսն, այսինքըն է մահն, աշունն ոչ խոտոց՝ այլ մարդկան, որ ժողովէ ի շտեմարանսն. իսկ գարունն, ոչ խոտոցն կամ փայտիցն, այլ մարդկան՝ զայն կերպարանս բերէ, զոր ընդ քեզ թաղեցեր ի գերեզմանին։ Զի եթէ ծաղկաձև կամ անուշահոտ անուշարար անուշահամ արդարութեամբքն նինջեսցես ի գերեզմանին՝ ընդ քեզ կանխեալ բուսանին ի յարութեանն քո արդարութիւնքն։ Ապա եթէ մեղօք թաղեսցար ի քո անուն գերեզմանին՝ ընդ քեզ բուսեալք ի քո գարունն փուշքն ի քում յարութեանն շուրջ զքև բուսանիցին։

652 Զէ. Ա՛ղէ, լո՛ւր մեծին Յովհաննու, ո՛րպէս բողոքէ առ հրէական ազգն Աբրահամեան, «Արարէ՛ք ձեզ այսուհետև պտուղ արժանի ապաշխարութեան, և մի՛ ձեռն յանձինս հարկանիցէք և ասիցէք, եթէ ունիմք մեք հայր զԱբրահամ. ասեմ ձեզ, զի կարող է Աստուած ի քարանց աստի յայցանէ յարուցանել որդիս Աբրահամու»։ Զի ոչ եթէ զԱբրահամ ինչ զիջոյց ի հայրապետութենէն, այլ զի արժանի՛քն իցեն նորա որդիք, և ոչ անարժանքն։ Արդ՝ զօգտակարսն դարմանէ. իսկ վասն անշայեկան խոտոցն և փշոցն զի՞նչ կամիցի առնել արդեօք. ցամաքեցուցանէ նախ և զօսացուցանէ՝ յորում ոչ գտցէ զպտուղն։

653 Ա՛ղէ, նայեա՛ց յառակ թզենւոյն և տե՛ս։ Եկն Տէրն ի թըզենին, զի գտցէ ի նմա պտուղ, և ոչ եգիտ, զի չև էր ժամանակ պտղոյն բերելոյ. և անէծ զնա, թէ «Յայսմհետէ ի քէն պտուղ ոք մի՛ կերիցէ»։ Քանզի ամենայն բուսաբերք և տերևաբերք և ծաղկաբերք՝ ժամանակաւ ունին բերել զպտուղսն, իսկ սա զի՞ անիծաւ, զի չէր ժամանակ պտղոյն։ Արդեօք թէ պիտոյ ինչ էր, ո՞չ կարէր, որ բանիւն միայն հրամայեաց երկրի՝ բերել զծառսն և զբազմութիւն մայրեացն իւրաքանչիւր պտղովն, և ամենայն բուսոցն՝ իւրաքանչիւր սերմամբ ըստ ազգի իւրում ի վերայ երկրի երևել՝— և



Տիրոջ ձեռքին և արքայության թագ Աստուծո ձեռքին և քեզ կոչելու են իմ կամքը, իսկ քո երկիրը՝ բնակության շինություն»։

651 Այնտեղ շինությունը լինելու է աստվածային, անստվեր, անխավար, անկարոտ, և անփոփոխ քաղաքում։ Քանզի այժմ ամեն բույսերը մնում են կապված իրենց բնությանը, բայց միայն մարդ կոչված տունկերը կարող են յուրաքանչյուրը իրենց բնությունը տեսակ-տեսակ կերպարանքների շրջշրջել։ Արդ, ինչպես կամենան, կթաղեն բույսն իրենց հոգիների մեջ և նույնով թաղվում են գերեզմանում, որը մահն է։ Սա աշունն է ոչ խոտերի, այլ մարդկանց, որը հավաքում է նրանց շտեմարաններում։ Իսկ գարունը ոչ թե խոտերի կամ փայտերինն է, այլ մարդկանց, արտադրում է այս կերպարանքը, որ դու քեզ հետ թաղեցիր գերեզմանում։ Քանզի եթե ծաղկաձև կամ անուշահոտ, անուշարար, անուշահամ արդարությամբ ննջես գերեզմանում, քեզ հետ շուտով կաճի արդարությունը, քո հարության ժամանակ։ Ապա եթե մեղքերով թաղվես քո անվան գերեզմանում, քո գարնանը, քեզ հետ փշեր կբուսնեն և քո շուրջը կաճեն։

652 Զէ. Հապա լսիր մեծ Հովհաննեսին, ինչպես է բողոքում հրեաների Աբրահամյան ազգի դեմ. «Սրանից հետո ձեզ համար բերեք ապաշխարության արժանի պտուղներ և մի ծեծեք ձեզ ասելով, թե ունենք հայր Աբրահամին, ասում եմ ձեզ, որ Աստված կարող է այս քարերից Աբրահամի որդիներ հանել»։ Նա ոչ թե Աբրահամին զրկում է հայրապետությունից, այլ [պահանջում է], որ լինեն նրան արժանի որդիներ և ոչ թե անարժան։ Արդ, օգտակարներին հոգ է տանում, իսկ անշահեկան խոտերն ու փշերը արդյոք ի՞նչ կկամենա անել։ Անմիջապես ցամաքեցնելու և դոսացնելու է այնպիսիներին, որոնց մեջ պտուղ չի գտնելու։

653 Հապա նայիր թզենու առակին և տես. եկավ Տերը թզենու մոտ, որ նրա վրա պտուղ գտնի ու չգտավ, քանզի պտուղ բերելու ժամանակը չէր, և անիծեց նրան, թե «սրանից հետո ոչ ոք քեզանից պտուղ թող չուտի»։ Քանզի ամենայն բուսաբերները, տերևաբերներն ու ծաղկաբերները իրենց ժամանակին են պտուղ բերում, իսկ սա ինչո՞ւ անիծվեց, քանզի պտուղի ժամանակը չէր։ Արդյոք եթե կարիք լիներ, Նա, որ միայն իր խոսքով հրամայից երկրին ի հայտ բերել ծառերը և երևան բերել երկրի վրա մայրիների բազմությունը, յուրաքանչյուրն իր պտուղներով և ամենայն բույսերը,

ծառոյն զկերակուր պիտոյից յայնմ հասեալ ժամանակի անդ պատրաստել։

654 Արդ՝ ոչ զրագատ ինչ զայն զօսութիւն ծառոյն հասուցանէր. այլ կանխեաց ինքն և ասէ. «Ի թզենւոյ անտի ուսարո՛ւք զառակն»։ Իսկ թզենին բարձեալ ունէր զօրինակ անպտուղ մարդկան. զի զանպտուղսն արդարութեան ցամաքեցուցէ զփուշսն։ Ա՛ղէ, լո՛ւր մեծի մարգարէին յառաջընթաց կարապետին Յովհաննու, որպէս ասէ, թէ «Այսուհետև տապար առ արմին ծառոյ կայ. ամենայն ծառ որ ոչ առնիցէ զպտուղ բարի՝ հարկանիցեն և ի նիւթ հրոյ պատրաստիցեն»։ Եւ մարգարէն Եսայի ասէ, թէ «Եղիցին մեղաւորք իբրև զփուշ այրեցեալք և ընկեցեալք»։ Իսկ զդալարովքն խնամարկեալ կենդանի ջրովն յարքայութեանն՝ յայն գարունն նորոգեալ պարարեսցէ. որ տայցեն զպտուղ ընդ միոյ հարիւր, և ընդ միոյ երկերիւր, և ընդ միոյ երեքարիւր, այսինքն՝ ըստ վաստակոցն զհատուցմունս պարգևացն իւրաքանչիւր հաւատոցն լուսաւորութեան։

655 ԶԸ. Արդ՝ ի գարունս բուսաբերս և ծաղկաբերս, որք զնորոգութիւն գեղեցկութեանն գարնանւոյն յետ հնութեան ձմերանւոյն բերիցեն՝ և թռչնոցն հաւուցն ծանուցեալ զիւրեանց ժամանակ գալստեանն։ Որպէս յայս հայեցեալ մարգարէն Երեմիաս ասէ, զիւրոյ ժամանակին զդէպս ի նմանութիւն օրինակաց յանդիմանութիւն բերէ, և զհանդերձելոցն ակնարկէ յասելն, թէ «Արդարև ծիծառն և տատրակն և խորդն, հաւքն վայրի, ծանեան զժամանակ գալստեանն իւրեանց»։ Զի ժամանակաւ գարնանւոյն և իւրեանց գալստեամբն ցուցանեն զժամանակ վարուց կենաց ուրախութեան մարդկան, ի ձայն առնելն, ի ճչելն, ի ճռուողելն՝ ի շինել բունոցն։

656 Ծիծառն մարդասէր է. յորժամ տեսեալ մարդկան՝ նովաւ ճանաչեն զկանաչազգեստ հասակն գարնանւոյն աճման։ Իսկ տատրակն ամուսնասէր երևեալ, զջերմաձայն քաղցրաձայնն ի լսելիս մարդկան լնու. ի գործ արկեալ զթեթևագործ զկրկտակերտն, զզուգնաքեայ զփայտակերտիկն՝ երկթուեան ձուոցն իւրոց ապաւէն ծընընդոցն իւրոց պատրաստէ։

657 Նա և դասադաս խորդոցն հաւուց եկեալ ի գարնանւոյն ժամանակս՝ երամացեալք հարօրանան։ Ելեալք թռուցեալք բարձրացեալք ի բարձրութիւնս բարձանց՝ օդայատակ թևոցն գարշապարաց կոխան առնեն զանհաստատն, ճանապարհ իւրեանց, գընացս հաստատեն։ Փողք եղեալք, զկոչաձայն զաղաղակ բարձեալ՝



յուրաքանչյուրն իր տեսակի սերմով, չէ՞ր կարող այդ ժամանակ և պատրաստել կարիքավորների համար ծառի պտուղը։

654 Արդ, անտեղի չէր, որ առաջ բերեց ծառի գոսության [օրինակը], այլ ինքն անմիջապես ավելացրեց, թե «թզենուց սովորեցեք առակը»։ Թզենին ներկայացնում էր անպտուղ մարդը, քանզի նա ցամաքեցնելու է անպտուղ արդարության փշերը։ Հապա լսիր մեծ մարգարեին, առաջընթաց Հովհաննես կարապետին, ինչպես ասում է, թե «այսուհետև տապարը ծառի արմատի մոտ է, ամեն ծառ որ պտուղ չի տա, կկտրվի և հրո նյութ կդառնա»։ Եսայի մարգարեն ասում է, թե «մեղավորները կլինեն փշի նման այրված ու նետված»։ Իսկ արքայության կենդանի ջրով խնամված դալար խոտը, այն գարնանը նա նորոգելու, պարարելու է։ Դրանք պտուղ են տալու մեկի դիմաց հարյուրապատիկ, մեկին՝ երկհարյուրապատիկ և մեկին՝ երեքհարյուրապատիկ, այսինքն ըստ վաստակի՝ յուրաքանչյուրը տալիս է լուսավոր հավատի հատուցման պարգևները։

655 ԶԸ. Արդ, բուսաբեր ու ծաղկաբեր գարունների ժամանակ, որոնք ձմեռվա հնությունից հետո գարնանային գեղեցկության վերածնունդն են բերում, թռչուններն էլ գիտեն իրենց գալստյան ժամանակը։ Ինչպես այս մասին Երեմիա մարգարեն, մեջբերելով իր ժամանակի դեպքերը, որպես հանդիմանության օրինակ և ակնարկելով հանդերձյալին ասում է, թե «արդարև ծիծեռնակն ու տատրակը և խորդը (կռունկ), որոնք դաշտի թռչուններ են, գիտեն իրենց գալստյան ժամանակը»։ Քանզի գարնան ժամանակով և իրենց գալստյամբ ցույց են տալիս մարդկանց ուրախ կյանքի ժամանակը, երգելով, ճչալով, ճռվողելով և բույն շինելով։

656 Ծիծեռնակը մարդասեր է, երբ մարդիկ նրան տեսնում են, նրանով ճանաչում են գարնան աճի կանաչազգեստ հասակը։ Իսկ տատրակը ամուսնասեր է, նա մարդկանց լսելիքը լցնում է ջերմ քաղցր ձայնով։ Գործելով թեթև շյուղերով շինված, չնչին փայտակերտիկ [բույնը] ապավեն է պատրաստում իր երկթևյան ձագերի ձվերին։

657 Նույնպես և դասադաս կռունկ թռչունները, գալով գարնանային ժամանակներում, երամներով տարածվում են։ Ելնելով, թռչելով ամենաբարձունքները բարձրանալով, օդի վրա թևերով ու մագիլներով կոխում են անհաստատ [տարածությունը] և իրենց ճանապարհն ընթանում։ Փողեր դառնալով գոչաձայն աղաղակ են

զգործս մշակացն արթնութեան վաստակոցն օգտութեան մարդկան զարթուցանեն ի քնոյ, զկանուխս եղանցն փութացուցանեն։

658 Իսկ թռչունքն փողք են երկրագործութեան հողագործութեան յառաջինութիւնսն յորդորելոյ. որպէս մեղուն և կամ մրջիւնն վաստայն վարդապետ լինիցին և կամ նախատորդ կայցեն։ Սոյն օրինակ նմանեալ և թռչունքս մեծաձայն մեծագոչ փողոյն՝ տեառնագալուստ ազդումն առնել ամենեցուն ի մեռելոց յարութեանն. որպէս ասէ յաստուածապատում իմաստութեան նուագսն Սողոմոնեան երգոյն, թէ «Զարթիցեն պահպանեալքն ի ձայն հաւուն»։ Եւ ո՞վ իցեն պահպանեալքն, եթէ ոչ՝ ոգիքն ժողովեալք, պահեալք ընդ հրամանաւն, որք զիւրեանց մարմինս իւրաքանչիւր զգենլոց են. և ըստ գործոցն ըմբռնել զիւրաքանչիւր պատրաստութիւն, զիւրաքանչիւր վաստակոցն սերմանեացն զպտուղսն, որպէս ի վեր անդ պատմեցաք և կամ անդր ևս պատմեսցուք ձեզ։

659 ՉԹ. Իսկ երանելի առաքեալքն փողք եղեն պատուիրակութեան, զի պատրաստեսցեն զամենայն լսելիս՝ աստուածական փողոյն գալստեան պատրաստական սպասել. զի անխափան խառնեսցին ամենեքեան յայն դունդ թռչնոց. ուստի և ձայն ազդոյ փողոյն յարութեանն հարկանիցի, զի և սոքա արժանասցին իւրեանց թևս ստանալ և բարձրանալ ի բարձունս և զՏէրն բարձանց առանց ամօթոյ տեսանել. զայն Տէր, որ ի հեռաստանէ ճանաչէ, և զգնացեալսն ի նեղութեան՝ կեցուցանէ զնոսա, որք վասն արդարութեան զխստամբերութեանցն զփորձութիւնս վասն սիրոյն Աստուծոյ սարան յանձինս իւրեանց։

660 Արդ՝ սոքա կատարեցին զկամս Տեառն իւրեանց, զի սիրեցին զմիմեանս. զի և նա սիրեաց զնոսա այնչափ՝ մինչ զի եդ զանձն իւր ի վերայ բարեկամաց իւրոց։ Իսկ նոքա առին հրաման սիրել զմիմեանս, զի այնու ընկալցին յանձինս իւրեանց զշնորհսն խոստացեալս։

661 Վասն այսորիկ զսէր սրտիցն ծածկելոց և կերպարանօքն ցուցանէին ի ժողովելն միով հաւանութեամբ ի վերնատուն անդր, ուր եկեալ Հոգին սուրբ եգիտ զնոսա, և օթեվանս կալեալ ի նոսա բնակեաց. զի զանձուկ նոցա, զոր առ Տէրն ունէին, լցեալ՝ միանգամայն կատարեսցէ զխոստացեալսն։ Զի ասէ. «Ես երթամ և զմխիթարիչն առաքեմ առ ձեզ, որ եկեալ մխիթարեսցէ զսիրտս ձեր. զի նա, ասէ, զիս փառաւոր առնէ, զի յինէն առնու և պատմեսցէ ձեզ»։ Որ և զԵրրորդութեանն սէր միաբանութեան ի նոցա միաբա-



բարձրացնում, քնից զարթեցնում են մշակներին մարդկանց օգտակար գործի արթնության և կանուխ [զարթնողներին] փութացնում են եզների մոտ։

658 Թռչունները երկրագործության, հողագործության փողեր են՝ առաքինության հորդորող, ինչպես մեղուն կամ մրջյունը վատերի ուսուցիչ ու նախատող են, այնպես էլ նույն ձևով թռչունները մեծաձայն, մեծագոչ փողով Տիրոջ գալուստն են ազդարարում ամենքին՝ մեռելների հարության միջոցով։ Ինչպես ասվում է Սողոմոնի Երգի աստվածապատում իմաստության նվագում, թե «բանտարկյալները զարթնելու են թռչունի ձայնով»։ Իսկ ովքե՞ր են բանտարկյալները, եթե ոչ հավաքված հոգիները, պահված հրամանի տակ, որոնք ամեն մեկն իրենց մարմիններով են զգեստավորվում, ամեն մեկն ըստ իր գործերի հատուցում է ստանալու, իր սերմանած աշխատանքի պտուղը, ինչպես վերևում պատմեցինք և կամ հետագայում պատմելու ենք ձեզ։

659 ՉԹ. Իսկ երանելի առաքյալները պատգամաբեր փողեր եղան, որպեսզի ամեն լսողներին պատրաստեն սպասելու աստվածային փողի գալստյան, որ ամենքին անխափան խառնեն թռչունների այն դունդին, որից հարություն ազդարարող փողի ձայնը կհնչի, որպեսզի սրանք ևս արժանի լինեն իրենց թևերն ստանալ ու բարձրանալ դեպի վեր և բարձունքների Տիրոջը տեսնել առանց ամոթի։ Այն Տիրոջը, որը հեռուներից է ճանաչում և փրկում է նեղության մեջ ընթացողներին, որոնք հանուն արդարության հանձն առան խստակեցության նեղությունները, վասն Աստուծո սիրո։

660 Արդ, սրանք իրենց Տիրոջ կամքը կատարեցին, քանզի սիրել էին միմյանց, և նա էլ սիրեց նրանց այնչափ, որ իր անձը տրվեց բարեկամների համար, իսկ նրանք հրաման ստացան սիրել միմյանց, որպեսզի այդպիսով իրենց անձերի մեջ ընդունեն խոստացված շնորհները։

661 Ուստի ծածուկ սրտերի սերը բացահայտորեն ցուցադրեցին միահավան հավաքվելով վերնատանը, ուր սուրբ Հոգին գալով գտավ նրանց և օթևանելով բնակվեց նրանց մեջ, որպեսզի լցնի այն կարոտը, որ Տիրոջ նկատմամբ ունեն, միանգամայն կատարելով նրա խոստացածները։ Քանզի նա ասում է. «Ես գնում եմ և ձեզ կուղարկեմ մխիթարիչը, որը գալով կմխիթարի ձեր սրտերը. Նա, ասում է, ինձ փառավորում է քանզի ինձանից է առնում և պատմելու է ձեզ»։ Նա երրորդության միաբանության սերն իրա-



24--1461

նութեանն լցցէ. որ ի Տեառնէն առին հրաման, թէ «Ելէ՛ք ընդ ամենայն աշխարհս, և աշակերտեցէ՛ք զամենայն լեզուս, և մկրտեցէ՛ք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. և ուսուցէ՛ք զամենայն պահել զոր խօսեցայ ընդ ձեզ. և ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս կենաց ձերոց՝ մինչ ի վախճան աշխարհի»։

662 Զճշմարտութեան Երրորդութեանն, զմիաբան տէրութեանն, ձրեքանձնեան զօրութեանն ետ նոցա զգիտութիւն, զի ըստ այնմ օրինակի աշակերտեսցեն զամենեսեան, և մկրտեսցեն յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

663 Այլ զի զՀոգւոյն սրբոյ առին զզօրութիւն՝ և զամենայն ազգացն, լեզուացն բաժանելոց, ընկալան զգիտութիւն, զի ամենայն աշխարհաց որ ընդ ամենայն տիեզերս մարդիկ իցեն՝ բաւական լիցին ուսուցանել զհրամանս Աստուածութեանն, և զսէրն Արարչին առ իւր արարածս, և զխոնարհումն վասն մերոյ բարձրութեան, և զյոյսն անմահութեան յետ մեռելոց յարութեանն։ Եւ թէ՝ սոյն ինքն միշտնջենաւորութիւն, զօրութիւն և Աստուածութիւն Որդւոյն վասն մերոյ փրկութեան եկն զգեցաւ զմարդկութիւն, մանաւանդ թէ առաւել վասն նորոգման ամենայն արարածոց իւրոց. զի տացէ ամենեցուն զայն գիտութիւն, որ նոցա մեծամեծքն շնորհեցան։

664 Անդ կատարեցան յառաջասաց ընծայութիւնք մարգարէութեանցն նոքօք, թէ «Յաւուր յայնմիկ ասասցեն հազարապետքն Յուդայ ի սիրտս. իւրեանց, թէ «Եկա՛յք գտցո՛ւք մեզ զբնակիչս Երուսաղեմի ի տէր ամենակալ Աստուած նոցա»։ Զի նախ անդէն իւրեանց ազգին ետուն զգիտութիւն, և անտուստ յԵրուսաղեմէ բաշխեցին ընդ ամենայն տիեզերս զաստուածպաշտութիւնն։

665 Եւ քանզի Տէրն ամենայնի յազգէն Յուդայ ծագեաց՝ վասն այսորիկ և սոքա հազարապետք տանն Յուդայ կոչին. զոր և մեկնեաց Պաւղոս առաքեալ, ած, թափեաց և ասէ. «Մեք հազարապետք եմք խորհրդոցն Աստուծոյ»։ Ապա չիրաւի ուրեմն ասէ նոյն Հոգի ի բերանոյ մարգարէին յառաջագոյն, թէ «Յաւուր յայնմիկ, ասէ Տէր, եդից զհազարապետսն տանն Յուդայ՝ իբրև զջահս վառեալս ի մէջ փայտից, և իբրև զղամբարս հրոյ յեղեգան, և կերիցեն յաջ և յահեակ ձեր զամենայն ժողովուրդս շուրջանակի»։ Եւ խոնարհագոյն ևս ասէ, թէ «Հեղից ի վերայ տանն Դաւթի և ի վերայ Երուսաղեմի զոգի շնորհաց և գթութեան, և դարձցին յիս»։ Զոր եկն



կանացնելու է նրանց միաբանությամբ, որոնք տիրոջից առել են հրամանը թե «ելեք ամբողջ աշխարհի մեջ և ուսուցանեք ու մկրտեցեք նրանց հանուն Հոր, Որդու և սուրբ Հոգու և սովորեցրեք ամենքին պահել այն, որի մասին խոսեցի ձեզ և ես ձեզ հետ եմ ձեր կյանքի բոլոր օրերում մինչև աշխարհի վախճանը»։

662 Նա տվեց նրանց երրորդության ճշմարտության, միաբան տերության, երեքանձնյա զորության գիտությունը, որպեսզի ըստ այն օրինակի ամենքին ուսուցանեն ու մկրտեն հանուն Հոր և Որդու և սուրբ Հոգու։

663 Այլ քանի որ նրանք առել էին սուրբ Հոգու զորությունը, ստացան նաև ամենայն ազգերի լեզուների բաժանման գիտակցությունը, որպեսզի ի վիճակի լինեն բոլոր երկրների մարդկանց, ամբողջ տիեզերքում, ուսուցանելու Աստվածային հրամանները, Արարչի սերը իր արարածների նկատմամբ, նրա խոնարհվելը մեր բարձրացման համար և անմահության հույսը մեռելների հարությունից հետո։ Եվ թե այս մշտնջենականությունը, զորությունը և Որդու Աստվածությունը եկավ մեր փրկության համար, իր վրա վերցրեց մարդկությունը, մանավանդ իր բոլոր արարածների վերանորոգման համար, որպեսզի այս գիտակցությունը տա ամենքին, որոնց մեծամեծ շնորհներ ընծայվել էին։

664 Ապա նրանց միջոցով կատարվեցին մարգարեությունների առաջասաց ընծայությունները, թե «այդ օրերին Հուդայի հազարապետները իրենց սրտերում ասելու են թե՝ եկեք գտնենք Երուսաղեմի բնակիչներին նրանց Տեր ամենակալ Աստծո մեջ», քանզի նախ այնտեղից իրենց ազգին տվեցին գիտակցությունը և ապա Երուսաղեմից աստվածպաշտությունը տարածեցին ամբողջ տիեզերքի մեջ։

665 Քանզի ամենայնի Տերը Հուդայի ազգից ծագեց, որի համար էլ սրանք կոչվում են Հուդայի տան հազարապետներ։ Այս բանը մեկնեց Պողոս առաքյալը, առաջ բերեց, լուսաբանեց, ասելով. «Մենք Աստծո խորհուրդների հազարապետներ ենք»։ Ապա հիրավի ասում է նույն Հոգին առաջագույն մարգարեի բերնով, թե «այդ օրը, ասում է Տերը, Հուդայի տան հազարապետներին դնելու եմ իբրև ջահեր ծառերի մեջ վառված և իբրև հրեղեն լապտերներ (ղամբար) եղեգների մեջ։ Նրանք ոչնչացնելու են ձեր աջը և ձախը՝ շրջակայքի բոլոր ժողովուրդներին»։ Ավելի ստորև նա ասում է, թե «Դավթի տան վրա և Երուսաղեմի վրա թափելու եմ շնորհների և

կատարեաց ինքն սուրբ Հոգին, որ առաքեցաւ ի Հօրէ և յՈրդւոյ։ Զի որպէս Որդի առաքեցաւ և եկն Հարբն և Հոգւովն՝ սոյնպէս և Հոգին առաքեցաւ Հարբն և Որդւովն, զի երևեսցի միասնական միաբան զօրութիւնն։

666 Գ. Սակայն եկն յԵրուսաղէմ քաղաք. գտեալ զնոսա ի միասին՝ ելից զսիրտս նոցա միով զօրութեամբ. զի կատարեսցին ասացեալքն յառաջխօսութեան նորուն Հոգւոյն ի բերանոյ մարգարէութեանն Յովելեայ. «Եւ եղիցի յետ այսորիկ յաւուրս յետինս, ասէ Աստուած, սփռեցից ես յոգւոյ իմմէ ի վերայ ամենայն մարմնոյ. և մարգարէասցին որդիք ձեր և դստերք ձեր. և երիտասարդք ձեր տեսիլս տեսցեն, և ծերոց ձերոց երազք յայտնեսցին. և ի վերայ ծառայից իմոց և աղախնեաց իմոց սփռեցից յոգւոյ իմմէ, և մարգարէասցին. և տաց նշանս յերկինս ի վեր և յերկիր ի խոնարհ, արիւն և հուր և մրրիկ ծխոյ. արեգակն դարձցի ի խաւար և լուսին յարիւն՝ մինչ չև եկեալ իցէ օր Տեառն մեծ և երևելի. և եղիցի ամենայն որ կարդասցէ զանուն Տեառն՝ կեցցէ»։

667 Եւ զի՞նչ իցէ զոր ասէն, եթէ «յաւուրս յետինս». քանզի յորժամ արար Աստուած զարարածս՝ յառաջին աւուրն սկսեալ՝ ի վեցերորդին կատարեաց զամենայն ինչ վասն ամենակար և անջան, անաշխատ և անդանդաղ զօրութեանն, և հանգեաւ յամենայն գործոց իւրոց. և զօրն եօթներորդ կոչեաց հանգիստ։

668 Իսկ իբրև ետես Աստուածութիւնն՝ սայթաքեալ կործանեալ անկեալ զմարդն ի պատուիրանապահութենէ անտի,— զի ոչ կաց մնաց ի լաւութեան անդ, որպէս նայն կամէր, այլ ընդ պատժովք պատուհասիւք անկեալ յարդարութեան դատաստանին, դրաւեցաւ ի ներքոյ մահուն, վիրաւորեալ խոցեցաւ, ի հոգս, ի ծուփս, յաշխատութիւնս, ի քրտունս ցաւոց, յանհանգիստ երերմունս տատանմանց ընկղմեցաւ,— ոչ դարձոյց զբանն զոր ասաց, այսինքն՝ զմահն զոր եդ ի վերայ. այլ զարարչութեան ժամանակն, զոր արկն ընդ վեցօրեայ թուով, զի յայտնի լիցի մեծութիւն իւր՝ սոյն օրինակ կշռեաց վեց հազար ամ ժամանակի՝ ցաւոց քրտանց հոգոց աշխատութեանց երկրի. մի մի հազար ամաց՝ առ օր մի կշռեալ ըստ վեց աւուրն առաջնոյ, յորում լիցին ծնունդք և սերունդք բազմաց, ունդք լինելութեանն։



գթության ոգին, և նրանք ինձ են դառնալու»։ Քանզի ինքը սուրբ Հոգին կատարեց այն, առաքված լինելով Հորից և Որդուց։ Ինչպես Որդին առաքվեց ու եկավ Հորմով և Հոգով, նույնպես և Հոգին առաքվեց Հորմով և Որդվով, որպեսզի երևա միասնական միաբան զորությունը։

666 Գ. Սակայն նա եկավ Երուսաղեմ քաղաքը, միահամուռ գտավ նրանց, լցրեց նրանց սիրտը միակ զորությամբ, որպեսզի կատարվեն նույն Հոգու նախապես ասածները Հովել մարգարեի բերնով. «Դրանից հետո վերջին օրերում այնպես է լինելու, ասում է Աստված, որ իմ հոգուց սփռելու եմ բոլոր մարմինների վրա և ձեր որդիներն ու դուստրերը մարգարեանալու են, ձեր երիտասարդները տեսիլք են տեսնելու և ձեր ծերերին երազներ են հայտնվելու. իմ ծառաների ու աղախինների վրա իմ հոգուց եմ սփռելու, որ մարգարեանան, նշաններ եմ տալու երկինքն ի վեր և երկիրն ի վայր՝ արյուն, հուր և ծխի մրրիկ, արեգակը խավար է դառնալու և լուսինն արյուն, մինչև գա Տիրոջ մեծ և երևելի օրը։ Այնպես է լինելու, որ ով կանչի Տիրոջ անունը, ապրելու է»։

667 Իսկ ի՞նչ է այն ասվածը թե՝ «վերջին օրերում». քանզի երբ Աստված ստեղծեց արարածներին սկսեց առաջին օրը և վեցերորդում ամեն ինչ կատարել էր ամենակարող, անջանք, անաշխատ և անդանդաղ զորությամբ ու հանգստացավ իր բոլոր գործերից և յոթերորդ օրը կոչեց հանգիստ։

668 Իսկ երբ Աստվածությունը տեսավ, որ մարդը սայթաքել կործանվել, ընկել է պատվիրանապահությունից, քանի որ չէր մնացել առաքինության մեջ, ինչպես նա կամենում էր, այլ ընկել էր պատժի պատուհասի տակ, արդարության դատաստանի առջև, դրսից դրավվել մահվան կողմից, նա վիրավորվեց, խոցվեց, հոգսերի, ալեկոծության, դժվարությունների, ցավերի քրտինքի, անհանգիստ տատանումների երերմունքի մեջ ընկղմվեց։ Սակայն [Աստված] ետ չգնաց դեպի իր ասած խոսքը, այսինքն մահը որ նա դրել էր, այլ արարչության ժամանակը [հաշվելով] որը վեցօրյա թվով էր կատարվել, որպեսզի իր մեծությունը հայտնի լինի, նույն ձևով ժամանակի վեց հազար տարի չափեց երկրի դժվարությունների, ցավերի, չարչարանքի, քրտինքի ու տանջանքների համար։ Ամեն մի օրվա համար, ըստ առաջին վեց օրերի, մի-մի հազար տարի տվեց, որի մեջ տեղի պիտի ունենային ծնունդները, սերունդների բազմացումը և լինելության աճը։

669 Յորում և փորձութիւնք հանդիսի լաւացն՝ գործեսցէ զընտրութիւն հատուցմանցն, պարգևատու խոստմանցն ակնկալութեանց, ժուժկալութեանց արդարոցն նեղութեանց, որ և բովք ի շաբաթութեան ամացն աշխատութեանց. զոր և մարգարէն գուշակաց յամենեսին, ազդեցոյց և ասէ. «Հազար ամ յաչս Տեառն՝ իբրև օր մի զի անցանէ»։

670 Զի յառաջնումն՝ սկիզբն, և ի վեցերորդումն՝ նորոգումն, զոր արար իւրով գալստեամբն, և զէջս Հոգւոյն պարգևեաց. և ի նմին հազարի՝ վախճան, վասն որոյ և յետին կոչի, յորում դարձեալ միւսանգամ գալոց է, և զեօթներորդ աւուրն խորհուրդ ժամանակի, զառանց թուոյն և զառանց չափոյն զհանգիստն և զպարգևսն, ընդ նմին բերելոց է. իսկ քանզի ինքն իւրոյ արարչութեանն զօրն եօթներորդ հանգիստ կոչէ՝ վասն այսորիկ և զօրն եօթներորդ սուրբ և փափուկ ունել պատուիրէ, զի ամենայն ոք ծանուցեալ զօրն փափկութեան հանգստին Արարչին՝ պատուեսցեն։ Զի ընդ այսորիկ յեօթներորդ դարուն հանգուսցէ զաշխատեալսն, որ աշխատեցան ի վեցդարեան յիւրեանց ժամանակին. իբրև այն եթէ ընդ նմա աշխատեցան յիւրեանց ժամանակին՝ սոյնպէս և ընդ նմին հանգիցեն յայն յերկայն ամին յանչափութեան անդ և ընդ նմին ուրախ լիցին։

671 ՂԱ. Այլ Հոգին Աստուծոյ ի վեցերորդիս երևեցաւ լնուլ զառաջուձայն խոստմունս իւր՝ զասացեալս բերանովք մարգարէիցըն. որ և զեղան հեղան շնորհք Հոգւոյն սրբոյ ի յետին ժամանակիս. սփռեցան ի վերայ բազմախուռն գումարութեան ժողովոյն, հոսեցան իբրև պյորդաղէմ բազմութիւն բռնութեան ջուրցն բազմութեանց։

672 Մարգարէացան զխորհուրդսն ծածկեալս, խօսեցան յանկարծակի զամենայն լեզուս, ամենայն ազգաց հատուն վերանալ առ հասարակ յարքայութիւնն։ Ընկալան զյայտնութիւնս տեսլեանց, պատմեցին ամենեցուն զտնտեսութիւն անճառ բանին, յայտնեցին զխորհուրդն հարսանեացն մշտնջենաւորաց Աստուածորդւոյն, այսինքն յորդեգրութիւն վերանալ, և նովին Որդւովն և Հոգւովն՝ ընդ Հօր ուրախ լինել։ Եղեն կոչնականք՝ կոչել զամենեսեան յաւազանս մկրտութեան, լուանալ յաղտոյն ի սատանայական ծխոյն. զի զգեցցին զպատմուճանս լուսեղէնս և մտցեն յուրախութիւնս հարսանեացն, ուր փեսայն Քրիստոս ուրախ լիցի առ հարսինն, այսինքն՝



669 Այդ ժամանակ նաև [կարող են պատահել] լավն ընտրելու փորձությունները (որպեսզի նրանց հատուցման ընտրությունը կատարի) պարգևատու խոստումների ակնկալությունները, արդարների ժուժկալությունը նեղությունների մեջ, որոնք բովեր են դժվարությունների տարիների շաբաթի (յոթնօրյակի) մեջ։ Ինչպես և մարգարեն գուշակեց ամենքին, ազդարարեց և ասաց. «Հազար տարին Տիրոջ աչքում նման է մի անցնող օրվա»։

670 Քանզի առաջին [դարաշրջանում] սկիզբն էր, իսկ վեցերորդում նորոգումն էր, որը նա իրագործեց իր գալստյամբ և պարգևեց Հոգու էջքը։ Նույն հազարում լինելու է վախճանը, որի համար էլ կոչվում է հետինը, երբ նա գալու է դարձյալ, իր հետ բերելով յոթերորդ օրվա ժամանակի խորհուրդը՝ առանց թվի և առանց չափի հանգիստն ու պարգևները։ Իսկ քանի որ ինքն իր արարչության յոթերորդ օրը հանգիստ է կոչում, այդ պատճառով յոթերորդ օրը պատվիրում է պահել սուրբ և հաճելի, որպեսզի ամեն ոք ճանաչելով հաճելի օրը Արարչի հանգստով պատվի այն։ Նույն ձևով յոթերորդ դարում նա հանգիստ է տալու չարչարվածներին, որոնք աշխատեցին իրենց վեցդարյա ժամանակում։ Ինչպես որ իրենց ժամանակին նրա հետ չարչարվեցին նույնպես և նրա հետ պիտի հանգստանան այդ անչափ երկար դարում և նրա հետ ուրախ պիտի լինեն։

671 ՂԱ. Աստուծո Հոգին վեցերորդ [դարաշրջանում] երևաց կատարելու առաջվանից խոստացվածները, որոնք մարգարեների բերնով ասվել էին։ Վերջին ժամանակներում սուրբ Հոգու շնորհները թափվեցին, լցվեցին, սփռվեցին ժողովուրդների բազմախուռն բանակի վրա, հոսեցին բազմառատ ջրերի հորդառատ ուժով։

672 Նրանք մարգարեացան ծածուկ խորհուրդներ, հանկարծակի խոսեցին ամենայն լեզուներով և բոլոր ազգերին հնարավորություն տվեցին ամբողջովին վերանալ դեպի արքայություն։ Ընդունեցին տեսիլքների հայտնությունները, ամենքին պատմեցին անճառելի խոսքի բաշխումը, հայտնեցին Աստվածորդու մշտնջենավոր հարսանիքի խորհուրդը, այսինքն որդեգրության համար վերանալը և նույն Որդիով ու Հոգով Հոր հետ ուրախ լինելը։ Եղան կոչնականներ կոչելու ամենքին մկրտության ավազանին, լվանալու նրանց սատանայական ծխի աղտից, որպեսզի հագնեն լուսեղեն պատմուճանները և մտնեն հարսանիքի ուրախությունների մեջ, ուր Քրիստոս փեսան ուրախ է լինելու հարսի հետ, այսինքն արդար

*առ մարմնակիցսն արդարսն. որ ընդ Քրիստոսին չարչարեցան՝ ընդ նմին և թագաւորեսցեն։*

*673 Արդ՝ յայտնեցան հոսեցան շնորհք Հոգւոյն յամենեսին, զի զամենեսեան արժանիս արասցեն նորապարգև նորատուր նորաբեր շնորհի Աստուածութեանն։ Ուստերաց և դստերաց, ծերոց և երիտասարդաց, ծառայից և աղախնաց առ հասարակ շնորհեաց զշնորհս Հոգւոյն սրբոյ, զի ի միջոյ ի բաց բարձցէ զխտրոցն. զի «մի՛ լիցի խտիր, ո՛չ Հրէի և ոչ հեթանոսի, ո՛չ ծառայի և ոչ տեառն, ո՛չ առն և ոչ կնոջ. զի ամենեքեան միապէս արժանի լիցին Քրիստոսի»։ Նա ոչ միայն այսպէս, այլ և չարագործաց եբաց զդրունս թողութեան. զի և մաքսաւորք և պոռնիկք և մարդասպան աւազակք, և որ իւր իսկ խաչահանուքն՝ լիցին նմա աւետարանիչք զփրկութիւնսն առնելոյ և զթողութիւնսն ածելոյ և զարքայութիւնն ամենեցուն շնորհելոյ։*

*674 Արդ՝ լցան ամենեքին հօսանօք զօրութեան Հոգւոյն սրբոյ. ելին ընդ տիեզերս, զի տացեն զգիտութիւն սքանչելեաց Աստուածութեանն բազմազգեան լեզուացն՝ առնուլ ի միտ զնշանսն, զոր ետ յերկինս ի վեր և յերկիր ի խոնարհ, ըստ խոստմանն, թէ «Տաց նշանս յերկինս ի վեր և յերկիր ի խոնարհ»։ Երկնաւորացն այն նշան՝ զի տեսին զՈրդին Աստուծոյ մարդացեալ ի վեր յերկինս, և ընդ նմին զկամարար զմարմնակիցսն, զի իցեն ընդ նմին թագաւորեալք և միահոմեալք միագունդք ի գունդս հրեշտակաց։*

*675 Իսկ յերկիր ի խոնարհ այն նշան՝ զի տեսին մարդիկ յերկրի զՄին զնոյն Որդին Աստուծոյ՝ խոնարհեալ մարդացեալ և ի վերայ խաչին, զի հեղուցու զիւր արիւնն։ Ուստի և հուրն վառեսցի յառաքեալսն, և գայցեն ի լեզուս նոցա ղամբարք, զի զմեղս ամենայն մարդկան հալեսցեն այրեսցեն բարձցեն ի միջոյ։ Զի ինքն Որդին Աստուծոյ եղև գառն և մատեաւ Հօր իւրում պատարագ հաշտութեան ի վերայ խաչին, և միահաղոյն իսկ եբարձ զմեղս աշխարհի։*

*676 «Հուր, ասէ, և արիւն և մրրիկ ծխոյ». հուր սրբիչ՝ որ սրբեացն իսկ և սրբէ զամենեսին Հոգին սուրբ, և արեամբն Քրիստոսի սրբին։ Իսկ որք ոչն կամիցին սրբել զծուխն ծառացուցեալ՝ ունին զօրինակ յայտնութեանն՝ զմերկութիւն այրեցածին. և զարիւնն իւր, զոր արար նոցա ի փրկութիւն՝ զնոյն արիւն արասցէ*



*մարմնակիցների հետ, որոնք Քրիստոսի հետ չարչարվեցին և նրա հետ էլ թագավորելու են։*

*673 Արդ, Հոգու շնորհները հայտնվեցին, հոսեցին ամենքին, որպեսզի բոլորին արժանի դարձնեն Աստվածության նորապարգև, նորատուր, նորաբեր շնորհին։ Որդիներին ու դուստրերին, ծերերին ու երիտասարդներին, ծառաներին ու աղախիններին առհասարակ սուրբ Հոգու շնորհներն ընծայեց, որպեսզի վերացնի խտրականությունը, որ «չլինի խտրականություն ոչ հրեայի, ոչ հեթանոսի, ոչ ծառայի, ոչ տիրոջ, ոչ տղամարդու, ոչ կնոջ, որ ամենքը Քրիստոսին արժանի լինեն»։ Ոչ միայն այսպես, այլև չարագործներին բացեց թողության դռները, որպեսզի մաքսավորները, պոռնիկները և մարդասպան ավազակները և նույնիսկ իրեն խաչահանները լինեն ավետարանիչներ [քարոզելով] իր փրկության քարոզի, թողություն տալու և արքայությունն ամենքին շնորհելու մասին։*

*674 Ամենքը լցվեցին սուրբ Հոգու զորության հոսանքով, ելան տիեզերքի մեջ, որպեսզի հաղորդեն Աստվածային հրաշքների գիտությունը բազում ազգերի լեզուներին, մատնանշեն այն նշանները, որ տվել էր վերը երկնքում և ներքևը երկրում, ըստ խոստման, թե «պիտի տամ նշաններ վերը երկնքում և ներքևը երկրում»։ Երկնավորներին տրված նշանն այն էր որ տեսան Աստուծո Որդուն մարդացած վերը երկնքում և նրա հետ կամարար մարմնակիցները միասին թագավորելով, միացած ու միախառնված հրեշտակների գնդին։*

*675 Իսկ ներքևը երկրում [ցուցադրեց] այն նշանը, որ մարդիկ երկրի վրա տեսան՝ Աստուծո միակ Որդին խոնարհացած մարդացած և խաչի վրա, որպեսզի հեղի իր արյունը։ Ուստի հուր է վառվելու առաքյալների համար և նրանց լեզուների միջով լապտերներ (ղամբար) են գալու, որպեսզի հալեցնեն, այրեն, վերացնեն ամենայն մարդկանց մեղքերը։ Քանզի ինքը Աստուծո Որդին դարձավ գառն և մատուցվեց իր Հորը, որպես հաշտության պատարագ (զոհ) խաչի վրա և միանգամայն վերացրեց աշխարհի մեղքերը։*

*676 «Հուր, ասում է, և արյուն և ծխի մրրիկ»։ Հուրը սրբացնողն է՝ սուրբ Հոգին, որ սրբացրեց իսկ և սրբացնում է ամենքին և նրանք Քրիստոսի արյամբ սրբացվում են։ Իսկ ովքեր չեն կամենա սրբանալ, ծառացնելով ծուխը, նրանց համար հայտնության օրինակ է կիզվածի մերկությունը։ Քանզի իր արյունը որ նրանց փրկության համար դրեց, նույն արյունը նրանց կորուստն է դարձ-*

նոցա ի կորուստ, որ էն ի թագաւորութիւն արժանեացն։ Արեգակն դարձաւ իսկ ի խաւար, և լուսին յարիւն՝ յորում ժամու տեսին զՏէրն խաչիւն չարչարեալ։ Զի այն չէր օրն երևելի որ գալոցն է, օր դատելոյն և արդարացուցանելոյն ամենուցուն դատաստանօք. այլ օր փրկութեան արդարացուցանելոյ զամենեսեան ի շնորհաց անտի։

677 Զի արեգակն և լուսին եղեն իսկ քարոզք յայնմ ժամանակի։ Քանզի արեգակն իւրով խաւարելովն բողոքեաց, ցուցանելով ամենեցուն զՏէրն ի խաչին, և ոչ կարացեալ տեսանել զայն տեսիլ՝ խաւարեցաւ, զի ոչ կարաց տեսանել զՏեառն զանարգանսն։ Իսկ լուսինն ևս մեծամեծս ցուցանէր, զի ըստ նմանութեան հայելւոյ զարիւնն յինքեան ի վերուստ ի բարձանց ամենեցուն ցուցանէր արարածոց՝ զփրկութիւն ամենայն աշխարհաց, որք առնիցեն ինքեան մտօք զայն արիւն՝ իւրեանց արքայութիւն։ Իսկ որք զայս արհամարհիցեն և ոչ գայցեն յայսպիսի պարգևաբաշխութիւն՝ լուսինն ցուցանիցէ զմշտաբուղխ արիւնն ի նոցին մարմնոց, որ զհամօրէն տանջանացն կորստեան զանմահ որդունսն դժոխոցն բղխիցէ։

678 Վասն այսորիկ ասէ. «Տաց նշանս յերկինս ի վեր և յերկիր ի խոնարհ». տէր ի խոնարհ յերկրի ի վերայ խաչին, իսկ լուսաւորքն ի բարձանց քարոզք՝ ազդ առնել ընդ տիեզերս ամենայն։ «Արիւն և հուր և մրրիկ ծխոյ». երկու ինչ իբր պաշտեցան. մին կենաց ակնտիք, և միւսն արհաւիրք սպառնալեաց պատուհասից։ «Արեգակն դարձցի ի խաւար, և լուսին յարիւն, մինչ չև եկեալ իցէ օր Տեառն մեծ և երևելի». այսինքն՝ զօր գալստեանն հատուցման նշանակէ, զի նա ինքն է օր մեծ և երևելի։

679 Իսկ մինչ չև այն եկեալ՝ որ կարդասցէ զանուն Տեառն՝ կեցցէ ի շնորհացն։ Զի Աստուած յերկիր խոնարհեցաւ, և զմարդիկ յերկինս վերացոյց և խառնեաց զհողեղէնս ընդ հոգեղէնսն։ Նորոգեաց և մանկացոյց զարարածս միանգամայն. բաց զարգանդ աւազանին, զի նորոգեսցին և ծնցին վերստին մանկունք արքայութեան ի մկրտութենէ անտի։ Զի սուրբ առաքեալքն զարգանդ աւազանին, ծնան զամենայն տիեզերս վերստին և դարձուցին յանմեղութիւն մանկութեան անխարդախ կաթինն՝ առնել զամենեսեան որդիս Աստուծոյ և ժառանգաւորս փրկութեանն Քրիստոսի. որպէս



նելու, որն է արժանիների թագավորությունը։ Արեգակը խավար դարձավ և լուսինը արյուն այն ժամին, երբ տեսան Տիրոջը խաչի վրա չարչարված։ Այն չէր երևելի օրը, որ գալու է՝ ամենքին դատելու և արդարացնելու օրը, այլ փրկության՝ ամենքին իր շնորհներով արդարացման օրը։

677 Քանզի արեգակն ու լուսինը դարձան քարոզիչներ այդ ժամանակ։ Արեգակն իր խավարելով բողոքեց, ցույց տալով ամենքին Տիրոջը խաչի վրա և չկարողանալով տեսնել այդ տեսիլքը խավարեց, քանի որ չէր կարող տեսնել Տիրոջ անարգանքները։ Իսկ լուսինը ևս հրաշքներ ցույց տվեց, քանզի հայելու նման ամեն արարածներին ցույց տվեց իր մեջ արյունը, ի վերուստ բարձունքներից, բոլոր երկրների փրկությունը, որոնք իրենց մտքով ընդունելու են այդ արյունը, իբրև իրենց արքայություն։ Իսկ ովքեր այն արհամարհեն ու չգան այսպիսի պարգևաբաշխության, լուսինը ցույց է տալու նրանց մշտաբուխ արյունը իրենց մարմիններից, որոնցից բխելու են կորստյան մշտական տանջանքների դժոխային չմեռնող որդերը։

678 Սրա համար ասում է. «Տալու եմ նշաններ վերևը երկնքում և ներքևը երկրում», Տերն ստորև երկրում խաչի վրա, իսկ լուսավորները բարձունքներում քարոզիչներ են, որոնք ազդարարում են ամենայն տիեզերքին։ «Արյուն և հուր և ծխի մրրիկ» երկու բանի է ակնարկվում՝ մեկը կյանքի ավետարանը, մյուսը սպառնալի պատուհասների արհավիրքը։ «Արեգակը խավար է դառնալու և լուսինը՝ արյուն, մինչև որ դա Տիրոջ մեծ և երևելի օրը», այսինքն նշանակում է հատուցման գալու օրը, քանզի իրոք մեծ և երևելի օր է։

679 Իսկ քանի դեռ այդ [օրը] չի եկել, ով որ կանչի Տիրոջ անունը, կապրի շնորհների մեջ։ Քանզի Աստված երկիր իջավ, մարդկանց երկինք բարձրացրեց և հողեղեններին խառնեց հոգեղենների հետ։ Միանգամայն նորոգեց ու երիտասարդացրեց արարածներին։ Նա բացեց [մկրտության] ավազանի արգանդը, որպեսզի նորոգվեն և մկրտությամբ վերստին ծնվեն, որպես արքայության մանուկներ։ Քանզի առաքյալները գործեցին որպես [մկրտության] ավազանի արգանդ, ամբողջ տիեզերքը վերստին ծնեցին ու հասցրին նրանց անմեղ մանկության անխարդախ կաթին, որպեսզի նրանց դարձնեն Աստծո որդիներ և Քրիստոսի փրկության ժառանգորդներ։ Ինչպես և երևելի Պողոսն ասաց. «Իմ

և երանելին Պաւղոս ասաց. «Որդեակք իմ, զորս դարձեալ վերըստին երկնեմ, մինչև նկարեսցի Քրիստոս ի ձեզ»։

680 ՂԲ. Արդ՝ մանկացուցին զամենայն տիեզերս վասն այնորիկ, զի առին զօրութիւն զայնորիկ որ Հինաւուրցն մանկացաւ. որպէս աստուածախառն իմաստութիւնն երգեաց յառաջագոյն և ասէ. «Դարձցի թագաւոր ի մանկութիւն». զի դարձան և տիեզերք ի մանկութիւն, զի տեսին զՏէրն մանկացեալ։

681 Արդ՝ նոր ծնեան առաքեալքն զաշխարհս ամենայն ի ջրոյ և ի Հոգւոյ. յաղեցին հուրբ զամենայն ոք, զի առին հրաման, թէ «Ամենայն ոք հրով յաղեսցի»։ Խառնեցան անքակութեամբ յԱստուածութիւն անդր և լուսաւորեցան. զմայլեցուցին և լցին զտիեզերս պարգևօք։ Զի «որ միանգամ ի Քրիստոս մկրտեցան՝ զՔրիստոս զգեցան և զՀոգի նորին»։ Լուսոյ յականէն արբին զշնորհսն, և նորին ահացոյց նշանօքն, հրաշէզ զօրութեամբն, յաղեալ պընդեալ ի նմանութենէ մեղացն պղծութեան հեթանոսութեանն՝ յառողջութիւն բժշկութեան։

682 Եւ ցօղալից առատութեամբ և բանաւոր անձրևովն՝ պարարեցին զսրտից երկիրս մսեղէնս անապատացեալս մարդկան։ Եւ ածին իբրև զծով դարալէր՝ զխաղաղութիւն, և իբրև զգետ յորդագնաց՝ զփրկութիւն, և իբրև զաղբերս մշտնջենաբուղխս՝ զողջոյն և զհաւատս. իբրև զբաժակս ուրախութեան՝ զսէրն Աստուածութեան. իբրև զհուր՝ զահ և զերկիւղ տնկել ի սիրտս մարդկան։ Զի զոր օրինակ զերկաթն ճարտարապետն դարբնաց առեալ, ընկեցեալ ի բովս հրոյ և ջեռուցեալ հրագոյն շողացուցանէ՝ սոյն օրինակ և արդարքն մխեցան ի փուքս հնոցի արդարութեանն և ներկան ի շողիւնս և ի գոյնս Հոգւոյն սրբոյ. զՔրիստոս ինքնին զլխովին զգեցան և իբրև զլոյս վառեցին զսէրն Աստուածութեան յանձինս իւրեանց. առին զզօրութիւն ի բարձանց, իբրև զքաջ մշակս ընթացան լնուլ սերմամբ աստուածպաշտութեան զամենայն լեզուս։

683 Եղեն ճրագունք լուցեալք՝ իբրև ի վերայ աշտանակի, այսինքն ի վերայ խաչին. և նորուն զօրութեամբ ճառագայթիցն լուսաւորեցին զտիեզերս, հալածեցին զմթութիւն խաւարին յամենայն մարդկանէ, զի արասցեն զնոսա ընդունիս աստուածական սիրոյն։ Սփռեցան ընդ տիեզերս՝ լինել քարոզք ճշմարտութեանն. «Զի ոչ գոյ արդել և ոչ խտիր, ո՛չ Հրէի և ոչ հեթանոսի, ո՛չ ծառայի և ոչ



որդյակներ, որ ձեզմով վերստին երկնում եմ, մինչև որ Քրիստոս նկարվի ձեր մեջ»։

680 ՂԲ. Արդ, մանկացրին ամբողջ տիեզերքը, նրա համար, քանզի նրանից էին առել զորությունը՝ Հինավուրցը, որ մանկացավ։ Ինչպես աստվածախառն իմաստությունը երգել էր նախապես և ասել. «Թագավորը դառնալու է մանկությանը»։ Տիեզերքն էլ դարձավ մանկության, քանզի տեսան Տիրոջը մանկացած։

681 Արդ, առաքյալները վերածնեցին ամենայն աշխարհը ջըրից և Հոգուց։ Նրանք ամեն մեկին համեմեցին (աղեցին) հրով, քանզի հրաման էին ստացել թե «ամեն ոք հրով պետք է աղվի»։ Անքակտելիորեն խառնվեցին Աստվածությանը և լուսավորվեցին, զմայլեցրին և լցրին տիեզերքը պարգևներով։ Քանզի «ովքեր մի անգամ մկրտվեցին ի Քրիստոս, իրենց վրա վերցրին Քրիստոսի և նրա Հոգին»։ Լույսի ակունքից խմեցին շնորհները և նրա ահավոր նշաններով, հրաշեկ զորությամբ նրանք համեմվեցին և ամրապնդվեցին հեթանոսական պղծության մեղքերի նմանությունից դեպի բժշկության առողջություն։

682 Նրանք ցողալից առատությամբ և հոգևոր անձրևով պարարեցին մարդկային սրտերի անապատացյալ մսեղեն երկրները։ Եվ դարձրին ընդարձակ ծովի նման խաղաղությունը, հորդագնաց գետի նման՝ փրկությունը, մշտնջենաբուխ աղբյուրների նման՝ ողջույնն ու հավատը, ուրախության բաժակի նման՝ Աստվածության սերը, հրի նման՝ մարդկանց սրտերում երկյուղ տնկելը։ Ինչպես օրինակ ճարտարագետ դարբինը առնելով երկաթը՝ գցում է հրի բովի մեջ և տաքացնելով հրագույն շողացնում, նույն ձևով և արդարները մխրճվեցին արդարության հնոցի փուքսի մեջ և ներկվեցին շողյունի և սուրբ Հոգու գույներով։ Նրանք հենց Քրիստոսին գլխովին վերցրին իրենց մեջ և Աստվածության սերն իբրև լույս վառեցին իրենց անձերի մեջ։ Բարձունքներից զորություն ստացան և իբրև քաջ մշակներ ընթացան բոլոր լեզուները լցնելու աստվածպաշտության սերմերով։

683 Եղան վառված ճրագներ դրված աշտանակի վրա, այսինքն խաչի վրա։ Նույնի ճառագայթների զորությամբ նրանք լուսավորեցին տիեզերքը, դուրս մղեցին խավարի մթությունը բոլոր մարդկանցից, որպեսզի նրանց ընտանի դարձնեն աստվածային սիրուն։ Սփռվեցին տիեզերքում, որպես ճշմարտության քարոզիչներ, «քանզի չկա հակառակություն կամ խտրականություն, ոչ հը-

*տեառն, ո՛չ առն և ոչ կնոջ. զի ամենեքեան մի իցեն ի Քրիստոս։*

*684 Եւ բազումք ի հրէական ազգէն, նոքին իսկ առաքեալքն, բուն սիւնքն հաստատունք, և բազումք ի հեթանոսաց զնոցին օրինակն յանձինս իւրեանց առեալ բարձեալ բերէին, բազում ազատք և բազում ծառայք։ Ազատքն յազատութենէ անտի ի թագաւորութիւն ընթացան այնուիկ, որ թագաւորն վասն նոցա խոնարհեցաւ ի բարձրութենէն. իսկ ծառայքն՝ ի ծառայութենէ յազատութիւն այնուիկ, որ առ զկերպարանս ծառայի, և ազատեաց զամենեսեան ի ծառայութենէ խաւարի։ Իսկ հրէականքն, հարքն և մարգարէքն, աւանդեցին իւրեանց ազգին զխորհուրդն յառաջագոյն։ Եւ իբրև եկն եհաս խոստումն աւետեացն՝ յայնժամ ծագեաց յայտնապէս ի մէջ նոցա արեգակն արդարութեան, որ է ինքն Քրիստոս։ Իսկ որոց պատրաստեալ էին կեանքն յաւիտենից, որ հաւատացին ի նա՝ եղեն ի նոցանէ քարոզք և առաքեալք տիեզերաց, առաջին վկայք։ Եւ յարուցին ևս ի հեթանոսաց, յորդեցին գունդս գունդս հաւատացելոց, և դասս դասս վկայից, և զամենայն երկիր լցին։ Զի ոչ միայն ի ձեռն արանց, այլ և ի ձեռն կանանց սրբոց քարոզեցաւ Աւետարանն կենդանութեան ընդ տիեզերս ամենայն. զի և կանայք օրհնեցան վասն կուսանին ծննդեանն որ ի նոցանէն։*

*685 Արդ՝ բուն սիւնքն, առաքեալքն, ամոլքն, որ խօսեցան զամենայն լեզուս, ելին ընդ տիեզերս, վիճակեցան, բաժանեցին զազգս ամենայն. զորս առաքեացն և ետ նոցա իշխանութիւն՝ առնել նշանս և զօրութիւնս արուեստից. զմեռեալս յարուցանել, զհիւանդս բժշկել, զախտաժէտս ողջացուցանել, զկաղս գնացուցանել, զկոյրս բանալ, զխուլս ի բան դարձուցանել, և տալ համերց խօսել, և զբորոտս սրբել, և զամենայն ցաւս և զլկութիւնս հալածել. զդևս թշնամիս մարդկութեանս փախուցանել, և զսատանայ, պահակ մեղաց մոլորութեան մարդկութեան՝ կոխան առնել. և զամենայն ոք աստուածպաշտութեան ծանօթս կացուցանել և խափանել զմոլորութիւնսն, հաստատել զազգս ամենայն հաւատալ արարչութեանն հրամանաց։*

*686 ՂԳ. Արդ՝ քրիստոսագունդ և խաչակիր առաքելոցն, որոց գլխաւորքն Պետրոս և Անդրէաս, Յակովբոս և Յովհաննէս, Փիլիպ-*



*րեայի, ո՛չ հեթանոսի, ո՛չ ծառայի, ո՛չ տիրոջ, ո՛չ տղամարդու, ոչ կնոջ, քանի որ ամենքը մեկ են ի Քրիստոս։*

*684 Շատերը հրեական ազգից, նույնպես և առաքյալները, եղան ճշմարիտ հաստատուն սյուներ և հեթանոսներից շատերը այս նույնի օրինակն իրենց անձերի վրա վերցրին և տարան, նաև բազում ազատներ և բազում ծառաներ։ Ազատներն ընթացան ազատությունից դեպի [Աստուծո] թագավորություն, Նրա միջոցով որը լինելով թագավոր նրանց համար խոնարհվել էր բարձրությունից։ Իսկ ծառաները ծառայությունից դեպի ազատություն [ընթացան] Նրա միջոցով, որն առավ ծառայի կերպարանք և ամենքին ազատեց խավարի ծառայությունից։ Արդ հրեաները, հայրերը և մարգարեները ավանդեցին իրենց ազգին առաջագույն խորհուրդը։ Երբ եկավ հասավ ավետյաց (Ավետարանի) խոստումը, այնժամ նրանց մեջ հայտնապես ծագեց արդարության արեգակը, որն ինքը Քրիստոսն է։ Իսկ նրանք ում համար հավիտենական կյանքն էր պատրաստված և հավատացին նրան, նրանցից ոմանք եղան աշխարհի քարոզիչներ և առաքյալներ՝ առաջին վկաներ։ Հեթանոսներից ոմանք ևս կանգնեցին, հորդեցին, ստվարացրին հավատացյալների գնդերն ու վկաների դասերը և լցրին ամբողջ երկիրը։ Ոչ միայն տղամարդկանց, այլև սուրբ կանանց միջոցով քարոզվեց կենդանության Ավետարանը ամբողջ աշխարհում, քանզի կանայք ևս օրհնվեցին կույսից ծննդյան սիրուն, որը նրանցից էր։*

*685 Արդ, բուն սյուները, առաքյալները, ամոլները (օգնականներ) որոնք ամեն լեզուներով խոսեցին, ելան աշխարհի մեջ, վիճակով վերցրին բաժանեցին բոլոր ազգերին։ Նա նրանց առաքեց և տվեց իշխանություն հրաշքներ և զորության արվեստ գործելու, մեռյալներին հարություն տալու, հիվանդներին բժշկելու, ախտաժետներին ողջացնելու, կաղերին քայլեցնելու, կույրերի աչքը բացելու, խուլերի լսողությունը վերադարձնելու, համրերին խոսել տալու, բորոտներին սրբելու և ամեն տեսակ ցավերն ու տանջանքները վերացնելու, մարդկանց թշնամի դևերին փախցնելու, մարդկանց մոլորյալ մեղքերի պահակ սատանային ոտնակոխ անելու, ամենքին աստվածպաշտության ծանոթ դարձնելու, խափանելու մոլորությունները, հաստատելու բոլոր ազգերի հավատը արարչության հրամաններին։*

*686 ՂԳ. Արդ, քրիստոսագունդ և խաչակիր առաքյալներից գլխավորներն էին Պետրոս և Անդրեաս, Հակոբոս և Հովհաննես,*

յոս և Բարթողոմէոս, Թովմաս և Մատթէոս, Յակովբոս և Սիմովն, Թադէոս և Բարսաբաս, Մատաթիաս և Յակովբոս, Մարկոս և Ղուկաս, Պաւղոս և Բառնաբաս. և այլք ևս որ նմանեցին սոցա, որք և եօթանասունքն ևս, որք առին իշխանութիւն ի Տեառնէ՝ գնալ ի վերայ իժի և քարբի և կոխել զզօրութիւն թշնամւոյն, լինել լոյս երկրի, և համեմել յաղել զանկարգութիւն չարութեան անգիտութեան մարդկան աղիւն Աստուածութեան Հոգւոյն սրբոյ։ Իբրև զքաջ ախոյեանս, իբրև զպատերազմասէր նահատակս զանձինս ի կիրթս առաքինութեան մխէին. և եդեալ զնեղութիւնս չարչարանացն առաջի, զի ընդ վաստակոցն ճգնութեանցն, ոչ ձրի, այլ վարձուցն փոխարինակ՝ բռնութեամբ համբերութեան ըմբռնեսցեն յանձինս իւրեանց զարքայութիւնն Աստուծոյ մարտիւք պատերազմաց. իբրև քաջ նահատակաց զգեցեալ յանձինս իւրեանց զհաւատս և զսէր՝ իբրև զզրահս ամրութեան, յորում ոչ կարեն գործել նենգութեան նետք բանսարկութեան թշնամւոյն, և եդեալ զյոյսն փրկութեան իբրև զսաղաւարտ անվթար, և դիմեալք ընդ տիեզերս՝ աւարեցին զազգս ամենայն։ Առեալ ևս զօրինակսն տուեալս համբերութեանցըն՝ և այլոց ևս տային թղթովք. զառաջնոցն վարս իբրև զգաղափար արկանէին, թէ «Օրինակ առէք, եղբա՛րք, զերկայնմտութիւն մարգարէիցն, որք խօսեցան յանուն Տեառն». և թէ՝ «Զհամբերութիւն Յովբայ լուարուք, և զկատարումն Տեառն տեսէք»։

687 Զի և Տէրն զնոյն ուսոյց նոցա զհամբերութիւն, թէ «Երանի իցէ ձեզ, յորժամ նախատիցեն և հալածիցեն և սպանանիցեն զձեզ վասն իմ. ցնծացէ՛ք և ուրախ լերուք, զի վարձք ձեր բազում են յերկինս». և զգաղափարն արկանէր, թէ «Այսպէս հալածեցին զմարգարէսն որ յառաջ քան զձեզ էին», և թէ՝ «Դուք էք աղ երկրի, և լոյս աշխարհի»։ Եւ զինքն օրինակ տուեալ նոցա, որ ինքնամբն կատարեաց զամենայն, որպէս և նոքա այլոց ցուցանէին, թէ «Եւ զՏէրն ինքնին գլխովին տեսաք»։

688 ՂԴ. Ապա սփռեալք ամենայն ազգս՝ տալ զգիտութիւն Աստուածութեան, ծանօթս Աստուածութեան կացուցանել զամենեսեան. որպէս մարգարէն յառաջագոյն երգեաց իբրև ի նոցանէն յառաջգիտութեամբ՝ գուշակութեամբ Հոգւոյն սրբոյ, թէ «Լուարո՛ւք զայս, ամենայն ազգք, և ունկնդիր լերուք ամենեքեան, որք բնակեալդ էք յաշխարհի. ծնունդք երկրի և որդիք մարդկան, ի միասին մեծամեծք և տնանկք»։ Եւ այսպէս սփռեալք ընդ տիեզերս բաժանե-



Փիլիպպոս և Բարթողոմեոս, Թովմաս և Մատթեոս, Հակոբոս և Սիմոն, Թադեոս և Բարսաբաս, Մատաթիաս և Հակոբոս, Մարկոս և Ղուկաս, Պողոս և Բառնաբաս և այլք ևս, որոնք սրանց նման էին։ Նրանք յոթանասուն էին և Տիրոջից իշխանություն ստացան գնալ իժի և քարբի դեմ և կոխոտել թշնամու զորությունը, երկրի լույսը լինել և համեմել, աղել մարդկային անգիտության, չարության անկարգությունը, սուրբ Հոգու աստվածային աղով։ Իբրև քաջ ախոյաններ, պատերազմասեր նահատակներ՝ իրենց անձերը առաքինության պաշտպանության համար նետեցին։ Նրանք չարչարանքի նեղություններ կրեցին, որպեսզի իրենց վաստակների միջոցով, ոչ ձրի այլ վարձքի դիմաց, բռնության նկատմամբ համբերությամբ, իրենց անձերի համար ստանան Աստուծո արքայությունը, պատերազմի մարտերով։ Լինելով քաջ նահատակներ, իրենց անձերի վրա վերցրին հավատը և սերը իբրև ամրության զրահ, որի վրա չեն կարող ներգործել թշնամու բանսարկության նենգ նետերը, և փրկության հույսն իբրև անվթար սաղավարտ դնելով, դիմեցին ամբողջ աշխարհը և ավարեցին բոլոր ազգերին։ Նաև համբերության տված օրինակներ ստացան և այլոց ևս տվեցին թղթերով (նամակներով)։ Իրենց նախորդների վարքը իբրև գաղափար վերցրին, թե «օրինակ վերցրեք, եղբայրներ, մարգարեների երկայնամտությունը, որոնք խոսեցին հանուն Աստուծո» և թե «Հովբի համբերությունը լսեցիք և Տիրոջ վախճանը տեսաք»։

687 Քանզի Տերն ուսուցանեց նրանց նույն համբերությունը, թե «երանի ձեզ, երբ նախատեն, հալածեն ու սպանեն ձեզ ինձ համար, ցնծացեք և ուրախ եղեք, քանզի ձեր վարձքը մեծ է լինելու երկնքում», և ինքը տվեց օրինակ, թե «այսպես հալածեցին մարգարեներին, որոնք ձեզանից առաջ էին» և թե «դուք եք երկրի աղը և աշխարհի լույսը»։ Նա ինքն իրեն օրինակ բերեց, որ ինքն իր մեջ կատարել է ամեն ինչ, որպես և նրանք այլոց ցույց տվեցին, թե «հենց Տիրոջը անձամբ տեսանք»։

688 ՂԴ. Ապա սփռվելով ամեն ազգերի մեջ տարածելու աստվածային գիտակցությունը, ամենքին ծանոթ էին դարձնում Աստվածությանը, ինչպես մարգարեն նախապես երգել էր, առաջվանից գիտենալով նրանց մասին սուրբ Հոգու գուշակությամբ, թե «Լսեցեք այս, ամենայն ազգեր և ունկնդիր եղեք ամենքդ, որ բնակվում եք աշխարհում, երկրի ծնունդներ և մարդկանց որդիք, բոլորը՝ մեծամեծներ ու տնանկներ»։ Այսպես սփռված էին տիեզերքում

ցան յամենայն լեզուս. որոց վկայեալ եկքն Հրեայքն յամենայն կողմանց, թէ «Լսեմք մեք յիւրաքանչիւր բարբառ մեր», որք ժողովեալ տեսին զառաքեալսն ի միոջ վայրի, յառաջ քան զսփռել նոցա ընդ ամենայն տիեզերս։

689 Արդ՝ ոմանք զիւրեանց հրէական կողմն առեալ վարդապետեցին, իսկ այլքն սփռեցան ընդ ամենայն տիեզերս. ոմանք ի Մարս և ոմանք ի Պարթևս. ոմանք ի Խուժաստան և ոմանք ի Միջագետս. ոմն ի կողմանս Գամրաց, ոմն ի Պոնտոս, ոմն յԱսիա, ոմն ի Փռիւգիա, ոմն ի Պանփիւլիա, ոմն յԵգիպտոս և ոմն յաշխարհն Հնդկաց. ոմն ի կողմն Լիբէացւոց, ոմն ի կողմն Կիւրենացւոց, ոմն ի կողմն Դաղմատացւոց, ոմն ի կողմն Սպանիացւոց, ոմն ի կողմն Ազովտայ, ոմն ի կողմն Թրակայ. ոմն ի Լակոնիա, ոմն ի Կապադովկիա, ոմն ի Բիւթանիա։ Եւ ոչ ոք կարէ բաւել՝ թուել, հասու լինել. այլ «ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա, և մինչ ի ծագս տիեզերաց են խօսք նոցա»։

690 Այսպէս քարոզեցին ընդ տիեզերս՝ «առ ի լուսաւոր առնել զամենայն մարդ որ գալոց է յաշխարհ»։ Տալ զապաշխարութիւն փրկութեան ամենեցուն, լուանալ զամենեսեան, արձակել ի կապանաց խաւարի՝ մկրտութեամբն, և քրիստոսագունդ դրոշմել զամենայն ազգս. տալ զՀոգին Աստուծոյ բնակել ի սիրտս մարդկան, միաբանել խառնել ի սէր Աստուածորդւոյն, զի սիրտ ամենեցուն իբրև մի աղաղակիցէ, և զամենայն աշխարհս միաբանել ասել, թէ «Աբբա՛ Հայր»։ Զի բարձցի անուն ծառայութեան, և դիցի անուն որդեգրութեան շնորհելովն Քրիստոսի՝ ունել զմարմին Աստուածորդւոյն և ըմպել զարիւնն կենդանարար. զի այնու մտցեն ամենայն աշխարհ ի ժառանգութիւն Քրիստոսի, լինել ժառանգորդ Աստուծոյ և ժառանգակից Քրիստոսի։

691 Այսպէս զօրացուցեալ զնոսա ի խորհուրդս կամաց իւրոց յուսով նոցա ի Քրիստոս. զոր և դուք լուարուք և հաւատասջիք ճշմարտութեան Աւետարանին փրկութեան ձերոյ. յոր հաւատասջիք և մկրտեսջիք ի Հոգին աւետեաց սրբութեան. որ է ինքն գրաւական ժառանգութեան մերոյ, ի փրկութիւն նուաճութեան ի գովեստ փառաց նորա։

692 Ապա ընթացան ընդ տիեզերս ամենայն մինչև ի ծագս երկրի, լի առնել զքարոզութիւն բանին կենաց։ Անդ և զօրք հրեշտակաց, հոգեղինաց և հրեղինաց, առ ի մխիթարութիւն առաքե-



և բաժանված ամեն լեզուների, որոնց վկայեցին ամեն կողմից եկած հրեաները, թե «մենք բոլորս լսում ենք մեր լեզվով», որոնք տեսել էին առաքյալներին մի վայրում հավաքված, նախքան սփռվելը ամբողջ աշխարհում։

689 Արդ, ոմանք իրենց հրեական կողմն առնելով այնտեղ վարդապետեցին, իսկ ուրիշներ սփռվեցին ամբողջ տիեզերքում՝ ոմանք Մարաստան և ոմանք Պարթևաստան, ոմանք Խուժաստան և ոմանք Միջագետք, մեկը Գամրաց կողմերը, մեկը Պոնտոս, մեկն Ասիա, մեկը Փռիգիա, մեկը Պանփիլիա, մեկը Եգիպտոս, մեկը Հնդկաց աշխարհ, մեկը Լիբեացոց կողմը, մեկը Կիրենացոց կողմը, մեկը Դաղմատացոց կողմը, մեկը Սպանիացոց կողմը, մեկը Ազովտա կողմը, մեկը Թրակա կողմը, մեկը Լակոնիա, մեկը Կապադովկիա և մեկը Բիթանիա։ Ոչ ոք կարող է թվել, հաշվել, այլ «նրանց ձայները ելան ամբողջ երկրում և նրանց խոսքերը մինչև աշխարհի ծագերը»։

690 Այսպես քարոզեցին տիեզերքում «լուսավորելու բոլոր մարդկանց, որոնք գալու էին աշխարհ» ամենքին տալու փրկության ապաշխարությունը, ամենքին լվանալու, արձակելու խավարի կապանքներից՝ մկրտությամբ և ամենայն ազգերին դրոշմել որպես Քրիստոսի գունդը, Աստուծո Հոգին բնակեցնել մարդկանց սրտերում, միաբանել խառնել Աստվածորդու սիրուն, որպեսզի ամենքի սիրտը մեկ ձայնով աղաղակի, և ամբողջ աշխարհը միաբանի ասելու «Աբբա Հայր»։ Որպեսզի վերանա ծառայության անունը, և որդեգրության անունը դրվի, Քրիստոսի շնորհիվ [ի վիճակի դառնան] ունելու Աստվածորդու մարմինը և ըմպել կենդանարար արյունը, որ նրանով մտնեն ամբողջ աշխարհը, որպես Քրիստոսի ժառանգություն, Աստուծո ժառանգորդը լինել և Քրիստոսի ժառանգակից։

691 Այսպես զորացրեց նրանց իր կամքի խորհուրդներով, իրենց հույսով Քրիստոսի նկատմամբ։ Դուք ես լսեցեք նրանց և հավատացեք ձեր փրկության Ավետարանի ճշմարտությանը, նրանց հավատացեք և մկրտվեցեք սուրբ Ավետարանի Հոգու մեջ, որն ինքն է մեր ժառանգության գրավականը, փրկության հնազանդության և նրա փառքի գովեստի համար։

692 Նրանք ընթացան ամբողջ տիեզերքի մեջ, մինչև երկրի ծագերը, լրացնելու կենաց խոսքի քարոզությունը։ Հրեշտակների զորքը, հոգեղեններն ու հրեղենները հավաքվել էին առաքյալների

լոցն գումարեալ. զի և բանից ընկեր և ճանապարհաց և բանտամուտ կապանաց, ուստի և շնորհօք Աստուծոյ կորզեալ զառաքեալսըն ճանաչէին։ Եւ առաջնորդեալ հրամանակամ Հոգւովն սրբով՝ քաղաքի քաղաքի և աշխարհի աշխարհի զհաւատոցն Քրիստոսի ընդ հանուր ծանօթս տալով. զոր և մեք սակաւաւորքս զառաւելագունացն ճշմարտութիւն բերիցեմք, վասն ինքնահրաման առաջնորդութեան Հոգւոյն սրբոյ։

693 Քանզի այսպէս հրաման տուեալ՝ աշակերտել զազգս ամենայն. առաքեալ զնոսա ընդ տիեզերս՝ հրաւիրելով զամենայն հեթանոսս ի հնազանդութիւն հաւատոց, առանց զանգիտելոյ քարոզել զԱւետարանն առաջնորդութեամբ Հոգւոյն սրբոյ. որք համարձակեալք քարոզէին զարքայութիւնն Աստուծոյ, և ուսուցանէին վասն տեառն Յիսուսի Քրիստոսի անարգել և անխափան ամենայն համարձակութեամբ։

694 ՂԵ. Եւ յետ այսորիկ քրիստոսագունդ առաքելոցն, շնորհակարգութեամբ Հոգւոյն սրբոյ գումարելոցն ընդ ամենայն կողմանս որ ի ներքոյ երկնից՝ ամենայն նշանօք և արուեստիւք և շնորհագործ զօրութեամբ ազդ արարեալ ըստ իւրաքանչիւր մասին, և զբանն կենաց հնչեցուցեալ, և միանգամայն քրիստոսածանօթս և յարութիւնական յուսովն ծաղկեցուցեալ. քանզի ի նոցուն իսկ ի շնորհազարդ բանիցն և ի գործոց յայտնի է իւրաքանչիւր սահմանադրութիւն հրամանաւ Հոգւոյն սրբոյ վիճակեալ։ Զոր և Պաւղոսի իսկ նշանակեալ, թէ «ՅԵրուսաղեմէ մինչև ի Լիւրիկիա ինձ եհաս լի առնել զԱւետարանն Քրիստոսի». և դարձեալ՝ թէ «Որ կարգեացն զՊետրոս ի թլփատութիւնն՝ զօրացոյց և զիս ի հեթանոսս»։

695 Որով և աստուածադիր ժամանակն մերձեալ կայր ամենայն ումեք քրիստոսատուր փրկութեանն հասանելոյ. որպէս և Պաւղոսի յԱթէնս պատասխանի տուեալ, թէ «Զժամանակսն անգիտութեան անտես արարեալ Աստուծոյ՝ արդ զայս պատուիրէ մարդկան՝ ամենայն ումեք ապաշխարել»։ Համգոյն սմա նշանակեալ և Պետրոսի ի Կաթողիկէական թղթին իւրում, թէ «Բաւական է անցեալ ժամանակն լինելոյ կամացն հեթանոսաց. արդ այսուհետև ըստ կամացն Աստուծոյ կեցցեն»։

696 Բայց ոչ անդէն և անդ յանկարծաթափ ըստ Հոգւոյն զօրութեան՝ զնորընծայսն յանընդելական մեծամեծսն ձգտեցուցանէին. այլ նախ թեթևագոյն ըստ աշխարհակիր կարգաց առակա-



մխիթարության, քանզի նրանց ընկեր էին թե ճանապարհների, թե բանտամուտ կապանքների մեջ, ուստի և Աստուծո շնորհիվ առաքյալներին ազատեցին։ Նրանք առաջնորդվում էին սուրբ Հոգու հրամաններով ամեն մի քաղաքում, ամեն մի երկրում Քրիստոսի հավատը համայն աշխարհին ծանոթացնելու։ Մենք էլ, որ սակավավորներ ենք, առավելագույնների ճշմարտությունը պիտի տանենք, սուրբ Հոգու ինքնահրաման առաջնորդությամբ։

693 Այսպես նա հրաման տվեց ուսուցանել ամենայն ազգերին։ Առաքեց նրանց աշխարհի մեջ հրավիրելու բոլոր հեթանոսներին հավատի հնազանդության, առանց տատանման քարոզելու Ավետարանը, սուրբ Հոգու առաջնորդությամբ։ Նրանք համարձակորեն քարոզում էին Աստուծո արքայությունը և ուսուցանում էին Հիսուս Քրիստոսի մասին անկաշկանդ և անխափան ամենայն համարձակությամբ։

694 ՂԵ. Դրանից հետո քրիստոսագունդ առաքյալները սուրբ Հոգու շնորհներով երկնքի տակ գտնվող բոլոր կողմերում առաջանալով ամեն տեսակ նշաններով ու հրաշքներով և շնորհագործ զորությամբ, ամեն մի երկրում ազդարարեցին, կենաց խոսքը հնչեցրին, բոլորին քրիստոսածանոթ դարձրին և հարության հույսը ներշնչեցին։ Քանզի նրանց շնորհազարդ խոսքերով և գործերով սուրբ Հոգու հրամանով սահմանադրված ամեն մի որոշում հայտնի դարձավ։ Այս բանը Պողոսն ընդգծել էր, թե «Երուսաղեմից մինչև Լիրիկիա (Իլլիրիա) ինձ վիճակվել էր լիացնել Քրիստոսի Ավետարանը»։ Դարձյալ թե «այն, որ Պետրոսը [հաջողեց] կարգել թլփատության (թլփատվածների) համար, զորացրեց ինձ հեթանոսների [քարոզության] համար։

695 Այսպիսով աստվածադիր ժամանակը մատչելի էր ամեն մեկին հասնելու քրիստոսատուր փրկությանը, ինչպես և Պողոսը պատասխանել է Աթենացիներին, թե «Աստված անտես էր առել անգիտության ժամանակները, սակայն, արդ այս է պատվիրում մարդկանց՝ ամեն ոք պետք է ապաշխարի»։ Նույն ձևով նշել է նաև Պետրոսն իր կաթողիկեական (ընդհանրական) թղթում թե «բավական է ինչքան անցյալում հեթանոսների կամքն է կատարվել, այսուհետև նրանք պետք է ապրեն ըստ Աստուծո կամքի»։

696 Բայց ոչ անմիջապես և հանկարծակի, ըստ Հոգու զորության, նրանք նորընծաներին անընտել մեծամեծ [գործերի] մղեցին, այլ նախ թեթևագույն ձևով, ըստ աշխարհային կարգերի ա-

բանեալ և արուեստախօսեալ։ Վասն որոյ և յայտ արարեալ Պաւղոսի, եթէ «Կաթն ջամբեցի ձեզ ի Քրիստոս, և ոչ հաստատուն կերակուր. քանզի չէիք բաւական»։ Որպէս և յառաջագոյն իսկ կարգեալ ամենիմաստն Աստուծոյ մովսիսաբեր օրինօքն, նախ զոհիւքն և շաբաթուքն և տօնահրաման կարգօքն։ Յորոց յետ այսորիկ հրաժարեալ՝ մարգարէիւքն յարուցելովք զառաւելագոյնն հայցէր. որովք ասէն, եթէ «Յագեալ եմ արդ զոհիւք ձերովք». և թէ՝ «Ոչ վասըն պատարագաց քոց կշտամբեմ զքեզ». այլ՝ «Մատո՛ Աստուծոյ պատարագ օրհնութեան». և թէ՝ «Զի՞նչ խնդրէ ի քէն Տէր, ո՛վ մարդ, բայց առնել իրաւունս և արդարութիւն, և պատրաստ լինել երթալոյ զկնի Տեառն»։

697 Նոյն կանոն և առաքելովքն պաշտեցաւ. քանզի միոյն Աստուծոյ օրէնք և օրինապատումք՝ առաջինն և երկրորդն ճանաչէր։ Զոր իւր իսկ Տեառն յայտ արարեալ ասելովն, թէ «Յայսմ իսկ է բանն ճշմարիտ. զի այլ է որ սերմանէ, և այլ է որ հնձէ. ես առաքեցի զձեզ հնձել՝ զոր դուք ոչ վաստակեցէք. այլք վաստակեցին, և դուք ի վաստակս նոցա մտէք. զի որ սերմանէն և որ հնձէն՝ հաւասարակ ցնծասցեն»։

698 Այլ նոքա տեղեկացեալ իսկ էին արուեստի քարոզութեան յամենափրկչէն Քրիստոսէ, որ «սկսաւ առնել և ուսուցանել»։ Քանզի և ինքն Քրիստոս ոչ անդէն ի սկզբանն զբարձրագոյնսն և զանհասագոյնսն որոտաց, այլ նախ խոնարհագոյն և առակախօս բանիւք և ախտահալած բժշկութեամբ մերձաւորս արարեալ և իմաստնացուցեալ. ցորս և ասէր. «Թէ զերկրաւորս ասացի ձեզ, և ոչ հաւատայք, զիա՞րդ եթէ զերկնաւորսն ասացից ձեզ՝ հաւատայցէք». ապա յետ այնորիկ, իբրև կատարելոց՝ համարձակագոյն և բարձրագոյն զճշմարիտն վարդապետեալ։ Նովին կանոնաւ և առաքեալքն ի բարբարոսական կողմանսն գործէին։

699 ՂԶ. Վասն որոյ և սինհոդոսական հրամանաւ առաքելոցն նախածանօթ մատուցելոցն հեթանոսաց զթեթևագոյնսն աւանդեալ, և որոշեալ նախ ի կերակրոց կռոցն ի պոռնկութենէ և ի մեռելոտւոյ և յարենէ։ Իսկ յորժամ առաջի եղեալ ամենայն ումեք, և վկայեալ Հոգւովն սրբով Հրէից և հեթանոսաց վասն յուսական հաւատոցն որ ի տէր Յիսուս Քրիստոս.— որպէս Պետրոս յառաջագոյն



ռակաբանեցին և արվեստախոսեցին։ Սրա համար և Պողոսը հայտնեց թե «ձեզ կաթով ջամբեցի ի Քրիստոս և ոչ հաստատուն կերակուրով, քանզի ի վիճակի չէիք այն տանելու»։ Ինչպես նախապես ևս ամենիմաստն Աստուծո կարգած մովսիսական օրենքներով, նախ զոհերով, շաբաթով և տոնահրաման կարգերով [էին գործում], որից հետո նրանց այս բոլորից հրաժարեցնելով լավագույնը ցույց տվեց հայտնվող մարգարեների ձեռքով, որոնց միջոցով ասում է, թե «հագեցած եմ, արդ զոհերով» և թե «ոչ քո զոհերի (պատարագ) համար եմ քեզ կշտամբում» այլ «Աստուծո մատուցիր օրհնության պատարագը» և թե «ի՞նչ է քեզանից խնդրում Տերը, ով մարդ, եթե ոչ իրավունք և արդարություն գործադրել և պատրաստ լինել երթալու Տիրոջ ետևից»։

697 Նույն կանոնը նաև առաքյալների կողմից հարգվեց, քանզի միակ Աստուծո օրենքը և օրենքի մեկնիչները ճանաչված էին որպես առաջին և երկրորդ։ Այս բանը Տերը հայտնեց ասելով, թե «այս բանում ճշմարիտ է այն խոսքը, թե այլ է սերմանողը և այլ է նա, որ հնձում է. ես ձեզ առաքեցի հնձելու այն, որ դուք չեք վաստակել, ուրիշներն են աշխատել, և դուք նրանց վաստակի մեջ եք մտել, քանզի ով սերմանում է և ով հնձում միասին պետք է ցնծան»։

698 Նրանք քարոզության արվեստի մեջ լավատեղյակ էին ամենափրկիչ Քրիստոսից [սովորելով], որն «սկսեց գործել և ուսուցանել»։ Քանզի և ինքը Քրիստոս ոչ անմիջապես սկսեց քարոզել բարձրագույնը և անհասանելին, այլ նախ խոնարհագույն և առակախոս ոճով և ախտահալած բժշկությամբ նրանց տեղեկացրեց և իմաստնացրեց։ Նրանց ասում էր. «Թե երկրավորի մասին ասացի ձեզ և չհավատացիք, ինչպե՞ս կհավատաք եթե երկնավորի մասին ասեմ»։ Ապա, դրանից հետո, որպես կատարյալների համարձակագույն և բարձրագույն ձև սկսեց ճշմարտությունը վարդապետել. Նույն կանոնով էլ առաքյալները գործում էին բարբարոսական կողմերում։

699 ՂԶ. Ուստի սինոդական (սինհոդոսական) հրամանով առաքյալները նորահավատ հեթանոսներին թեթևագույնն ավանդեցին և նախ որոշեցին նրանց հեռու պահել կուռքերի կերակուրից, պոռնկությունից, մեռելոտի ուտելուց և արյունից։ Սակայն երբ արդեն ամենքին առաջադրեցին, ապա սուրբ Հոգով վկայեցին հրեաներին ու հեթանոսներին Տեր Հիսուս Քրիստոսի նկատմամբ հա-

Հրէաստանեայցն ասէր, թէ «Եւ մեք եմք նորա վկայք, և Հոգին սուրբ՝ զոր ետ Աստուած հնազանդելոց իւրոց»․ իսկ Պաւղոսի ահագին զգուշութեամբ ի Մելիտոս առաջի համաշունչ ժողովելոցն յուշ արարեալ զաւանդելոցն հրամանս և ուխտեալ, եթէ «Ոչ զանգիտեցի յօգտակարացն հրապարակաւ և առտնին տալ վկայութիւն Հրէից և հեթանոսաց, զապաշխարութեանն որ առ Աստուած և զհաւատոցն որ ի Տէր մեր Յիսուս Քրիստոս»․ որոյ և վճիռ տուեալ, թէ «Վկայութիւն դնեմ ձեզ յաւուր յայսմիկ, ասէ, զի սուրբ եմ յարենէ ամենեցուն․ քանզի ոչ խորշեցայ ի պատմելոյ ձեզ զամենայն կամս Աստուծոյ»․— զան այնուհետև երանութեան հասեալք ի խորհրդանոց Հոգւոյն սրբոյ՝ յիշատակել զաստուածախօս զաստուածապատում զաստուածապարգև վարդապետութիւն միածնին Աստուծոյ․ զի գրով կարգեալ հաստատեսցեն ամենայն ազգաց և յափտեանցն եկելոց ի ներքոյ երկնից, «առ ի լուսաւոր առնել զամենայն մարդ որ գալոց է յաշխարհ»։ Մանաւանդ թէ ազդեցութեամբ Հոգւոյն շարժեալք՝ յառաջի եդեալն յաջողեցան։ Վասն որոյ յուսուցանելն իսկ նշանակեաց աշակերտացն սրբոց Փրկիչն ամենեցուն ասելով, թէ «Եւս բազում ինչ ունիմ ասել ձեզ, այլ ոչ կարէք հանդարտել այժմիկ․ յորժամ եկեսցէ Հոգին ճշմարտութեան՝ առաջնորդեսցէ ձեզ ամենայն ճշմարտութեամբ»։

700 Ակնարկեաց և վասն կենդանատու Աւետարանին իւրոյ, թէ «Քարոզեսցի Աւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս ի վկայութիւն ամենայն հեթանոսաց, և ապա եկեսցէ կատարածն»։ Քանզի և առաքելոցն իսկ, վկայիցն նորին ճշմարտութեան, առեալ ի սուրբ Աւետարանէ և ի մարգարէական գրոց՝ թուղթս հոգեպատումս և առաքելախօսս ծաղկեցուցեալ, զի կանոնք մշտնջենակարգք աշակերտելոցն պահիցին, մանաւանդ հայեցեալ ևս ի կատարումն եկեղեցեացն՝ յաճախէին այնուհետև զառաւելագոյնսն բարբառելով։ Որպէս և Պաւղոսի յայտ արարեալ ասէ․ «Զիմաստութիւն խօսիմք ընդ կատարեալս, զիմաստութիւն՝ ոչ զաշխարհիս այսորիկ, և ոչ զիշխանաց աշխարհիս այսորիկ զխափանելեացս, այլ խօսիմք զԱստուծոյ իմաստութիւնն ծածուկ խորհրդով, զոր յառաջ քան զյաւիտեանս սահմանեաց Աստուած ի փառս մեր․ զոր ոչ ոք յիշխանաց աշխարհիս այսորիկ ծանեաւ․ զի եթէ էր ծանուցեալ՝ ոչ արդեօք զՏէրն փառաց ի խաչ հանէին»։ Իմաստու-



սալի հավատի մասին։ Ինչպես Պետրոսը նախապես հրեաներին ասել էր, թե «մենք ենք նրա վկաները և սուրբ Հոգին որ Աստված տվեց իրեն հնազանդվողներին»։ Իսկ Պողոսը ահավոր զգուշությամբ Մելիտոսում համաշունչ ժողովի առջև հիշեցրեց ավանդության հրամանները և ուխտեց թե «չվախեցա օգտակար բաների մասին հրապարակավ և առտնին վկայություն տալ հրեաներին և հեթանոսների՝ առ Աստված ապաշխարության և ի Տեր մեր Հիսուս Քրիստոս հավատի մասին»։ Որը վճռեց, թե «այս օրը ձեզ վկայություն կտամ, ասում է, թե անպարտ եմ ամենքի արյունից, քանզի չխորշեցի ձեզ պատմել Աստուծո ամբողջ կամքը»։ Այնուհետև եկան երանության և հասան սուրբ Հոգու խորհուրդներին, հիշատակելու աստվածախոս և աստվածապատում, աստվածապարգև վարդապետությունը Միածնի, որպեսզի գրով կարգեն հաստատեն երկնքի ներքո ամենայն ազգերի և գալիք ժամանակների համար «լուսավորելու բոլոր մարդկանց, որ գալու են աշխարհ»։ Մանավանդ շարժվելով Հոգու ազդեցությամբ հաջողեցին այս առաջադրանքի մեջ։ Ահա այս էր, որ ամենայնի Փրկիչը իր ուսմունքի մեջ ընդգծեց սուրբ աշակերտներին ասելով, թե «ես բազում բաներ ունեմ ձեզ ասելու, սակայն դուք չեք կարող այժմ կրել այն, երբ ճշմարտության Հոգին գա, ձեզ առաջնորդելու է ամենայն ճշմարտությամբ»։

700 Ակնարկեց նաև իր կենդանատու Ավետարանին, թե «ամբողջ աշխարհում արքայության Ավետարանը պիտի քարոզվի, որպես վկայություն բոլոր հեթանոսներին և ապա գալու է [աշխարհի] վախճանը»։ Քանզի առաքյալներն իսկ, այդ ճշմարտության վկաները, առնելով սուրբ Ավետարանից և մարգարեական գրքերից ծաղկեցրին հոգեպատում և առաքելախոս թղթեր (նամակներ), որպեսզի աշակերտյալների համար լինեն մշտնջենակարգ կանոններ, մանավանդ մտահոգված լինելով եկեղեցիների կատարելությամբ, նրանք շատ բան ավելացրին բանավոր։ Ինչպես և Պողոսը հայտնապես ասում է. «Իմաստությունը խոսում ենք կատարյալների հետ, բայց ոչ այս աշխարհի իմաստությունը և ոչ էլ այս աշխարհիս իշխաններինը, որ ոչնչություն է։ Այլ խոսում ենք Աստուծո իմաստությունը ծածուկ խորհրդով, որը նախքան [աշխարհի] հավիտենականությունը Աստված սահմանել է մեր փառքի համար և որը ոչ ոք այս աշխարհի իշխաններից չճանաչեց։ Քանզի եթե ճանաչած լինեին խաչ չէին հանի փառքի Տիրոջը»։ Նրանք իմաստու-

թեամբն լուսաւորեալք և զարդարեալք էին ասելովն, թէ «Մեք ոչ զոգի աշխարհիս այսորիկ առաք, այլ զՀոգին որ յԱստուծոյ. զի նովաւ ծանիցուք զայն՝ որ յԱստուծոյն շնորհեցաւ մեզ»։

701 Ու արդ՝ առեալ հոգելից և հոգեմուխ աստուածատեսացն զաստուածատուր աւետիսն, և գրով հաստատեալ, և զմի աւանդութիւնն չորս Աւետարանս սահմանեալ. ոչ օտարագոյնս ի միմեանց արաւեստախօսեալ, այլ ամենագէտ Հոգւովն Աստուծոյ զմիաւոր ճշմարտութիւն հրամանացն Քրիստոսի պատմեալ. զոր յառաջակարգ ի մարգարէսն է տեսանել։ Զի զոր մեծին Մովսիսի յառաջագոյն շնորհօք Հոգւոյն զլինելոցն առակախօսեալ էր՝ զնոյն հոգեպատում բարբառով և զկնի եկելոց մարգարէիցն երկրորդեալ, որովք երևեալ ամենապարգև Հոգւոյն զօրութիւն։

702 Դէ. Համբարձեալ այնուհետև թևովք Հոգւոյն աւետարանագիր արանցն քրիստոսասիրաց, և անցեալ ընդ երկինս և բարձրացեալ ի վերայ խորանացն երկնից. անդր ի վեր յաստուածական յաթոռն, և տեղեկացեալ Հոգւովն սրբով խորոցն Աստուծոյ, և ծանուցեալ զմիածին Որդին անդէն ի ծոց Հօր իւրոյ. և այնպէս ճշմարտագոյնս հաստատեալ նորին գիտութեամբ, որպէս և գիտէ Հայր զՄիածինն իւր։ Որով լուսաւորեալ և առեալ զանպատումն ի պատմել, թէ «Ի սկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր Բանն. նա էր ի սկզբանէ առ Աստուած. ամենայն ինչ նովաւ եղև, և առանց նորա եղև և ոչ ինչ»։ Տեսանե՞ս, զի չեթող ինչ ի միջի զաստուածագէտ իմաստութեանն զպայման. այլ միանգամայն զբովանդակն բերէ ասելովն, թէ «էր ի սկզբանէ, և առ Աստուած էր, և Աստուած էր. և ամենայն ինչ նովաւ եղև». և առ ժամայն իսկ ծանոթ եղեալ էական անձինն Որդւոյ, և միաբուն և աստուածակից պատուին, և ամենակար զօրութեան նորին։

703 Քանզի յառաջագոյն իսկ աստուածագէտս յարդարեաց բիւրապատիկ սքանչելեօքն ամենատէրն Քրիստոս զսիրելի աշակերտսն իւր, զի և գեղոյ և կերպարանաց և միասնական բնութեանն երից անձանցն կատարելոց մերձաւորք և ծանօթք իցեն։ Զի ոչ եթէ իւրեանց կարճահաս իմաստութեամբն հասեալք չքնաղ գիտութեանն Աստուծոյ, այլ նորին իսկ մարդասէրն Աստուծոյ յայտ արարեալ յերկնից, թէ «Դա է որդի իմ սիրելի, դմա լուարուք»։ Զոր և Պետրոսի վկայեալ ի Կաթողիկէին իւրում, թէ «Ոչ պաճուճեալ ինչ ա-



թյամբ լուսավորյալ և զարդարյալ էին ասելով, թե «մենք ոչ թե այս աշխարհի հոգին առանք, այլ այն Հոգին որն Աստծուց է և նրանով ճանաչեցինք այն, որ Աստծուց շնորհվեց մեզ»։

701 Արդ՝ հոգելից և հոգեմուխ աստվածատեսները առնելով աստվածատուր ավետիսները, գրով հաստատեցին և չորս Ավետարանների մեկ ավանդությունը որոշեցին։ Ոչ թե արվեստախոսելով օտար սարքեր են մտցրել, այլ Աստուծո ամենագետ Հոգով պատմել են Քրիստոսի հրամանների միակ ճշմարտությունը, որը կարելի է տեսնել թե նախապես ասված է մարգարեների մոտ։ Քանզի այն, ինչ մեծն Մովսեսը նախապես Հոգու շնորհիվ առակախոսել էր, որպես գալիք, ապա նույնը հոգեպատում խոսքերով կրկնեցին հետո եկող մարգարեները, որոնց միջոցով երևաց ամենապարգև Հոգու զորությունը։

702 Դէ. Այնուհետև ելնելով Հոգու թևերի վրա քրիստոսասեր ավետարանագիր այրերը անցան երկնքի միջով և բարձրացան երկնքի խորանների վրա։ Այնտեղ վերևում, աստվածային աթոռի մոտ նրանք սուրբ Հոգուց տեղեկացան Աստուծո խորությունների և ճանաչեցին միածին որդուն իր Հոր ծոցում, իսկ նա ճշմարտագույն ձևով հաստատեց նրանց իր մասին գիտելիքները, ինչպես Հայրը գիտի իր Միածնին։ Նրանով լուսավորվեցին և սկսեցին պատմել անպատումը, թե «ի սկզբանե էր Խոսքը և Խոսքն էր Աստուծո մոտ և Աստված էր Խոսքը։ Նա ի սկզբանե Աստուծո մոտ էր, ամեն ինչ նրանով եղավ, և առանց նրան ոչինչ չեղավ»։ Տեսնո՞ւմ ես նա ոչինչ չզեղչեց աստվածագետ իմաստությունից, այլ միանգամայն ամբողջությունը բերում է ասելով, թե «Նա էր ի սկզբանե և Աստուծո մոտ էր և Աստված էր և ամեն ինչ նրանով եղավ»։ Այժմ արդեն ծանոթ դարձավ Որդու էական անձնավորությունը և միաբուն աստվածակից պատիվը և նրա ամենակարող զորությունը։

703 Քանզի ամենատերն Քրիստոս նախապես իր սիրելի աշակերտներին աստվածագետներ պատրաստեց բյուրապատիկ հրաշքներով, որ նրանք երեք անձերի գեղեցկությանը, կերպարանքին և միասնական բնությանը մերձավոր ու ծանոթ լինեն։ Քանզի ոչ թե իրենց կարճահաս իմաստությամբ էին հասնելու Աստուծո չքնաղ գիտակցությանը, այլ ինքը մարդասերն Աստված [այդ բանը] հայտնեց երկնքից, թե «դա է իմ սիրելի որդին, նրան լսեցեք»։ Նրան վկայեց Պետրոսն իր կաթողիկե [թղթում], թե «ոչ թե պա-

ռասպելաց զհետ երթեալ ցուցաք ձեզ զտեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զզօրութիւն և զգալուստն, այլ մեզէն եղեալ ականատեսք նորա մեծութեանն։ Քանզի առեալ յԱստուծոյ և ի Հօրէ զփառս և զպատիւ, եկեալ այնպիսի բարբառոյ ի մեծ վայելչութեան փառաց անտի, թէ «Դա է որդի իմ սիրելի, ընդ որ հաճեցայ». և զայս բարբառ մեք իսկ լուաք եկեալ յերկնից՝ որք ընդ նմա իսկ էաք ի սուրբ լերինն։

704 Նոյնպէս և Որդին եկեալ ծանուցանէ զՀօրն մեծութիւն, թէ «Եկի ոչ զիմ կամս կատարել, այլ զկամս այնորիկ որ առաքեացն զիս»։ Եւ յորդագոյն նշանակելով ի վարդապետելն իւրում՝ զփառս Հօրն բարձրացուցանէ, յայտ արարեալ զմիասնական կամացն, թէ «Զբանս զոր ես խօսիմ ընդ ձեզ՝ ոչ եթէ յանձնէ ինչ խօսիմ, այլ Հայրն որ յիս բնակեալ է՝ նա գործէ զգործսն»։ Նոյնպէս և վասն Հոգւոյն սրբոյ ասէ, թէ «Հոգին ճշմարտութեան առաջնորդեսցէ ձեզ ամենայն ճշմարտութեամբ. զի ոչ եթէ յանձնէ ինչ խօսիցի, այլ զոր լսիցէ՝ խօսիցի և զգալոցն պատմեսցէ ձեզ. նա զիս փառաւորեսցէ, զի յիմմէ անտի առնուցու և պատմեսցէ ձեզ»։ Զամենայն ինչ զոր ունի Հայր՝ իմ է. վասն այնորիկ ասացի, թէ յիմմէ անտի առնուցու և պատմեսցէ ձեզ»։

705 Տե՛ս զմիաբանութիւնն, զմիակամութիւնն, զմիաւորական ճշմարտութիւնն. և տե՛ս զիա՛րդ լուսաւորեաց, եցոյց զգոյութիւն երից անձանցն հաւասարի և ասէ, թէ «Ոչ յանձնէ ինչ խօսիցի Հոգին սուրբ. քանզի յիմմէ անտի առնուցու և պատմեսցէ ձեզ. զի զամենայն ինչ զոր ունի Հայր՝ իմ է»։ Տե՛ս զՀայրն կատարեալ, և զՈրդին ճշմարիտ, և զՀոգին հաւասարի։ Նշանակեաց և զանորոշական և զմիաբուն աստուածական զօրութեանն պայման ասելովն, թէ «Ելի ի Հօրէ և եկի յաշխարհ»։ Նոյնպէս և վասն ճշմարիտ Հոգւոյն, թէ «Հոգին ճշմարտութեան՝ որ ի Հօրէ ելանէ»։

706 Տայ վճիռ և վասն միաւորութեան միասնական Երրորդութեանն ասելովն, թէ «Հոգի է Աստուած». ցուցանէ և վասն իւր և վասն ճշմարիտ Հոգւոյն՝ զանքակութիւնն ի Հօրէ։ Զի թէպէտ և առաքեալք անուանեցան յառաքիչն ի Հօրէ՝ այլ ընդ նմին միաբուն և առանց մեկնելոյ զմիասնական գործն կատարեցին. ասելովն՝ թէ «Ոչ ոք ել յերկինս՝ եթէ ոչ որ էջն յերկնից Որդի մարդոյ, որ էն յերկինս»։ Տեսանե՞ս, զի և իջեալ յերկիր, և է յերկինս։ Որում և աւետարանիչն Յովհաննէս տեսեալ վկայեաց, թէ «ԶԱստուած ոչ ոք ետես երբեք, բայց միածին Որդին որ է ի ծոց Հօր՝ նա պատ-



ճուճյալ առասպելների ետևից գնացինք՝ ձեզ ցույց տալով մեր տիրոջ Հիսուս Քրիստոսի զորությունն ու գալուստը, այլ ինքներս Նրա մեծության ականատես էինք եղել։ Քանզի երբ Աստծուց ու Հորից առավ փառք ու պատիվ, այսպիսի ձայն հասավ մեծավայելուչ փառքից. «Դա է իմ սիրելի որդին, որին հաճեցել եմ» և այս ձայնը մենք ինքներս լսեցինք որ գալիս էր երկնքից, մենք որ Նրա հետ էինք սուրբ լեռան վրա»։

704 Նույնպես և Որդին գալով ծանուցեց Հոր մեծությունը, թե «եկա ոչ իմ կամքը կատարելու, այլ Նրա կամքը, որն առաքեց ինձ»։ Իր վարդապետելու ընթացքին առատ նշաններով բարձրացրեց Հոր փառքը և ցույց տվեց Նրա միասնական կամքը, թե «խոսքերը, որ ձեզ եմ ասում ոչ թե իմ կողմից եմ ասում, այլ Հայրը, որ իմ մեջ բնակված է, նա է անում այդ գործերը»։ Նույնպես և սուրբ Հոգու մասին ասում է թե «Ճշմարտության Հոգին պիտի առաջնորդի ձեզ ամենայն ճշմարտությամբ, քանզի ոչ թե իր կողմից է խոսելու, այլ ինչ որ լսի խոսելու է և պատմելու ձեզ գալիքը։ Նա ինձ փառավորելու է, քանզի ինձանից է առնելու և պատմելու ձեզ. ամեն ինչ, որ իմ Հայրն ունի, իմն է, դրա համար էլ ասացի, թե ինձանից է առնելու և պատմելու ձեզ»։

705 Տես միաբանությունը, միակամությունը միակ ճշմարտության և տես ինչպես լուսավորեց, հավասարի ցույց տվեց երեք անձերի գոյությունը ասելով. «Ոչ թե իր կողմից է խոսելու սուրբ Հոգին, քանզի ինձանից է առնելու և պատմելու ձեզ. ամեն ինչ որ Հայրն ունի իմն է»։ Տես Հայրը կատարյալ է, Որդին՝ ճշմարիտ և Հոգին՝ հավասարի։ Նա նշանակեց նաև անտեսանելի և միաբուն աստվածային զորության էությունը ասելով թե «ելա Հորից և եկա աշխարհ»։ Նույնպես և ճշմարիտ Հոգու մասին թե «Ճշմարտության Հոգին որը ելնում է Հորից»։

706 Նա վճիռ է տալիս նաև միասնական երրորդության միավորության մասին, ասելով, թե «Աստված Հոգի է»։ Նա ցույց է տալիս նաև իր և ճշմարիտ Հոգու անքակտելիությունը Հորից, քանզի թեպետ և առաքյալները այսպես կոչվեցին առաքիչ Հորից, սակայն Նրա հետ միաբուն են և առանց անջատվելու կատարեցին միասնական գործը, ասելով, թե «ոչ ոք չելավ երկինք, բացի Նրանից, որն իջավ երկնքից՝ մարդու որդին, որ երկնքում է»։ Տեսնո՞ւմ ես որ երկիր է իջել և երկնքում է։ Նրա մասին նաև Հովհաննես ավետարանիչը վկայեց, թե «Աստծուն ոչ ոք երբեք չի տեսել, բայց

մեաց»։ Եւ արդ՝ դու ի միտ առ զոր ասէն, թէ «Որ էն ի ծոց Հօր՝ նա պատմեաց». զի զոր առ իւրեանսն տեսանէին՝ ի ծոց Հօր զնոյն գիտէին։ Ո՜ զարմանալի պարգեւելոցն և աստուածագէտ վիճակելոցն, ո՛րպիսում մեծ վայելչութեան առ ժամայն հասին։

707 ՂԸ. Նոյնպէս և վասն Ճշմարիտ Հոգւոյն է իմանալ յասելոյն, թէ «Հոգին ճշմարտութեան՝ որ ի Հօրէ ելանէ». ելանէ և ոչ բաժանի, բղխէ և ոչ սպառի։ Եւ միանգամայն իսկ զճշմարտագոյն զմիապէս զմիակշիռն ասէ, թէ «Ես ի Հայր, և Հայր յիս. և որ ետես զիս՝ ետես զՀայր իմ»։ Քանզի ոչ եթէ սահմանք ինչ զաստուածականն բովանդակիցեն, եթէ Հայրն յերկինս, և միածին Որդին և ճշմարիտ Հոգին յերկրի. որով լին է ամենայն, և է յամենայնի և ի վերայ ամենայնի։

708 Վասն այսր ամենայնի աստուածախօսեալ և վարդապետեալ աշակերտացն իւրոց՝ հրաւիրէ յառաջնորդութիւն Հոգւոյն սրբոյ. ցորս և ասէր իսկ, թէ «Եւս բազում ինչ ունիմ ասել ձեզ, այլ ոչ կարէք հանդարտել այժմիկ. բայց յորժամ եկեսցէ Հոգին ճշմարտութեան՝ յիշեցուսցէ ձեզ, և առաջնորդեսցէ ձեզ ամենայն ճշմարտութեամբ»։ Վասն որոյ և Պետրոս իսկ նշանակեաց առեալ զՀոգին սուրբ, թէ «Յիշեցի զբանն Տեառն զոր ասէր, թէ Յովհաննէս մկրտեաց ի ջուր, բայց դուք մկրտիցիք Հոգւովն սրբով». և ոչ միայն նոցա, այլ և մատուցելոցն նոքօք առ Աստուած։

709 Որպէս և երանելւոյն Ղուկայ ի սկզբան Աւետարանին յայտ արարեալ, թէ «Բազումք յօժարեցին վերստին կարգել զպատմութիւնն վասն իրացն հաստատելոց ի մեզ. որպէս աւանդեցին մեզ՝ որք ի սկզբանէ ականատեսք և սպասաւորք եղեն Բանին». յորոց և զԱւետարանն Տեառն կարգեաց։ Իսկ առ Պաւղոսի ևս սքանչելագոյն և ահաւորագոյն ազդեցութեամբ երևեալ. վասն որոյ և ինքն զարմացեալ պատմէ ասելովն, «Եթէ մարմնով և թէ առանց մարմնոյ՝ ոչ գիտեմ. բայց համբարձեալ յերրորդ մասն երկնից և ի դրախտն, և լուեալ բանս անճառս գիտեմ»։ Վասն որոյ և ասէն, թէ «Ես ոչ ի մարդոյ առի և ոչ ուսայ յումեքէ, այլ ի յայտնութենէն



միածին Որդին, որ Հոր ծոցից է, նա պատմեց»։ Արդ, նկատիր ինչ է ասում, թե «նա որ Հոր ծոցից է՝ նա պատմեց», քանզի նրան ում իրենց մոտ տեսնում էին, գիտեին, որ նույնը Հոր ծոցում է։ Ո՜վ զարմանալիորեն պարգևյալներ և աստվածագիտություն ժառանգողներ, ինչպիսի մեծավայելչության են այժմ հասել։

707 ՂԸ. Նույնպես և ճշմարիտ Հոգու մասին պետք է ասված համարել այն, թե «ճշմարտության Հոգին որ Հորից է ելնում»։ Ելնում է թեև չի բաժանվում, բխում է և չի սպառվում։ Եվ միանգամայն իսկ նա խոսում է ճշմարտագույնի, միանմանի, միակշռի մասին, ասելով, թե «ես Հոր մեջ եմ և Հայրն իմ մեջ, ով ինձ տեսավ, տեսավ իմ Հորը»։ Սակայն չկան ինչ որ սահմաններ որ շրջափակում են Աստվածությունը և կամ [թող չթվա] թե Հայրը երկնքում է, իսկ միածին Որդին ու ճշմարիտ Հոգին երկրում են, քանզի ամեն ինչ նրանով լի է, նա է ամեն ինչի մեջ և ամեն ինչից վեր։

708 Այս ամենի վերաբերյալ նա աստվածախոսեց և վարդապետեց իր աշակերտներին ու հրավիրեց սուրբ Հոգու առաջնորդությանը։ Նրանց ասում էր, թե «ես բազում բաներ ունեմ ասելու ձեզ, սակայն այժմ չեք կարող տանել, բայց երբ ճշմարտության Հոգին գա պիտի հիշեցնի ամեն այն, ճշմարտությամբ պիտի առաջնորդի ձեզ»։ Այս մասին Պետրոսն էլ նշեց, երբ առավ սուրբ Հոգին, ասելով. «Հիշեցեք Տիրոջ խոսքը, որ ասում էր, թե Հովհաննեսը ջրով մկրտեց, բայց դուք պիտի մկրտվեք սուրբ Հոգով»։ [Այս բոլորը] ոչ միայն նրանց ասաց, այլև այնպիսիններին, որ նրանց միջոցով մոտենալու էին Աստծուն։

709 Ինչպես որ երանելի Ղուկասն իր Ավետարանի սկզբում հայտնում է. «Շատերը նպատակ ունեցան վերստին կարգի դնելու մեր հաստատ իմացած բաների պատմությունը, ինչպես ավանդեցին մեզ սկզբից ականատես և խոսքին սպասավոր եղողները», որոնցից [վերցնելով] նա կարգեց Տիրոջ Ավետարանը։ Պողոսին ևս սքանչելագույն և ահավորագույն ներշնչմամբ երևաց, որի համար ինքն էլ զարմացած պատմում է ասելով. «Արդյոք մարմնով թե առանց մարմնի չգիտեմ, բայց գիտեմ որ համբարձվել էր երկնքի երրորդ մասը և դրախտը և լսեց անճառելի խոսքեր»։ Որի մասին ասում է, թե «ես ոչ մարդուց առա և ոչ սովորեցի որևէ մեկից, այլ Հիսուս Քրիստոսի հայտնությունից»։ Նա և պարծենում է,

Յիսուսի Քրիստոսի»․ զոր և ականատես եղեալ պարծի, թէ «Զտէր Յիսուս Քրիստոս աչօք իմովք տեսի»։

710 Բայց թէպէտ և այսպէս բարձրապատիւ և պայծառանշան առաքեցաւ ի Քրիստոսէ՝ տայ հնազանդութիւն և երկոտասանիցն, գրեալ Կորնթացւոցն. «Զի ես ձեզ զայն նախ աւանդեցի՝ զոր և ես ընկալայ»։ Նոյնպէս և Եբրայականացն, թէ «Մեք զիա՞րդ ապրեսցուք հեղգացեալքս յայնպիսի փրկութենէ, որ սկիզբն առ խօսելոյ ի Տեառնէ, և ի ձեռն այնոցիկ որ լուանն՝ ի մեզ հաստատեցաւ»։ Որով յայտ իսկ է, եթէ միոյ զօրութեանն շնորհք զամենեսեան լուսաւորեալ՝ առ ի վկայութիւն միոյ ճշմարտութեանն զարթուցանէին. քանզի և ասէ Պաւղոս, թէ «Ամենեքին մեք զմի Հոգի արբաք»։ Որով բարձրապատումս և երկնաբերձագոյնս սկսան հռչակեցուցանել զպատիւ իսկական փառաց միածնին՝ հանդերձ կանխասաց մարգարէական բարբառովքն. զոր և ասաց աստուածապատումն, թէ «Ի սկզբանէ էր Բանն, և առ Աստուած էր, և Աստուած էր, և ամենայն ինչ նովաւ եղև»։ Ասէ և Ղուկաս զառաքելոցն, թէ «Ի սկզբանէ ականատեսք և սպասաւորք եղեն Բանին»։ Դարձեալ զսոյն և Յովհաննէս ասէ ի Կաթողիկէին իւրում, թէ «Որ էրն ի սկզբանէ, զորմէ լուաքն, ընդ որ հայեցաքն, և ձեռք մեր շօշափեցին ի վերայ Բանին կենաց»։

711 «Եւ առ Աստուած էր. ասէ, Բանն»։ Ասացելոյն Տեառն վըկայեաց, թէ «Հա՛յր, տո՛ւր ինձ զփառսն՝ զոր ունէի առ քեզ յառաջ քան զլինելն աշխարհի»։ Բերէ ի սոյն և Պաւղոս, թէ «Ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զէանալն հաւասար Աստուծոյ»։ Նոյնպէս և Յովհաննէս յառաքելականին իւրում, թէ «Որ էրն առ Հօր և երևեցաւ մեզ»․ «Եւ Աստուած էր, ասէ, Բանն»․ որպէս և Քրիստոս ասաց, թէ «Զոր ունի Հայր՝ ունիմ և ես»։ Դարձեալ և Յովհաննէս ի թղթին իւրում ասէ, թէ «Նա է ճշմարիտ Աստուած»։ Նոյնպէս և Պաւղոս, թէ «Յերևել փառաց մեծին Աստուծոյ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ետ զանձն իւր վասն մեր»։

712 Արդ՝ միով միաբանութեամբ և ինքնայօժար մերովք իսկ կամօք հասցուք մեք հաւատոց և գիտութեան Որդւոյն Աստուծոյ, յայր կատարեալ ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի։ Քանզի տուեալ վարդապետութիւնն Քրիստոսի առ ի բազմաց ունկնդրութիւն հայի. որով հրամանաւ զամենայն ազգս երկրի՝ ընդ անգեղ-



թե ականատես է եղել. «Տեր Հիսուս Քրիստոսին իմ աչքերով տեսա»։

710 Բայց թեպետ և այսպես բարձրապատիվ և պայծառանշան առաքվեց Քրիստոսից, նա հնազանդություն է հայտնում տասներկուսին, գրելով Կորնթացիներին. «Քանզի ես նախ այն ձեզ ավանդեցի, որը ես ևս ստացել էի»։ Նույնպես և Եբրայականաց [թղթում] թե «մենք ինչպե՞ս կազատվենք, եթե անտեսում ենք այնպիսի փրկությունը, որն սկիզբ առավ ասված լինելով Տիրոջ կողմից և մեզ համար հաստատվեց նրանց կողմից, որոնք լսել էին»։ Սրանով հայտնի է որ մեկ զորության շնորհներն ամենքին լուսավորեցին և նրանք ներշնչվեցին մեկ ճշմարտության վկայության համար։ Քանզի Պողոսն ասում է. «Մենք ամենքս մի Հոգի ենք խմել»։ Այսպիսով բարձրապատում և երկնամբերձ ձայնով սկսեցին հռչակել միածնի փառքի իսկական պատիվը, նախապես ասված մարգարեական խոսքերով հանդերձ, որը և ասաց աստվածապատումը թե «ի սկզբանե էր Խոսքը և Աստուծո մոտ էր և Աստված էր և ամեն ինչ նրանով եղավ»։ Ասում է նաև Ղուկասն առաքյալների մասին, թե «ի սկզբանե Խոսքին ականատես և սպասավոր եղան»։ Դարձյալ նույնը Հովհաննեսն է ասում իր կաթողիկե [թղթում] թե՝ «Նա որ ի սկզբանե էր, որի մասին լսեցինք, որին նայեցինք և մեր ձեռքերը շոշափեցին կենաց Խոսքը»։

711 «Եվ Աստուծո մոտ էր, ասում է, Խոսքը»։ Այս ասելով նա վկայեց Տիրոջ խոսքը, թե «հայր տուր փառքը, որ ես ունեի քեզ հետ, նախքան աշխարհի լինելը»։ Նույնը բերում է նաև Պողոսը, թե «հափշտակություն չհամարեց Աստուծո հավասար լինելը»։ Նույնպես և Հովհաննեսն իր առաքելական [թղթում], թե «Նա որ Հոր մոտ էր և մեզ երևաց»։ «Եվ Աստված էր, ասում է, Խոսքը» ինչպես Քրիստոս ևս ասաց, թե «ինչ որ Հայրն ունի, ես ևս ունեմ»։ Դարձյալ Հովհաննեսն իր թղթում ասում է թե «Նա է ճշմարիտ Աստվածը»։ Նույնպես և Պողոսը թե «մեծ Աստուծո փառքի և մեր փրկիչ Հիսուս Քրիստոսի երևալու ժամանակ, որն իր անձը զոհեց մեզ համար»։

712 Արդ, միաբանությամբ և մեր իսկ ինքնահոժար կամքով «հասնենք Աստուծո Որդու հավատին և գիտությանը, կատարյալ մարդ [դառնալու] և Քրիստոսի կատարելության հասակի չափն [ունենալու]»։ Քանզի Քրիստոս իր վարդապետությունը տվեց բազմաց ունկնդրության համար և այդ հրամանով երկրի ամենայն

ջական վարդապետութեամբն նուիրեաց ասելովն, թէ «Ելէ՛ք ընդ ամենայն հեթանոսս, աշակերտեցէ՛ք և մկրտեցէ՛ք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»։

713 Առաւել առ ի բազմացն ակնկալութեամբ կամի երևեցուցանել զփառաւոր գալուստն իւր, որպէս թէ վասն երկայնմտութեան համբերողացն և յուսալից սպասելոցն գայցէ երևել։ Այսպիսի ինչ է իմանալ և զառաջին գալուստն Քրիստոսի, և զէջս աստուածեղէն Հոգւոյն ի տասներորդ աւուրն ի պենտեկոստէից տօնին։ Քանզի ոչ եթէ օթեվանք ինչ պիտոյ էին ծախել միածնի Որդւոյն Աստուծոյ յելս բարձրութեանն երկնից, և կամ սուրբ Հոգւոյն՝ իջանելոյ ի ժողովս առաքելոցն, որով երկինք և երկիր լի են. այլ այնպէս կամեցաւ մարդասէրն Աստուած, որպէս թէ տասն աւուրց ակնկալութիւն առաքելոցն՝ ի վերնատունն կոչեսցէ զպարգևաբեր Հոգին, զմխիթարիչն ամենեցուն։ Եւ ամենայն ուրեք պատճառս ինչ ի մարդիկ հարկանէ զիւրոյ բարեգործութեանն. զի վասն փոքր պատճառանաց աստ ի վեր ընծայելոց՝ անչափ բարեաց պատրաստական հատուցանող գտանիցի։ Եւ զի՞նչ իսկ արդարև անչափ և անհասական քան զայն կայցէ՝ յորժամ ծագեալ յերկնից փառօք Հօր գայցէ, և առաջի ամենայն հրեշտակազւնդ զօրուն զձեռանէ առեալ զիւրոցն սիրելեաց՝ առ ինքն հանեալ տանիցի, յիւրում իսկ աստուածեղէն բնակութեանն ղանզրաւական զկեանսն միասնական վայելեցուցանիցէ։

714 Քանզի ապենիազն Աստուած վայրակեաց բնակութեանն և կայենաւոր սահմանացն բնակութիւն Աստուածամուտ սքանչելի վասն իւրոցն սիրելեաց զարքայութիւնն յարդարէ, յորում միակեաց վայելչութիւն ամենայն արժանաւոր բանաւորացն, հոգեղինացն և մարմնականացն, առ ինքեան պատրաստեալ զետեղեսցէ։ Վասն որոյ և ամենափրկիչն տայր աւետիս աշակերտացն և քաջալերէր, թէ «Ուր եսն իցեմ՝ և դուք անդ իցէք, և յամենայն ժամ զիմ փառսն տեսանիցէք»։ Բայց միւսն ևս բարձրագոյն. «Յայնմ աւուր ծանիջիք, ասէ, թէ ես ի Հայր, և դուք յիս, և ես ի ձեզ»։ Ի սոյն իսկ առնուլ պատեհագոյն է զասացեալսն, թէ «Զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, և ի սիրտ մարդոյ ոչ անկաւ՝ պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց». ասել և ընդ երանելւոյն Պաւղոսի, թէ «Շնորհք Քրիստոսի ի վերայ անպատում պարգևաց նորա»։



ազգերին հրավիրեց ճշմարիտ վարդապետությանը, ասելով. «Ելեք ամենայն հեթանոսների մոտ, ուսուցանեցեք ու մկրտեցեք նրանց Հոր, Որդու և սուրբ Հոգու անունով»։

713 Շատերի նկատմամբ հատուկ հոգատարությամբ նա կամեցավ իր փառավոր գալուստը տեսանելի դարձնել, թե ինչպես գալու երևալու է երկայնամիտ համբերողներին և հուսալից սպասողներին։ Այսպես պետք է հասկանալ Քրիստոսի առաջին գալուստը և աստվածային Հոգու իջնելը Պենտեկոստեի տոնի տասներորդ օրը։ Քանզի օթևաններ պետք չէին Աստծո միածին Որդուն երկնքի բարձունքները ելնելու և կամ սուրբ Հոգուն իջնելու առաքյալների ժողովին, որով երկինքն ու երկիրը լցված են։ Սակայն մարդասերն Աստված այնպես կամեցավ, որ առաքյալների տասն օր սպասելուց հետո վերնատուն կանչի պարգևաբեր Հոգուն, ամենքի մխիթարիչին։ Ամենուրեք մարդկանց առիթներ էր ստեղծում իր բարեգործությունը ցույց տալու, որպեսզի ի վերուստ ընծայված այս փոքր առիթներով, նա անչափ բարիքների պատրաստական հատուցողը դառնա։ Եվ ինչն արդարև առավել անչափելի ու անհասանելի է լինելու քան այն, երբ երկնքից ծագելով Հոր փառքով գա և բոլոր գունդագունդ հրեշտակների առջև իր սիրելիների ձեռքից բռնելով իր մոտ տանի և իր աստվածային բնակության մեջ նրանց վայելել տա հավիտենական կյանքը։

714 Քանզի անկարոտն Աստված հաստատել է իր արքայությունը սիրեցյալների համար, որպես դրախտի մասեր, մի սքանչելի բնակարան Աստծո մոտ, նրանց վայելքի համար, այնտեղ իր մոտ տեղավորելու և հաստատելու բոլոր արժանավոր բանական արարածներին հոգեղեններին և մարմնականներին։ Որի համար ամենափրկիչը ավետիսը (Ավետարան) տվեց աշակերտներին և քաջալերեց, թե «ուր ես լինեմ, դուք ևս այնտեղ եղեք և ամենայն ժամ իմ փառքն եք տեսնելու»։ Բայց մյուս առավել բարձրագույն ասացվածքը «Այն օրը դուք կճանաչեք, ասում է, թե ես Հոր մեջ եմ, դուք իմ մեջ և ես ձեր մեջ»։ Սույն առթիվ առավել պատեհ է հիշել այն ասացվածքը, թե «ինչ որ աչքը չտեսավ, ականջը չլսեց և մարդու սիրտը չընկավ, Աստված պատրաստել է իր սիրելիների համար», և երանելի Պողոսի խոսքերը, թե «շնորհակալություն Քրիստոսին նրա անպատում պարգևների համար»։

715 Կատարեցաւ վարդապետութիւն սրբոյն Գրիգորի, որ շնորհեցաւ նմա յԱստուծոյ՝ լուսաւորել զսիրտս խաւարեալս Հայաստան աշխարհիս՝ հաւատովք և մկրտութեամբ։ Եւ զամենեսեան քրիստոսածանօթս առնէր և հաստատէր, փառաւորել զսուրբ անուանսն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

715 Վերջացավ սուրբ Գրիգորի վարդապետությունը, որն Աստված նրան շնորհեց լուսավորելու մեր Հայաստան աշխարհի խավարյալ սրտերը հավատքով և մկրտությամբ։ Նա ամենքին քրիստոսածանոթ դարձրեց և հաստատեց, որպեսզի փառավորեն Հոր, Որդու և սուրբ Հոգու անունները։

## ԴԱՐՁ ՓՐԿՈՒԹԵԱՆ ԱՇԽԱՐՀԻՍ ՀԱՅԱՍՏԱՆ

### ԸՆԴ ՁԵՌՆ ԱՌՆ ՍՐԲՈՅ ՆԱՀԱՏԱԿԻ

*716 Ղթ. Արդ՝ եկա՛յք, եղբա՛րք, զօգուտն վասն հասարակաց շինութեան փութացուսցուք. զի և ի ձէնջ պատուհասքդ վերասցին, և լիցի ի խռովութենէդ հասելոյ վաղվաղակի խաղաղութիւն, և ի գերեալ մոլորութեանցդ՝ դարձ փրկութեան։ Այլ ես զամենայն պատգամս Աստուածութեանն կարգեցի և եդի ի լսելիս ձեր առ հասարակ, ոչ թաքուցեալ զօգուտն. ի սկզբանցն մինչև ի վախճան՝ զամենայն պատմեցաք ձեզ։*

*717 «Արդ՝ եկայք ամփոփեսցուք զգանձն Աստուածութեան, զի յայնմանէ պարգևեսցի ձեզ բժշկութիւն ամենեցուն։ Մատուցո՛ւք զդոսա ի հանդիսա, և շինեսցուք վկայարանս ի վերայ դոցա, տաճարս աղօթից միաբանութեան, հանապազորդ խնդրել յԱստուծոյ նախ՝ զհաշտութիւն և զխաղաղութիւն աշխարհի և զողորմութիւն հաւատովք, յուսով և սիրով, և ընդ նմին զկեանս և զարքայութիւն Աստուծոյ։*

*718 «Զի և դուք ազատեսջիք ի ծառայութեանց անձնականութեան գործոցն խաւարի, և զփառս լուսեղէնս Աստուածութեանն ըմբռնեսջիք, աղօթիւք և բարեխօսութեամբ սոցա առ Աստուած. զի և սոքա հանգուսցեն զանձինս ձեր ի տանջանաց պատուհասիցդ եկելոց, և սոքօք հաշտեսջիք ընդ Աստուծոյ։ Զի Աստուածութիւնն, որ բնակեալն է ի սոսա՝ գթասցի ի ձեզ ձերովն ապաշխարութեամբ, խոստովանութեամբ, խոնարհութեամբ, հնազանդութեանն հաւատոց, և կրօնաւորեալ ձեզ պահովք, տնկել ի սիրտս և առնուլ ի միտ՝ սփռել զկամացն խորհուրդս, և արժանի լինել լուացման մկրտութեանն սրբութեան, և սրբոցդ մասին ժառանգութեան՝ լուսոյ վիճակին հասանել և պարծանաց խաչին, «որ կորուսելոցն յիմարութիւն է, և ձեզ որ գտայքդ՝ իմաստութիւն և զօրութիւն և փրկութիւն Աստուծոյ»։*

*719 «Զօրս Որդեգրութեան արժանիս արասցէ Աստուածութեանն, ջնջել զմեղս ձեր և թողուլ զպարտիս ձեր, և ընդունել զմասն*



## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԻՍ ՓՐԿՈՒԹՅԱՆ ԴԱՐՁԸ

### ՍՈՒՐԲ ՆԱՀԱՏԱԿԻ ՁԵՌՔՈՎ

*716 Ղթ. «Արդ, եկեք եղբայրներ, հասարակաց շինության գործը արագացնենք, որ ձեզանից էլ այդ պատուհասները վերանան և ձեզ հասած խռովությանը անմիջապես խաղաղություն հաջորդի, իսկ ձեզ գերող մոլորություններից՝ փրկության դարձ լինի։ Ահա ես աստծու բոլոր պատգամները կարգեցի ու առհասարակ ձեր լսելիքին մոտեցրի՝ չթաքցնելով օգուտը՝ սկզբից մինչև վերջ ամեն ինչ պատմեցի ձեզ։*

*717 Եկեք ամփոփենք աստվածային գանձը, որպեսզի նա ձեզ բոլորիդ բժշկություն պարգևի։ Խաղաղության հասցնենք նրանց [նահատակներին] և նրանց վրա շինենք մատուռներ, միաբանության աղոթքի տաճարներ, շարունակ խնդրելով Աստծուց նախ հաշտություն, խաղաղություն և ողորմություն աշխարհին՝ հավատքով, հույսով ու սիրով և դրա հետ մեկտեղ նաև կյանք ու Աստծու արքայություն։*

*718 Որպեսզի դուք ևս ազատվեք խավարի ամբարտավան գործերի ծառայությունից և Աստծու լուսեղեն փառքն ստանաք՝ սրանց աղոթքով ու բարեխոսությամբ առ Աստված, որ սրանք էլ ձեր անձերը հանգստացնեն ձեզ վրա հասած պատուհասներից ու տանջանքներից և սրանց միջոցով հաշտվեք Աստծու հետ։ Ծրանց մեջ բնակված աստվածությունը կգթա ձեզ վրա, եթե խոստովանությամբ, խոնարհությամբ, հավատքի հնազանդությամբ և պասով (պահք) ճգնելով հաստատեք ձեր սրտերում ու մտադրված լինեք՝ հրաժարվել ձեր կամքի խորհուրդներից, արժանի լինել սուրբ մկրտության լվացմանը և մասնակից դառնալ այս սրբերի ժառանգությանը՝ հասնելով լույսի բախտին ու խաչի պարծանքին «որը կորցնողների համար հիմարություն է և ձեզ, որ գտաք՝ իմաստություն է, զորություն և Աստծու փրկություն»։*

*719 Ձեզ արժանի կանի Աստծուն որդեգրվելու, ջնջելու ձեր մեղքերը, պարտքերը ներելու և ընդունելու ձեզ մոտ եղած սրբերի*

պսակի սրբոցս որ առ ձեզս են։ Զի և դուք լիցիք փառաւորիչք Աստուածութեան, դասուց փառաւորչացն հաղորդեալք ի կցորդութիւն օրհնութեամբ Հոգւոյն սրբոյ, և արժանի լիջիք դուք զխորհուրդն Աստուածութեանն առնուլ։ Զի լուացեալ իցէք յաղտոյն սատանայի, և նա ձերոց ոտիցն գարշապարաց կոխան լիցի։ Եւ դուք մըտեալք և հաղորդեալք իցէք ի հարսանիս Աստուածութեան սիրոյն, ուտել զմիս ճշմարիտ գառին Որդւոյն Աստուծոյ, և ըմպել զարիւն նորա։ Եւ կցորդ իցէք չարչարանացն Աստուծոյ, և հաղորդ փառացըն, և լինիջիք ի մի ոգի և ի նա կցորդիցիք մարմնով և արեամբ նորա։

720 «Եւ վկայքս այս լինիցին ձեզ ողորմութեամբ նորա բերդ ամուր և աշտարակ հզօր ամրութեան և վերակացուք բարեխօսութեամբ, հեղմամբ արեանն քաջացեալք, նահատակութեամբն իւրեանց զձեզ առեալ առ Աստուած մատուցանիցեն. որ շահեալք զձեզ՝ զիւրեանց նահատակութեանն մարտին ցուցին ձեզ զյաղթող զօրութիւնն։

721 «Եւ զի այսօր ընդ երեկս է՝ երթա՛յք ի հանգիստ քնոյ, խաղաղութեամբ ննջեցէք. և ի վաղուէ հետէ փոյթ լիցի ձեզ շինել զյարկս հանգստոցաց։ Զի և սոքա փոխարէն ընդ հողեղէն յարկացն զոր սոցայն շինիցէք աստ՝ պատրաստեսցեն ձեզ յարկս լուսեղէնս յարքայութեանն երկնից. որում ակն ունիմք հասանել բարեխօսութեամբ սրբոցս, ի նոյն ժողով միաբանութեան յարքայութեանն Քրիստոսի։ Զի նորա են փառք և զօրութիւն և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն»։

722 Ճ. Եւ զայս ասացեալ՝ արձակեաց զամբոխն. բայց թագաւորն և մեծամեծքն ոչ երբեք մեկնէին ի նմանէ, զի հարուածեալք էին և ահաբեկեալք. և զցայգ և զցերեկ կային առ նմա, և օթեվանք նոցա առ նմա լինէին ի մէջ այգւոյն, առ դուրս հնձանին. զգեցեալ քուրձ և նստեալ ի վերայ մոխրոյ, և պահեալ լինէին պահս աւուրս վաթսուն և վեց։ Եւ այսպէս երանելին Գրիգորիոս անհանգիստ և անդադար զցայգ և զցերեկ ոչ դադարէր երբեք աւուրս վաթսուն և հինգ, խօսել, խրատել և ուսուցանել և հաստատել։ Իբրև իմաստուն բժիշկ գտանել ջանայր զդեղն օգտութեան. զի նոքա մատուսցեն առ նա զանձինս իբրև զհիւանդացեալս, և նա իբրև զճարտարապետ բժշկեսցէ զանձինս նոցա Աւետարանաւն Քրիստոսի։

723 Համօրէն տեղեկացուցեալ խելամտեցուցանէր. ոչ եթէ ծայրաքաղ ինչ արարեալ օղաբանս կամ սրավարս խօսեցաւ, այլ յստակապատում արարեալ ուսուցանէր ամենեցուն. ի սկզբանց



պսակի մի մասը, որպեսզի դուք էլ Աստծու փառավորիչներ դառնաք, փառավորիչների դասից հաղորդակից լինեք կցորդության, սուրբ Հոգու օրհնությամբ և արժանի լինեք աստվածության խորհուրդը ըմբռնելու։ Լվացվեք սատանայի աղտից, և թող նա ձեր ոտքի գարշապարին կոխան լինի. մտնելով և հաղորդակից դառնալով Աստծու սիրո հարսանիքին, ուտեք Աստծու որդու ճշմարիտ գառան միսը և ըմպեք նրա արյունը։ Մասնակից դառնաք Աստծու չարչարանքներին ու փառքին, հաղորդակից և մեկ հոգի դառնաք ու նրան կցորդ լինեք նրա մարմնով ու արյամբ։

720 Թող այս նահատակները, նրա ողորմությամբ, ձեզ համար ամուր բերդ լինեն, ամրության հզոր աշտարակ և բարեխոսությամբ՝ վերակացուներ, որոնք քաջաբար արյուն թափելով իրենց նահատակությամբ ձեզ տանելով կմոտեցնեն Աստծուն, քանզի նրանք ձեզ պահելով ցույց տվին իրենց նահատակության պայքարի հաղթող զորությունը։

721 Եվ որովհետև այսօր արդեն երեկո է, գնացեք հանգիստ քնելու, խաղաղությամբ ննջեցեք ու վաղվանից թող ձեր հոգսը լինի նրանց հանգստարանների կառուցվածքները շինելը։ Որպեսզի սրանք էլ ձեր այստեղ շինած հողեղեն հարկերի փոխարեն երկնքի արքայության մեջ ձեզ համար լուսեղեն հարկեր պատրաստեն, որին ակնկալում ենք հասնել սրբերի բարեխոսությամբ, Քրիստոսի արքայության մեջ միաբանության ժողովին։ Քանզի նրան են պատկանում փառքը զորությունն ու պատիվը հավիտյանս հավիտենից ամեն»։

722 Ճ. Այս ասելով արձակեց ամբոխը, բայց թագավորն ու մեծամեծները նրա մոտից երբեք չմեկնեցին, քանզի հարված էին ստացել ու ահաբեկվել։ Գիշեր-ցերեկ նրա շուրջն էին և օթևանում էին նրա մոտ այգու մեջ, հնձանի դռանը. քուրձ էին հագել և մոխրի վրա նստած վաթսունվեց օր պաս էին պահում։ Այսպես երանելի Գրիգորը վաթսունհինգ օր, գիշեր-ցերեկ, անհանգիստ ու անդադար խոսում էր, խրատում, ուսուցանում ու հաստատում։ Իբրև իմաստուն բժիշկ ջանում էր օգնության դեղ գտնել, որպեսզի նրանք, հիվանդի նման, իրենց անձը մատուցեն, իսկ նա, իբրև ճարտարապետ, նրանց բժշկի Քրիստոսի Ավետարանով։

723 Ամենքին տեղյակ, խելամուտ էր դարձնում և ոչ թե կցկտուր, փուշ կամ անճիշտ խոսքեր էր ասում, այլ հստակ կերպով ուսուցանում էր՝ սկսելով հենց սկզբից՝ աշխարհ քննող, աշխար-

*անտի սկիզբն արարեալ, յաշխարհահամար յաշխարհապատում արարչութենէ անտի, մինչև ի բուն սրբոցն պատգամախօսացն Աստուծոյ, ամենեցուն իւրաքանչիւր գործոց առաքինութեան և Հոգեպատում պատգամացն ընդելս և ծանօթս կացուցանէր։*

*724 Եւ զարանցն աստուածասիրաց ըստ քրիստոսաւանդ հրահանգելոցն ի ճշմարտութեան, զայր իւրաքանչիւր աստուածամուխ կենօք և վաստակասէր հոգևոր վարուք իւրովք, հանդերձ վկայութեամբ զմիոքի նոցանէ առանձինն յականէ յանուանէ ծանուցանէր. և նոցին յԱստուծոյ ասացելովքն՝ կարգեալս և յարմարեալս ընծայեցուցանէր զամենայն ասացեալ զպատգամսն Հոգւոյն սրբոյ, և ըստ նմին զմեկնութիւն նորուն հանդերձեալ գրեաց նորին զօրութեամբն։*

*725 Իսկ նոքա ժողովեալք կուտեալք հասեալք անթիւ մարդկանն, զմիմեամբք դաւթեալ՝ խնճոյս կացուցանէին՝ ունկնդրութեան վարդապետութեանն մատուցանել զլսելիս. բազմութիւնք անհունք անչափութեամբք, անհնարին շատութեամբ ժողովեալք ի հռչակէն, տեսանել և լսել զանպայման սքանչելիս Աստուածութեանն։ Ժողովեալք յիւրաքանչիւր գաւառաց արք և կանայք և մանկտի, ահաբեկեալք յահէն զօրութեանց արարչութեանն, լինէին հնազանդեալք և ունէին զհաւատս։ Ճեպէին առ ի տեսիլ ցուցական սքանչելեացն, մտերմութեամբ հասեալք լինէին օգտակար խրատուն կենսաբեր քարոզութեանն բանին կենաց աւետեաց Աւետարանին։ Զամենայն յանձն առեալ՝ թագաւորն և իշխանքն փութային առնել զի՛նչ և հրամայիցէ։*

*726 ՃԱ. Արդ՝ ի լնուլ վաթսներորդի վեցերորդի աւուրն, ընդ այգուն առաւօտանալն, մատուցեալ իշխանքն թագաւորաւն և նախարարօքն և խառնիճաղանճ ամբոխիւն հանդերձ, նա և կանանւոյն ժողովեալ մատաղ մանկտովն անմեղօք, երամ երամ և դասադասեալք անկանէին առաջի սրբոյն Գրիգորի, աղաչէին և խընդրէին զբժշկութիւն գտանել հարուածոցն պատուհասին հասելոյ. քանզի հարեալք էին բարկութեան գաւազանաւն յարդար դատաստանէն։*

*727 Մանաւանդ թագաւորն, զի էր նա փոխեալ ի կերպարանս աղբեայոյզ խոզաց. քանզի թաւացեալ էին առ հասարակ ամենայն մարմինքն, և ընդ անդամս ոսկերացն բուսեալ էր խոզանաստեւ իբրև զմեծամեծ վարազաց վայրենեաց. և եղնգունք ծայրից մատանց ոտիցն և ձեռացն կճղակացեալք էին իբրև զգետնաբրիր և զարմատակեր կնճացն։ Նա և պատկեր երեսացին դիմացն շրջեալ էր ի պատկեր և ի կնճիթ զռճանացն յեղեգան բնակելոց. իբրև յիւրոց*



*հապատում արարչից, մինչև Աստծու բուն սուրբ պատգամախոսները, ամենքին ընտելացնելով և ծանոթացնելով առաքինի գործերին ու հոգեպատում պատգամներին։*

*724 Իսկ աստվածասեր այրերին, որոնք Քրիստոսի ավանդներն էին քարոզել ճշմարտությամբ, յուրաքանչյուրին իր աստվածամուխ կյանքով ու վաստակասեր հոգևոր վարքով, վկայությամբ հանդերձ, ամեն մեկին հականե հանվանե ծանոթացնում էր։ Եվ նրանց հաղորդում էր Աստծու խոսքերով կարգավորված ու հարմարեցված սուրբ Հոգու ասած բոլոր պատգամները, նույնպես էլ մեկնությունը գրում էր նրա զորությամբ։*

*725 Իսկ նրանք՝ հավաքված, կուտակված անթիվ մարդիկ, իրար վրա դիզվելով, հանդես էին եկել իրենց ականջները վարդապետության ունկնդրությանը տրամադրելու, անհուն, անչափ բազմություն անասելի շատությամբ հավաքվել էր, նրա հռչակի պատճառով, տեսնելու ու լսելու Աստծու արտակարգ հրաշքները։ Բոլոր գավառներից հավաքված այրեր, կանայք ու մանուկներ, Արարչի զորությունից ահաբեկված, հնազանդվում էին և հավատում։ Աճապարում էին տեսնելու ցուցադրված հրաշքները և սիրով վերահասու լինում Ավետարանի կենաց խոսքի կենսաբեր քարոզության օգտակար խրատներին։ Ամեն ինչ հանձն առնելով, թագավորն ու իշխանները շտապում էին կատարել ինչ որ նա հրամայեր։*

*726 ՃԱ. Արդ՝ երբ լրացավ վաթսունվեցերորդ օրը, և առավոտյան այգը բացվեց, մոտեցան իշխանները, թագավորի նախարարների ու խառնիճաղանջ ամբոխի հետ մեկտեղ, ինչպես նաև կանայք՝ մատաղ, անմեղ մանուկներով, հավաքված, երամ-երամ, խմբավորված՝ ընկնելով սուրբ Գրիգորի առջև, աղաչում էին ու խնդրում հասած պատուհասի հարվածներից բժշկություն գտնել, քանզի զարնված էին արդար դատաստանի բարկության գավազանով։*

*727 Մանավանդ թագավորը աղբ որոնող խոզերի կերպարանք էր ստացել, քանզի ամբողջ մարմինը մազոտվել էր, և մարմնի բոլոր մասերի վրա խոզի մազ էր բուսել վայրի խոշոր վարազների նման, իսկ ոտքերի ու ձեռքերի մատների ծայրի եղունգները կճղակացել էին գետին փորող և արմատակեր վարազի նման։ Նրա երեսի տեսքը նմանվել էր եղեգնուտում բնակվող գազանների պատկերին ու կնճիթին։ Գազանամիտ բնությամբ ու վարքով՝ թագավորական բարձր շուքից ընկած, շրջում էր անբան, խոտակեր գա-*

ի գազանամիտ բարուցն բնութենէ և ի վարուց՝ ի թագաւորութեանն չքոյ սաստկութենէ անկեալ, շրջեալ ի տեսիլ նմանութեան անասուն խոտակեր գազանաց. և շրջէր ի մէջ գազանացն ի ներքս յեղեգանն, կորուսեալ ի միջոյ մարդկանէ։

728 Իսկ իբրև եկն եհաս ելեալ ի բանդէ վիրապին խոստովանողն Քրիստոսի Գրիգորիոս, հասանէր ի տեղի վկայելոցն՝ իբրև ի տեսչութենէն Աստուծոյ ի մի վայր ամենեքեան ժողովեալ՝ այսամտեալք ամենեքին, ի տեղին հասեալք յայտնեցան։ Եւ թագաւորն խոզացեալ՝ մեծաձայն ճչէր, կանչէր, խանչէր բոհբոհելով, փրփրացեալ, դիզացեալ, կնճթակերպ երեսօքն, լեալ ի նմանութիւն չորքոտանւոյ, ընթացեալ յեղեգնաբնակ երամէ գազանացն ի միջոյ՝ հասանէր յայն տեղի։

729 Իսկ երանելին Գրիգորիոս յաղօթս կացեալ՝ խնդրէր յամենապարգևէն Աստուծոյ առ մի նուագ՝ ոչ զկերպարանացն հարուածելոց առողջութիւն, այլ զմտացն ունկնդրութիւն վարդապետութեանն, զգաստանալ, առնուլ ի միտ զասացեալսն Աստուծոյ պատգամացն։ Եւ լեալ բժշկութիւն այսչափ միայն— քաջ լսել և ի միտ առնուլ և համարձակ խօսել։ Եւ մինչև ի վաթսուն և ի վեց օրն զաւուրս վարդապետութեանն՝ ի նոյն կայր կերպարանս, ձորձապատեալ, պատատեալ, ի մէջ բազմամբոխ աշխարհաժողով հրապարակացն կուտակելոց մարդկանն։

730 Իբրև սկսան թաւալել անկանել առաջի նորա և խնդրել բժշկութիւն,— քանզի թագաւորն զատեալ էր կերպարանօքն ի մարդկային բնութենէ ձաղածանակ տեսլեամբն, բայց միայն ի բանիմաստ խօսարանացն և ի լսելոյն.— իսկ նա յետ աղաչանացն տուեալ պատասխանի ասէ ցնոսա, եթէ «Եւ ես ընդ ձեզ իբրև զմի ի ձէնջ խնդրեցից զձեր օգուտն, և դուք սրտի մտօք խնդրեցէ՛ք զձեր բժշկութիւնն, քանզի մարդասէր Աստուածութիւնն ողորմեսցի ձեզ։ Բայց փութացարո՛ւք շինեցէ՛ք զվկայարանսն, զի հանգուսցուք զվկայսս Աստուծոյ, զի և սոքա զձեզ հանգուսցեն ի տանջանաց պատուհասիցդ. և ապրեսջիք յահագին և ի դառն պատրաստեալ հանդերձեալ խոստացեալ դատաստանացն, և արժանի լիջիք արքայութեանն Քրիստոսի»։ Իսկ նոցա խնդրեալ, զի փութով հրամայեսցէ, որպէս և կամիցի զի՛նչ և կամիցի առնել։ Իսկ նորա տեսիլ պատմեալ նոցա՝ ասէ.—

731 ԾԲ. Արդ՝ եկա՛յք պատմեսցուք ձեզ, եղբա՛րք, զցուցական սիրոյն արարչութեան առ ձեզ, որ ինձ երևեցաւ ահաւորութիւն տեսլեանն. Աստուածութեանն խոնարհեալ առ սուրբ վկայս իւր, և զսոսա յանհամեմատն բարձրութիւն, յանպատումն վերացուցեալ,



գանների կերպարանքով և գազանների հետ թափառում եղեգնուտի ներսում՝ մեկուսացած մարդկանցից։

728 Իսկ երբ եկավ վիրապի բանտից ելած, Քրիստոսի խոստովանող Գրիգորը (Գրիգորիոս) և հասավ նահատակների տեղը, աստվածային կարգադրությամբ բոլոր դիվահարները ի մի հավաքվելով այդ տեղում հայտնվեցին։ Թագավորը խոզացած, բարձրաձայն ճչում էր, կանչում, խոզի նման ճղճղում և փրփրած, կաղտաղած կնճիթակերպ երեսով, չորքոտանու նման դարձած, եղեգնաբնակ գազանների երամի մեջ ընթանալով այդ տեղը հասավ։

729 Իսկ երանելի Գրիգորը աղոթքի կանգնելով առաջին անգամ խնդրում էր ամենապարգև Աստծուց ոչ թե դիվահարների կերպարանքին առողջություն, այլ մտքերին՝ ցանկություն վարդապետությունն ունկնդրելու, զգաստանալու և ի միտ առնելու Աստծու ասած պատգամները։ Միայն այսչափ բժշկություն ստացան՝ քաջ լսելու, հասկանալու և համարձակ խոսելու։ Մինչև վարդապետության վաթսունվեց օրերը [թագավորը] նույն կերպարանքն ուներ՝ ձորձապատ, փաթաթված, հրապարակներում կուտակված մարդկանց բազմամբոխ աշխարհաժողովի մեջ։

730 Երբ սկսեցին նրա առջև թավալվել, ընկնել և բժշկություն խնդրել, քանզի թագավորը արտաքինով մարդկային տեսքից հեռացած էր և խայտառակ կերպարանք ուներ՝ պահպանելով միայն բանիմաստ խոսքի և լսելու [ունակությունը], ապա նա աղաչանքներից հետո պատասխան տվեց՝ ասելով՝ թե «ես էլ ձեզ հետ, որպես ձեզանից մեկը, ձեր օգուտը կխնդրեմ և դուք սրտանց խնդրեցեք ձեր բժշկությունը, քանզի մարդասերն Աստված կողորմի ձեզ։ Բայց փութացեք, շինեցեք վկայարանները, որ Աստծու նահատակներին հանգստություն տաք, որպեսզի նրանք էլ ձեզ փրկեն պատուհասների տանջանքներից և ազատվեք պատրաստված սարսափելի ու դառն հանդերձյալ խոստացյալ դատաստանից և արժանի լինեք Քրիստոսի արքայությանը»։ Նրանք խնդրեցին, որ իսկույն հրամայի անել՝ ինչպես և ինչ կկամենա։ Իսկ նա պատմեց նրանց իր տեսիլքը՝ ասելով.

731 ԾԲ. «Արդ՝ եկեք պատմեմ ձեզ, եղբայրներ, Արարչի ձեր նկատմամբ ունեցած սիրո ապացույցը, որն ինձ երևաց ահավոր տեսիլքով։ [Տեսա] Աստծու իջնելը իր սուրբ նահատակների մոտ և սրանց անհամեմատ բարձրանալը, անպատում վերացումը երկնքի արքայության անդուգականության մեջ։ Նա հայտնեց ինձ

յանգուգականութիւն արքայութեան երկնից։ Արդ՝ զլինելոցն ընդ ձեզ զկենցուցաբեր տուչութիւնն զոր շնորհելոց է՝ յայտնեաց ինձ, և երևեալ ինձ տեսիլ աստուածակերպ սքանչելի անպատում, զորոյ փոքր ի շատէ առի զհանդամանսն։

732 Արդ՝ ի հասարակել գիշերիս այսմիկ, զի խոնջեալ դուք ի քուն լեալ էիք ի ծանրութենէ աշխատութեան ի տքնութենէ այտի, և ես դեռ ի զարթման հարեալ էի և մտախորհ կայի վասն յանկարծահաս դիպելոյ անքնին սքանչելեացս ողորմութեան Աստուածութեանն այց առնելոյ ձեզ, արկանելոյ զձեզ ի բովս խրատու հանճարագիտութեան աստուածագէտ վարդապետութեանն։ Զմտաւ ածէի և զսէր վկայիցն առ իւրեանց սիրեցեալ արարչութիւնն, և զփոխարէն դարձուածսն անպատումսն պատրաստեալս նոցա, թէ ո՞րպիսիք իցեն։

733 Յանկարծակի եղև ձայն սաստկութեան, բոմբիւն որոտման, ահաւոր թնդիւն, իբրև զձայն եռանդան կուտակելոյ ծովու ալեաց խռովութեան։ Եւ բացաւ խորանաշէն յարկն հաստատութեան երկնից. և իջեալ այր մի ի կերպարանս լուսոյ. կոչեաց զանուն իմ և ասէ. Գրիգորիէ. և իմ նայեցեալ տեսի զկերպարանս նորա, և զարհուրեալ դողացեալ յերկիր կործանեցայ։ Եւ ասէ ցիս. Նայեա՛ց դու ի վեր, և տե՛ս զսքանչելիս զոր ցուցանեմ քեզ։

734 Եւ իմ նայեցեալ՝ տեսի բացեալ զհաստատութիւն երկնից, և զջուրսն որ ի վերայ նորա՝ ըստ հաստատութեանն պատառելոյ, զի ըստ նմանութեան ձորոց իբրև զկատարս լերանց՝ յայս կոյս յայն կոյս բաժանեալ դիզեալ կային անբաւութիւնք անկշռելութեան ական տեսանելոյ։ Եւ լոյսն հոսեալ ի վերուստ ի վայր մինչև յերկիր հասանէր. և ընդ լուսոյն՝ զօրք անչափք լուսեղէնք երկթևեանք ի տեսիլ մարդկան, և թևքն իբրև զհուր։ Եւ ըստ նմանութեան մանրամաղ փոշւոյ հիւլէի, որ ի ժամանակս արեգակնակէզ գարնանւոյն ըստ պատուհանացն կամ լուսանցոյց երդոցն ի շողսն խաղասցէ բազմութիւն մանրամաղ փոշւոյն, նոյնպէս և զօրքն ընդ լուսոյն լցին զաւ ի ստորևս ամենայն, և առաջի ցսկեալ յառիջանէին լուսոյն, և զօրքն ընդ նմին։

735 Եւ մի ահաւոր տեսիլ մարդոյ բարձր և ահեղ, որ զառաջն ունէր և զէջսն ի վերուստ մինչև ի խոնարհ առաջապահ յառաջեալ, և ի ձեռինն իւրում ուռն մի մեծ ոսկի. և այն ամենայն զհետ խաղացեալ գային։ Եւ ինքն սլացեալ խոյացեալ գայր՝ ըստ նմանութեան արագաթև արծուոյ. և եկն էջ եհաս մինչև մօտ ի յատակս



գալիք կենսաբեր պարգևը, որը շնորհվելու է ձեզ, և ինձ աստվածակերպ սքանչելի անպատում տեսիլք երևաց, որը փոքր ի շատէ հանգամանալից կպատմեմ.

732 Այս գիշերվա կեսին, երբ դուք աշխատության ծանրությունից ու տքնությունից խոնջացած քուն էիք մտել, ես դեռ արթուն էի մնացել ու մտախոհ էի աստվածային ողորմության անքննին հրաշքների հանկարծակի կատարվելու, նրա այցի և ձեզ աստվածագետ վարդապետության իմաստուն խրատների բովի մեջ ներգրավելու մասին։ Մտածում էի նաև նահատակների իրենց սիրեցյալ Արարիչի հանդեպ ունեցած սիրո մասին և նրանց համար փոխարենը պատրաստված անպատում հատուցումը և թե ինչպիսին է դա լինելու։

733 Հանկարծակի սաստիկ ձայն եղավ, որոտման բոմբյուն, ահավոր թնդյուն, ծովի խռովյալ ալիքների սաստիկ ձայնի նման։ Բացվեց երկնքի հաստատության խորանաշեն ծածկը, և իջավ մի այր լույսի կերպարանքով, կանչեց իմ անունը ու ասաց. «Գրիգոր»։ Նայեցի, տեսա նրա կերպարանքը և զարհուրած դողալով գետին ընկա։ Ասաց ինձ. «Դու վեր նայիր և տես հրաշքները, որ քեզ ցույց եմ տալու»։

734 Եվ ես նայելով տեսա երկնքի հաստատությունը բացված ու նրա վրայի ջրերը, նույն ձևով ճեղքված ձորերի ու լեռների կատարների նման այս ու այն կողմ բաժանված, դիզված էին աչքի տեսողության համար անբավ ու անկշռելի։ Իսկ լույսը հոսելով վերևից ներքև մինչև երկիր էր հասնում և լույսի մեջ տեսա մարդկային կերպարանքով, լուսեղեն, երկթև անչափ զորք՝ թևերը կրակի նման։ Մանր փոշու հյուլեի նմանությամբ, որ արեգակնակեզ գարնան ժամանակ պատուհանների կամ երդիկների լուսանցույցի վրա շողերի մեջ խաղում է, նույնպես և լուսեղեն զորքը լցրեց ամբողջ երկիրը, իսկ իջնող լույսը առաջը ցցվեց զորքի հետ մեկտեղ։

735 [Տեսա] մարդկային մի ահավոր կերպարանք, բարձր ու ահեղ, որն առջևից էր ընթանում և վերևից մինչև ներքև վայրէջքի առաջապահն էր, ձեռքին ուներ ոսկե մի մեծ կռան, և բոլորը նրա ետևից էին գալիս։ Ինքը գալիս էր սլանալով, խոյանալով արագաթռիչ արծվի նման ու իջավ հասավ մինչև երկրի հատակը, քաղաքի մեջտեղը, խփեց լայնատարած գետնին և մեծ ու անչափ թնդյուններ հնչեցին անդունդների սանդարամետից (դժոխք)։ Ամ-

երկրիս, ի շինամէջ քաղաքին, և բաղխեաց զթանձրութիւն լայնատարած գետնոյն, և մեծ և անչափ դրնդիւնքն հնչեցին ի սանդարամետս անդնդոց. և ամենայն երկիր յերևելիս, յական տեսանելեաց բաւելոյ, հարթ հաւասար դաշտաձև յատակեցաւ։

736 Եւ տեսանէի ի մէջ քաղաքիս, մօտ յապարանսն արքունի, խարսխաձև ճախարակաձև խարիսխ ոսկի, մեծութեամբ իբրև զմեծ մի բլուր, և ի վերայ նորա սիւն մի հրեղէն բարձր մինչև յոյժ, և ի վերայ նորա թակաղաղ մի ամպեայ, և խաչն լուսոյ ի վերայ նորա։

737 Եւ նայեցայ, և տեսանեմ այլ խարիսխս երիս. մի՝ ի տեղւոջն ուր վկայեաց սուրբն Գայիանէ երկուք ընկերօքն. և մի՝ ի տեղւոջն ուր վկայեաց սուրբն Հռիփսիմէ երեսուն և երկու ընկերօքն, և մի՝ ի տեղւոջ հնձանին։ Եւ այն խարիսխք՝ կարմիրք էին ի գոյն արեան, և սիւնք ամպեղէնք, և խոյակք հրեղէնք. և ի վերայ սեանցն երից խաչք լուսեղէնք ըստ նմանութեան տեառնանիշան խաչին. և այս սեանց խաչքն հաւասարք էին այնր լուսեղէն սեանն թակաղաղի, զի նա բարձր էր քան զնոսա։ Եւ ի չորեցունց սեանցն ի վերայ խաչիցն կամարք զարմանատեսք ի միմեանս կապեցան. և ի վերայ այնորիկ տեսի գմբեթաձև խորանարդ ամպեղէն շինուած աստուածակերտ զարմանալի։ Եւ ի ներքոյ խորանին ի վերայ կամարացն տեսի զսուրբ վկայսս զայսոսիկ զերեսուն և զեօթն, իբրև ի լուսաւոր կերպարանս սպիտակութեան հանդերձանօք, զոր ոչ բաւեմ պատմել։

738 Եւ ի կատար շինուածոյն տեսանէի աթոռ զարմանալի աստուածակերտ սքանչելի հրեղէն, և զխաչն տէրունական ի վերայ նորա. զորով փարեալ լոյսն համատարած՝ խառնեցաւ ընդ ճառագայթս խաչին, և մածեալ ի նոյն միացաւ. և սիւն գործեաց լոյսն շողացեալ, և ծագեաց ի մէջ ներքին սեանցն խարսխաց։

739 Եւ բղխեաց աղբիւր յորդաբուղխ, և հոսեցաւ ծաւալեցաւ ընդ դաշտս ամենայն, և ելից առ հասարակ՝ որչափ ակն բաւեաց։ Եւ եղև ծով լի և կապուտակագոյն, և երկնագոյն երևեցան դաշտք առ հասարակ։ Եւ տեսի բազմութիւն հրեղէն սեղանոց անչափ բազմութեամբ. և սիւն մի մի առ սեղան, և խաչ մի մի ի վերայ նորա. և իբրև զաստեղս բազմութեամբ՝ այնպիսի երևեալք և անչափ փայլեալք։

740 Եւ տեսի հօտս անթիւս այծեաց ի գոյն սևութեան, որք անցեալք ընդ ջուրն՝ յօդիս դարձան. և զգոյնս իւրեանց ի կերպարանս սպիտակութեան շրջեցին, և լուսակիզն ասրն փայլէր առ հա-



բողջ երևացող երկիրը, աչքին տեսանելի լինելու չափ, հարթ հավասար դաշտաձև տափակացավ։

736 Եվ տեսա քաղաքի մեջ, արքունի ապարանքի մոտ, ճախարակաձև ոսկե խարիսխ, խոշոր բլրի մեծությամբ և նրա վրա հույժ բարձր հրեղեն սյուն, իսկ վրան ամպե խոյակ լուսեղեն խաչով։

737 Նայեցի ու տեսա երեք այլ խարիսխներ. մեկը այն տեղում, ուր նահատակվեց սուրբ Գայանեն երկու ընկերների հետ, մեկը այն տեղում, ուր սուրբ Հռիփսիմեն նահատակվեց երեսուներկու ընկերների հետ և մեկը՝ հնձանի տեղում։ Այդ խարիսխները կարմիր էին արյան գույնով, սյուներն ամպեղեն էին և խոյակները՝ հրեղեն։ Երեք սյուների վրա կային լուսեղեն խաչեր, տերունական խաչի նմանությամբ և այս սյուների խաչերը նման էին այն լուսեղեն սյունի խոյակին, որը նրանցից բարձր էր։ Չորս սյուների խաչերի վրա զարմանատես կամարներ միմյանց կապվեցին և դրա վրա գմբեթաձև խորանարդ ու աստվածակերտ, զարմանալի ամպեղեն շինվածք տեսա։ Խորանից ներքև կամարների վրա տեսա այս երեսունյոթ սուրբ վկաներին սպիտակ հանդերձների լուսավոր կերպարանքով, որն անկարող եմ պատմել։

738 Շինվածքի կատարին տեսա զարմանալի, աստվածակերտ, սքանչելի, հրեղեն աթոռ և նրա վրա կար տերունական խաչը։ Համատարած լույսը նրան պարուրելով խառնվեց խաչի ճառագայթներին և կպչելով միաձուլվեց։ Շողացող լույսը սյուն դառնալով ցայտեց խարիսխների ներքին սյուների մեջ։

739 Եվ հորդաբուխ աղբյուր բխեց, հոսեց, ծավալվեց բոլոր դաշտերում ու ամեն ինչ լցրեց, որչափ աչքը տեսնում էր։ Եղավ լի ու կապուտակագույն ծով, և դաշտերն առհասարակ երկնագույն երևացին։ Տեսա հրեղեն սեղաններ, անչափ բազմությամբ և ամեն մի սեղանի վրա, մեկական սյուն՝ վրան մեկական խաչով, որոնք իբրև աստղերի բազմություն երևացին և անչափ փայլեցին։

740 Տեսա սև գույնի այծերի անթիվ հոտեր, որոնք ջուրն անցնելով ոչխարներ դարձան, իրենց գույնը սպիտակության փոխվեց և ոչխարի լուսեղեն բուրդը առհասարակ փայլում էր, ու նրա ճառագայթները փայլատակում էին։ Մինչդեռ նորից նայում էի, հոտերը հանկարծակի ծնվեցին ու բազմացան, ծնունդներն ամեն կողմ լցրին, և ծնված գառները ամենքը լուսագեղմ էին։ Հանկարծ այլ ծնունդներ շատացան, բազմացան, և կեսն ընկնելով գետի մեջ ջրի



27—1461

սարակ, մինչև ճառագայթք հատանէին ի նոցանէն։ Եւ մինչ դեռ նայէի ես՝ յանկարծակի ծնան հօտքն և բազմացան, և ծնունդքն լցին զվայրսն. և ծնեալ գառինքն ամենայն լուսակիզն էին։ Իսկ յանկարծ այլ ծնունդք յաճախեցին բազմացան, և կէսքն անկեալ ելին յայնկոյս ջրոյն։ Եւ գառինքն գայլք եղեն թուխք, և յարձակեցան ելին ի մէջ հօտիցն, և սկսան կոտորել, և եղեն արեան ճապաղիք։ Եւ մինչ դեռ նայէի՝ և տեսի, և բուսան թևք հօտիցն, և եղեն թևաւորք, և վերացան խառնեցան ի զօրս լուսեղէնս։ Եւ յարեաւ հեղեղ հրեղէն, և արկեալ տարաւ զգայլսն։

741 Եւ ես նայեցեալ զարմացեալ կայի։ Եւ այրն, որ յառաջնումն կարդաց զանուն իմ և ցուցանէր ինձ՝ ասէ ցիս, թէ «Այր դու, զի՞ կաս զարմացեալ, և ո՞չ ի միտ առնուս զմեծամեծս Աստուծոյ»։ Եւ ես ասեմ. «Ո՞րպէս, Տէր»։ Եւ ասէ ցիս. «Տեսիլ ցուցաւ քեզ այս՝ զի ի միտ առցես։ Զի բացեալ են աւադիկ երկինք՝ գիտեա՛ զի բացեալ են դրունք մարդասիրութեանն Քրիստոսի առ իւր արարածս։ Եւ ձայն բարբառոյ որոտմանն, գիտեա՛ զի իջանէ անձրև ողորմութեանն և գթութեանն Աստուծոյ։ Բացեալ են աւանիկ դրունք երկնից, բացան և ջուրքն որ ի վերայ նորա, զի մի՛ արգել լիցի այսմ աշխարհի մարդկան՝ ելանել ի վեր։ Զի սուրբ վկայքս այս որ աստ վկայեցին՝ հիւսիսական կողմանցս ճանապարհ գործեցին. զի ինքեանք ելին և այլոց շաւիղս ուղղեցին։

742 Աւասիկ լոյսս ղի ելից զվայրս՝ այս քարոզութիւն Աւետարանին է, որ և ղկողմն հիւսիսոյ լնու։ Եւ զօրք լուսեղէնք ցանկացեալ փափագեցին իջանել ի հոտ անույշ ծաղկաձև վարդագոյն արեան վկայիցն, նա՛ այսուհետև խառնելոց են ընդ մարդկան ի բնակութիւն բազմութիւնք հրեշտակաց։

743 Իսկ այրս ահաւոր և շքեղաւոր, որ ղառաջսն ունի զլուսոյն և զուռն ոսկի ի ձեռին իւրում, և բաղխեաց զսանդարամետսն՝ այս տեսչութիւնն Աստուծոյ է, «որ հայի յերկիր, և տայ դողալ. մերձի ի լերինս, և ծխին»։ Այն ահ Աստուածութեանն հարթեաց կործանեաց ընկէց զմոլորութիւնս յերկրէ։ Այն զի հնչեաց երկիր՝ զձայն ծառայութեանն հնազանդութեան բարբառեցաւ։

744 Որոյ սեանն խարիսխն ոսկի է, և նորուն սիւնն հրեղէն, և թակաղաղն ամպեայ, և խաչն լուսեղէն ի վերայ նորա. ոսկի խարիսխն՝ վէմն հաստատութեան անշարժութեան է. և սիւնն հրեղէն՝ կաթողիկէ եկեղեցի է, որ ժողովէ զամենայն ժողովուրդս ի մի միաբանութիւն հաւատոց ի ներքոյ թևոց իւրոց։ Եւ թակաղաղն ամ-



այն կողմը ելան։ Գառները դարձան թուխ գայլեր և գնացին հարձակվեցին հոտերի վրա, սկսեցին կոտորել, և արյան ճապաղիք եղավ։ Մինչդեռ նայում էի, տեսա, որ հոտերին թևեր բուսան և դարձան թևավորներ ու վերացան խառնվեցին լուսեղեն զորքերին։ Հրեղեն հեղեղ բարձրացավ ու վերցրեց տարավ գայլերին։

741 Իսկ ես նայելով զարմանում էի։ Եվ այն այրը, որն առաջ իմ անունն էր կանչել, ցույց տվեց ինձ և ասաց, թե «ով մարդ, ինչո՞ւ ես զարմացած և չե՞ս ըմբռնում Աստծու մեծամեծ գործերը»։ Ասացի. «Ինչպե՞ս, Տեր»։ Ասաց ինձ. «Այս տեսիլքը քեզ ցույց տրվեց, որպեսզի ըմբռնես։ Եթե ահավասիկ բացված է երկինքը, գիտեցիր, որ բացված են Քրիստոսի մարդասիրության դռները իր արարածների համար։ Իմացիր, որոտման հնչող ձայնը այն է, որ Աստծու գթության ու ողորմության անձրևն է իջնում։ Բացված են ահա երկնքի դռները, բացված են և նրա վրա եղած ջրերը, որպեսզի արգելքներ չլինեն այս աշխարհի մարդկանց վեր ելնելու։ Այս սուրբ նահատակները, որ այստեղ նահատակվեցին, հյուսիսային* կողմերին ճանապարհ բացին, քանի որ իրենք ելան և այլոց շավիղներն ուղղեցին։

742 Ահա լույսը, որ այս վայրերը լցրեց՝ Ավետարանի քարոզությունն է. այն լցնելու է նաև հյուսիսի կողմը։ Եվ լուսեղեն զորքերը շատ փափագեցին իջնել նահատակների վարդագույն արյան անույշ, ծաղկանման բուրմունքի համար. մանավանդ այսուհետև հրեշտակների բազմությունները խառնվելու են մարդկանց հետ բնակվելու համար։

743 Իսկ ահավոր ու շքեղ այրը, որ գնում էր լույսի առջևից՝ ոսկի կռանը իր ձեռքին, հարվածեց սանդարամետին, ապա դա Աստծու նախախնամությունն է, «որը նայում է երկիր և դողացնում, մերձենում է լեռներին, և նրանք ծխում են»։ Աստվածային այդ ահը հարթեց, կործանեց և տապալեց մոլորությունը երկրից։ Իսկ այն, որ երկրի վրա հնչեց, ապա դա ծառայության հնազանդության ձայնն էր, որ խոսեց։

744 Իսկ սյունը, որի խարիսխը ոսկի է և ինքը՝ հրեղեն, խոյակը ամպեղեն և վրան լուսեղեն խաչ, ապա այդ ոսկի խարիսխը հաստատության անշարժ վեմն է, հրեղեն սյունը կաթողիկե եկեղեցին է, որն իր թևերի տակ հավաքում է բոլոր ժողովուրդներին հավատքի մի միության մեջ։ Ամպե խոյակը ընդունելու է արդար-

*պեայ՝ որ ընդունելոց է զպարգևսն, յորժամ թռիցեն ի տեառնագալստեանն ընդ առաջ նմա վերանալ։*

*745 Իսկ խաչն լուսաւոր ի նմա՝ է ինքն մեծ քահանայապետութիւնն ի մէջ ժողովրդոցն, օրինակ Քրիստոսի պատկերին մարմնացելոյ քահանայապետութեանն օծութեան Աստուածորդւոյն։ Եւ տեղին այն լիցի տաճար Աստուծոյ, և տուն աղօթից խնդրուածոց ամենայն հաւատացելոց, և աթոռ քահանայապետութեանն։*

*746 Եւ խարիսխքն երեք, որ կարմիրքն էին ի գոյն արեան՝ վասըն չարչարանացն եկելոց նեղութեանց մահու համբերութեանն. զի զմահն իւրեանց արարին խարիսխ ճշմարտութեան հաւատոց, հեղմամբ արեան իւրեանց։ Եւ սիւնքն՝ ամպեղէնք յայն սակս երեւեցան, վասն զի ամպն ունի զթեթևութիւն արագութեան ի յարութեանն յերկինս վերանալոյ։ Եւ թակաղաղն՝ հրեղէն, զի բնակութիւն նոցա լինելոց է ի հուր Աստուածութեանն լուսոյն։*

*747 Եւ խաչքն ունին զչարչարանս վկայիցն, որ նմանեցին Տեառն չարչարանացն, և մեռան փոխանակ նորա. զի Աստուծով կեցին և ընդ Քրիստոսի խաչեցան, և կենդանի է Քրիստոս յոսկերս նոցա՝ ցուցանել ամենեցուն զկենդանութիւն նոցա. յայտնի առնել զհոտ անուշութեան գիտութեան իւրոյ ի նոցանէ և հռչակել զառաքինութիւնս նոցա ընդ տիեզերս։ Զի սպանին նոքա զմարմինս երկրաւորս, և կախեցին զտէրունական խաչէն. եղեն Տեառն իւրեանց չարչարակից, նոյնպէս և փառացն և զօրութեանն լինելոց են հաղորդք։*

*748 Այլ առաջին խաչն որ ցուցաւ քեզ՝ ունի զպարծանս քահանայութեան պատուին, պանծացեալ ի խաչն Քրիստոսի։ Իսկ երեք ևս, որ ունէին զտեղի վկայարանացն հանգստի սրբոցն՝ զի ի տեղւոջ հեղման արեանն իւրեանց շինեսցին վկայարանք հանգըստի ոսկերաց իւրեանց։ Իսկ զի բարձր է սիւնն առաջին՝ զի մեծ և բարձր է պատիւ կաթողիկէ եկեղեցւոյ քան զամենայն բարձրութիւնս սրբոցն։ Իսկ կամարքն որ ի սեանց անտի ի միմեանս կապէին՝ այս ինքն է հաւասարութիւն միաբանութեան կաթողիկէ եկեղեցւոյ։ Իսկ խորանն ի վերայ՝ ունի զօրինակ վերնոյ քաղաքին, զժողովարանն միաբանութեան արքայութեանն երկնից։*



*ներին, երբ տիրոջ գալստյան ժամանակ թռչեն նրան ընդառաջ՝ բարձրանալու։*

*745 Նրա վրայի լուսավոր խաչը ինքը մեծ քահանայապետությունն է ժողովուրդների մեջ, օրինակն է Քրիստոսի մարմնացյալ պատկերի, Աստվածորդու քահանայապետության օծության։ Այդ տեղում թող Աստծու տաճարը լինի, բոլոր հավատացյալների աղոթքի ու խնդրանքների տունը և քահանայապետության աթոռը։*

*746 Իսկ երեք խարիսխները, որոնք արնագույն կարմիր էին, [նահատակների] նեղությունների, չարչարանքների ու մահվան համբերության համար են, քանզի իրենց մահը հավատքի ճշմարտության խարիսխ դարձրին՝ իրենց արյունը թափելով։ Ամպեղեն սյուներն այն բանի համար երևացին, որ ամպը հարության, երկինք վերանալու թեթև արագությունն ունի։ Եվ հրեղեն խոյակը նշանակում է, որ նրանց բնակությունը աստվածային լույսի հրի մեջ է լինելու։*

*747 Խաչերը խորհրդանշում են նահատակների չարչարանքը, որը նման է տիրոջ չարչարանքներին, և [նրանք] մեռան նրա փոխարեն, քանի որ Աստծով ապրեցին ու Քրիստոսի հետ խաչվեցին, և Քրիստոսը կենդանի է մնում նրանց ոսկորների մեջ, որ բոլորին ցույց տա նրանց կենդանությունը՝ հայտնի դարձնելով նրանցից ստացված իր գիտության անուշ բուրմունքը և հռչակելով նրանց առաքինությունը ամբողջ աշխարհում։ Քանզի նրանք սպանեցին երկրավոր մարմինները և կախեցին տերունական խաչից. չարչարակից եղան իրենց Տիրոջը, նույնպես հաղորդակից են լինելու նրա փառքին ու զորությանը։*

*748 Եվ առաջին խաչը, որ քեզ ցույց տրվեց, քահանայական պատվի պարծանքն է՝ Քրիստոսի խաչի փառավորությամբ։ Իսկ մյուս երեք [խաչերը] տեղադրված էին սրբերի գերեզմանների մատուռների (վկայարաններ) տեղում, որպեսզի նրանց արյան թափված տեղում շինվեն իրենց ոսկորների հանգստյան մատուռները։ Իսկ որ առաջին սյունը բարձր է, նրանից է, որ կաթողիկե եկեղեցու պատիվը ավելի մեծ ու բարձր է, քան սրբերի ամեն բարձրությունները։ Կամարները, որոնք սյուներն իրար էին կապում, կաթողիկե եկեղեցու հավասար միաբանության նշանն են։ Իսկ վրայի խորանը վերին քաղաքի և երկնքի արքայության միաբան ժողովարանի օրինակն է։*

749 Եւ զի երևէին քեզ վկայքն՝ գիտեա՛ զի մահս ժամանակեան է, ասէ, և կենդանութիւն նոցա յաւիտենական, փառաւորեալ ի փառս Աստուածորդւոյն. վասն այսորիկ և զօրինակ խաչի նորա տպաւորեալ յանձինս նոցա։

750 Եւ ի վերայ կատարոյ շինուածոյն զոր տեսանես, նոյն ինքն աթոռ ամենազօր բնութեան Աստուածութեանն, բարձրութեան ինքնութեանն. զի նա ինքն գլուխ է եկեղեցւոյ սրբոյ և կատարիչ ամենայն բարութեանց, և ի նա ամենայն շինուածն պատշաճի, և աճէ զաճումն Աստուծոյ, յոր ամենայն մարմին յօդիւք և խաղալեօք և անդամօք հաստատեալ և կազմեալ։

751 Եւ լոյսն զի փարի զխաչիւն՝ այս ինքն Հոգի Աստուածութեանն որ զՈրդին փառաւոր առնէ։ Եւ զի խառնեցաւ ընդ ճառագայթս նորա՝ այս ինքն զի յՈրդւոյն առնու և պատմէ սիրելեաց իւրոց։ Եւ զի միացան ի նոյն՝ զի մի է բնութիւն Աստուածութեանն։ Եւ զի ծագեաց լոյսն ի մէջ սեանցն չորեցունց, և բղխեցոյց զաղբիւրն յորդաբուղխ՝ զի ի կաթողիկէ եկեղեցւոյն շնորհք Հոգւոյն ի մէջ վկայելոցն և ի մէջ քահանայութեանն բղխելոց է աղբիւր մկրտութեան, լուանալ զաղտ ոգւոյն մարմնովքն հանդերձ։ Եւ այն զի յորդեաց ելից զբազում վայրս՝ զի լինելոց է փրկութիւն մկրտութեամբ բազում ժողովրդոց։ Եւ զի երկնագոյն երևեցան դաշտք ամենայն՝ այս ինքն է՝ զի երկիրս իբրև զերկինս լինելոց է, խառնուրդք հրեշտակաց և մարդկան։

752 Եւ հրեղէն սեղանոցն բազմութիւնք որ քեզդ երևին՝ ճշմարտիւ իսկ լինելոց են սեղանք Աստուծոյ, որ զքաւութիւն բաշխեն ամենեցուն։ Եւ հրեղէն յայն սակս երևեցաւ, զի պաշտօն Հոգւոյն եղիցի փառօք։ Եւ սիւնք մի մի առ սեղան՝ պաշտօն աղօթից քահանայութեան։ Եւ խաչք ի վերայ նոցա, այս ինքն զի սուրբ անունն Քրիստոսի փառաւոր լիցի ընդ ամենայն տեղիս։ Եւ զի բազում էին իբրև զաստեղս՝ զի պաշտամունք սրբութեանն իբրև զաստեղս բազմասցին։

753 Եւ հօտք բազմութեան այծեացն սևութեան, որք յիջանել ի ջուրսն յօդիս դարձեալ սպիտակութեան՝ աւադիկ աջն Աստուածութեան շնորհացն ի ձեռն քահանայապետութեան հասանելոց է. յորոյ ձեռն բղխեսցէ աղբիւր մկրտութեան, ի թողութիւն քաւութեան բազում մեղաւորաց։ Եւ որ լուսակիզն ասր նոցա փայլեալ պայծառացեալ էր՝ այս ինքն՝ մկրտեալքն լոյս զգենլոց են, և արքայու-



749 Եվ քանի որ նահատակները քեզ երևացին, իմացիր, որ, ասում է՝ այս մահը ժամանակավոր է, իսկ նրանց կենդանությունը՝ հավիտենական, փառավորված ի փառս Աստվածորդու, որի համար էլ խաչի օրինակը իրենց անձի վրա են տպավորել։

750 Շինվածքի գագաթին, որը տեսնում ես, նույն ինքը բարձր ինքնագո Աստծու ամենազոր էության աթոռն է, քանզի նա ինքը սուրբ եկեղեցու գլուխն է և ամեն բարությունների կատարիչը։ Նրան պատշաճում է ամեն շինվածք, և աճում է նա աստվածային աճով, ու նրանով են բոլոր մարմինները հոդերով, խաղերով, անդամներով հաստատված ու կազմված։

751 Խաչին փարած լույսը հենց նույն աստվածային Հոգին է, որը փառավորում է Որդուն։ Եվ խառնվեց նրա ճառագայթներին, քանզի ինքը Որդուց է վերցնում և պատմում իրեն սիրողներին։ Իրար միացան, քանզի մեկ է աստվածային էությունը։ Եվ լույսը ծագեցրեց չորս սյուների մեջ ու հորդաբուխ աղբյուր բխեցրեց, քանզի կաթողիկե եկեղեցուց են շնորհները, իսկ նահատակների ու քահանայության մեջ բխելու է մկրտության աղբյուր՝ լվանալու հոգու աղտը մարմնականով հանդերձ։ Եվ այն, որ հորդեց, լցրեց շատ վայրեր, բազմաթիվ ժողովուրդների մկրտությամբ փրկություն է լինելու։ Իսկ եթե երկնագույն երևացին բոլոր դաշտերը, նշանակում է, որ երկիրը երկնքի նման է լինելու, որպես հրեշտակների ու մարդկանց խառնուրդ։

752 Հրեղեն սեղանների բազմությունը, որ քեզ երևում է, արդարև իսկ լինելու են Աստծու սեղաններ, որոնք քավություն կբաշխեն ամենքին։ Եվ այն բանի համար հրեղեն երևացին, որպեսզի Հոգու պաշտամունքը փառքով լինի։ Սեղանների վրա մեկական սյուները քահանայության աղոթքի ժամերգություններն են, իսկ նրանց վրայի խաչերը Քրիստոսի սուրբ անունը ամեն տեղ փառավոր դարձնելու համար են։ Նրանց՝ աստղերի նման շատ լինելը այն բանի համար է, որ սրբության պաշտամունքը աստղերի չափ բազմանա։

753 Սև այծերի բազմության հոտերը, որոնք ջուրն իջնելիս սպիտակ ոչխարներ դարձան [նշան են այն բանի], որ ահա աստվածային շնորհների աջը հասնելու է քահանայապետության միջոցով, որի ձեռքը մկրտության աղբյուր է բխեցնելու բազմաթիվ մեղավորների թողության, քավության համար։ Իսկ նրանց լուսեղեն բուրդը, որ փայլած, պայծառացած էր, նշանակում է, որ մկրտված-

թեանն խոստացելոց արժանաւոր լինելոց։ Եւ զի ծնան հօտքն և բազմացան և լցին զվայրսն՝ այս ինքն է՝ զբազում ժամանակս աճեցուցանէ զքարոզութիւնն, և ծնանին նոր ծնունդք նորոգութեան, և բազմացուցանէ զմկրտութիւնն։

754 Եւ զի կէսքն անկեալ ելեալ էին հօտքն ընդ ջուրսն, ի նոյն կողմն ուստի անցեալն էին՝ այս ինքն է՝ ի յետին ժամանակս անօրինելոց են, անկեալք ի ճշմարտութենէն. ընկենլոց են յետս զդրոշմ ուխտին սրբութեան Աստուածութեանն, և բազումք թողուն զուխտն սրբութեան։ Եւ ի գառանցն լինելոց են գայլք, որ կոտորելոց են զսուրբ գառինս. այս ինքն որ գնան ի ճշմարտութենէ անտի և յուխտէ քահանայիցն՝ լինելոց են գայլք, և հանեն ճապաղիս արեան գառանցն, այս ինքն ուխտին և քահանայութեանն, և խռովութիւն ժողովրդոցն։ Իսկ որ համբերենն միամտութեամբ ի գառանցն, ի ժողովրդոցն կամ ի քահանայիցն՝ թեւս առնուցուն և յարքայութիւնն Քրիստոսի վերանան։ Իսկ որ զմիտս գայլոցն կամ զգործս յափշտակութեան նոցա ունիցին՝ ի հուրն անշէջ մատնեսցին։

755 Եւ դու, ասէ ցիս այրն, պի՛նտ կաց, քա՛ջ լեր, զգո՛յշ լեր. զի գործ ի ձեռն եկեալ հասեալ է քեզ. զի քեզ բարութիւն դիւրաւ լինելոց է, զի և դու ընդ ճշմարիտ մշակս վարձս առցես յանպատում պարգևացն Քրիստոսի։ Արդ՝ զգո՛յշ լեր աւանդիդ, որ քեզդ հաւատացաւ ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ. շինեսջի՛ր զտաճար անուանն Աստուծոյ ի տեղւոջն որ ցուցաւ քեզ, ուր սիւնն հրեղէն ունէր զոսկի խարիսխն, և զվկայարանս սրբոցն ի տեղիսն՝ ուր զենան ինքեանք ի կենդանութիւն Աստուածութեան յուսոյն։ Զի բժշկեսցին հարուածեալքդ, և քարոզութեանն յաջողուած յառաջադէմ լիցի հանապազորդութեամբ օր ըստ օրէ, հասանել ամենեցուն ի չափ կատարման հասակի հաւատոցն Քրիստոսի»։ Եւ զայս ասացեալ՝ շարժումն եղեալ, և ընդ առաւօտանալն ծածկեցաւ տեսիլն։

756 ՃԳ. «Արդ՝ ամենարարն, ամենաստեղծն, ամենահաստիչըն, ամենիմաստն, ամենատէրն, ամենակալն, ամենագիտն, ամենաբժիշկն խրատեաց զձեզ, զի Աստուածութեանն իւրոյ զձեզ մերձաւորս արասցէ։ Վասն այսորիկ ցուցեալ ձեզ մեօք զկենաց ճանապարհս և զփրկութեան հանդամանս, զթողութիւն միանդամայն ածել հասուցանել ի վերայ. վասն այսորիկ զտեսիլ հանդերձելոցն



ները լույսով են զգեստավորվելու և խոստացված արքայությանը արժանի են լինելու։ Եվ եթե հոտերը ծնեցին, բազմացան և [բոլոր] վայրերը լցրին, ապա նշանակում է երկար ժամանակ աճեցնելու է քարոզությունը, և լինելու են նոր ծնունդներ, բազմացնելու է մկրտությունը։

754 Եվ այն, որ հոտերի կեսը ջուրն էր ընկել և ելել այն կողմը, որտեղից անցել էին, նշանակում է, որ հետագայում [մարդիկ] անօրեն են դառնալու՝ հեռանալով ճշմարտությունից, աստվածային սրբության ուխտի դրոշմը մի կողմ են գցելու, և շատերը լքելու են սուրբ ուխտը։ Գառներից գայլեր են դառնալու, որոնք կոտորելու են սուրբ գառները, նշանակում է, որ նրանք, հեռանալով ճշմարտությունից ու քահանայության ուխտից՝ գայլեր կդառնան, և կլինի գառների, այսինքն ուխտի ու քահանայության արյունահեղություն և ժողովուրդների խռովություն։ Իսկ նրանք, որ հավատարմությամբ կհամբերեն, [լինեն] գառներից, ժողովրդից կամ քահանաներից, թևեր են առնելու և վերանալու Քրիստոսի արքայությունը։ Իսկ որոնք գայլերի մտադրություն կունենան, կամ նրանց հափշտակության գործերը կկրկնեն, անշեջ հրի են մատնըվելու։

755 Եվ դու, ասաց ինձ այրը, պինդ կաց, քաջ և զգույշ եղիր, քանզի գործը եկել հասել է քեզ, հեշտությամբ բարություն է արվելու, և ճշմարիտ մշակների հետ առնելու ես Քրիստոսի անպատում պարգևները։ Արդ՝ զգույշ եղիր ավանդիդ, որը քեզ վստահվեց տեր Հիսուս Քրիստոսից։ Շինիր Աստծու անվան տաճար քեզ ցույց տրված տեղում, ուր հրեղեն սյունը ոսկի խարիսխ ուներ, և սրբերին վկայարաններ՝ այն տեղում, ուր զոհվեցին նրանք աստվածության հույսի, կենդանության համար, որպեսզի բժշկվեք հարված կրողներդ, քարոզությունը օրըստօրե, հարատևորեն հաջողություն ու առաջադիմություն ունենա և Քրիստոսի հավատքի մեջ ամենքը չափահաս դառնան։ Երբ այս ասաց, ցնցում եղավ, և լուսաբացին տեսիլքը ծածկվեց։

756 ՃԳ. Արդ՝ ամենարարը, ամենաստեղծը, ամենիմաստը, ամենատերը, ամենակալը, ամենագյուտն ու ամենաբժիշկը խրատեց ձեզ, որպեսզի իր աստվածությանը մերձավոր դարձնի։ Դրա համար էլ մեր միջոցով ձեզ ցույց տվեց կենաց ճանապարհը և փրկության հանգամանքները՝ միաժամանակ թողությունը բերելու

երևեցոյց ինձ պատմել ձեզ, առ ժամանակիս զիւր կամսն առ ձեզ կատարելով։ Արդ՝ և դուք զասացեալսն ըստ հրամանացն փութացարո՛ւք կատարել։ Եւ արդ՝ եկա՛յք շինեսցուք զվկայարանսն, փոխել զվկայսս ի հանգիստ. զի և սոքա փոխեսցեն զձեզ ի նորոգութիւնս։

757 Եւ զայս ասացեալ՝ հրամայեաց զի զնիւթ շինուածոյն վաղվաղակի պատրաստեսցեն։ Եւ ամենայն բազմութեան մարդկանն լուեալ զայն՝ իւրաքանչիւր ընթացան պատրաստել զնիւթսն։ Եւ կուտէին ի հրամայեալ տեղիսն ոմն վէմ, ոմն քար, ոմն աղիւս, ոմն զմայր փայտն, պատրաստէին խնդալից փութով և մեծաւ երկիւղիւ։

758 Եւ ինքն սուրբն Գրիգորիոս զլար ճարտարութեան շինողացն ի ձեռն առեալ՝ զերանելեացն վկայարան հանգստարանացն զհիմունսն յօրինէր։ Եւ մէն մի իւրաքանչիւր ամենայն բազմութեանըն սատարութիւն ի ձեռն առեալ, ըստ գեղեցկագիր յարմարելոյ հիմնարկին ի կատարումն շինուածոյն կանգնեցին։ Ամենայն ոք ձեռն ի գործ արկեալ, և կանանւոյն անգամ սատարեալ ըստ իւրեանց տկարութեան կանացի ուժոյն, և այսպէս առ հասարակ գործէին զգործն հաւատովք և մեծաւ երկիւղիւ, զի մի՛ ոք ամենեքին անմասն եղեալ ի փրկութենէ շնորհացն, ի բժշկութենէն զըրկեսցի։

759 Եւ կանգնեալ երիս վկայարանս, մի՝ ի հիւսիսոյ յարևելից կողմանէ քաղաքին, ուր վկայեաց սանականն Հռիփսիմէ երեսուն և երկու ընկերօք։ Եւ զմիւսն շինեցին ի հարաւակողմ կուսէ անտի, ուր վկայեացն Գայիանէ նորուն սնուցիչն երկու ընկերօքն։ Եւ զմիւսըն ևս մօտ ի հնձանն ի մէջ այգւոյն, ուր էին վանք նոցա։ Շինեցին կազմեցին զտեղիսն, և զարդարեցին ոսկի և արծաթի կանթեղօք լուցելովք, և լապտերօք վառելովք, և աշտանակօք բորբոքելովք։

760 ԾԴ. Եւ հրամայեաց մէն մի իւրաքանչիւր արկղագործ, տախտակամած, մայրափայտեայ, բևեռապինդ, հաստահեղոյս, երկաթագամ տապան գործել։ Եւ ամենայն ըստ ասացելոյ պատուիրանին արարեալ, հանդերձեալ կազմեալ պատրաստեցին. ըստ եդեալ հրամանին տուելոյ բերին զարկեղսն արարեալ հանգստի սրբոցն առ դուրս հնձանին, առաջի սրբոյն Գրիգորի։ Իսկ նա ասեալ՝ ինքն միայն ի ներքս մտանէր, և ոչ թողոյր զայլ ոք ամենեին ի ներքս մտանել. ասէ. «Ո՛չ է պարտ ձեզ հուպ լինել և մերձենալ առ նոսա, որ չեւ էք բժշկեալ, որ չեւ էք սրբեալ մկրտու-



ձեզ հասցնելու համար։ Ահա թե ինչու գալիք բաների տեսիլքը ցույց տվեց ինձ, որպեսզի ձեզ պատմեմ, նրա կամքը ժամանակին ձեզ վրա կատարելով։ Արդ՝ դուք էլ ասածներս, ըստ հրամանների, փութացեք կատարել։ Եկեք շինենք վկայարանները, նահատակներին գերեզմանները տեղափոխենք, որպեսզի նրանք ձեզ տանեն նորոգության։

757 Այս ասելով՝ հրամայեց շինվածքի նյութը շուտափույթ պատրաստել։ Մարդկանց ամբողջ բազմությունը այս լսելով, յուրաքանչյուրը գնաց նյութերը պատրաստելու։ Հրամայված տեղերում կուտակում էին մեկը վեմ, մեկը քար, մեկն աղյուս, մեկը մայրի փայտ, պատրաստում էին խնդալից փութով և մեծ երկյուղով։

758 Իսկ ինքը՝ սուրբ Գրիգորը, շինողների ճարտարության լարը ձեռքն առնելով երանելիների վկայարան հանգստարանների հիմքերն էր պատրաստում։ Բազմության մեջ ամեն մեկն իր օժանդակությունը բերելով՝ ձգտում էր շինվածքի կառուցումն ավարտել գեղեցկագիր ու հարմար հիմքերի վրա։ Ամեն ոք մի գործի էր ձեռնարկում, և անգամ կանայք օգնելով, ըստ իրենց կանացի տկար ուժի, այսպես առհասարակ գործ էին կատարում հավատքով ու մեծ երկյուղով, որպեսզի ոչ ոք ամենևին անմասն չմնա շնորհների փրկությունից և չզրկվի բժշկությունից։

759 Կանգնեցրին երեք վկայարաններ*, մեկը քաղաքի հյուսիս-արևելյան կողմում, ուր նահատակվեց սանական Հռիփսիմեն երեսունևերկու ընկերներով, մյուսը շինեցին նրա հարավային կողմում, ուր նահատակվեց Գայանեն՝ նրա սնուցիչը, երկու ընկերներով, իսկ մի ուրիշը՝ հնձանի մոտ, այգու մեջ, ուր նրանց կացարանն էր։ Շինեցին կազմեցին այդ տեղերը և զարդարեցին ոսկե ու արծաթե լուսավոր կանթեղներով, վառ լապտերներով ու հրաբորբոք աշտանակներով։

760 ԾԴ. Հրամայեց ամեն մեկի համար արկղի նման տախտակամած, մայրափայտե, բևեռապինդ, հաստահեղույս ու երկաթագամ տապան շինել։ Ամեն ինչ նրա ասածի, պատվիրածի համաձայն արեցին, կազմված պատրաստեցին և ըստ տրված հրամանի սրբերի թաղման համար շինված արկղերը բերին հնձանի դռան մոտ՝ սուրբ Գրիգորի առջև։ Իսկ նա՝ ինքը միայն ներս մըտավ և ուրիշ ոչ ոքի չթողեց մտնել։ Ասաց. «Չպետք է մոտենաք, մերձենաք նրանց, քանի որ բժշկված չեք և սրբված չեք մկրտու-

*թեամբ»։ Այլ ինքն միայն առանձնացեալ, զմի մի իւրաքանչիւր ի սրբոցն առեալ յիւրաքանչիւր արկեղ դնէր՝ իւրաքանչիւր հանդերձով և իւրեանց կազմութեամբ պնդէր, և կնքէր քրիստոսանշան կնքովն։*

*761 Իսկ թագաւորն և արքայազունքն ամենայն և մեծամեծքն և նախարարքն և ազատքն և զօրքն ամենայն՝ իւրաքանչիւր բերէին իւղս անուշունս և խունկս ազնիւս, և զգունազոյն նարօտս պատանաց, զմետաքսառէշս ոսկեթելս կերպասուց։ Եւ կին թագաւորին և օրիորդք թագաւորազունք և կանայք պատուականացն և մեծամեծացն դստերք՝ բերէին ծիրանիս և զոսկեհուռն դիպակն և զերկնագոյնն, և զսպիտակ իբրև զձիւն հանդերձանս սրբոցն։ Նոյնպէս և զոսկին և զարծաթն և զկտաւսն փութով կուտէին առ դուրս հնձանին։*

*762 Արդ՝ ելեալ տեսանէր սուրբն Գրիգորիոս, զի շեղջ շեղջ կուտեալ էին առ դուրս հնձանին։ Իսկ նա ոչ առնոյր յանձն զնոցա ինչ առ նոսա մատուցանել. ասէ. «Ո՞չ վաղ իսկ ասացի, եթէ ոչ է պատշաճ զձեր ինչ, մինչ չեռ էք սրբեալ մկրտութեամբ՝ առ նոսա մատուցանել. այլ յօժարութիւնդ ձեր բարիոք է վասն ձերոյ փրկութեան։ Այլ այս ամենայն յարքունական գանձուն պահեալ կայցէ, մինչև ձեզ հովիւ և վարդապետ ի տուչութենէ բարերարութեան Աստուծոյ պարգևեսցի, և երևեսցին ձեզ առաջնորդք, քահանայապետք, տեսուչք եպիսկոպոսք և երիցունք եկեղեցական կարգի լուսաւորութեան սիրոյն Աստուծոյ. և այդ ամենայն երթիցէ ի սպաս պաշտաման փառաւորընկալ սեղանոյն Աստուծոյ ի ձեռն քահանայապետին կացելոյ։ Այլ այժմ եկա՛յք զսոսա յիւրաքանչիւր հանգիստս մատուսցուք»։*

*763 ԾԵ. Իսկ թագաւորն Տրդատ յայնժամ դեռ ևս էր յամենայն կերպարանս խոզի, բայց միայն ի մարդկապէսն խօսելոյ. և կրճղակք ձեռացն և ոտիցն իբրև զխոզի, և դէմք երեսացն կնճթացեալ, և ժանիք մեծամեծք իբրև զմեծամեծ վարազաց, և խոզանաստեն թաւացեալ զամենայն մարմնովն։ Այլ կայր պատեալ զերեսսն գըլխովն հանդերձ՝ արկեալ զիւրեաւ քուրձ, և կայր երևոյթ տեսլեամբ ի մէջ ժողովրդոցն։ Արդ՝ մատուցեալ աղաչէր զսուրբն Գրիգորիոս, զի գոնեա ձեռացն և ոտիցն հնար լինիցի բժշկութեան, զի ի գործ շինուածոց սրբոցն արժանի արասցէ գէթ սակաւիկ ինչ մասնաւորել զնա։*

*764 Իսկ երանելին Գրիգորիոս ծունր կրկնեալ ամենատեառն*



*թյամբ»։ Այլ միայն ինքը առանձնացած, ամեն մի սրբին առանձին առնելով արկղի մեջ դրեց, յուրաքանչյուրին իր հանդերձներով և իր կազմությամբ ամրացրեց և կնքեց քրիստոսանշան կնիքով։*

*761 Իսկ թագավորն ու բոլոր արքայազունները, մեծամեծները, նախարարները, ազատները և ամբողջ զորքը յուրաքանչյուրը բերում էր անուշահոտություններ ու ազնիվ խունկեր, պատանքի գույնզգույն նարոտներ ու մետաքսահյուս ոսկեթել կերպասներ, թագավորի տիկինը, թագավորազուն օրիորդները, պատվականների կանայք և մեծամեծների դուստրերը բերում էին ծիրանի, ոսկեհուռ դիպակ և երկնագույն ու ձյունասպիտակ հանդերձներ սրբերի համար։ Նույնպես ոսկին ու արծաթը և կտավը շտապով կուտակում էին հնձանի դռան առջև։*

*762 Արդ՝ դուրս գալով՝ սուրբ Գրիգորը տեսավ, թե ինչպես այս բոլորը շեղջ-շեղջ կուտակված էին հնձանի դռան մոտ։ Իսկ նա նրանցից ոչինչ չընդունեց՝ սրանց մատուցելու համար [այլ] ասաց. «Չէ՞ որ նախապես ասել եմ, թե պատշաճ չէ ձեր որևէ բերածը նրանց մատուցել, քանի դեռ չեք մաքրված մկրտությամբ, սակայն ձեր հոժարությունը բարի է ձեր փրկության համար։ Այս ամենը թող արքունական գանձարանում պահված մնա, մինչև որ աստվածային բարերար կարգադրությամբ ձեզ հովիվ ու վարդապետ տրվի, ձեզ մոտ երևան գան առաջնորդներ, քահանայապետներ, տեսուչ-եպիսկոպոսներ և երեցներ Աստծու սիրո եկեղեցական կարգի լուսավորության համար։ Եվ այդ ամենը ընտրված քահանայապետի ձեռքով ի սպաս կդրվի Աստծու փառավորընկալ զոհասեղանի ծառայությանը։ Այլ այժմ եկեք սրանցից յուրաքանչյուրին իր հանգիստը մատուցենք»։*

*763 ԾԵ. Իսկ Տրդատ թագավորը այնժամ դեռևս ամբողջովին խոզի կերպարանք ուներ, բացի միայն մարդաբար խոսելուց։ Ձեռքի ու ոտքի եղունգները խոզի նման էին, և դեմքը՝ կնճիթի նման, մեծամեծ ժանիքներ ուներ վարազների պես և ամբողջ մարմնով խոզի թավ մազեր ուներ։ Սակայն ծածկել էր երեսն ու գլուխը՝ իր վրա քուրձ գցելով և այսպիսի կերպարանքով երևում է ժողովրդի մեջ։ Արդ՝ մոտենալով աղաչում էր սուրբ Գրիգորին, որ գոնե ձեռքերն ու ոտքերը բուժելու հնար գտնի, որպեսզի սրբերի շինվածքի գործին գեթ սակավիկ մասնակցություն ունենալու արժանի լինի։*

*764 Իսկ երանելի Գրիգորը ծունկ դրեց ամենատեր, բարերար*

քարեհարի մարդասիրին Աստուծոյ, երթեալ անկանէր զսուրբընկալ արկեղօքն երանելի մարմնոցն քրիստոսական վկայիցն՝ մատուցանել պաղատանս. համբարձեալ զբազուկսն հանապազատարած յերկինս՝ ամենայն ժողովելոցն և թագաւորին բժշկութիւն հայցէր։ Ապա դարձաւ առ թագաւորն, շնորհելովն Քրիստոսի զոտսն նորա և զձեռսն բժշկէր. զի թափեցան կճղակք ոտիցն և ձեռացն. որպէս զի առ մի նուագ հաղորդեալ լիցի ի գործ սրբոցն՝ իւրոց ձեռացն վաստակելով։

765 Իսկ նորա հարցեալ զԳրիգորիոս, թէ զի՛նչ հրամայեսցէ նմա. և նա տայր զչափ արկեղացն սրբոց, զի հատեալ զտեղիսն իւրաքանչիւր բնակութեան՝ յօրինեսցէ ի ներքս ի մարտիրոսական յարկին հանգստեան։ Իսկ նորա աղաչեալ զԳրիգորիոս՝ զի հրամայեսցէ, մի՝ վասն կնոջ իւրոյ Աշխենայ տիկնոջ, և մի՝ վասն քեռն իւրոյ հարազատի որում անուն էր Խոսրովիդուխտ, զի իշխեսցեն և նոքա հաւասարել գործոյն։ Եւ նորա տուեալ հրաման, և նոցա երթեալ ընդ նմա օգնել գործոյն։ Եւ առեալ զչափ արկեղացն՝ փոսել փորել զտեղիս հանգստի սրբոցն ի ներքս ի տաճարս հանգըստարանացն։

766 ԾԶ. Արդ՝ առեալ թագաւորին փայտատ և բահ՝ հատանէր զգիրս հանգստոցաց սրբոցն իւրաքանչիւր ըստ չափու արկեղացն։ Սոյնպէս և ինքեանք երկոքին, Աշխէն տիկին և քոյր թագաւորին Խոսրովիդուխտ, ըստ բրել բրողին ի հանդերձս իւրեանց ընկալեալ զհողն՝ արտաքս պեղէին։ Եւ այսպէս կարգի կարգի յառաջակողմն պատրաստեցին զգիրս սրբոյն Հռիփսիմեայ. և զկնի նորա զերեսուն և զերկուցն ի տեղւոջն յայնմիկ, ուր հեղան արիւնք վկայականք երանութեան նոցա, ի տեղւոջ հանգստեան պատրաստելոյ սուրբ և փառաւոր սեղանոյն Քրիստոսի։ Սոյնպէս և ի վկայարանին՝ որ ի հարաւակոյս քաղաքին էր՝ պատրաստեաց և զայն տեղին երանելւոյն Գայիանեայ և երկուց ընկերացն։ Ինքնին թագաւորն Տրդատ քերբն Խոսրովիդխտով հանդերձ և Աշխէն տիկնաւ զգիրս սրբոցն իւրաքանչիւր բնակութեան յօրինէին իւրեանց ձեռօքն։

767 Եւ եկն թագաւորն, խնդրեաց հրաժեշտ ի սրբոյն Գրիգորէ եօթնօրեայ ճանապարհ կալեալ ի վեր ի բարձր լեառն ի Մասիս։ Եւ անտի ի գլխոյ լեռնէն առեալ վէմս արաստոյս, անտաշս, անկոփս յաղթս, ծանունս, երկայնս, ստուարս և մեծամեծս, որ զմի մի ոչ ումեք լինէր հնար, թէ և դիպելոյ բազմութեան ի մարդկանէ՝ զայն շարժել. արդ՝ առեալ սկայազօրն հայկաբար զութ արձանսն՝



մարդասեր Աստծու առջև, գնաց ընկավ քրիստոսական նահատակների երանելի մարմինների սուրբընկալ դագաղների մոտ՝ պաղատանք մատուցելու։ Բազուկները համատարած երկինք բարձրացրեց և բոլոր հավաքվածներին ու թագավորին բժշկություն էր հայցում։ Ապա դարձավ թագավորին, նրա ձեռքերն ու ոտքերը Քրիստոսի շնորհիվ բժշկեց, և նրա ոտքերի ու ձեռքերի կճղակները թափվեցին, որպեսզի գեթ մի անգամ իր ձեռքի վաստակով մասնակից լինի սրբերի գործին։

765 Հարցրեց Գրիգորին, թե ինչ կհրամայի, և նա տվեց սրբերի դագաղների չափը, որպեսզի յուրաքանչյուրի տեղը մարտիրոսների հանգստյան բնակարանի ներսում պատրաստի։ Իսկ նա աղաչեց Գրիգորին, որ հրամայի նախ իր կնոջը՝ Աշխեն տիկնոջ և ապա իր հարազատ քրոջը, որի անունը Խոսրովիդուխտ էր, որ նրանք էլ իրավունք ունենան գործին մասնակցելու։ Հրաման տվեց, և նրանք գնացին նրա հետ գործին օգնելու։ Եվ դագաղների չափը առան, տաճար-հանգստարանի ներսում սրբերի թաղման տեղը փոս փորելու համար։

766 ԾԶ. Արդ՝ թագավորը բրիչ (փայտատ) ու բահ առած փորեց սրբերի հանգստյան գերեզմանները, ըստ դագաղների չափի։ Նույնպես և նրանք երկուսով՝ Աշխեն տիկինը ու թագավորի քույր Խոսրովիդուխտը, բրողների նման, իրենց հանդերձի մեջ վերցնելով հողը, դուրս էին թափում։ Այսպես, կարգով, առջևի կողմում պատրաստեցին սուրբ Հռիփսիմեի գերեզմանը և նրանից հետո երեսուներկուսի [գերեզմանները], այն տեղում, ուր նրանց երանելի մարտիրոսական արյունը թափվեց՝ Քրիստոսի սուրբ և փառավոր սեղանի համար պատրաստված հանգստյան տեղում։ Սույնպես և վկայարանը, որը քաղաքի հարավային կողմում էր, պատրաստվեց նաև այն երանելի Գայանեի ու երկու ընկերների համար։ Ինքը Տրդատ թագավորը, իր քույր Խոսրովիդուխտը ու Աշխեն տիկինը միասին սրբերի գերեզմանները իրենց ձեռքով պատրաստեցին, յուրաքանչյուրին իր հավիտենական բնակության վայրում։

767 Եկավ թագավորը հրաժեշտ խնդրեց սուրբ Գրիգորից յոթնօրյա ճանապարհ գնալու բարձր լեռ Մասիսն ի վեր։ Այնտեղ լեռան գլխից առնելով կարծր, անտաշ, անկոփ, խոշոր, ծանր, երկայն, հաստ ու մեծամեծ քարեր, որոնցից մեկը ոչ ոք չէր կարող շարժել, թեկուզև մարդկանց բազմությունը։ Արդ՝ հսկայազորը (թագավորը) հայկաբար վերցնելով ութ քար, դրեց իր թիկունքի

ի վերայ իւրոց թիկանցն զայն դնէր և ըստանձնեալ բերէր ի վկայարանս տաճարացն։ Մէն չորս արձանս սեամս կանգնէր՝ իբրև փոխարէն անմիտ մարտին, զոր ընդ սրբոյն պատերազմեալ յիրում սենեկին. ուր ամենապահ շնորհացն յաղթեալ՝ զայնչափ զարմանալիսն գործեաց։ Եւ սա պսակ յաղթութեան՝ զիւրոյ ձեռացն զօրութեան զվաստակն ամենեցուն ցուցանէր։

768 Արարեալ շինեալ կազմեալ զսուրբ վկայարանսն երեսին՝ հանդերձեցին զարդարեցին և օրհնօք յարդարեցին. և ապա առեալ զիւրաքանչիւր յիւրաքանչիւր տեղի վկայութեանն մատուցանէին։ Զսուրբն Գայիանէ ի կողմն հարաւոյ, իւրոյ մարտիրոսութեանն երկու ընկերօքն դնէր ի վկայարանի տաճարին։ Սոյնպէս և զերանելին Հռիփսիմէ երեսուն և երկու ընկերօքն ի կողմն արևելից ի շինածի տաճարին դնէին։ Եւ զմիաւորն, որ ի հնձանին սպանաւ՝ սորա տաճարն ի կողմանէ քաղաքին ի հիւսիսոյ կուսէ։ Եւ զամենայն սուրբսն ի միասին դումարեալ, զխաչական վկայսն Քրիստոսի՝ յիւրաքանչիւր հանգիստս մարտիրոսական բնակութեան շինուածոցն փոխեցին։ Ըստ երևելոյ հրամանին տեսլեանն յառաջագոյն Գրիգորի՝ այսպէս և կատարեցաւ։

769 Եւ ի ներքսագոյն խորանացն, ի վերայ հանգստարանացն կենդանագիր գերեզմանացն ի տեղիս սեղանոցն, յերեսին վկայարանսն մէն մի կանգնեաց զսուրբ նշան տէրունական խաչին. «Զի միայն, ասէ, առաջի այդր ամենակեցոյց նշանիդ երկիր պագանիցէք տեառն Աստուծոյ արարչին ձերոյ։ Ահա սիւնք հաստատուն կանգնեցան ձերում խարխուլ շինուածոյն։ Այս այն սիւնք են, ասէ, որ ունին զբեռն ծանրութեան ձերոյ շինուածոյն փրկութեան. ահա երեք սիւնք. և չորրորդ սիւն կենդանութեան՝ որ զձեզ առ Աստուած վերացուսցէ։ Եկա՛յք զնկատեալ տեղին տէրունական տանն և մեզ հրամայեալն ի մէջ առեալ ի պատիւ փակեսցուք»։

770 Եւ թագաւորաւն և ամենայն ժողովրդովքն հանդերձ երթեալ հասանէր անդէն ի տեղին ցուցեալ հրեղէն սեանն ոսկիակալ խարսխին, և անդէն բարձր քաղաքորմով փակեալ զտեղին ի պատիւ, և դրամբք և դռնափակօք ամրացուցեալ, և կանգնեալ և անդ զնշան փրկական խաչին. զի առ հասարակ հասեալ ամենայն ոք յայն տեղի՝ ամենազօր արարչին Աստուծոյ երկրպագեալ ծունր կրկնեսցեն։

771 Եւ այսպէս լուսաւորեալ զսիրտս և զոգիս ժողովրդոցն քարոզութեամբ, աղիւն Աստուածութեանն յաղեալ համեմեալ. թողեալ



վրա և բերեց տաճարների վկայարանները։ Մեն մենակ չորս քար շեմքին կանգնեցրեց անմիտ մարտի փոխարեն, որը սրբի հետ մղել էր իր սենյակում, ուր [կույսը] ամենապահ շնորհներով պահպանված այնչափ հրաշքներ գործեց։ Եվ սա [որպես] հաղթության պսակ իր ձեռքերի զորության վաստակը ցույց էր տալիս ամենքին։

768 Շինելով, կազմելով՝ երեք սուրբ վկայարանները շտկեցին, զարդարեցին, կարգով ու կանոնով հարդարեցին և ապա յուրաքանչյուրին վերցնելով իր նահատակության տեղը դրեցին։ Սուրբ Գայանեին իր երկու նահատակ ընկերների հետ դրեցին հարավային կողմը՝ տաճարի վկայարանում։ Նույնպես և երանելի Հռիփսիմեն երեսուներկու ընկերներով արևելյան կողմը շինված տաճարում դրվեց, իսկ մենավորը, որ հնձանի մեջ սպանվեց, սրա տաճարը գտնվում էր քաղաքի հյուսիսային կողմում։ Միասին հավաքված բոլոր սրբերը՝ Քրիստոսի խաչազգյաց վկաները մեկ առ մեկ տեղափոխվեցին իրենց մարտիրոսական բնակության համար շինված գերեզմանները։ Կատարվեց ըստ նախապես Գրիգորին երևացած տեսիլքի հրամանի։

769 Խորաններից ներս սրբերի տապանների հանգստարանների վրա, զոհասեղանների տեղը, երեք վկայարաններում, ամեն մեկի համար տերունական խաչի սուրբ նշանը կանգնեցրեց ասելով. «Միայն այս ամենակեցույց նշանի առջև պիտի երկրպագեք ձեր արարիչ Տեր Աստծուն։ Ահա հաստատուն սյուներ կանգնեցվեցին ձեր խարխուլ շինվածքին։ Այս այն սյուներն են, ասում է, որ տանում են ձեր փրկության շինվածքի ծանրության բեռը. ահա երեք սյուներ և չորրորդը՝ կենդանության սյունն է, որը ձեզ բարձրացնելու է Աստծու մոտ։ Եկեք տերունական տան որոշված և հրամայված տեղը եղերելով պատով շրջափակենք»։

770 Եվ թագավորի ու ամբողջ ժողովրդի հետ մեկտեղ գնաց իսկույն, հասավ այն տեղը, ուր իրեն ցույց էր տրված հրեղեն սյունը ոսկի խարսխի վրա, և իսկույն բարձր պարիսպով տեղը շրջափակեց ի պատիվ, դռներով ու փականքով ամրացրեց և կանգնեցրեց այնտեղ ևս փրկչական խաչի նշանը, որպեսզի առհասարակ ամեն ոք, որ այնտեղ հասնի, ամենազոր արարչին՝ Աստծուն երկրպագելով ծունկ դնի։

771 Այսպես քարոզությամբ, լուսավորելով ժողովրդի սրտերն ու հոգիները, աստվածային աղով աղեց, համեմեց, [և նրանք]

զպաշտօն ունայնութեան սնոտեաց ձեռագործ կռոցն արարելոց, և ի պաշտօն դարձեալ մարդասիրին Աստուծոյ։

772 Եւ յայնմ հետէ և անդր կանխէին անձնակամ կամօք ի պահս և յաղօթս, և յերկիւղ և ի սէր. և յունկնդրութիւն Աստուծոյ վարդապետութեանն փութային։

773 ՃԷ. Արդ՝ իբրև ժողովեալք միահամուռ ի պաշտօնարան տեղւոյն յարկի տանն Աստուծոյ կային՝ խօսել սկսաւ երանելին Գրիգորիոս և ասէ. «Դի՛ք ծունր ամենեքեան, զի արասցէ Տէր բժշկութիւն հարուածոցդ»։ Եւ եդեալ ծունր ամենեցուն առ Աստուած, և երանելւոյն Գրիգորի մեծաւ աղօթիւք և պաղատանօք խնդրեալ ուժգին ճգնութեամբ և արտասուօք վասն թագաւորին բժշկութեան։ Եւ թագաւորն մինչ դեռ կայր ի տեսիլ կերպարանաց խոզի ընդ ժողովրդեանն՝ յանկարծակի հարեալ զգաղման, և զխորխն խոզի արտաքոյ մարմնոյն իւրոյ ի բաց ընկենոյր, ժանդատեսիլ ժանեօքն և կնճթաղէմ երեսօքն հանդերձ. խռզանացեալ մազովն թաւութեամբ զխորխացեալ կաշին ի բաց ընկենոյր։ Եւ դէմք երեսացն դարձան յիւր իսկ կերպարանսն, և մարմինն փափկացեալ մատաղացեալ լինէր իբրև զառօրեայ մանկան ծնելոյ, և ողջանդամ մարմնովքն ամենևին բժշկեցաւ։

774 Սոյնպէս և ամենայն մարդիկն, որ էին բազմութիւնք կուտեալք՝ յիւրաքանչիւր ախտից թօթափեալք. ոմանք բորոտք, և ոմանք անդամալոյծք և գօսացեալք, և ջրգողեալք որովայնիւք, և դիւահարք, և գոնճացեալք, և պատագրոսք։ Եւ այսպէս բացեալ շնորհացն մարդասիրին Քրիստոսի զիւր ամենակար բժշկարանն՝ բժշկել զամենեսին ի ձեռն Գրիգորի, ախտացեալքն թօթափէին յիւրաքանչիւր հիւանդութեանց։ Սոյնպէս և բացեալ լինէր աղբիւր գիտութեանն Քրիստոսի, զլսելիս ամենեցուն լնուլ ճշմարտապատում վարդապետութեամբն Աստուծոյ։

775 «Անդ էր այնուհետև սրտալիր ուրախութիւն, և ակնավայել տեսիլ հայեցելոցն։ Քանզի երկիր, որ և համբաւուցն անգամ օտար էր կողմանցն այնոցիկ, յորում ամենայն աստուածագործ սքանչելութիւնքն գործեցան՝ առ ժամայն վաղվաղակի իրացն եղելոց խելամուտ լինէր. ոչ միայն առ ժամանակաւն պաշտելոցն, այլ և յառաջակարգ յաւիտեանցն և յապա եկելոցն, և սկզբանն և կատարածի, և ամենայն աստուածատուր աւանդութեանցն։

776 Իսկ իբրև զչափ առեալ զիրացն հաստատութեան՝ համարձակագոյն և առաւելագոյն զաշակերտութիւն նորագիւտ վարդա-



թողնելով սնոտի, ձեռագործ կուռքերի ունայն պաշտամունքը՝ մարդասեր Աստծու պաշտամունքին դարձան։

772 Այնուհետև աճապարեցին անձնական կամքով պահքի ու աղոթքի, երկյուղի ու սիրո և Աստծո վարդապետության ունկընդրության փութալ։

773 ՃԷ. Արդ, երբ միահամուռ հավաքված էին Աստծու տան հարկի աղոթավայրում, երանելի Գրիգորը սկսեց խոսել և ասաց. «Ծունր դրեք ամենքդ, որպեսզի Տերը ձեզ բժշկի հարվածներից»։ Ամենքը ծունր դրեցին Աստծու առջև, և երանելի Գրիգորը մեծ աղոթքով ու պաղատանքով, ուժգին ճգնությամբ ու արտասուքով թագավորի համար բժշկություն խնդրեց։ Իսկ թագավորը, մինչդեռ խոզի կերպարանքով կանգնած էր ժողովրդի մեջ, հանկարծակի դողի մատնվեց, և մարմնի վրայի խոզի մորթը, ժանտատեսիլ ժանիքով ու կնճիթաղեմ երեսով հանդերձ վայր ընկավ։ Խոզանման մազի թավությամբ խորխացյալ կաշին դուրս նետվեց։ Դեմքն իր իսկական կերպարանքն ստացավ, և մարմինը նորածին մանկան նման փափուկ, մատղաշ դարձավ, և ամբողջ մարմնով լրիվ բըժշկվեց։

774 Այսպես էլ բոլոր մարդիկ, որ բազմությամբ կուտակված էին, յուրաքանչյուրն իր ախտերը թոթափեց, ոմանք բորոտ էին, ոմանք անդամալույծ ու չորացած անդամներով, ջրգողված որովայններով, դիվահար, խեղանդամված և ոտնախտավոր։ Եվ այսպես՝ շնորհների մարդասեր Քրիստոսը բացեց իր ամենակարող բըժշկարանը՝ Գրիգորի միջոցով բոլորին բժշկելու։ Յուրաքանչյուր ախտավոր թոթափում էր իր հիվանդությունը։ Այսպես էլ բացվեց Քրիստոսի գիտության աղբյուրը, ամենքի լսելիքը լցնելու Աստծու ճշմարտապատում վարդապետությամբ։

775 Այնուհետև այնտեղ սրտալիր ուրախություն էր և ի՜նչ հաճելի տեսարան աչքի համար։ Որովհետև մի երկիր, որ համբավն անգամ չէր լսել այն կողմերի, ուր աստվածային սքանչելի բոլոր գործերը կատարվեցին*, շատ շուտով իմացավ եղած բաները, ոչ միայն իր ժամանակ կատարվածները, այլև հավիտենապես նախասահմանվածները, հետո եկածները, սկիզբն ու վերջը և բոլոր աստվածատուր ավանդությունները։

776 Իսկ երբ իրերի հաստատությունը փորձեցին, ապա ավելի համարձակ ու ավելի շատ աշակերտներ էին հավաքում նորագյուտ վարդապետությունը ուսուցանելու, [նրանց] կրթելու և անգետ

պետութեանն խմբէին ուսուցանել, թեքել և պատրաստական քարոզութեանն անգէտ մարդկանն յօրինել։ Որոց և ինքեանք իսկ ի կողմանց կողմանց և ի գաւառաց գաւառաց Հայաստան աշխարհին՝ յորդեալք և դրդեալք հասանէին ի բացեալ աղբիւրն շնորհաց գիտութեանն Քրիստոսի։ Քանզի յԱյրարատեան գաւառին, ի թագաւորանիստ կայեանսն, բղխեցին Հայոց տանն Թորգոմայ շնորհք քարոզութեան Աւետարանին պատուիրանացն Աստուծոյ»։

777 ԾԸ. Առնոյր այնուհետև խորհուրդ հաւանութեան ընդ թագաւորին և ընդ իշխանսն, նախարարօքն և զօրօքն հանդերձ՝ վասն խաղաղութեան հասարակաց, քակել, կործանել, բառնալ զգայթակղութիւնսն ի միջոյ, ի բաց կորուսանել. զի մի՛ ումեք լիցի խէթ և խութ այնուհետև ընդ ոտս անկանել և խափան առնել՝ ելանել յազատութիւնն վերին։ Այլ զի քաջալերեալք ամենեքեան հասանիցեն ի բարեացն կատարումն, ի նշանակեալ նպատակն երանելւոյն Պաւղոսի, թէ «Միաբան հասցուք ի չափ հասակին Քրիստոսի», ուր յաղթութիւնն յերկինս է. ակն ունել փրկչին մեծին Աստուծոյ, և պարծանք ի խաչն, և գովութիւն ի փառս Աստուծոյ։

778 Իսկ անդէն վաղվաղակի թագաւորն ինքնիշխան հրամանաւ, և ամենեցուն հաւանութեամբ, գործ ի ձեռն տայր երանելւոյն Գրիգորի, զի զյառաջագոյն զհայրենական հնամեացն նախնեացն և զիւր կարծեալ աստուածսն չաստուածս անուանեալ՝ անյիշատակ առնել, ջնջել ի միջոյ։ Ապա ինքն իսկ թագաւորն խաղայր գնայր ամենայն զօրօքն հանդերձ ի Վաղարշապատ քաղաքէ՝ երթալ յԱրտաշատ քաղաք, աւերել անդ զբագինսն Անահտական դիցն, և որ յԵրազամոյն տեղիսն անուանեալ կայր։ Նախ դիպեալ ի ճանապարհի երազացոյց երազահան պաշտաման Տրի դից, դպրի գիտութեան քրմաց, անուանեալ Դիւան գրչի Որմզդի, ուսման ճարտարութեան մեհեան. նախ ի նա ձեռն արկեալ՝ քակեալ այրեալ աւերեալ քանդեցին։

779 Ուր և երևեալ կերպարանեալ դիւացն ի նմանութիւն առն և ձիոյ բազմութեան, կազմութեան գնդի և հետևակազօրու, մկրնդաւորք և ուռնաւորք, առաջի ընթացեալք ի կերպարանս մարդկան նմանութեան, նիզակօք և նշանօք, ի զէն և ի զարդ վառեալք, մեծաւ գոչմամբ զաղաղակ հարեալ՝ փախստեայք յԱնահտական մեհեանն անկանէին, ուստի ընդ հասեալսն մարտ եդեալ կռուէին. նետս անոյժս քարավէժս թանձրատարափս ի վերուստ ի շինուա-



մարդկանց քարոզի համար պատրաստակամ դարձնելու։ Նրանք իրենք հենց վեր էին կենում Հայաստան աշխարհի զանազան կողմերից ու գավառներից բազմությամբ գալիս հասնում էին Քրիստոսի գիտության շնորհների բացված աղբյուրը։ Քանզի Արարատյան նահանգում, թագավորանիստ կայանում Հայոց Թորգոմյան տանը բխեցին Աստծու պատվիրանների Ավետարանի քարոզության շնորհները։

777 ԾԸ. Այնուհետև թագավորի ու իշխանների հետ, նախարարներով ու զորքով հանդերձ, [Գրիգորը] հավանության խորհուրդ առավ ընդհանուրի խաղաղության համար՝ գայթակղությունը քանդելու, կործանելու և մեջտեղից վերացնելու ու ջնջելու նպատակով, որ այլևս ոչ ոքի արգելք ու խոչընդոտ չլինի և չխանգարի վերին ազատությանը հասնելու։ Որպեսզի ամենքը քաջալերված հասնեն բարիքների կատարմանը, երանելի Պողոսի նշանակած նպատակին, թե «միասին հասնենք Քրիստոսի հասակի չափին», որի ազատությունը երկնքում է, որտեղ սպասում են մեծ Աստծու փրկչին և [կունենանք] պարծանքը խաչի վրա և գովությունը ի փառս Աստծու։

778 Ապա թագավորը իսկույն տիրաբար հրաման տվեց, ամենքի հավանությամբ, գործը երանելի Գրիգորի ձեռքը հանձնելու, որպեսզի նախկին հայրենի, հնամենի և նախնիների ու իր կողմից Աստված անվանված չաստվածները անհիշատակ դարձնի, մեջտեղից ջնջի*։ Ապա ինքն իսկ թագավորը, ամբողջ զորքով հանդերձ, Վաղարշապատ քաղաքից շարժվեց գնաց Արտաշատ քաղաքը, ավերելու այնտեղ Անահիտ դիցուհու բագինը և այն, որ Երազամույն կոչված տեղերում էր գտնվում։ Նախ ճանապարհին հանդիպեցին քրմական գիտության դպիր, Որմզդի գրչի Դիվան* կոչված, երազացույց, երազահան պաշտամունքի Տիր աստծու իմաստության ուսման մեհյանը և ամենից առաջ սկսեցին այն քանդել, այրել, ավերել։

779 Այնտեղ երևացին կերպարանափոխված դևեր, այրուձիու բազմության ու հետևակազորի գնդի կազմությամբ, մկնդավորներ ու մուրճավորներ, առաջ էին ընթանում մարդկային կերպարանքով, նիզակներով ու զինանշաններով, զենք ու զարդով զինավառ, մեծ գոչումով աղաղակ բարձրացրին և փախչելով ընկան Անահիտի մեհյանը։ Այնտեղից հարձակվողների դեմ սկսեցին կռվել, շինվածքի վերևից ներքև մարդկանց վրա անում նետեր և

*ծոցն ի խոնարհ զմարդկան ցնդէին. զորս և սակաւ մի զարհուրեցուցեալ, զնորահաւատ մարդիկն։ Իսկ սուրբն Գրիգոր իբրև տեսեալ զայն՝ զնշան տէրունական խաչին առնոյր և դիմէր ի դուռն մեհենին. և ամենայն շինուածք մեհենին ի հիմանց գլորեալ տապալեցան. և լուցեալ յանկարծօրէն փայտակերան հրդեհեցաւ ի տէրունական նշանին զօրութենէ, և ծուխն ծառացեալ մինչև յամպըս հասանէր։*

*780 Եւ ամենայն դևքն ի փախուստ դարձեալ՝ առաջի մարդկանն երևեցան, զօձիս զգլխով արկեալ, և զճակատ հարեալ, և զճիչ բարձեալ՝ մեծագոչ լալեօք ասէին, թէ «Վա՜յ մեզ, վա՜յ մեզ, վա՜յ մեզ, զի յամենայն երկրէ փախստական արար զմեզ Յիսուս որդին Մարեմու, դստերն մարդկան. և աստի ևս ի ձեռն կապելոյն և մեռելոյն եհաս մեզ փախստական լինել։ Արդ՝ յո՞ դիմեալ փախիցուք, զի փառք նորա լցին զտիեզերս։ Այլ երթամք մեք ի բնակիչս լերինն Կաւկասու, ի կողմանս հիւսիսոյ. թերևս անդ հնար լիցի և ապրել մարթասցուք։ Զի առանց հանգստեան զօդս կոծեալ՝ անջատ զմեզ ի բնակութենէ մարդկան՝ կատարել զցանկութիւն կամաց մերոց նոքօք»։*

*781 Եւ զայս ասացեալ առաջի ամենեցուն. զի մարդիկն որ լուան՝ առաւել ևս հաստատեցան ի հաւատս ամենեքին. իսկ սևագունդ դիւացն աներևոյթք եղեալ, չքտեալք ի տեղւոյն իբրև զծուխ պակասեցան։ Իսկ մարդկանն հասելոց անդէն քանդեալ զհիմունս մնացեալս աւերէին, և զգանձսն մթերեալս՝ աղքատաց, տառապելոց և չքաւորաց մասն հանէին։ Եւ զդաստակերտսն և զսպասաւորսն բրմօքն հանդերձ և նոցին գետնովքն և սահմանօքն ի ծառայութիւն նուիրեցին եկեղեցւոյ սպասաւորութեան։*

*782 Եւ առ հասարակ ամենեցուն սերմանեալ զաստուածպաշտութեան զբանն, և զամենեսեան ի Տեառնն ճանապարհի կացուցանէր՝ գիտուն լինել պատուիրանաց արարչութեանն։ Եւ յամենայն քաղաքս Հայոց և ի գեօղս և յաւանս և յագարակս երևեցուցանէր զտեղիս տան Աստուծոյ։ Բայց ոչ առնէր յայտ զհիմնարկութեանն զհետ, և ոչ սեղան ուրեք ուղղեալ յանուն Աստուծոյ, զի չունէր զպատիւ քահանայութեան. այլ լոկ պարսպէր քաղաքորմով զտեղիսն, և կանգնէր զնշան տէրունական խաչին։ Նոյնպէս և յելս և ի մուտս ճանապարհաց և ի փողոցս և ի հրապարակս և ի ճանա-*



*թանձրատարափ քարահոսք թափեցին, որոնցով և մի քիչ զարհուրեցրին նորահավատ մարդկանց։ Իսկ սուրբ Գրիգորը, երբ այս տեսավ, տերունական խաչի նշանը առած դիմեց մեհյանի դուռը և մեհյանի ամբողջ շինվածքը հիմնահատակ դղրդալով տապալվեց, և փայտակերտ [մասերը] հանկարծ բռնկվելով վառվեցին տերունական նշանի զորությունից և ծուխը ծառացած մինչև ամպերը հասավ։*

*780 Բոլոր դևերը, փախուստի դիմելով, մարդկանց առջև երևացին, օձիք պատռելով, ճակատը ծեծելով, ճիչ բարձրացնելով, մեծագոչ լալով ասում էին, թե «Վա՜յ մեզ, վա՜յ մեզ, վա՜յ մեզ, որովհետև ամբողջ երկրից մեզ փախստական արեց մարդու դուստր Մարիամի որդին՝ Հիսուսը։ Այստեղից էլ բանտարկվածի ու մեռածի ձեռքով մեզ վիճակվեց փախստական լինել։ Արդ՝ ո՞ւր փախչենք, քանզի նրա փառքը լցրել է տիեզերքը։ Եվ որովհետև մեզ առանց հանգիստ տալու, օդ ծեծելով անջատեց մարդկանց բնակությունից, ուստի մենք գնում ենք Կովկաս լեռան բնակիչների մոտ, հյուսիսի կողմերը, գուցե այնտեղ հնարավորություն լինի, որ կարողանանք ապրել և մեր կամեցածը նրանց միջոցով կատարել»*։*

*781 Այս ասացին ամենքի առջև և մարդիկ, որ լսեցին, բոլորն էլ ավելի ևս հաստատ դարձան հավատքի մեջ։ Իսկ սևագունդ դևերը աներևույթ եղան, տեղից չքացան և ծխի նման վերացան։ Այնտեղ հասած մարդիկ, իսկույն հիմքերը քանդելով, մնացածն ավերեցին և ամբարված գանձերը աղքատներին, տառապածներին ու չքավորներին բաժանեցին։ Դաստակերտներն ու սպասավորներին, քրմերով հանդերձ, նրանց հողերով ու սահմաններով՝ նվիրեցին եկեղեցու պետքերին ծառայելու համար։*

*782 Եվ [Գրիգորը] առհասարակ ամենքի համար աստվածպաշտության խոսքը սերմանեց և բոլորին տիրոջ ճանապարհի վրա կանգնեցրեց՝ արարչի պատվիրաններին տեղյակ դարձնելով։ Հայաստանի բոլոր քաղաքներում, գյուղերում, ավաններում ու ագարակներում ցույց էր տալիս եկեղեցու տեղերը։ Բայց հայտնապես հիմքերը չէր դնում և ոչ էլ հանուն Աստծու որևէ տեղ սեղան էր կանգնեցնում, քանի որ չուներ քահանայության աստիճան, այլ լոկ քաղաքորմով պարսպում էր այդ տեղերը և տերունական խաչի նշանն էր կանգնեցնում։ Նույնպես և ճանապարհների ելքերի ու մուտքերի մոտ, փողոցներում, հրապարակներում, խաչմերուկնե-*

պարհակիցս պահ և ապաւէն զերկրպագեալն յամենեցունց զնոյն նշան կանգնէր։

783 «Առնոյր այնուհետև զԱրշակունեաց տոհմի որեարն ի վարժս վարդապետութեան պարապեցուցեալ. որոց առաջնոյն Տրդատ անուն, որ և թագաւորն իսկ էր, ամենայն տամբ իւրով։ Նոյնպէս և զամենայն ոգի ջանայր յերիւրել հաստուցանել ի գիտութիւն ճշմարտութեան»։ «Եւ յորժամ այնպէս լի առնէր ընդ ամենայն տեղիս զսուրբ Աւետարանն Տեառն, և ամենեցուն զգուշացուցեալ անմեղութեամբ զճանապարհս կենաց վարելոյ»՝ ապա ամենեցուն զայն դնէր ի մտի, զի «տեառն Աստուծոյ իւրեանց միայն երկիրպագցեն, և նմա միայն սպաս տարցին»։

784 ԾԹ. Եւ ապա յանձն արարեալ զնոսա ամենապահ շնորհացն Աստուծոյ, և ինքն առեալ զթագաւորն՝ խաղայր գնացեալ երթայր, զի և յայլ կողմանս ամենայն սահմանացն Հայաստան աշխարհին սերմանեսցեն զբանն կենաց։ Եւ երթայր հասանէր ի Դարանաղեաց գաւառն, զի և անդ զանուանելոցն զսուտ աստուածոցն զբագինսն կործանեսցեն, որ էր ի գեօղն Թորդան, մեհեան անուանեալ սպիտակափառ դիցն Բարշամինայ. նախ զնա կործանէին, և զպատկեր նորին փշրէին. և զգանձսն ամենայն, զոսկւոյն և զարծաթոյն, աւար հարկանէին և զայն աղքատաց բաժանեալ բաշխէին։ Եւ զգեօղն ամենայն դաստակերտօքն հանդերձ և սահմանօքն յանուն եկեղեցւոյն նուիրէին, և զամենափրկիչ նշանին օրինակ և անդ կանգնէին։

785 «Իսկ երանելւոյն վաղվաղակի զաւետարանական արուեստն ի մէջ առեալ, ձեռն արկեալ զգաւառաւն, հանդերձ միամիտ սատարութեամբ թագաւորին՝ գերէր զամենեսեան ի հայրենեացն աւանդելոց ի սատանայապաշտ դիւական ի սպասաւորութենէն ի հնազանդութիւն ծառայութեան Քրիստոսի մատուցանէր։ Եւ յորժամ ի նոսա զբանն կենաց սերմանեալ, և զամենեսեան յաստուածապաշտութիւն կրթեալ, որ և յայտնի իսկ բնակչաց գաւառին նշանք մեծամեծք երևեալ, կերպակերպ նմանութեամբք դիւացն փախստական լինելով անկանէին ի կողմանս» Խաղտեաց. և իբրև զնոսա ևս հաստատէր՝ ապա երթեալ հասանէր յամուր տեղին անուանեալ Անի, ի թագաւորաբնակ կայեանսն հանգստոցաց գերեզմանաց թագաւորացն Հայոց։ Եւ անդ կործանեցին զբագինն Զեւս դիցն Արամազդայ, հօրն անուանեալ դիցն ամենայնի։ Եւ անդ կանգնեալ զտէրունական նշանն, և զաւանն ամրականաւն հանդերձ ի ծառայութիւն եկեղեցւոյն նուիրէին։



րում, որպես պահապան ու ապավեն, կանգնեցրեց ամենքի երկրպագած նույն նշանը։

783 Այնուհետև առավ Արշակունյաց տոհմի իշխանազուններին դպրոցներում վարդապետություն ուսուցանելու, որոնցից առաջինի անունը Տրդատ էր, որ և հենց թագավորն էր՝ իր ամբողջ տնով մեկտեղ։ Նույնպես և ամեն մեկին ջանում էր ճշմարիտ գիտությանը հասցնել։ Երբ այսպես բոլոր տեղերը լցրեց տիրոջ սուրբ Ավետարանի [քարոզով] և ամենքին խրատեց անմեղությամբ անցնելու կյանքի ճանապարհը, ապա բոլորին էլ հասկացնում էր, որ «միայն իրենց տեր Աստծուն երկրպագեն ու նրան միայն պաշտեն»։

784 ԾԹ. Ապա հանձնելով նրանց Աստծու ամենապահ շնորհներին, ինքն առավ թագավորին, շարժվեց գնաց, որպեսզի Հայաստան աշխարհի բոլոր սահմանների վրա, ուրիշ կողմերում ևս կենաց խոսքը սերմանեն։ Գնաց հասավ Դարանաղյաց գավառը, որպեսզի այնտեղ ևս կործանեն սուտ աստվածների բագինը, որը Թորդան գյուղում էր, սպիտակափառ Բարշամինա* անվանված աստծու մեհյանը։ Նախ այն կործանեցին ու նրա արձանը փշրեցին և բոլոր գանձերը, ոսկին ու արծաթը ավարի մատնեցին ու աղքատներին բաշխեցին։ Եվ գյուղը բոլոր դաստակերտներով հանդերձ ու սահմաններով՝ եկեղեցուն նվիրեցին և ամենափրկիչ նշանի օրինակը այնտեղ ևս կանգնեցրին։

785 Իսկ երանելին, իսկույն իր ավետարանական արվեստը բանեցնելով, թագավորի անկեղծ օժանդակությամբ, սկսեց գավառում [քարոզել], ամենքին դուրս բերեց նախնիների ավանդություններից, սատանայապաշտ դիվանական սպասավորությունից և մոտեցրեց Քրիստոսի հնազանդ ծառայությանը։ Երբ նրանց մեջ կենաց խոսքը սերմանեց ու ամենքին աստվածապաշտությամբ կրթեց, գավառի բնակիչներին մեծամեծ հրաշքներ երևացին՝ դևերը այլակերպ ձևերով փախստական դարձան ընկնելով Խաղտյաց* կողմերը։ Երբ նրանց ևս հաստատեց, գնաց հասավ Անի* անվանված ամուր վայրը՝ Հայոց արքաների գերեզմանների թագավորաբնակ կայանը։ Այնտեղ կործանեցին բագինը Զևս Արամազդ* աստծու, որը բոլոր աստվածների հայրն էր անվանված։ Այնտեղ ևս տերունական [խաչի] նշանը կանգնեցրին, և ավանը իր ամրություններով հանդերձ եկեղեցուն ի ծառայություն նվիրեցին։

786 Եւ ապա յետ այսորիկ անդէն ի սահմանակից գաւառն Եկեղեաց ելանէր։ Եւ անդ երևեալ դիւացն ի մեծ և ի բուն մեհենացն Հայոց թագաւորացն, ի տեղիս պաշտամանցն, յԱնահտական մեհենին, յԵրէզն աւանի. ուր ի նմանութիւն վահանաւոր զօրու ժողովեալ դիւացն մարտնչէին, և մեծագոչ բարբառով զլերինս հնչեցուցանէին։ Որք փախստականք եղեալք, և ընդ փախչելն նոցա կործանեալ բարձրաբերձ պարիսպքն հարթեցան։ Եւ որք դիմեալ հասեալ էին զգաստացեալ զօրօքն, սուրբն Գրիգոր թագաւորաւն հանդերձ, փշրէին զոսկի պատկերն Անահտական կանացի դիցն. և ամենևին զտեղին քանդեալ վատնէին, և զոսկին և զարծաթն աւար առեալ։ Եւ անտի ընդ գետն Գայլ յայնկոյս անցանէին, և քանդէին զՆանէական մեհեանն դստերն Արամազդայ ի Թիլն յաւանի։ Եւ զգանձս երկոցուն մեհենացն աւարեալ ժողովեալ՝ ի նուէր սպասուց սուրբ եկեղեցւոյն Աստուծոյ թողուին տեղեօքն հանդերձ։

787 ԾԺ. Եւ այսպէս ի բազում տեղեաց բառնային զգայթակղեցուցիչսն անմռունչս, զձուլեալսն, կոփեալսն կոփեալսն, քանդակեալսն, անպիտանսն, անօգուտսն, վնասակարսն, արարեալսն անմտութեամբ ցնորելոց մարդկան, դարձեալ սրտի մտօք ի հաւատսըն հաստատեալք։ «Արքայն մեծասաստ իշխանութեամբ տայր հրաման՝ սատանայակուր և դիւամոլ ազգացն կողմանցն այնոցիկ՝ թափել և զերծանել յունայնավար հնացելոցն սնոտիագործ պաշտամանցն, և հնազանդ լինել ամենահեշտ լծոյ ծառայութեանն Քրիստոսի»։

788 «Եւ յորժամ անդ ևս զայս արարեալ հաւասարութեամբ ամենեցուն՝ առ հասարակ լցեալ զպիտոյս քարոզութեանն»՝ ոչ ինչ ապաստան լինէր յահ և ի սաստ թագաւորին՝ հաւանեցուցանելոյ զամենեսին, և ոչ լոկ բանիւք միայն, այլ և նշանօք և արուեստիւք և ազգի ազգի բժշկութեամբք փառաւոր լինէր սուրբ անունն Քրիստոսի։ Այս ամենայն գործեցաւ կամօք մարդասիրին Աստուծոյ ի ձեռն Գրիգորի։ Եւ յամենայն տեղիս հասեալ ինքնին թագաւորն լինէր քարոզ, խոստովանելով զիւր զամբարշտութիւնսն. և պատմէր զամենայն արարեալսն Աստուծոյ զսքանչելիսն որ անցին ընդ նա, և զողորմութիւն բժշկութեանն, և զայն ցուցանէր բարձրաձայն աղաղակաւ, յայտ յանդիման առաջի ամենեցուն։

789 Ապա փութացեալ հասանէր ի գաւառն Դերջան, զի և անդ յառաջասցի լնուլ զառաքելական քարոզութեանն զարուեստ մշակութեանն երկովք, և զերծուցանել զնոսա ի գարշելի «դիւցական



786 Դրանից հետո իսկույն ելան սահմանակից Եկեղյաց գավառը, և այնտեղ երևացին դևերը Հայոց թագավորների մեծ և բուն մեհյաններում, պաշտամունքի վայրերում, Երեզ ավանի Անահիտի մեհյանում, ուր դևերը վահանավոր զորքի նմանությամբ հավաքված մարտնչում էին և մեծագոչ աղաղակով լեռները թնդացնում։ Նրանք փախստական դարձան, և նրանց փախչելու ժամանակ բարձրաբերձ պարիսպները կործանվեցին, հարթվեցին։ Դարձի եկած զորքերով այնտեղ հասածները, սուրբ Գրիգորը թագավորով հանդերձ, փշրեցին Անահիտ դիցուհու ոսկի արձանը, ամբողջ վայրը քանդեցին, փչացրին, ոսկին ու արծաթը ավարի տվին։ Այնտեղից Գայլ գետի վրայով այն կողմ անցան ու քանդեցին Արամազդի դստեր՝ Նանեի մեհյանը Թիլ ավանում։ Երկու մեհյանների գանձերը ավարելով՝ Աստծու սուրբ եկեղեցու ծառայությանը նվեր թողեցին տեղերով հանդերձ։

787 ԾԺ. Այսպես բազում տեղերից վերացրին ձուլված, կռած կոփված, քանդակված, անպիտան, անօգուտ, վնասակար ու ցնորյալ մարդկանց անմտությամբ արված գայթակղիչ, անմռունչ [կուռքերը] և դարձյալ հավատի մեջ սրտանց հաստատվեցին։ Արքան մեծասաստ իշխանությամբ հրաման տվեց այն կողմերի սատանայակուր և դիվամոլ ազգերին՝ թոթափել ու ազատվել ունայն, հնացած սնոտիապաշտությունից և հնազանդ լինել Քրիստոսի ծառայության ամենահաճելի լծին։

788 Երբ այնտեղ ևս ամենքի նկատմամբ հավասարապես այս բանը կատարեց՝ ավարտելով առհասարակ անհրաժեշտ քարոզությունը, այլևս չէր ապավինում թագավորի ահին ու սաստին՝ ամենքին հնազանդեցնելու համար, և ոչ միայն լոկ խոսքերով, այլև հնարներով ու հրաշքներով և տեսակ-տեսակ բժշկություններով փառավորեց Քրիստոսի սուրբ անունը։ Այս ամենը կատարվեց մարդասեր Աստծու կամքով, Գրիգորի ձեռքով։ Եվ ամեն տեղ հասնելով, ինքը՝ թագավորը, [կենդանի] քարոզ դարձավ՝ խոստովանելով իր անօրենությունները. պատմում էր Աստծու արած բոլոր հրաշքների մասին, որոնք իր վրա կատարվեցին, բժշկության ողորմությունը. և այս ցույց էր տալիս բարձրաձայն աղաղակով, ամենքի առջև, հայտ հանդիման։

789 Ապա փութով հասավ Դերջան գավառը, որպեսզի այնտեղ ևս ջանասիրությամբ առաջ տանի առաքելական քարոզության գործը և կարողանա ազատել նրանց գարշելի, դիցապաշտ, սատա-

սատանայակիր բարուցն ճիւաղութենէ, զխուժադուժ կողմանսն աշակերտելով, զխոշորագոյն և զխեցբեկագոյն բարս հեթանոսութեան շրջել ի զգաստութիւն աստուածուսոյց իմաստութեանն. և ծանօթս աւետարանական աւետեացն, յարդարեալս ընդելս կացուցանէր»։

790 Գայր հասանէր ի Մրհական մեհեանն անուանեալ որդւոյն Արամազդայ, ի գիւղն զոր Բագայառիճն կոչեն ըստ պարթևարէն լեզուին։ Եւ զայն ի հիմանց բրեալ խլէին, և զգանձսն մթերեալս աւար հարկանէին և աղքատաց բաշխէին, և զտեղիսն նուիրէին եկեղեցւոյ. և զբնակիչս աշխարհին հաստատէր ի գիտութիւն ճշմարտութեան։ Եւ յայնմհետէ փոյթ ի վերայ ունէր «զպարընթերակաց արքունիսն հանդերձ մեծամեծ աւագանւովն և ամենայն ազատագունդ բանակաւն աստուածեղէն իմաստութեամբն վարդապետել»։

791 ԾԺԱ. Իսկ թագաւորն Տրդատիոս հանդերձ միաբանութեամբ կնաւ իւրով Աշխէն տիկնաւ, և քերբ իւրով Խոսրովիդուխտով, հրաման ետ ի ժողով կոչել միաբանութեամբ ամենայն զօրաց իւրոց։ Եւ վաղվաղակի հասանէին ի ժամադիրն յամենայն կողմանց ըստ հրամանին՝ յԱյրարատ գաւառն ի Վաղարշապատ քաղաք։ Քանզի և թագաւորն չու արարեալ անդր հասանէր։ Եւ կուտեցան առ հասարակ զօրքն ամենայն, և մեծամեծք և կուսակալք, գաւառակալք, պատուաւորք, պատուականք, զօրավարք, պետք և իշխանք, նախարարք և ազատք, դատաւորք և զօրագլուխք, և հասեալ կային առաջի թագաւորին։

792 Խորհուրդ ի մէջ առնոյր թագաւորն ընդ ամենեսին, փութալ հասանել՝ բարեաց գործոց ժառանգաւոր լինել։ «Եկա՛յք, ասէ, ճեպեսցուք զայս առաջնորդ կենաց մերոց տուեալ մեզ յԱստուծոյ զԳրիգորդ հովիւ կացուցանել, զի լուսաւորեսցէ զմեզ մկրտութեամբ և նորոգեսցէ օրէնսուսոյց խորհրդովն արարչին մերոյ Աստուծոյ»։

793 Իսկ Գրիգոր ոչ առնոյր զայս յանձն, առնուլ զմեծ պատիւ քահանայապետութեանն, ասէ. «Ոչ կարեմ հանդարտել բառնալ վասն անչափակալ բարձրութեանն զօրել. զի անպատում է այս պատիւ քրիստոսատուր փառացն առաջնորդութեան, միջնորդ կալ ընդ Աստուած և ընդ մարդիկ. այլ զարժանին խնդրեալ գտցեն»։

794 Իսկ անդէն տեսիլ սքանչելի յԱստուծոյ երևեալ թագաւորին՝ տեսանէր զհրեշտակ Աստուծոյ, զի խօսէր ընդ նմա և ասէր, թէ «Պարտ է ձեզ զԳրիգորդ վիճակեցուցանել առանց յապաղելոյ



նայակիր, ճիվաղային բարքերից. խուժադուժ կողմերին աշակերտ դարձնելով՝ հեթանոսության կոշտ ու կոպիտ և անտաշ բարքերը աստվածուսույց իմաստության զգաստության կողմն էր շրջում, ավետարանական ավետիսներին ծանոթացնելով և կոկելով հարազատ դարձնում։

790 Եկավ հասավ Արամազդի որդի կոչված Միհրի մեհյանը, այն գյուղում, որը Բագայառիճ են կոչում պարթևերեն, և այն ի հիմանց բրելով քանդեցին, կուտակված գանձերը ավարի մատնեցին ու աղքատներին բաժանեցին և այդ տեղերը եկեղեցուն նվիրեցին, իսկ երկրի բնակիչներին ճշմարիտ գիտության մեջ հաստատեցին։ Դրանից հետո նա ճիգ էր թափում՝ իր մոտ եղած արքունիքը մեծամեծ ավագանու հետ մեկտեղ և ամբողջ ազատագունդ բանակով աստվածեղեն իմաստությամբ կրթելու։

791 ԾԺԱ. Իսկ Տրդատ (Տրդատիոս) թագավորը իր կին՝ Աշխեն տիկնոջ ու իր քրոջ Խոսրովիդուխտի համաձայնությամբ հրաման տվեց իր ամբողջ զորքերը միատեղ ժողովի կոչել։ Ամեն կողմերից, ըստ հրամանի, շտապփույթ հասան նշանակված վայրը՝ Վաղարշապատ քաղաքը։ Այրարատ գավառում, և հենց թագավորն էլ ճամփա ընկնելով այնտեղ հասավ։ Ամբողջ զորքը առհասարակ կուտակվեց՝ մեծամեծներ, կուսակալներ, գավառապետներ, պատվավորներ, պատվականներ, զորավարներ, պետեր, իշխաններ, նախարարներ, ազատներ, դատավորներ ու զորագլուխներ հասան, ներկայացան թագավորին։

792 Թագավորը ամենքի հետ խորհուրդ արեց, որ փութան, հասնեն բարի գործերին ժառանգորդ դառնալու։ «Եկեք, ասում է, փութանք Աստծու կողմից մեզ տրված կյանքի առաջնորդին՝ Գրիգորին հովիվ դարձնել, որպեսզի մկրտությամբ լուսավորի և վերանորոգի մեր արարիչ Աստծու ամենուսույց խորհրդով»։

793 Իսկ Գրիգորը հանձն չառավ ընդունել քահանայապետության մեծ պատիվը, ասաց. «Չեմ կարող համբերել, դիմանալ անչափ բարձրությանը, քանզի անպատում է քրիստոսատուր փառքի առաջնորդության պատիվը՝ միջնորդ դառնալու Աստծու և մարդկանց միջև, այլ թող արժանի [մարդու] որոնեն, գտնեն»։

794 Ապա Աստծուց սքանչելի տեսիլք երևաց թագավորին։ Տեսավ Աստծու հրեշտակին, որը խոսեց նրա հետ ու ասաց, թե «Պետք է որ դուք առանց հապաղելու Գրիգորին քահանայապետության պաշտոնը տաք, որպեսզի մկրտությամբ լուսավորի ձեզ»։ Աստծու

ի քահանայապետութիւն, զի լուսաւորեսցէ զձեզ մկրտութեամբ»։ Նոյնպէս երեւեալ և Գրիգորի տեսիլ հրեշտակի Աստուծոյ, զի մի իշխեսցէ ինչ պնդել յամառել վասն այնր, «զի ի Քրիստոսէ է այդ հրամայեալ, ասէ, քեզ»։ Իսկ նա հաւանեալ վաղվաղակի բարբառեալ ասէր, թէ «Կամք Աստուծոյ կատարեսցին»։

795 ԾԺԲ. Յայնժամ թագաւորն վաղվաղակի փութով և երկիւղիւ և մեծաւ խնդութեամբ հոգացեալ, գումարեաց զգլխաւորս նախարարացն և զկուսակալս աշխարհացն. առաջին՝ իշխանն Անգեղ տան, երկրորդ՝ իշխանն Աղձնեաց, որ է բդեաշխն մեծ. երրորդ՝ իշխանն մարդպետութեան իշխանութեանն, չորրորդ՝ իշխանն թագակապ իշխանութեան ասպետութեանն, հինգերորդ՝ իշխանն սպարապետութեան, զօրավար Հայոց աշխարհին. վեցերորդ՝ իշխանն Կորդուտաց աշխարհին, եօթներորդ՝ իշխանն Ծոփաց աշխարհին. ութերորդ՝ իշխանն Գուգարացւոց աշխարհին, որ միւս անուանեալ բդեաշխն. իններորդ՝ իշխանն Ռշտունեաց աշխարհին. տասներորդ՝ իշխանն Մոկաց աշխարհին. մետասաներորդ՝ իշխանն Սիւնեաց աշխարհին. երկոտասաներորդ՝ իշխանն Ծաւդէից աշխարհին. երեքտասաներորդ՝ իշխանն Ուտիացւոց աշխարհին. չորեքտասաներորդ՝ իշխանն շահապ Զարաւանդ և Հեր գաւառի. հնգետասաներորդ՝ իշխանն մաղխազութեան տանն. վեշտասաներորդ՝ իշխանն Արծրունեաց։

796 Այս իշխանք են ընտիրք, կուսակալք, կողմնակալք, հազարաւորք, բիւրաւորք ի մէջ Հայաստան աշխարհի տանն Թորգոմայ, զորս գումարեաց թագաւորն Տրդատ և առաքեաց զնոսա ի կողմանս Կապուտկացւոց, ի քաղաքն Կեսարացւոց, զոր ըստ հայերէն լեզուին Մաժաք կոչեն. զի տարեալ զԳրիգորն՝ քահանայապետ կացուսցեն իւրեանց աշխարհին. և հանդերձեցան դէտ ակն ունել ճանապարհացն։ Եւ հրամայեաց հրովարտակ գրել օրինակ զայս.—

## ՊԱՏՃԷՆ ՀՐՈՎԱՐՏԱԿԻՆ

797 «Ի վաղնջուց հետէ կորուսեալք, տգիտութեամբ մեզացն պաշարեալք, մառախլապատք, միգապատք, ափշեալք, ոչ կարացեալ հայել իմանալ նկատել, զարեգակն արդարութեան տեսանել. վասն այսորիկ խաւարեալք էաք, ի մութ թաթաւէաք։ Իսկ յորժամ քաղցրութիւն և մարդասիրութիւն արարչին մերոյ Աստուծոյ երեւեցաւ՝ խրատել և լուսաւորել զմեզ զարարածս իւր՝ ծագեաց զնշոյլս կենդանի լուսոյն իւրոյ ի սիրտս մեր, և կենդանացոյց զմեռելու-



հրեշտակը տեսիլքի մեջ երևաց նաև Գրիգորին, որպեսզի չլինի թե այդ մասին պնդի, համառի, «Քանզի, ասում է, Քրիստոսից է այդ հրամայված քեզ», իսկ նա հավանելով անմիջապես գոչեց՝ ասելով, թե «Աստծու կամքը թող կատարվի»։

795 ԾԺԲ. Այնժամ թագավորը շուտափույթ և երկյուղածությամբ մեծ խնդությամբ հոգալով՝ հավաքեց երկրների գլխավոր նախարարներին ու կուսակալներին։ Առաջինը՝ Անգեղ տան* իշխանը, երկրորդը՝ Աղձնյաց* իշխանը, որը մեծ բդեշխն է, երրորդը՝ Մարդպետության իշխանը, չորրորդը՝ իշխանության թագադիր ասպետ իշխանը, հինգերորդը՝ սպարապետության իշխանը, Հայոց աշխարհի զորավարը, վեցերորդը՝ Կորդվաց* երկրի իշխանը, յոթերորդը՝ Ծոփաց երկրի իշխանը, ութերորդը՝ Գուգարաց երկրի իշխանը, որն անվանվում էր մյուս բդեշխ, իններորդը՝ Ռշտունյաց երկրի իշխանը, տասներորդը՝ Մոկաց երկրի իշխանը, տասնմեկերորդը՝ Սյունյաց երկրի իշխանը, տասներկուերորդը՝ Ծավդեից* երկրի իշխանը, տասներեքերորդը՝ Ուտիացոց երկրի իշխանը, տասնչորսերորդը՝ Զարավանդ* և Հեր գավառի շահապ իշխանը, տասնհինգերորդը՝ մաղխազության տան իշխանը, տասնվեցերորդը՝ Արծրունյաց իշխանը*։

796 Սրանք են Հայաստան աշխարհի, Թորգոմի տան ընտիր իշխանները, կուսակալները, կողմնակալները, հազարապետները, բյուրավորները, որոնց հավաքեց Տրդատ թագավորը և ուղարկեց Կապուտկացոց կողմերը, Կեսարիա քաղաքը, որը հայերեն Մաժաք են կոչում, որպեսզի տանելով Գրիգորին, իրենց երկրի քահանայապետ դարձնեն ու պատրաստվեցին ճանապարհ ընկնելու։ Եվ հրամայեց հրովարտակ գրել այս օրինակով։

## ՀՐՈՎԱՐՏԱԿԻ ՊԱՏՃԵՆԸ

797 «Վաղուց ի վեր կորած, մեղքերի տգիտությամբ պաշարված, մառախլապատ, միգապատ և ապշած էինք՝ չկարողանալով նայել, իմանալ, նկատել, արդարության արեգակը տեսնել, որի համար էլ խավարյալ էինք մթության մեջ թաթախված։ Իսկ երբ մեր արարիչ Աստծու քաղցրությունն ու մարդասիրությունը երևացին մեզ՝ արարածներիս խրատելու և լուսավորելու, նա իր կենդանի լույսի ճառագայթները ծագեցրեց մեր սրտերում և կենդանացրեց

թիւնս մեր, զիւր զսուրբ զսիրելի զվկայսս իւր յայս կողմանս առաքելով։

798 «Որք եկեալ՝ մերում անմտութեանս զիւրեանց քաջութեան նահատակութեան առաքինութեան զհանդէսն ցուցին։ Իբրև զի Տէրըն գիտէր իսկ զնոցա քաջութիւնն թէ ո՛րպիսիք են. այլ զի և մեզ անմտացս ուսուսցէ զիմաստութիւն, թէ ո՛րչափ սիրով սիրեցին սոքա զՏէրն իւրեանց, վասն այսորիկ ընդ մարտին նոցա առաքինութեանն՝ տէր Աստուած սխրագործ ա՛յնչափ արար զիւր սքանչելիս և մեզ սաստիկ պատիժս պատուհասից՝ մինչև թագաւորիս մերում լինել խոզ, և ընդ վայրագասուն գազանս արածել։ Ապա ողորմեալ մեզ բարեխօսութեամբ աղօթից վկայելոցս, ի ձեռն այդր վկայեցելոյդ Գրիգորի զամենեսեան զմեզ բժշկեաց։

799 «Քանզի և դա առաւել ևս վկայ գտաւ, առաւել քան զառաւել նահատակեալ, վասն այսորիկ յԱստուծոյ մեզ տուեալ առաջնորդ։ Եւ ի ձեռն դորա զնախնական կարգս սովորութեան ունայնութեան, կռապաշտութեան հայրենեացն, խլեաց եբարձ ի միջոյ. և ուսոյց ամենեցուն մեզ զիւր զվկայութիւնսն և զհրամանս, ըստ իւրոց կամացն գնալ. մինչև տալ մեզ հրաման յայտ յանդիման՝ զդոյն ինքն զԳրիգորդ մեզ հովիւ և տեսուչ և վարդապետ ճշմարտապատում կացուցանել։

800 «Վասն այսորիկ և մեր ապաստան եղեալ յօգնականութիւն ընդունելութեան աղօթից ձերոց և սրբութեանդ, Ղևոնդիոս արքեպիսկոպոս Կեսարու և ամենայն ուխտ քահանայութեանդ սրբոյ եկեղեցւոյ, որ այդր էք, մեք յողորմութենէ Տեառն աղօթիւք ձերովք առցուք ողջոյն, Տրդատիոս թագաւոր, ամենայն զօրօք երկրիս Հայոց Մեծաց, և Աշխէն տիկին, և օրիորդ մեծ Խոսրովիդուխտ։ Վասն այսորիկ առաքեցաք մեք առ ձեզ արս գլխաւորս՝ իշխանս պատուականս զաշխարհիս մերոյ մեծի, զի պատմեսցեն ձեզ զամենայն սքանչելիս Աստուծոյ, որ սաստ յայսմ աշխարհիս գործեցաւ ընդ մեզ։

801 «Եւ տուաք մեք ածել առ ձեզ զսուրբ խոստովանողդ Քրիստոսի զԳրիգորիոս. և զայս հրովարտակ մեր առ ձեզ գրեցաք, զի ըստ տուչութեան աւանդութեան հոգևոր աստուածատուր շնորհին Քրիստոսի՝ մեզ զԳրիգոր տեսուչ և վարդապետ առաջնորդութեան աստուածագնաց ճանապարհացն, և հովիւ և բժիշկ կացուսջիք, որպէս և մեզ յԱստուծոյ հրամայեցաւ։ Եւ աղօթս արասջիք, զի զմեզ արժանիս արասցէ Աստուած իւրոյ ողորմութեանն, առողջութեամբ գնալ ի ճանապարհս նորա, և ձեր սէրն և ողջոյն եկեալ



մեր մեռելությունը՝ իր սուրբ, սիրելի նահատակներին այս կողմերը առաքելով։

798 Նրանք գալով, մեր անմտության [դիմաց] իրենց քաջ նահատակության, առաքինության հանդեսը ցույց տվին։ Եվ Տերը, որ գիտեր նրանց քաջությունը, թե ինչպիսիք էին, [ուղարկեց] որպեսզի մեզ՝ անմիտներիս ևս իմաստություն սովորեցնեն և թե որչափ սիրով սիրեցին նրանք իրենց Տիրոջը, այդ պատճառով էլ առաքինության համար մղած մարտի ժամանակ սխրագործ տեր Աստված այնչափ հրաշքներ ցույց տվեց և մեզ սաստիկ պատիժներով պատուհասեց։ Մինչև անգամ մեր թագավորը խոզ դարձավ և արածում էր վայրենի գազանների հետ։ Ապա մեզ ողորմելով, նահատակների աղոթքների բարեխոսությամբ, այս նահատակված Գրիգորի միջոցով ամենքիս բժշկեց։

799 Քանզի սա առավել ևս նահատակ գտնվեց, ավելի քան նահատակված, որի համար Աստված նրան մեզ առաջնորդ տվեց։ Սրա ձեռքով մեր նախկին ունայն սովորության կարգերը, հայրենի կուռքերը խլեց, մեջտեղից վերացրեց և մեզ ամենքիս սովորեցրեց իր օրենքներն ու հրամանները, որպեսզի իր կամքով ընթանանք, մինչև որ մեզ հայտ հանդիման հրաման տվեց՝ նույն այդ Գրիգորին՝ մեզ հովիվ, տեսուչ և ճշմարտապատում վարդապետ կարգել։

800 Այդ պատճառով մենք ապավինեցինք ձեր աղոթքների ընդունելության օգնությանը և ձեր սրբությանը՝ Ղևոնդիոս Կեսարիո արքեպիսկոպոս և սուրբ եկեղեցու քահանայության այդտեղ գտնվող ամբողջ ուխտ, որպեսզի մենք՝ Տրդատ թագավոր, Մեծ Հայք երկրի ամբողջ զորքով, Աշխեն տիկին և մեծ օրիորդ Խոսրովիդուխտ, ձեր աղոթքներով ողջույն առնենք Տիրոջ ողորմությունից։ Դրա համար ձեզ մոտ ուղարկեցինք գլխավոր մարդկանց՝ մեր մեծ երկրի պատվական իշխանների, որպեսզի պատմեն ձեզ Աստծու բոլոր հրաշքները, որոնք այս երկրում մեզ հետ կատարվեցին։

801 Եվ մենք ձեզ մոտ բերել տվինք Քրիստոսի սուրբ խոստովանող Գրիգորին և մեր այս հրովարտակը ձեզ գրեցինք, որպեսզի ըստ Քրիստոսի հոգևոր աստվածատուր շնորհի ավանդության պարգևի, Գրիգորին տեսուչ, աստվածագնաց ճանապարհների առաջնորդության վարդապետ և մեզ հովիվ ու բժիշկ կարգեք, ինչպես մեզ հրամայված է Աստծուց։ Աղոթք արեք, որ Աստված մեզ իր ողորմությանն արժանի դարձնի, որ առողջությամբ գնանք նրա ճանա-



29—1461

հանգիցէ առ մեզ»։ Եւ պատճէն հրովարտակին զայս օրինակ գրեցաւ

802 ՃԺԳ. Եւ կազմեցան պատրաստեցան, առին ընդ իւրեանս պատարագս՝ ոսկի և արծաթ, ձիս և ջորիս և հանդերձս գունակ գունակս ի զարդ և ի սպաս պաշտական տեղեացն սրբոց տանցն Աստուծոյ՝ ուր առաքեալքն էին. և ամենայն եկեղեցեացն առնէին պատրաստութիւն պատարագաց՝ ընդ որ էին անցանելոց։

803 Եւ հանէին զԳրիգոր յոսկիապատ կառսն արքունականս՝ սպիտակաձիգ ջորւոցն։ Եւ ամենայն իշխանքն գումարեալք ընդ նըմա կառօք և երիվարօք, զօրօք, նշանակօք, իւրաքանչիւր գնդաւ խաղացին գնացին յԱյրարատեան գաւառէն, ի Վաղարշապատ քաղաքէ. և հասեալ ի սահմանս Յունաց՝ բազում պատիւս կազմութեան հիւրամեծարութեան գտանէին ի քաղաքաց քաղաքաց։ Եւ բազում խնդութիւնս և կայտիռս ցնծութեան, խնճոյս ուրախութեան կացուցանէին, իբրև լսէին զԱստուծոյ արարեալ զսքանչելիսն, և զհասելոց դարձ փրկութեան և զճանապարհս օգտակարս։

804 Այսպէս պատուեալ ըստ ճանապարհացն՝ մինչև գային հասանէին ի քաղաքն Կեսարացւոց. և անդ տեսանէին զսուրբ կաթողիկոսն Ղևոնդիոս, և զամենայն եկեղեցական գունդս գունդս սրբոցն կղերիկոսացն և զդասս դասս հրեշտակակրօն պաշտօնէիցն։ Տուեալ ողջոյն և պատմեալ նոցա՝ որ ինչ միանգամ եղեալ էր յԱստուծոյ, և մատուցին զԹուղթ Թագաւորին առաջի սրբոյ քահանայապետին. և նորա մեծաւ խնդութեամբ ընկալեալ և ամենայն քաղաքացեացն մեծաւ ուրախութեամբ։ Եւ ամենեքեան առնէին տօն ցնծութեան, և զսուրբն Գրիգոր պատուեալ ըստ արժանի առաքինութեանցն ճգնութեանցն վկայօրէն մարտին՝ կանթեղօք և սաղմոսիւք և երգովք հոգևորօք փառաւորէին։ «Եւ իշխանաց քաղաքին ցուցեալ բազում մեծարանս հասելոցն և ընկալեալ հոգաբարձութեամբ ըստ Քրիստոսի անուանելոյն կարգի»։ Եւ այսպէս մեծապատիւ յամենեցունց մեծարեալ ըստ արժանաւորութեանն երանութեան վկայական անուան ստացելոյ։

805 Եւ եղեալ ժողով բազմութեան եպիսկոպոսաց ի քաղաքն Կեսարացւոց, զի ձեռնադրեսցեն զսուրբն Գրիգորիոս և աւանդեալ ի նա զպատիւ խոնարհութեան քահանայութեանն Քրիստոսի, և զբարձրութիւն եպիսկոպոսութեան փառաւորութեանն Աստուծոյ, զպատիւն և զփառսն մեծ։ Սրբով Աւետարանաւն եդին ի վերայ նորա ձեռս ժողովք եպիսկոպոսացն, որոց գլխաւորն Ղևոնդիոս, զի



պարհներով և ձեր սերն ու ողջույնը հասնի մեզ»։ Այս օրինակով գրվեց հրովարտակի պատճենը։

802 ՃԺԳ. Եվ կազմվեցին, պատրաստվեցին իրենց հետ առան ընծաներ՝ ոսկի ու արծաթ, ձիեր ու ջորիներ, զանազան հանդերձներ, որպես զարդ ու սպաս եկեղեցիների պաշտական սուրբ տեղերին, ուր ուղարկված էին. իրենց անցած վայրերում բոլոր եկեղեցիներին ընծաներ էին մատուցում։

803 Հանեցին Գրիգորին արքունական ոսկեպատ կառքը՝ լծված սպիտակ ջորիներով։ Եվ բոլոր իշխանները նրա մոտ հավաքված կառքերով ու երիվարներով, զորքով, զինանշաններով, յուրաքանչյուրն իր գնդով շարժվեցին գնացին Այրարատյան գավառից, Վաղարշապատ քաղաքից և հասնելով հունաց սահմանները հյուրամեծարության բազում պատիվներ գտան այլևայլ քաղաքներում։ Շատ զվարճություններ, ցնծության և ուրախության խնջույքներ կազմակերպեցին, երբ լսեցին Աստծու արած հրաշքները և փրկության դարձն ու օգտակար ճանապարհներով գնալը։

804 Այսպես ճանապարհներում պատիվներ ստանալով՝ եկան հասան Կեսարիա* քաղաքը և այնտեղ տեսան սուրբ կաթողիկոս Ղևոնդիոսին ու բոլոր եկեղեցական խումբ-խումբ սուրբ կղերականներին (կղերիկոս) ու դաս-դաս հրեշտակակրոն սպասավորներին։ Ողջույն տալով և պատմելով նրանց, թե ինչ էր մի անգամ արել Աստված, թագավորի թուղթը մատուցեցին սուրբ քահանայապետին, և նա, ինչպես և բոլոր քաղաքացիք, մեծ խնդությամբ ընդունեցին։ Ամենքը ցնծության տոն կատարեցին և, սուրբ Գրիգորին պատվելով, ինչպես արժանի է նրա առաքինություններին, ճգնություններին ու մարտիրոսավայել մարտին, կանթեղներով, սաղմոսներով ու հոգևոր երգերով փառավորեցին նրան։ Քաղաքի իշխանները եկածներին շատ մեծարանքներ ցույց տվին և հոգատարությամբ ընդունեցին, ըստ Քրիստոսի սահմանած կարգի։ Այսպես, ամենքից մեծ պատիվներով մեծարվեցին մարտիրոսի երանելի անվանն արժանի ձևով։

805 Բազմաթիվ եպիսկոպոսների ժողով եղավ Կեսարիա քաղաքում, որպեսզի ձեռնադրեն սուրբ Գրիգորին և նրան ավանդեն Քրիստոսի քահանայության խոնարհ աստիճանը, և Աստծու փառավորության, եպիսկոպոսության բարձր աստիճանն ու մեծ փառքը։ Սուրբ Ավետարանով նրան ձեռնադրեց եպիսկոպոսների ժողովը, որի գլխավորն էր Ղևոնդիոսը, որպեսզի նա իշխանություն առ-

տացէ նա իշխանութիւն յերկինս և յերկրի, առնուլ զփականս արքայութեանն երկնից, կապել և լուծանել յերկրի։

806 Մեծաւ պատուով և թղթով և ժողովով զսուրբն Գրիգորիոս անդուստ յուղարկեցին իշխանօքն հանդերձ։ Ետուն ողջոյն, և յուղի անկեալ անտի ի շնորհս տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ գային հասանէին ի քաղաքն Սեբաստացւոց, և անդ յեցան յերեկօթս աւուրս ոչ սակաւս։ Եւ անդ գտանէր բազմութիւն եղբարց, զորս հաւանեցուցանէր ընդ իւր գալ, զի վիճակեցուսցէ զնոսա ի քահանայութիւն յիւրում աշխարհին, և բազում գունդս գունդս յաճախեալ առնոյր ընդ իւր, «և մեծարանօք մեծարեալ յեպիսկոպոսաց աշխարհին և յիշխանաց և ի ժողովրդոց»։

807 Իսկ ընդ որ անցանէին՝ կուտէին ժողովուրդք ի վերայ ժողովրդոց՝ տեսանել զսուրբ եպիսկոպոսն Գրիգորիոս, զի օրհնեսցին ի նմանէ. և ասէին ցմիմեանս. «Եկա՛յք տեսցուք զսուրբ եպիսկոպոսն Գրիգորիոս. զի այս այն այր է, ասէին, որ վասն Քրիստոսի համբեր չարչարանաց, վկայ հաւատարիմ գտեալ, զխոստովանողական անուն ժառանգեաց»։

808 «Եւ յետ այսորիկ առնոյր ընդ իւր զբազմութիւն հաւանելոցն՝ նախարարակոյտ զօրուն հանդերձ. հրաժարեալ այնուհետև շնորհատուր պարգևօքն և ամենայն իւրայովքն յանձն եղեալ շնորհացն Աստուծոյ՝ ճանապարհորդ լինէր. և այսպէս զբազում օթևանօք անցեալ՝ առողջութեամբ, յաջողութեամբ և հոգելից ուրախութեամբ եկեալ հասանէին ի Հայաստան աշխարհն»։

809 ԾԺԴ. Եւ իբրև եկն եհաս ի սահմանս Հայոց՝ լուաւ Գրիգորիոս, թէ Վահէվանեան մեհեանն մնացեալ է յերկրին Տարօնոյ, մեհեանն մեծագանձ, լի ոսկւով և արծաթով, և բազում նուէրք մեծամեծ թագաւորաց ձօնեալ անդ. ութերորդ պաշտօն հռչակաւոր, անուանեալն Վիշապաքաղն Վահագնի, յաշտից տեղիք թագաւորացն Հայոց Մեծաց, ի սնարս լերինն Քարքեայ, ի վերայ գետոյն Եփրատայ, որ հանդէպ հայի մեծի լերինն Տաւրոսի, որ և անուանեալ ըստ յաճախաշատ պաշտաման տեղեացն՝ Յաշտիշատ։ Զի յայնժամ դեռ ևս չէն կային երեք բագինք ի նմա. առաջին՝ մեհեանն Վահէվանեան, երկրորդն՝ Ոսկեմօր Ոսկեծին դից, և բագինն իսկ յայս անուն անուանեալ Ոսկեհատ Ոսկեմօր դից. և երրորդ՝ մեհեանն անուանեալ Աստղկան դից, Սենեակ Վահագնի կարդացեալ, որ է ըստ յունականին Ափրոդիտէս։ Արդ՝ դիմեաց գալ սուրբն Գրիգո-



նի երկնքում ու երկրում, երկնքում արքայության փականքը առնելու, իսկ երկրում՝ կապելու ու արձակելու։

806 Մեծ պատվով, թղթով ու ժողովով սուրբ Գրիգորին իշխաններով հանդերձ այնտեղից ճանապարհ դրեցին։ Հրաժեշտ տվին և ճանապարհ ընկնելով մեր տեր Հիսուս Քրիստոսի շնորհներով եկան հասան Սեբաստիա* քաղաքը ու այնտեղ որոշ ժամանակ իջևանեցին։ Նա գտավ այնտեղ կրոնավորների բազմություն, որոնց համոզեց իր հետ գալ, որպեսզի նրանց իր երկրի քահանայության կարգը տա. և բազմաթիվ խմբեր կուտակվեցին, որոնց նա առավ իր հետ ու շատ մեծարանքների արժանացավ երկրի եպիսկոպոսներից, իշխաններից ու ժողովրդից։

807 Իսկ որտեղից որ անցնում էին, ժողովուրդը կուտակվում էր տեսնելու սուրբ եպիսկոպոս Գրիգորին, որպեսզի օրհնվեն նրանից։ Ասում էին իրար. «Եկեք տեսնենք սուրբ եպիսկոպոս Գրիգորին, քանզի սա այն մարդն է, որ Քրիստոսի սիրուն համբերեց չարչարանքներին, հավատարիմ վկա եղավ՝ խոստովանողի անուն ժառանգեց»։

808 Սրանից հետո իր հետ առավ կամակիցների բազմությունը, նախարարակույտ զորքով հանդերձ. հրաժեշտ տվեց այնուհետև շնորհատուր պարգևներով ու բոլոր յուրայիններով անձնատուր լինելով Աստծու շնորհներին՝ ճանապարհ ընկավ և այսպես բազմաթիվ օթևաններ անցնելով՝ առողջությամբ, հաջողությամբ ու հոգելից ուրախությամբ եկան հասան Հայաստան աշխարհը։

809 ԾԺԴ. Երբ եկավ հասավ Հայաստանի սահմանները, Գրիգորը լսեց, թե Վահևանյան մեհյանը մնացել է Տարոնի երկրում՝ մեծագանձ մեհյանը լի ոսկով ու արծաթով և մեծամեծ թագավորների ձոնած բազում նվերներով։ Պաշտամունքի ութերորդ հռչակավոր [վայրն] էր Վիշապաքաղն Վահագնի անվամբ, Մեծ Հայքի թագավորների զոհերի, տեղը, Քարքե լեռան լանջին, Եփրատ գետի վրա, Տավրոս մեծ լեռան դիմացը, որը և պաշտամունքի վայրերի հաճախաշատ լինելու պատճառով անվանված էր Աշտիշատ։ Քանզի այնժամ դեռևս շեն էին նրանում երեք բագինները, առաջինը՝ Վահեվանյան* մեհյանը, երկրորդը՝ Ոսկեմայր Ոսկեծին աստվածուհու և բագինը այս անվամբ էլ կոչված էր Ոսկեհատ Ոսկեմայր դիցուհու, երրորդը, Աստղիկ դիցուհու մեհյանը, Սենյակ Վահագնի կոչված, որը հունական ձևով Ափրոդիտես է։ Արդ՝ այնտեղ դիմեց սուրբ Գրիգորը, որպեսզի այն ևս քանդի, քանզի տակավին

*րիոս, զի քանդեսցէ և զայն ևս, զի տակաւին իսկ տղէտ մարդիկ խառնակութեան զոհէին յայս բագինս մնացեալս։*

*810 Եւ իբրև դարձեալ գայր նա ի կողմանցն Յունաց՝ բարձեալ բերէր ընդ իւր նշխարս ինչ յոսկերաց մեծի մարգարէին երանեալ մկրտչին Յովհաննու և զսուրբ վկային Քրիստոսի զԱթանագինէի։ Եւ իբրև եկին հասին յանդիման մեհենացն, մօտ ի գետն Եփրատ՝ կամէր հանել զնոսա ի վեր, ի բարձրաւանդակ տեղի մեհենացն, կործանել զբագինսն, և շինել զվկայարանս նոցա։*

*811 Իբրև եկին մօտ եղեն ի գետն Եփրատ իբրև ձիոյ արշաւանօք երկուք, և դեռ ընդ փոքր ձորակ մի անցանել կամէին, ընդ ջուր մի սակաւ՝ զտեղի առին սպիտակ ջորիք կառացն, ուր կային զանձքն աստուածային, նշխարք սրբոցն. ոչ կարացին հանել ըստ ձորակն։ Եւ յայտնեալ առ Գրիգոր հրեշտակ Տեառն՝ ասէ. «Հաճեցաւ Տէր զբնակել սրբոցդ Աստուծոյ ի տեղւոջդ»։ Ուր և անդէն բազմութեան զօրացն, մէն սակաւ սատարեալ՝ շինեցին զվկայարանն, և զսուրբսն ի հանգիստ փոխեցին։*

*812 ԾԺԵ. Եւ մինչ դեռ զշինուած մատրանն կազմէին՝ հրաման ետ Գրիգոր զօրականին և իշխանացն որ ընդ իւրն էին, զի ելցեն և մրճօք տապալեսցեն զշինուածս բագնացն։ Որք ելեալ շատ ջանացան, և ոչ կարացին զդուրս բագնացն գտանել՝ թէ ի ներքս մտցեն, զի ծածկեցին դեքն ի նոցանէն. և ի կողմանէ արտաքուստ ջանացան, և ոչ գծեաց անդ երկաթ գործւոյն. ապա փութացան հասին իշխանքն և պատմեցին նմա զամենայն։*

*813 Իսկ նա առնոյր զնշան տէրունական խաչին, և ելեալ ի ձորակէն եկաց յանդիման բարձրաբերձ տեղեացն շինուածոցն և ասէ. «Հրեշտակ քո, Տէր, հալածեսցէ զնոսա»։ Եւ ընդ բանիցն հողմ ուժգին բղխեաց ի խաչանիշ փայտէն, զոր ունէր ի ձեռին իւրում սուրբ եպիսկոպոսն։ Եւ երթայր հողմն ուռուցեալ լերինն հաւասար, և չոգաւ հարթեաց, տապալեաց, ընկէց զամենայն շինուածսն բագնացն։ Եւ այնչափ կորոյս, զի յետ այնորիկ ոչ ինչ ոք յայնմ տեղւոջ նշմարանս կարէր գտանել, ո՛չ քարի և ոչ փայտի, ո՛չ ոսկւոյ և ոչ արծաթոյ, և ոչ բնաւ երևէր, թէ լեալ ինչ իցէ անդ։ Եւ անթիւք կոտորեցան մարդիկ պաշտամանն քրմութեան որ ի տեղւոջ անդ էին, և անհետ եղեն ոսկերք նոցա. և որք տեսինն՝ անթիւ մարդիկ հաւատացին։ Եւ ասէ սուրբն Գրիգոր. «Արդ տեսէք, թէ ո՛րպէս ջնջեցան*



*տգետ մարդիկ շփոթությամբ զոհ էին մատուցում այս մնացած բագիններին։*

*810 Երբ վերադառնում էր նա հույների կողմերից, իր հետ բերել էր մեծ մարգարե, երանյալ Հովհաննես Մկրտչի ու Քրիստոսի սուրբ վկա Աթանագինեսի* ոսկորների նշխարները։ Երբ եկան հասան մեհյանների դիմաց, Եփրատ գետի մոտ, կամենում էր նրանց վեր հանել մեհյանների բարձրավանդակ տեղը, կործանել բագինները և նրանց վկայարաններ շինել։*

*811 Երբ եկան մոտեցան Եփրատ գետին երկու ձիընթաց (հեռավորությամբ) և դեռ կամենում էին անցնել մի փոքր ձորակ, սակավ ջրի միջով, կանգնեցին կառքերի սպիտակ ջորիները, որոնց վրա գտնվում էին աստվածային գանձերը՝ սրբերի նշխարները և չկարողացան հանել ձորակի միջով։ Հայտնվեց Տիրոջ հրեշտակը Գրիգորին ու ասաց. «Տերը կամեցավ, որ Աստծու սրբերն այս տեղում բնակվեն»։ Ապա իսկույն բազմաթիվ զորքերը բոլորը միասին օգնելով շինեցին մատուռը և սրբերին գերեզման փոխադրեցին։*

*812 ԾԺԵ. Եվ մինչդեռ մատուռն էին կառուցում, Գրիգորը հրաման տվեց զորականին ու իր հետ եղած իշխաններին, որ ելնեն ու մուրճերով տապալեն բագինների շինվածքը։ Նրանք ելնելով շատ ջանացին, բայց չկարողացան բագինների դռները գտնել, որ ներս մտնեն, քանի որ դևերը նրանցից ծածկեցին։ Դրսից ջանացին, սակայն երկաթը չներգործեց այնտեղ, ապա իշխանները, փութացին հասան և նրան ամեն ինչ պատմեցին։*

*813 Իսկ նա առավ տերունական խաչի նշանը և ձորակից ելնելով կանգնեց շինվածքի բարձրաբերձ տեղերին դեմ հանդիման ու ասաց. «Թող քո հրեշտակը, Տեր, հալածի նրանց»։ Այս խոսքերի վրա ուժգին հողմ փչեց խաչանիշ փայտից, որը ձեռքում բռնած էր սուրբ եպիսկոպոսը։ Հողմը բարձրացավ, ուռեց լեռան հավասար և եկավ հարթեց, տապալեց, վայր գցեց բագինների ամբողջ շինությունները։ Այնպես կործանեց, որ դրանից հետո ոչ ոք այդ տեղում չէր կարող որևէ հետք նշմարել՝ ոչ քարի, ոչ փայտի, ոչ ոսկու, ոչ արծաթի, և բնավ չէր երևում, թե այնտեղ որևէ բան էր եղել։ Այն տեղում գտնվող քրմությանը ծառայող մարդկանցից շատերը կոտորվեցին, և նրանց ոսկորները անհետ եղան։ Տեսնողներից անթիվ մարդիկ հավատացին։ Սուրբ Գրիգորը ասաց. «Արդ՝ տեսեք, թե ինչպես ջնջվեցին ձեր գայթակղությունները, քանզի ո-*

գայթակղութիւնքն ձեր, զի և չէին իսկ ինչ. այլ ծառայեցէ՛ք յայսմհետէ տեառն Աստուծոյ որ արար զերկինս և զերկիր»։

814 Եւ յետ այսորիկ իջանէր նա ի տեղիս մեհենացն, և ժողովեալ դարձուցանէր զմարդիկ աշխարհին յաստուածպաշտութիւն։ Եւ եդ անդ զհիմունս եկեղեցւոյն, և ուղղեաց սեղան փառացն Քրիստոսի. զի նախ անդ արար սկիզբն շինելոյ եկեղեցեաց։ Եւ ուղղեալ սեղան յանուն սուրբ Երրորդութեանն, և կազմեալ աւազան մկրտութեան, նախ զայնոսիկ լուսաւորեաց մկրտութեամբն՝ որ ընդ իւրն էին մեծամեծ նախարարքն, որ ընդ նմայն երթեալ էին ի քաղաքն Կեսարացւոց, և ապա զգաւառականսն, զբնակիչս երկրին։ Աւուրս քսան երեկօթս առնէր, և մկրտէր անդ աւելի քան զինն և տասն բիւր մարդկան, և կանգնէր սեղան ի վկայարանի սրբոցն հանգստի զոր շինեացն, և մատուցանէր զպատարագն փրկութեան, և բաշխէր անդ զմարմին և զարիւն կենարարին Քրիստոսի։

815 Եւ հրամայեաց կատարել անդ ամ յամէ, ի նմին տեղւոջ ժողովեալ ամենեցուն, զյիշատակ սրբոցն, որ օր եօթն էր ամսոյն սահմի, զի խնդութեամբ ժողովեալ՝ զօր տօնին խմբեսցեն. զի նախ անտի սկիզբն արար շինելոյ զեկեղեցիս։ Եւ կացուցանէր քահանայս ի տեղիս տեղիս. և ելից զվայրսն եկեղեցւովք շինելովք և քահանայիւք։

816 Եւ ինքն չու արարեալ անտի՝ մեծապանծ պարծանօք զօրութեան խաչին Քրիստոսի և բարձ նշխարս անտի կէս մի ի սրբոցն, զի և յայլ տեղիս հաստատեսցէ զյիշատակս նոցա։ Եւ ընդ ամենայն տեղիս և ընդ ամենայն գաւառս շրջէր. յաւանս և յագարակս շինէր եկեղեցիս, և առնէր մկրտութիւն և կացուցանէր քահանայս։

817 ԾԺՁ. Լուաւ ապա և մեծ թագաւորն Տրդատ, եթէ Գրիգոր եկեալ հասեալ է յերկիրս Հայոց։ Առ զզօրս իւր և զԱշխէն տիկին և զքոյրն իւր զԽոսրովիդուխտ, և չու արարեալ յԱյրարատեան գաւառէն, ի Վաղարշապատ քաղաքէ, ընդ առաջ Գրիգորի, գայր հասանէր ի քաղաքագեօղն Բագաւան, որ անուանեալ կոչի ի պարթևարէն լեզուէն՝ Դիցաւան. և անդ սպասեալ մնայր նմա ամսօրեայ ժամանակս։ Իսկ նա շրջէր, զի լցցէ զկողմանս կողմանս եկեղեցեօք և քահանայիւք և պաշտօնէիւք և ամենայն աստուածագործ սպասաւորութեանն կարգօք, և լուսաւորեսցէ զբազումս մկրտութեամբ։

818 Ապա գայր հասանէր յանուանեալ Դիցաւանն ամենայն մեծամեծօքն և զօրօքն և աշխարհակոյտ ամբոխիւն, որք էին ժողո-



չինչ էին. բայց սրանից հետո ծառայեցեք տեր Աստծուն, որն ստեղծեց երկինքն ու երկիրը»։

814 Սրանից հետո իջավ նա մեհյանների վայրերը և երկրի մարդկանց ժողովելով դեպի աստվածապաշտություն դարձրեց և այնտեղ եկեղեցու հիմքեր դրեց ու Քրիստոսի փառքի սեղան կանգնեցրեց, որովհետև նախ և առաջ այստեղ էր, որ եկեղեցիներ շինելու սկիզբը դրեց։ Հանուն սուրբ երրորդության սեղան կառուցեց, մկրտության ավազան շինեց և նախ մկրտությամբ նրանց լուսավորեց, որոնք իր հետ էին՝ մեծամեծ նախարարներին, որ իր հետ գնացել էին Կեսարիա քաղաքը և ապա գավառականներին՝ երկրի բնակիչներին։ Քսան օր իջևանեց և այնտեղ մկրտեց ավելի քան տասնինը բյուր մարդկանց և սեղան կանգնեցրեց սրբերի գերեզմանի իր շինած վկայարանում, փրկության պատարագ մատուցեց և այնտեղ բաշխեց կենարար Քրիստոսի մարմինն ու արյունը։

815 Հրամայեց, որ տարեցտարի այդ նույն տեղում ամենքը հավաքվեն՝ սրբերի հիշատակը կատարելու, որի օրը սահմի ամսի յոթն էր, որպեսզի, խնդությամբ հավաքվելով, տոնախմբություն անեն, քանզի այնտեղ էր նախ և առաջ եկեղեցիներ շինելու սկիզբը դրել։ Տարբեր տեղերում քահանաներ կարգեց և այդ վայրերը լցրեց եկեղեցիների շինությամբ ու քահանաներով։

816 Եվ ինքը հեռացավ այնտեղից, Քրիստոսի խաչի զորության մեծապանծ պարծանքով լի և վերցրեց սրբերի նշխարների մի մասը, որպեսզի այլ տեղերում ևս նրանց հիշատակը հաստատի։ Շրջում էր ամեն տեղերում ու գավառներում, եկեղեցիներ շինում ավաններում ու ագարակներում և մկրտություն կատարում, քահանաներ կարգում։

817 ԾԺՁ. Լսեց ապա և մեծ թագավոր Տրդատը, որ Գրիգորը եկել հասել է մեր Հայոց երկիրը։ Առավ իր զորքը, Աշխեն տիկնոջը և իր քույր Խոսրովիդուխտին ու չվեց Այրարատյան գավառից, Վաղարշապատ քաղաքից՝ Գրիգորին ընդառաջ։ Եկավ հասավ Բագավան գյուղաքաղաքը, որը պարթևերեն կոչվում է Դիցավան և այնտեղ սպասեց մեկ ամիս ժամանակով։ Իսկ նա շրջում էր, որպեսզի տարբեր կողմերը լցնի եկեղեցիներով, քահանաներով, [եկեղեցու] սպասավորներով ու ամեն տեսակ աստվածագործ պաշտամունքային կարգերով և շատերին լուսավորի մկրտությամբ։

818 Ապա եկավ հասավ վերոհիշյալ Դիցավանը ամենայն մեծամեծներով, զորքով ու աշխարհակույտ ամբոխով, որոնք տարբեր

վեալ ի կողմանց կողմանց, և գնային շրջէին զհետ նորա և գտանէին բժշկութիւն և լնուին զպէտս իւրաքանչիւր ի նմանէ։ Եւ նա ամենասփիւռ վարդապետութեամբն ամենեցուն սերմանէր զբանն կենաց, և «հանդերձ ամենայն սպասաւորօք Աւետարանին որ ընդ իւրն էին, զոր չէ ոք բաւական ըստ իւրաքանչիւր անուանցն նշանակել, քարոզէր զԱւետարանն։ Որովք յանձն եղեալ երանելի եպիսկոպոսն շնորհացն Աստուծոյ՝ գայր հասանէր առ ստորոտով Նպատական լերինն»։

819 «Ընդ առաջ ելանէր նմա թագաւորն ամենայն զօրօքն հանդերձ, առ ափն Եփրատ գետոյն, որ և ընդ պատահելն իսկ լի առնէր զամենեսեան ողջունիւ Աւետարանին Քրիստոսի, և բազում ցնծութեամբ և ուրախութեամբ յաւանն դառնային»։ Եւ անդ մատուցեալ թագաւորին իշխանքն եկեալք զբերեալ պատասխանին ողջունաբեր թղթոյն, զի գրեալ էր զպատճէնն օրինակ զայս.—

## ՊԱՏՃԷՆ ԹՂԹՈՅՆ ՊԱՏԱՍԽԱՆԻ

820 «Գանեալքդ՝ և խրատեալքդ, հարուածեալքդ՝ և ողոքեալքդ, տանջեալքդ՝ և նուաճեալքդ, կորուսեալքդ՝ և գտեալքդ, մոլորեալքդ՝ և դարձուցեալքդ, յակն առեալքդ՝ և սիրեցեալքդ Տեառն, Տրդատէս թագաւոր Հայոց մեծաց և Աշխէն տիկին և օրիորդ մեծ Խոսրովիդուխտ, և ամենայն հրապարակք բազմամբոխ ժողովրդոց որ իցեն Հայոց Մեծաց. Ղեւոնդէս արքեպիսկոպոս մետրոպոլիտ մեգաղէ Կեսարու և ամենայն ուխտ սրբոյ եկեղեցւոյ քահանայութեան, եպիսկոպոսաց, երիցանց, սարկաւագաց և ժողովրդոց. ի Տէր խնդալ։

821 «Վասն կենսատու փրկութեանդ հասելոյ ձեզ յԱստուծոյ, որպէս մեզ պատմեցաւ, անպայման ուրախութեամբ գոհացաք զանզեղջական փառացն Քրիստոսի, և վասն սրբոց վկայիցդ Աստուծոյ որ ի ձերում միջի, յաշխարհիդ ձերում փառաւորեցան։ Զի և դուք նայեցեալք յելս գնացից նոցա և նմանողք լեալ հաւատոց նոցա՝ փառաւորեսջիք, նոցա պսակօքն պսակելով պսակեսջիք։

822 «Զի արարիչն ամենեցուն և ամենայն աշխարհաց, որ ընդ ամենեցուն հաճեալ զի առցեն զորդեգրութիւն, իւրով հաճոյական կամօքն խրատէ զամենեսին, որով մխիթարեսցէ ի սնավաստակ աշխատութենէն, յիւրումն արքայութեանն հանգուցէ զբեռնաւորսն



կազմերից էին հավաքվել, գնում շրջում էին նրա հետ, բժշկություն գտնում և նրանցից յուրաքանչյուրը իր պետքերն էր հոգում նրա միջոցով։ Եվ նա ամենասփյուռ վարդապետությամբ ամենքի համար կենաց խոսքն էր սերմանում և Ավետարանի բոլոր սպասավորներով հանդերձ, որոնք իր հետ էին, և հնարավոր չէ յուրաքանչյուրին անուններով նշել՝ քարոզում էր Ավետարանը։ Երանելի եպիսկոպոսը նրանց հանձնելով Աստծո շնորհներին՝ եկավ հասավ Նպատ լեռան ստորոտը։

819 Ընդառաջ ելավ նրան թագավորը, ամբողջ զորքով հանդերձ, Եփրատ գետի ափին և հենց որ նա նրանց պատահեց, ամենքին լիացրեց Քրիստոսի Ավետարանի ողջույնով ու բազում ցնծությամբ և ուրախությամբ դարձան ավանը։ Այնտեղ վերադարձած իշխանները թագավորին մատուցեցին ողջունաբեր թղթի բերված պատասխանը, որի պատճենը այսպես էր գրված.

## ՊԱՏԱՍԽԱՆ ԹՂԹԻ ՊԱՏՃԵՆԸ

820 Գանահարված ու խրատվածներ, զարնված ու համոզվածներ, տանջված ու նվաճվածներ, կորած ու գտնվածներ, մոլորված ու դարձի եկածներ, ուշադրության առնված ու Տիրոջից սիրվածներ՝ Տրդատ (Տրդատես) Մեծ Հայքի թագավոր, Աշխեն տիկին, մեծ օրիորդ Խոսրովիդուխտ և Մեծ Հայքի բազմամբոխ ժողովրդի ամենայն բազմություն. Ղևոնդես արքեպիսկոպոս մեծ (մեգաղե) Կեսարիայի մետրոպոլիտ և ամենայն ուխտ սուրբ եկեղեցու քահանայության, եպիսկոպոսների, երեցների, սարկավագների ու ժողովրդի, ի Տեր ողջույն։

821 Աստծուց ձեզ հասած կենսատու փրկության համար, ինչպես մեզ պատմեցին, անպայման ուրախությամբ գոհացանք Քրիստոսի անզեղջական փառքի և Աստծու այն սուրբ նահատակների համար, որոնք ձեր մեջ և ձեր երկրում փառավորվեցին։ Որպեսզի դուք ևս նայելով նրանց ընթացքի վախճանին ու նմանվելով նրանց հավատքին՝ փառավորվեք, նրանց պսակներով պսակավորվեք։

822 Քանզի ամենքի և բոլոր երկրների արարիչը, որն ամենքին համոզում է, որ [նրա] որդեգրությունն ընդունեն, իր հաճոյական կամքով ամենքին խրատում է, որով մխիթարելու է սնավաստակ աշխատությունից, իր արքայության մեջ հանգստացնելու

զաշխատեալսն, «զի լուծ նորա քաղցր է և բեռն իւր փոքրոգի», առ իւր թեարկէ, վարդապետէ, զի իւրում հանգստեանն արժանիս արասցէ զամենեսին։

823 «Եւ վասն զի ոչ կանխեալ գիտացեալ ձեր զարժանն՝ վասն այսորիկ ած զանարժան գաւազանն ի վերայ ձեր, և իբրև ի քնոյ ընդոստուցեալ, զի գիտասջիք զզգաստութիւնն, որ արժանն է։ Եւ զի ոչ իմացայք դուք զմարդկանն ի մարդկապէսն՝ գիտուն արար զձեզ ի չմարդկապէսն։ Եւ զոր յանգիտութեանն արհամարհեցէք՝ հաստատեաց զձեզ յանշարժ գիտութիւնն. զի վէմն իսկ որ ի շինողացդ անարգեալ՝ եղև նա ձեզ գլուխ անկեան։

824 Զի զոր ուրացութեամբն բարկացուցէք արտասուօք հաշտեցուսջիք։ Զի զոր կափուցեալ զաչս ձեր, համարէիք խաւար՝ ծագեաց եբաց և լուսաւորեաց զտեսանելիս ձեր, մերկեաց ի ձէնջ զզգեցեալ զխաւարն հեթանոսութեան, և զճառագայթարձակ զգեցոյց զպատմուճանն։ Իսկ զոր համարեալ անմտութիւն, կորուսանել պանձայիք՝ նոյն ինքն ձեզ իմաստնացուցիչ տուաւ, և նոյն ինքն ձեզ գտիչ պարգևեցաւ։

825 «Արդ՝ մեք իբրև տեսաք զայսպիսի այր հրաշալի և լուաք զմեծամեծ սքանչելիսն որ ի ձեռն սորա առ ձեզ կատարեցան՝ ընկղմեցաք ի խորութիւն սիրոյն Աստուծոյ իբրև ի ջուրս սաստիկս ալեաց բազմութեան, անհատական գովութեամբ, և ի վերայ այսորիկ՝ անդադար բերանով և անհանգիստ բարբառով զտէր մեր զՅիսուս Քրիստոս, զբարերարն զսքանչելագործն զպարգևաբաշխն օրհնեցաք, և առ Աստուած հայրն ամենայնի գոհութիւնս մատուցաք, շնորհելով Գրիգորի զանապական պարգևս սուրբ Հոգւոյն, որով և դուք արժանի լիջիք շնորհին ողջունի արքայութեանն երկնից։ Եւ զմեզ, հեռի մարմնով, մերձ համարեալ հոգւով՝ յիշեցէք ի ձեր ի նորաթեք յաղօթսդ, ի ձերում պարգևեալ փրկութեանդ, մանաւանդ յորժամ զյիշատակ սրբոցդ խմբիցէք ձերով ուրախութեամբդ։

826 «Եւ հաստատեալ կացցէ վկայութիւն ի մէջ երկոցունց կողմանցս, զի պարգևաբաշխութիւն նորոգ քահանայապետութեանդ ձերոյդ նահանգիդ առ ի մէնջ՝ կացցէ անշարժ յեկեղեցւոջս Կեսարու, ուստի և հանդերձեցաւ ձեզ պատրաստեալ՝ փրկութեան ձեռնադրութիւն։ Որով անապական պարգևք խորհրդոյն ձեզ բաշխեցին վկայացեալ աջովդ, շնորհօք նորոգութեան մկրտութեան և փրկական խաչին, և կենդանարար մարմնոյն և քաւիչ արեանն Քրիստոսի, և երանութեամբ բազմացելոց քահանայութեանց. որով



է բեռնավորվածներին ու հոգնածներին, «քանզի Նրա լուծը քաղցր է և բեռը թեթև»։ Իր թևերով պաշտպանում է, վարդապետում, որպեսզի ամենքին իր հանգստյանը արժանի դարձնի։

823 Քանզի դուք կանխավ արժանին չճանաչեցիք, այդ պատճառով էլ անարժան գավազանը բերեց ձեզ վրա քնից ընդոստ արթնացածի նման, որպեսզի ճանաչեք զգաստությունը, որը պատշաճ է։ Եվ որովհետև դուք մարդկայինը չճանաչեցիք մարդկայնորեն, ձեզ տեղյակ դարձրեց ոչ մարդկայնապես։ Եվ նրան, որին անգիտությամբ արհամարհեցիք, ձեզ հաստատեց անշարժ գիտության մեջ, քանզի այն վեմը, որ շինողների կողմից անարգված էր, ձեզ համար անկյան գլուխ եղավ։

824 Նա, որին ուրացությամբ բարկացրիք, արցունքներով հաշտվելու եք Նրա հետ և այն, որից ձեր աչքերը փակելով խավար էիք համարում, ծագեց, բացեց ու լուսավորեց ձեր աչքերը, վերացրեց ձեզանից հեթանոսության խավարը և ճառագայթարձակ պատմուճան հագցրեց։ Իսկ նա, որին անմիտ էիք համարում և ամբարտավանորեն սպանել ցանկանում, նույն ինքը ձեզ իմաստուն դարձրեց և նույն ինքը ձեզ տրվեց, որպես [փրկություն] գտնող։

825 Արդ՝ երբ մենք տեսանք այսպիսի հրաշալի մարդուն և լսեցինք մեծամեծ հրաշքների մասին, որոնք նրա ձեռքով ձեզ մոտ կատարվեցին, Աստծու սիրո խորության մեջ ընկղմեցինք ինչպես ալիքների բազմությունը ահեղ ջրերի մեջ, անհատնում գովաբանությամբ և դեռ ավելին՝ անդադար բերանով և անհանգիստ լեզվով օրհնեցինք մեր բարերար, սքանչելագործ պարգևաբաշխ տեր Հիսուս Քրիստոսին։ Գոհություն մատուցեցինք առ Աստված՝ հայրն ամենայնի, շնորհելու Գրիգորին սուրբ հոգու անապական պարգևները, որով և դուք արժանի եք լինելու երկնքի արքայության ողջույնի շնորհին։ Եվ մեզ [թեև] մարմնով հեռու, հոգով մերձավոր համարելով՝ հիշեցեք ձեր նոր աղոթքներում, ձեզ պարգև տրված փրկության մեջ, մանավանդ, երբ ձեր սրբերի հիշատակը տոնեք ձեր ուրախությամբ։

826 Եվ թող ուխտը հաստատուն մնա երկու կողմերիս միջև, որպեսզի ձեր երկրի նորոգ քահանայապետության մեր կողմից պարգևաբաշխումը անշարժ մնա Կեսարիայի եկեղեցու մեջ, որտեղից պատրաստվեց ձեր փրկության ձեռնադրությունը։ Այսպիսով, խորհրդի անապական պարգևները ձեզ կբաշխվեն մարտիրոսացած աջով, շնորհիվ վերանորոգ մկրտության ու փրկչի խաչի, Քրիստո-

և դուք լիցիք վերացեալք խառնեալք, աղօթաբուղխք մշտնջենաւորք ի զօրս քրիստոսակեցոյց գնդին։ Ողջ լերուք ի Քրիստոս, և հանապազ վայելեսջիք ի փրկութեանն Տեառն»։

827 ԾԺԷ. Եւ ուրախ եղեն ընդ մխիթարութիւն թղթոյն. և զի եկեալ հասեալ էին ուղեգնացքն լուսաւորութեամբ, և երևեալ աստուածաշնորհ պարգևօք, առաւել զհոգևոր սիրոյն զանձուկսն ըրփոէին՝ և ևս քան զևս ի հաւատսն հաստատեցան մեծաւ և ցնծալից բերկրութեամբ։

828 Իսկ նա անդէն «և անդ ընդելական սովորութեամբն ի գործ արկեալ զանդադար վարդապետութիւնն հաւասարութեամբ բարեպաշտ» արքային Տրդատայ՝ «զիւր արուեստն առաջի դնէր. խրատէր յորդորելով. որով առաւելագոյն հնազանդէին նմա ըստ հրամանացն Աստուծոյ, թագաւորն և զօրքն ամենայն հանդերձ աշխարհախումբ բազմութեամբն, որոց յանձն առեալ ամենեցուն զխնդրելին կատարել», և զհրամայեալսն ի գործ արկանել։

829 Եւ նորա տուեալ հրաման արքայազունդ բանակացն՝ ամսօրեայ ժամանակաւ ի պահս և յաղօթս յամենալ։ «Եւ իւրում անձինն՝ զսովորականն առաջի դնէր, իւրայովքն անդուստ ածելովքն հաւասարօքն, զպահս և զաղօթս, զտքնութիւնս, զպաղատանս արտօսրաբերս, զխստամբերութիւնս, զհոգս աշխարհահեծս, յուշ առնելով զասացեալսն հոգեպատում մարգարէին, թէ «Յորժամ հեծեծեսցես՝ յայնժամ կեցցես»։

830 «Այսպէս բազում աշխատութեամբ տարեալ՝ վասն համաշխարհին բարեաց ինչ օճան գտանելոյ. որում և պարգևէր իսկ վիճակ յամենաշնորհն Աստուծոյ, հայրական չափուն ծնանել ծընունդ նորոգ և սքանչելի, պարգևաբաշխ սուրբ աջովն իւրով». զամենայն ի ջրոյ և ի Հոգւոյ յարգանդէ՝ մկրտութեամբ միւսանգամ վերստին ծնանել, առնել կատարել, սրբել, դրոշմել մի ժողովուրդ Տեառն։

831 Եւ եդ անդ հիմունս, և շինեաց եկեղեցի. և զնշխարսն զոր ունէր յոսկերաց սրբոցն՝ ի տէրունական տանն բնակեցուցանէր։ Սոյնպէս և ընդ ամենայն կողմանս գաւառացն դնէր հիմունս եկեղեցեաց, և ուղղէր սեղանս, և կացուցանէր քահանայս։ Եւ ամենայն երկիրն դարձեալ սրտիւք իւրեանց կանխէին ի պահս և ի պաշտօն և յերկիւղն Աստուծոյ։



ափ կենդանարար մարմնի ու քավիչ արյան և բազմացյալ քահանայությանց երանությամբ, որով և դուք կլինեք վերանալով խառնըվածներ աղոթաբուխ մշտնջենավորներ քրիստոսակեցույց գնդի զորքին։ Ողջ եղեք Քրիստոսով և շարունակ վայելեցեք Տիրոջ փրկությամբ»։

827 ԾԺԷ. Ուրախ եղան թղթի մխիթարությամբ և որովհետև ուղեգնացները լուսավորությամբ եկել հասել էին ու երևացել աստվածաշնորհ պարգևներով, առավել հոգևոր սիրո անձկությունն էին սփռում և շատ ավելի հաստատվեցին հավատքի մեջ մեծ ու ցնծալի բերկրությամբ։

828 Իսկ նա իսկույն, ընդունված սովորությամբ, անդադար վարդապետությունը գործի դնելով, Տրդատ բարեպաշտ արքայի մասնակցությամբ այնտեղ իր գործն էր առաջադրում, խրատում էր հորդորելով, որով առավելագույնս հնազանդվում էին նրան ըստ Աստծու հրամանների թագավորը և ամբողջ զորքը աշխարհախումբ բազմությամբ հանդերձ, որոնք բոլորը հանձն առան նրա խնդրածը կատարել և հրամայածները գործադրել։

829 Եվ նա հրաման տվեց արքայազունդ բանակներին մի ամիս ժամանակով պասի ու աղոթքի մեջ մնալ։ Սկսեց նա սովորական [ձևով], իր հետ այնտեղ բերված ընկերներով միասին, պասն ու աղոթքները, տքնությունները, արտասվալից պաղատանքները, խստակեցությունները, աշխարհահեծ հոգսերը, հիշելով հոգեպատում մարգարեի ասածը, թե «երբ հեծեծես, այն ժամանակ կապրես»։

830 Այսպես շատ աշխատանք կատարեց՝ [ջանալով] ամբողջ երկրին բարիք գործելու որևէ միջոց գտնել, որի համար էլ ամենաշնորհն Աստված իր պարգևաբաշխ սուրբ աջով իշխանություն տվեց [նրան]՝ հայրական ձևով ծնելու նոր ու սքանչելի ծնունդ, ամենքը ջրից ու հոգուց, [ինչպես] արգանդից, մյուս անգամ վերըստին ծնվելու մկրտությամբ և կատարյալ դարձնելու, սրբելու, դրոշմելու նրանց՝ որպես Տիրոջ՛մեկ ժողովուրդ։

831 Այնտեղ հիմքեր դրեց, եկեղեցի շինեց ու սրբերի ոսկորների նշխարները, որ ուներ, տեղավորեց տերունական տանը։ Սույնպես և գավառների ամեն կողմերում եկեղեցիների հիմքեր դրեց, սեղաններ կանգնեցրեց և քահանաներ կարգեց։ Ամբողջ երկիրը սրտանց դարձ կատարելով ձգտում էր պասի, պաշտամունքի ու Աստծու երկյուղին։

832 ԾԺԸ. Իսկ ի լնուլ կիտին եղելոյ պահոցն կատարելոյ, առեալ երանելւոյն Գրիգորի զաշխարհաբանակ զօրացն, և զինքնին զթագաւորն, և զկին նորա Աշխէն, և զմեծ օրիորդն Խոսրովիդուխտ, և զմեծամեծսն ամենայն, և ամենայն մարդկաւ բանակին հանդերձ՝ ընդ այգն ի լուսանալ առաւօտուն յափն Եփրատ գետոյն մատուցանէր, և անդէն մկրտէր առ հասարակ զամենեսեան յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

833 Եւ իբրև իջանէին մարդիկն ամենայն և թագաւորն ի մկրտութիւն անդր, ի ջուրսն Եփրատ գետոյն՝ նշան սքանչելի երևեալ յԱստուծոյ. զի կանգ առեալ ջուրք գետոյն՝ անդրէն դարձան ընդ կրունկն։ Եւ լոյս սաստիկ երևեալ ի նմանութիւն սեան լուսաւորի՝ և եկաց ի վերայ ջուրց գետոյն, և ի վերայ նորա նմանութիւն տէրունական խաչին. և այնչափ ծագեաց լոյսն, մինչև արգելոյր զճառագայթս արեգականն և նուաղեցուցանէր։ Եւ իւղն օծութեան, զոր արկանէր Գրիգորիոս ի վերայ մարդկանն՝ շրջան առեալ ի մէջ գետոյն շուրջ զմարդկաւն խաղայր։ Եւ ամենեքեան զարմացեալք բարձրացուցանէին զօրհնութիւն ի փառս Աստուծոյ։ Եւ ընդ երեկս աւուրն նշանն աներևոյթ լինէր, և նոքա ի վեր յաւանն դառնային։ Եւ որք մկրտեցանն յաւուր յայնմիկ՝ աւելի քան զհնգետասան բիւր մարդկան յարքունական զօրացն։

834 Եւ անտի ելեալ մեծաւ ցնծութեամբ և սպիտակազգեստ հանդերձիւք, սաղմոսիւք և օրհնութեամբք, կանթեղօք վառելովք, և մոմեղինօք լուցելովք, և ջահիւք բորբոքելովք, մեծաւ լրջմտութեամբ և բազում զուարթութեամբ լուսաւորեալք և հրեշտակացեալք. և առեալ զանուն որդեգրութեանն Աստուծոյ, և մտեալ ի ժառանգութիւն սրբոյ Աւետարանին, և ի վիճակ սրբոցն խառնեալք, ծաղկեալք ի հոտ անոյշ ի Քրիստոս, և ելեալք ի վեր ի տէրունական տունն դառնային։ Եւ անդ մատուցանէր զօրհնութեան պատարագն, հաղորդէր զամենեսեան ի խորհուրդն գոհութեան. բաշխէր ամենեցուն զսուրբ մարմինն և զպատուական արիւնն ամենափրկչին Քրիստոսի, զկենդանարարն և զկեցուցիչն ամենայն մարդկան, և զարարիչն և զաշխարհագործն ամենայն արարածոց, զաստուածատուր շնորհսն առ ամենեսեան առատապէս մատակարարէր։

835 ԾԺԹ. Եւ դադարեաց անդ յետ այսորիկ աւուրս եօթն վասն հոգևոր մխիթարութեան։ Եւ յայնմ աւուրս եօթանս որ մկրտեցան յարքունական բանակէ անտի՝ ընդ այր և ընդ կին և ընդ մանուկ աւելի քան զչորեքարիւր բիւր։

836 Եւ զյիշատակս վկայիցն բերելոց ժամադրեաց ի տօն մեծ հռչակել, սնոտեացն պաշտաման ի ժամանակի՝ դիցն Ամանորոյ



832 ԾԺԸ. Իսկ երբ լրացավ պաս կատարելու սրված ժամկետը, երանելի Գրիգորը առավ աշխարհաբանակ զորքը և իրեն՝ թագավորին, նրա տիկին Աշխենին, մեծ օրիորդ Խոսրովիդուխտին, ամենայն մեծամեծներին և բանակի բոլոր մարդկանց, առավոտյան այգը լուսանալուն պես, Եփրատ գետի ափը տարավ և այնտեղ մկրտեց* առհասարակ ամենքին հանուն Հոր և Որդու և սուրբ Հոգու։

833 Երբ բոլոր մարդիկ ու թագավորը իջնում էին այնտեղ՝ Եփրատ գետի ջրերի մեջ մկրտվելու, Աստծուց սքանչելի հրաշք երևաց, քանզի գետի ջրերը կանգնելով ետ դարձան։ Սաստիկ լույս երևաց լուսավոր սյան նման և կանգնեց ջրերի վրա ու նրա վրա տերունական խաչի կերպարանքը. և լույսն այնքան ծագեց, մինչև որ արգելեց ու նվազեցրեց արեգակի ճառագայթները։ Օծության յուղը, որ Գրիգորը մարդկանց վրա էր թափում, գետի մեջ շրջան կատարելով՝ մարդկանց շուրջն էր պտտվում։ Ամենքը զարմացած օրհնություն էին տալիս ի փառս Աստծու։ Օրվա երեկոյան հրաշքը աներևույթ եղավ, և նրանք դեպի վեր՝ ավան վերադարձան։ Նրանք, որ այն օրը մկրտվեցին, ավելի քան տասնհինգ բյուր էին, արքունական զորքից։

834 Ելան այնտեղից մեծ ցնծությամբ, սպիտակ հանդերձներով, սաղմոսներով ու օրհնություններով, վառ կանթեղներով ու մոմերով և լուսավառ ջահերով, մեծ ուրախությամբ և սաստիկ զվարթությամբ լուսավորված ու հրեշտակացած։ Աստծու որդեգիր անուն ստացած մտան սուրբ Ավետարանի ժառանգությունը և սրբերի վիճակին խառնվելով, Քրիստոսի անուշ հոտով ծաղկելով, վեր ելան, տերունական տունը դարձան։ Այնտեղ [Գրիգորը] օրհնության պատարագ մատուցեց, ամենքին հաղորդություն տվեց գոհության խորհրդով, բոլորին բաշխեց սուրբ մարմինն ու պատվական արյունը ամենափրկիչ Քրիստոսի, որ կենդանարարն է ու կեցուցիչը ամեն մարդկանց, արարիչն ու աշխարհագործը բոլոր արարածների, և աստվածատուր շնորհները ամենքին առատապես մատակարարեց։

835 ԾԺԹ. Դրանից հետո հոգևոր մխիթարության համար այնտեղ յոթ օր մնաց։ Այդ յոթ օրերում արքունական բանակից մկրտվեցին ավելի քան չորս հարյուր բյուր այր, կին ու մանուկ։

836 Եվ կարգադրեց բերված մարտիրոսների հիշատակների համար մեծ տոն սահմանել սնոտի պաշտամունքի ժամանակնե-



30—1461

ամենաբեր նոր պտղոց տօնին, Հիւրընկալ դիցն Վանատրի, զոր յառաջագոյն իսկ ի նմին տեղւոջ պաշտէին յուրախութեան Նաւասարդ աւուր։ Զի ժողովեալ ի յիշատակ մեծի երանելւոյն Յովհաննու և սրբոյ վկային Աստուծոյ Աթանագինէի՝ յայնմ աւուր խմբեալ ի նմին յաւանին տօնեսցեն։

837 «Յորում և երանելւոյն Գրիգորի զվարդապետութիւնն իւր ի գործ արկեալ, և ժողովելոցն առ ընդունել քաղցրացուցեալ», «և ծովացուցեալ զվարդապետութեանն զխորութիւն, և լցեալ զեղեալ ամենայն հոգևոր բարութեամբք»։ «Յետ այսորիկ հասեալ նմա բովանդակ ի վերայ ամենայն երկրին սահմանացն Հայոց Մեծաց աշխարհին», շինելով եկեղեցիս յամենայն աշխարհս, ի գաւառս, ի կողմանս, ի քաղաքս, յաւանս, ի շէնս, ի գեօղս և յագարակս։ Սոյնպէս և թագաւորն յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ՝ գրեաց չորս չորս հողս երդոյ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն եօթն հողս երդոյ՝ ի ծառայութիւն սպասաւորութեան քահանայութեանն, նուէր պտղոյ Տեառն մատուցանէր։

838 Եւ կացուցանէր քահանայս յամենայն տեղիս, և հրաման տուեալ, զի պաշտեսցեն զտէր Աստուած միայն, զարարիչն երկնի և երկրի. և բազմացուցանէր զպաշտօնեայս սեղանոյն Տեառն ընդ ամենայն տեղիս, և կացուցանէր քահանայս առ սեղան սեղան յամենայն եկեղեցիսն։ Սոյնպէս և զեպիսկոպոսն վիճակեցուցանէր ի գլխաւորութիւն ժողովրդոցն Տեառն, և հրաման տայր նոցա՝ հաւատարիմ առաջնորդութեամբ վերակացու լինել լուսաւորապէս հօտին Քրիստոսի։

839 ԾԻ. Նոյնպէս հաւանեցուցանէր զթագաւորն. «զի ի գաւառաց գաւառաց և կողմանց կողմանց ի տեղիս տեղիս ժողովեսցեն բազմութիւն մանկտւոյ, առ ի նիւթ վարդապետութեան, զգազանամիտ զվայրենագոյն զճիւաղաբարոյ զաշխարհաբնակսն. զորս առեալ արկանէր ի բովս վարդապետութեան, և հոգևոր սիրոյն եռանդմամբ զաղտն և զժանգն զշարաւահոտ դիւացն և զսնոտիագործ պաշտամանցն ի բաց քերէր։ Եւ այնչափ անջատէր ի հայրենեացն բնակացն իւրեանց՝ մինչև ասել նոցա, թէ «Մոռացայ զժողովուրդ և զտուն հօր իմոյ»։

840 «Եւ ի տեղեաց տեղեաց սահմանացն Հայոց՝ տայր հրաման թագաւորն Տրդատ՝ իւրոյ իշխանութեանն յաշխարհաց և ի գաւառաց բազմութիւն մատաղ մանկտւոյ ածել յարուեստ դպրութեան, և կարգել ի վերայ հաւատարիմ վարդապետս. առաւել



րում ամենաբեր նոր պտուղների Ամանորի աստծու՝ Հյուրընկալ* Վանատուրի տոնին, որը առաջներում հենց նույն տեղում ուրախությամբ տոնում էին Նավասարդի օրը։ Որպեսզի հավաքվելով մեծ երանելի Հովհաննեսի և Աստծու սուրբ նահատակ Աթանագինեսի հիշատակին՝ այդ օրը նույն ավանում խմբված տոնեն։

837 Ուր և երանելի Գրիգորը իր ուսուցչությունը ի գործ դրեց և հավաքվածներին ընդունելի դարձնելու համար քաղցրացրեց ու ծովացրեց վարդապետության խորությունը, լիքը լցրեց ամեն հոգևոր բարություններով։ Դրանից հետո նա շրջվեց, վերահասու եղավ Հայաստան աշխարհի բոլոր կողմերին՝ շինելով եկեղեցիներ բոլոր նահանգներում, գավառներում, կողմերում, քաղաքներում, ավաններում, շեներում, գյուղերում ու ագարակներում։ Այդպես էլ թագավորը իր ամբողջ իշխանության մեջ առհասարակ նշանակեց չորսական ծխի հողաբաժին բոլոր ագարակ տեղերում, իսկ ավաններում՝ յոթական ծխի հողաբաժին*-ի ծառայություն սպասավորության քահանայության [որպես] նվեր պտղի՝ Տիրոջը մատուցեց։

838 Քահանաներ կարգեց ամեն տեղերում և հրաման տվեց, որ պաշտվի միայն տեր Աստվածը՝ երկնքի ու երկրի արարիչը։ Ամեն տեղ բազմացրեց Տիրոջ սեղանի սպասավորներին, բոլոր եկեղեցիներում յուրաքանչյուր սեղանին քահանաներ կարգեց։ Այսպես էլ եպիսկոպոսներին Տիրոջ ժողովրդի գլխավորությունը հանձնեց և հրաման տվեց նրանց հավատարիմ առաջնորդությամբ լուսավորապես Քրիստոսի հոտին վերակացու լինել։

839 ԾԻ. Նույնպես [Գրիգորը] համոզեց թագավորին, որ զանազան գավառներից, կողմերից, այլևայլ տեղերից մանկանց բազմություն հավաքեն ուսուցանելու նպատակով, գազանամիտ, վայրենագույն և ճիվաղաբարո գավառների բնակիչներին, որոնց ընդգրկեց ուսուցման մեջ և հոգևոր սիրով ու եռանդով վերացրեց դևերի ու սնոտի կուռքերի պաշտամունքի շարավահոտ աղտն ու ժանգը և այնչափ հեռացրեց իրենց բուն բարքերից, մինչև որ նրանք ասացին, թե «մոռացա իմ ժողովրդին ու իմ հոր տունը»։

840 Տրդատ թագավորը Հայոց երկրի տարբեր կողմերին հրաման տվեց՝ իր իշխանության նահանգներից, գավառներից, ուսման համար մատաղ մանուկների բազմություն բերել և նրանց վրա հմուտ ուսուցիչներ կարգել։ Առավելապես քրմերի պղծագործ ցեղին և նրանց մանուկներին այնտեղ հավաքել, հարմար տեղերում դասդաս խմբել և ապրուստի թոշակ նշանակել։ Նրանց երկու մասի

զպագս պղծագործ քրմացն և զմանկունս նոցա ի նոյն ժողովել, դումարել յարժանաւոր տեղիս դասս դասս, և դարման ռոճկաց կարգել»։ «Եւ զնոսա յերկուս բաժանեալ, զոմանս յԱսորի դպրութիւն կարգեալ, և զոմանս ի Հելլէն»։ «Որով անդէն յական թօթափել վայրենամիտքն և դատարկասունքն և անասնաբարոյ աշխարհաբնակքն վաղվաղակի մարգարէագէտք և առաքելածանօթք և աւետարանաժառանգք լինէին, և ամենայն աւանդելոցն Աստուծոյ ոչ իւիք անտեղեակք»։

841 «Հասանէր և յառաջին դաստակերտն իւր, յոստաստակն Այրարատեան գաւառին ի Վաղարշապատ քաղաք», ուստի նախ զառաջինն աստուածաաստ հրամանացն լինէր սկիզբն. ուր նախ նշմարեացն և նշանակեալ կանգնեաց զնշան խաչին սրբոյ, ուր և սուրբ վկայքն Աստուծոյ ղետեղեցան. և ի նոցա վկայարանսն կանգնեաց սեղանս Աստուծոյ ի հանգիստս սրբոցն. և զնկատեալ տեղին տանն Աստուծոյ շինեաց, զցուցեալն նմա ի տեսլեանն, զյառաջագոյն դրոշմեալն իւր, և կանգնեաց անդ զեկեղեցին Քրիստոսի։ Սոյնպէս և ի տեղիս մեհենացն զոր կործանեաց յառաջագոյն. սոյնպէս և յԱրտաշատ քաղաքի և յամենայն տեղիս, յաշխարհս և ի գաւառս առ հասարակ, սոյն օրինակ գործեաց և բազմացոյց զեկեղեցիս, և կացոյց քահանայս. և քրիստոսեան դրոշմաւն զամենեսին առ հասարակ ընծայեցուցանէր՝ լինել ամենեցուն Հոգւովն սրբով։

842 Եւ այսպէս ընդ ամենայն երկիրն Հայոց, ի ծագաց մինչև ի ծագս, ձգտէր տարածանէր զմշակութիւն քարոզութեանն և աւետարանութեանն. ի Սատաղացւոց քաղաքէն մինչև առ աշխարհաւն Խաղտեաց, մինչև առ Կաղարջօք, մինչ ի սպառ ի սահմանս Մասքթաց, մինչև ի դրունս Ալանաց, մինչ ի սահմանս Կասպից, ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց. և յԱմդացւոց քաղաքէն մինչև առ Մծբին քաղաքաւ, քերէր առ սահմանօքն Ասորւոց առ Նոր Շիրական երկրաւն, և առ Կորդուօք մինչև յամուր աշխարհն Մարաց, մինչև առ տամբն Մահքր—Տան իշխանին, մինչև յԱտրպատական ձգտէր տարածանէր զաւետարանութիւնն իւր։

843 «Զամենայն ժամանակս կենաց իւրոց, զամառն և զձմեռն, զտիւ և զգիշեր, անվեհեր առանց յապաղելոյ իւրով իսկ աւետարանական և ողջունապատում գնացիւքն, առաջի թագաւորաց և իշխանաց և ամենայն հեթանոսաց՝ անընդդիմակաց ի հակառակորդաց զամենափրկչին անունն Յիսուսի կրեաց, և զամենայն ոգի աստուածազգեստս և ոգեղէնս վառեաց»։



բաժանեցին, ոմանց տվեցին ասորի դպրության և ոմանց՝ հելլենականին։ Դրանով իսկույն, մի ակնթարթում, երկրի վայրենամիտ, դատարկասուն և անասնաբարո բնակիչները արագորեն մարգարեագետ, առաքելածանոթ և Ավետարանի ժառանգորդներ դարձան ու աստվածային բոլոր ավանդություններին ոչ մի բանով անտեղյակ [չմնացին]։

841 [Գրիգորը] հասավ իր առաջին դաստակերտը, Այրարատյան գավառի մայրաքաղաքը (Ոստաստակ)՝ Վաղարշապատ*, որտեղից առաջին աստվածատուր հրամանների սկիզբը եղավ, ուր նախ նշմարեց և նշանակելով կանգնեցրեց սուրբ խաչի նշանը, ուր և Աստծու սուրբ նահատակները ղետեղվեցին և նրանց վկայարաններում, սրբերի գերեզմանների վրա, Աստծու սեղաններ կանգնեցրեց, նշանակված տեղում եկեղեցի շինեց՝ տեսիլքի մեջ իրեն ցույց տրվածը, որը նախապես իր կողմից կնքված էր, այնտեղ կանգնեցրեց Քրիստոսի եկեղեցին։ Նույնպես էլ մեհյանների տեղերում, որոնք նախապես կործանեց և Արտաշատ քաղաքում ու ամեն տեղերում, նահանգներում ու գավառներում առհասարակ, այս ձևով վարվեց և բազմացրեց եկեղեցիները, քահանաներ կարգեց ու քրիստոնյան դրոշմով ամենքին առհասարակ պատվում էր, որպեսզի բոլորը սուրբ հոգով լինեն։

842 Այսպես ամբողջ Հայոց երկրում, ծայրից ծայր, ջանաց, սփռեց, տարածեց քարոզության ու ավետարանության գործը՝ սատաղացիների* քաղաքից մինչև Խաղտյաց երկիրը, Կղարջքի* մոտ, ապա ընդհուպ մինչև Մասքութների* սահմանները, մինչև Ալանաց դռները, Կասպից սահմանները և Հայոց թագավորության Փայտակարան քաղաքը։ Ամիդ* քաղաքից մինչև Մծբին քաղաքը, քերելով Ասորիքի սահմանները, Նոր Շիրական* երկիրը, Կորդուք գավառը մինչև Մարաց ամուր աշխարհը, մինչև Մահքր—Տան* իշխանի երկիրը և Ատրպատական՝ սփռում, տարածում էր իր ավետարանական քարոզը*։

843 Իր կյանքի բոլոր ժամանակներին՝ ամառ և ձմեռ, ցերեկ ու գիշեր անվեհեր, առանց հապաղելու իր իսկ ավետարանական ողջունատու ընթացքով, առանց ընդդիմության հակառակորդների կողմից, ամենափրկիչ Հիսուսի անունը կրեց թագավորների, իշխանների ու բոլոր հեթանոսների առջև և ամեն մարդու զարդարեց աստվածային զգեստով ու հոգեպես»։

844 «Եւ բազում բանդականաց և կալանաւորաց և տագնապելոց ի բռնաւորաց փրկութիւն արարեալ, կորզելով զնոսա ահաւոր զօրութեամբ փառացն Քրիստոսի. և բազում մուրհակս անիրաւագիրս անիրաւութեան պատառեաց։ Եւ բազում սգաւորաց կարճամտելոց մխիթարական վարդապետութեամբն զակնկալութիւն յուսոյն ըստ յայտնութեան փառաց մեծին Աստուծոյ և ամենափրկչին Յիսուսի Քրիստոսի նուաճեաց. և զամենայն միանգամայն յաստուածպաշտութեան պայմանն փոխեաց»։

845 ԾԻԱ. «Եւ դարձեալ բազում և անհամար գունդս գունդս վանականաց ի շէնս և յանշէնս, դաշտականս շինակեացս, և լեռնականս անձաւամուտս և արգելականս հաստատէր»։ Եւ զոմանս յորդւոց քրմացն առեալ իւր՝ զառաջեաւասունս ձեռնասունս առնէր. փոյթ ուսման ի վերայ ունէր՝ ընդ հոգևոր խնամով և երկիւղիւ սնուցանել։ Որ յաստիճան եպիսկոպոսութեան լինէին արժանի կալոյ, առեալ ձեռնադրութիւն ի նմանէ. որոց առաջնոյն՝ Աղբիանոս անուն, որ ապա կողմանցն Եփրատական գետոյն լինէր վերակացու. երկրորդին՝ Եւտաղիոս, որ ի կողմանս վայրացն Բասենոյ կացեալ լինէր հովիւ. երրորդն՝ Բասոս. չորրորդն՝ Մովսէս. հինգերորդն՝ Եւսեբիոս. վեցերորդն՝ Յովհաննէս. եօթներորդն՝ Ագապէս. ութերորդն՝ Արտիթէս. իններորդն՝ Արսուկէս. տասներորդն՝ Անտիոքէս. մետասաներորդն՝ Տիրիկէս. երկոտասաներորդն՝ Կիւրակոս։ Այսք՝ որ յորդւոց քրմացն ընտրեցան լինել եպիսկոպոսք կողմանց կողմանց, աճեցուցանել զքարոզութիւնն։ Եւ զայլոցն անուանըս թէ և կամիցի ոք՝ ոչ կարասցէ շարել։

846 Եւ զԱղբիանոս զայր ճշմարիտ և աստուածասէր՝ վերակացու թողոյր արքունական դրան բանակին։ Եւ ինքն «ընդ ժամանակս ժամանակս յանապատ լերինս ելանէր, ուր և ինքեան իւրով անձամբն իսկ օրինակ ցուցանէր։ Առեալ զոմանս ոմանս յաշակերտացն յիւրաքանչիւր մենաստանաց՝ երթեալ, լեռնակեաց, մենակեաց, սորամուտ, ծակախիթ եղեալ, և զառօրեակն խոտաբուտ ճարակօք վճարեալ։ Եւ այսպէս վշտակեաց տկարութեան զանձինս տուեալ, մանաւանդ որոց հայեցեալ ևս ի մխիթարութիւն առաքելական բանիցն, թէ «Յորժամ վասն Քրիստոսի տկարանամ՝ յայնժամ զօրացեալ լինիմ». և թէ՝ «Լաւ ևս լիցի պարծել տկարութեամբ, զի բնակեսցէ յիս զօրութիւնն Քրիստոսի»։



844 Եվ բազում բանտարկյալների, կալանավորների ու բռնակալների ձեռքում չարչարվածների փրկություն տվեց՝ կորզելով նրանց Քրիստոսի փառքի ահավոր զորությամբ և անիրավագիր, ապօրինի շատ մուրհակներ պատռեց։ Շատ վհատված սգավորների համար իր մխիթարական քարոզությամբ մեծ Աստծու և ամենափրկիչ Հիսուս Քրիստոսի փառքի հայտնության համաձայն՝ հույսի ակնկալություն նվաճեց և ամենքին միանգամայն փոխեց, աստվածապաշտության ու կարգ ու կանոնի մեջ դրեց։

845 ԾԻԱ. Եվ դարձյալ շեն ու անշեն տեղերում հաստատեց դաշտաբնակ, շենաբնակ, լեռնական, անձավաբնակ, արգելաբնակ վանականների բազում ու անհամար խմբեր։ Քրմերի որդիներից ոմանց առավ աշակերտ, ձեռնասուն դարձրեց, ջանում էր ուսում տալ նրանց հոգևոր խնամքով ու երկյուղով դաստիարակել։ Ով որ եպիսկոպոսության աստիճանին արժանի էր, նրան ձեռնադրում էր։ Նրանցից առաջինի անունը Աղբիանոս էր, որը հետո Եփրատ գետի կողմերում եպիսկոպոս եղավ, երկրորդինը՝ Եվտաղիոս, որը Բասեն գավառի կողմերում հոգևոր հովիվ կարգվեց, երրորդինը՝ Բասոս, չորրորդինը՝ Մովսես, հինգերորդինը՝ Եվսեբիոս, վեցերորդինը՝ Հովհաննես, յոթերորդինը՝ Ագապես, ութերորդինը՝ Արտիթես, իններորդինը՝ Արսուկես, տասներորդինը՝ Անտիոքես, տասնմեկերորդինը՝ Տիրիկես, տասներկուերորդինը՝ Կիրակոս*։ Սրանք էին, որ առանձնացվեցին քրմերի որդիներից՝ տարբեր կողմերի եպիսկոպոսներ լինելու, քարոզությունը տարածելու համար։ Մյուսների անունները եթե որևէ մեկը կամենա, չի կարող թվել։

846 Եվ Աղբիանոսին՝ ճշմարիտ ու աստվածասեր մարդուն, թողեց արքունի դռան բնակիչների եպիսկոպոս և ինքը ժամանակ առ ժամանակ անբնակ լեռներն էր ելնում, ուր և ինքն իր անձով իսկ օրինակ էր ցույց տալիս։ Բոլոր մենաստաններից առնում էր որոշ աշակերտների և գնում դառնում էր լեռնակյաց, մենակյաց, մտնում էր խոռոչների ու ճեղքերի մեջ և առօրյա սնունդը հայթայթում խոտեղեն ուտելիքներով։ Այսպես՝ վշտակյաց տկարության էին անձնատուր լինում, մանավանդ, որ աչքի առջև ունեին առաքելական խոսքերի մխիթարությունը, թե «երբ տկարանում եմ Քրիստոսի համար, այն ժամանակ զորացած եմ լինում» և թե «ավելի լավ է պարծենալ տկարությամբ, որպեսզի իմ մեջ բնակվի Քրիստոսի զորությունը»։

847 «Անդ էր ապա չարբենալ գինւով, այլ առաւելուլ հոգւով և պատրաստել զսիրտս երգովք հոգևորօք ի փառս և ի գովութիւն Աստուծոյ։ Անդ կրթութիւն քաղցրուսոյց ընթերցուածոց հոգեպատում գրոց։ Անդ քաջալերութիւն յորդորական լուսաւոր վարդապետութեան, առ ի յառաջադէմ ընտրութիւն պսակահամբար քրիստոսադիր կիտին։ Անդ եռալ հոգւով աստուածապաշտ ծառայութեամբ։ Անդ աղօթք աղերսալից և պաղատանք փարելից և խնդրուածք հաշտեցուցիչք վասն ամենեցուն կենաց առ մարդասէրն Աստուած»։

848 «Եւ նովին հոգեկրօն արուեստիւն հանեալ աւուրս բազումս յանապատ տեղիս», յակունս Եփրատական գետոյն, յայրս և ի քարածերպս երկրին բնակեալ լինէր, և ի կատարս լերանց, զօրինակ առեալ զմեծի մարգարէին Եղիայի, և կամ զերանեալ զմկրտչին առաջնոյն Յովհաննու. բարեաց գործոց նախանձաւոր եղեալ՝ զնոյն կեանս վարուցն քաջութեան աստուածամուխ կենացն անձին մատուցանէր։

849 ԾԻԲ. Եւ թէ երբեք երբեք իջանել լինէր, շրջել զօրացուցանել զաշակերտեալսն ճշմարտութեան հոգւով, «իրաց իրաց պիտոյից օգտակարաց ամենայն եկեղեցեացն հասեալ յօգնականութիւն» շնորհօքն Աստուծոյ առանց յապաղելոյ, առանց իրիք զբաղելոյ, հանապազ իջանէր ի թիկունս դիպաց դիպաց պատահելոց, և վճարէր զօրութեամբն Աստուծոյ։ Եւ յորդորագոյնս և պարարտագոյնս և անփակ բերանով զվտակս վարդապետութեանն ի սիրտս լսողացն սերմանեալ ծաւալեցուցանէր. և զայս արարեալ զամենայն ժամանակս իւր՝ վասն անձին և վասն աշխարհի»։

850 «Քանզի սովոր իսկ են ճշմարիտ վարդապետք՝ զանձանց առաքինութիւն կանոն աշակերտելոցն դնել. մանաւանդ յուշ առնելով զտէրունականն զմիոյն զմիայնոյ զիմաստնոյն Աստուծոյ. քանզի ասէ. «Սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել»։ Որոյ բազում անգամ առեալ զաշակերտսն ուրոյն, և աննմանական անձամբն օրինակ կարօտելոցն լինէր, յորժամ ի Թաբօրական լերինն զաւետեացն զերանութիւն տայր, և կամ յորժամ ի նմին լերինն զկանոնական աղօթսն առնէր, մինչ դեռ աշակերտքն ի Տիբերական ծովուն նաւէին։ Եւ դարձեալ՝ յաւուրս բաղարջակերացն յօրէնական տօնին զգիշերոյն աղօթս երիցս անգամ ի Ձիթաստանեաց լերինն առանձինն մատուցանէր։ Ուստի և յայտ իսկ է և առանց վճհերե-



847 Այնուհետև այնտեղ չէին հարբում գինով, այլ լցվում էին հոգով, ու սրտերը հոգևոր երգերով էին պատրաստում ի փառս և ի գովություն Աստծու։ Այնտեղ վարժվում էին հոգեպատում գրքերի քաղցրուսույց ընթերցանությամբ։ Այնտեղ քաջալերվում էին հորդորող լուսավոր քարոզությամբ՝ հասնելու Քրիստոսի նշանակած պսակառատ նպատակակետին։ Այնտեղ հոգով եռում էին աստվածապաշտ սպասավորությամբ։ Այնտեղ աղերսալի աղոթում էին, փարվելով պաղատում և ամենքի կյանքի համար հաշտեցուցիչ խնդրանքներ էին անում մարդասեր Աստծուց։

848 Այս միևնույն հոգեկրոն գործով շատ օրեր անց էր կացնում անբնակ տեղերում, Եփրատ գետի ակունքների մոտ, բնակվելով երկրի քարայրներում ու քարածերպերում, լեռների կատարներին, օրինակ առնելով մեծ մարգարե Եղիայից և երանյալ առաջինի Հովհաննես Մկրտչից, որոնց բարի գործերին նախանձավոր եղավ, նույն առաքինի ապրելակերպը և աստվածամուխ կյանքը իր անձի վրա ցույց տվեց։

849 ԾԻԲ. Եվ եթե երբեմն երբեմն անհրաժեշտ էր լինում իջնել, շրջել՝ հոգով զորացնելու ճշմարտության աշակերտներին, բոլոր եկեղեցիներին, պիտանի օգտակար բաների համար օգնության հասնելու Աստծու շնորհներով, առանց հապաղելու, առանց բնավ դանդաղելու շարունակ իջնում էր պատահող դեպքերին օգնելու և Աստծու զորությամբ գործելու։ Անփակ բերանով ավելի հորդ ու առատ էր ծավալում վարդապետության վտակները ու սերմանում լսողների սրտերի մեջ և այս անում էր նա ամբողջ կյանքում իր անձի ու աշխարհի համար։

850 Քանզի ճշմարիտ ուսուցիչները սովոր են իրենց առաքինությունները աշակերտների համար օրինակ դարձնել, մանավանդ որ մտաբերում են տերունականը, միմիայն իմաստուն Աստծունը, որովհետև ասում է. «Սկսեց Հիսուսը գործել և ուսուցանել», Նա շատ անգամ իր աշակերտներին առնում մի կողմ էր տանում և իր անկարոտ անձով կարոտյալների համար օրինակ էր դառնում, երբ Թաբորական լեռան վրա տալիս էր խոստացած երանությունը և երբ նույն լեռան վրա կանոնական աղոթքն էր անում, մինչդեռ աշակերտները նավում էին Տիբերական ծովի վրա։ Եվ դարձյալ բաղարջակերաց օրերին, հին օրենքներով սահմանված տոնին*, Ձիթենյաց լեռան վրա առանձնացած երեք անգամ գիշերվա աղոթքն էր անում։ Ուստի և հաստատապես հայտնի է, որ ամենատերը ոչ

լոյ, եթէ ոչ վասն անձին ամենատէրն, այլ համաշխարհի յուսումն զայն գործէր, որ է օրինակ ամենայն հնազանդելոց. վասն որոյ և ասէրն իսկ, թէ «Արթուն կացէք յաղօթս կացէք, զի մի՛ մտանիցէք ի փորձութիւն»։

851 «Իսկ արդ՝ եթէ թեթևագոյն արուեստից պակասագոյն ի գիտութենէ են ազգք երկրածնաց, ո՞րչափ այնմ արուեստի ոք համարիցի անգիտանալ, որ ընդ աստուածախօսսն կատարի, որում երանելին Պաւղոս ամենեցուն տգիտանալ ասէ. վասն որոյ և զամենակեցոյց Հոգին ի թիկունս հասանել անմռունչ հեծութեամբ բարեխօս գիտէ»։

852 «Իսկ արդ՝ յորժամ լսիցեմք, եթէ «Սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել»՝ ապաքէն առնել՝ զի ուսուցէ, և ոչ եթէ զի պարգևեսցի, իմանալի է. և բարեխօսելն նորա վասն սրբոց, և բարեխօսել Հոգւոյն սրբոյ՝ առ ի վարդապետելոյ մեզ, զի ընդ միմեանց բարեխօսիցեմք. և ոչ եթէ առ բարձրագոյն ոք Միածնին կամ Հոգւոյն սրբոյ բարեխօսելն գիտելի է. քանզի միապատիւ է աստուածականն, և ոչ բազմաբար։ Իսկ երանելի առաքելոցն ընկալեալ ի վարդապետութենէ ճշմարտութեանն՝ նախ կարօտական անձանցն օգուտ մատակարարէին, և ապա օրինակ աշակերտելոցն բարձեալ տանէին. երբեմն առանձինն, և երբեմն ժողովովք գումարելովք զփառսն Քրիստոսի առաւելովքն բարձրացուցանէին»։

853 «Քանզի առաւել օգտակար իսկ է յամենայն աշխարհակիր զբօսանաց առանձինն սահմանել, և միայն աստուածպաշտութիւն պարապել։ Զոր և մարգարէքն յառաջագոյն գործէին, որք ի լերինս և յանապատս, յայրս և ի փապարս վիմաց զաստուածեղէն կրօնիցն զծառայութիւն հարկանէին։ Նոյնպէս և ամենայն հարքն որ յաջորդեցան, յառաքելական կանոնացն կրեալ՝ ինքեանք անձամբ բերէին օրինակ վերջնոցս։ Ուստի և երանելիս այս բարձեալ տանէր զաւանդելոցն պատիւ, և ամենայն մատուցելոց առ նա զնոյն պատուիրեալ զուշակէր։ Եւ այնպէս յառաջ, ամենայն աստուածեղէն գանձուցն վայելչութեամբք լցեալ պարարտացուցեալ ամեթութեամբք զամենեսեան՝ խաղացեալ գայր ի բազում ժամանակս, և նովին ի նոյն կանխեալ և ի նմին հանապազորդեալ»։



թե իր անձի, այլ համայն աշխարհին սովորեցնելու համար էր այն անում, ինչ որ օրինակ է բոլոր հնազանդվածներին, որի համար էլ ասում էր. «Արթուն կացեք, աղոթեցեք, որ փորձության մեջ չընկնեք»։

851 Իսկ արդ՝ եթե երկրածին մարդիկ թեթև գործերի վերաբերմամբ գիտությունից պակաս են, մարդս որչափ տգետ պիտի համարվի այն գործի հանդեպ, որով Աստծու հետ է խոսում և որի մասին Երանելի Պողոսն ասում է, որ ամենքը տգետ են, դրա համար էլ ամենակեցույց Հոգին օգնության հասնելով՝ անմռունչ հեծությամբ բարեխոսում է։

852 Արդ՝ երբ լսում ենք, թե «սկսեց Հիսուս գործել և ուսուցանել», պետք է հասկանալ իսկապես՝ գործում է, որպեսզի ուսուցանի և ոչ թե պարգևի։ Եվ Նրա բարեխոսելը սրբերի համար և սուրբ Հոգու բարեխոսելը մեզ սովորեցնելու նպատակով է, որպեսզի միմյանց փոխարեն բարեխոսենք և ոչ թե կարծենք, թե Միածնին կամ սուրբ Հոգուն կարող են բարեխոսել բարձրագույնի մոտ, քանզի աստվածայինը [հավասարապես] միապատիվ է և ոչ թե բազմապիսի [պատվով]։ Իսկ երանելի առաքյալները ճշմարտության վարդապետից ընդունելով օրինակը նախ [իրենց] կարոտ անձերին մատակարարեցին և ապա վերցրին տարան աշակերտածներին։ Երբեմն առանձին և երբեմն ժողովարաններում հավաքված ավելի ու ավելի բարձրացնում էին Քրիստոսի փառքը։

853 Քանզի իսկապես ավելի օգտակար է բոլոր աշխարհային զբաղմունքներից մի կողմ քաշվել, առանձնանալ և միայն աստվածպաշտությամբ պարապել, ինչ որ նախապես անում էին մարգարեները, որոնք լեռներում, անապատներում, քարայրներում և քարերի փապարներում աստվածային կրոնի սպասավորություն էին անում։ Նույնպես և բոլոր հայրերը, որոնք հաջորդեցին, կրելով առաքելական կանոնները, իրենք անձամբ վերջիններին օրինակ ցույց տվին։ Ուստի և այս երանելին իր վրա էր տանում ավանդածների պատիվը և նույնը պատվիրելով ազդարարում էր բոլոր իրեն մոտեցողներին։ Եվ այսպես հետո էլ բոլոր աստվածային գանձերի վայելչությամբ ամենքին հաստատաբար լցրած, պարարտացրած կենցաղավարում էր շատ ժամանակներ՝ նույնով նույնի համար, առավոտը կանուխ վեր կենալով և նույնի մեջ ամեն օր հարատևելով։

լոյ, եթէ ոչ վասն անձին ամենատէրն, այլ համաշխարհի յուսումն զայն գործէր, որ է օրինակ ամենայն հնազանդելոց. վասն որոյ և ասէրն իսկ, թէ «Արթուն կացէք յաղօթս կացէք, զի մի՛ մտանիցէք ի փորձութիւն»։

851 «Իսկ արդ՝ եթէ թեթևագոյն արուեստից պակասագոյն ի գիտութենէ են ազգք երկրածնաց, ո՞րչափ այնմ արուեստի ոք համարիցի անգիտանալ, որ ընդ աստուածախօսսն կատարի, որում երանելին Պաւղոս ամենեցուն տգիտանալ ասէ. վասն որոյ և զամենակեցոյց Հոգին ի թիկունս հասանել անմռունչ հեծութեամբ բարեխօս գիտէ»։

852 «Իսկ արդ՝ յորժամ լսիցեմք, եթէ «Սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել»՝ ապաքէն առնել՝ զի ուսուսցէ, և ոչ եթէ զի պարգևեսցի, իմանալի է. և բարեխօսելն նորա վասն սրբոց, և բարեխօսել Հոգւոյն սրբոյ՝ առ ի վարդապետելոյ մեզ, զի ընդ միմեանց բարեխօսիցեմք. և ոչ եթէ առ բարձրագոյն ոք Միածնին կամ Հոգւոյն սրբոյ բարեխօսելն գիտելի է. քանզի միապատիւ է աստուածականն, և ոչ բազմաբար։ Իսկ երանելի առաքելոցն ընկալեալ ի վարդապետութենէ ճշմարտութեանն՝ նախ կարօտական անձանցն օգուտ մատակարարէին, և ապա օրինակ աշակերտելոցն բարձեալ տանէին. երբեմն առանձինն, և երբեմն ժողովովք գումարելովք զփառսն Քրիստոսի առաւելովքն բարձրացուցանէին»։

853 «Քանզի առաւել օգտակար իսկ է յամենայն աշխարհակիր զբօսանաց առանձինն սահմանել, և միայն աստուածպաշտութեան պարապել։ Զոր և մարգարէքն յառաջագոյն գործէին, որք ի լերինս և յանապատս, յայրս և ի փապարս վիմաց զաստուածեղէն կրօնիցն զծառայութիւն հարկանէին։ Նոյնպէս և ամենայն հարքն որ յաջորդեցան, յառաքելական կանոնացն կրեալ՝ ինքեանք անձամբ բերէին օրինակ վերջնոցս։ Ուստի և երանելիս այս բարձեալ տանէր զաւանդելոցն պատիւ, և ամենայն մատուցելոց առ նա զնոյն պատուիրեալ զուշակէր։ Եւ այնպէս յառաջ, ամենայն աստուածեղէն գանձուցն վայելչութեամբք լցեալ պարարտացուցեալ ամեթութեամբք զամենեսեան՝ խաղացեալ գայր ի բազում ժամանակս, և նովին ի նոյն կանխեալ և ի նմին հանապազորդեալ»։



թե իր անձի, այլ համայն աշխարհին սովորեցնելու համար էր այն անում, ինչ որ օրինակ է բոլոր հնազանդվածներին, որի համար էլ ասում էր. «Արթուն կացեք, աղոթեցեք, որ փորձության մեջ չընկնեք»։

851 Իսկ արդ՝ եթե երկրածին մարդիկ թեթև գործերի վերաբերմամբ գիտությունից պակաս են, մարդս որչափ տգետ պիտի համարվի այն գործի հանդեպ, որով Աստծու հետ է խոսում և որի մասին Երանելի Պողոսն ասում է, որ ամենքը տգետ են, դրա համար էլ ամենակեցույց Հոգին օգնության հասնելով՝ անմռունչ հեծությամբ բարեխոսում է։

852 Արդ՝ երբ լսում ենք, թե «սկսեց Հիսուս գործել և ուսուցանել», պետք է հասկանալ իսկապես՝ գործում է, որպեսզի ուսուցանի. և ոչ թե պարգևի։ Եվ Նրա բարեխոսելը սրբերի համար և սուրբ Հոգու բարեխոսելը մեզ սովորեցնելու նպատակով է, որպեսզի միմյանց փոխարեն բարեխոսենք և ոչ թե կարծենք, թե Միածնին կամ սուրբ Հոգուն կարող են բարեխոսել բարձրագույնի մոտ, քանզի աստվածայինը [հավասարապես] միապատիվ է և ոչ թե բազմապիսի [պատվով]։ Իսկ երանելի առաքյալները ճշմարտության վարդապետից ընդունելով օրինակը նախ [իրենց] կարոտ անձերին մատակարարեցին և ապա վերցրին տարան աշակերտածներին։ Երբեմն առանձին և երբեմն ժողովարաններում հավաքված ավելի ու ավելի բարձրացնում էին Քրիստոսի փառքը։

853 Քանզի իսկապես ավելի օգտակար է բոլոր աշխարհային զբաղմունքներից մի կողմ քաշվել, առանձնանալ և միայն աստվածպաշտությամբ պարապել, ինչ որ նախապես անում էին մարգարեները, որոնք լեռներում, անապատներում, քարայրներում և քարերի փապարներում աստվածային կրոնի սպասավորություն էին անում։ Նույնպես և բոլոր հայրերը, որոնք հաջորդեցին, կրելով առաքելական կանոնները, իրենք անձամբ վերջիններին օրինակ ցույց տվին։ Ուստի և այս երանելին իր վրա էր տանում ավանդածների պատիվը և նույնը պատվիրելով ազդարարում էր բոլոր իրեն մոտեցողներին։ Եվ այսպես հետո էլ բոլոր աստվածային գանձերի վայելչությամբ ամենքին հաստատաբար լցրած, պարարտացրած կենցաղավարում էր շատ ժամանակներ՝ նույնով նույնի համար, առավոտը կանուխ վեր կենալով և նույնի մեջ ամեն օր հարատևելով։

854 ԾԻԳ. «Յայնմ ժամանակի երանելի ցանկալի և անպայման սքանչելի լինէր երկիրս Հայոց. որպէս զՄովսէս, որ յանկարծ ուրեմն օրէնսուսոյց հեբրայական բանակին լինէր, ամենայն մարգարէական դասուն, և կամ իբրև զյառաջադէմն Պաւղոս բովանդակ առաքելական գնդաւն, հանդերձ աշխարհակեցոյց աւետարանաւն Քրիստոսի՝ սոյնպէս և սա եկեալ հասեալ երևեալ՝ հայաբարբառ հայերէնախօս գտաւ»։

855 Արդ՝ ըստ գաւառաց գաւառաց երթեալ ընտրէր անձին իւրում կայս հանգստեան յանապատ տեղիսն և անդ բնակէր, և յանապատացն լուսաւորէր զամենեսեան։

856 Եւ բազմացոյց կացոյց տեսուչս եպիսկոպոսս յամենայն գաւառս Հայոց իշխանութեան իւրոյ. և որ յաստիճան եպիսկոպոսութեան ձեռնադրեցան ի նմանէ՝ աւելի քան զչորեքարիւր եպիսկոպոս, որք կացին տեսուչք տեղեաց տեղեաց։ Իսկ կարգք երիցանց կամ սարկաւագաց կամ անագնովսաց, և որ այլ ևս ի պաշտօն Տեառն կացին՝ անթիւք էին ի բազմութենէն։

857 Իսկ թագաւորն Տրդատ՝ ուխտ զայս դնէր ընդ ամենայն մարդոյ, որ միանգամ ընդ նորա տէրութեամբն էին, ընդ մեծի և ընդ փոքու, զի ամենեցունց հաստատութիւն այն կայցէ առ նա, զի անխորշ և անխէթ աստուածահրաման պատուիրանացն հնազանդեսցին առանց երկմտութեան, և արարչութեանն հաւատալ յամենայն սրտէ։ Եւ ամենեցուն հաւանեալ այնմ՝ փութային կատարել վաղվաղակի զհրամանսն։

858 Իսկ թագաւորն շատ աղաչեաց զԳրիգոր վասն հանապազորդ առ նմա կալոյ, զի ընդ ինքեան շրջեցուսցէ. որում ոչ հաւանեալ չառնոյր յանձն, այլ յանապատ տեղիս հաճեալ բնակութեամբ, պահովք կոխեալ զինքն, զի մի՛ տացէ հպարտութեանն բարձրանալ կոխել զինքն. այլ կէտ եդեալ ինքեան՝ զամենայն աւուրս կենաց իւրոց զքառասուն քառասուն օր պահովք ձգտել մինչև յօր քրիստոսակոչ հանգստեանն իւրոյ վախճանին։

859 Իսկ իբրև կարի կարօտեալ թագաւորն աշխարհաւն հանդերձ զնմանէն, զի ի մէջ նոցա բնակեսցէ, և քանքատէին կարօտեալք ի կայս նորա՝ յայնմ ժամանակի լուան յոմանց ի տեղեկաց, որ գիտակ արարին զթագաւորն վասն որդոյն Գրիգորի, զի յայնժամ յառաջ ևս, մինչ դեռ ի մանկութեան աստիճան էր զինուորու-



854 ԾԻԳ. Այն ժամանակ երանելի, ցանկալի և անչափ սքանչելի եղավ մեր Հայոց երկիրը։ Ինչպես Մովսեսը, որը միանգամից եբրայական (հեբրայական) բանակին օրենսուսույց էր եղել, ամբողջ մարգարեական դասի հետ և կամ ինչպես առաջադեմ Պողոսը բովանդակ առաքելական գնդով Քրիստոսի աշխարհակեցույց Ավետարանի հետ, նույնպես և սա [Գրիգորը] գալով հասնելով, երևալով՝ հայաբարբառ հայերենախոս դարձավ*։

855 Արդ՝ գավառից գավառ անցնելով իր անձի համար անբնակ տեղերում հանգստյան կայան էր ընտրում և այնտեղ բնակվում էր ու անբնակ տեղերից ամենքին լուսավորում։

856 Հայաստանի՝ իր իշխանության տակ եղած բոլոր գավառներում բազմացրեց, կարգեց տեսուչ-եպիսկոպոսներ. Նրա կողմից ձեռնադրվեցին ավելի քան չորս հարյուր եպիսկոպոս, որոնք տարբեր տեղերի տեսուչ նշանակվեցին։ Իսկ երեցների, սարկավագների կամ գրակարդացների (անագնովսաց) կարգը, և որոնք Տիրոջ համար ուրիշ սպասավորության կարգվեցին, անթիվ էին իրենց բազմությամբ։

857 Իսկ Տրդատ թագավորը այս ուխտը դրեց ամեն մի մարդու հետ, որ նրա տիրապետության տակ էր գտնվում, մեծին ու փոքրին, որպեսզի ամենքը հաստատապես անխորշ ու անխեթ, առանց երկմտության և ամբողջ սրտով հնազանդվեն աստվածահրաման պատվիրաններին՝ հավատան արարչությանը։ Այս բանին բոլորը համաձայնելով՝ անմիջապես փութացին հրամանները կատարել։

858 Իսկ թագավորը շատ աղաչեց Գրիգորին մշտապես իր մոտ մնալ, որպեսզի իր հետ շրջեցնի. այս բանին չհամաձայնելով [Գրիգորը] հանձն չառավ, այլ կամեցավ ապրել անբնակ (անապատ) տեղերում, ինքն իրեն պասով (պահք) խոնարհեցնելով, որ չլինի թե հպարտությունը գլուխ բարձրացնի և ոտնակոխ անի իրեն։ Այլ ժամկետ դրեց ինքն իրեն՝ իր կյանքի բոլոր օրերին քառասուն-քառասուն օր պասով մնալ մինչև իր վախճանի քրիստոսակոչ հանգստյան օրը։

859 Երբ թագավորը, երկրի [մարդկանցով] հանդերձ, շատ փափագեց նրան, որ իրենց մեջ ապրեր, և գանգատվում էին կարոտյալները, որ նա մնար, այն ժամանակ լսեցին տեղյակ մարդկանցից, որոնք սուրբ Գրիգորի մասին գիտակ դարձրին թագավորին, թե նախկինում, երբ երիտասարդական տարիքում զինվորա-

թեամբ՝ ամուսնացեալ և երկուս որդիս ստացեալ. որոց առաջնոյն անուն ճանաչէր Վրթանէս, որ յաշխարհականաց կեանս էր. որ ապա և նա յաստիճան պաշտաման կաց երիցութեան. և երկրորդին՝ Արիստակէս, որ ի մանկութենէ ըստ աստուածագործ ծառայութեան սնեալ էր. «որ ի միայնակեաց լեռնակեաց ի կրօնս մտեալ էր, և բազում և ազգի ազգի վշտակեցութիւն ըստ Աւետարանին կրեալ ամենայն կրթութեամբ, և ամենայն իրաց հոգևորաց զանձն տուեալ— միայնաւորութեան, լեռնակեցութեան, քաղցի և ծարաւոյ և բանջարաճաշակ կենաց, արգելանաց անլուսից, խարազնազգեստ և գետնատարած անկողնոց. և բազում անգամ զհեշտական հանգիստն գիշերաց, զհարկ քնոյ, յոտնաւոր տքնութեան ի թօթափել ական վճարէր. և զայս արարեալ ոչ սակաւ ժամանակս։ Եւ գտեալ ևս զոմանս՝ յինքն յարեցուցեալ և աշակերտեալ սմին աւետարանական սպասաւորութեան։ Եւ այսպէս ամենայն փորձութեանց ի վերայ հասելոց կամայական քաջութեամբ տարեալ, և նովիմբ լուսաւորեալ և պայծառացեալ, և ծանօթական և հաճոյ եղեալ առաջի Աստուծոյ և ամենայն մարդկան»։

860 Արդ՝ իբրև լուաւ զայս ամենայն թագաւորն Տրդատ՝ վաղվաղակի փութով և անզբաղապէս արձակէր արս երիս աւագս փառաւորս պատուականս հրովարտակօք հանդերձ, զի զերկոսին որդիսն Գրիգորի վաղ առ նա հասուցենն։ Եւ որք առաքեցանն յարքայէ զնոցանէն, զի ածցեն զնոսա՝ այսոքիկ են. առաջնոյն անուն Արտաւազդ, որ սպարապետն էր ամենայն զօրացն Հայոց Մեծաց. և երկրորդին Տաճատ անուն, իշխան Աշոցաց գաւառին. երրորդին՝ Դատ անուն, կարապետ արքայի։

861 ԾԻԴ. Արդ՝ եկին հասին նոքա յաշխարհն Կապուտկացւոց և գտին զՎրթանէս ի Կեսարացւոց քաղաքին, և զսուրբն Արիստակէս բնակեալ յանապատի, յիւրում մենաւորաստանին. ապա ոչ հաւանէր նա իջանել յանապատէ անտի. մինչև եղև ժողով բազմութեան քրիստոնէից, որք հաւանեցուցին զնա գնալ անտի. զի «Լաւ է, ասեն, քեզ գործ մշակութեանն Աստուծոյ՝ քան զայդ մենաւորութիւն բնակութեան յանապատի այդր»։ Զորս այնուհետև և յուղարկեցին զնոսա անտի։ Իսկ նոքա եկին հասին յերկիրն Հայոց, և յանդիման ունէին զածեալսն, զերկոսին որդիսն Գրիգորի, առաջի թագաւորին. զորս առեալ թագաւորին՝ ինքնին նոքօք հանդերձ ի խնդիր ելանէր



կան էր, ամուսնացել և երկու որդի էր ունեցել, որոնց առաջինի անունը Վրթանես էր, որը աշխարհական կյանք էր [վարել] ու ապա քահանայության եկեղեցական (երիցության) աստիճան ընդունել. երկրորդինը՝ Արիստակես*, որը մանկությունից աստվածապաշտական ծառայության համար էր դաստիարակված, «որ միայնակեաց, լեռնաբնակ, կրոնական [կարգն] էր մտել և բազում ու տեսակ-տեսակ տառապանքներ էր կրել, ըստ Ավետարանի, ամեն տեսակ վարժություններով, իրեն տալիս էր ամեն ինչի, որ հոգևոր էր՝ միանձնության, լեռնակեցության, քաղցի ու ծարավի, բանջարաճաշակ կյանքի, անլույս արգելարանների, խարազանազգեստ ու գետնատարած անկողինների, բազում անգամներ գիշերվա հաճելի հանգիստն ու քնի հարկը ոտքի վրա տքնությամբ վերջացնում էր մի ակնթարթում, և այս անում էր ոչ քիչ ժամանակ։ Մի քանիսին ևս գտել իր կողմն էր քաշել՝ հետևորդ դարձնելով սույն ավետարանական ծառայությանը։ Այսպես, կամավոր քաջությամբ տանելով բոլոր վրա հասած փորձությունները և դրանով լուսավորվելով ու պայծառանալով՝ ծանոթ ու հաճելի էր դարձել Աստծուն և բոլոր մարդկանց»։

860 Արդ՝ երբ Տրդատ թագավորը այս ամենը լսեց, անմիջապես, փութաջան և անդանդաղ ուղարկեց երեք ավագ փառավոր, պատվական մարդկանց, հրովարտակներով հանդերձ, որպեսզի Գրիգորի երկու որդիներին շուտով իր մոտ հասցնեն։ Եվ նրանք, որ ուղարկվեցին արքայի կողմից, որպեսզի բերեն նրանց, հետևյալներն են. առաջինի անունն էր Արտավազդ՝, որը Մեծ Հայքի բոլոր զորքերի սպարապետն էր, երկրորդի անունն էր Տաճատ՝ Աշոցք* գավառի իշխանը, և երրորդի անունն էր Դատ՝ արքայի սուրհանդակը (կարապետ)։

861 ԾԻԴ. Եկան նրանք հասան Կապուտկացիների երկիրը և Վրթանեսին գտան Կեսարիա քաղաքում ու սուրբ Արիստակեսին՝ անբնակ վայրում իր մենաստանում կենալիս։ Նա չհամաձայնեց իջնել այն անապատից, մինչև որ քրիստոնյաների բազմության ժողով եղավ, որոնք համոզեցին նրան գնալ այնտեղից. «Ավելի լավ է քեզ, ասում են, Աստծու մշակի գործը, քան մենավոր բնակությունը այդ անապատում»։ Այնուհետև նրանց ճանապարհ դրին այնտեղից։ Իսկ նրանք եկան հասան Հայոց երկիրը և թագավորի առջև ներկայացրին բերվածներին՝ Գրիգորի երկու որդիներին, որոնց առավ թագավորը՝ անձամբ նրանց հետ մեկտեղ սուրբ Գրիգո-

սրբոյն Գրիգորի՝ ուր և գոցէ։ Եւ եկեալ գտանէին ի Դարանաղեաց գաւառին, ի լերինն որ կոչի Մանեայ Այրք, յանապատին։

862 Ապա աղաչեաց երանելի թագաւորն Տրդատ զսուրբն Գրիգորիոս, զի փոխանակ այնր, զի ոչ հաւանեցաւ նա կալ և շրջել ընդ նմա, և սիրեաց զմենաւորութեան կեանս՝ ձեռնադրեսցէ և տացէ նմա եպիսկոպոս զսուրբ որդին իւր, զոր եւ ածել ինքն՝ զԱրիստակէս։ Զոր ձեռնադրեաց յեպիսկոպոսութիւն փոխանակ իւր. որպէս ըստ գրեցելոյն ի դէպ, թէ «Փոխանակ հարց եղիցին որդիք՝ կալ իշխան ի վերայ երկրի»։ Որ առաւել ևս քան զհայրն վերագոյն երեւեցուցանէր զիւր վարդապետութիւնն առ հարբն. և յետ նորա կալաւ զտեղի հայրենեացն և անդէն նստաւ յաթոռ կաթողիկոսութեան Հայոց Մեծաց։ Ապա և ինքն իսկ մեծն Գրիգորիոս «ելանէր զտեղեօքն կարգելովք և զգաւառօքն աշակերտելովք յաշխարհին Հայոց՝ զուարթացուցանել, զօրացուցանել, նորոգել և հաստատել զամենեսեան»։

863 Եւ աստուածասէր թագաւորն Տրդատիոս բարեպաշտութեամբ սպասաւորեալ, ըստ աշակերտական հաւատոց ի Քրիստոս՝ երկիւղած գտանէր, որ և տեղեկացեալ և վարժեալ աստուածակեաց հրամանօքն, և ցանկալի եղեալ օրինապահ ընկալելովքն, և բարեաց օրինակ ամենայն աշխարհի։ «Եւ անդէն ի նմին ուշ եդեալ փութով ընթերցուածոց աստուածեղէն գրոց»։ Զի յունական աշխարհական դպրութեանն, երկրաւոր իմաստութեանն, յառաջագոյն էր տեղեակ, առաւել փիլիսոփայական մտաց հանճարագիտութեան հմուտ էր, զի ուսեալ էր զայն։

864 Արդ՝ ընկալեալ և զշնորհս երկնաւոր պարգևացն, «որով առժամանայն լուսաւորեալ և թեակոխ թեամուխ եղեալ աստուածատուր հրամանացն ի հանգամանս, և ամենայն պատրաստութեամբ զանձն յարդարեալ», «և ըստ աւետարանական չափոցն ի ծառայութիւն Աստուծոյ մարդասիրին դարձեալ։ Մերկացեալ այնուհետև զհեթանոսակիր ցանկութիւնսն, և առեալ զնշան պարծանաց խաչին յանձն իւր, և երթեալ զկնի ամենակեցոյց խաչելոյն՝ հաճել զհրամանացն պայման, զկնի խաչակիր գնդին Քրիստոսի աշակերտելոցն հետևեալ»։ Եւ անձին իւրում եղեալ սահման պահօք և տրքնութեամբ «աղօթս մշտնջենամռունչս և բազկատարած պաղատանս առ Աստուած, և արտասուս հանապազորդս» վասն աշխարհին իւրոյ։ Նոյնպէս և վասն իւր խնդրէր, զի մի՛ յիշեսցին մեղքն որ



րին որոնելու գնացին, ուր որ պետք է գտնվեր։ Եկան գտան Դարանաղյաց գավառում Մանյա Այրք կոչված լեռան վրա, անբնակ տեղում։

862 Ապա երանելի թագավոր Տրդատը աղաչեց սուրբ Գրիգորին, որ այն բանի փոխարեն, որ չհամաձայնվեց մնալ ու շրջել իր հետ և նախընտրեց մենավոր կյանքը՝ ձեռնադրի և եպիսկոպոս դարձնի իր սուրբ որդուն՝ Արիստակեսին, որին նա բերել էր տվել։ Նրան եպիսկոպոս ձեռնադրեց իր փոխարեն, ինչպես որ դրան համապատասխան գրված է, թե՝ «Հայրերի փոխարեն կլինեն որդիները՝ իշխան կդառնան երկրի վրա»։ Նա հորից ավելի բարձր էր ցույց տալիս իր վարդապետությունը հոր [կենդանության] օրոք, և նրանից հետո ստանձնեց հայրենի երկրի [իշխանությունը] և ապա նստեց Մեծ Հայքի կաթողիկոսական աթոռին։ Ապա ինքն իսկ, մեծ արքեպիսկոպոս* Գրիգորը, դուրս եկավ նշանակված տեղերը և Հայոց աշխարհի կրոնափոխված գավառները՝ ամենքին զվարթացնելու, զորացնելու, նորոգելու և հաստատելու համար։

863 Եվ աստվածասեր թագավոր Տրդատը, բարեպաշտությամբ ծառայելով քրիստոնյա հետևորդի հավատքով, դարձավ երկյուղած և տեղեկանալով ու վարժվելով աստվածային հրամաններին, օրինապահ ընդունվածների հետ սիրելի դարձավ և բարի օրինակ՝ ամբողջ երկրի համար։ «Եվ հենց այնտեղ փութաջանությամբ ուշադրություն էր դարձնում աստվածային գրքերի ընթերցվածներին», մանավանդ նախապես տեղյակ էր հունական աշխարհիկ դպրությանը, երկրավոր իմաստությանը, առավել ևս հմուտ լինելով փիլիսոփայական մտքի հանճարագիտության մեջ՝ սովորած լինելով այն։

864 Արդ՝ ընդունելով նաև երկնային պարգևների շնորհները, որով և շուտով լուսավորվեց ու թափանցեց աստվածատուր հրամանների հանգամանքների մեջ և ամեն պատրաստությամբ իրեն զարդարելով, ըստ ավետարանական կանոնների՝ դարձավ մարդասեր Աստծու ծառայությանը։ Այնուհետև մերկացնելով հեթանոսակիր ցանկությունները, փառքի խաչն իր վրա առնելով ու գնալով ամենակեցույց խաչյալի ետևից՝ հավանեց հրամանների կանոնները, հետևեց Քրիստոսին աշակերտյալների խաչակիր գնդին։ Եվ իր անձը սահմանափակեց պասով ու տքնությամբ, մշտամռունչ աղոթում էր և բազկատարած պաղատում Աստծուն և շարունակ արտասվում իր երկրի համար։ Նույնպես և իր անձի համար



31—1461

յառաջին տգիտութեանն, յայնժամ զոր ի հեթանոսութեանն անդ գործէր։

865 «Եւ բազում և ամենայն ուժով նպաստաւորութիւն ընծայեցուցեալ աւետարանագործ վարդապետութեանն, և հնազանդութեամբ հպատակութիւն ցուցեալ և ծառայեալ ըստ Աւետարանին վայելչութեամբ». և այսպէս խրատեալ և զգաստացեալ կրօնաւորական վարուք, ամենայն ուղղութեամբ յամենայն գործս բարութեանց առաւել ևս պայծառացուցանէր զվարդապետութեանն սատարութիւն։

866 Իսկ մեծ արքեպիսկոպոսն երանելին Գրիգորիոս, սուրբ որդւովն իւրով Արիստակիսաւ և ամենայն երևելի օգնականօքն, զամենայն աշակերտովքն շրջէր, և հաստատէր զնոսա՝ կալ ի պատուիրանին ճշմարտութեան։

867 ՃԻԵ. Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ թագաւորեաց Կոստանդիանոս որդի Կոստանդեայ արքայի յերկրին Սպանիացւոց և Գաղիացւոց. և հաւատաց նա յԱստուած, յարարիչն երկնի և երկրի, և ի ծնունդն ի Բանն նորա, յՈրդին Միածին, և ի Հոգին սուրբ Աստուածութեան նորա։ Եւ կուտեաց գումարեաց առ ինքն զբազմութիւն զօրաց իւրոց առ ափն Ովկիանոս ահագին ծովուն. և ուխտէր զայս բան ընդ ամենեսին, զի առ հասարակ ամենայն որք ճշմարտութեանն հաւատասցէ. «միով աստուածաբարբառ պատգամօք՝ մի ազգ կատարեալ փառաւորիչ միոյ Աստուծոյ լինել»։

868 Եւ յԱստուած խրախուսեալ՝ դիմէր ի վերայ հեթանոսական թագաւորացն, և անդէն սատակէր առ հասարակ զամենեսեան, զորս կործանէր զօրութեամբ աստուածեան խաչին, զպիղծ և զանօրէն թագաւորսն, զԴիոկղետիանոս և զՄարկիանոս և զՄաքսիմիանոս և զԼիկիանոս և զՄաքսենտիոս, և զամենայն զաւակ պղծալից թագաւորացն հեթանոսաց ջնջէր ի միջոյ։

869 Շինէր և զաւերեալ եկեղեցիսն, և կանգնէր զսեղանսն կործանեալս ի տան Տեառն. շինէր և զառաքինարանսն վկայիցն, և բազմացուցանէր զփառաւորութիւն յիշատակաց երանելեացն մարտիրոսաց, և յաճախէր զպատիւ քահանայիցն Աստուծոյ, միանգամայն առնել խաղաղութիւն երկրաւորաց, բառնալ զգայթակղութիւնս ի միջոյ. զի մի՛ ոք մի՛ իւիք սայթաքիցէ յաստուածագնաց ճանապարհէն։ Աւերէր զպղծալից մեհեանս դիւացն, և զնոսա առ հասարակ միանգամայն իսկ իւրեանց պաշտօնէիւքն ի փախուստ դարձուցեալ պակասեցուցանէր։ Պատիւս և պարգևս այնոցիկ շնորհէր, որք յաստուածպաշտութեան ճշմարտութեան կացեալ էին,



խնդրում էր, որ չհիշվեն այն մեղքերը, որ նախկին տգիտության մեջ հեթանոսության ժամանակ գործել էր։

865 Ամբողջովին մեծ ուժով նպաստեց Ավետարանի քարոզության գործին և հնազանդությամբ հպատակություն ցույց տվեց ու ծառայեց՝ Ավետարանին վայել ձևով։ Այսպես խրատելով ու զգաստացնելով կրոնավորական վարքով, ամեն ուղղությամբ, բոլոր բարի գործերի մեջ առավել ևս պայծառորեն օժանդակում էր քարոզչական գործին։

866 Իսկ մեծ արքեպիսկոպոս երանելի Գրիգորը իր սուրբ որդու՝ Արիստակեսի հետ, բոլոր երևելի օգնականներով ու աշակերտածներով շրջում էր և հորդորում նրանց՝ հաստատ մնալու ճշմարտության պատվիրանին։

867 ՃԻԵ. Այդ ժամանակներում Սպանիայում և Գաղիայում թագավորեց Կոստանդին արքայի որդի Կոստանդիանոսը։ Նա հավատաց Աստծուն երկնքի ու երկրի արարչին և նրանից ծնած Բանին (խոսք) միածին Որդուն և նրա աստվածության սուրբ Հոգուն։ Եվ կուտակեց, հավաքեց իր մոտ զորքերի բազմությունը Օվկիանոս մեծ ծովի ափին և ուխտ արեց ամենքի հետ, որ առհասարակ հավատան ճշմարտությանը՝ «մեկ աստվածային պատգամներով, մեկ կատարյալ ազգ և մեկ Աստծու փառաբանիչներ դառնան»։

868 Եվ Աստծուն ապավինելով շարժվեց հեթանոս թագավորների վրա և իսկույն ամենքին սպանեց առհասարակ, նրանց կործանեց աստվածային խաչի զորությամբ, պիղծ ու անօրեն Դիոկղետիանոս, Մարկիանոս, Մաքսիմիանոս, Լիկիանոս, և Մաքսենտիոս թագավորներին ու պղծալից հեթանոս թագավորների բոլոր զավակներին մեջտեղից ջնջեց։

869 Շինեց նաև ավերված եկեղեցիները և կանգնեցրեց Տիրոջ տան կործանված սեղանները։ Շինեց և նահատակների վկայարանները, ճոխացրեց երանելի մարտիրոսների հիշատակների փառաբանությունը և բազմացրեց Աստծու քահանաների աստիճանը, որպեսզի միանգամայն խաղաղություն լինի երկրավորներին, գայթակղությունը մեջտեղից վերանա, և ոչ ոք որևէ բանով չսայթաքի Աստծու մոտ տանող ճանապարհից։ Ավերեց դևերի պղծալի մեհյանները և նրանց առհասարակ իրենց պաշտամունքի ծառայողների հետ մեկտեղ փախուստի մատնելով՝ պակասեցրեց։ Պատիվներ ու պարգևներ տվեց նրանց, որոնք ճշմարիտ աստվածապաշ-

և ոչ երբեք զհաստատութիւնն թողեալ։ Վասն այսորիկ յաղթութիւն տուաւ նմա ի վերայ ամենայնի, վասն զի առ նա զնշան յաղթութեան խաչին յանձն իւր։

870 Եւ զհրաման սաստկութեան պատուիրանին ճշմարտութեան, կալ յայսմիկ ի հաստատութեան հաւատոցն զոր առ ի Տեառնէ՝ հրովարտակօք իւրովք ընդ տիեզերս տարածանէր, սպառնացեալ յաղթող զօրութեամբն՝ լուսոյն հաւատոց որ առ ի Տէր ունել զբարեպաշտութիւնն. և այսուիկ հալածէր զզօրս խաւարին, և ի վերայ ամենայնի վերնոյն զօրութեամբ գեր ի վերոյ լինէր։ Իսկ որք այսմ հաւանեալք՝ զի երկրպագուք լիցին ճշմարտութեանն՝ զնոսա բարեկամեալ մերձեալ պատուեալ՝ առ ինքն մատուցանէր։ Եւ այսու օրինակաւ հզօր երևեալ՝ ի վերայ մարդկանն հաստատէր զթագաւորութիւնն իւր, աստուածակարգ թագաւորութիւն զիւր թագաւորութիւնն անուանեալ, մինչ այնչափ հզօրացեալ ի վերայ ամենայն մարդկան՝ իրաւացի լինէր պայծառացեալ։

871 Եւ այսպէս յաղթող երևեալ զինքն հաստատէր՝ մինչև զամենայն աւուրս կենաց իւրոց հրեշտակ յերկնից երևեալ, զօր հանապազ նմա սպասաւոր կացեալ՝ ընդ առաւօտս առաւօտս զքրիստոսեան նշան թագի նորին առեալ՝ ի նորին գլուխն դնէր. և այսպէս տեսեալ զերկնաւոր զհրեշտակն յիւրում սպասաւորութեան երանելին և ցանկալին ամենայն թագաւորաց Կոստանդիանոս։ Որ և զիւր թագաւորութեանն ծիրանիս Քրիստոսի աւանդէր, աստուածասէրն և յաղթողն ի վերայ ամենեցուն, որ հաստատէր զթագաւորութիւնն հաւատովք, և յամենայն եկեղեցիսն հաստատէր զհաւատսն ճշմարտութեան։

872 ԾԻՁ. Յայնմ ժամանակի լու եղև այս յերկիրն Հայոց Մեծաց, ի դուռն թագաւորութեանն Արշակունեաց, առ Տրդատ արքայ Հայոց Մեծաց։ Որ իբրև լուաւ զայս՝ բազում փառաւորութիւն ամենատեառնն մատուցանէր. խնդութեամբ և մեծաւ ուրախութեամբ գոհանայր զայնմանէ, որ ընդ ամենայն երկիր զիւր սուրբ անունն փառաւոր առնէր։

873 Ապա իբրև լուաւ զայս ամենայն մեծ արքայն Հայոց Տրդատ՝ խորհուրդ առնոյր վասն ճանապարհացն այնոցիկ. հանդերձէր կազմէր առնոյր ընդ իւր զմեծ արքեպիսկոպոսն զԳրիգորիոս և զնորին որդին զԱրիստակէս եպիսկոպոս և զմիւս եպիսկոպոսն զԱղբիանոս։ Եւ ի զինուորական կողմանէն՝ զչորեսին գահերէցսն իւրոյ տաճարին, որ բդեաշխքն կոչին. զառաջին սահմանակալն ի Նոր Շիրական կողմանէն, և զերկրորդ սահմանակալն յԱսորեստանեայց կողմանէն, և զերրորդն՝ յԱրուաստան կողմանէն, զչորրոր-



տության հավատարիմ էին մնացել և երբեք չէին թողել հաստատուն [հավատքը]։ Սրա համար նրան հաղթություն տրվեց ամեն ինչի վրա, որովհետև նա իր անձի վրա կրեց խաչի հաղթական նշանը։

870 Եվ Տիրոջ նկատմամբ ունեցած հավատքի մեջ հաստատուն մնալու ճշմարիտ պատվիրանի սաստիկ հրամանը իր հրովարտակներով տիեզերքի մեջ տարածեց հաղթող զորությամբ սպառնալով [որ] Տիրոջ լույս հավատքը բարեպաշտությամբ [պահպանեն]։ Սրանով հալածում էր խավարի զորքերին և վերին հզորությամբ ամեն ինչի վրա գերազանց էր։ Իսկ նրանք, որ այս բանին համաձայն եղան և ճշմարտության երկրպագուներ դարձան, այդպիսիների հետ բարեկամանալով, մերձենալով, պատվելով՝ իրեն մոտեցրեց։ Այսպես հզոր երևալով՝ իր թագավորությունը հաստատեց մարդկանց վրա. իր թագավորությունը աստվածակարգ անվանեց և այնչափ հզորացավ բոլոր մարդկանց մեջ, որ իրոք պայծառացավ։

871 Այսպես հաղթող լինելով իրեն հաստատուն դարձրեց, այնպես որ իր կյանքի բոլոր օրերում երկնքից իջած հրեշտակը մշտապես նրան էր ծառայում, ամեն առավոտ թագի քրիստոսական նշանը վերցնելով՝ նրա գլուխն էր դնում։ Եվ այսպես՝ երանելի և բոլոր թագավորների սիրելի Կոստանդիանոսը երկնավոր հրեշտակին տեսավ իրեն սպասավորելիս։ Նույնիսկ իր թագավորական ծիրանիները Քրիստոսին էր նվիրում աստվածասեր, աստվածապաշտ և ամենքին հաղթողը, որ թագավորությունը հավատքով հաստատեց և բոլոր եկեղեցիներում հաստատ պահեց ճշմարիտ հավատը։

872 ԾԻՁ. Այն ժամանակ այս բանը լսվեց Մեծ Հայքում, Արշակունյաց թագավորության արքունիքում, Մեծ Հայքի արքա Տրդատի կողմից։ Սա երբ իմացավ, ամենքի տիրոջը մեծ փառաբանություն մատուցեց, խնդությամբ և մեծ ուրախությամբ գոհացավ նրանից, որ ամբողջ աշխարհում իր սուրբ անունը փառավորում էր։

873 Ապա Հայոց մեծ արքա Տրդատը, երբ այս ամենը լսեց, խորհուրդ արեց այն ճանապարհների մասին*, կազմեց, պատրաստեց, իր հետ առավ մեծ արքեպիսկոպոս Գրիգորին, նրա որդի Արիստակես եպիսկոպոսին և մյուս եպիսկոպոս Աղբիանոսին*։ Զինվորական կողմից՝ իր պալատի չորս գահերեցներին, որոնք բդեշխ են կոչվում. առաջինը՝ Նոր Շիրական կողմի սահմանակալը, երկրորդը՝ Ասորեստանի կողմի սահմանակալը, երրորդը՝ Արուաստա-

դըն՝ ի Մասքթաց կողմանէն. զմեծ իշխանն Անգեղ տան, և զթագադիր ասպետն, և զսպարապետն մեծ, և զիշխանն Մոկաց, և զիշխանն Սիւնեաց, և զիշխանն Ռշտունեաց, և զիշխանն Մաղխազութեան տանն, և զշահապն Շահապիվանի, և զիշխանն սպասկապետութեանն։ Եւ այլ բազում մեծամեծօք, և եօթանասուն հազարաւ ընտիր զօրու հանդերձ՝ խաղայր գնայր յԱյրարատ գաւառէ ի Վաղարշապատ քաղաքէ՝ անցանել ի սահմանս Յունաց։

874 «Զանց առնէր զբազում օթեվանօք մեծաւ ուրախութեամբ»։ Եւ բազում պատիւ պատրաստութեան հպատակութեան, ըստ քաղաքաց քաղաքաց դիպելոց և իշխանաց իշխանաց պատահելոց, գտանէին մեծարանս ընդունելութեան։ Ընդ ցամաք և ընդ ծով փութացեալ աճապարէին, մինչ երթային հասանէին յաշխարհն Իտալիացւոց, յերկիրն Դաղմատացւոց, ի թագաւորակաց քաղաքն Հռովմայեցւոց։

875 «Զորմէ, իսկոյն պատմեալ յարքունական պաղատանն. զոր իբրև լուաւ աստուածակարգ թագաւորն պատուակալ աթոռոյն Կոստանդիանոս, և հայրապետն մեծ, արքեպիսկոպոսն աշխարհամուտ դրանն, որում անուն կոչէր Եւսեբիոս՝ մեծաւ սիրով պատիւ արարեալ՝ ընդ առաջ ելանէին, և տուեալ միմեանց զհանգիստապատիւ ողջոյնն ուրախ լինէին։ Եւ եղեալ ժամանակս ինչ անդէն ի տիեզերական քաղաքին»՝ ապա զարմացեալ աստուածասէր կայսրն Կոստանդիանոս, հարցանելով զարքայն Տրդատ, թէ «Զիա՞րդ կամ ո՞րպէս եղեն առ քեզ Աստուծոյ սքանչելիքն»։

876 Իսկ նա կաց պատմեաց առաջի կայսերն զամենայն արարեալսն Աստուծոյ առ նա զբարերարութիւնսն։ Եւ զանհնարին զպատուհասն, զլինել ի կերպարանս անասնոյ, ոչ ամօթ համարեցաւ պատմել նմա։ Եւ զհամբերութիւն նահատակեալ վկայիցն քաջութեան, և ո՛ր գործք գործեցան և ո՛րպէս բնութիւն զօրութեան նոցա։ Կամ զոր անդէն իսկ յանդիման ցուցանէր կայսերն զտարեալն ընդ իւր զԳրիգոր, եթէ «Այս այն այր է, ասէ, յոյր ձեռն ծանեաք մեք զմարդասիրութիւնն Աստուծոյ, և զնորին ժուժկալութիւն համբերութեանն նշանաւոր զարմանագործութեանցն։ Վասն որոյ զարմացեալ կայսրն Կոստանդիանոս, խոնարհեցուցեալ զանձն՝ անկանէր առաջի Գրիգորի, զի օրհնեսցի ի նմանէ. և բազում վայելուչ մեծարանօք պատիւ արարեալ նմա, իբրև խոստովանողի Քրիստոսի, ըստ արժանաւորութեան նորա։

877 Սոյնպէս և արքային Տրդատայ, իբրև եղբօր սիրելւոյ, սէր ցուցեալ ուրախութեամբ մեծաւ, մանաւանդ վասն աստուածածա-



նի* կողմի, չորրորդը՝ Մասքութների կողմի։ Ապա [վերցրեց] Անգեղ տան մեծ իշխանին, թագադիր ասպետին, մեծ սպարապետին, Մոկաց իշխանին, Սյունյաց իշխանին, Ռշտունյաց իշխանին, Մաղխազության տան իշխանին, Շահապիվանի շահապին, սպասկապետության (արքունիքի վերակացու) իշխանին։ Եվ այլ բազմաթիվ մեծամեծներով ու յոթանասուն հազար ընտիր զորքով հանդերձ Այրարատ գավառից Վաղարշապատ քաղաքից շարժվեց գնաց անցնելու Հունաց սահմանները։

874 Բազում օթևաններ անցավ մեծ ուրախությամբ և հանդիպած քաղաքներում ու պատահած իշխանների կողմից հպատակության շատ պատիվներ և ընդունելության մեծարանքներ գտավ։ Ցամաքի ու ծովի վրա փութաջան աճապարեցին մինչև գնացին հասան Իտալիա, Դաղմատիա*, Հռոմ թագավորանիստ քաղաքը։

875 Նրա մասին իսկույն պատմեցին արքունական պալատում, որ երբ լսեցին պատվական աթոռի աստվածակարգ թագավոր Կոստանդիանոսը և մեծ հայրապետ արքունի դռան արքեպիսկոպոսը, որի անունն էր Եվսեբիոս, մեծ սիրով պատիվ անելով ընդառաջ եկան և իրար հավասարապատիվ ողջույն տալով՝ ուրախ եղան։ Որոշ ժամանակ մնացին այնտեղ տիեզերական քաղաքում, ապա աստվածասեր կայսր Կոստանդիանոսը զարմացած հարցրեց Տրդատ արքային, թե «ինչպե՞ս կամ որպե՞ս քեզ պատահեցին Աստծու հրաշքները»։

876 Իսկ նա կայսեր առջև պատմեց Աստծու բոլոր գործերը ու նրա արած բարերարությունները։ Ամոթ չհամարեց պատմել նրան իրեն հասած ահավոր պատուհասները, անասունի կերպարանք ստանալը և նահատակ քաջ վկաների տոկունությունը, նրանց կատարած գործերը և նրանց զորավոր էությունը։ Կամ՝ այնտեղ իսկ կայսեր առջև ցույց տվեց իր հետ տարված Գրիգորին, թե «Սա այն մարդն է, ասաց, որի ձեռքով մենք ճանաչեցինք Աստծու մարդասիրությունը և նրա տոկուն համբերության նշանավոր հրաշագործությունները։ Սրա վրա զարմանալով Կոստանդիանոս կայսրը խոնարհեցրեց իր անձը, ընկավ Գրիգորի առջև, որպեսզի օրհնվի նրանից և բազում վայելուչ մեծարանքներով պատվեց նրան իբրև Քրիստոսի խոստովանողի, ըստ նրա արժանավորության։

877 Նույնպես և Տրդատ արքային, իբրև սիրելի եղբոր, մեծ ուրախությամբ սեր ցույց տվեց, մանավանդ նրա աստվածածանոթության համար առավել ևս դաշինք կնքեց նրա հետ՝ միջնորդ

նօթութեան նորա՝ առաւել դաշինս կռէր ընդ նմա, միջնորդ կալեալ զհաւատսն որ ի տէր Քրիստոսն էր, զի անշուշտ մինչ ի բուն զհաւատարիմ սէրն ի մէջ թագաւորութեանցն պահեսցեն. զի ևս քան զևս առաւելագոյն զարքայն Հայոց հաստատեսցէ յԵրրորդութեան հաւատոն։ Իսկ Տրդատիոս պատմէր և վասն վկայիցն Աստուծոյ, թէ ո՛րպէս կամ զինչ օրինակ վկայեցին։

878 Ապա և կայսրն Կոստանդիանոս սկսաւ պատմել նմա վասըն ազնուական վարուց նոցա, զոր յառաջագոյն գիտէր՝ մինչդեռ էին անդէն յիւրեանց աշխարհին, թէ ո՛րպէս հաճոյ վարուքն էին և կամ ո՛րպէս ազնուականք ի մարմնաւոր կողմանէ տոհմակցաց իւրեանց։ Եւ զգործսն զօրութեան յաղթութեանն՝ յԱստուծոյ նմա տուելոյ՝ պատմէր, առ ամենայն թշնամիսն ճշմարտութեանն յաղթող երևեալ։ Ասէ. «Գիտեա՛, եղբայր, զի Աստուած յամենայն երկրի երևեցուցանէ զիւր ողորմութիւն զօրութեանն. զի ամենայն արարածք նորա ծանիցեն զնա և լինիցին նորա փառաւորիչք ճշմարտութեամբ, «քանզի այնպիսի երկրպագուս իւր խնդրէ»։

879 Ապա յետ այսորիկ «մեծարեալ լինէին դարմանօք և մեծապատիւ շքեղութեան կարգօք յարքունեացն և յեկեղեցեացն և ի պատուական իշխանաց քաղաքին. և մեծամեծ պատարագօք և երևելի պարգևօքն պատուեալ սիրով»։

880 «Եւ ապա հրաժարեալ ի ծիրանափառ օգոստականացն և ի սրբոյ կաթողիկոսէն, ընկալեալ ողջոյն յեկեղեցւոյն և յերևելի իշխանաց քաղաքին, և ամենայն իրօք յաջողեալք՝ ելանէին յոսկիապատ կառս արքունատուրս, և մեծաւ շքով և բազում վայելչութեամբ ունէին զճանապարհս արքունականս»։

881 «Եւ ամենայն քաղաքաց պատահելոց պայծառագոյն երևէին, և մեծամեծս ըստ արժանաւորութեան արքայութեանն պատուեալ անդստին, մինչև գային հասանէին» յերկիրն Հայոց, յԱյրարատեան գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, ի հանգստական սրբոցն։

882 Եւ բերէին զպարգևսն տուեալս անդստին, զոսկին և զարծաթն և զպատուական կարասին, ի նուէր սպասու եկեղեցւոյն Աստուծոյ, և ի տունս նուիրաց սրբոց վկայիցն դնէին. նաև զտուեալ զոսկի սպասս կայսերն ի նոյն հանգիստ սրբոցն դնէին։ Եւ առաւել զիւրեանց եկեղեցիսն շինեալ հաստատէին։

883 Եւ մեծն Գրիգոր առ շրջէր ընդ աշակերտեալսն յառաջագոյն, և հաստատէր զնոսա ի ճշմարիտ վարդապետութեանն։



դարձնելով տեր Քրիստոսի նկատմամբ ունեցած հավատը, որպեսզի միշտ հաստատուն պահեն մտերիմ բարեկամությունն իրենց թագավորությունների միջև, և Հայոց արքայի հավատը Երրորդության հանդեպ առավել ևս հաստատ լինի։ Իսկ Տրդատը պատմեց նաև Աստծու նահատակների մասին, թե որպես կամ ինչ ձևով մարտիրոսացան։

878 Ապա Կոստանդիանոս կայսրն սկսեց պատմել նրանց ազնվական վարքի մասին, որն առաջվանից գիտեր, երբ դեռ այնտեղ իրենց երկրում էին, թե ինչպիսի հաճելի վարք ունեին և կամ որպիսի ազնվականներ էին ծագումով։ Պատմեց Աստծու կողմից իրեն տրված զորության, հաղթության գործերը և ճշմարտության բոլոր թշնամիների դեմ հաղթող դառնալը։ Ասաց. «Գիտեցիր, եղբայր, որ Աստված իր ողորմության զորությունը ցույց է տալիս ամբողջ աշխարհում, որպեսզի նրա բոլոր արարածները ճանաչեն նրան և նրա փառավորիչները լինեն ճշմարտությամբ «քանզի այսպիսի երկրպագուներ է որոնում իր համար»։

879 Ապա դրանից հետո «նրանք մեծարվեցին արքունիքի, եկեղեցիների ու քաղաքի պատվական իշխանների կողմից նշանակված ապրուստի ու մեծապատիվ շքեղության կարգով և մեծամեծ ընծաներով ու երևելի պարգևներով սիրով մեծարվեցին»։

880 Ապա հրաժեշտ տալով ծիրանափառ օգոստականներին ու սուրբ կաթողիկոսին, ընդունելով եկեղեցու ու քաղաքի երևելի իշխանների ողջույնը և ամեն ինչում հաջողելով ելան ոսկեպատ, արքայական կառքերը և մեծ շուքով ու բազում վայելչությամբ արքունական ճանապարհներն ընկան։

881 Եվ բոլոր հանդիպած քաղաքներում փառավոր էին երևում, և այնտեղ ըստ թագավորական արժանավորության մեծամեծ պատիվներ ընդունելով՝ եկան հասան Հայոց երկիրը, Այրարատյան գավառը, Վաղարշապատ քաղաքը, ուր սրբերի գերեզմաններն էին։

882 Բերեցին այնտեղ տրված պարգևները՝ ոսկին ու արծաթը և թանկագին կարասին, նվեր տվեցին Աստծու եկեղեցու սպասավորությանը և սուրբ մարտիրոսների նվիրական տանը դրեցին։ Նաև կայսեր տված ոսկի սպասները նույն սրբերի գերեզմաններում դրեցին և իրենց եկեղեցիները առավել ևս շինացրին ու հաստատուն դարձրին։

883 Եվ մեծ Գրիգորը առաջվա աշակերտների մոտ շրջում էր ու հաստատում նրանց ճշմարիտ վարդապետության մեջ։

884 ՃԻԷ. Ապա յետ այսորիկ հրաման ետ մեծ կայսրն, օգոստականն Կոստանդիանոս՝ ժողովել ամենայն եպիսկոպոսաց ի քաղաքն Նիկիացւոց։ Յայնժամ մեծ արքայն Տրդատ և սուրբ կաթողիկոսն Գրիգորիոս հանդերձեցին և արձակեցին զԱրիստակէս, որ երթեալ հասանէր ի մեծ ժողովն Նիկիայ ընդ եպիսկոպոսսն ամենայն. ուր ամենայն տիեզերաց կարգեցաւ ընդունելութեան աւանդութեանըն հաւատք և կարգք լուսաւորութեան, կանոնք պայմանաւորք, աստուածատուր զօրութիւն հաճոյիցն Աստուծոյ անչափ բարձրութեանցն։ Ուր և մեծ կայսրն Կոստանդիանոս մտեալ խոստովան լինէր զհաւատսն և օրհնութեամբ պսակեալ ի ժողովոյն՝ զանուն յերկրի թողոյր և զարդարութիւն յերկինս հաստատէր։

885 Իսկ նրանելին Արիստակէս «գայր պայծառ ծագեալ հաւատովքն և հաստատուն աստուածահաճոյ Նիկիական կանոնօքն երևեալ ի Հայաստան երկրին. և առաջի դնէր թագաւորին և կաթողիկոսին սրբոյ՝ զբերեալ աւանդութիւնսն»։ Որով սրբոյն Գրիգորի ի նոյն լուսաւոր կանոնսն յաւելեալ, առաւել ևս զիւր վիճակն, զՀայաստան երկիրն, պայծառացուցեալ, հանդերձ միաբանութեամբ արքային Տրդատայ՝ զամենայն աւուրս կենաց իւրոց լուսաւորէր։

886 «Ապա յետ այսպիսի գործոց դարձեալ առաւել բարձրագոյն վարդապետութեամբ սկսեալ երանելւոյն Գրիգորի ճառս յաճախագոյնս դժուարապատումս առակս խորիմացս դիւրալուրս բազմադիմիս շնորհագիրս, յարդարեալս ի զօրութենէ և ի հիւթոյ գրոց մարգարէականաց, լի ամենայն ճաշակօք կարգեալս և յօրինեալս աւետարանական հաւատոցն ճշմարտութեան։ Յորս բազում նմանութիւնս և օրինակս յանցաւորաց աստի, առաւել վասն յարութենական յուսոյն առ ի հանդերձեալսն յերիւրեալ, զի հեշտընկալք և դիւրահասոյցք տխմարագունիցն և մարմնական խոհք զբաղելոցն լինիցին, առ ի սթափել զուարթացուցանել և հաստահիմն առ խոստացեալ աւետիսն քաջալերել»։

887 «Զաւետարանական ընթացսն և զվերակացութիւն եկեղեցւոյ սրբոյ՝ շնորհօքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր. և առաւել փութայր գուն եղեալ՝ զամենայն ոք յորդորելով առ ի բարեացն քաջալերութիւն»։

888 «Զցայգ և զցերեկ պահօք և աղօթիւք և ուժգին խնդրուածովք, և բարձրագոյն բարբառովք զաստուածադիր պատուիրանացըն զհրամանսն յուշ առնելով զգուշացուցանէր ամենայն մարդոյ։



884 ՃԻԷ. Ապա սրանից հետո մեծ կայսր օգոստական Կոստանդիանոսը հրաման տվեց բոլոր եպիսկոպոսներին հավաքվել Նիկիա քաղաքում։ Այնժամ մեծ արքա Տրդատը և սուրբ կաթողիկոս Գրիգորը պատրաստեցին և ուղարկեցին Արիստակեսին, որ բոլոր եպիսկոպոսների հետ գնար հասներ Նիկիայի մեծ ժողովին, ուր պիտի որոշվեր ամբողջ տիեզերքի ընդունելի ավանդության հավատքը, լուսավորության կարգը, հաստատված կանոնները, Աստծու անչափ բարձր կամքի աստվածատուր զորությունը։ Ուր և մեծ կայսր Կոստանդիանոսը մտնելով խոստովանեց հավատքը և օրհնությամբ պսակվելով ժողովից՝ անուն թողեց երկրի վրա և արդարություն հաստատեց երկնքում։

885 Իսկ երանելի Արիստակեսը եկավ պայծառ հավատքով փայլած և Նիկիական աստվածահաճո կանոններով հաստատուն երևաց Հայաստան աշխարհում և թագավորի ու սուրբ կաթողիկոսի առջև դրեց բերված ավանդները։ Դրանց վրա սուրբ Գրիգորը ավելացրեց սուրբ լուսավոր կանոնները՝ իր ժառանգությունը, Հայաստան երկիրը առավել պայծառացնելով Տրդատ արքայի միաբանությամբ մեկտեղ, իր կյանքի բոլոր օրերը լուսավոր դարձրեց։

886 Ապա այսպիսի գործերից հետո դարձյալ երանելի Գրիգորը սկսեց ավելի բարձր ուսումով հաճախագույն, դժվարապատում ճառեր կարգել ու հորինել, նաև խորիմաց, դյուրալուր, բազմադիմի շնորհագիր, մարգարեական գրքերի զորությունից ու նյութից հորինված, ավետարանական ճշմարիտ հավատքի բոլոր ճաշակներով լի առակներ։ Դրանց մեջ ավելի հանդերձյալ կյանքի հարության հույսի վերաբերյալ շատ նմանություններ ու օրինակներ հորինեց, կազմեց աշխարհիս անցավոր բաներից, որպեսզի տխմարներին ու մարմնական բաներով զբաղվածներին հաճելի ընդունելի ու դյուրահասկանալի լինեն՝ սթափեցնելու, արթնացնելու ու խոստացված պարգևների նկատմամբ հիմնովին քաջալերելու համար։

887 Ավետարանական ընթացքն ու սուրբ եկեղեցու վերակացությունը Աստծու շնորհներով, առանց պակասության առաջ էր տանում ու ավելի ևս ճգնում, ջանք էր թափում, ամենքին հորդորում էր բարությունների մղելով։

888 Գիշեր-ցերեկ պասով (պահք) ու աղոթքով և ուժգին խնդրանքով ու բարձր ձայնով հիշեցնելով աստվածադիր պատվիրաններն ու հրամանները՝ զգուշացնում էր ամեն մարդու։ «Քում չէր

«Զտայր քուն աչաց, և ոչ նինջ արտևանաց, և ոչ հանգիստ իրանացն», մինչև հասանել ի հանգիստ Տեառն»։

889 «Եւ այսպէս հանդերձ թագաւորաւն և ամենայն աշակերտելովքն զամենայն ժամանակս իւրեանց ընթերցուածոց գրոց ծախէին զտիւ և զգիշեր. և նովին ծաղկեալք և շահաւետեալք, և օրինակ բարեաց ուսումնասէր աշակերտակացացն լինէին»։

890 «Մանաւանդ զի ունէին եւ պատուիրանս զգուշացուցիչս յաստուածակարգ պատգամաւորացն, որոց առաջինն հրամայէ, թէ «Յօրէնս Տեառն խորհեսցիս ի տուէ և ի գիշերի». և երկրորդն զհամագունակն պատուիրէ, թէ «Միտ դիր ընթերցուածոց մխիթարութեան վարդապետութեան. մի՛ անփոյթ առներ զշնորհացդ որ ի քեզ են. յայդ խորհեաց և ի դոյն կանխեսջիր, զի քո յառաջադիմութիւնդ յայտնի լիցի ամենեցուն. զգոյշ լինիջիր անձինդ և վարդապետութեանդ, և ի դմին յամեսջի՛ր. զայդ եթէ առնիցես՝ և զանձն ապրեցուսցես և զայնոսիկ որ քեզն լսիցեն»։

891 Արդ՝ այսու օրինակաւ զամենայն աւուրս կենաց իւրոց առաքելաքան առաքելագործ վարեալ, զհետ երթեալ հրամանացն ընկալելոց մինչև ի վախճան կատարածին զայս առնէր ամ յամէ, և թաղեալ ի սէրն Քրիստոսի լուսաւորէր։

---

892 Իսկ մեք որպէս ընկալաք զհրամանս քոյոյ թագաւորութեանդ, քաջդ արանց Տրդատ, գրել զայս ամենայն՝ որպէս օրէն է ժամանակագիր մատենից՝ ըստ այնմ ձևոյ դրոշմեցաք, ըստ օրինակի յունական ճարտարութեանն արկեալ ի շար զամենայն։

893 «Բայց նայեցաք իբրև ի ցուցող հայելի յաստուածագիր բարձրութիւն տուչութեան հրամանացն, որ առ երանելին Մովսէս եկեալ վասն ամենայն իրացն եղելոց և աստուածեղէն պատգամացըն աւանդելոց՝ մատենագրել ի պահեստ յաւիտեանցն որ գալոցն են»։

894 «Նոյնպիսիք և այլոց մարգարէիցն հրամայեալ. «Ա՛ռ, ասէ, քարտէզ նոր մեծ և գրեա՛ ի նմա գրչաւ դպրի ճարտարի». և այլուր՝ թէ «Գրեա՛ զտեսիլդ ի տախտակի և ի գիր հաստատեա՛, զի որ ընթեռնուն՝ համարձակ ընթեռնուցու»։

895 «Իսկ Դաւիթ յայտնագոյն եւ վասն ամենայն ազգաց զվիճակ աստուածատուր օրինացն նշանակէ ասելովն, թէ «Գրեսցի այս յազգ այլ», և թէ՝ «Տէր պատմեսցէ գրովք ժողովրդոց»։



տալիս իր աչքերին, ոչ նինջ արտևանունքներին, ոչ էլ հանգիստ իր մարմնին, մինչև Տիրոջ հանգստյան հասնելը։

889 Այսպես թագավորի ու բոլոր աշակերտների հետ մեկտեղ ամբողջ ժամանակը օր ու գիշեր գրքերի ընթերցանությամբ էին անցկացնում և դրանով ծաղկած ու շահված՝ բարի օրինակ էին դառնում ուսումնասեր ունկնդիրներին։

890 Մանավանդ որ զգուշացուցիչ պատվիրաններ ունեին Աստծու կարգած պատգամավորներից, որոնց առաջինը հրամայում է, թե «Տիրոջ օրենքի մասին պիտի խորհես գիշեր և ցերեկ» և երկրորդը նմանապես պատվիրում է. «Ուշադրություն դարձրու ընթերցանության, մխիթարության, վարդապետության, անփույթ մի լինիր շնորքիդ վերաբերմամբ, որ կա քեզանում, այդ մասին խորհիր և դրանում կաց, որ քո առաջադիմությունը ամենքին հայտնի լինի։ Զգույշ կաց անձիդ և վարդապետությանդ և դրա մեջ հարատևիր, եթե այդ անես, կազատես թե քեզ և թե քեզ լսողներին»։

891 Արդ՝ այս կերպով իր կյանքի բոլոր օրերը առաքելական, առաքելագործ [եղանակով] վարեց, գնաց ընդունված հրամանների հետքերով, տարեցտարի այս արեց մինչև դեպքերի վախճանը և թաղված Քրիստոսի սիրո մեջ՝ լուսավորում էր։

---

892 Իսկ մենք, երբ ստացանք քո թագավորական հրամանները, ով այրերի մեջ քաջ Տրդատ, այս ամենը գրելու, ըստ այնմ մատյանների ժամանակագրին վայել ձևով դրոշմեցինք, ամեն ինչ շարադրելով հունական ճարտասանության օրինակով։

893 Բայց [միաժամանակ], ինչպես հայելու մեջ, նայել ենք շնորհված հրամանների աստվածագիր բարձրությանը, որոնք տրըվել էին երանելի Մովսեսին՝ տեղի ունեցած բոլոր դեպքերը և ավանդված աստվածային պատգամները մատենագրելու՝ ի պահպանություն գալիք հավիտենականությանը։

894 Նույնպիսի ձևով այլ մարգարեներին էլ է հրամայված. «Առ, ասում է, նոր ու մեծ քարտ և գրիր վրան ճարտար դպրի գըրչով, և այլուր, թե «գրիր տեսիլքդ տախտակի վրա և հաստատիր գրքի մեջ, որպեսզի ով որ այն կարդա, համարձակ լինի»։

895 Իսկ Դավիթը առավել հայտնի ձևով ակնարկում է, որ աստվածատուր օրենքը ամեն ազգերին պիտի վիճակվի, ասելով, թե «պիտի գրվի այս եկող ազգի համար» և թե «Տերը ժողովուրդներին պատմելու է գրով»։

896 «Զոր եկեալ կատարեաց ամենափրկիչն Քրիստոս շնորհատուր հրամանաւն, թէ «Ելէ՛ք ընդ ամենայն ազգս», և թէ՝ «Քարոզեսցի Աւետարանս ի ներքոյ երկնից». ուստի և երանելւոյս այսորիկ համարձակութիւն առեալ յուսալից փութով երևելի և արդիւնակատար ըստ Աւետարանին զիւր մշակութիւնն ցուցանէր»։

897 «Եւ արդ՝ քանզի ըստ օրինակի գրելոցս առ ի մէնջ՝ ի կատարումն դարձուցաք, ոչ եթէ ի հին համբաւուց տեղեկացեալ և մատենագրեալ զայս կարգեցաք, այլ որոց մեզէն իսկ ականատեսք եղեալ կերպարանացն և առընթերակաց հոգևորական գործոցն և լսողք շնորհապատում վարդապետութեանն, և նոցին արբանեակք ըստ աւետարանական հրամանացն։ Ոչ սուտապատում ճարտարախօս եղեալ առ ի մերոց բանից, այլ զյաճախագոյնսն թողեալ և ի նշանաւոր գիտակաց քաղելով՝ զհամառօտսն կարգեցաք. որք ոչ մեզ միայն, ո՛վ թագաւոր, այլ յորժամ քո առաջի զմատեանդ ընթեռնուցուն՝ յայտնի է»։

898 «Քանզի չէաք իսկ հանդուրժող զամենայն արարեալս սրբոցն գտակաւ զիւրաքանչիւրսն նշանակել, այլ ի դիւրագոյն և ի հեշտագոյն յառաքելականն անդր զանձինս պատսպարեցաք, որոյ անցեալ զբազմախուռն արգասեօք սրբոցն առ ի մանրակրկիտ առնելոյ՝ զկարևորագոյնսն և զօգտակարագոյնսն պատմեաց»։

899 «Ուստի և մեր առեալ հանգոյն ասացաք. ոչ ի պատիւ ընտրելոց Աստուծոյ, որք ամենապարծ և կենդանատուր խաչիւն ծանուցեալք յարգեցան, այլ յօրինակ քաջալերիչ հոգևոր ծննդոց իւրեանց, և որք նոքօք, աշակերտելոց իցեն յազգս ազգաց», ըստ բանի հոգևորական երգչին, որ ասէ. «Զի զոր ինչ միանգամ պատուիրեաց հարցն մերոց՝ ցուցանել զայս որդւոց իւրեանց, զի ծանիցէ ազգ այլ. որդիք որ ծնանիցին՝ յարիցեն և պատմեսցեն որդւոց իւրեանց, զի դիցեն առ Աստուած զյոյս իւրեանց, և մի՛ մոռասցին զգործս Աստուծոյ, և զպատուիրանս նորա խնդրելով խնդրեսցեն, զի մի՛ եղիցին իբրև զհարս իւրեանց»։

900 Զի նոքա առ արարչութիւն անդր այսպիսի բարբառ արձակեալ ասասցեն. «Տէր Աստուած մեր դու ես. և նա ասասցէ ցնոսա. Ժողովուրդ իմ էք դուք»։

896 Այս բանը եկավ լրացրեց ամենափրկիչ Քրիստոսը իր շնորհատուր հրամանով, թե «Ելեք բոլոր ազգերի մեջ» և թե «Այս Ավետարանը պիտի քարոզվի երկնքի ներքո»։ Ուստի և այս երանելին, համարձակություն առնելով, հուսալից ջանքով իր մշակությունը երևելի և արդյունակատար դարձրեց ըստ Ավետարանի։

897 Արդ՝ քանզի մեր գրածների համեմատ ավարտին հասանք, այդ ոչ թե հին զրույցներից տեղեկանալով և մատենագրելով կարգեցինք, այլ մենք ինքներս ականատես* եղանք նրանց կերպարանքներին և առկա հոգևոր գործերին և լսող՝ նրանց շնորհապատում ուսման և նրանց ծառան ըստ ավետարանական հրամանների։ Ոչ թե ստապատում ճարտարախոս լինելով [գրեցինք] մեր խոսքերով, այլ հաճախագույնը թողնելով և նշանավոր գիտակներից քաղելով՝ այս համառոտը կարգեցինք, որը ոչ միայն մեզ, ո՛վ թագավոր, այլև երբ քո առջև կարդան այս մատյանը, հայտնի կդառնա [ճշմարտությունը]։

898 Քանզի մենք չէինք հանդուրժի սրբերի ամեն մի արարքը գրքերի մեջ նշանակելու, այլ պատսպարվեցինք այս ավելի հեշտ ու դյուրինով՝ առաքելականով։ Սրբերի բազմախուռն վաստակները թողեցինք, որպեսզի մանրակրկիտ պատմենք կարևորագույնն ու օգտակարագույնը։

899 Ուստի և մենք այս կերպ ասացինք՝ ոչ թե [ավելացնելու] Աստծու ընտրյալների պատիվը, որոնք ամենապարծ և կենդանատուր խաչով ճանաչված հարգվեցին, այլ որպես քաջալերիչ օրինակ իրենց հոգևոր զավակներին և այն ամենքին, որոնք նրանց միջոցով սերնդեսերունդ աշակերտելու են, ըստ հոգևոր երգչի խոսքերի, որ ասում է. «Այն, որ մի անգամ պատվիրեց մեր հայրերին՝ ցույց տալ այս իրենց որդիներին, որպեսզի ճանաչի նոր սերունդը։ Այն որդիները, որ ծնվելու են, պիտի ելնեն ու պատմեն իրենց որդիներին, որ հույսը Աստծու վրա դնեն, չմոռանան Աստծու գործերը և նրա պատվիրանները ընտրեն, պահպանեն, որպեսզի չլինեն իրենց հայրերի նման»։

900 Որպեսզի նրանք իրենց Արարչին այսպիսի խոսք ուղղելով ասեն. «Մեր Տեր Աստվածը դու ես, և նա ասի նրանց՝ «Իմ ժողովուրդն եք դուք»։

1 Այս են հաւատք ճշմարիտ. հաւատամք՝ որպէս և մկրտեցաք, և փառաւորեմք՝ որպէս և տեսաք զլոյս աւազանին։

2 Հաւատամք յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, որպէս ասաց Փրկիչն յԱւետարանին առ աշակերտսն, թէ «Գնացէ՛ք այսուհետև աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէ՛ք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»։

3 Հաւատամք ի Հայր՝ Աստուած կատարեալ, և յՈրդի՝ Աստուած բովանդակ, և ի Հոգի սուրբ՝ Աստուած բաւական. մի աստուածութիւն սրբոյ Երրորդութեանն, մի էութիւն, մի կամք, երեք անձինք կատարեալք։

4 Հաւատամք ի մի Աստուած Հայր, տէր և արարիչ ամենայնի. և ի միածին Որդին, որ ի Հօրէ և առ Հօր և ընդ Հօր. և ի Հոգին սուրբ, որ ի Նորին էութենէ, և նովաւ արար զամենայն արարածս։

5 Որ է մի տէրութիւն, մի զօրութիւն, մի իշխանութիւն, մի մեծութիւն, մի գիտութիւն, մի խորհուրդ, մի պետութիւն, մի անսկզբնական զօրութիւն։

6 Երեք կատարեալ անձինք, և մի կատարեալ կամք. անպատում, անքնին միութիւն Երրորդութեանն. մի իսկութիւն, մի բնութիւն, մի աստուածութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

7 Երեք անձինք, մի զօրութիւն աստուածութեանն. Հայր յանձնէ, Որդի ի Հօրէ, Հոգին սուրբ ի նոցունց ի նոսին. իսկութեամբ, էութեամբ, աստուածութեամբ՝ հարթ հաւասար հասարակ, ի խորութիւնս, ի բարձրութիւնս, ի լայնութիւնս, յերկայնութիւնս։

8 Որ աներևակի զօրութեամբքն թափանցանց լուսով իւրով ելանէ. մերձ է առ ամենեսին և հեռի յամենեցունց. անտեսական ի նկատողաց և անքնին ի քննողաց, և անըմբռնելի է յամենեցունց բնութիւն նորա. մի է էութիւն բնութեանն, և լի է երկինք և երկիր փառօք նորա։

9 Այս է մեծութիւն միութեան սրբոյ Երրորդութեանն. բայց զի պայման գովութեան այլ և այլ է, և այն չէ ծածկեալ յիմաստնոց. այն զի՝ Հայր չծնեալ և ծնող է, և Որդին չծնող և ծնունդ է, և Հոգին սուրբ ո՛չ ծնող և ոչ ծնունդ, այլ ելող։

10 Եւ խոստովանիմք զՀայր՝ անսկիզբն, աներևոյթ, անհասական, անճառ, անքակ, անբաժին, ամենակալ արարիչ երևելեաց և



1 Այս է ճշմարիտ հավատքը, հավատում ենք, ինչպես և մկրտվել ենք ու փառավորում ենք, քանի որ տեսել ենք ավազանի լույսը։

2 Հավատում ենք հանուն Հոր և Որդու և սուրբ Հոգու, ինչպես Փրկիչն Ավետարանում ասաց իր աշակերտներին, թե «Գնացեք այսուհետև աշակերտներ դարձրեք բոլոր հեթանոսներին, մկրտեցեք նրանց հանուն Հոր, Որդու և սուրբ Հոգու»։

3 Հավատում ենք Հորը՝ կատարյալ Աստծուն, Որդուն՝ համապարփակ Աստծուն և սուրբ Հոգուն՝ հզոր Աստծուն, որպես սուրբ Երրորդության մեկ աստվածության. մի էություն, մի կամք և երեք կատարյալ անձինք։

4 Հավատում ենք մեկ Աստված Հորը, ամեն ինչի տեր ու արարիչ և միածին Որդուն, որը Հորից է, Հոր մոտ է և Հոր հետ է, սուրբ Հոգուն, որը նրա էությունից է, ու նրանով ստեղծվեցին ամենայն արարածները։

5 Նա մի տերություն է, մի զորություն, մի իշխանություն, մի մեծություն, մի գիտություն, մի խորհուրդ, մի գլխավորություն և մի անսկիզբ զորություն։

6 Երեք կատարյալ անձինք են և մի կատարյալ կամք. Երրորդության անպատում, անքննելի միություն. Հոր, Որդու և սուրբ Հոգու մի էություն, մի բնություն, մի աստվածություն։

7 Երեք անձինք են, աստվածության մի զորություն. Հայրն ինքնից, Որդին Հորից, իսկ սուրբ Հոգին նրանցից և նրանց մեջ. իսկությամբ, էությամբ և աստվածությամբ ընդհանրապես հարթ հավասար են խորությամբ, բարձրությամբ, լայնությամբ և երկարությամբ։

8 Իր աներևույթ զորություններով ելնում է թափանցող լույսով, ամենքին մերձավոր է և ամենքից հեռավոր, անտեսանելի է նայողներին և անքննելի քննողներին, իսկ նրա բնությունն անըմբռնելի է ամենքին։ Մեկ է նրա բնության էությունը, և երկինքն ու երկիրը լի են նրա փառքով։

9 Այս է սուրբ Երրորդության միության մեծությունը, բայց քանի որ գովության ձևերը տարբեր են, նա թաքնված չէ իմաստուններից, քանզի Հայրը ծնված չէ այլ ծնող, և Որդին ծնող չէ, այլ ծնունդ է, իսկ սուրբ Հոգին ոչ ծնող է և ոչ ծնունդ, այլ բխող։

10 Խոստովանում ենք Հորը՝ անսկիզբ, աներևույթ, անհասանելի, անճառելի, անքակտելի, անբաժանելի, երևելիների ու աներև-



32—1461

աներևույթից. նախակարծ յառաջիմաց քան զամենայն արարեալս և հաստատեալս։

11 Եւ զԲանն Աստուած Որդի՝ ծնունդ ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս, առանց սկզբան ժամանակի. անճառ, առանց բաժանելոյ, անքակ՝ առանց մեկնելոյ. առանց չարչարանաց. առանց միջնորդի. և նոյն ծնունդ՝ ի կուսէն մարմնով ծնեալ ի վախճանի։

12 Առաքեցաւ Աստուած յԱստուծոյ Որդի, առ մարմին ի կուսէն, և եղև մարդ կատարեալ. բովանդակեցաւ ճշմարտութեամբ ի մարմին և ճշմարիտ իսկ մարդ եղև։

13 Խոնարհեցաւ և խառնեաց զաստուածութիւնն ընդ մարդկութիւնս և զանմեռն ընդ մեռուս, զի զմարդկութիւնս անքակ արասցէ յանմահութենէ աստուածութեան իւրոյ։

14 Զի որպէս կամեցաւ, զինչ կամեցաւ՝ և եղև. և որպէս կամեցաւ՝ և արար. քանզի չիք ինչ անհնարաւորութիւն ի նմա. և յամենայնի զօրաւոր է, և որ ինչ կամի, ո՛չ զանցանէ. և զմեր հողեղէն բնութիւնս զգեցաւ և խառնեաց յանխառն աստուածութիւն իւր և յանապականութիւնն։

15 Վասն մեր էառ զբաժակն մահու և ետ մեզ զբաժակն անմահութեան, և զմեռելութիւն արարածոցս կենդանացոյց մահուամբն իւրով, յորժամ յարեաւ մարմնովն և նստաւ ընդ աջմէ ծնողին իւրոյ և խառնեաց յաստուածութիւն իւր Միածինն։

16 Եւ դարձեալ գալոց է փառօք՝ դատել զկենդանիս և զմեռեալս։ Եւ Հայր կենդանացոյց զամենեսեան որք ի նայն հաւատացին։

17 Հաւատամք և ի սուրբ Հոգին աստուածեղէն, Հոգի սուրբ, Աստուած կատարեալ, առանց առնելոյ. բղխումն մշտնջենաւոր առ ի Հօրէ. որ խօսեցաւ յօրէնս և ի մարգարէսն և յառաքեալսն, և էջ ի Յորդանան գետ։

18 Այսուհետև հոգի պետութեան, հոգի ազատութեան, հոգի բերանոյ Աստուծոյ, նորուն էութեան Հօր և Որդւոյ. ոչ արարած, ոչ ծառայ. ոչ հրամանառու, այլ հրամանատու. քանզի մի գործ է Հօր և Որդւոյ և Հոգւոյն. որպէս ասաց իսկ Քրիստոս փրկիչն աշխարհաց, թէ «Ես և Հայր», և «Հոգին ճշմարտութեան, որ ի Հօրէ ելանէ»։ Ելանէ, և ոչ բաժանի. բղխէ, և ոչ սպառի։



վույթների ամենակալ արարիչը, որն ամենայն արարածների և հաստատվածների կանխատեսողն է ու նախագուշակողը։

11 Եվ Աստվածորդի Խոսքը (Բան), Հորից ծնված նախքան հավիտենությունը, առանց ժամանակի սկզբի, անճառելի, անբաժանելի, անքակտելի, առանց չարչարանքների, առանց միջնորդի, նույնը վերջում մարմնով ծնվել է կույսից։

12 Առաքվեց Աստծուց որպես Աստուծո Որդի, մարմին առավ կույսից և կատարելապես մարդ դարձավ։ Արդարև ամփոփվեց մարմնի մեջ և իսկական մարդ դարձավ։

13 Խոնարհվեց և իր աստվածությունը խառնեց մեր մարդկությանը և անմահին՝ մահկանացուներին, որպեսզի մեր մարդկային բնությունը իր աստվածային անմահությունից անքակտելի դարձնի։

14 Քանզի ինչպես կամեցավ, ինչ կամեցավ կատարվեց և ինչ կամեցավ արեց, քանի որ նրա համար անկարելի բան չկա։ Ամեն ինչում նա զորավոր է և ինչ կամենա զանց չի առնի։ Նա զգեցավ մեր հողեղեն բնությունը և այն խառնեց իր անխառն աստվածությանը և անապականությանը։

15 Մեզ համար խմեց մահվան բաժակը և տվեց մեզ անմահության բաժակը։ Նա իր մահվամբ կենդանություն տվեց արարածների մահկանացությանը։ Երբ մարմնով հարություն առավ, նստեց իր ծնողի աջ կողմում, և Միածինն այն խառնեց իր աստվածությանը։

16 Դարձյալ փառքով գալու է դատելու կենդանիներին ու մեռյալներին։ Եվ Հայրը կենդանացրեց ամենքին, որոնք նրան հավատացին։

17 Հավատում ենք աստվածեղեն սուրբ Հոգուն, սուրբ Հոգուն, կատարյալ Աստծուն, որն անստեղծ է և մշտնջենապես բխում է Հորից, և որ խոսել է օրենքների, մարգարեների ու առաքյալների միջոցով և իջել Հորդանան գետը։

18 Հետևաբար գլխավորության հոգին, ազատության հոգին, Աստուծո բերանի հոգին, Հոր և Որդու նույն էությամբ, ոչ արարած են, ոչ ծառա, ոչ հրամանառու, ոչ հրամանատու, քանզի Հոր, Որդու և սուրբ Հոգու գործը մեկ է։ Ինչպես աշխարհի փրկիչ Քրիստոսն ասել է, թե «Ես և Հայրը» և «Ճշմարտության հոգին, որը Հորից է ելնում». ելնում է և չի բաժանվում, բխում է և չի սպառվում։

*19 Այս են երեքանձնականք միութիւն սուրբ Երրորդութեան. և մեք զայս ճշմարիտ հաւատս ունիմք ի սուրբ Գրոց և յօրինաց եկեղեցւոյ՝ առաջնորդ ճանապարհի առ Աստուած և ի սուրբ Գիրս վարդապետութեան։*

*20 Հաւատամք և խոստովանիմք զհամաշխարհական սուրբ կաթուղիկէ եկեղեցի, և ակն ունիմք յարութեան մարմնոց ի մեռելոց և զկենացն յաւիտենականաց, և փառաւորեմք առ հասարակ ի միասին զսուրբ Երրորդութիւնն այժմ և անվախճան յաւիտեանսն. ամէն և եղիցի եղիցի։*

---

*19 Այս է սուրբ Երրորդության երեքանձնյա միասնությունը։ Եվ մենք այս ճշմարիտ հավատքն ունենք սուրբ Գրքերից և եկեղեցու օրենքներից, որպես առաջնորդ առ Աստված ճանապարհի և սուրբ Գրքերի ուսուցման համար։*

*20 Հավատում ենք ու խոստովանում համաշխարհային և սուրբ կաթուղիկե եկեղեցուն և սպասում ենք մեռյալների մարմնով հարությանը, հավիտենական կյանքին. փառավորում ենք առհասարակ և միասին սուրբ Երրորդությունը այժմ և անվախճան հավիտենականության մեջ. ամեն և եղիցի, եղիցի։*

---

## ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Ագաթանգեղոս— *Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց։ Աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան եւ Ստ. Կանայեանց։ Էջմիածին—Տփղիս, 1909։*

Յուշարձան— *Յուշարձան, գրական ժողովածոյ, Վիեննա, 1911։*

**Agathangelus**—Agathangelus und die Akten Gregors von Armenien, Göttingen, 1887.

Արաբ. Ագաթ.— *Ագաթանգեղոսի արաբական նոր խմբագրությունը, հրատ. Ա. Տեր-Ղևոնդյան, Երևան, 1968։*

**Garitte**— G. Garitte, Documents pour l'étude du livre d'Agathange, Rome, 1946.

Հունարեն Վարք— *Ագաթանգեղոսի Պատմության հունարեն նորահայտ խմբագրությունը (Վարք), թարգմ. հունարեն բնագրից Հ. Բարթիկյանի, առաջաբան և ծանոթ. Ա. Տեր-Ղևոնդյանի, Էջմիածին, Է, Ը, Թ—Ժ, 1966։*

**Марр** — Н. Марр, Крещение Армян, Грузин, Абхазов и Аланов святым Григорием (Арабская версия), Петербург, 1908.

Տաշյան— *Յ. Տաշեան, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին և ուսումնասիրութիւն Ագաթանգեղայ գրոց, Վիեննա, 1891։*

**Адонц** — Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, Петербург, 1908.

Մանանդյան— *Հ. Մանանդյան, Երկեր, Ա, Բ, Երևան, 1977, 1978։*

Կորյուն— *Կորյուն, Վարք Մաշտոցի, բնագիրը... թարգմանությամբ, առաջաբանով և ծանոթություններով ի ձեռն Մ. Աբեղյանի, Երևան, 1941։*

**Teaching**—The Teaching of Saint Gregory, trans. and comm. by R. W. Thomson, Cambridge, Massachusetts, 1970.

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Ագաթանգեղոսի «Հայոց պատմությունը» հինգերորդ դարի ոսկեդարյան մատենագրության դասական երկերից է, որը դեռ միջնադարում համաշխարհային տարածում է ունեցել։ Մինչև օրս հայտնի են մոտ երկու տասնյակ խմբագրություններ (որոնցից մեկը և հիմնականը ներկա թարգմանության գրաբար բնագիրն է) միջնադարի 9 լեզուներով՝ հայերեն, հունարեն, ասորերեն, արաբերեն, լատիներեն, եթովպերեն, վրացերեն, ղպտերեն (պատառիկ) և սլավոնական տարբերակներ։*

*Հնագույն պատմիչը, որն ակնարկում է նրա գոյության մասին, Փավստոս Բուզանդն է։ Սակայն առաջինը, որ հստակ խոսում և նկարագրում է Ագաթանգեղոսի պատմությունը, Ղազար Փարպեցին է, ըստ որի, այս մատյանը կոչվել է «Գիրք Գրիգորիսի»։ Մովսես Խորենացին ևս քաջ ծանոթ է Ագաթանգեղոսի պատմությանը, ընդ որում տեսել է ոչ միայն այժմ հայտնի խմբագրությունը, այլև այն կորած խմբագրությունը, որի ասորերեն, հունարեն և արաբերեն թարգմանություններն են մեզ հասել։ «Գիրք Գրիգորիսի» է կոչում նաև Սեբեոսը։*

*Այս մատյանը հիշված է նաև բոլոր հետագա հայ պատմիչների կողմից, միայն այլևս մոռացվել էր «Գիրք Գրիգորիսի» անունը և կոչվում էր Պատմութիւն Ագաթանգեղոսի։*

*Ագաթանգեղոսի պատմության գիտական ուսումնասիրությունն սկիզբ առավ դեռ ԺԸ դարում, երբ Հ. Ստիլտինգը լույս ընծայեց նրա հունարեն թարգմանության բնագիրը և լատիներեն համառոտ թարգմանությունը՝ լատին «Վարք սրբոց» մատենաշարում* (Acta Sanctorum, Septembris, VIII, Antverpiae, 1762, p. 320—402): *Ագաթանգեղոսի հայերեն բնագրի առաջին խնամքով կատարված հրատարակությունը Վենետիկում (1835), ինչպես նաև հայագիտության զարգացումը խթան հանդիսացան այս երկի մասին բազում ուսումնասիրությունների ի հայտ գալուն (Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, Ա, Երևան, 1959, էջ 151—213)։ Ագաթանգեղոսը ֆրանսերեն թարգմանող հայագետ Վ. Լանգլուան* (V. **Langlois**, „Collection des historiens anciens et modernes de l'Arménie„, I, Paris) *այն կարծիքը հայտնեց, որ հեղինակը չէր կարող Դ դարում ապրած լինել ոչ էլ աշխարհիկ էր, այլ՝ Ե դարի եկեղեցական։ Լուրջ քայլ էր Ա. ֆոն Գուտշմիդի «Ագաթանգեղոս» աշխատության լույս ընծայումը* ( **A. V. Gutschmid**, Agathangelos, Zeit. d. Deutsch. Morg. Ges., BD XXXI, 1877, S. 1—60): *Նա հայերեն Ագաթանգեղոսը համարում է բնագիր, իսկ հունարենը՝ թարգմանություն։ Նրա համար պարզ է, որ հեղինակը Ե դարի եկեղեցական է։ Հունարեն Ագաթանգեղոսի, ինչպես նաև Ժ դարում կատարված մետափրաստյան խմբագրության հրատարակությունը Պ. դը Լագարդի ձեռքով կարևոր քայլ էր այս հարցի ուսումնասիրման համար*

(Agathangelus und die Akten Gregors von Armenien, neu herausgegeben von **Paul de Lagarde,** Göttingen, 1887): Ագաթանգեղագիտության անցած ուղին ամփոփեց Բ. Սարգսյանը իր ծավալուն մենագրությամբ (Ագաթանգեղոս և իւր բազմադարեան գաղտնիքն, Վենետիկ, 1890):

Հ. Տաշյանը գտնում է, որ Ը դարում գրված Գեորգ Ասորու թղթի և Ագաթանգեղոսի միջև բնագրային տարբերություններ կան։ Նա համոզված է, որ Ագաթանգեղոսի խմբագիրն է, որ Կորյունից քաղել է և ոչ ընդհակառակը։ Այս խմբագիրը բանաքաղություններ է կատարել նաև այլ աղբյուրներից (Հ. Տաշեան, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին, Վիեննա, 1891, էջ 86)։ Գ. Տեր-Մկրտչյանը գտնում է, որ Կորյունն է Ագաթանգեղոսի պատմության խմբագրողը (Գ. Տեր-Մկրտչյան, Ագաթանգեղոսի աղբյուրներից, Վաղարշապատ, 1896), իսկ ըստ Ն. Բյուզանդացու, Դ դարում հունարեն գրված Ագաթանգեղոսի մատյանը Ե դարում Կորյունը հայերենի է թարգմանել (Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք, Տփղիս, 1900, էջ 14)։

Այսպիսով, հինգերորդ դարի կեսերին չորրորդ դարից գոյություն ունեցող պատմական, վիպական ու վկայաբանական աղբյուրներից հայ եկեղեցականի ձեռքով խմբագրվել է «Գրիգորիսի Գիրքը» (Ագաթանգեղոսի պատմությունը), որը տեսել ու նկարագրել են Ղազար Փարպեցին և ուրիշներ։ Հեղինակը (խմբագրողը) պատկանել է Մեսրոպ Մաշտոցի աշակերտների շրջանակին։

Ագաթանգեղոսի պատմության տարածման հարցում վճռական նշանակություն է ունեցել նրա հունարենի թարգմանվելը, քանի որ հանրահայտ է, թե հունարենից են առաջացել այլալեզու գրեթե բոլոր խմբագրությունները։ Վերջերս Գ. Լաֆոնտենը բազում ձեռագրերի համեմատությամբ հրատարակեց հունարեն Ագաթանգեղոսի քննական բնագիրը (La version grecque ancienne du livre arménien d'Agathange, edition critique par **G. Lafontaine**, Louvain—la neuve, 1973)։

Տասներորդ դարում, երբ հունարեն Ագաթանգեղոսի հայտնի Առաջաբանը՝ Արտաշիրի ապստամբության հատվածը, արդեն կցված էր նրա սկզբին, Սիմեոն Մետափրաստեսը ամփոփեց այս բոլորը և մտցրեց իր կազմած հունարեն «Վարք սրբոցի» մեջ։ Հունարեն Ագաթանգեղոսը և նրա Մետափրաստյան համառոտ խմբագրությունը տարածվել են միջնադարյան քրիստոնյա աշխարհում։ Հունարեն Ագաթանգեղոսից է թարգմանված լատիներեն համառոտ խմբագրությունը։ Հունարենից է նաև վերջերս հայտնաբերված հունարեն համառոտ վարքը (**G. Lafontaine,** Une Vie grecque abrégée de St. Grégoire l'Illuminateur, Muséon, LXXXVI, 1—2, 1973): Մետափրաստյան խմբագրությունն ունեցել է վրացերեն, իտալերեն (ժէ դ) և սլավոնական թարգմանություններ։ Կա նաև մի վրացական պատառիկ, որն ուղղակի հայերեն Ագաթանգեղոսից է թարգմանված։ Ժ. Գարիտը հայտնաբերեց, որ պահպանվել է նաև Ագաթանգեղոսի կազմում գտնվող Վարդապետության համառոտ վրացերեն թարգմանությունը, որը հայտնի է եղել «Վասն հավատո» անվամբ և մինչև այժմ վերագրվել է Հիպոլիտեսին (**G. Garitte,** Le traité géorgien „Sur la foi" attribué à Hippolyte, Le Muséon, t. 78, 1—2 (1965), p. 119—172):

Սակայն հունարեն Ագաթանգեղոսը ամենից ավելի արաբերեն թարգմանություններ է ունեցել, որոնցից է նրա ամբողջական թարգմանությունը (**Ա. Տեր-Ղևոնդյան,** Ագաթանգեղոսի արաբական նոր խմբագրությունը, Երևան, 1968)։ Ըստ



Ժ. Գարիտի, ղպտերեն միջանկյալ օրինակից է թարգմանված Գրիգոր Լուսավորչի արաբերեն համառոտ վարքը (**G. Garitte**, Une Vie arabe de St. Grégoire d'Arménie, Le Muséon, LXV, 1—2, 1952):

Մեր դարի սկզբին Հ. է. Պերեյրան Լիսաբոնում լույս ընծայեց Գրիգոր Լուսավորչի եթովպերեն համառոտ պատմությունը (Vida de S. Gregorio, patriarca da Armenia. publ. por F. M. E. **Pareira,** Lisboa, 1903):

Վերոհիշյալ բոլոր խմբագրությունները, որոնք անմիջականորեն վերաբերում են Ագաթանգեղոսի պատմության մեզ հասած հայերեն բնագրին, խմբագրությունների մի խումբ են կազմում։

Սակայն կա խմբագրությունների մի այլ խումբ, որի հայերեն բնագիրը դեռ չի հայտնաբերված, բայց ձեռքի տակ ունենք ասորերեն, հունարեն և արաբերեն հինգ թարգմանություններ (խմբագրություններ)։ Բանասիրության մեջ սրանք ընդհանուր անվամբ, պայմանականորեն Վարք են կոչվում։

Ագաթանգեղագիտության մեջ արմատական հեղաշրջում էր 1902 թվականին Ն. Մառի ձեռքով արաբերեն խմբագրության պակասավոր գրչագրի հայտնաբերումը Սինայի Ս. Կատարինե վանքում։ Այս խմբագրության ամբողջական ձեռագիրը շատ ուշ գտնվեց ու հրատարակվեց պակասող բաժինը (**Ա. Տեր-Ղևոնդյան,** Ագաթանգեղոսի արաբական խմբագրության նորահայտ ամբողջական ձեռագիրը, Պատմաբանասիրական Հանդես, 1, 1973)։ Մառի հայտնաբերած ձեռագրի ուսումնասիրությունը պարզեց, որ մեզ հասած հայերեն Ագաթանգեղոսը միակ հայալեզու բնագիրը չէ, որ գոյություն է ունեցել վաղ միջնադարում Հայոց դարձի շուրջը։ Ն. Մառը իրավացիորեն ենթադրեց, որ իր հայտնաբերած արաբերեն խմբագրությունը պետք է թարգմանված լիներ հունարենից, որն իր հերթին պիտի ունենար հայերեն բնագիր մայր օրինակ (Марр, стр. 162—163):

Ն. Մառի ենթադրությունը հաստատվեց, երբ Ժ. Գարիտը հրատարակեց Էսքուրիալում (Իսպանիա) հայտնաբերած հունարեն նոր խմբագրությունը։ Արաբերենը, իր որոշ մասերում այս հունարենի թարգմանությունն էր։ Ըստ Ժ. Գարիտի, հունարենը հայերեն բնագրից պետք է թարգմանված լինի (**G. Garitte**, Documents pour l'étude du livre d'Agathange, Vatican, 1946):

1961-ին Օքրիդայում (Մակեդոնիա, Հարավսլավիա) հայտնաբերվեց Ագաթանգեղոսի մի նոր հունարեն խմբագրություն, որն իր շարադրանքով հարում է Ագաթանգեղոսի Վարք կոչված խմբագրությունների դասին։ (La Vie grecque inédite de St. Grégoire d'Arménie, Anal. Boll. 83, f. 3—4, 1965):

Մի նոր հայտնագործություն է վերջերս լույս տեսած ասորատառ արաբերեն (քարշունի) Վարքը, որը հրատարակել է Մ. Վան Էսբրուքը (**M. van Esbroeck,** Un nouveau témoin du livre d'Agathange, REA, VIII, Paris, 1971 p. 13—167)։ Ուսումնասիրելով այս բնագիրը, նա եզրակացնում է, որ նրա ասորերեն նախատիպը (ձեռագրում նշված է, որ թարգմանված է 1178 թվակիր ասորերեն գրչագրից) պետք է հայերենից թարգմանված լիներ։ Ասորերեն նախատիպն իրոք հայտնաբերվեց ու հրատարակվեց (**M. van Esbroeck,** Le resumé syriaque de l'Agathange, Analecta Bollandiana, 95, f. 3—4, 1977):

Նկատի ունենալով Ագաթանգեղոսի նորահայտ բազմալեզու խմբագրություն-

*ների տվյալները, այժմ կարելի է հետևյալ եզրակացության հանգել։ Հինգերորդ դարի առաջին կեսում կազմվել է մի խմբագրություն, որի հայերենը դեռ հայտնի չէ, բայց կան նրանից ծագող ասորերեն, հունարեն և արաբերեն խմբագրություններ, որոնք Վարք են կոչվում։ Այս հայերեն բնագիրը, ըստ երևույթին, դարերի ընթացքում մոռացության է տրվել։ Հինգերորդ դարի կեսերին կազմավորվել է մեզ հայտնի խմբագրությունը, որը կանոնական է համարվել հայ եկեղեցու կողմից և ամբողջ միջնադարում օգտագործվել որպես նվիրական, սրբազան մատյան։*

*Ագաթանգեղոսի առաջին հրատարակությունը լույս է տեսել Կոստանդնուպոլսում 1709-ին։ Վենետիկի 1835-ի հրատարակությունը կատարվել է մի քանի ձեռագրերի համեմատությամբ։ Քննական համարված բնագիրը լույս տեսավ 1909-ին, պատրաստված Գ. Տեր-Մկրտչյանի և Ս. Կանայանցի կողմից։*

*Անցյալ դարում Ագաթանգեղոսը թարգմանվել է իտալերեն* (Storia di Agatangelo. Versione italiana. Venezia, S. Lazzaro, 1843) ***ֆրանսերեն, շվեդերեն և անգլերեն*** (**S. C. Malan,** The Life and Times of S. Gregory the Illuminator, London, 1868)։ *Վերջերս անգլերեն է թարգմանվել Վարդապետությունը* (The Teaching of Saint Gregory. An Early Armenian Cathechism, tr. by **R. Thomson,** Cambridge, Massachusetts, 1970) *և Պատմությունը* (Agathangelos, History of the Armenians, trans. and comment. by R. W. **Thomson,** Albany (New York), 1976) *Ռ. Թոմսոնի ձեռքով։*

*Ներկա աշխարհաբար թարգմանությունն առաջին անգամ լույս է տեսել 1977 թվականին («Սովետական գրող» հրատարակչություն, խմբագիրներ Ա. Աբրահամյան, Վ. Առաքելյան), ընդգրկելով միայն բուն պատմությունը, իսկ Վարդապետության թարգմանությունը լույս է տեսել «Էջմիածին» ամսագրում (1978 Գ, Զ, Է, 1979 Բ, Ե, Զ)*

*էջ 7.* Առաջաբան— *Ագաթանգեղոսի առաջաբանը առեղծվածային է, դեռ լրիվ պարզ չէ նրա էությունը։ Ուսումնասիրողները այստեղ նկատել են հակասություններ. խոսվում է հեղինակի մասին որպես հռոմայեցու, հռոմեական ու հունական դպրությանը ծանոթի, որը եկել է Տրդատ թագավորի արքունիք և դարձել քարտուղար, սակայն մի քիչ ներքև նա իբրև հայ է ներկայանում։ Կամ ականատես վկա է համարվում, երբ ասվում է, թե կարդացել է Թորգոմյան ազգի և Հայաստան աշխարհի մեջ քրիստոնեությունը տարածելու գրվածքը։*

*Բանն այն է, որ առաջաբանը միատարր չէ և, հավանաբար, այնտեղ կան որոշ շերտեր, գուցե նաև աղավաղումներ։ Համենայն դեպս, չի ժխտվում, որ առաջաբանը Ե դարում Ագաթանգեղոսի գրքի մեջ է եղել, մանավանդ որ իր լեզվական հատկանիշներով բնագրից չի հեռանում։ Դասական գրաբարի և մատենագրության ուսումնասիրողները (Նորայր Բյուզանդացի, Ն. Ակինյան) Ագաթանգեղոսի ամբողջ բնագրի հետ առաջաբանը ևս համարում են դասական գրաբարով հորինված։*

Նավարկողների— *Ագաթանգեղոսի հունարեն թարգմանությունը ունի մի ուրիշ առաջաբան, նույնպես առեղծվածային։ Այստեղ որոշ մանրամասնությամբ պատմվում է, թե ինչպես Արտաշիր Պապականը Իրանում իշխանությունը խլեց Արտավան Արշակունուց։ Այս հատվածի թարգմանությունը հունարենից գրաբար տե՛ս*



*Գ. Զարպհանալեան, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ, 1886, էջ 184—191։*

*Այս հունարեն առաջաբանի սկզբնական փոքր հատվածը, ուր խոսվում է նավարկության մասին, հայկական առաջաբանի առաջին մասի ամփոփումն է, սակայն մնացյալը բոլորովին նոր նյութ է։ Հայկական ոչ մի ձեռագիր նման նյութ չունի, իսկ Ագաթանգեղոսի երկի հունարեն այն գրչագրերից, որոնք բնագրի սկիզբը պահպանել են, միայն մեկը՝ Ֆլորենտիայի Լավրենտյան մատենադարանի ձեռագիրը, ունի այս առաջաբանը։ Մնացած բոլոր գրչագրերը սկսվում են այնտեղից, ուր հայերեն Ագաթանգեղոսի բուն սկիզբն է՝ առաջաբանից հետո։ Հունարեն առաջաբանի նյութերն անցել են նաև հունարեն մետափրաստյան խմբագրության մեջ։*

*Ղազար Փարպեցու և Մովսես Խորենացու վկայություններից չի երևում, որ այսպիսի առաջաբան տեսած լինեն։ Ղազար Փարպեցին Ագաթանգեղոսի բնագրի բովանդակությունը տալիս՝ սկսում է. «Սա ընուազումն թագաւորութեան Արշակունւոյն Արտաւանայ...» խոսքերով, որոնք գրեթե նույնությամբ Ագաթանգեղոսի սկզբնամասի կրկնությունն են. «Ընդ նուազել ժամանակաց թագաւորութեանն Պարթևաց...»։*

*Ա. Ֆ. Գուտշմիդը, իր ժամանակին ձեռքի տակ ունենալով միայն վերոհիշյալ Ֆլորենտյան օրինակը, ենթադրել էր, որ այս առաջաբանը թարգմանչի կողմից է ավելացված։ Սակայն, ինչպես նշվեց, հունարեն ոչ մի այլ ձեռագիր այն չունի, ուստի չէր կարող թարգմանչի ավելացրածը լինել։ Այժմ պարզ է, որ այս հատվածը ավելացրած է հունարենի թարգմանվելուց հետո և Սիմեոն Մետափրաստեսի ամփոփումից առաջ։*

*Հունարեն առաջաբանի հեղինակի համակրանքը Արտաշիր Սասանյանի կողմն է՝ ընդդեմ Արշակունյաց, իսկ Ագաթանգեղոսի պատմության մեջ՝ ընդհակառակը։*

*Թ. Նյոլդեքեն գտնում է, որ հունարեն առաջաբանի համար Արտաշիրի ապրստամբությանը վերաբերող նյութերը քաղված են «Արտաշիր Բաբական Կարնամակ» գրքից։ Հունարեն առաջաբանում եղած հայկաբանությունները նկատի ունենալով՝ բանասերները եզրակացրել են, որ Կարնամակի ու հունարեն առաջաբանի միջև եղել է մի հայկական միջանկյալ օրինակ (տե՛ս* Կ. Մելիք-Օհանջանյան, *Ֆիրդուսին և Իրանի վիպական մոտիվները «Շահնամեում» ու հայ մատենագրության մեջ», «Ֆիրդուսի», Երևան, 1934, էջ 25—29։ Արտաշիր Բաբական Կարնամակ, Պահլաւ բնագրէն թարգմանեց հանդերձ ծանօթութեամբք Յ. Թիրեաքեան, Փարիզ, 1907, էջ 8—14)։*

*Ագաթանգեղոսի Վարք կոչված խմբագրությունների խմբի հունարեն բնագրի հրատարակության առթիվ Ժ. Գարիտը, մանրամասն համեմատելով նրա և հունարեն վերոհիշյալ առաջաբանի լեզվական հատկանիշները, ակնբախ նմանություն է գտնում, սակայն զգուշանում է եզրակացություններ անել։ Այս հարցի շուրջը Ն. Ակինյանը որոշ ենթադրություններ է անում և նկատի ունենալով, որ Ագաթանգեղոսի այս խմբագրության (Վարք) հունարեն թարգմանությունը սկիզբ չունի, այն տեսակետն է հայտնում, թե հունարեն Ագաթանգեղոսի Լավրենտյան գրչագրում եղած վերոհիշյալ առաջաբանը՝ Արտաշիրի ապստամբության մասին, այստեղից է հանված (Արտաշիր Բաբականի վէպը յունարէն Ագաթանգեղոսի մէջ եւ Ս. Գրիգորի նորագիւտ յունարէն վարքը. «Հանդէս Ամսօրեայ» 1947, էջ 567—*

581)։ Այս տեսակետը ուժեղ կռվանների կարիք է զգում, և ընդհանրապես հունարեն առաջաբանի ծագման հարցը դեռ ուսումնասիրության կարոտ է։

էջ 11. **բամու (վարգիչ օդի)**— Վիեննայի կրկնագիր օրինակը որոշ տարբերություն ունի այս տեղում.

«... վասն այսորիկ իսկ ընդ ծաղկաձեւ այլոց բազմութիւն համատարած ծովուն ընդխառնեալք շահատակիցեն ոչ ըստ անձանցն կամի այլ վարգիչ աւդոյն վարելոյ բռնավարեալք ի վերայ յորձանացն յաճախատարած լայնացելոցն դանդալիցեն վասն աւգուտն գտանելոյ...» (Ծուցարձան, էջ 72—73)։

Թարգմանության մեջ մտցրել ենք «վարգիչ օդոյն» արտահայտությունը, որն ավելի տրամաբանական է, քան «վարիչ օդոյն»։

էջ 13. **խոսքի վաճառականությունն**— Չպետք է բառացի հասկանալ. սա կապվում է հեղինակի ընտրած համեմատության հետ և նշանակում է խոսքի շարադրանքը (ծանոթ.—1977 թ. հրատ. խմբագիրների)։

էջ 19. **վերակացու**— եպիսկոպոս կամ եպիսկոպոսապետ։

էջ 21. ... **բառզելու [գրվածքը]**— Այս պարբերության մեջ ակնարկվում են Ագաթանգեղոսի աղբյուրները (Մ. Աբեղյան, Երկեր, Գ, էջ 182, Երևան, 1968)։ Ե դարի կեսերի մատենագիրը, որ խմբագրել է Ագաթանգեղոսի Պատմությունը, ձեռքի տակ է ունեցել Հայոց դարձի պատմության Դ դարի նախնական խմբագրությունը կամ խմբագրությունները և Ե դարի սկզբի խմբագրությունը (որից ծագել են հավանաբար Վարք կոչված խմբագրությունները)։

Ագաթանգեղոսի պատմության համար բազում աղբյուրներ են նշվում հայագիտության մեջ։ Գ. Տեր-Մկրտչյանը հիշում է Գորիայի ու Շամոնայի ասորերեն վըկայաբանությունը և Աբրահամ Խոստովանողի Վկայք Արևելիցը (Ագաթանգեղոսի աղբիւրներից, Վաղարշապատ, 1896, էջ 3—62), Ն. Ակինյանը գտնում է, որ Ագաթանգեղոսի պատմության մեջ Լուսավորչի վարքը ձևված է Ս. Աբերկիոսի վարքի հետևողությամբ (Քննութիւն վարուց Ս. Աբերկիոսի Յերապոլսոյ եպիսկոպոսի «Հանդէս Ամսօրեայ» 1913, էջ 513—526), սակայն այս տեսակետը չի ընդունում Պ. Պեետերսը (Revue des Etudes Arméniennes", t. 1. 1920/1921, p. 385—387)։ Ն. Ակինյանը ենթադրում է նաև, որ Ագաթանգեղոսը քաղվածքներ ունի Կյուրեղ Երուսաղեմացու վկայաբանությունից (Վկայաբանութիւն սրբոյն Կիւրղի (Կիրակոսի) և մօր նորա Աննայի, Ագաթանգեղոսի աղբիւրներէն, «Հանդէս Ամսօրեայ», 1948, էջ 129—135)։

Ագաթանգեղոսի պատմության մեջ առատորեն օգտագործված է Աստվածաշունչը, որից շատ վկայություններ կան։ Հ. Գաթրճյանը մատնացույց է անում, որ Ագաթանգեղոսի մոտ կան Բարսեղ Կեսարացու պատարագից հատվածներ, թեև այլ պատարագներ ևս ծանոթ են եղել նրա խմբագրող-հեղինակին (Սրբազան պատարագամատոյց Հայոց, Վիեննա, 1897, էջ 90—91)։

Ագաթանգեղոսը սերտ աղերս ունի Կորյունի հետ, ընդ որում բանասերների մեծ մասը համոզված է, որ Ագաթանգեղոսի խմբագրողն է քաղել Կորյունից։

... **չկապվեն մեղքերի զարշապարին**— այսինքն՝ չկանգնեն մեղքերի շավղի վրա (ծանոթ.— 1977 թ. հրատ. խմբագիրների)։

էջ 25. ... **վախճանին հասավ**— Պարթևների թագավորության վերանալու թվականն է 226, և բնականաբար չէր կարող տեղի ունեցած լինել Տրդատ Գ-ի հոր



Խոսրով Բ-ի օրոք։ Ագաթանգեղոսի սույն հատվածում վիպական տարրի ներթափանցման պատճառով որոշ շփոթություններ կան։

Բ դարի վերջում և Գ դարի սկզբին Արշակունյաց թագավորությունը Հայաստանում դարձել էր ժառանգական, և Վաղարշ Բ-ին հաջորդել էր նրա որդին՝ Խոսրով Ա (մեռ. 216)։ Սրա օրոք սկիզբ առավ Սասանի թոռ Արտաշիր Պապականի պայքարը Արտավան Արշակունու դեմ, որ Խոսրովի որդու Տրդատ Բ-ի (216—252) օրոք վերջացավ Պարսկաստանի Արշակունիների պարտությամբ։

Տրդատ Բ ետ մղեց Արտաշիրի հարձակումները Հայաստանի վրա։ Պատերազմը շարունակվեց նաև Արտաշիրի հաջորդ Շապուհ Ա-ի օրոք, որը երկար պայքարից հետո կարողացավ ռազմակալել Հայաստանը։ Տրդատ Բ-ի պարտությունից հետո Հայաստանի գահին նստեց Արտավազդը (252—272)։ Վերջերս գոյություն ունի այն վարկածը, թե Հայաստանը որոշ ժամանակ երկու մասի բաժանվեց Իրանի ու Հռոմի միջև։ Խոսրով Բ (279—287) արշավեց Պարսկաստանի խորքերը, ինչպես վկայում է Ագաթանգեղոսը։ Վերջապես 298 թվականին հաղթական հռոմայեցիք հաշտություն կնքեցին Սասանյան արքայի հետ, և Մեծ Հայքի գահին նըստեց Տրդատ Գ (ըստ ոմանց՝ Տրդատ Դ), որի օրոք Հայաստանում ընդունվեց քրիստոնեությունը։

Ինչպես տեսնում ենք Ագաթանգեղոսի տեղեկությունները թեև խառն են վիպական տարրով, այնուամենայնիվ զուրկ չեն պատմական արժեքից։ Ագաթանգեղոսի մոտ Գ դարի սկզբին ապրած Խոսրով Ա և որդին Տրդատ Բ մասամբ միաձուլված են դարի վերջում ապրած Խոսրով Բ-ի և որդի Տրդատ Գ-ի հետ։ (C. Toumanoff, „The Third-century Armenian Arsacids, Revue des Etudes Arméniennes", t. VI, 1969, p. 233—281).

**Ստախր**— արաբ. Իսթախր։ Պարսից Աքեմենյան ժամանակաշրջանի մայրաքաղաք Պերսեպոլիսի կողքին էր։

**Ալանաց դռներ**— Միջնադարում այսպես էր կոչվում այժմյան Դարիալի կիրճը Կովկասյան լեռներում։

... **Ճորա պահակի դռներ**— Ինչպես այժմ պարզված է, Ագաթանգեղոսի երկի նախնական բնագրում պետք է եղած լիներ «զՃորայ պահակին» սակայն գրչի սխալով դեռ շատ վաղուց դարձել է «զիւրոյ պահակին»։ Այսպես է եղել հենց Զ դարի վերջին, երբ թարգմանվել է հունարենի։

Նորահայտ արաբերեն թարգմանությունը նույնպես ունի «Ջուարոս» ձևը (արաբ. Ագաթ. 2), որը «զիւրոյ» ձևի աղավաղումն է։

Ագաթանգեղոսի գրեթե բոլոր ձեռագրերում այս վերջին ձևը կա։

**Հոներ**— Այս ցեղախումբը հանդես եկավ Բ—Դ դարերում, և կարծվում է, որ խառնուրդ է ուգրական և ասիական (ալթայական) ցեղերի։ Դ դարում հոները բախվելով գոթերի հետ շարժվել են դեպի արևմուտք։ Ե դարում նշանավոր էր նրանց պետը՝ Աթիլլան, որը մեծ տագնապ պատճառեց Արևմտյան Հռոմեական կայսրությանը և Բյուզանդիային։ Հոների մի ճյուղը հաստատված էր Հյուսիսային Կովկասում և պայքարի մեջ էր Սասանյան Պարսկաստանի դեմ։

էջ 27. **Լփիններ** (Լփինք. ճիշտ ձևն է Լփնիք)— Ցեղ, որն ապրում էր Կովկասի Լփնիք ազգագավառում։ Հայտնի էր Լփնաց քաղաքը (Ս. Երեմյան, Հայաստանն ըստ «Աշխարհացույցի», Երևան, 1963, էջ 54—55)։

**Ճիղբեր**— Ցեղ, որն ապրում էր Կովկասյան լեռների Ճիղբք գավառում։

**Կասպեր**— Կովկասյան ցեղ, որն ապրում էր Աղվանքի արևելյան տափաստաններում, ծովի ափին, որը նույնպես կոչվում էր Կասպից ծով։

**Քուշաններ**— Քուշանաց թագավորություն։ Տարածված էր Միջին Ասիայում, այժմյան Աֆղանստանում և Հյուսիսային Հնդկաստանում. իր ծաղկման շրջանն ապրեց Ա—Գ դարերում։ Վաչկատուն ցեղերի մի խումբ էր, որի գլխավոր ցեղը կոչվում էր քուշան և հույն-բակտրիական թագավորության անկումից մեկ դար հետո կազմեց թագավորություն, ուր իշխում էր Արշակունիների մի ճյուղը, և հայ Արշակունիները կամենում էին միացյալ ճակատ կազմել Սասանյանների դեմ։ Քայքայվեց Դ դարում և վերածվեց մանր թագավորությունների։ Քուշանների օրոք բուդդայականությունն սկսեց Հնդկաստանից ներթափանցել Միջին Ասիա։

**էջ 33. Փոսից դրունք (Փոսադուռ)**— Լեռնանցքը գտնվում է Կարինից դեպի Կողոնիա տանող ճանապարհի վրա, Գայլ գետի ակունքների մոտ։ Սույն բառը հավանաբար ունի փոսի իմաստը (**Հր. Աճառյան**, Արմատական բառարան, Դ հտ. էջ 241)։

**էջ 35. Հունաց իշխան (թագավոր)**— Դիոկղետիանոս կայսրն է (284—305). իրեն գահակից էր ընտրել Մաքսիմիանոսին, և երկուսն էլ օգոստոս տիտղոսն էին առել։ Նրանք մեկական տեղապահ՝ կեսար ընտրեցին Քլորոսին ու Գալերիոսին, և այսպիսով ստեղծվեց քառապետությունը։ 305 թվականին Դիոկղետիանոսը իշխանությունից քաշվեց, և սկսվեց կատաղի պայքար իշխանության համար։ Կեսար Գալերիոսի մահվանից հետո պայքարում էին չորս օգոստոսներ՝ Լիկինիոսը, Մաքսենտիոսը, Մաքսիմիանոսը և Կոստանդիանոսը (Կոստանդին)։

**Գոթեր**— Գերմանական ցեղերի մի խումբ է, որը Բ դարի վերջում շարժվեց դեպի հարավ-արևելք։ Գոթերը պայքարել են Հռոմեական կայսրության դեմ։ Կային արևելյան գոթեր (օստգոթ) և արևմտյան գոթեր (վեստգոթ)։

**Լիկիանես (Լիկինիոս)** (308—324)— Հայտնի էր որպես զորավար և կայսերակից էր ընտրվել Գալերիոսի կողմից, որի մահվանից հետո դաշնակցեց Կոստանդիանոսի հետ. սրանք հաղթեցին բոլոր հակառակորդներին և 313 թվականին երկու կայսրերը իշխեցին ամբողջ կայսրության մեջ։ Սակայն 324-ին Կոստանդիանոսը հաղթեց Լիկինիոսին և սպանել տվեց նրան։

Կոստանդիանոսը (306—337) դարձավ միահեծան կայսր և ամրապնդեց Հռոմեական կայսրությունը՝ նոր մայրաքաղաք ընտրելով Բյուզանդիոնը (Կոստանդնուպոլիս)։ Միլանի հրովարտակով (313 թ.) քրիստոնեությունը ազատ կրոն հռչակվեց։

**էջ 39. Տրդատ Գ Արշակունի**— Հայոց պատմության մեծ դեմքերից է և ըստ արժանվույն գնահատվել է թե՛ միջնադարյան պատմիչների, թե՛ նոր ուսումնասիրողների կողմից։

Խոսրով Բ-ի սպանությունից հետո նա տարվել է արևմուտք և հռոմեա-հայկական զորքերի հաղթանակից հետո հաստատվել Հայոց թագավորության մեջ։

Տրդատ Գ-ի (298—330) ժամանակաշրջանին վերաբերող մի շարք հունարեն արձանագրություններ են գտնվել Հայաստանում։ Դրանցից է Տիգրանակերտի պարիսպների վրա գտնված արձանագրությունը, որը Յ. Մարկվարտը, Հ. Մանանդյանը, Գ. Սարգսյանը (Г. Саркисян, Тигранакерт, М., 1960, стр. 85) գտնում են, թե Տրդատ Գ-ին է վերաբերում։ Դա մի հրաման է՝ ուղղված քաղաքի բնակիչներին, որոնք, ինչպես երևում է, ապստամբել էին։

Դեռևս նախորդ դարերում Հայաստանում համայնքների ձևով տարածված



քրիստոնեությունը Տրդատ Գ-ի օրոք պետական կրոն դարձավ։ Փոքր Հայքի ու Կապադովկիայի կողմերից եկած Գրիգորը և նրա հետևորդները սկզբում հալածվեցին, սակայն քրիստոնեության պետականացումից հետո Գրիգոր Լուսավորիչը դարձավ Հայոց կաթողիկոս։ Պատմաբանների մեծ մասի կողմից քրիստոնեության ընդունումը դրվում է Դ դարի հենց սկզբին (301)։ Ե դարի եկեղեցական պատմիչ Սոզոմենոսը հետևյալ վկայությունն է տալիս Հայաստանում քրիստոնեության հաստատման մասին. «Ես տեղեկացա, որ հայերն ընդունել են քրիստոնեությունն ավելի վաղ [քան վրացիներն ու ուրիշները]։ Ասում են, որ Տրդատը, որն այդ ժողովրդի առաջնորդն էր, մի ինչ-որ աստվածանշան հրաշքի պատճառով, որ նրա տան մեջ էր պատահել, հանկարծ դարձել էր քրիստոնյա ու նաև հրամայել էր, որ քարոզության միջոցով այդ կրոնն ընդունեն բոլոր իր հպատակները» (**Հ. Մանանդյան**. Հտ. Բ, մ. Ա, էջ 130)։

Տրդատ Գ-ն կարևոր դեր խաղաց Հայաստանում քրիստոնեությունը պետական կրոն դարձնելու գործում, քանզի նոր կրոնի միջոցով կամենում էր դիմագրավել Սասանյան Իրանի գրոհը և ամրապնդել Մեծ Հայքի թագավորության դիրքերը ոչ միայն քաղաքական ու ռազմական, այլև գաղափարական զենքի՝ քրիստոնեության միջոցով։

Ինչպես ընդունված է պատմագիտության մեջ, Հայաստանը առաջին երկիրն էր աշխարհում, որ ոչ միայն ազատ դարձրեց քրիստոնեությունը, այլև պետական կրոն հռչակեց այն։ Հռոմեական կայսրությունը 313 թվականի Միլանի հրովարտակով քրիստոնեությունն ընդունեց որպես հանդուրժելի կրոն, իսկ պետական կրոն դարձավ սույն դարի վերջում։

Տրդատ Գ-ն զորավար էր և քաղաքագետ։ Նա կայունություն մտցրեց Մեծ Հայքի թագավորության մեջ և վերահաստատեց նախարարական տիրույթների սահմանները։ Սկիզբ առավ Հայոց պատմության մեջ մի դարաշրջան, որը պարարտ հող նախապատրաստեց գրերի գյուտի և հայ մատենագրության ստեղծման համար։

**Երեզ (Երիզա)**— Ավան Բարձր Հայքի Եկեղյաց գավառում (այժմյան Երզնկաքաղաքը)։ Հեթանոսության շրջանում այստեղ է գտնվել Անահիտ դիցուհու հռչակավոր մեհյանը։

**Գայլ գետ**— Վտակ, որը թափվում է Եփրատ գետի մեջ Երզնկա քաղաքի մոտ։

**... անծանոթ մարդ էիր**— Գրիգոր Լուսավորչի ծագման մասին Ագաթանգեղոսի տարբեր խմբագրությունները և նրանից քաղած կամ նրա հետ աղերս ունեցող մյուս պատմիչները տարբեր վկայություններ են տալիս։ Ըստ Ագաթանգեղոսի պատմության, Գրիգորի հայրն էր Անակ Պարթևը՝ պարթև արշակունիների հզոր տոհմից, այսինքն՝ ցեղակից Տրդատ թագավորին։ Անակի տոհմի կոտորվելուց հետո դայակները Գրիգորին տարան Կեսարիա, որտեղ քրիստոնեական ոգով դաստիարակվելուց հետո վերադարձավ Հայաստան։

«Տարոնի պատմության» մեջ, ինչպես նաև Մովսես Խորենացու մատյանում մի այլ տարբերակ կա։ Բուրդար կոչված պարսիկ ազնվականը փախչելով Գամիրք (Կապադովկիա) Կեսարիայում ամուսնացել էր Սոփիի հետ, որը մեծատուն Եվթաղի քույրն էր։ Վերցնելով իր կնոջը՝ Բուրդարը կամենում էր գնալ Պարսկաստան, բայց ճանապարհին կանգ է առնում Վաղարշապատում, և Սոփին դառնում է Գրիգորի ստնտուն։ Անակի տոհմի կոտորվելուց հետո Բուրդարը վերցնում է մանուկ Գրիգորին նրա մոր՝ Ոգուհու մոտից և փախցնում Կապադովկիա։ Գրիգորին ու-

տուցանում են հունական դպրությունը (Յովհան Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ, Երևան, 1941, էջ 69—72)։

Եթե առաջին տարբերակի մեջ Գրիգորը Կապադովկիայում միայն դաստիարակվել էր, ապա ըստ երկրորդ տարբերակի՝ նա դեռ Հայաստանում ունեցել է կապադովկացի սնոտու, և նրա կապը Կապադովկիայի հետ առավել շեշտված է։ Նկատի ունենալով այս փաստը, ինչպես նաև Գեորգ Ասորու այն վկայությունը, թե Գրիգորը հռոմայեցի էր, Ն. Ադոնցը եզրակացրեց, որ Գրիգոր Լուսավորչի ծագումը պետք է փնտրել Փոքր Հայքի կողմերում (Grègoire l'Illuminateur et Anak le Parthe, Revue des Etudes Arméniennes, t. VIII, 1928, p. 233—245), որի դրացի Կապադովկիայում նույն անվամբ և նույն ժամանակ ապրել են եկեղեցու երևելի հայրեր ու մատենագիրներ (Գրիգոր Նյուսացի, Գրիգոր Նազիանզացի)։ Ահա Գեորգ Ասորու խոսքերը.

«Գրիգորիսն այն, որ աշակերտեց զՀայս, ով ուսումնասէր, հռոմայեցի էր ազգաւ, ինչպէս որ յայտնի է իւր կենսագրութեան խօսքերէն, բայց տղայութեան ժամանակ Հայոց աշխարհն եկաւ կամ Դիոկղետիանոսի քրիստոնէից դէմ յարուցած հալածանաց կամ ուրիշ մեզ անծանօթ պատճառաւ» (Տաշյան, էջ 4)։

Ըստ Ադոնցի, Գրիգոր Լուսավորիչի ծագումը պարթևների հետ կապելու ձրգտման նպատակն էր նրան ազգակից դարձնել արևելքում այնքան հռչակված և Հայոց գահին էլ տիրացած Արշակունիներին։ Այս հարցում նկատվում է պարսկական վիպական զրույցների ազդեցությունը, և Ն. Ադոնցի կարծիքով Ագաթանգեղոսի պատմական մասը ենթակա է եղել վիպասանական գրականության ազդեցությանը։

Ինչ վերաբերում է Պարթևի ձեռքով Խոսրովի սպանության փաստին, ապա դա պատմական հիմքեր ունի։ Եղիշեն հիշում է, որ երբ Հայոց նախարարական-եկեղեցական ժողովը Թեոդոս կայսերը նամակ ուղարկեց, այնտեղ ասված էր «Վասն որոյ եւ նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր, որ ի տղայութեան փախուցեալ ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն իւրոց՝ ապրեալ անաւ յերկրիդ Յունաց...» (Եղիշէ, Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 72)։

Ուրեմն, իրոք Տրդատի հայր Խոսրովը սպանվել էր Արշակունու ձեռքով, և այս իրական դեպքը միահյուսվել էր այլ տարրերի հետ ու ստեղծել Գրիգորի պարթևական ծագման պատմությունը։

Պատմական հիմք կարող է ունենալ նաև երկու պարթև եղբայրների (Անակի ու եղբոր) գաղթը Հայաստան, քանզի իրոք Պարսկաստանի Արշակունյաց անկումից հետո Հայաստան գաղթեցին պարթև ազնվականներ, որոնց մեջ էին հենց Արտավան Ե-ի որդիները (K. Arslan, Etudes historiques sur le peuple arménien, Paris, 1909, p. 139, Հ. Մանանդյան, հ. Բ, էջ 89)։

Գրիգորի տոհմի ծագման մասին ավելի հստակ պատկերացում է տալիս հունարեն Վարքը։ Գրիգորին դիմելով Տրդատն ասում է. «Երբ դու ինձ մոտ եկար, ասացիր, որ Հայոց աշխարհի առաջիններից ես, բայց այժմ չի երևում ոչ քո ազնվական ծագումը, ոչ էլ քո [հռչակված] երկիրը... (Հունարեն Վարք, էջ 2)։ Դեռ այլ տեղերում նույն հունարեն Վարքը հիշում է, որ Գրիգորի ազգականները գտնվում էին Կեսարիայում։



Այս ամենից կարելի է եզրակացնել, որ Գրիգոր Լուսավորիչը հայ իշխանական տնից էր և հավանաբար Փոքր Հայքի որևէ իշխող տոհմից։

էջ 71. ... աչերին— «Զաման լալոյ արտասուացն» բառացի նշանակում է արտասուքի ու լալու աման, այսինքն՝ աչք, բայց հավանորեն այստեղ խոսքը վերաբերում է գլխին (ծանոթ.— 1977 թ. հրատ. խմբագիրների)։

էջ 75. Չորրորդ օրը— Ագաթանգեղոսի հայտնի ձեռագրերի «յաւուրն չորրորդի» արտահայտության դիմաց Վիեննայի կրկնագիրն ունի «յաւուրն երրորդի» (Յուշարձան, էջ 111), որը կա նաև այլ ձեռագրերում, ինչպես նաև հունարեն ու արաբերեն թարգմանությունների մեջ։

էջ 77. ... մնաց տասներեք տարի— Ըստ հայկական ձեռագրերի, Գրիգորը Խորվիրապում մնաց «ամս երեքտասան», սակայն Վիեննայի կրկնագիրն ունի «ամս չորեքտասան» (Յուշարձան, էջ 118), որը կրկնված է նաև հունարեն ու արաբերեն Վարքերի մեջ։

էջ 83. ... շինականներին— Տրդատի հրովարտակի խորագրում եղած «առ շինականս» (պարբ. 134) խոսքերը չունեն Վիեննայի կրկնագիրը (Յուշարձան, 122—123) և հունարեն ու արաբերեն Վարքերը։

էջ 85. Հռիփսիմե— Հռիփսիմյանց վկայաբանությունը ինքնուրույն գիրք ունի Ագաթանգեղոսի ամբողջ բնագրի մեջ։ Ուշագրավ է Հ. Տաշյանի այն վարկածը, թե Հռիփսիմյան կույսերը հավանաբար Փոքր Հայքից պետք է եկած լինեն (Տաշյան, էջ 137), այսինքն՝ ոչ թե Հռոմից էին եկել, այլ հռոմների կողմերից։

Քրիստոնեությունը վաղ շրջանից տարածվել էր Փոքր Հայքում, և նրա քաղաքներում (Մելիտինե, Սեբաստիա) կային ուժեղ համայնքներ։ Ինչպես Գրիգոր Լուսավորչի, այնպես էլ Հռիփսիմյան կույսերի ծագումը, ըստ երևույթին պետք է փնտրել Փոքր Հայքի սահմաններում, որի հայ ազգաբնակչությունը հունական ազդեցությանը ենթարկված լինելու պատճառով հռոմ էր համարվում բուն Հայաստանի հայության կողմից։

էջ 97. ...երկու օր անց— Ձեռագրերի մի մասում կա «յետ երկուց աւուրցն», իսկ մյուսների մեջ «յետ երից աւուրցն»։ Գ. Տեր-Մկրտչյանը և Ս. Կանայանցը նախընտրել են առաջին ձևը, սակայն Վիեննայի կրկնագիրը (Յուշարձան, էջ 129), ինչպես նաև հունարեն ու արաբերեն Վարքերն ունեն՝ երեք օր հետո։

էջ 101. Ութերորդ դարաշրջան— Բնագրում գրված է դար, որը նշանակում է թե հարյուրամյակ, թե հազարամյակ և կամ որևէ երկար ժամանակամիջոց։ Միջնադարյան մատենագրության մեջ երբեմն Ադամից մինչև Նոյ դրվում է ութ դար, իսկ երբեմն Ադամից մինչև Քրիստոս վեց դար և յոթերորդը՝ մինչև աշխարհի վախճանը («Նոր բառգիրք հայկազեան լեզուի», Վենետիկ, 1836, Ա, էջ 602)։ Որպեսզի հասկանալի լինի, թարգմանել ենք դարաշրջան։

էջ 103. ... նետվեցիր— Ըստ այսմ Հռիփսիմե անունը դուրս է բերվում հունարեն ῥίπτω, ῥίψω նետել, գցել բայից (Հր. Աճառեան, Անձնանունների բառարան, Գ, Երևան, 1946, էջ 100 (ծանոթ.— 1977 թ. հրատ. խմբագիրների)։

էջ 107. Շուշան— Բաբելացի մեծատուն հրեա Հովակիմի կինն էր՝ նշանավոր իր գեղեցկությամբ։ Երկու ծեր դատավորներ ցանկացան նրան, բայց պարկեշտ կինը մերժեց, և ծերունիները ննգորեն ամբաստանելով Շուշանին անբարոյականության մեջ, համոզեցին ատյանին՝ մահվան դատապարտել նրան։ Դանիել մարգարեն, վերաքննելով գործը, ապացուցեց երկու ծերունիների խարդախությու-

նը, մահվան դատապարտեց նրանց և ազատեց Շուշանին (Դանիել, ԺԳ, 1—64)։ Շուշանը Ագաթանգեղոսի երկում, իբրև չարության անմեղ զոհ, հիշեցնում է Հռիփսիմեին։

**Հայկը (Յայկը) և Դեբովրա**— Անձնավորություններ են հին հրեաների պատմության դատավորների շրջանից։ Քանանացիք հարձակվել էին Իսրայելի վրա, և այն ժամանակ Իսրայելի դատավոր Դեբովրա մարգարեուհին կազմակերպեց թշնամու դեմ պայքարը։ Քանանացիների զորավար Սիսարան փախավ հրեաների առջևից և ապաստանեց Հայելի վրանում, իսկ վերջինս սպանեց նրան, ու հրեաները դուրս քշեցին թշնամուն (Գիրք Դատաւորաց, գլ. Դ—Ե)։ Ագաթանգեղոսի մատյանում այս երկու կանայք հիշված են իբրև չար թշնամու դեմ կնոջ արիության խորհրդանշան։

**էջ 119. Արաբների երկիրը (Տաճկաստան)**— Այս անվան տակ վաղ միջնադարի հայ մատենագիրները նկատի ունեին Միջագետքի ու Ասորիքի անապատը, որտեղ հնուց թափառել են արաբ վաչկատուն ցեղերը։

**էջ 121. Հոռի**— Հին հայկական ամիսներից է։ Հայկական ամիսներն էին՝ Նավասարդ, Հոռի, Սահմի, Տրէ, Քաղոց, Արաց, Մեհեկան, Արեգ, Ահեկան, Մարերի, Մարգաց, Հրոտից, Աւելեաց։ Այս ամիսները երեսունական օր ունեին, բացի վերջինից, որն ընդհանրապես հինգ օր ուներ, իսկ նահանջ տարում՝ վեց օր։ Նավասարդի մեկը (Ամանոր) ավանդաբար ընկնում է օգոստոսի 11-ին (Հ. Բադալյան, Օրացույցի պատմություն, Երևան, 1970, էջ 49—62)։

**Փառական Շեմակաց**— Ճիշտ տեղը հայտնի չէ։ Գ. Նահապետյանը նախ առաջարկել է կարդալ «Փառականը էշմակաց», Փառականը տեղանուն համարելով, իսկ երկրորդ բառը բացատրելով վրացերեն դև նշանակությամբ (Ուղղագրութիւններ Ագաթանգեղեայ Պատմութեան, Բազմավէպ, 1907, էջ 147—148), ապա տվել է նոր բացատրություն՝ Փառական Նշամակաց, այսինքն՝ ճահճախուտ և եղեգնուտ դաշտ (Բազմավէպ, 1907, էջ 268—269)։ Նրան հակաճառելով Կ. Տեր-Սահակյանը առաջարկեց [Թա]փառական [եր]ամակաց ուղղումը (Բազմավէպ, 1907, էջ 270)։ Վերջապես «Փառական Նշամակաց» հոդվածով Գ. Նահապետյանը եզրակացրեց (Բազմավէպ, էջ 403—407), որ Փառական դաշտը պետք է գտնվեր Մասիս լեռան ստորոտի մեծ շամբի մոտ, և այդ տեղանունը կապ ունի Մովսես Խորենացու հիշած Փառախոտի հետ, որը կառուցել էր Ամասիայի որդի Փառոխը (Պատմութիւն Հայոց, Ա, գլ. ԺԲ)։ Ըստ Անանունի, Փառականը որսադաշտ էր (Պատմութիւն Սեբէոսի, Երևան, 1979, էջ 52. Գ. Աբգարյան, «Սեբեոսի պատմությունը» և Անանունի առեղծվածը, Երևան, 1965, էջ 116)։ Հր. Աճառյանը գտնում է, որ Շեմակաց նշանակում է որս (Արմատական բառարան, Գ, էջ 509), ուստի Փառականը եթե տեղանուն չէ, պետք է նշանակի դաշտ, իսկ Փառական Շեմակաց՝ որսի դաշտ։

**էջ 123. ... դիվական ուժին**— Տրդատի խոզ դառնալը կապ ունի հայ-իրանական հեթանոսական շրջանի մտածողության հետ։ Պարսիկների համար վայրի խոզը՝ վարազը, աքցանի անասուն էր, և արքային արքայի կնիքը վարազի պատկեր ուներ։ Հր. Աճառյանը վարազ ձևից երկու տասնյակ հայկական անուններ է հիշում՝ Վարազ—Գնել, Վարազ—Գրիգոր, Վարազդատ և այլն (Հայոց անձնանունների բառարան, Ե, էջ 62—69)։

Ղ. Ալիշանը (Այրարատ, Վենետիկ, 1890, էջ 379, ծան. 8) Տրդատի խոզ դառնալու մեջ տեսնում է գայլամարդության ախտը (տե՛ս Գ. Յովսէփեան, Գերեզմանական հին կոթողները և նրանց հնագիտական արժեքը հայ արուեստի պատմու-



թեան մէջ», «Նիւթեր և ուսումնասիրութիւններ», պրակ Գ, Նիւ Եորք, 1944, էջ 139—140)։

**էջ 141. ... ըստ վերին կարգադրութեան**— Սույն պարբերության վերջին տողերը Վիեննայի կրկնագրում և մասամբ այլ ձեռագրերում հետևյալ ձևն ունեն «որպէս ոչ համարեալ իսկ լիցի զերանելիսն իսկ ի գլխովին յանդիման տեսանել» (Յուշարձան, էջ 148)։

**էջ 145. Վարդապետություն**— Թեև նյութի տեսակետից թույլ է կապված Ագաթանգեղոսի բուն բնագրին, որպես ինքնուրույն գիրք, այսուամենայնիվ նրա հետ ամբողջություն է կազմում և անտարակույս Ե դարից է։ Ագաթանգեղոսի հունարեն թարգմանության ժամանակ՝ Զ դարում, Վարդապետությունը եղել է նրա կազմում։ Այդ են վկայում հունարեն, ինչպես նաև արաբերեն թարգմանությունները, որտեղ թեև զեղչված է այս ընդարձակ հատվածը, այնուամենայնիվ Պատմության առաջին մասի վերջում Վարդապետության սկիզբն ազդարարող (սկսենք Քրիստոսի շնորհներով...) և Վարդապետությանն անմիջապես հաջորդող (Արդ եկեք եղբայրներ...) խոսքերը բառացիորեն են թարգմանվել, և անկապ շարադրանք է ստացվել, քանի որ երկուսի միջև ինչ-որ հատված պակասում է (Տաշյան, էջ 158)։

Վարդապետությունն իր բնույթով աստվածաբանական երկ է։ Նրա բովանդակությունը կարելի է պայմանականորեն մի քանի մասերի բաժանել, ըստ պարբերությունների համարների.

ա. 259—342. Աստվածություն, Երրորդություն և արարչագործություն։ Հին Կտակարանի նյութերի համառոտ շարադրանք Ադամից մինչև Իսրայելի ու Հուդայի թագավորությունների անկումը, Բաբելոն գերեվարումը, վերադարձն ու տաճարի նորոգումը։

բ. 343—496. Մարգարեություններ Քրիստոսի գալստյան մասին։ Նրա մարդեղացումը, քարոզչությունը, խաչելությունը, թաղումը, հարությունն ու համբարձումը։

գ. 497—509. Սուրբ Հոգին և առաքյալները։

դ. 510—590. Հայերին ուղղված պատժի սպառնալիքը և ապաշխարհության պահանջը։ 562—564 պարբերություններում խոսքը վերաբերում է Հռիփսիմյան կույսերի նահատակությանը։

ե. 591—658. Տարբեր օրինակներով համեմված խրատական քարոզ։ 641—658 պարբերություններում ճոխ և պերճ ոճով բացատրվում է մարդկային հարության գաղափարը՝ ծառերի, բույսերի, ծաղիկների վերածաղկման և գարնանային թռչունների օրինակով։

զ. 658—715. Առաքյալների՝ Ավետարանը քարոզելու գործունեությունը։

Վարդապետության մեջ խիստ շատ վկայություններ կան Հին և Նոր Կտակարանների գրեթե բոլոր գրքերից։ Հատկապես առատ են Ծննդոց գրքից, Դավթի Սաղմոսներից, Եսայիի մարգարեությունից, Մատթեոսի, Ղուկասի ու Հովհաննու ավետարաններից և Գործք Առաքելոցից վկայությունները։

Ըստ Ռ. Թոմսոնի, հեղինակը քաջ ծանոթ է եղել հունարեն և ասորերեն հայրաբանական մատենագրությանը, բայց հատկապես օգտագործել է Կյուրեղ Երուսաղեմացու «Կոչումն ընծայության» երկը և Հովհան Ոսկեբերանի գործերը։

**էջ 151. Բիլ**— Բթամատի ու ցուցամատի բացվածքի չափը։

**էջ 161. Ինչպես և ձեզ**— Բոլոր դեպքերում հեղինակը հոգնակի երկրորդ դեմքով դիմում է Տրդատ թագավորին, նախարարներին ու բազմությանը։

էջ 197. **Երկնքի վրա**— Ռ. Թոմսոնը թարգմանել է «երկրի վրա» (Teaching, էջ 70), սակայն Աստվածաշնչում ևս «յերկինս» է, ինչպես Ագաթանգեղոսի մոտ։

էջ 241. ...**առաջին «մարդուն»**— զայրն առաջին. հասկանում է «Աստուած»։

էջ 277. **Պենտեկոստե** (հուն.— հիսուն օր)— Հրեաների Եգիպտոսից դուրս գալու հիսուներորդ օրը։ Քրիստոսի աշակերտները նրա հարությունից հիսուն օր հետո, որը Պենտեկոստեի օրն էր, հավաքվեցին, և սուրբ Հոգին իջավ նրանց վրա, և սկսեցին տարբեր լեզուներով խոսել։ Այս տոնը կոչվում է Հոգեգալուստ։

էջ 317. **Եբրայական ազգը**— Ռ. Թոմսոնը թարգմանել է եգիպտացիներ (Teaching, էջ 137)։

էջ 419. ... **հյուսիսային**— Հայաստանը հյուսիսային երկիր է համարվել, ինչպես հայ, այնպես էլ ասորական ու արաբական մատենագրության մեջ։ Զ դարի ասորի մատենագիր Զաքարիա Հռետորը հյուսիսային երկիր անվան տակ հասկանում է Հայաստանը և նրան հարող ու եկեղեցականորեն նրան ենթակա Վրաստանն ու Աղվանքը (Ասորական աղբյուրներ, Ա, թարգմ. Հ. Մելքոնյանի, Օտար աղբյուրները Հայաստանի ու հայերի մասին, 8, Երևան, 1976, էջ 313—314), իսկ Թ դարի արաբ աշխարհագրագետ Իբն Խորդադբեհը, այս բոլորի հետ, հիշելով նաև Ատրպատականը, կոչում է Ջարբի (ասորերեն՝ հյուսիս) (Ս. Տեր-Ղևոնդյան, Հայաստանի վարչական բաժանումները, ըստ արաբ աշխարհագրագետների, ՀՍՍՀ ԳԱ Տեղեկագիր (հաս. գիտ.), 1961, 4, էջ 66)։ Վերջինս Սասանյան պետության հյուսիսային քուստակն էր (երկրամաս)։

էջ 427. **Երեք վկայարաններ**— Էջմիածնի Մայր տաճարը և Ս. Հռիփսիմե եկեղեցին վերանորոգելիս Ա. Սահինյանի կատարած պեղումները շատ բան բացահայտեցին Վաղարշապատի հնագույն եկեղեցական կառույցների վերաբերյալ։ Մայր տաճարում Վահան Մամիկոնյանի վերակառուցած հիմքերի ու մույթերի տակ հայտնաբերվեցին առավել հին հիմքերի ու մույթերի խարիսխներ, իսկ մայր խորանի տակ՝ կրակարանի մնացորդներ և նույնիսկ Վանի թագավորության ժամանակաշրջանի հղկված բազալտե քարակոթող։ Ա. Սահինյանը եզրակացնում է, որ Էջմիածնի Մայր տաճարը, իր նախնական ձևով Տրդատ Գ-ի ժամանակ եղել է բազիլիկ կառուցվածք՝ թաղակապ ծածկով Քասաղի, Եղվարդի, Աշտարակի, Տեկորի և Երերույքի բազիլիկ տաճարների նման։ Պեղումների արդյունքները հաստատում են Մայր տաճարի մասին Ագաթանգեղոսի ու Ղազար Փարպեցու վկայությունների հավաստիությունը։ Ե դարում Վահան Մամիկոնյանը տաճարը վերակառուցել է և տվել նրան գմբեթակիր հորինվածք, ընդ որում նոր խարիսխները դրվել են հների վրա։

Ս. Հռիփսիմե տաճարի պեղումների ժամանակ նույնպես հայտնաբերվել են մույթերի հին խարիսխներ, որոնք հեթանոսական մեհյանների ճարտարապետական զարդեր ունեն։ (Տե՛ս Ա. Սահինյան, Էջմիածնի Մայր տաճարի սկզբնական տեսքը, Պատմաբանասիրական հանդես, Երևան, 1966, 3, էջ 71—93)։

Տրդատ Գ-ի օրոք, ինչպես տեսանք, Վաղարշապատը Մեծ Հայքի կաթողիկոսի նստավայրը դարձավ։ Արշակ Բ-ի ժամանակ՝ 369-ին Շապուհ արքան մտավ Հայաստան և ի շարս այլ քաղաքների գրավեց նաև Վաղարշապատը և բնակիչներից 19 հազար տուն գերեվարեց։ Սակայն դրանից հետո էլ քաղաքը մնաց Արշակունիների նստավայրը։ Գրերի գյուտի ժամանակ Վռամշապուհ արքան և Սահակ կաթողիկոսը, նախարարների բազմությամբ, հանդիսավորապես ընդունեցին Մեսրոպ Մաշտոցին, որը Վաղարշապատում առաջին դպրոցը հիմնեց։



Ե դարում հայրապետանոցը փոխադրվեց Դվին, որը միաժամանակ մարզպանի նստավայրը դարձավ։ Է դարում Վաղարշապատը վերածնունդ ապրեց. կառուցվեցին Ս. Հռիփսիմե, Ս. Գայանե և Զվարթնոց տաճարները և ժամանակավորապես դարձավ կաթողիկոսական նստավայր։ Վաղարշապատը կաթողիկոսների երկրորդական նստավայր էր նաև Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանում, և երբ օտարների ձեռքում մնացած Դվինում դրությունը վտանգավոր էր, այստեղ էին փոխադրվում քահանայապետերը։ Թ դարի վերջում Դվինի երկրաշարժից հետո Գևորգ կաթողիկոսը հաստատվեց Վաղարշապատի Զվարթնոց տաճարի մոտ կառուցված կաթողիկոսական պալատում («թողեալ զբնակելն ի Դուինն՝ եկեալ բնակեցաւ ի Նոր քաղաքին ի մեծ եկեղեցւոջն որ յանուն սրբոյն Գրիգորի շինեալ էր երանելւոյ տեառն Ներսեսի երկրորդի Հայոց կաթողիկոսի». Թովմայի վրդ. Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց, Պետերբուրգ, 1887, էջ 231)։

Տարբեր վայրեր փոխադրվելուց հետո (Անի, Հռոմկլա, Սիս) Հայոց կաթողիկոսական աթոռը 1441 թվականին վերջնականապես վերահաստատվեց Վաղարշապատում (Էջմիածին)։ Մինչև առաջին աշխարհամարտը Վաղարշապատը Հայաստանի գլխավոր մշակութային կենտրոնն էր։ (Տե՛ս Ս. Քալանթար, Հին Վաղարշապատի պեղումները, Երևան, 1965, Г. Тирацян, К вопросу о градостроительной структуре древнего Валаршапата, Պատմաբանասիրական Հանդես, 1977, 2, էջ 81—98)։

էջ 435. ...**գործերը կատարվեցին**— Այս չափազանցված արտահայտության մեջ բացահայտ կերպով երևում է հատուկ ձգտում՝ ամեն կերպ նսեմացնելու և ուրանալու Թադեոսի գործունեությունը կամ նույնիսկ գոյությունը և բարձրացնելու Գրիգոր Լուսավորչին, որպես Հայաստանում առաջին քրիստոնյա քարոզչի։

Բանն այն է, որ քրիստոնեությունը Հայաստանում սկսել է տարածվել դեռևս առաջին դարում։ Ավանդաբար Թադեոսն ու Բարթողիմեոսը (Քրիստոսի աշակերտներից) համարվում են Հայաստանում քրիստոնեության առաջին քարոզիչներ, որոնք նահատակվել են Սանատրուկ թագավորի հրամանով։ Համենայն դեպս Փավստոս Բուզանդը հայ եկեղեցին կոչում է Թադեոսի աթոռ, իսկ հայ կաթողիկոսներին (ինչպես, օրինակ, Հուսիկին) «զվիճակակալն զվիճակին Թադէոսի առաքելոյն և զնորին Նմանոյն Գրիգորի» (Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Վենետիկ, 1914, էջ 61)։ Ահա այս հիման վրա է, որ մեր ազգային եկեղեցին կոչվում է «Հայաստանեայց առաքելական եկեղեցի»։

Հայ եկեղեցին բացառիկ դեր է կատարել հայոց պատմության մեջ, հատկապես Հայոց թագավորության անկումից հետո։ ԺԴ դարից մինչև այսօր նա եղել է և ամենուրեք մնում է ամբողջ հայ ազգի գոյատևման գլխավոր խարիսխներից մեկը։

Ագաթանգեղոսի մոտ չափազանցված է նաև Գրիգոր Լուսավորչի և Տրդատ արքայի կողմից հեթանոսության դեմ պայքարի նկարագրությունը։ Ըստ հեղինակի, նրանք հիմնահատակ կործանեցին բոլոր մեհյանները (պարբ. 790, 791), և նույնիսկ նրանց հետքը չմնաց (պարբ. 813)։ Եթե իրոք այդպես էր, ապա ինչպե՞ս Դ—Ե դարերի հայկական ճարտարապետությունը շատ բան ժառանգեց հեթանոսական ճարտարապետությունից և համարվում է նրա անմիջական շարունակությունը։ Բանն այն է, որ քանդում էին մեհյանների բագինները (զոհասեղան, արձան), իսկ շենքերը վերածվում էին եկեղեցիների։

Անցումը հեթանոսությունից քրիստոնեության, ըստ էության մեղմ ձևով իրա-

գործվեց։ Նույնիսկ նոր կազմավորվող քրիստոնյա հոգևորականության շարքերը համալրվեցին առաջին հերթին քրմերի որդիներով։ Հայաստանի տարբեր վիճակների համար Գրիգոր Լուսավորչի ձեռնադրած առաջին 12 եպիսկոպոսները բոլորն էլ քրմերի որդիներ էին (պարբ. 845)։ Քրմի որդի Աղբիանոսը դարձավ կաթողիկոսական տեղապահ, իսկ նրա հետնորդները Դ—Ե դարերում դարձան հայոց կաթողիկոսներ։ Հայ եկեղեցին յուրացրեց նաև հեթանոսական տոները (Ծաղկազարդ, Զատիկ, Տեառնընդառաջ՝ Տրնդեզ, Վարդավառ և այլն. Տե՛ս Մ. Օրմանյան, Ծիսական բառարան, Անթիլիաս, էջ 28, 34, 59, 62)։

Գրիգոր Լուսավորիչը կազմակերպեց հայ եկեղեցին։ Նա հունարեն և ասորերեն դասավանդությամբ դպրոցներ բացեց և նպաստեց քրիստոնեական հունալեզու մշակույթի (գրության) ներթափանցմանը Հայաստան։ Նրան են վերագրվում մի շարք աշխատություններ, ինչպես Հաճախապատումը։

Նա միջնադարյան քրիստոնյա աշխարհում մեծ հեղինակություն է վայելել, որպես տիեզերական եկեղեցու նշանավոր հայրերից մեկը։ Աշխարհի բոլոր քրիստոնյա եկեղեցիների Հայսմավուրքներում (տոնացույց) նշվում է նրա տոնը (30 սեպտեմբեր) և տրվում կենսագրությունը (Վարքը)։ Նեապոլսում (Իտալիա) կա «Հայոց սուրբ Գրիգոր» եկեղեցին։ Նրա խճանկարը հայտնաբերվել է Կոստանդնուպոլսի Այա Սոֆիա մայր տաճարի պատերին։ Նրա մասին ներբողյան է գրել Հովհան Ոսկեբերանը (346—407), որը թարգմանված է հայերենի (Ղ. Ալիշան, Յուշիկք հայրենեաց Հայոց, Վենետիկ, 1869, Բ, էջ 57)։

էջ 437. ... **մեջտեղից ջեջի**— Այս մի քանի էջերում նկարագրված նյութը, որն անգնահատելի աղբյուր է հայ հեթանոսական կրոնի ուսումնասիրման համար, Հունարեն Վարքի մեջ թեև հիմնականում նույնությամբ է տրված, սակայն Տրդատի ու Գրիգորի երթուղին որոշ չափով տարբեր է նկարագրված (Հունարեն Վարք, էջ 103—115)։

Հայկական հեթանոսական կրոնի մասին տե՛ս **Н. Эмин**, Очерки религии и верований языческих армян, Москва, 1866: **Մ. Էմին**, Հետազոտութիւնք ի վերայ հայկական հեթանոսութեան, Արմաշ, 1875։ **Ղ. Ալիշան**, Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք Հայոց, Վենետիկ, 1895, **Ե. Դուրեան**, Հայոց հին կրօնը կամ հայկական դիցաբանութիւն, Երուսաղէմ, 1933։ H. Gelzer, Zur armenischen Götterlehre, 1895. Հետազօտութիւն հայ դիցաբանութեան, Վիեննա, 1897։ **A. Carrière**, Les huit sanctuaires de l'Arménie païenne, Paris, 1899։ Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները, Վիեննա, 1899։

Հեթանոսական ճարտարապետության ու քանդակագործության մասին տե՛ս **Ա. Սահինյան**, Քասաղի բազիլիկայի ճարտարապետությունը, Երևան, 1955 (գլուխ ութերորդ՝ Հայաստանի վաղ ֆեոդալիզմի շրջանի ճարտարապետության տեղում ստեղծվելու նախադրյալները)։ **Բ. Առաքելյան**, Քանդակագործությունը հին Հայաստանում, Պատմաբանասիրական հանդես, 1, 1969։

**Որմզդի գրչի Դիվան**— Բնագրում «Դիւան գրչի Որմզդի, ուսման ճարտարութեան մեհեան» արտահայտության մասին ուսումնասիրողները հետաքրքիր մեկնաբանություններ են տվել։ Մ. Էմինը, Դիւանը հասկանալով դպրոց իմաստով, այսպես է թարգմանել. «քրմական իմաստության ուսման [մեհյան], որը կոչվում էր Որմզդի գրչի (դպրի) դպրոց, ուր ուսուցանում էին բոլոր արվեստները» (**Н. Эмин**, Очерк религии и верований языческих армян, М., 1866, стр. 25):



Հ. Գելցերը նույնպես Դիւանը բացատրում է, որպես Որմզդի գրչի դպրոց, և քանի որ Արամազդի փոխարեն Որմիզդ ձևն է օգտագործված, ապա այն Երազամույնի պատգամատեղիքի հետ նոր և վերջին ժամանակների հաստատություն է համարում՝ Սասանյանների ազդեցության տակ գոյացած (**Հ. Գելցեր**, Հետազօտութիւն հայ դիցաբանութեան, Վենետիկ, 1895, էջ 38—42. **F. Justi**, Iranisches Namenbuch, Marburg, 1895, S. 325):

էջ 439. ...**միջոցով կատարել**— Բովանդակությունից ելնելով՝ բնագրի այս հատվածում կատարեցինք նախադասությունների վերակազմում և ըստ այդմ թարգմանեցինք (ծանոթ.— 1977 թ. հրատ. խմբագիրների)։

էջ 441. **Բարշամինա** (Բարշամին)— Համարվում է սեմական Բաալշամին աստվածությունը, որի լ տառը փոխվել է ր-ի, ըստ Հ. Գելցերի, իրանական ազդեցության տակ, որի միջոցով այն անցել է հայերին։ (**Հ. Գելցեր**, Հետազօտութիւն հայ դիցաբանութեան, էջ 72)։ Ըստ Մ. Էմինի, սպիտակափառ է կոչվել այն պատճառով, որ նրա բագինը փղոսկրից, բյուրեղից ու արծաթից էր պատրաստված (**Н. Эмин**, Очерк религии, стр. 24. **Մովսիսի Խորենացւոյ** Պատմութիւն Հայոց, 1913, էջ 128)։

Սույն նյութերը հերքում են Հ. Գելցերի այն տեսակետը, թե քրիստոնյա Հայաստանի ամենավաղ շրջանի եկեղեցական կենտրոնը Վաղարշապատը չէր, այլ Աշտիշատը, և նույնիսկ այդ ժամանակ Վաղարշապատում կաթողիկոսական եկեղեցու գոյությունը կասկածելի է (**Հ. Գելցեր**, Փաւստոս Բիւզանդ կամ Հայկական եկեղեցւոյ սկզբնաւորութիւն, Վենետիկ, 1896, էջ 57—64)։ Այս բոլորը ճիշտ է այնքանով, որ Աշտիշատը իբրև կրոնական շատ մեծ նշանակություն ունեցող կենտրոն էր թե հեթանոսության, թե քրիստոնեության օրոք։ Այնտեղ էին Վահագնի, Անահիտի և Աստղիկի մեհյանները և այնտեղ էր, որ գումարվեց եկեղեցական հայտնի ժողովը Ներսես Ա-ի (353—373) օրոք։ Սակայն դա չի կարող նսեմացնել Վաղարշապատի դերը, որի դեռ Դ դարում կաթողիկոսական կենտրոն լինելու փաստը հնագիտական պեղումներով վկայված իրողություն է։

Վաղարշապատը եղել է Արշակունյաց Հայաստանի հիմնական մայրաքաղաքը և միաժամանակ մշակութային ու եկեղեցական կարևոր կենտրոնը։ Նրա տեղում դեռ շատ վաղուց գոյություն է ունեցել Վարդգեսավանը, որի հիմնադիրն է, ըստ Մովսես Խորենացու, Երվանդ Սակավակյաց արքայի քրոջ ամուսինը՝ Վարդգեսը։

Վաղարշ Ա Արշակունի թագավորը (117—140) նախկին Վարդգեսավանը պարսպապատեց և դարձրեց մայրաքաղաք։ Հունական աղբյուրները Վաղարշապատը կոչում են Նոր քաղաք։ Ագաթանգեղոսի և այլոց մոտ ևս հիշվում է՝ Նորաքաղաք։ Վաղարշապատը Արտաշատի կողքին դարձավ երկրի մյուս մայրաքաղաքը, իսկ Դ դարում Խոսրով Կոտակ արքան Դվինը դարձրեց մայրաքաղաք։ Այսուհանդերձ Արշակունիների հիմնական մայրաքաղաքը, մինչև Ե դար, միշտ էլ մնաց Վաղարշապատը։ Վաղարշապատում գտնվել են հունարեն ու լատիներեն արձանագրություններ, որոնք վերաբերում են Բ դարում Վաղարշապատում կատարված ռազմական կառույցներին և քաղաքի պարիսպներին (**К. В. Тревер**, Очерки по истории культуры древней Армении, М.-Л., 1953, стр. 251—270):

**Խաղտիք**— Կարնո քաղաքից հյուսիս-արևմուտք գտնվող Սպեր գավառի կողմերում է, Պոնտական լեռնաշղթայից հյուսիս։

**Անի**— Շատ հին բնակավայր է Եփրատ գետի մոտ Կարնո նահանգում. եղել

է սրբավայր և արքունական դամբարան։ Այստեղ էր գտնվում հայ հեթանոսական գերագույն աստված Արամազդի մեհյանը։ Անիից հարավ, Եփրատի այն ափին գտնվող Կամախում էին թաղվում Հայաստանի Արտաշիսյան և Արշակունի թագավորները։

... բագինը Զևս Արամազդ աստծու— Անորոշ է հայերեն բնագրի «զբագին Զևս դիցն Արամազդայ հօրն անուանեալ դիցն ամենայնի» արտահայտությունը։ Որոշ ձեռագրեր ունեն «զբագին ես դիցն Արամազդայ», որը հավանաբար գրիչների ձեռքով կատարված պարզեցում է։ Հունարեն թարգմանությունն ունի քիչ այլ բովանդակություն (Agatangelus, 132), ըստ որի քանդվող բագինը Զևսի հորը՝ Կրոնոսինն է։ Արաբերեն թարգմանությունը մասամբ է նույն ձևով տրված (Արաբ. Ագաթ., էջ 284)։ Հայկական Արամազդը նույն Զևսն է, ուստի Ագաթանգեղոսի հայերեն բնագրում խոսք չի կարող լինել աստվածահոր և աստվածորդու մասին։

Այստեղ հեթանոս աստվածության անունը տրված է կրկնակի՝ հելլենահայկական ձևով՝ Զևս—Արամազդ։ Նման ձևով Ագաթանգեղոսը հիշում է նաև Աֆրոդիտե—Անահիտին (Ագաթանգեղոս, 809)։ Այսպիսի կրկնակի անվանումով հայտնի են Կոմմագենե երկրի Երվանդյան թագավորների կանգնեցրած աստվածների արձանները՝ Զևս—Օրոմազդես (Զևս—Արամազդ) և այլն (Գ. Սարգսյան, Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, Երևան, 1966, էջ 29—30)։

էջ 447. Անգեղ տուն— Հայկական գավառ է Աղձնիքի կազմում։

Աղձնիք— Հին Հայաստանի 15 նահանգներից է և Արշակունյաց թագավորության չորս բդեշխություններից մեկը։ Այստեղ էր գտնվում Մեծն Տիգրան Բ-ի կայսրության Տիգրանակերտ մայրաքաղաքը։

Կորդուք— Հին Հայաստանի Կորճայք նահանգի գավառներից։ Այստեղ է Աստվածաշնչում հիշված Արարատ լեռը, որի հարավում էր գտնվում ասորեստանյան արձանագրություններում հիշվող Թման վայրը (Ս. Երեմյան, Հայաստանն ըստ «Աշխարհացույցի», էջ 60)։

Ծավդեից երկիր— Արցախ նահանգը (մոտավորապես այժմյան Լեռնային Ղարաբաղը և այլ շրջաններ) և Սյունյաց նահանգի Սոդք գավառը կազմում էին Հայոց թագավորության Ծավդեացոց նախարարությունը։

Զարավանդ— Հին Հայաստանի Պարսկահայք նահանգի հյուսիսային գավառն էր, որը դրացի էր Վասպուրականին։

... տասնվեցերորդը՝ Արծրունյաց իշխանը— Հայաստանի 16 նախարարական տների այս ցուցակը հիմնականում անաղարտ է մնացել։ Այժմ ձեռքի տակ է հունարեն Վարքի համապատասխան ցուցակը, որը միայն որոշ նոր մանրամասներ ունի.

«Հրավերի համաձայն ներկայացան երեք թագավորները, այն է Լազերի, Վրաց և Աղվանից, ապա հերթականությամբ թագավորներից հետո առաջին տեղում գտնըվող Անգեղ տան և Անձիտի կուսակալը, երկրորդ՝ Աղձնիքի մեծ բդեշխը, երրորդ՝ Մարդերի կուսակալը, չորրորդ՝ ասպետության իշխանը, որը պաշտպանում էր Կովկասյան լեռների կողմերը և Ճանիքը, հինգերորդ՝ Մամիկոնյանների նախարարը՝ սպարապետը, որին էին ենթարկվում Հայոց ամբողջ հեծելազորն ու հետևակը և մինչ Հայոց թագավորի հետ էր լինում, և պատերազմում նրա զորավարությանն էին ենթարկվում բոլոր վերոհիշյալները և նրանք, որոնց մասին խոսք կլինի ստորև, վեցերորդ՝ կուսակալը այսպես կոչված Կորդվաց աշխարհի, որը գտնվում է Անդրո-



կորդիների մոտ, յոթերորդ՝ իշխանը Մեծ Ծոփքի, որը Միջագետքի մոտ է գտնըվում, ութերորդ՝ Գուգարաց աշխարհի առաջնորդը, որը ևս բդեշխի աստիճան ունի։ իններորդ՝ Ռշտունյաց կուսակալը, տասներորդ՝ Մոկաց շահապը, տասնմեկերորդ՝ Սյունյաց ցեղապետը, տասներկուերորդ՝ Ծավդեից զորավարը, տասներեքերորդ՝ [իշխանն Ուտիացոց աշխարհի, տասնչորսերորդ] շահապը Զարավանդի ու Հեր գավառի. սրանք ևս գտնվում էին Կորդիների մոտ, տասնհինգերորդ՝ Խորխոռունյաց նախարարը, որն իբրև առաջնորդ ունի Մաղխազության իշխանությունը, տասնվեցերորդ՝ Արծրունյաց իշխանը։ Մնացած նախարարներն էլ հավաքվեցին ըստ իրենց գրաված հերթականության» (Հունարեն Վարք, էջ 98)։

Ագաթանգեղոսի հայերեն բնագիրը կամ նրա հունարեն ու արաբերեն թարգմանությունները այստեղ և այլ տեղերում չունեն հիշված Վրաց, Աղվանից և Լազերի (արաբերեն Վարքի թարգմանության մեջ՝ Ալանների) թագավորները։ Ասպետ Բագրատունիներին հանձնարարված Կովկասյան լեռների ու Ճանիք երկրի պաշտպանությունը, գուցե Սպեր գավառում նրանց տիրույթներ ունենալու փաստի արձագանքն է։

էջ 451. Կեսարիա— Կապադովկիայում քրիստոնեությունը շատ վաղ ժամանակներում է տարածվել։ Արդեն Գ դարում Կեսարիայի եկեղեցին մեծ հռչակ ուներ, մանավանդ, երբ նրա եկեղեցական աթոռակալներն էին Աղեքսանդր եպիսկոպոսը և Փիրմիլիանոսը, որոնք Աղեքսանդրիայի եկեղեցու երևելի հայրեր Կղեմեսի ու Որոգինեսի մերձավորներն էին։ Փիրմիլիանոսի օրոք Կեսարիան աստվածաբանական ուսման հայտնի կենտրոն էր դարձել։ Կեսարիայի աթոռի հետ էր կապված Գրիգոր Նեոկեսարացու գործունեությունը, իսկ Դ դարում Կեսարիան նշանավոր դարձավ շնորհիվ երեք մեծ մատենագիրների՝ Բարսեղ Կեսարացի, Գրիգոր Նյուսացի և Գրիգոր Նազիանզացի։

Կեսարիայի աթոռի ազդեցությունը Փոքր Հայքի վրա սկսել էր վաղ ժամանակից, և ահա Փոքր Հայքի ու Կապադովկիայի հայությունը մի կարևոր ուժ դարձավ Հայաստանում քրիստոնեությունը տարածելու համար։ Այս միջավայրի ծընունդն էր հենց Գրիգոր Լուսավորիչը (Saint Basile, Lettres, texte et traduction, 11, Paris, 1961, p. 148. Ա. Ալպոյաճեան, Պատմութիւն հայ Կեսարիոյ, Գահիրէ 1947, Ա, էջ 276—289)։ Գրիգորի ու ընկերակիցների Կեսարիայում անցկացրած օրերի մասին հունարեն Վարքը ավելի մանրամասն նկարագրություն ունի (Հունարեն Վարք, էջ 128—147)։

էջ 453. ...Սեբաստիա— Փոքր Հայքում քրիստոնեությունը վաղ ժամանակներից էր տարածված՝ կենտրոն ունենալով Մելիտինե քաղաքը։ Հետագայում մետրոպոլիտ ունեցավ նաև Սեբաստիան։ Մելիտինեի և Սեբաստիայի հայ եպիսկոպոսների կախումը Կեսարիայից ձևական չէր, ինչպես Մեծ Հայքի աթոռինը։

Ըստ հունարեն Վարքի, երբ Գրիգոր Լուսավորիչը Կեսարիայից եկավ Սեբաստիա, նրան ընդառաջ ելան Պետրոս եպիսկոպոսը և իշխանը։ Սեբաստիայից դուրս գալով՝ Գրիգորն իր հետ Հայաստան բերեց երեցների ու մենակյացների, որպեսզի նրանց հոգևոր պաշտոնների նշանակի։ Նրա հետ եկավ նաև Պետրոս եպիսկոպոսը, սակայն թագավորի ու նախարարների կողմից ընդունվելուց հետո վերադարձավ։ Ապա Գրիգոր Լուսավորիչը ձեռնադրեց և Սեբաստիա ուղարկեց Իրինարքոս քահանային։ Ինչպես երևում է, Փոքր Հայքի հոգևորականությունը և բնակչությունը կապված էր Մեծ Հայքի հայրապետական աթոռին։

Դ դարում հայտնի էր Սեբաստիայի Եվստաթիոս հայազգի եպիսկոպոսը։ Կեսարիայի աթոռի և նրա միջև հակառություններ կային, ուստի վերջինս կարգազուրկ եղավ։ (Saint Basile, Lettres, texte et traductions, 11, Paris, 1961, p. 148. Ա. Ալպօյաճեան, Պատմութիւն հայ կեսարիոյ, Ա, էջ 291։ Լ. Խաչիկյան, Փոքր Հայքի սոցիալական շարժումների պատմությունից, Երևան, 1951)։

Վանեվանյան մեհյան— Ըստ Հ. Գելցերի, մեկ մեհյան էր՝ Վահագնի, սակայն համարվել է երեք մեհյան, քանզի կառուցվածքը բաժանված է եղել երեք առանձին խորշերի կամ սենյակների, ընդ որում կենտրոնական խորշը Վահագնի բագինն էր, իսկ երկու կողմնակի խորշերը Անահիտ և Աստղիկ դիցուհիներինը։ Աստղիկի խորշը կոչվել է սենյակ Վահագնի (Հ. Գելցեր, Հետազօտութիւն, էջ 27—31)։ Գրաբարում սենեակ նշանակում է նաև հարս (Բ. Սարգիսեան, Ագաթանգեղոս և իւր բազմադարեան գաղտնիքն, Վենետիկ, 1890, էջ 136—137)։

էջ 455. Աթանագինես— Եղել է Սեբաստիայի եպիսկոպոս։ Նրա կենսագրությունը տե՛ս Մ. Ավգերեան. Լիակատար վարք և վկայաբանութիւն սրբոց, Վենետիկ, 1813, Դ, էջ 319։

էջ 465. ... այնտեղ մկրտեց— Արածանիի ջրերում Հայոց արքունիքի և բանակի մկրտության տեսարանը հունարեն Վարքը մի քիչ այլ կերպ է նկարագրում։ Ի տարբերություն հայերեն Ագաթանգեղոսի, այստեղ հիշվում է, որ Տրդատ թագավորի հետ մկրտվեցին նաև Լազերի, Վրաց և Աղվանից թագավորները, մեծամեծները, կուսակալները, նախարարներն ու ցեղապետերը, նրանց ամբողջ զորքը, մեծաթիվ սպասավորությունը, կանայք, տղամարդիկ ու երեխաներ (Հունարեն Վարք, էջ 164—168)։

էջ 467. Հյուրընկալ Վանատուր— Արամազդի ու Վանատուրի նույնացման մասին առաջին անգամ խոսում է Ղ. Ինճիճյանը, նշելով, որ երկուսն էլ կոչվել են «Հյուրընկալ» (Ղ. Ինճիճեան, Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, Վենետիկ, 1835, Գ, էջ 180)։ Վանատուրը եղել է զուտ հայկական աստվածություն և հայոց գերագույն աստվածը, սակայն իրանական ազդեցության տակ դուրս է մղվել Արամազդի կողմից, իսկ Վանատուրը մնացել է «Հյուրընկալ» աստվածություն (Հ. Գելցեր, Հետազօտութիւն, էջ 99—101, Ե. Դուրեան, Հայոց հին կրօնը, Երուսաղէմ, 1933, էջ 32)։

Վանատուրի մասին տե՛ս նաև Յ. Գաթրճեան, Տիեզերական Պատմութիւն, Վիեննա, Ա, էջ 163. Ս. Մ. Դարագաշեան, Քննական պատմութիւն Հայոց, Տփղիս, 1895, մասն Ա, էջ 269. Ա. Կարիեր, Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի և Մ. Խորենացւոյ համեմատ, Վիեննա, 1899, էջ 42—43։

... ծխի հողաբաժին (հող երդոյ)— Այս արտահայտությունը պատմագիտական գրականության մեջ բացատրվում է որպես որոշ չափի հողաբաժին, որ տրվում էր եկեղեցուն (Մանանդյան, հտ. Բ, էջ 353—354)։ Փավստոսը հիշում է «Եւ հատ ևս յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց։ Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, եւ զերկուսն միայն թողոյր երկուս հողս» (Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Վենետիկ, 1889, Ե, գլ. ԼԱ, էջ 237)։

Ագաթանգեղոսի և Փավստոսի տեղեկություններից պարզվում է, որ Տրդատ թագավորը գյուղական հոգևորականությանը հատուկ հողեր էր նվիրել՝ նրանց



տնտեսապես ապահովելու նպատակով։ Ավելի պարզ է Ագաթանգեղոսը, ըստ որի, ավաններում յոթ-յոթ հողաբաժին (հող երդոյ) էր հատկացվում, իսկ ագարակներում՝ չորս-չորս։

Այս հողաբաժինները հատկացվում էին գյուղական հոգևորականությանը որպես «խոստակ»՝ ժառանգական օգտագործման իրավունքով, սակայն գերագույն սեփականության իրավունքը պատկանել է եկեղեցուն (Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 104—109)։ Հողատիրության այս ձևը պայմանական էր, ուստի, եթե եկեղեցու գերագույն իշխանությունը որևէ ժամանակ մանր հոգևորականին մեղավոր էր համարում, իրավունք ուներ հողաբաժինը ետ վերցնելու և ուրիշներին հանձնելու։

Սույն հողաբաժինների վրա հոգևորականները հաճախ ժառանգաբար էին իշխում, մի երևույթ, որ շատ բնորոշ էր նախարարական կարգերին։ Պատմիչները հաճախ շեշտում են, որ Տրդատ թագավորը Հայոց եկեղեցին դասել էր «ազատաց տոհմի» կարգը, որի հիմքում ընկած էին ոչ միայն նրանց հողատիրական իրավունքները, այլև այն, որ ազատ էին շինականների վճարած հարկերից։

էջ 469. Վաղարշապատ— Ոստաստակ բառն ունի նաև Կորյունը, և ընդհանրապես սույն հատվածը Կորյունից է քաղված։ Կորյունի մոտ կա «առ ոստ տանն» ձեր, իսկ բանասերներից ոմանք կամեցել են կարդալ «առ ոստանն» (Կորիւն, Վարք Մաշթոցի, ուղղեալ և լուսաբանեալ ի Գ. Ֆնտկլեանէ, Երուսաղէմ, 1930, Ներածութիւն, էջ ԺԴ)։ Հետաքրքիր է Ղ. Ալիշանի առաջարկած ստուգաբանությունը, թե ոստաստակը պարսկերեն ռուստակ բառից է ծագում, որն արաբ մատենագիրների մոտ առատորեն օգտագործված է (Յակուտ և ուրիշներ (Այրարատ, էջ 204ա)։ Մ. Աբեղյանը համեմատելով հայերեն Քաղաք ու Դաշտ (Ստեփաննոսի Տարօնեցւոյ Պատմութիւն տիեզերական, Պետերբուրգ, 1885, էջ 77, 282) արտահայտության հետ, որով կոչվել է Վաղարշապատ քաղաքը, հավանական է գտնում ռուստակ ստուգաբանությունը։ Ըստ Հր. Աճառյանի՝ ոստաստակ նշանակում է գլխավոր քաղաք, գավառի կամ նահանգի մայրաքաղաք (Հայերեն արմատական բառարան, Ե, էջ 1282—1283)։

Սատաղ— Քաղաք, որը գտնվում էր Փոքր Հայքում, Մեծ Հայքի սահմանի մոտ։

Կղարջք— Գուգարաց բդեշխության գավառներից էր։ Հայաստանի հյուսիսային գավառներից էր և Տայքին սահմանակից։

Մասքութներ (մազքութներ)— Պատկանում էին իրանական ցեղերին։ Մասքութաց Արշակունիների թագավորությունը գտնվում էր Կասպից ծովի ափին և ընդգրկում էր Զորա, Զողա (Ճորա) երկիրը։

Ամիդ— Քաղաք է Աղձնիք նահանգի հարավ-արևմտյան կողմում, Տիգրիսի ափին։ Այժմ կոչվում է Դիարբեքիր։

Նոր Շիրական երկիր— Մոտավորապես Պարսկահայք նահանգն է հին Հայաստանում (Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյցի», Երևան, 1963, էջ 77)։

Մանէր Տուն (Մանկերտ-տուն)— Պատմական Հայաստանի ամենահարավային ծայրամասն էր, որը Արշակունյաց ժամանակաշրջանում մտնում էր Նոր Շիրական բդեշխության մեջ։

... տարածում էր իր ավետարանական խոսքը— Այստեղ ցույց են տրված Հայոց եկեղեցուն ենթակա երկրների սահմանները, որոնց մեջ մտնում էին ոչ

միայն Մեծ Հայքի թագավորության տասնհինգ նահանգները, այլև Վրաստանն ու Աղվանքը։ Վաղարշապատում (ապա Դվինում) նստող Հայոց կաթողիկոսի ազդեցությունն ու հեղինակությունն այնքան ուժեղ էր Վրաց ու Աղվանից եկեղեցիների վրա, որ Զ դարի ասորի պատմիչ Զաքարիա Հռետորը այս ամբողջը մեկ եկեղեցի համարելով՝ նրա գլուխն է նկատում Դվինում նստող Հայոց կաթողիկոսին։ Ապա ավելացնում է՝ նրանց առաջին կաթողիկոսի անունը Գրիգոր էր, արդար և հայտնի մի մարդ (Ասորական աղբյուրներ, թարգմ. Հ. Մելքոնյանի, Երևան, 1976, էջ 313)։

էջ 471. ... տասներկուերորդինը՝ Կիրակոս— Ն. Ադոնցը նշում է, որ այս ցուցակը անաղարտ չի հասել և մինչև Զ դարի վերջը կատարված բնագրային փոփոխություններից տուժել է։

Հիշյալ տասներկու եպիսկոպոսների իշխանության տակ եղած գավառների կամ նահանգների անունները (բացի առաջին երկուսից) չեն հիշված Ագաթանգեղոսի հայերեն մատյանում, սակայն Վարքի հունարեն ու արաբերեն թարգմանություններն ունեն համապատասխան տվյալներ և, ի դեպ, բոլոր եպիսկոպոսություններն էլ արևմտյան նահանգներում են։ Սրանից Ն. Ադոնցը եզրակացնում է, որ այստեղ արտահայտված է Զ դարի երկրորդ կեսի իրադրությունը, երբ Հայաստանի արևմտյան նահանգները կայսրությանն էին միացված։ Ն. Ադոնցը իր ձեռքի տակ ուներ միայն արաբերեն Վարքը, իսկ հունարենը, որ երկրորդ աշխարհամարտից հետո հայտնի դարձավ, բնականաբար ավելի մոտ է այս բնագրի նախնական ձևին։

էջ 473. ... սահմանված տոնին— Բաղարջակերաց տոնն է՝ հրեաների զատիկը (պասեք), որը կատարում էին ի հիշատակ հրեաների Եգիպտոսից դուրս գալու։ Այդ տոնին բաղարջ էին ուտում։

էջ 477. ... հայերենախոս դարձավ— Սա Կորյունից քաղված հատված է, սակայն Կորյունի մատյանում հստակ է արտահայտված. «Այն ժամանակ անսահման սքանչելի դարձավ մեր երանելի ու ցանկալի Հայաստան աշխարհը, ուր երկու հավասարակիցների ձեռքով հանկարծ միանգամից եկան հասան, հայաբարբառ հայերենախոս դարձան օրենսուսույց Մովսեսը՝ մարգարեական դասի հետ և առաջադեմ Պողոսը՝ բոլոր առաքելական գնդով, Քրիստոսի աշխարհակեցույց Ավետարանի հետ միասին» (Կորիւն, էջ 57)։ Կորյունի խոսքը Մովսեսի ու Պողոսի, այսինքն՝ Հին ու Նոր Կտակարանների հայերեն թարգմանվելու մասին է, իսկ Ագաթանգեղոսը Գրիգոր Լուսավորիչին է վերագրում Մովսեսին ու Պողոսին հայերենախոս դարձնելը, որն անիմաստ է։

էջ 479. Արիստակես— Գրիգոր Լուսավորչի որդիներ Արիստակեսի ու Վրթանեսի իրենց հորը հաջորդելը արդեն հաստատումն էր նրանց տոհմի ժառանգական իրավունքների։ Լուսավորչի տունը մեկ ու կես դար իր ձեռքում պահեց Վաղարշապատի կաթողիկոսական աթոռը, տալով վեց գահակալներ՝ Գրիգոր, Արիստակես, Վրթանես, Հուսիկ, Ներսես և Սահակ։ Սահակ Պարթևը դարձավ վերջին ներկայացուցիչը, քանի որ ուներ մեկ դուստր՝ Սահականույշ, որին կնության տվեց Համազասպ Մամիկոնյանին։

Քրիստոնեության ընդունման ժամանակ քրմական բոլոր հողերը, ինչպես նաև մեհյանների հարստությունը և նույնիսկ ստրուկները եկեղեցուն տրվեցին։ Այրարատում Արտաշատը շրջակա դաստակերտներով, Դարանաղյաց գավառում Թորդանը իր դաստակերտներով, Անի ամրոցը, Եկեղյաց գավառում Երեզ ու Թիլ ա-



վանները և Դերջան գավառում Բագայառիճ գյուղը դարձան եկեղեցական կալվածներ։ Այս բոլորից բացի Աշտիշատը ամբողջ շրջակայքով (Տարոնի մի մասը) խլվեց Վահունի քրմական տոհմից ու տրվեց Լուսավորչի տանը։ Ըստ Փավստոսի, վերջինիս էր տրված նաև Ամոք շենը (դպր. Զ, գլ. Զ), իսկ Հովհաննես Դրասխանակերտցու վկայությամբ Կոտայքի Արամոնք շենը Տրդատ թագավորը հատուկ կալվածագրով (յետկար) տվել էր Գրիգոր Լուսավորչին (Պատմութիւն, Երուսաղեմ, 1867, գլ. ԻԳ)։ Բագրևանդ գավառում Բագավանն իր շրջակայքով նույնպես Լուսավորիչի տան տիրույթներից էր (Адонц, 308)։

Լուսավորչի տունը մեծ հեղինակություն ուներ Հայոց թագավորության մեջ, իսկ եկեղեցական հարցերում անվիճելի էր նրա առաջնությունը։ Արիստակեսը մասնակցեց Նիկիայի տիեզերական ժողովին (325), որի արձանագրության մեջ հիշվում է որպես Մեծ Հայքի եպիսկոպոս (Տաշյան, էջ 149)։ Հոր մահվանից հետո դարձավ կաթողիկոս, խստությամբ հանդիմանում էր հեթանոսաբարո նախարարներին, մինչև որ Ծոփքի Արքեղայոս իշխանը նրան սպանեց։ Արիստակեսին հաջորդեց եղբայրը՝ Վրթանեսը (333—341), որը Խոսրով Կոտակ թագավորի մահվանից հետո օգնեց գահաժառանգ Տիրանին դառնալ թագավոր։ Վրթանեսի որդի Հուսիկ կաթողիկոսը (341—347), նախատելով Տիրան արքային անկարգ վարքի համար, բրածեծ սպանվեց։ Հուսիկի որդիները՝ Աթանագինեսն ու Պապը չկամեցան իրենց հոր բարձր պաշտոնն ստանձնել, գերադասելով մնալ զինվորական ծառայության մեջ։ Զինվորական էր նաև Աթանագինեսի որդի Ներսեսը, որին սակայն Արշակ արքան ստիպեց օծվել կաթողիկոս (353—373)։ Պապ թագավորի օրոք նորեն սրվեցին հակասությունները արքունիքի ու կաթողիկոսի միջև։ Ներսես Ա-ից հետո կաթողիկոսական գահը տրվեց Աղբիանոսի տան անդամներին, որոնք ենթարկվում էին արքունիքին։

Լուսավորչի տան վերջին ներկայացուցիչ Սահակ կաթողիկոսը (387—439) անմահացավ նրանով, որ Մեսրոպ Մաշտոցի հետ ստեղծեց հայ գիրն ու գրականությունը։ Նրա մահվամբ Լուսավորչի տոհմը պատմության ասպարեզից դուրս եկավ։ Ղազար Փարպեցու վկայության համաձայն, չունենալով որդի, Սահակն իր դստեր որդիներին՝ Վարդանին ու եղբայրներին, որպես ժառանգություն, թողեց իր գյուղերն ու ագարակները (Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1904, էջ 37)։

Աշոցք— Այրարատ նահանգի գավառներից էր և գտնվում էր հյուսիսում. համապատասխանում է արդի Հայաստանի Ղուկասյանի և Ամասիայի շրջաններին։ Աշոցքն ուներ իր տեղական նախարարական տոհմը։

էջ 481. մեծ արքեպիսկոպոս— Ագաթանգեղոսի քննական հրատարակության մեջ այս տեղում գրված է «մեծն Գրիգորիոս», սակայն Երևանի Մատենադարանի 1569 թվահամարը կրող ձեռագրի Ժ դարի պահպանակում գտնում ենք «մեծ արքե[պիսկոպոսն]» այսինքն՝ պետք է լիներ «մեծ արքեպիսկոպոսն Գրիգորիոս» (Պ. Մուրադյան, Ագաթանգեղոսի հին վրացերեն խմբագրությունները, Երևան, 1982, էջ 258)։

Այս առթիվ արժե հիշել որ Գրիգոր Լուսավորիչը Ագաթանգեղոսի բնագրում կոչվում է՝ քահանայապետ (պարբ. 793, 794, 796, 826), մեծ արքեպիսկոպոս (պարբ. 866, 873 և ըստ հիշյալ պահպանակի 862) և կաթողիկոս (պարբ. 884, 885), իսկ եկեղեցին՝ «աթոռ կաթողիկոսութեան Հայոց Մեծաց» (պարբ. 862), ուստի նա պետք է կոչվեր «Կաթողիկոս Հայոց Մեծաց»։ Նույն քահանայապետ

(պարբ. 804), արքեպիսկոպոս (պարբ. 800) կամ արքեպիսկոպոս մետրոպոլիտ (պարբ. 820) և կաթողիկոս (պարբ. 804) տիտղոսները տրված են նաև Կեսարիայի Ղևոնդ հայրապետին։

*էջ 485.* ... **այն ճանապարհների մասին**— *Տրդատի ու Գրիգորի Հռոմ ճանապարհորդությունը տարբեր ձևով է նկարագրում Հունարեն Վարքը, ըստ որի, կայսրն ինքը նամակ է գրում Հայոց արքային՝ հրավիրելով նրան ու Գրիգոր Լուսավորչին. «Մեծ Հռոմում Կոստանդին կայսրը լսելով Տրդատ թագավորի հետ կատարվածի, վկա Գրիգորի գործած հրաշքների մասին, փութաց դեսպաններ ուղարկել երկու բան ձեռք բերելու նկատառումով, այն է՝ իր մոտ ընդունելու վկային ու քահանայապետին, ապա Հայոց թագավորին դրդելու դաշինք կնքել և բարեկամություն հաստատել» (Հունարեն Վարք, էջ 174)։*

*Ըստ Քարշունի Վարքի, Տրդատն ու Գրիգորը գնացին ոչ թե Հռոմ, այլ Կոստանդնուպոլիս, ուր նրանց ընդունեց Կոստանդիանոս կայսրը։*

M. van Esbroeck, Un nouveau témoin du livre d'Agathange, REA, VIII, Paris, 1971, p. 88—89.

**Աղբիանոս**— *Հեթանոս քրմի որդի էր, որին Գրիգոր Լուսավորիչը եպիսկոպոս ձեռնադրեց Արածանիի կողմերում։ Հայոց առաջին կաթողիկոսը նրան արքունական դռան վերակացու (եպիսկոպոս) էր կարգել։ Ըստ Փավստոսի (դպր. Գ, գլ. Դ), Մանավազյան նախարարների կոտորվելուց հետո Հայոց Խոսրով արքան նրան շնորհեց Մանավազակերտը (Մանազկերտ) «ամենայն սահմանօքն և գաւառական հանդերձ, որ շուրջ զնովաւ էր, որ կայ ի կողմանս գետոյն Եփրատայ» որպես ժառանգական տիրույթ։ Աղբիանոսի տունը նախքան Մանազկերտն ստանալը, որոշ տիրույթներ ուներ Տարոնի կողմերում* (Ե. Տեր-Մինասեանց, *Հայոց եկեղեցւոյ յարաբերութիւնները Ասորւոց եկեղեցիների հետ, Էջմիածին (Վաղարշապատ), 1908, էջ 37—39)։*

*էջ 487.* **Արուաստան**— *Հունարեն կոչվել է Միգդոնիա, կենտրոնն էր Մծբին քաղաքը։ Որոշ ժամանակ Մեծ Հայքի թագավորության կազմում է եղել։*

**Դաղմատիա** *(Դալմատիա)— Նահանգ Հռոմեական կայսրության մեջ, որն ընդգրկում էր Բալկանների արևմտյան (ծովափնյա) մասերը։ Զարմանալի է Դալմատիայի հիշատակումը Իտալիայից հետո։*

*էջ 495.* ... **ինքներս ականատես**— *Վերջաբանում հեղինակն իրեն համարում է բոլոր դեպքերի ականատես վկա։ Հունարեն Վարքի մեջ նույնպես հեղինակն իրեն ականատես է համարում, սակայն ավելացնում, թե մի մասը ուրիշներից է լսել. «Իմ այս ամբողջ շարադրանքը ճշմարիտ է, քանզի ես դեպքերի մի մասի մասնակիցն եմ և ականատեսը։ Մյուսների մասին լսել եմ վստահելի մարդկանցից։ [Շարադրեցի] որպեսզի մեզանից հետո եկողները տեղի ունեցած բարի և առաքինի գործերով սովորեն բարեպաշտությունը, որ մենք կենդանի Աստծուն հաճելի լինենք։ Քանզի նրան է փառքն ու իշխանությունը հավիտյանս հավիտենից ամեն» (Հունարեն Վարք, էջ 199)։*

*Սակայն Ագաթանգեղոսի Վերջաբանը Կորյունից է քաղված. «Այդ ոչ թե հին դրույցներից տեղեկանալով և մատենագրելով կարգեցինք, այլ մենք հենց ականատես եղանք նրանց կերպարանքներին և ընթերակա՝ [նրանց] հոգևոր գործերին և լսող՝ նրանց շնորհապատում ուսման, և նրանց արբանյակն՝ ըստ ավետարանական հրամանների։ Ոչ թե սուտապատում ճարտարախոս լինելով* ... (Կորյուն, *էջ 199)։*

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ


*Աբրահամ 40, 41, 90, 91, 100, 101, 140, 141, 168—171, 178—185, 222, 223, 228, 229, 238, 239, 244—249, 256, 257, 298—301, 364, 365*
*Ագաթանգեղոս 6, 7, 16, 17, 24, 25*
*Ագապես 470, 471*
*Ադամ 14, 15, 154—169, 178, 179, 192—195, 326, 327, 330—333*
*Աթանագինես 454, 455, 466, 467*
*Ահարոն (Ահարովն) 236—239, 300, 301*
*Աղբիանոս 470, 471, 484, 485*
*Ամովս 184, 185, 260, 261, 274, 275*
*Անակ 28, 29, 76, 77*
*Անահիտ 38—43, 46, 47, 80, 81, 436, 437, 442, 443, 478, 479*
*Անանիա 280, 281*
*Անդրեաս 246, 247, 382, 383*
*Անտիոքես 470, 471*
*Աշխեն 430, 431, 444, 445, 448, 449, 456—459, 464, 465*
*Աստղիկ 452, 453*
*Արամազդ 40, 41, 46, 47, 80, 81, 440—445*
*Արիստակես 478—485, 490, 491*
*Արշակունի 16, 17, 26, 27, 82, 83, 440, 441, 484, 485*
*Արսուկես 470, 471*
*Արտաշիր 24—27*
*Արտավազդ 24—27, 76, 77*
*Արտավան 24—27, 76, 77*
*Արտիթես 470, 471*
*Ափրոդիտես 452, 453*

*Բաղդասար 278, 279*
*Բառնաբաս 384, 385*
*Բասոս 470, 471*
*Բարթողոմեոս 384, 385*
*Բարսաբաս 384, 385*

*Գաբրիել 230, 231, 240, 241*
*Գայանե 84—87, 90, 91, 98, 99, 102, 103, 106—111, 116—121, 416, 417, 426, 427, 430—433*
*Գեդեոն 180, 181*
*Գրիգոր (Գրիգորիոս) 19, 21, 24, 25, 34, 35, 38—41, 44, 45, 48, 49, 70—79, 82—85, 122—127, 134, 135, 144, 145, 404, 405, 408—415, 430—439, 442—457, 460, 461, 464—469, 476—491*

*Դանիել 104, 105, 178—181, 220, 221, 262, 263, 278, 279*
*Դավիթ 6, 7, 110, 111, 178—181, 208, 209, 216—223, 248, 249, 282, 283, 370, 371, 492, 493*
*Դատ 478, 479*
*Դեբովրա 106, 107*
*Դիոկղետիանոս 84, 85, 92, 93, 482, 483*

*Եզեկիել 186, 187, 278, 279, 306, 307, 310, 311*
*Եղիա 256, 257, 472, 473*

Ենովս 164, 165
Ենովք 50—53, 166, 167
Եսայի 218, 219, 246, 247, 264, 265, 268, 269, 274, 275, 278, 279, 362, 363, 366, 367
Եվա 52—55
Եվսեբիոս արքեպիսկոպոս 486, 487
Եվսեբիոս եպիսկոպոս 470, 471
Եվստաղիոս 470, 471
Երեմիա (Երեմիաս) 280, 281, 366, 367
Երեփիկա 100

Զաքարիա (Զաքարիաս), մարգարե 180, 181, 262, 263
Զաքարիա քահանայապետ 228, 229, 236, 237
Զևս 440, 441

Էմմանուել 208, 209

Թադեոս 384, 385
Թեոփիլոս (Թեոփիլե) 274, 275
Թովմաս 384, 385
Թորգոմ 20, 21, 436, 437, 446, 447

Իսահակ 100, 101, 170, 171

Լիկիանես 32—37
Լիկիանոս 482, 483

Խոսրով 16, 17, 24—27, 30—33, 76, 77
Խոսրովիդուխտ 122, 123, 430, 431, 444, 445, 448, 449, 456—459, 464, 465

Կահել (Կային) 54, 55, 164—167
Կայնան 166, 167
Կիրակոս (Կյուրակոս) 470, 471
Կղեոպ 272, 273
Կոստանդիանոս, կայսր 482—491
Կոստանդիանոս, հունաց թագավոր 18, 19
Կոստանդին 482, 483
Կոռնելիոս 280, 281

Հաբել 164, 165
Հակոբ (Հակովբ) 170, 171, 180, 181, 208, 209, 220, 221, 228, 229, 238, 239, 248, 249
Հակովբոս 246, 247, 382—385
Հայիլ 106, 107
Հարեդ 166, 167
Հեշով (Հեսու) 176, 177
Հեսսե 178, 179, 218, 219
Հեսու 180, 181
Հիսուս 54, 55, 214, 215, 222, 223, 252, 253, 262, 263, 272—275, 324, 325, 438, 439, 468, 469, 472—475. Հիսուս Քրիստոս 56—61, 64, 65, 76, 77, 88, 89, 104, 105, 112, 113, 238, 239, 266, 267, 272, 273, 320, 321, 330, 331, 358, 359, 392, 393, 396, 397, 399—401, 452, 453, 460, 461. տե՛ս նաև Քրիստոս
Հոբ (Հովբ) 184, 185, 260, 261, 384, 385
Հովել 372, 373
Հովհաննես Ավետարանիչ 210, 211, 234, 235, 242—247, 382, 383, 396, 397, 400, 401
Հովհաննես եպիսկոպոս 470, 471
Հովհաննես Մկրտիչ 208, 209, 226, 227, 230—233, 236—241, 256, 257, 330, 331, 364—367, 398, 399, 454, 455, 470—473
Հովնան 104, 105, 256, 257, 264, 265
Հովսեփ 276, 279
Հռիփսիմե 84—87, 90, 91, 96—99, 102—111, 114—121, 128—131, 416, 417, 426, 427, 430—433
Հուդա 208, 209, 216, 217, 220, 221, 236, 237, 248, 249, 352, 353, 370, 371. Հուդա Սկարիովտացի 298, 299



Ղովտ 180, 181, 196, 197, 258, 259, 298—301
Ղուկաս 258, 259, 274, 275, 384, 385, 398—401
Ղևի 236, 237
Ղեոնդես, Ղեոնդիոս 448—451, 458, 459

Մաթուսաղա 166, 167
Մաղաղիել 166, 167
Մամբրե 170, 171
Մատաթիաս 384, 385
Մատթեոս 384, 385
Մարիամ, կույս 214, 215, 238, 239, 438, 439
Մարիամ, Մովսեսի քույր 302, 303
Մարկիանոս 482, 483
Մարկոս 384, 385
Մաքսենտիոս 482, 483
Մաքսիմիանոս 482, 483
Միհր 444, 445
Միքիա (Միքիե) 214, 215, 278, 279
Մովսես մարգարե 172—177, 142, 143, 182—187, 192, 193, 210, 211, 220, 221, 226, 227, 236—239, 248—251, 268, 269, 272, 273, 278, 279, 302, 303, 306, 307, 316—319, 394, 395, 476, 477, 492, 493
Մովսես եպիսկոպոս 470, 471

Նաբուգոդոնոսոր 122, 123
Նանե 442, 443
Նեռ 258, 259
Նոյ 100, 101, 168, 169, 258, 259, 308, 309

Շավուղ (Սավուղ) 282, 283
Շմավոն 281, 282
Շուշան 106, 107

Ոսկեմայր (Ոսկեհատ, Ոսկեծին) 452, 453
Որմիզդ 437, 438



Պարթև 28—33, 76, 77
Պետրոս 222, 223, 246, 247, 256, 257, 382, 383, 388—390, 393—395, 398, 399
Պիղատոս 260, 261
Պողոս 128, 129, 242, 243, 254, 255, 258—265, 268—273, 300, 301, 318, 319, 338, 339, 370, 371, 379, 380, 384, 385, 388—393, 398—403, 436, 437, 474—477

Ռեբեկա (Երեփիկա) 101

Սաբավովթ 184, 185
Սահակ 228, 229
Սառա 100, 101
Սատան 24, 25
Սափիրա 280, 281
Սեթ 164, 165
Սերովբե 212, 213
Սիմովն 384, 385
Սողոմոն 202, 203, 368, 369
Ստեփաննոս 184, 185, 300, 301

Վահագն 80, 81, 452, 453
Վաղարշ 24, 25
Վանատուր 466, 467
Վրթանես 478, 479

Տաբիթա 280, 281
Տաճատ 76, 77, 478, 479
Տիր 436, 437
Տիրիկես 470, 471
Տրդատ (Տրդատես, Տրդատիոս) 16—19, 22, 23, 32—39, 68, 69, 76—79, 82, 83, 92, 93, 96, 97, 102, 103, 106, 107, 116, 117, 428—431, 440, 441, 444—449, 456—459, 462, 463, 466, 467, 476—481, 484—493

Փիլիպպոս 384, 385

Քերովբե 212, 213
Քրիստոս 14, 15, 18—21, 32—35,

40—45, 98, 99, 102, 103, 106—111, 128—131, 136—139, 142, 143, 192—197, 206, 207, 214, 215, 220—223, 238, 239, 240—243, 248, 249, 254—259, 264—279, 302, 303, 312, 313, 322—327, 336—339, 350, 351, 374—383, 386—391, 394, 395, 402, 403, 408, 409, 412, 413, 418—421, 424, 425, 430—437, 440—443, 446—477, 480, 481, 484—489, 492—495, 498, 499. տե՛ս նաև Հիսուս և Հիսուս Քրիստոս։

Օտա 122—125

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

Ագովտա կողմ 386, 387
Ալանաց դուռ 24, 25, 468, 469
Ամիդ, քաղաք, 468, 469
Այրարատ 26, 27, 30, 31, 76—79 90, 91, 444, 445, 486, 487
Անգեղ տուն, գավառ, 446, 447, 486, 487
Անի, բնակավայր, 441
Անտիոք 260, 261
Աշոցք, գավառ, 478, 479
Աշտիշատ 452, 453
Ասիա 386, 387
Ասորեստան 24, 25, 28, 29, 78, 79, 117, 118, 190, 191, 322, 323, 484, 485
Ասորիք 468, 469
Ատրպատական 118, 119, 468, 469
Արաբների երկիր 118, 119
Արարատյան գավառ 436, 437, 450, 451, 456, 457, 468, 469, 488, 489
Արշակունյաց թագավորություն 484, 485
Արշակունյաց տուն 82, 83
Արտաշատ 18, 19, 30—33, 76, 77, 122—125, 436, 437, 468, 469
Արուաստան (Միգդոնիա) 484, 485

Բաբելոն, երկիր, 190, 191
Բագայառիճ, գյուղ, 444, 445
Բագավան 456, 457
Բասեն, գավառ, 470, 471
Բեթղեհեմ, գյուղ, 216—219, 222, 223
Բիթանիա 386, 387

Գաղիա, երկիր, 482, 483
Գամրաց կողմեր, 386, 387
Գայլ գետ, Եփրատի վտակ, 38, 39, 442, 443
Գուգարաց երկիր 446, 447

Դաղմատացոց կողմ 386, 387
Դաղմատիա, նահանգ, 486, 487
Դավթի տուն 370, 371
Դարանաղյաց գավառ 440, 441
Դերջան, գավառ, 442, 443
Դիցավան, տե՛ս Բագավան

Եգիպտոս 172, 173, 188, 189, 222—225, 234, 235, 302, 303, 310, 311, 386, 387
Եկեղյաց գավառ 38, 39, 442, 443
Եմմաուս, գյուղ, 272, 273
Երազամույն, վայր, 436, 437
Երասխ, գետ, 30, 31,
Երեզ, տե՛ս Երիզա
Երիզա 38, 39, 442, 443
Երուսաղեմ 114, 115, 224, 225, 236, 237, 254, 255, 258, 259, 262, 263, 274, 275, 370—373, 388, 389
Եփրատ, գետ, 116, 117, 452—455, 458, 459, 464, 465, 470—473

Զարավանդ, գավառ, 446, 447

Թաբորական լեռ 472, 473
Թիլ, ավան, 442, 443
Թորգոմի (Թորգոմյան) տուն 436, 437, 446, 447
Թորդան, գյուղ, 440, 441
Թրակիա 386, 387

Իսրայել 88, 89, 220, 221, 236, 237, 276, 277, 302, 303, 320, 321, 326, 327
Իսրայելի տուն, տե՛ս Իսրայել
Իտալիա 486, 487

Լակոնիա 386, 387
Լիբանան 358, 359
Լիբեացոց կողմ 386, 387
Լիրիկիա (Իլլիրիա), երկրամաս, 388, 389

Խաղխաղ, քաղաք, 30, 31
Խաղտյաց երկիր 468, 469
Խաղտյաց կողմեր (Խաղտիք) 440, 441
Խոր վիրապ 78, 79, 84, 85, 122, 123, 132, 133, 136, 137
Խուժաստան, երկրամաս, 386, 387

Ծավդեից երկիր 446, 447
Ծոփաց երկիր 446, 447

Կապուտկացիների երկիր (Կապադովկիա) 32, 33, 386, 387, 478, 479
Կապուտկացոց կողմեր 446, 447
Կասպից սահմաններ 468, 469
Կարմիր ծով 104, 105
Կեսարիա (Կապադովկիա), քաղաք, 32, 33, 446, 447, 450, 451, 456, 457, 460, 461, 478, 479
Կիրենացոց կողմ 386, 387
Կղարջք, գավառ, 468, 469
Կովկաս լեռ 438, 439
Կորդուք (Կորդվաց), գավառ, 446, 447, 468, 469

Հայաստան 16, 17, 20, 21, 30—33, 36—39, 46, 47, 64, 65, 76—83, 90, 91, 94—97, 120, 121, 136, 137, 406, 407, 436—439, 446, 447, 452, 453, 456, 457, 466—469, 476—481, 488—491
Հայոց երկիր, աշխարհ, տե՛ս Հայաստան
Հայոց թագավորություն 30, 31, 468, 469
Հայոց կողմեր 26, 27, 38, 39
Հեր, գավառ, 446, 447
Հնդկաց աշխարհ 12, 13, 386, 387
Հորդանան, գետ, 498, 499
Հռոմ 16, 17, 84, 85, 486, 487
Հռոմայեցոց երկիր (Հռոմոց) 18, 19, 116, 117, 120, 121
Հունաց աշխարհ 18, 19, 92—95, 106, 107
Հունաց կողմեր 32, 33, 38, 39
Հունաց սահմաններ 450, 451, 486, 487

Ձիթենյաց (Ձիթաստանյաց) լեռ 254, 255, 258, 259, 274, 275, 472, 473

Ճորա Պահակ 24, 25

Մաժաք (Կեսարիա) 446, 447
Մահքր-Տուն, գավառ, 468, 469
Մաղխազության տուն 486, 487
Մանյա Այրք 480, 481
Մասիս, լեռ, 430, 431
Մասքութների կողմ 486, 487
Մասքութների սահմաններ 468, 469, 486, 487
Մարաստան (Մարաց) երկիր, 386, 387, 468, 469
Մելիտոս, քաղաք, 392, 393
Մեծ Հայք 22, 23, 38, 39, 78, 79, 82, 83, 92, 93, 96, 97, 448, 449, 452, 453, 458, 459, 478—481, 484, 485
Մեծամոր 32, 33, 118, 119
Միջագետք 386, 387
Մծբին, քաղաք, 468, 469
Մոկաց երկիր 446, 447

Նազարեթ, գյուղ, 224, 225
Նիկիա, քաղաք, 490, 491
Նոր Շիրական, երկիր, 468, 469, 484, 485
Նորաքաղաք 90, 91, տե՛ս նաև Վաղարշապատ
Նպատ լեռ 458, 459

Շահապիվան, քաղաք, 486, 487

Որմզդի գրչի Դիվան (դպրոց) 436, 437

Պահլավ, աշխարհ, 30, 31
Պանփիլիա (Պամփիլիա) 386, 387
Պարթևստան 386, 387
Պարթևաց տերություն 24, 25, 28, 29
Պարսից երկիր 24, 25, 82, 83
Պարսից կողմեր 24, 25, 28—33, 38, 39, 78, 79
Պիսիդացվոց կողմ 260, 261

Պոնտոս, երկիր, 386, 387

Ռշտունյաց երկիր 446, 447
Ռոտաստակ, քաղաք, 468, 469, տե՛ս նաև Վաղարշապատ

Սատաղ (Սատաղցվոց), քաղաք, 468, 469
Սեբաստիա, քաղաք, 452, 453
Սինա (Սինեական, Սինայի), լեռ, 172, 173, 236, 237, 306, 307
Սինեար, դաշտ, 322, 323
Սիոն, լեռ, 234—237
Սյունյաց երկիր 446, 447
Սպանիա 386, 387, 482, 483
Սատահր, գավառ, 24, 25
Սույղն, վայր, 32, 33

Վահեվանյան մեհյան 452, 453
Վաղարշապատ, քաղաք, 26, 27, 30—33, 78, 79, 90—95, 124, 125, 436, 437, 444, 445, 450, 451, 456, 457, 486—489

Տավրոս, լեռ, 452, 453
Տարոն 452, 453
Տափերական կամուրջ 32, 33
Տիբերական ծով 272, 273, 472, 473
Տիգրոն (Տիսրոն) 24, 25

Ուտիք (Ուտիացոց), երկիր, 30, 31 446, 447

Փայտակարան 468, 469
Փառական Շեմակաց, որսի դաշտ, 120, 121
Փոսից դրունք, լեռնանցք, 32, 33
Փռիգիա (Փռյուգա) 386, 387

Քարքե լեռ 452, 453
Քորեբ, լեռ, 172, 173
Քուշանների (Քուշանաց) երկիր 26, 27

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ՅԱՌԱՋԱԲԱՆ ԱԳԱԹԱՆԳԵՂԵԱՅ

Նմանութիւն ծովու և վաճառականի . . . . . . . . . . . . . . . . Է

1. Իղձք նաւելոց. ընդոստուցեալ ալիք, մրրկածին օդք, կապոյտ դաշտ, անքայլ գնացք, անընթացք ոտք. շահ օգտութեան, մահ մրցանաց, ափնածիր աւազալից սահմանք։ 2. Խորք անդնդոց, ահագին ծով. ընտանիք և դրացիք, բռնութիւն իշխանաց, լուծ ծառայութեան թագաւորաց։ 3. Ջրեղէն լերինք, ծովային ձորք, ուռուցիկ փոթորիկք, անքոյթ նաւահանգիստ, յետին անանկութիւն, գլխոց փրկանք, պարտառուք և օգուտ շահի։ 4. Վաճառականութեան արուեստ, ծանրագին մարգարիտ, նոր և չքնաղ գիւտք, անուշահոտ խունկք, դեղք և արմատք օգտակարութեան։ 5. Երթևեկ վաճառք, շահատակումն ընդ ալիս, մահ կամ կեանք։

6. Սոյն օրինակ հարկ վտանգի ստիպէ նաւել ի վերայ իմաստութեան ծովուն. ոչ յանդգնութեամբ, այլ ի բռնութենէ իշխանաց։ Մատենայած ծով պատմութեան։ 7. Աղքատիմաց խանութ, հրաման թագաւորաց. անցեալ իրք, յայտնական պատմութիւնք որ առ մեօք գործեցան. կարգ գրուցաց, դարգք դարգք պատմութեան։

8. Հոգևորացն առաքինութիւն իբրև զմարգարիտն բոլորաձև. Հնդկային աշխարհ, մեծագնաց թանգարք, երկարուղի ճանապարհք, արտախոյր պսակի ի վերջաւորն փողփողեալ։ 9—10. Գործք հոգևորացն, որ նաւեալք մէջ մրրկեալ աշխարհակիր մեղացն վտանգեցան և պսակ մատուցին լուսաւոր թագաւորին։ 11. Գինք այսպիսի վաճառաց. ականջք՝ աման պատգամաց, գինդ կախեալ, կոչումն արքայական, անուշութիւն խորտկաց, անթառամ զգեստ, շուշան ծաղիկ։

12—14. Ագաթանգեղոս ոմն ի մեծն Հռովմայ, Հռոմայերէն և Յունարէն ուսեալ դպրութիւն, տեղեակ ձեռնարկութեան նշանագրաց. դուռն Արշակունի, ուժեղ Տրդատ, ըմբշամարտ սկայազօր. հրաման նորա վիպասանել զմարտամբոխ պատերազմաց. բովանդակութիւն վիպասանութեանս. Խոսրով քաջ, մահ նորա, հօրամոյն քաջութիւն Տրդատայ. սիրելի վկայքն Աստուծոյ (=Հռիփսիմեանք), սքանչելիք ցուցեալք յաշխարհիս Հայոց ի ձեռն առն միոջ (=Գրիգոր). (եկամուտ բանք Կորեան). լուսաւոր վարդապետութիւն նորա, ամենեքեան հնազանդեալ աստուածակարգ լծոյն. կործանումն մեհենից, կանգնումն եկեղեցեաց. նոյն ինքն (=Գրիգոր) հովիւ կացուցեալ. երթն Տրդատայ յաշխարհն Յունաց յամս Կոստանդեայ, ուխտ եդեալ, դարձ նորա ի Հայս պարգևօք. տեղիք նուիրեալք Աստուծոյ. վարդապետութիւն սրբոյն (Գրիգորի)։

15. Երիվար մտաց. յեղեղուկ անիւ պատմութեան. ժամանակագրական ծով։

16. Վերստին եկամուտ բանք Կորեան. կրկնութիւն գործոց սրբոյն (Գրիգորի)։



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ԱՌԱՋԱԲԱՆԸ

Նմանություն ծովին և վաճառականին . . . . . . . . . . . . . . 7

1. Նավարկողների իղձը. ընդոստ ալիքները, մրրկածին օդը, կապույտ դաշտը, անքայլ երթը, չընթացող ոտքերը. շահութաբեր օգուտը, մահվան դեմ մաքառումը, ավազով շրջագծված ափը։ 2. Խոր անդունդը, ահագին ծովը. ընտանիքը և դրացիները, իշխանների բռնությունը, թագավորների հարկատվության լուծը։ 3. Ջրեղեն լեռները, ծովային ձորերը, ուռուցիկ փոթորիկները, խաղաղ նավահանգիստը, հետին տնանկությունը, գլուխները փրկելը, պարտապանները և առավել շահը։ 4. Վաճառականության գործը, ծանրագին մարգարիտները, նոր և չքնաղ բարիքները, անուշահոտ խունկերը, օգտակար դեղերն ու արմատները։ 5. Երթևեկողների վաճառականությամբ շրջելը, խոյանալն ալիքների վրա, մահ կամ կյանք։

6. Նման մի հարկադրանք էլ ստիպում է նավարկել իմաստության ծովի վրա. ոչ հանդգնությամբ, այլ իշխանների բռնությամբ։ Պատմության մատյանների ծովը։ 7. Մտավոր աղքատ գանձարանը, թագավորների հրամանը. անցյալ դեպքերը, մեզանում կատարված հայտնի պատմությունները, դեպքերի շարքը, մանրակրկիտ պատմությունները։

8. Հոգևոր արժեքների վեհությունը նման է բոլորակաձև մարգարտի. Հնդկաց աշխարհը, երկար ուղիներ անցնող վաճառականները, երկար ճանապարհները, արտախույր պսակը փողփողուն վերջավորությամբ։ 9—10. Հոգևոր գործերը, աշխարհիկ մեղքերի մրրկահույզ ծովի վրա նավարկողները իրենց վտանգեցին և պսակ մատուցեցին լուսավոր թագավորին։ 11. Այսպիսի վաճառքի գները. ականջը՝ պատգամների ընդունարան, կախված գինդը, արքայական կոչումը, խորտիկների առատությունը անթառամ զգեստը, շուշան ծաղիկը։

12—14. Ագաթանգեղոսը մեծ Հռոմից, հռոմայերեն (լատիներեն) և հունարեն դպրություն ուսանած, նշանագրերի արվեստին տեղյակ։ Արշակունու արքունիքը, ուժեղ Տրդատը, ըմբշամարտիկ հսկայի զորությամբ. մարտամբոխ պատերազմները նկարագրելու նրա հրամանը. քաջ Խոսրովը, նրա մահը, ազնվահայր Տրդատի քաջությունը. Աստուծո սիրելի վկաները (Հռիփսիմյաններ). մեր Հայոց աշխարհում ցույց տրված հրաշքները մի մարդու ձեռքով (Գրիգոր). (Կորյունից քաղված խոսքեր). Նրա լուսավոր վարդապետությունը, ամենքը հնազանդվում են աստվածակարգ լծին. մեհյանների կործանումը, եկեղեցիներ կանգնեցնելը. Նույն ինքը (Գրիգոր) հովիվ նշանակվեց. Տրդատի երթը Հունաց աշխարհ Կոստանդնի օրոք, ուխտ դնելը, նրա վերադարձը Հայաստան պարգևներով. Աստուծո նվիրված վայրեր. սուրբ (Գրիգորի) վարդապետությունը։

17. Դիմումն Ագաթանգեղեայ առ Տրդատ. նկարագիր ծովու, թանգարական վաճառք խանթից։

## ՎԱՐՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

Ա, 18—22. Պատերազմ Խոսրովու արքային Հայոց ընդդէմ Արտաշրի, ի վրէժխնդրութիւն արեանն Արտաւանայ թագաւորին Պարթեաց . 24
Բ, 23—34. Մահ Խոսրովու դաւաճանութեամբ Անակայ Պարթեւի և կոտորած ամենայն տոհմին Անակայ, բաց յերկուց մանկանց նորա, որք ի ձեռն դայեկաց փախուցեալ ապրեցան, մին ի կողմանս Պարսից և միւսն ի կողմանս Յունաց . . . . . . . . . . 28
Գ, 35—38. Հարուած և գերութիւն Հայաստան աշխարհին, և զերծումն Տրդատայ ի ձեռն դայեկաց իւրոց ի դուռն կայսեր, և յարելն առ նա Գրիգորի որդւոյ Անակայ, որ կայր ի կողմանս Յունաց . 32
Դ, 39—47. Յաղթելն պատերազմաւ իշխանին Գթաց ի վերայ կայսերն Յունաց և մենամարտիկ յաղթութիւն կայսերակերպին Տրդատայ, և թագաւորել նորա և տիրել ի վերայ հայրենի աշխարհին Հայոց 34
Ե, 48—67. Ստիպելն Տրդատայ զսուրբն Գրիգոր պաշտօն տանել Անահտական պատկերին. և հրաժարումն նորա և պատասխանի առ արքայ . . . . . . . . . . . . . . . . . 38
Զ, 68—73. Սպառնալիք Տրդատայ և առաջին չարչարանք սրբոյն Գրիգորի, դայլ ի բերան, շառաշեղք աղի ի վերայ ողին, գեղոցք կրծից . 46
Է, 74—98. Երկրորդ չարչարանք. կախելն գլխիվայր, ծխել ի ներքոյ աղբ, և գան բրօք դալարովք։ Աղօթք Գրիգորի ի կախաղանին . . . 50
Ը, 99—108. Երրորդ չարչարանք. կոճեղք փայտից ըստ ոլոքի խոտացաց ոտիցն, պնդեալք առատակօք։ Չորրորդ չարչարանք. բևեռք երկաթիք վարեալք ընդ ներբանս ոտիցն։ Հինգերորդ չարչարանք. կռափք ի գլուխն։ Վեցերորդ չարչարանք. աղ և բորակ և քացախ ի քիթսն և զգլուխն ի մամուլս հիւսանց։ Եօթներորդ չարչարանք. պարկ օդենի լցեալ մոխրով, ագուցեալ ի գլուխն . 68
Թ, 109—114. Ութերորդ չարչարանք. ոտք պնդեալք ի հրապոյրս տկաց և կախեալ գլխիվայր. ձագար և ջուր։ Իններորդ չարչարանք. քերել կողիցն երկաթի քերչօք։ Տասներորդ չարչարանք. տատասկ երկաթի . . . . . . . . . . . . . . . . . . 70
Ժ, 115—120. Մետասաներորդ չարչարանք. կապիճք երկաթիք ի ծունկսն, ուռունք ստուարք, և բառնալ ի կախաղան։ Երկոտասաներորդ չարչարանք. կապար հալեալ և հոսեալ զմարմնովն . . . . 74
ԺԱ, 121—124. Տեղեկանալն Տրդատայ վասն Գրիգորի, թէ որդի է Անակայ Պարթևի, և արկանելն զնա ի վիրապն մահապարտաց։ Բանք զՏրդատայ՝ «իբրև զմէզն Տրդատ...»։ Աւերումն երկրին Պարսից և Ասորեստանի։ Կին ոմն այրի ի բերդին Արտաշատու . . . 76
ԺԲ, 125—136. Հրովարտակ Տրդատայ վասն դիցն պաշտաման։ Երկրորդ հրովարտակ վասն յուղախնդիր լինելոյ քրիստոնէից և մատնելոյ յարքունիս . . . . . . . . . . . . . . . . 78



15. Մոգի երիվարը. պատմության անիվի պտույտները. ժամանակագրության ծովը։

16. Արկին Կորյունից քաղված խոսքեր. կրկնություն սուրբ (Գրիգորի) գործերի։

17. Ագաթանգեղոսի դիմումը Տրդատին. ծովի նկարագրությունը, վաճառականական խանութների առևտուրը։

## ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻ ՎԱՐՔԸ ԵՎ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Ա, 18—22. Հայոց Խոսրով արքայի պատերազմը ընդդեմ Արտաշրի ի վրեժխնդրություն Պարթևների թագավոր Արտավանի արյան . . 25
Բ, 23—34. Խոսրովի մահը Անակ Պարթևի դավաճանության հետևանքով և Անակի ամբողջ տոհմի կոտորածը, բացի նրա երկու մանուկներից, որոնց դայակները փախցնելով փրկեցին՝ մեկը Պարսից կողմերը և մյուսը Հունաց կողմերը . . . . . . . . . 29
Գ, 35—38. Հայաստանի՝ հարձակման ու գերության ենթարկվելը. Տրդատի փրկվելը իր դայակների ձեռքով և տարվելը կայսեր արքունիք։ Հունաց կողմերում գտնվող Անակի որդի Գրիգորի նրան հարելը 33
Դ, 39—47. Գոթերի իշխանի պատերազմի դուրս գալը Հունաց կայսեր դեմ և մենամարտում կայսերակերպ Տրդատի տարած հաղթությունը. Նրա թագավորելը և տիրելը հայրենի Հայոց աշխարհին . . 35
Ե, 48—67. Տրդատի՝ Գրիգորին ստիպելը պաշտել Անահիտի արձանը և նրա հրաժարումն ու պատասխանը արքային . . . . . . . . 39
Զ, 68—73. Տրդատի սպառնալիքները և սուրբ Գրիգորի առաջին չարչարանքը. բերանակապ նրա բերանին, աղի մեծ շառաշեղ նրա մեջքին, գելարան նրա կրծքին . . . . . . . . . . . . . . . 47
Է, 74—98. Երկրորդ չարչարանքը. գլխիվայր կախելը, ներքևից աղբ ծխելը, դալար ճիպոտներով գանահարելը։ Գրիգորի աղոթքը կախաղանի վրա . . . . . . . . . . . . . . . . . . . . . 51
Ը, 99—108. Երրորդ չարչարանքը. փայտից կոճղեր, ըստ ոտքի սրունքների ոսկորների ուժգին սրկված։ Չորրորդ չարչարանք. երկաթե բևեռներ ոտքերի ներբաններին գամած։ Հինգերորդ չարչարանք. հարվածներ գլխին։ Վեցերորդ չարչարանք. աղ, բորակ և թունդ քացախ քթին, իսկ գլուխը հյուսնի մամուլի մեջ։ Յոթերորդ չարչարանք. կաշվե պարկ, լցրած մոխրով, գլխին հագցրած . . 69
Թ, 109—114. Ութերորդ չարչարանք. ոտքերը կապված տիկերի փուկերին, գլխիվայր կախված. ձագար և ջուր։ Իններորդ չարչարանք. կողերը քերել երկաթե քերիչներով։ Տասներորդ չարչարանք. երկաթե տատասկ . . . . . . . . . . . . . . . . . . 71
Ժ, 115—120. Տասնմեկերորդ չարչարանք. երկաթե կապիճներ ծնկներին, մեծ կռաններ, կախաղան բարձրացնելը։ Տասներկուերորդ չարչարանք. կապար հալեցնելը և մարմնի վրա թափելը . . . 75
ԺԱ, 121—124. Տրդատի տեղեկանալը Գրիգորի մասին, թե Անակ Պարթևի որդին է, և մահապարտների վիրապը գցելը։ Տրդատի մասին խոս-

